# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ՀԻՆ

# ՀԱՅ ՏԱՐԱԶԻՆ

ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ

---

ՅՕՐԻՆԵՑ

Հ. ՎԱՐԴԱՆ Վ. ՀԱՑՈՒՆԻ



ՎԵՆԵՏԻԿ — Ս. ՂԱԶԱՐ

1923

# ՑՈՒՑԱԿ ԳՐՈՑՍ

---

# ՑՈՒՑԱԿ ՊԱՏԿԵՐԱՑ

Ա Ր Դ Ե Ա Մ Բ Ք

Պ. ՊԵՏՐՈՍ ՀԱՅՐԱՊԵՏ ԿՐԷՏԻ

ՈՒՍՈՒՄՆԱՍԷՐ ԵՒ ԱԶԳԱՍԷՐ

Բ Ա Ր Ե Ր Ա Ր Ի



Պ. ՊԵՏՐՈՍ ՀԱՅՐԱՊԵՏ ԿՐԷՏ



# ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ



*Պարոն Պետրոս Հայրապետ Կրէտեանց, բարերար և Մեկենաս տպագրութեանս և լաւ բարեկամ Մխիթարեան ազգալոյս Միաբանութեան, ծնաւ յամին 1865 ի Նոր-Ջուղա յԱսպահան՝ ի բարեմոյն ծնողաց. Նախահայր տոհմին գոլով մի ի գաղթականացն՝ որք յեօթնեւտասաներորդ դարուն չուեցան անդ ի Կրետէ կղզւոյն. յայն իսկ սակս տոհմանուն նորա Կրէտեանց կամ Կրետացի։*

*Երիտասարդական հասակին պատանին Պետրոս թողեալ զծնընդավայր իւր զՆոր-Ջուղա՝ գայ աստ ի Կալկաթա յուսումն Հայ և Անգլիացի դպրութեանց. և մտեալ ի «Հայկեան մարդասիրական ճեմարանն» քաղաքիս յամսեանն նոյեմբերին 1879 ամին, մնայ անդ ցամն 1883։ Թողեալ զճեմարանն, մտանէ յասպարէզ վաճառականութեան՝ նախ ի Կանփուր վերին Հնդկաստանի՝ և յետոյ աստ ի Կալկաթա. և գոլով ի բնէ ուշիմ, աչալուրջ և գործունեայ իսկ, յոյժ յաջող հանդիսանայ իւրով արդարակորով և ուղղամիտ գործառնութեամբք, ըստ օրինակի նախնի Հնդկահայոց՝ որք զանուն Հայութեան պանծալի կացուցին յասպարիզին վաճառականութեան։*

*Ի միջի բազմակողմանի գործոց իւրոց և աշխատանաց միշտ վառ և անշէջ պահեալ է ի սրտին զսէր իւրոյ սիրեցեալ ազգին և Հայրենեաց, և ի քանի նուագս լեալ է Հոգաբարձու «Մարդասիրական ճեմարանին», որպէս և եկեղեցպան «Նազարեթայ Եկեղեցւոյն» քաղաքիս մեծի։*

*Երից ամաց հետէ հրաժարեալ մինչ ի սպառ յառեւտրական գործոց, անցուցանէ զմեծ մասն տարւոյն յԵւրոպա՝ ի կազդոյր իւրոյ*

*վաստակաբեկ անձին, յետ 43 ամաց անընդհատ վաստակոց և աշխատանաց յայսմիկ տապախարշ երկրի. այն է «ի Հնդս հրայրեաց» ըստ անմա՛հ քերթողին Թաղիադեանի։*

*Քաղցր է ինձ յուսալ՝ թէ այլք ի մեծափարթամ Հնդկահայոց ունին գնալ զշաւիղ ազգասիրութեան մեկենասիս, որ վասն մաղթեմք ի յերկնից բաղձալին արեշատութիւն լի ամենայն բարօրութեամբք, յօգուտ ազգիս և ի փա՛ռս Մեսրովբեան ոսկեղինիկ և սքանչելարուեստ դպրութեան, որոյ սիրով բաբախէ միշտ սիրտ իւր հայրենասէր։*

*Հնութեանց համբաւատենչ Հայրենեաց ջերմ սիրահար և անհուն սքանչացող՝*

ՄԵՍՐՈՎԲ Յ. ՍԷԹԵԱՆՑ
*(Նոր-Ջուղայեցի)*

---

## ԻՄ ՍԻՐԵՑԵԱԼ ՊԵՏՐՈՍ,

*Գոհութեամբ իմացայ ի Ձէնջ թէ մտադիր էք Մեկենաս հանդիսանալ տպագրութեան մատենին «Հայկական հին Տաղագուց» որ կայ արդէն պատրաստ ի վանս գերաշնորհ Մխիթարեան Հարց անդ ի Վենետիկ. ուստի գամ սովաւ շնորհաւորել զընտրութիւն Ձեր դրուատելի՝ որ հայի ի փառս հնութեանց քաղցրանուն Հայրենեաց մերոց, երբեմն «Հանուրց Հիւսիսականացն վեհագոյն» ըստ վկայութեան Խորենոյ ծերունւոյն։*

*Կեցցէ՛ս, սիրելիդ իմ Պետրոս, որ կարես ըստ արժանւոյն գնահատել զարժէս նշխարաց ազգային հնութեանց. զի ըստ բանից անմա՜հ քերթողին Մեսրովբայ Թաղիադեանի*

*«Անցեալ ժամանակ*
*Պարծ յիւր յիշատակ՝*
*Ցինքն գրաւէ*
*Զամենայն փափաք...։»*

*Որպէս իմանամ, կան ի վանս Սրբոյն Ղազարու բազո՜ւմ այդպիսի երկասիրութիւնք, որք կարեն զանուն Հայութեան պանծալի և յաւէտ նախանձելի կացուցանել առաջի օտարաց և հնասիրաց եւրոպացւոց. այլ սակայն ազգանուէր միաբանունք Մխիթարեան Աստուածահաճոյ Ուխտին չկարեն ի լոյս*

ընծայել զայնոսիկ ծախիւք իւրեանց, եկամուտ տպարանին գոլով յոյժ սակաւամասնեայ և անհաստատ իսկ յայսմիկ տագնապալից ժամանակի. ուստի կարօտին նոքա օժանդակութեան Ձեզայինի բարերարաց և առատաձեռն Մեկենասաց: Եթէ յա՞ւ և երջանկայիշատակ հայրենակիցք մեր պայազատ Շահրիմանեանք չէին Մեկենասք հանդիսացեալ տպագրութեան հսկայ և բազմարդիւն աշխատութեան բարեյիշատակ Չամչեան Հօր, այսօր չկարէաք մեք պարծիլ ճոխ և մանրապատում ազգային պատմութեամբ՝ յերիս խոշոր հատորս:

Մխիթարիմ տեսանել՝ թէ ոգի գրասիրութեան նախնի Ջուղայեցւոց և Հնդկահայոց տակաւին վառ մնայ յայսմիկ նիւթապաշտ դարու. և ցնծամ ի հոգի տեսանել ի Ձեզ նախանձ բարի գնալ զշաւիղ գրասիրութեան բարեյիշատակ նախնեաց մերոց մեծագործ և ոսկեսիրտ Ջուղայեցւոց, որք ուր ուր գնացին ի խնդիր բաղդին՝ չմոռացան զազգ իւրեանց և զհայրենիս, թէ ի Վենետիկ, թէ ի Լիվոռնօ, թէ յԱմստերդամ-Հօլանդիոյ, թէ ի Ռուսիա և թէ աստ ի Հնդիկս. և եղեն առաջին տպագրիչք Աստուածաշնչոյ սրբազան մատենին յամին 1666, և եդին զհիմն Հայ լրագրութեան անդ ի Մադրաս յամին 1794, տպագրութեամբ « Ազդարար » անդրանիկ լրագրոյն ի ձեռն Շմաւոնեան Տէր Յարութիւնի:

Քաջայոյս եմ՝ թէ յետ տպագրութեան « Հայկական Տարազուց » ունիք հոգալ և զծախս տպագրութեան մատենին « Զարդանկարուց », որք գտանին ի հին ձեռագիր մատեանս ի Վանս Սրբոյն Ղազարու. զի այդպիսի չքնաղ հրատարակութիւն ոչ սակաւ լոյս սփռեսցէ ի վերայ Հայ գեղարուեստին հնադարեան ժամանակաց, և բացցէ զաչս ազգաց եւրոպականաց յաղագս մտաւոր բարձր զարգացման դժբաղդ Հայ ազգին ի հնումն, յորժամ արդի լուսաւորեալ Եւրոպացիք խարխափէին ի խորս տգիտութեան, և չունէին ո՛չ կրթեալ լեզու ինչ և ո՛չ կրթեալ ճաշակ գեղարուեստական:

Լաւ արարեալ էք արկանել զլումայ Ձեր ի կորուստ Հայ գեղարուեստից, որով արժանացիք երախտագիտութեան համայն սիրողաց և սքանչացողացն ազգային հնութեանց սփռելոց աստ և անդ ի մատենադարանս Մխիթարեան ազգանուէր Հարց ի Վենետիկ և ի Վիեննա: Օրհնեա՛լ եղիցի Ուխտ անմա՛հ Սեբաստացւոյն, որ որպէս երկրորդ գրաւորական լուսաւորիչ Հայաստանեայց՝ փրկեաց վասն մեր ի ժանեաց ժամանակին զանգին նշխարս գրական հնութեանց ազգիս, առանց որոց չկարէաք պարծիլ այսօր առաջի օտարաց՝ որպէս ազգ ինչ պատմական, հնադարեան լուսաւորութեամբ և սքանչելարուեստ գրականութեամբ իսկ:

Ի գրութենէ Գերապատիւ Մխիթարեան Հարց իմացայ՝ թէ կամին զարդարել զճակատ տպագրելի երկասիրութեանն՝ «Հայկական Տարազու՝» կենդանագիր պատկերաւ Ձերով, որպէս արժան է և իրաւ. ուստի թոյլ տուք ինձ

աղաչեմ գրել զհամառօտ «Կենսագրական» Ձեր, զոր չիայոյս եմ թէ ունին տպագրիչք գործոյն սիրով զետեղել ի ներքոյ լուսանկար պատկերին Ձերոյ որ ի ճակատ անդ հրատարակութեանն՝ ի ժամօրութիւն ընթերցողաց։ Ուստի շնորհ արասջիք առաքել առ Մխիթարեան գերաշնորհ Հարս զներփակեալս հակիրճ «Կենսագրական» Ձեր, և թողուլ ազատ կամաց նոցա զհրատարակութիւն այնր ի ներքոյ կենդանագրին Ձերոյ. զի ես որպէս յետին սքանչացող և ջերմ սիրահար իսկ նշխարաց ազգային հնութեանց՝ պարտ անձին վարկայ գրել զայդ երկտող ի լրութիւն տպագրութեանն։ Գոլով սերտ բարեկամ Մխիթարեանց՝ յերեսուն և առաւել իսկ ամաց հետէ, և ջերմ սքանչացող ազգօգուտ գործոց նոցա և փաստակից յամենայն ժամ, ցնծամ ի հոգի տեսանել՝ թէ օժանդակութեամբ Ձերով ի մօտոյ ի լոյս ելանիցէ մի ի բազմաթիւ հնութեանց մթերելոց ի Վանս Սրբոյն Ղազարու։ Իցի՜։ թէ այլք ի միջի մեծափարթամ Հնդկահայոց գնային զշաւիղ գրասիրութեան սիրելութեանդ, որով այլ նշխարք հնութեանց գային ի լոյս՝ յօգուտ ազգիս և ի փառս և պարծանս փառազուրկ Հայրենեաց մերոց։

Ցա՛տ խօսեցայ և թերևս ձանձրոյթ պատճառեցի Ձեզ. այլ սակայն ասեն՝ «թէ ի յաւելուածոյ սրտին խօսի բերան»։ Խմանեամ թէ ի մօտոյ մեկնելոց եմ աստի գնալ յԵւրոպա. ուստի «ողջերթ» մաղթելով Ձեզ, մնամ, խորին յարգանօք, որպէս միշտ, ամենայետին բարեկամ Ձեր և Հայրենակից՝

ՄԵՍՐՈՎԲ Յ. ՍԷԹԵԱՆՑ

Ի Կալկաթայ Հնդկաց,
Ի $^{1}/_{14}$ փետրուարին 1923.



# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Արդի բանասիրութեան մէջ տարազի պատմութիւնն իրաւամբ լրացուցիչ մասն կը համարինք ազգերու պատմութեան։ Ժողովրդեան մը կեանքը ճանաչելու համար՝ չի բաւեր գիտնալ անոր ականաւոր անձինքը, անոր քաղաքական կամ կրօնական կենաց անցքերը, պատերազմները եւ այլն։ Այլ պէտք է մերձենալ անոր տանը, նկատել անոր ներքին եւ արտաքին կենցաղը, եւ յատկապէս զննել անոր զգեստը։ Վասն զի տարազը ցեղերու քաղաքակրթութեան գլխաւոր արտայայտութեանց մին է, եւ ժամանակի շրջանին մէջ կրած փոփոխութեամբք՝ ցոյց կու տայ անոնց աստիճանական զարգացումը։

Նոյնը դարձեալ ապացոյցն է ժողովրդեան մ'այլոց հետ ունեցած քաղաքական կամ ցեղային յարնչութեանց։ Չի ազգերը մեծապէս օգտուած են իրարմէ՝ իրենց հանդերձը ձեւելու մէջ։ Զօրաւոր ցեղ մը, որ կամ իր մտաւոր բարձրագոյն բարգաւաճմամբ եւ կամ զինուորական ուժով իր ազդեցութեան ենթարկեր է ուրիշ ցեղ մը, ամէն բանէ յառաջ հրապուրեր է անոր աչքն իր արտաքին ձեւովը, հագուստով. եւ տկարը փութացեր է նմանիլ անոր յօժարութեամբ. մերթ նաեւ ողոքելու կամ շնթելու համար իրեն իշխեցողին։

Իրենց գաղթումներն ունէին ազգերը, որոնք միասին կը տանէին՝ եւ աւելի կամ պակաս երկար ժամանակ մը կը պահէին օտար երկրի մէջ՝ իրենց տարազը, որ կը հանդիսանար պատմական կապերէն մին իրենց մայր ցեղին հետ, եւ նշանն իրենց ծագման՝ ապագայ պատմութեան առջեւ։

Ինչպէս լեզուին տարրերը, հագուստն ալ, քննուած ու ճշդուած հին յիշատակարաններով, աղբիւր մ'է ուրեմն ազգերու քաղաքական, քաղաքակրթական ու կրօնական պատմութեան լուսաբանութեանը։ Հետեւաբար դիւրին է ըմբռնել մեր ազգային հին տարազի քննութեան կարեւորութիւնը։

Աւելին կայ։ Այժմու դաստիարակութեան պահանջն է՝ տոհմային պատմութիւնը պատկերազարդել եւ այնպէս յանձնել մանկտւոյն. գեղարուեստին պէտք մը՝ անցելոյն նշանաւոր դէմքերն ու դէպքեր կենդանագրել. եւ թատերաբեմին՝ հին յիշատակաց ներկայացման համար ունենալ հին զգեստուց ձեւեր։ Ի՞նչ կ'ընենք մեք Հայերս։ Կ'երթանք՝ օտար ազգերու պատմական հանդերձից ձեւերը կը մուրանք, եւ կամ մեր գրաւոր կցկտուր նկարագրերէն թերի ձեւեր կը ստեղծենք, եւ կ'ընծայենք ազգին իբրեւ մեր հարց հարազատ պատկերները։ Այս մեծ սխալը կը կարօտի սրբագրութեան, որ մեր հին տարազուց ճշգրիտ ծանօթութեամբ կը լինի։

Եթէ չեմ խաբուիր, հայ զգեստին պատմութեամբ առաջին անգամ զբաղեր է Մխիթարեաններէն Հ. Ղուկաս Ինճիճեան [1], առաջին հայ հնախօսը. բայց այն ոճով ու չափով՝ որ իւր ժամանակ կարելի էր ու բաւական կը համարուէր, իսկ այսօր ոչ. այս ինքն յառաջբերութեամբ պատմական յայտնի եւ չափաւոր վկայութեանց միայն, առանց բացատրութեանց, առանց ժամանակագրական կարգի, եւ առանց ձեւերու։ Ատաղձի բաժին մ'աւանդեց, ոչ ուսումնասիրութիւն։ Հ. Ղեւոնդ Ալիշան եւս տուաւ ցիրուցան յիշատակներ՝ թագաւորաց եւ իշխանաց տարազներու, քանի մը նկարչական ու դրամական ձեւերով հանդերձ [2], այն չափով՝ զոր իւր տեղագրութիւնք կրնային տանել։ Եղան նաեւ զանազան յօդուածագրեր, որոնք իրենց նիւթ առին հնութեան յատուկ նշխարի մը նկարագրութիւնը, ինչպէս քանդակի, արձանի կամ նկարի մը։ Սակայն այդ բոլորը՝ ոչ առանձնաբար եւ ոչ հաւաքաբար՝ չէին կազմեր հայ զգեստին պատմութիւնը, որոյ պէտքը միշտ զգալի կը մնար, եւ որ մղեց զիս ներկայ ձեռնարկիս։

Տարիներ յառաջ՝ այս նիւթիս վրայ պատրաստած էի համառօտ աշխատութիւն մը։ 1917ի աշնան՝ Վենետկոյ մէջ տիրող խուճապը, որ բոլոր քաղաքին հետ ստիպեց Մխիթարեան Միաբանութիւնս ալ պանդըխտանալ ի Հռովմ, բացաւ առջեւս ոստանին բազմաթիւ ու ճոխ մատենադարանաց ու թանգարանաց դռները, եւ նպաստեց ինձ ընդարձակելու եւ կատարելագործելու զայն։ Այդ պանդխտութեան կը պարտիմ չափաւոր յաջողութիւնս՝ եթէ ունեցած եմ այս երկասիրութեանս մէջ։ Անտարակոյս շատ աւելի մեծ պիտի լինէր այդ, եթէ Հայաստան փորուած եւ իւր արուեստական գանձերն ի յայտ բերուած լինէին. ինչպէս եղաւ ուրիշ հին ազգերու, որոց պեղումներով լի են Եւրոպիոյ թանգարանք, եւ քննասիրին կը հայթայթեն առատ պաշար։ Հայ

1. Հնխ. Բ, 278-89. — 2. Այրրտ. 415-27. Սխ. 481.

գրոցն արդէն դանդաղ, եւ իւր սակաւ պտուղն ալ տակաւին Թաղուած կը մնայ հողին ներքեւ։ Հանդերձ այսու՝ երկար տաժանմամբ կարողացայ հաւաքել աշխարհիս չորս փոթորկեալ հովերէն՝ նիւթիս համար գոհացուցիչ տարերքը։

Աղբիւրներս զանազան էին։ 1. Արտաքին պատմագիրք՝ նկատմամբ այն դարերու ուր դեռ չունէինք տոհմային գիր ու գրուած, եւ որոց մասին մեր յետնագոյն մատենագրութեան ծանօթութիւնք անբաւական են, եւ յաճախ երեւակայութեան ծնունդ։

2. Տոհմային եւ կամ Հայոց վերաբերեալ օտար քանդակներ, դրամներ, նկարներ, պահուած եւրոպական Թանգարանաց, հայ գրչագրաց եւ Հայաստանի հնութեանց մէջ. եւ նոյն իսկ օտար ձեւեր՝ որոց հետ հայ տարազին աղերսը կը հաստատեն հաւատարիմ պատմագիրք, եւ որոնք հետեւաբար մեզ ալ սեպհական կը նկատուին։

3. Նախնեաց մատենագրութիւնը, սկսեալ Դ դարէն, եւ վստահելի առաւելապէս այն մասանց մէՀ՝ ուր գրիչը կը խօսի իւր ապրած ժամանակին վրայ։ Ասոր մէջ հայ զգեստին նկարագիրը կը նմանի աւազի հետ խառնուած ոսկւոյ. մերթ գոհացուցիչ տեղեկութիւնք, եւ մերթ կցկտուր ու ցան եւ ցիր իմաստներ ու բառեր, ցրուած ըստ դիպաց, զորս հարկ եղաւ ինձ հաւաքել, յարել իրարու, մեկնել, մարմնացնել, ձեւ ու կերպարանք տալ, ամբողջութիւններ կազմել։

4. Թարգմանութիւնք, յատկապէս Ե դարու, զորս մեք սովոր ենք կարդալ, եւ անոնց մէջ օտար բարքեր միայն տեսնել։ Ընդհակառակն հայ տարր մ'ալ կայ հոն, զոր բնագրաց հետ համեմատութիւնն ի տես կը դնէ։ Անոնց մէջ յաճախ օտար գաղափարով բառի մը փոխանակած է հայ գաղափարով բառ մը. օտար նկարագրի մը տեղ անցած է տոհմային մը. կամ հայ բարուց յարմար նկարագրութիւն մ'ընդարձակուած եւ ամբողջացած է Թարգմանչէն։ Միով բանիւ՝ բնագիրք ոչ միայն լեզուով, այլ իմաստով ալ հայացեր են յաճախ, ինչ որ այլուր եւս ցոյց տուած եմ[1]։

Օրինակով բացատրեմ։ Ս. Գրոց Թարգմանիչք կը տեսնեն զԲովաք պատերազմի ժամանակ «պարեգօտ» զգեցած. զօրավարի մը համար անյարմար կը համարին զայս, եւ անոր կը զգեցնեն հայ զօրականին «վարապանակս զրահից»[2]։ Գեղանին Յուդիթ Ասորեստանեայց բանակին մէջ իւր գլխին ունի «խոյր» մը, եւ ոտից «սանդալներ». քիչ էին ասոնք՝ զՀողեփեռնէս խաբելու համար. եւ Թարգմանիչը հայ տիկնանց «ապարօշը» կը կապէ անոր ճակատին, եւ կը հագցնէ «կօշիկս ոսկե-

1. Ճաշեր, 93-95. — 2. Բ Թագ. Ի, 8։

զօծս[1]»։ Ոսկեբերանի Թարգմանիչը կը հանդիպի կշտամբանաց՝ զոր մեծ բեմբասացը կ'ուղղէ Բիւզանդիոնի տիկնանց զարդերուն. եւ զայն անբաւական գտնելով հայ իշխանուհեաց՝ որ պիտի կարդային, կը լրացնէ բնագիրը յաւելուածովս. «այնպիսի քայռամանեակս արկանիցես ընդ պարանոցդ, այնպիսի պախճաւանդօք եւ լանջազեղ կամարօք զսպեալ լինիցիս պնդակազմ[2]». եւ այսպիսի փոքր ներմուծումներ ունի այլ եւ այլ տեղեր։

Այս ոճով՝ Թարգմանիչք մեղանչեցին անշուշտ հաւատարմութեան դէմ. բայց մի եւ նոյն ժամանակ քաւեցին իրենց մեղքը՝ մեզ տուած հայ ազգագրական ծանօթութեամբք իսկ, որոցմէ զուրկ պիտի մնայինք։ Հայ բառագրոց հնարիչք չնշմարեցին այս պարագայն. եւ նկատելով հայ բառից համդիպումը զանազան յոյն բառերու, հայկականաց վերագրեցին պէս պէս իմաստներ՝ զոր չունէին ու չէին կարող ունենալ, որով բազմապատկեցին հոմանշերը։ Օրինակ մը միայն Հայկազեանէն. տեսան՝ որ *մեհեւանդ* բառը գործածուեր է չորս եւ աւելի յունականաց համդէպ, որոնք այլուր տարբեր հայերեններով ալ թարգմանուած են. եւ իրենք զայն մեկնեցին՝ «բահուանդ, զարդ կանացի, որպէս քայռ, մանեակ, քօղէք, լանջազեղ կամար, ապարանջանք բազկաց եւ սրունից». մինչ այս բոլորն ու մեհեւանդ՝ իրարմէ տարբեր իրեր կը նշանակեն, ինչպէս պիտի տեսնենք։ Նոյնը պատահեր է ուրիշ բառերու եւս։

Աշխատութեանս մէջ ինծ առաջնորդ բռնեցի քննական եւ անկեղծ հոգին, որ կը խուսափէ երեւակայութեան գործակցութենէն, կը հիմնուի որոշ փաստերու վրայ, եւ մատնացոյց կ'ընէ իւր աղբիւրները, որոնք կը ճշդեն իւր կարծեաց արժէքը։ Զգուշացայ նաեւ խճողել գործս երկար համեմատութեամբք, ընդարձակ կոչումներով եւ օտար պատկերներով՝ իբր եզր բաղդատութեան, որոնք շատ պիտի ծանրացնէին տպագրութիւնը եւ ընթերցողաց աշխատութիւնը, աւելի մթագնելով քան լուսաբանելով խնդիրները։

Վերեւ ակնարկեցի այն ազդեցութեան՝ զոր ազգերը կրեր են իրարմէ՝ իրենց տարազին վրայ։ Չկայ երկիր մը, որ զօրաւոր ցեղերու արշաւանաց, տիրապետութեանց, քաղաքական ու կրօնական ազդեցութեանց այնքան լայն ասպարէզ եղած լինի, ինչպէս մերը, կեդրոն եւ ճանապարհ արեւելեան եւ արեւմտեան ասպատակաց, տենչանք աշխարհակալաց։ Հետեւաբար մեր ազգի զգեստն ալ շատ հին ժամանակներէն սկսեալ՝ առաւելագոյն փոփոխութեանց ենթարկուեր է։ Այս պարագայն կը ստիպէ զմեզ՝ որ հայ տարազին պատմութիւնը բաժնենք այլ եւ այլ

1. Յղթ. Ժ., 3, 4. -- 2. Ոսկ. Թղթ. Բ, 554.

շրջանաց, որոնք չեն չափուիր մեր տոհմային ժամանակագրութեամբ, եւ կամ հայկական ծանօթ հարստութեանց տարիներով. այլ ժամանակաւ ու կոչմամբ արտաքին հզօր ցեղերուն՝ որոց ազդեցութեամբ կամ տիրապետութեան օրով յեղաշրջուեր է հայ զգեստը. եւ որ երբեմն զուգադիպութեամբ մեկէ աւելի ազդեցութեանց՝ նոյնչափ ալ ձեւեր ունեցեր է միանգամայն, բնականապէս տարբեր շրջանակաց մէջ, զորս հարկ է որ առանձին նկատենք։

Եւ որովհետեւ զգեստին յեղաշրջութիւնք արտաքին ազդեցութեանց արդիւնք էին, ադոնց ամենէն աւելի պիտի ենթարկուէր հայ ազնուական դասը՝ որ քաղաքականօրէն սերտագոյն յարաբերութեան մէջ կը գտնուէր օտարաց հետ։ Համեմատաբար նուազ պիտի փոփոխէր իւր ձեւը հայ ռամիկը, մանաւանդ երբ տիրող ցեղը չստիպէր զայն նիւթապէս կամ բարոյապէս, ինչպէս պատահած է վերջին շրջանաց մէջ։ Եւ դեռ աւելի պակաս՝ կանայք, որոց ընտանեկան ամփոփ կեանքը հեռի կը պահէր զիրենք արտաքին հաղորդակցութենէ եւ ազդեցութենէ. բաց ի ժամանակին թելադրած բնական յառաջադիմութենէն՝ որ անխուսափելի էր քաղաքակիրթ ազգերու համար։

Հայ տարազին պատմութեան ամբողջութիւնը կը պահանջէր մեզմէ՝ վեր ելնել մինչեւ մեր ցեղին ծագումը, որ մթութեանց մէջ պարուրուած կը մնայ։ Շատ բաներ ըսուած են այս մասին. եւ շատ բաները մեծագոյն նշանն են խնդրոյն դժուարութեան։ Ժամանակին այդ մուայլ խաւի համար տարբեր լեզու մը կը խօսի հայ վէպը, եւ տարբեր՝ արտաքին պատմութիւնը. ուրիշ անուններ կու տանք մեք մեզ, եւ ուրիշ՝ օտարները։ Եւ այս խառնակութեան մէջ տակաւին ոչինչ կարելի է ըսել հայ նախնագոյն շրջանի կամ շրջանաց զգեստուց մասին՝ առանց թարթափելու ենթադրութեան դիւրագայթ սահմանաց մէջ։

Զուզեցի նաեւ խուզարկել կամ նկատողութեան առնուլ զգեստներն ինչ ինչ ցեղերու, ինչպէս Հիտիտք կամ Հատք, Թրակացիք, Խաղդիք եւ այլն, որոց մեր աշխարհին հետ ունեցած կապը, զոր ոմանք տեսնել կ'ուզեն, եւ կամ գէթ հանդերձից ազդեցութեան չափը՝ ստուգութեան կը կարօտի, եւ պիտի հեռացնէ զմեզ դրական ճանապարհէն՝ որուն ընտրեցինք հետեւիլ։

Համ դերձ այսու մեք տակաւին կրնանք գոհ լինել՝ որ ունինք յուսացուածէն աւելի ընդարձակ տեղեկութիւն մը մեր հին տարազուց վրայ, որոց պատմութիւնը կ'ամփոփէ ժամանակամիջոց մը՝ շատ երկար քան ուրիշ արեւելեան փոքր ցեղերու կամ արեւմտեան նոր ազգաց ունեցածները։ Այդ միջոցը կը հիւսեն քսան եւ հինգ պատկառելի դարեր, որոց մէջ պատմութեան խուզարկու լապտերն ի ձեռին՝ կրնանք

շրջիլ անմոլար եւ ապահով։ Եւ տեսնել ու պարծիլ՝ թէ քաղաքակրթութեան ջահը շատ աւելի կանուխ սկսած է շողշողիլ Հայաստանի վրայ, քան արեւմտեան շատ ժողովրդոց, որոնք այսօր այնքան տմարդօրէն կը խաղան մեր ճակատագրին հետ։

Տարազի պատմութեան մէջ մեծ դեր կը խաղան կոչումները։ Հայ զգեստուց բնիկ անունները, որոնք սովորաբար անծանօթ մեզ, բայց հարկաւոր են մեր կենաց մէջ ալ, կը սկսին երեւիլ տոհմային մատենագրութեան հետ, եւ դարերու ընթացից մէջ կը փոխուին յաճախ։ Ես իւրաքանչիւր շրջանի ձեւերուն տուի իրենց ժամանակակից անուններն ալ, ուր եւ ծանօթ էին. իսկ նախամեսրոբեանց՝ Ե դարու կոչումները, որոցմէ տարբեր անուններ եւս ունէին անշուշտ երբեմն անգիր եւ անյայտ։

Հարկ է նաեւ՝ որ աշխարհիկ հանդերձին նկարագրէն բաժնենք եկեղեցականն ու վանականը, որոնք տարբեր ազդեցութեանց ենթարկուած են. եւ անկախ աշխարհականաց շրջաններէն, չեն կարող խառնուիլ անոնց հետ։





# ԳԼՈՒԽ Ա

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ



*ՀԱՅ տոհմային զգեստուց ձևերուն դեռ չմօտեցած, կարևոր կը կարծեմ քանի մը խորհրդածութիւն մարդկային հանդերձին վրայ, և տալ ինչ ինչ ծանօթութիւններ ազգային և միանգամայն ընդհանուր տարազի պատմութեան նկատմամբ։*

1· *Զգեստին ծագումն ու նպատակը։* — *Հարցասէր միտքը կանգ կ'առնու նախ այս կէտին վրայ. Երբ և ինչո՞ւ հնարուեցաւ հագուստը։ Մարդկային առաջին զոյգը, կ'ըսէ մեզ սրբազան աւանդութիւնը, անսքող ստեղծուեցաւ ու մնաց՝ մինչև այն վայրկեանը, ուր պատուիրանազանցութեան հետևանքով զգացին՝ թէ «մերկ էին». և ամօթահար՝ գնացին ծածկուեցան ծառերու ետև, մինչև որ զանոնք կերտող ձեռքը փութաց փարատել անոնց շփոթութիւնը, շինելով անոնց մաշկեղէն հանդերձ մը*[1]*։ Ամօթոյ զգացումն եղաւ ուրեմն զգեստին առաջին հնարողն ու վախճանը։ Նոյնը կը հաստատէ նաև ամէն ժամանակի փորձը։ Կը տեսնենք Ափրիկէի և ուրիշ տաք աշխարհաց ժողովուրդները, որ կը ծածկուին՝ ամօթոյն պահանջած չափով միայն։ Եւ մեր իսկ մանուկներն այն ժամանակ կը սկսին սքողուիլ ուշադրութեամբ, երբ նոյն զգացումը կը զարթնու իրենց մէջ։*

*Այդ զգացման օժանդակ եղաւ պէտքը։ Եղանակաց ու կլիմայից փոփոխութիւնք, ջերմն ու ցուրտը, որոցմէ կ'ազդուէր մարդկային լերկ և անպատսպար մարմինը, աւելի կամ նուազ չափով ընդարձակեցին յետոյ զգեստին մեծութեան ու թանձրութեան աստիճանը։ Ջերմակէզն Եգիպտոս կը շատանար նուրբ շապկով մը. և իւր աշխատութեան տարազն էր սփածանելի մը միայն։ Նուազ ջերմն Ասորեստան՝*

1· Ծննդ. Բ. 25. Գ, 7 – 10, 21·

*իրանը ծածկող ու ստուար հագուստ մ'ունէր։ Ընդ հակառակն հիւսիսային ցուրտ գաւառները, կ'ըսէ սրատես Ստրաբոն, թելադրեցին գլխանոցը, թեզանաւոր երկար պարեգօտն ու վարտիքը[1]։ Պէտքը՝ թշնամւոյն նետից ու զինուց դէմ ալ ուսոյց հագնիլ ամուր զգեստ մը կամ մետաղեայ զրահ, և վահան մը բռնել իւր առջև իբր պատսպարան։*

*Իսկ քաղաքակրթութիւնը, և քան զայն ալ կանուխ՝ պճնասիրութեան բնածին զգացումն, յիշեալ պատճառներուն յարեց և զարդը։ Հին ժամանակներէն, և դեռ այսօր՝ վայրենի ցեղերու մէջ, գրեթէ մերկ մարդկութիւնն իւր թեթև ծածկոյթը կ'ամբողջացնէ փետուրներով գլխին վրայ, և «վէտս» կամ ասղնածեծ ու սրածեծ զարդեր գործելով իւր մորթին տեսանելի մասանց վրայ, զոր Մովսէս արգիլեց Հրէից[2]։ Քաղաքակրթութիւնը կեդրոնացուց զարդասիրութիւնը հագուստի վրայ. և արհեստից զարգացմամբ՝ հետ զհետէ զգեստին ձևն ու նիւթն ալ ազնուացուց փափկացուց, անասնոց պարզ մորթէն վերածելով ճարտարագործ ասուեղինի, նուրբ կտաւի, մետաքսի, ոսկեհուռ կերպասի, ակնապարար գոյներու, գլխի՝ վզի՝ ձեռաց և ոտից պէսպէս զարդերու։*

2. *Տարազը։ — Մարդիկ սահմանուած էին ընկերաբար կենակցելու. և բնական էր՝ որ համաձևութեամբ երթային ինչ ինչ բաներու մէջ՝ որոնք ընկերակցութեան կարևոր տարրերը կը կազմէին։ Ասոցմէ էր հագուստն ալ, որ նոյնպէս հասարակաց ձև մը պիտի ունենար բոլոր համացեղ անհատից վրայ։ Վիճակը, զբաղանքը, սեռը, հասակը և զանազան կենցաղական առիթներ կը փոփոխէին այդ ձևը մի և նոյն ընկերութեան հատուածոց և անհատից վրայ։ Այս ալ արդիւնքն էր կենաց բարդութեան՝ զոր ստեղծեց քաղաքակրթութիւնը, և որոյ օրինակը կու տան մեզ նախ Եգիպտոս և Ասորեստան իրենց քանդակաց մէջ, որ աւելի ճոխ աղբիւր են մեզ՝ քան ուրիշ հին զարգացեալ ազգերու յիշատակարանք։*

*Փարաւոնք սովորաբար պճղնաւոր նուրբ պատմուճան կը զգենուին[3]. իսկ մարտի մէջ՝ զրահի նմանող խիտ հանդերձ մը[4]։ Թագուհիք ի բնէ պատմուճանաւոր[5], պալատան մէջ իրենք և նաժիշտք մերկ ի մօրէ կ'երևին՝ երբ կը ծառայեն Փարաւոնի, որ կը նստէր պատմուճանով[6]։ Այդ ձևը հաւանօրէն հետևանք էր բարոյական անկման. վասն զի բոլոր ժողովուրդը, արքունի պաշտօնեայք[7], երկրագործք[8], որսորդք[9], խեցեգործք[10], արձանագործք[11], ամէն վիճակներն ալ գէթ*

1. Աշխ. ԺԱ, ժզ, 9։ — 2. Ղևտ. ԺԹ, 28. ԻԱ. 5։ — 3. Pris. II, տխ. 65, 69։ — 4. Անդ՝ 40։ — 5. Անդ՝ 52։ — 6. Անդ՝ 16։ — 7. Անդ՝ 18։ — 8. Անդ՝ 19, 20։ — 9. Անդ՝ 6, 24։ — 10. Անդ՝ 56։ — 11. Անդ՝ 57։

իրենց ազդրերը ծածկող սփածանելի մ'ունէին։ Ջկնորսք միայն բոլորովին մերկ կը կատարէին իրենց գործը՝[1] ջրի մէջ թափառելուն պատճառաւ. իսկ վարձակք ու կաքաւող կանայք՝ յոյժ թափանցիկ պատմուճան մ'ունէին[2] իրենց մոլորեցուցիչ արուեստին բերմամբ։

Ասորեստանի թագաւորք, իշխանք եւ արքունի թիկնապահք պճղնաւոր կը հագնէին[3]. արուեստաւորաց ու զինուորաց պարեգօտը մինչև ծնկները կը հասնէր[4]. զինուորք նաև զրահապատ էին ու սրածայր սաղաւարտով[5]. ձիադարման մը՝ մերկութեան ծածկոյթ սփածանելի մը միայն ունի[6]։ Ջեմ հաշուեր գլխոյ կամ բազկաց զարդերը, որ կ'որոշէին անձանց վիճակն ու աստիճանը։

Քաղաքակրթութեան յօրինած այս զանազանութիւնը համաձևութեան մէջ՝ կ'երևի նաև բոլոր զարգացեալ հին ազգերու քով, Յունաց, Հռովմայեցւոց[7] և այլոց։ Նմանապէս և Հայոց, ինչպէս մի առ մի պիտի տեսնենք հետագայ նկարագրութեանց մէջ։

Եւ բոլորին ալ յատուկ էր ընդհանուր զանազանութիւն մը։ Այսինքն՝ ինչ զգեստ որ կը հագնէին տան մէջ, նոյնը չէին կրեր և դուրսը. այլ աւելի մաքուր մը՝ զոր կը թելադրէր անձնասիրութիւնը, և ոմանց մէջ ցուցամոլութիւնը։ Նմանապէս այն շրջաններուն կամ ցեղերու մէջ, ուր մարդիկ կրկին հանդերձ ունէին, տան մէջ կը բաւականանային միով, և երկրորդը կ'առնուին դուրսը։ Զոր օրինակ Յոյնք, Հռովմայեցիք[8] և Հայք իրենց պարեգօտին վրայ կը զգենուին կրկնոցը՝ երբ փողոց ելնէին։ Այսպէս և կօշիկները շրջելու համար էին. որով Յոյները տան մէջ բոկոտն կը կենային[9], և նոյնը մեր քով ալ կ'երևի, մինչ Հռովմայեցիք ներսը թեթեւ հողաթափներ կը կրէին[10]։

Արդի ներքին կտաւեղէնք, որ պաշտօն ունին պահել արտաքին ազնիւ զգեստները մարմնոյ աղտէն, անծանօթ էին հնոց։ Հռովմայեցիք՝ ի սկզբան իրենց թիկնոցին ներքև ազդերաց սփածանելի մը միայն ունէին. յետոյ առին յունական պարեգօտը, և զայն կրկնեցին, մին ներքին իբր շապիկ, և միւսն արտաքին[11], զորս առին բիւզանդացի ազնուականք ալ[12]։ Ներքինը կ'երևի և Հրէից քով, հայ թարգմանչէն «վտաւակ» կոչուած[13], և մեր տարազին ինչ ինչ շրջանաց մէջ։ Մարմնոյ կտաւեղէնք ԺՁ դարուն ծանօթացան քաղաքակիրթ ժողովրդոց, սկսելով՝ ինչպէս կ'երևի՝ Գաղիայէն[14]։

1. Pris. 10, 12. — 2. Անդ՝ 7, 60. — 3. Place, III, տխ. 40, 48, 66. — 4. Անդ՝ 43, 44, 48, 52. — 5. Անդ՝ 59, 61. — 6. Անդ՝ 40. — 7. Dar. *Vestis*. — 8. Անդ՝ 367, 768. — 9. Անդ՝ 767. — 10. Նոյն. *Solea*, 1389. — 11. Նոյն՝ *Vestis*, 768. — 12. Ռուկ. Թղթ. Ա, 463. — 13. Ելք, ԻԸ, 31-34. Ղթ, 20-23. — 14. Lar. *Linge*.

*Բայց այդ ամէն փոփոխութեանց մէջ միաձևութիւնն անպակաս կը մնար միշտ՝ նոյն ցեղի և կամ դասակարգի յատուկ անձանց մէջ։ Բարեբախտութիւն մ'է՝ որ հին ժամանակ չկար այժմեան անհատական և մանաւանդ կանացի անսանձ ազատութիւնն՝ ըստ քիմս ձևելու իր հագուստը։ Գիտենք՝ զոր օրինակ՝ որ Հռովմէական կայսերութիւնն օրէնքներ ունէր հանդերձից շռայլութեան դէմ*[1]*. եւ Վենետկոյ անուանի և յոյժ բարեկարգ հանրապետութիւնը կը հսկէր նոյնպէս անոնց միաձևութեան վրայ իր տէրութեան մէջ։*[2] *Առանց այսպիսի չափաւորութեան մը՝ բացարձակապէս անկարելի պիտի լինէր մեզ գրել նախնեաց տարազներու պատմութիւնը։ Իսկ ապագայ հնախօսութիւնը՝ մեր դարու սեմին վրայ պիտի խորտակէ իր գրիչը, որոյ պահանջը գիտենք՝ թէ անբաւական է ամոքելու նորասիրութեան մոլուցքը մեր նոր սերնդեան մէջ։*

3. *Կոչումն։* — *Ստորին հայ բարբառը տարազ կ'անուանէր համաձև հագուստը, ինչպէս՝ «զգեցաւ աշխարհական տարազ*[3]*», ծանօթ նաև հին « տարազագործ » բարդին մէջ՝ զոր պիտի տեսնենք ստորև։ Թէև տարազն՝ ոսկեդարեան լեզուին մէջ շատ տարտամ ու խառնակ իմաստ մ'ունի*[4]*, բայց նկատելով իր պարսկական ծագումը, և նոյն լեզուի մէջ ունեցած հանդերձի, ձևի ու կերպի նշանակութիւնը*[5]*, հաւանական է՝ որ մեր մէջ ունէր այդ իմաստն ալ։ Արդէն Եփրեմի Թարգմանութեան մէջ կը գտնենք զայն ձևի կամ կերպարանաց նշանակութեամբ*[6]*։ Միջին դարը կը գործածէ նաև ձեւ բառն իբր հանդերձ. «զկերպարանս ձեւոյ սրբութեան*[7] *», կամ « ձեւ կատականաց*[8] *»։*

*Դասական բարբառն ունի և ուրիշ պէսպէս կոչումներ։ Զգեստ, ծագած զգենուլ բայէն, ու սովորաբար եզակի ձայնով, որ հագուստի հաւաքական իմաստով կը ներկայանայ, և կը գործածուի ռամկին*[9]*, կանանց*[10]*, թագուհւոյ*[11] *ու քահանայի*[12] *վրայ. այս ինքն առանց որ և է խտրութեան դասակարգի և սեռի։*

*Հանդերձ, եզակի և յոգնակի ձևերով, ու հաւասար նշանակութեամբ նախորդին հետ, տրուած նախածնողաց հագածին*[13]*, աղքատին*[14]*, ռամկին*[15]*, քահանային*[16]*, զինուորին*[17]*, կանանց*[18]*, ազոյ*[19]*,*

1. Dar. IV, 778։ — 2. Molm. III, 325-6։ — 3. Վրք. հրց։ — 4. Համտ. Ել. ԼԶ, 1-5. Ա Մակ. Ժ, 42. ԺԱ, 35։ — 5. Hüb. 252։ — 6. Եփր. Բ, 350։ — 7. Վրք. հրց։ — 8. Ոսկ. Յհ. 904։ — 9. Բ Օր. ԻԲ, 5. Յոբ, ԻԴ, 7։ — 10. Ա Պետ. Գ, 3։ — 11. Բ Մնց. ԻԳ, 13. Եսթ. ԺԵ, 6։ — 12. Սղմ. ՃԼԲ, 2։ — 13. Ծննդ. Գ, 21։ — 14. Բ Օր. ԻԴ, 13։ — 15. Ծննդ. ԼԷ, 30։ — 16. Ելք, ԼԱ, 10։ — 17. Բ Թագ. Գ, 1։ — 18. Անդ՝ Ա, 24։ — 19. Անդ՝ ԺԴ, 2։

հարսանեաց[1], իշխանաց[2] և թագաւորին[3] կրածին, զգեստին ամբողջութեան, ինչպէս է այդ վկայութեանց մէջ, և կամ մէկ մասին՝ թէ եզակի[4] և թէ յոգնակի[5] ձայնով։

Ձորձք, աւելի յաճախ յոգնական ձևով և հոմանիշ նախորդաց, զոր անխտիր գործածուած կը գտնենք Յովսեփայ վրայ՝ երբ ծառայ էր[6], Հրէից ժողովրդեան[7], այրւոյն[8], Թամարայ մաքուր հանդերձին[9], արքայի դստերաց[10], և յոյն ազնուականաց[11] վրայ. որով նաև խառն գործածուած՝ «ձորձք հանդերձի» կամ «հանդերձ ձորձոց[12]»։

Միջին դարն ընդունեցաւ արաբերէն հալաւ կոչումն ալ, և գործածեց հանդերձի նշանակութեամբ ու միշտ եզակի ձայնով. ինչպէս կիլիկեան Թագաւորօրհնէից մէջ կայ «հալաւ ծիրանի[13]». կամ Մանտալեանց առ Թորոս Նուիրածը՝ «հալաւ մի[14]», և այլն։

Ս. Եփրեմի Թարգմանիչը կու տայ մեզ գեղեցիկ բարդ ձև մ՚ալ, ըսելով Դաւթի համար՝ թէ «ագաւ և զձորձմոյկսն հովուութեան»[15], կազմուած ձորձ և մոյկ արմատներէն, և կը նշանակէ զգեստն ու կօշիկը միասին նկատուած։ Բարդիս մէջ կ՚երևի նաև հանդերձին պարզութեան գաղափարը՝ յատուկ հովուութեան ու նման վիճակաց. հանդերձ ու կօշիկ միայն, առանց ուրիշ յաւելուածոց կամ զարդարանաց։ Անոր համար «գձձութեան» վիճակ մը կը համարուի հոն։

Զատ անուն կամ բացատրութիւն ունէր անշուք կամ բուն աղքատաց հագուստն ալ. ինչպէս մաշ հանդերձիկ[16] կամ դոյզն հանդերձիկ[17], և ձորձք հին և մաշ[18]. կամ պարզապէս կը կոչուէր հանդերձիկ[19] կամ զգեստիկ[20]։ Բայց աւելի յատուկ ձայներ ալ կային. կապերտ, — հաւանօրէն կապ արմատէն, — որ կը նշանակէր պատառի կտոր[21], և ընդարձակ առմամբ մեր լեզուին՝ մարմնոյ վրայ կապելի հնոտի և փոքր հանդերձ։ «Դեռ զիմ կապերտսն ունիմ», ըսել կու տայ Ոսկեբերանի Թարգմանիչն օժիտ բերած կնոջ մը[22]. և Պաւղոս, կ՚ըսէ, «եւ ոչ կապերտ անգամ զուսովքն գտանէր արկանել[23]». իսկ այլուր կը շեշտէ տնանկաց կարօտը «կապերտի միոջ ձորձոյ[24]», որոնք ձմեռն անգամ «կապերտօքն» կ՚անցնէին[25]։

1. Մտթ. ԻԲ, 11։ — 2. Եսթ. Դ, 4։ — 3. Բ Թագ. ԺԲ, 20։ — 4. Հռթ. Գ, 3։ — 5. Յհ. ԺԳ, 4։ — 6. Ծննդ. ԼԹ, 12-18։ — 7. Ելք, ԺԹ, 10։ — 8. Բ. Օր. ԻԴ. 17. — 9. Ծննդ. ԼԸ, 19։ — 10. Բ Թագ. ԺԳ, 18։ — 11. Ոսկ. Թղթ. Ա, 124։ — 12. Եփր. Բ, 270։ — 13. Սիս. 472։ — 14. Սմբ. ՇԾԷ։ — 15. Եփր. Ա, 376։ — 16. Ոսկ. Թղթ. Ա, 463։ — 17. Անդ՝ 464։ — 18. Եփր. Ա, 272։ — 19. Ագաթ. 155։ — 20. Անդ՝ 150։ — 21. Եսթ. ԺԴ, 16. Մտթ. Թ, 16. Ոսկ. Թղթ. Ա, 659։ — 22. Ոսկ. Թղթ. Ա, 898. յն. զիմսն ազանիմ։ — 23. Անդ՝ 208. յն. ոչ իսկ զոր զանձամբ արկանիցէ՝ ունէր։ — 24. Անդ՝ Բ, 504. յն. մի բառ՝ հանդերձի։ — 25. Անդ՝ 503. Ոսկ. Մտթ. Գ, 63. յն. պատառատունս։

*Ասոր հոմանիշ էին ցնցոտիք[1], կամ գրգլիք մուրողաց[2] կամ աղքատաց[3], որ ստոյգ կամ վրիպակ՝ կը գրուի նաև գրչլիք[4], կոչուած և չանչապոտիք[5]. ու չորսն ալ սովորաբար այդպէս յոգնակի ձայնով կը գործածուին։*

*Մեր այս կոչումներն ընդհանուր իմաստ ունեցողներն են։ Իսկ մասնական նշանակութեամբ կամ հանդերձի մասանց վրայ գործածուածները՝ պիտի տեսնենք իրենց կարգին՝ իւրաքանչիւր տեղւոյ մէջ։*

4. *Տարազագործք։ — Հագուստն իւր սկզբնական ձևին մէջ՝ ամէն զգեցողի դիւրին էր պատրաստել անձամբ։ Կը պատռէր ընտանի անասուն մը, կամ աղեղովը կ'որսար վայրենիներէն մին, կը հանէր մորթը, կը չորցնէր և իւր վրայ կ'առնուր։ Բայց երբ զգեստը նրբացաւ, բարդուեցաւ և իւր պատրաստութիւնն ալ դժուարացաւ, կարօտացաւ առանձին արուեստագիտաց։ Եսայեայ Թարգմանութեան մէջ ունինք տարազագործ բառը, բնագրէն[6] շատ հեռի, որ գործածուած կտաւագործաց, բեհեզ շինողաց ու ճարտարաց քով, հանդերձ պատրաստողի գաղափարը կու տայ. և ուսկից հեռի չէ Ոսկեբերանի տարազագործութիւնն[7] ալ, բնագրին «ասրագործութեան» փոխան։ Բայց անշուշտ աւելի որոշ է նոյն արուեստագիտաց տրուած դերձակ կոչումը, նոյնպէս ոսկեղարէն[8] և հայ կեանքէն. ինչպէս նաև Ցաճախապատում գրոց հանդերձարարք[9]։*

*Զգեստին բոլոր մասունքը շինել՝ մէկ արուեստաւորի գործ չէր, այլ կարօտ զանազան ճարտարաց։ Հետևաբար տարբեր էին գլխանոց պատրաստողները, որոցմէ կը համարուի Խորենացւոյն քով և Աժդէ՝ «խոյրարար մետաքսագործ», որ կը շինէ «խոյր բեհեզեայ՝ անգուածով ոսկւոյ»[10]։ Անտարակոյս այդպիսի Աժդէներ Եղեսիայէն զատ Հայաստանի մէջ ալ կային, ուր սովորական էր խուրի գործածութիւնը, ինչպէս պիտի տեսնենք։*

*Զատ հնարագիտութիւն կը պահանջէր կօշիկն ալ, որոյ յօրինողները կը կոչուէին կօշկակարք[11] և կամ կարուակք[12], և կը շինէին ազանելեաց բոլոր տեսակները՝ թէ արանց և թէ կանանց համար[13]։ Իսկ աղոնք կը սահմանուէին կօշիկք, օդք կամ մոյկք, և հողաթափք կամ սանդալք կոչումներով, որոց գործածութիւնը պիտի տեսնենք Ե դարու նկարագրութեան մէջ, որուն գլխաւորապէս սեպհական էին*

1. Ոսկ. Թղթ. Բ, 504. Ոսկ. Մտթ. Գ, 64. յն. պատառատուն, — 2. Ոսկ. Մտթ. Ա, 178. յն. պատառատուն, — 3. Ոսկ. Թղթ. Ա, 210, — 4. Անդ՝ Բ, 504. յն. չունի, — 5. Վրք. հրց. ի Հյկզ. — 6. ԺԹ, 10. յն. «գործողք ցքւոյ», — 7. Ոսկ. Թղթ. Ա, 815, — 8. Անդ՝ 848. յն. չունի, — 9. Ցճխ. 40, — 10. Բ, լզ, լդ, — 11. Ոսկ. Մտթ. Ա, 706. Գող՝ Աոկ. ՃՀԱ, — 12. Վեցօր. 197. Ոսկ. Թղթ. Ա. 208. ևն, — 13. Նոյնք.

*աղոնք։ — Մաշած ու պատռած կօշիկները Նորոգութեան կը կարօտէին. և այս գործը սովորական կօշկակարք չէին կատարեր, այլ առանձին աշխատաւորք, ինչպէս այժմ, զորս Ոսկեբերանի Թարգմանիչը՝ բնագրէն անկախաբար[1] կ'որոշէ « խրուանողիչ կարկատիչ » հոմանիշ զոյգ անուններով[2]։*

*Գործածուած հանդերձները յաճախ պէտք էր լուանալ և յղկել։ Այս գործը կրնար կատարուիլ թէ տան մէջ, և թէ դուրսը՝ յատուկ պաշտօնէից ձեռամբ, որոնք թափիչք կը կոչուէին սովորաբար[3], և մերթ լուանայիք[4], այս ինքն լուացողք։*

5. *Հերք և մօրուք։ — Տարազի կամ արտաքին ձևի կարևոր մասն էին ասոնք ալ, և ամէն ժամանակ վայելած են մարդուն առանձին խնամքը։ Բայց այս հոգածութեան եղանակը բոլոր ազգերու, ամէն շրջանաց, վիճակաց ու սեռերու մէջ հաւասար չէ եղած միշտ, այլ փոփոխմանց ենթարկուեր, շատ աւելի զգալի կերպով արանց վրայ, ինչպէս պիտի տեսնենք հետ զհետէ։ Եւ մեր լեզուն այդ այլազան յարդարմանց ու ձևերուն պէս պէս կոչումներ ալ տուած է, զորս կ'ուզեմ ամփոփել հոս միասին՝ իրենց սահմաններով հանդերձ, որ ծանօթ չեն ամենուն։*

*Հայ դասական բարբառը մազ բառով կ'իմանայ նիւթն իսկ, որ հաւասար է և նոյնպէս կոչուած մարդոց գլխին, այր թէ կին[5], մօրուաց[6] և այծերու վրայ[7], և միշտ եզակի կը գործածուի։ Ասով կը բացատրուին նաև անոր թելերը. « մազ մի[8] »։ — Իրենց առատութեան վիճակին մէջ ու համախումբ նկատուած՝ հեր[9] կամ հերք[10] և վարս[11] կամ վարսք[12] են՝ թէ արանց և թէ կանանց վրայ անխտիր, եզակի՝ իբր հաւաքական ձև՝ և յոգնակի. երկու հոմանիշներ են անհաւասար ծագմամբ։ — Նոյներն արձակ ու կախ թողուած՝ կը կազմէին երկու սեռին համար գէսք[13] կամ գէս[14], ուսկից « գէս արձակեալ[15] »։ Իսկ չափաւոր երկայնութեան մը մէջ, ինչպէս էր սովորաբար արանց վրայ, և նոյնպէս կախ, գիսակք կը կոչուէին[16]։*

1. Յն. *խաղախորդ*։ — 2. Ոսկ. Թղթ. Ա, 208։ *Հմմտ.* « *Հողաթափք իւրեանց հնացեալք և կարկատեալք* ». Յեսու, Թ, 5։ — 3. Ես. Է, 3. ԼԶ, 2. Մրկ. Թ, 2։ — 4. Մաղ. Գ, 2։ — 5. Ղևտ. ԺԳ, 3, 29, 30 *ևն.* Եղիշ. 191. — 6. « *Մազ մօրուաց* ». Ոսկ. Թղթ. Ա, 605։ — 7. Ելք, ԻԵ, 4։ — 8. Բ Թագ. ԺԴ, 11. Մտթ. Ե, 36։ — 9. Ա Թագ. ԺԴ, 45 *ևն.* Եղիշ. 196, 197. Փրպ. 332. Խոր. Բ, *կզ*։ — 10. Ծննդ. ԽԱ, 14 *ևն.* Փաւս. 266. Եղիշ. 191, 192, 197։ — 11. Եղիշ. 191. *պհլ. բառ.* Hüb. 246։ — 12. Ղևտ. ԺԹ, 27. Խոր. Բ, *կզ*։ — 13. Եղիշ. 191. Եզեկ. ԻԴ, 17։ — 14. Եսթ. ԺԴ, 2։ — 15. Փաւս. 253, 120։ — 16. Դատ. ԺԶ, 13 *ևն.* Եղիշ. 191. Ոսկ. Մտթ. Ա, 58։

*Վարսերը կրնային լինել ի բնէ ձաղկ կամ ուղիղ, ուսկից «ձաղկահեր[1]» ածականը. և կամ անոր հակառակը՝ գանգուր[2], ուսկից «գանգրահեր[3]», «գանգրագեղ[4]» և այլն։ Իսկ արուեստը կը բաժնէր զանոնք խուրձ խուրձ՝ առ ի կախ, գոուզ ձև մը տալով, և կը կոչուէին նոյնպէս՝ գոյականաբար՝ գանգուրք արանց վրայ[5], և կամ ցցունք՝ արանց ու մանկանց[6] և կանանց[7] վրայ։ Կանանցն ունէին նաև իրենց յատուկ կոչումները. ծամք[8], որոյ արուեստականութեան իմաստը զգալի է «ծամս գործել[9]» բացատրութենէն, և «ծամածուռ» բառէն, ինչպէս «շաւիղք ծամածուռք[10]», որ է ծամերու պէս ծուռ կամ ոլոր. և խոպոպիք՝[11] որ նոյնպէս կանանց համար գործածուած է։*

*Մեր նախնիք, — հոս արանց մասին միայն կը խօսինք, — սովորաբար մազերն ու մօրուքը չէին թողուր որ աճին խառնիխուռն և անչափ. այլ ժամանակին համեմատ կը պահէին զանոնք չափաւոր երկայնութեան մը մէջ, կտրելով աւելորդը. և այս գործողութիւնն է՝ զոր ոսկեղարը կը կոչէր «փոքրել զհերս[12]» կամ «զմօրուս[13]», որ կը նշանակէ կարճեցնել, դատելով հայ բառին արմատէն, և միանգամայն Հրէից հերաւորութենէն ու մօրուանութենէն[14], ուսկից թելադրուած հայ թարգմանիչը՝ կը գործածէ այդ բայը ս. Գրոց ծանօթ տեղերուն մէջ։ Աղօր իմաստն աւելի ցայտուն է Ոսկեբերանի քով, որ կ'ըսէ՝ թէ «զհերդ փոքրես», և ապա կը հարցնես՝ թէ սափրիչը «գեղեցիկս զգիսակսդ յօրինեաց[15]», զորս կը պահէ դեռ յետ փոքրելուն։*

*Երբեմն խոր կը կտրէին մազերը. և այս կը կոչուէր «խզել զհերսն[16]», զոր արդի հայերէնը խուզել կ'ըսէ նոյն իմաստով, կամ պահլաւահայերէն «վիրալ[17]», Փաւստոսէ երկուքն ալ միանգամայն գործածուած մի և նոյն պարագայի մէջ մեծին Ներսեսի վրայ, ուստի և յայտնապէս հոմանիշ իրարու։ Կ'ըսուէր նաև «կտրել զվարս» կամ «զհերս[18]», նոյնպէս պահուած Ս. Ղազարու հին մաշտոցին մէջ ալ ԺԱ դարէն. որոյ փոխան գործածուած կը գտնենք և անոր հոմանիշը՝ «հատանել զգիսակս[19]», «զգէս[20]» կամ «զհերսն[21]»։*

1. Սբր. 117։ — 2. Եփր. ի Հկզ։ — 3. Սրբ. 117։ — 4. Փաւս. 70։ — 5. Ոսկ. Մտթ. Ա. 58։ — 6. Ղևտ. ԺԹ, 27. Փաւս. 253։ — 7. Գ. Մակ. Դ, 6։ — 8. Ոսկ. Թղթ. Ա, 604, 835։ — 9. Անդ. 659։ — 10. Պտմ. Աղ։ — 11. Խոր. Բ, կզ. Վրդ. Թիւ, ԾԴ։ — 12. Ծննդ. ԽԱ, 14. Բ Թագ. ԺԴ, 26. Գրծ. ԺԸ, 18. Ա Կոր. ԺԱ, 6։ — 13. Բ Թագ. ԺԹ, 24. չիք ի յն։ — 14. Անդ՝ Ժ, 4-6։ — 15. Ոսկ. Մտթ. Ա, 58։ — 16. Փաւս. 70. Եզեկ. ԻԳ, 34։ — 17. Փաւս. 70. պհլ. վիրայամ. Hüb. 247։ — 18. Յոբ, Ա, 20. Երեմ. Է, 29. Եղիշ. 191. Սեբ. 127. ուսկից «կտուրք խաչանց», որ է խուզել բուրդը. Ծննդ. ԼԱ, 19 ևն։ — 19. Եղիշ. 193։ — 20. Լմբ. Պտ. 46, 89։ — 21. Մշտ. 1345ի։

*Պիտի տեսնենք երբեմն ալ՝ որ մորթին հաւասար կը մաքրէին մազը (մասամբ) և մօրուսը, որուն հին լեզուն կ'ըսէր «գիրծուլ զմազ[1]», «զհերս[2]», «զգլուխ[3]» կամ «զմօրուս[4]». և որոյ իմաստը յոյն բնագրէն զատ կը ճշդուի նաև Դատաւորաց գրոց մէջ, որ նոյն բայը կը կապէ «ածելւոյն» հետ գլխին վրայ[5]։ Փիլոնի Թարգմանիչը, Ե դարու, նոյն տեղւոյն մէջ կը գործածէ սափրել հոմանիշը[6], ծագած ասորական արմատէն[7]. զոր կը գտնենք նաև Լաստիվերտցւոյն քով՝ նոյն Սամփսոնի հերաց համար[8], և ԺԱ դարու մաշտոցին մէջ, սարկաւագին ու կրօնաւորին հերակտրութեան մասին, զոր Լամբրոնացին ալ կը կրկնէ և աւելի կը ճշդէ, իմանալով ամբողջական ջնջումն հերաց[9]։ Երրորդ հոմանիշ մ'է «սրբել զմօրուս[10]», ուր յոյնը կ'ըսէ բառնալ։ Գործածուած է նաև «յապաւել» լայնաբար մի և նոյն իմաստով. ինչպէս Սամփսոնի վարսն «ի պտղնկէն յապաւեալ լինէր[11].» և մօրուաց համար կը կարդանք՝ «յապաւելոցն զերեսօք» կամ «զյապաւեալսն առ երեսօք[12]», որ կը նշանակէ գերծած, մինչ Լամբրոնացին «զհերսն յապաւել» ըսելով՝ կ'իմանայ վիրալ պարզապէս[13]։ Դարձեալ յոյն բնագրին գերծելու իմաստով ըսուած է նաև՝ «ամենայն մօրուք խզեցին[14]», հակառակ այս բառին սովորական նշանակութեան։*

*Մօրուքն անճեցնելու պարագային՝ պերճնչտք կամ պերճիշտք[15] ալ անոր հաւասար իմաստ կը վայելէին, որ բացատրուած է «զընչովք առնել» դարձուածով[16]. այսինքն քթի ծակերուն առջև զարդարել, ուր բնագիրը կ'ըսէ «առնել զպերճուիշտս»։ Հետևաբար հայերէնին յատուկ բացատրութիւն մ'է հոս։*

*Վարսից ու մօրուաց հոգածութիւնը, ինչպէս հանդերձիցը, ամէն մարդու գործը չէր. այլ կային ուրոյն վարսավիրայք[17], ծանօթ արմատներէն բաղդուած անուն, զոր Փիլոնի Թարգմանիչը խառն կը գործածէ իւր հոմանիշ սափրչին հետ[18]։ Ասոնք այդ աշխատութիւնը կը կատարէին յայտնի գործւով՝ ածելի կոչուած[19] և կամ սրբիչ[20], ծագած յիշեալ «սրբել» բայէն, և ազդեցութեամբ յունարէն բնագրին, որ նոյնպէս յառաջ կու գայ՝ գերծուլ և մաքրել նշանակող* ξύω

1. Ղևտ. ԺԴ, 8, 9։ — 2. Ոսկ. Մտթ. Ա, 569։ — 3. Փաւս. 252–3. Ես. Է, 20. Երեմ. ԽԸ, 37 ևն։ — 4. Բ Թագ. Ժ, 5. Երեմ. ԽԱ, 5։ — 5. Դատ. ԺԶ, 17. Ոսկ. Մտթ. Բ, 569։ — 6. Փիլ. Նխ. 550։ — 7. Hüb. 316։ — 8. Լաստ. 97։ — 9. Լմբ. Պտ. 142։ — 10. Ես. Ը, 20։ — 11. Եղիշ. 192, 196։ — 12. Երեմ. Թ, 26. ԽԹ, 32։ — 13. Լմբ. Պտ. 142։ — 14. Երեմ. ԽԸ, 37։ — 15. Ոսկ. Թղթ. Ա, 330, 605 (յն. կզակ)։ — 16. Բ Թագ. ԺԹ, 24։ — 17. Դատ. ԺԶ, 19. Եզեկ. Ե, 1. Ոսկ. Մտթ. Ա, 58։ — 18. Փիլ. Նխ. 550։ — 19. Թիւք, Ը, 7. Դատ. ԺԶ, 17. *ծագած ածել բայէն՝ որ կ'երևի սա բացատրութեան մէջ. «սրբիչ մի՛ ածիցէ զգլխով իւրով».* Թիւք, Զ, 5. *տես և* Եզեկ. Ե, 13։ — 20. Թիւք, Զ, 2, 5. Եզեկ. Ե, 13։

*բայէն։ Հին էր այս սուր դանակը՝ զանազան ձևերով[1], և յատուկ գերծելու։ Իսկ խզելու համար՝ նախնիք ունէին կտրոցը, որով ԺԱ դարու մաշտոցին մէջ վանահայրն արարողական հատումը կ'ընէ հեքաց. և զոր միջին դարն արաբացուց մկրատ բառով։ Ցառաջագոյն ալ՝ ինչպէս այժմ՝ կը կազմուէր գործիս զոյգ մը դանակէ, բայց մէկ ծայրէն կպած իրարու՝ նման ունելւոյ[2]։*

6. *Արքունեաց մէջ։ — Շատ մեծ էր հոս հանդերձից կարևորութիւնը՝ քան միւս դասակարգաց մէջ։ Անոնց ճոխութիւնն ու բազմութիւնը, – արդիւնք նաև այն հին սովորութեան, որով արքայն զգեստուց պարգևներ կու տար, – կը պահանջէր առանձին վայր մը, զոր հայ լեզուն Արշակունեաց օրով կը կոչէր «տուն պատմուճակացն... այս ինքն ուր թագ արքունի դնէին». և թագին հետ նաև բոլոր հանդերձները, որով զգեցումն ալ հոն կը կատարուէր։ Այս պատճառաւ Փաւստոս զայն խառն կը կոչէ նաև «տուն թագաց» և «վանք պատմուճակաց[4]»։*

*Թանկագին զգեստները՝ թէ արքունեաց և թէ ազնուականաց՝ չէին կրնար բաց պահուիլ հանդերձատան մէջ, նշաւակ փոշւոյ և ցեցի. այլ ծալուած՝ կ'ամփոփուէին խնամով սապատներու մէջ, կոչուած «սապատք հանդերձից[5]», ինչպէս և Ցովհաննէս կթղ. կը յիշէ՝ «սապատք զարդուց» հայ տիկնանց[6]։ Եւ Սարգիս վրդ. կը հաստատէ նոյնը, այսպէս խօսելով մեծատանց. «Զհանդերձսն զոր սիրէիքն և յարկեղսն պահէիք». և իբր մասն խնամոց՝ «ստէպ ստէպ թօթափէիք»[7]. Ոսկեբերանի ըսածին պէս՝ թէ մեծատունք «ստէպ թօթափեն զհանդերձսն, զի մի ցեցակեր մեցամէս լինիցին[8]». կամ «ցեցակեր և մեցամեցս առնել[9]»։*

*Արքունիքն իւր ամէն ծառայութեանց և հանդերձատան մէջ ալ զատ զատ պաշտօնեաներ ունէր, որոցմէ վերջինը ս. Գրոց թարգմանչէն կը կոչուի պատմուճակ, ուր յոյն բնագիրը «հաղերձապահ» կը գրէ[10]։ Կը ծագի պահլաւահայ պատմուճանէն[11]. և կը նշանակէ իբր պատմուճ(ան)-ակ, հսկող պատմուճանաց վրայ։ Եւ այս անունէն կը ծագի նախորդ «տուն կամ վանք պատմուճակացն», պաշտօնէէն՝ և ոչ հանդերձէն, զի վանք՝ բնակարանին կ'ըսէ հին հայերէնը, և ոչ շտեմարանին։*

1. Dar. *Novacula*. — 2. Ցայս. և Գանձ ի Հյկզ. արաբ. միկրատ. Hüb. 271. — 3. Dar. *Forfex*. — 4. Փաւս. 204, 205. — 5. Ոսկ. Թղթ. Ա, 781. յն. պահարան. — 6. Ցհ. կթ. 286. — 7. Սրգ. 187. — 8. Ոսկ. Մտթ. Բ, 676. — 9. Ոսկ. Թղթ. Ա, 690. յն. մի բառ. Գրելի է մեցամես, մեց և մեսել բառերէն. անդ՝ 852. — 10. Դ Թագ. ԻԲ, 14. — 11. Hüb. 224.

*Բարձր էր հանդերձապետին պատիւը, և իւր գործակիցներով միանգամայն կը զգեցնէր թագաւորը։ Խորենացին մինչև ի Վաղարշակ կը հանէ անոնց հաստատութիւնը, գրելով՝ թէ յիշեալը կը կարգէ «զգեցուցանողս իւր՝ զձեռէս (իւր ձեռաց ներքև ապրող ու սպասաւորողներն[1]) ի զաւակաց քանանացւոց. անուն կոչէ ազգին Գնթունիս[2]». զոր կ'երևի թէ պատմիչս կը հանէ ցիեղ արմատէն, իբր օղերը պահող կամ դնող արքայի ականջին. մասը փոխանակ ամբողջ տարազին առնուած։*

*Այդ պաշտօնին գործնական օրինակն ալ ունինք յանձին Դրաստամատ մարդպետի, որ Անյուշ բերդին մէջ առ ի չգոյէ բուն պաշտօնէի՝ ինքնին կը կատարէ նոյն գործն Արշակ արքային վրայ։ Լուաց, օծեց և «ագոյց նմա պատմուճան ազնիւ», կ'ըսէ Փաւստոս[3]. Թէև շատ բարձր էր իւր աստիճանը, և հետն ունէր ուրիշ սպասաւորներ ևս, որոց չի թողուր նոյն ծառայութիւնը կատարել։*

*Արշակունեաց օրով կար նաև ուրիշ կարևոր պաշտօնեայ մը, «սենեկապետ արքային», որոյ գործն էր հոգաբարձութիւն արքունի տան. և միանգամայն կապ մ'ունէր թագաւորական տարազին հետ, հանդիսական առթից մէջ անոր քով բռնելով անոր գօտին ու սուրը։ Այսպիսի էր մեծն Ներսէս նախ քան հայրապետանալը. «կայր ի սպասու թագաւորին (Արշակայ) մօտ ի սնարս արքային», և անոր շքեղ սուսերն ու հարուստ կամարն «ի սպասու նորա բարձեալ ունէր[4]»։ — Նոյն պաշտօնէին կը հանդիպինք նաև Ռուբինեանց ժամանակ, եւրոպական ծագմամբ և անուամբ, որ է ջամբռլայն[5]։ Սա էր «պահապան նշանաց և զգեստուց նորին (թագաւորին), յօրինիչ հանդիսից, համարակալ գանձուց և այլն[6]»։ Թագաւորօրհնէից մէջ՝ արարողութեան սկիզբը «ջամբռլայն թագաւորական զգեստիւ» կանգնած կը մնար[7]. մինչ սենեսչալը[8], որ էր հազարապետ արքունի տան, նոյն պահուն կը բռնէր թագաւորական շուշանազլուխ գաւազանը[9]։ Կրնանք հետևցնել՝ որ ուրիշ հանդիսական առթից մէջ ալ նոյնպէս մականակիր էր սա։*

*Աւելի բարձր պաշտօն մ'ունէր Արշակունեաց օրերը Բագրատունի իշխանը՝ թագադիր կոչուած. այն է՝ նորընտիր արքայի գլխին դնել թագը և պսակել զայն։ Զինքը պիտի տեսնենք յետոյ իւր կարգին և իւր սեպհական տարազով։ — Իսկ Ռուբինեանց ժամանակ*

1. Հյկզ. մեկնութիւնը՝ «պահպանակ ձեռաց, թաթպան», անյարմար է տեղւոյս։ — 2. Խոր. Բ, գ։ — 3. Փաւս. 207։ — 4. Յոյն՝ 68, 69։ — 5. Գղ. chambellan, սենեկապետ։ — 6. Սիս. 485։ — 7. Անդ՝ 472։ — 8. Գղ. Sénéchal, սեղանադիր։ — 9. Սիս. 472։

թագադիր կը կոչուէր այն պաշտօնեայն, որ արքունի հանդիսական զգեստաւորման պահուն թագը կը դնէր անոր գլխին։ Թագաւորի օծման սկիզբը կը յիշուի «Թագադիրն Թագաւ» կանգնած. բայց այս առթիւ եպիսկոպոսք կը դնէին թագը[1]։ Աւելի յայտնի օրինակ մ'ալ կայ, Կոստանդին՝ Լամբրոնի իշխանը, որ «Թագադիր» կը կարգուի Ա. Հեթմոյ[2]։

7. Պարգև հանդերձից։ — Վերև ակնարկեցի թագաւորին կողմանէ զգեստներ նուիրելու սովորութեան, որ ծանօթ էր Հռովմայեցւոց[3], Պարսից և Հայոց. և կը կատարուէր սովորաբար խնճոյից պահուն[4], և կամ կը յղուէր՝ եթէ պարգևատուն հեռի էր։ Այսպէս Պարսից Շապուհ արքայն՝ Հայոց Զարմանդուխտ թագուհւոյն կը ղրկէ թագ և պատմուճան, թագեր՝ Արշակ ու Վաղարշակ արքայորդւոց, և պատմուճան, սամոյր և այլն Մանուէլ սպարապետին[5]։ Վասակ մարզպանը ստացած էր Յազկերտէ «զպատուական հանդերձն», որով գնաց Պարսից դուռը[6], և որոյ նկարագիրը պիտի տեսնենք իր կարգին։ Նոյն արքային հրամանաւ՝ մեր և դաշնակից միւս նախարարներն ու սեպուհներն ալ «ի հանդերձս թագաւորականս զարդարէին՝» անոնց կեղծ ուրացութեան առթիւ ու ճաշի ժամանակ[7]։

Նոյնը կար՝ ըսինք՝ և մեր քով։ Արդարև Պապ արքայն ընթրիք մը կու տայ մեր իշխանաց, և նոյն պահուն կը հրամայէ «տանել պատմուճան ագուցանել» Դղակ մարդպետին՝ հանդերձատան մէջ. և զգեցուցին «դրաստս և վարտիս[8]»։ Ագաթանգեղոս նոյն սովորութիւնը կը հաստատէ, այլաբանօրէն ըսելով Քրիստոսի համար՝ թէ ի ճաշ կը հրաւիրէ իր հաւատացեալքը, և ինքնին մէջտեղ ելնելով՝ «պարգևատու լինի իւրոցն արժանաւորաց[9]». և այդ պարգևը զգեստն է միշտ կամ գլխաւորապէս։ Այսքան մեծ էր հանդերձից յարգն արքունական սովորութեանց մէջ։

Յետ այս ընդհանուր ծանօթութեանց՝ անցնինք տեսնել հայ տարազն իր զանազան շրջանաց ու ձևերուն մէջ։

1. Սիս. 472, 474։ — 2. Կիր. 157։ — 3. Dar. I, 1280, 322։ — 4. Ճաշեր, 190–2։ — 5. Փաւս. 245։ — 6. Եղիշ. 106։ — 7. Փրպ. 154։ — 8. Փաւս. 204։ — 9. Ագթ. 424-5։

# ԳԼՈՒԽ Բ

## ՈՒՐԱՐՏԵԱՆ ՇՐՋԱՆ (Ա)

### Ա. ՆԿԱՐԱԳԻՐԸ

Մեզ ծանօթ պատմական շրջաններէն երիցագոյնն է այս, զոր կրնայինք կոչել նաև ասորեստանեան. և որոյ մասին տեղեկատուք՝ ոչ հայ և ոչ յոյն պատմագիրք են, այլ անոր ժամանակակից ասորեստանեայ արուեստը։ Այդ միջոցին, յորում մեր աշխարհը փոխան Հայաստանի կամ Արմենիայի՝ Ուրարտու կը կոչուէր, — որ յետոյ պիտի դառնար Արարատ, — Ասորեստանեայց հզօր պետութիւնը, հաստատուած Տիգրիսի ափանց վրայ, և պարած մինչև Է դարու վերջերը (Ն. Ք.), իրեն հարկատու ունէր զայն. որ մերթ բարեկամ ու մերթ ապստամբ, ապարէզ կը դառնար անոնց բանակաց ապատակութեանց, անխնայ աւերմանց, և կողոպտմանց իւր հարստութեան և արուեստական գանձերուն, որոցմով կը հաստատէր իւր քաղաքակրթութիւնը, և կը պարծէր ու կը մրցէր յափշտակողաց հետ։

Այդ շարժմանց և ընդհարմանց յիշատակներն արձանագրեցին ու քանդակեցին Ասորեստանեայց վէս թագաւորք, այսու իրենց տուած միասուց հատուցումն ընելով գէթ մեր պատմութեան։ Ադոնց հայկական բաժինը համառօտեց եւրոպական աղբիւրներէ, մաս մ'ալ իւր կողմանէ յերիւրելով, Յովսէփ վրդ. Սանտալճեան[1], աւելի մանրամասնօրէն քան զուրիշներ։

1. — Ասորեստանեայց քանդակները սովորաբար գրութիւն չունին միասին. այնպէս որ հարկ է ձեւերէն գուշակել անոնց նըշանակութիւնը և ներկայացուած ցեղերը։ Սանտալճեան անոցմէ երեք քանդակ հայացուց, և նկարագրեց անոնց մէջ երևած տարազները։ Առաջինն է Սարդանապաղի վերաշինած սենեքերիմեան պալատան քանդակներէն մին, զոր նախ հրատարակեց Լէարդ[2]. և որ կը ներ-

1. Սանտ. — 2. Lay. I, տխ. 68։

կայացնէ ասորեստանեան յարձակումը քաղաքի մը վրայ, և գերեվարութիւն նոյն քաղաքացւոց։ Հրատարակիչը չճշդեց ազգն ու քաղաքը. Հոմմէլ յառաջ բերաւ նոյնը[1], հայ ենթադրելով զայն հարցականով մը. իսկ Սանտալճեան բոլորովին հայացուց, որպէս թէ լինէին գերիներ՝ «բռնուած Ասորեստանցիներէն՝ Նայիրի գաւառաց մէջ[2]»։ — Սակայն հող զօրաց գլխարացութիւնը՝ նոյն իսկ կռուի պահուն ալ, և անոնց երկայնաձև գոգաւոր վահանները՝ կը հակառակին ուրարտեան սովորութեան զոր պիտի տեսնենք, և կը հերքեն անոնց ուրարտացութիւնը։

Նոյն հեղինակն ազգային յիշատակարանքը բազմապատկելու տենչէն՝ նաև Բոտտայի հրատարակութեան մէջ[3] կարծեց տեսնել[4] հայ քանդակ մը, որոյ նիւթն է Մուձաձիրի տաճարին կողոպտման տեսարանը Սարգոնի զօրքերէն. և անոր մօտ ընտանեկան պատկեր մը՝ երկրորդ շէնքի մը տանեաց վրայ, ուր տիկին մը հանդարտ նստած՝ սպասաւորութիւն կ'ընդունի նաժիշտներէ։ Գաղիացի հրատարակիչը սակայն բնաւ չէր խորհած այդ տեսարանաց հայութեան վրայ[5]։ — Մուձաձիր, զատ երկիր ու թագաւորութիւն, իւր ժողովուրդն ուրարտացիք չէին, ինչպէս կը տեսնենք քիչ յետոյ։ Իսկ անոնց յարակից տանեաց խաղաղ տեսարանը բնաւ կապ չունի նոյն քաղաքի առման հետ, որոյ բնակիչք, կը գրէ Սարգոն, Ասորեստանեայց յարձակման պահուն «ելած տանեաց վրայ, դառնապէս կ'արտասուէին, և փրկելու համար իրենց կեանքը՝ յափսիթերս սողացին[6]»։ Իրարմէ անկախ տեսարաններ են աղոնք՝ պատահմամբ եկած իրարու մօտ քանդակողին կողմանէ, իբր տեսակ մը հաւաքածոյ պատմական անցից։

Սանտալճեան կը յիշէ պատկեր մ'ալ Բ Սաղմանասարի պղնձեայ քանդակներէն, որ կը ներկայացնէ գերիներ Արամայ զօրքերէն[7]։ Թէև Սաղմանասարի քանդակաց մէջ կան ուրարտեան ձևեր, բայց մեր այդ պատմչին նկարագրէն շատ հեռի են, որով յայտնի է՝ թէ նա տեսած իսկ չէ զանոնք։

Հոմմէլ ինքնին յառաջ կը բերէ ուրիշ չորս քանդակներ՝ Լոնդրայի Թանգարանին Թուխ կոթողէն, որ կը ներկայացնեն անանոց ընծայաբերութիւնք Մուսրի երկրէն[8], զոր անգամ մը կը դնէ «արևմտեան Հայաստանի մէջ[9]», և այլուր՝ «Հայաստանէն գնալով յառաջ դէպ արևմուտք, արևմտեան Եփրատայ երկու ափանց վրայ[10]»։

1. Hom. 718։ — 2. Սանտ. Ա, 268։ — 3. Bot. II. տխ. 141։ — 4. Սանտ. 268-9։ — 5. Bot. V, էջ 177։ — 6. Thur. տող 344-5։ — 7. Սանտ. 288։ — 8. Hom. 604-5։ — 9. Նոյն՝ 591։ — 10. Նոյն՝ 602։

Ցայտնի է բացատրութենէս՝ որ Մուսրի այնքան ծանօթ վայր մը չէ ասորեստանեան արձանագրութեանց մէջ, ինչպէս հասարակօրէն անորոշ են միւս աշխարհագրական անուանք ևս։ Ոչ ալ մեք կրնանք վստահիլ այդ չորս պատկերաց ուրարտականութեան վրայ։

2. — Մեզ աւելի դրական աղբիւրներ հարկաւոր են՝ ժամանակիս տարազին քննութեան համար, և մեք ունինք արդէն զանոնք՝ առանց կարօտելու ենթադրական կամ բռնազբօս ձևերու։ Ես բախտ ունեցայ տեսնելու ամբողջական ու լաւագոյն հրատարակութիւնը Սաղմանասարեան քանդակաց՝ պղնձի գօտիներու վրայ[1], ազուցուած Պալաւատի վանդակադրանց, որ այժմ կը պահուին Բրիտանական Թանգարանի մէջ։ Ադոնք կ'ելնեն ցկէս Թ դարու (Ն. Ք.), և առաւելութիւնն ունին կրելու նաև իրենց գրաւոր բացատրութիւնը։ Ադոնց մէջ կան ուրարտեան տեսարանք, որ կը ներկայացնեն Սաղմանասարի պատերազմն Արամ Թագաւորին դէմ՝ 860ին և 857ին։ Ադոնց միոյն նիւթն է Թշնամի հետևակաց և այրուձիոյն յարձակումն Ադդուրի ժայռոտ լերան և անոր մօտակայ Արզաշկու քաղաքին վրայ՝ որ կ'այրի։ Այս տեղ բռնաւորը կը գրէ բառ առ բառ. «Զքաղաքն Արամայ ուրարտացւոյ առի ես»։

Ոչ Թուիք, ոչ երևակայութիւն կայ հոս. այլ կը գտնենք Ասորեստանեայց դէմ կանգնած ուրարտեան զինուորութիւնն իւր սեպհական տարազով, որ եթէ իւր գլխաւոր մասանց մէջ կը կրէ ասորականին ազդեցութիւնը, իբր զօրաւորագոյն ազգին, միանգամայն ինչ ինչ մասերով կ'որոշուի անորմէ և միւս ժամանակակից ցեղերէն, ցուցընելով մեզ Ուրարտացւոց անկախ նկարագիրն ինչպէս քաղաքականութեան՝ նոյնպէս և զինուորութեան մէջ։ Ասոնք կ'երևին իրենց սեպհական ձևով նաև յիշեալ տեսարանաց շարունակութեան մէջ, ուր թէ կը կռուին և թէ գերի կը տարուին։ Եւ այդ հագուստը թէև զինուորական, բայց կ'առաջնորդէ մեզ ճանաչելու քաղաքականն ալ։

Պեղումներ կատարեցին նաև Գերմանացիք ուրարտեան ամրոցի մը մէջ ի Թոփրագգալէ՝ Վանայ մօտ[2], որոնք տուին մեզ ուրիշ բնիկ ուրարտական տարրեր ևս՝ անոնց տարազին ուսումնասիրութեան համար, պահուած այժմ ի Բերլին, և զորս պիտի կոչեմ իրենց կարգին։ Անոնց մին, վահան մը զոր պիտի տեսնենք, ուրարտեան անուն մ'ալ կը կրէ՝ ի հաստատութիւն ադոնց վաւերականութեան։

Վերջապէս կարևոր յիշատակարան մ'է, գրով՝ ոչ ձևով, նաև

1. King և Del. — 2. Mül. 193-4.

*Ասորեստանի Սարգոն արքայի վերոյիշեալ «Նամակն առ Ասուր աստուած՝» որ կը պահուի Փարիզի թանգարանին մէջ, և հրատարակուած է թարգմանութեամբ հանդերձ[1]։ Գոռոզ աշխարհակալն 714ին արշաւանք մը կը կատարէ, որոյ նկարագիրն է նամակդ, և այդ առթիւ կը գրաւէ Ուրարտուի սահմանակից և հարկատու ծանօթ Մուծածիր գաւառը. փոքրիկ թագաւորութիւն մը, որոյ նշանաւոր մեհեանէն, նուիրեալ Խալդիա աստուածին, կը տանի մեծ կողոպուտ մը, որոյ մէջ կային նաև Ուրարտուի թագաւորաց արձաններ[2]. և աստուծոյն ձեռքը տուած էին նոյն իսկ «Ուրարտուի արքայական գաւազանը[3]». և Խալդիա, կ'ըսէ, էր «պաշտպան Ուրարտուի[4]», որոյ թագաւորք կ'երթային անոր առջև ծօնելու[5]։ Այսքան սերտ էր Մուծածիրի կապն Ուրարտուի հետ։ Այս նամակն ալ մեզ առաջնորդ կը հանդիսանայ նման նախորդաց։*

3. — *Ես չեմ մօտենար այն կնճռոտ խնդրոյն՝ թէ Ուրարտացիք արդարև մեր նախահա՞րքն էին, թէ ուրիշ ցեղ մը։ Ասոր լուծումը կը թողում պատմագիտաց ու ժամանակին։ Ես այսպէս կը խորհիմ՝ թէ այդ ժողովուրդն եթէ օտար իսկ ենթադրուի, կասկած չկայ՝ որ հայ ցեղը գաղթելով ի Հայաստան, չանճիտեց բնիկները, այլ զանոնք իւր հետ ձուլեց։ Ուստի այս գաղափարով ալ Ուրարտացիք մեր նախնիքն են։ Կ'արժէ ուշ դարձնել նաև այն բազմաթիւ տոհմային անուանց վրայ՝ հասարակ Ուրարտացւոց և հին Հայոց, զորս կը թուէ Գ. Բասմաջեան[6]։ Որով անոնց տարազն արժանի է մեր ուշադրութեան ու քննութեան՝ հաւասար այլոց. և զոր կ'անցնինք նկատել՝ զգեցողաց աստիճանին ու կարևորութեան կարգաւ։*

## Բ. ԹԱԳԱՒՈՐԸ

*Հնութիւնը չէ տուած մեզ տակաւին որ և է յիշատակարան, որոյ վրայ գտնուի Ուրարտուի թագաւորական կենդանագիր մը։ Սարգոնի նամակն է միայն՝ որ մեզ կը յիշեցնէ հայ արքունի տարազին ինչ ինչ մասունքը. և մեք հարկադրուած ենք շատանալու ադոցմով։ Հայագի թանգարանը սակայն կը պահէ պատկերաքանդակ գլանիկ մը, որոյ վրայ գրուած է. «Կնիք Ուրզանայի արքայի քաղաքին Մուծածիրի[7]», որոյ ձևը նոյն թանգարանի ցուցակէն, զոր շնորհեց ինձ տեսչութիւնը, յառաջ կը բերեմ. Ձև 1։*

1. Thur. — 2. Նոյն, տող 400, 402, 403։ — 3. Նոյն՝ 342։ — 4. Նոյն՝ 347։ — 5. Նոյն՝ 398։ — 6. Բասմ. 56։ — 7. Men. 56–7, տխ. VII, 32։

*Քանդակին առնապատկերը, կ'ըսէ հրատարակիչը, սարգոնեան տոհմի ասորական արքայից զգեստը կը կրէ։ Մեր կնքոյն ձևն եթէ թագաւոր մ'է, օտար մը չի կրնար ըլլալ, այլ կնքոյն տէրն իսկ, որոյ աշխարհին սեղմ կապն Ուրարտուի հետ նկատելով, կրնանք զայն համեմատութեան եզր առնուլ ուրարտեան արքային հետ։ Անոր խորհրդաւոր թևերը կ'երևին յաճախ, երկու կամ չորս թուով, նաև Ասորեստանի թագաւորաց վրայ՝ անոնց քանդակաց մէջ[1]. և քաղ-*



Ձև 1. կնիք Ուրզանայի (48 նզ.)

*դէական կնքոյ մը, ուր երկու թագաւորք Ուրզանայի ճիշդ թևերն ու զգեստը կը կրեն, բաց ի գմբեթարդ սաղաւարտէն՝ զոր ունին[2], և որոց կը նմանին նաև Բէլ աստուածն և ուրիշ մը[3]։ Նաև Բաբլոն կու տայ երկու կնիքներ՝ Ուրզանայի շրջանէն ու յար և նման ասոր տարազով ու թևերով[4]։*

*1. Վարսերը, որ նախ մեր ուշադրութիւնը կը գրաւեն մարմնոյն ամենէն յարգի մասին՝ գլխոյն վրայ, արևելեան հին քաղաքակրթութեան մէջ նոյնքան խնամք կը վայելէին արանց կողմանէ՝ ինչպէս*

1. Bot. I, *տխ.* 25–28. — 2. Lay. 609. Masp. I, 733. — 3. Masp. I, 541, 557. — 4. Bab. Grav. 43, 50.

կանանց։ Ժամանակիս թագաւորք, ինչպէս Ասորեստանեայք և Ուրզանա՝ որով և Ուրարտացիք՝ կ'աճեցնէին զանոնք, և հաւասարաչափ գանգուրներ կազմած՝ կը կախէին ծոծրակէն վար։ Այս ոճը հաւասար է ասորեստանեան քանդակի մը մէջ՝ արքային, թագուհւոյն ու պալատականաց վրայ, բոլորը բացագլուխ[1]։ Նոյնը կը հաստատէ և Սարգոն, գրելով՝ թէ Ուրարտուի թագաւորն Ուրսա երբ լսեց Մուձաձիրի աւերումը, «պատառեց հանդերձները... խզեց վարսերը[2]», որոնք ուրեմն երկայն էին։

2. Մօրուքը նոյնպէս կ'աճեցնէին Ուրարտուի թագաւորք՝ ըստ ընդհանուր սովորութեան. բայց հաւանօրէն չափաւոր երկարութեամբ մը, ինչպէս կ'երեւի Ուրզանայի վրայ, մինչ ասորեստանցի իշխեցողք ցոյց կու տան աւելի երկար ու վայելուչ մօրուքներ։ Ուրզանայի կարճութիւնը կարելի է արդիւնք լինել նաև ձևի այն ընդհանուր զանազանութեան, որ կը նշմարուի ասորեստանեան և ուրարտեան ժողովրդոց մէջ ալ, ինչպէս պիտի տեսնենք։

3. Ապարօշ մը, որ էր ժապաւինաձև կապ, կը մեկնէր ճակատէն և կ'երթար կը հանգուցուէր գլխին ետև, ի կախ թողլով երկար ծայրեր, և կը զսպէր վարսերը։ Զայս կը տեսնենք Եգիպտոսի փարաւոններու[3] և անոնց որդւոց վրայ[4]. Նոյնպէս Ասորեստանի թագաւորաց՝ երբ բացագլուխ են[5], և անոնց իշխանաց՝ քան զարքունականը նուազ հարուստ, մինչ ուրիշ պաշտօնեայք որ ներկայ են հոն՝ չունին զայն։ Կը հետևի՝ որ վերապահեալ զարդ մ'էր, նոյն ոճով գործածուած և յիշուած նաև Ուրարտացւոց քով. ինչպէս կը գրէ Սարգոն՝ թէ Ուրսա «խլեց ապարօշն» ի լուր վերոյիշեալ գուժին։ Ասորեստանեայց արքայիցը ճակատին վրայ քիչ մ'աւելի լայն է քան կողմնակի, և համակ ծածկուած գոհարներով։ Հաւանօրէն նոյնպէս էր ուրարտականն ալ, դատելով միւս զարդերու նմանակցութենէն իրարու հետ։

4. Խոյրը՝ գլխին ամենէն հանդիսական ու շքեղ զարդն էր, յիշատակուած Սարգոնէ, որ Խալդիայի մեհենին մէջ կը գտնէ «արձան մ'Արգիշտեայ՝ արքային Ուրարտուի, որ գլխին դրած էր աստուածոց խոյրը, և աջ ձեռքով կ'օրհնէր[6]»։ Աստուածոց խուրին յատկանիշն էր աստեղազարդութիւնը, ինչպէս կը դիտէ նամակին թարգմանիչն ալ։ Սակայն այսքանը չի բաւեր մեզ՝ Արգիշտեայ խուրին ճիշդ ձևն իմանալու համար, որ Ասորեստանեայց դիցաբանութեան մէջ զանա-

1. Place, III, տխ. 57. — 2. Տող 411-12. — 3. Pris. II, տխ. 18, 64. — 4. Նոյն՝ տխ. 63. — 5. Place, III, տխ. 50, 53, 57. — 6. Տող 402.

*զան է[1]։ Կայ գլանաձևը, բաւական բարձր, աւարտած տերևանման քանդակեալ կեղծ ճառագայթներով, և ճակատին վրայ աստղ մը, ինչպէս Մարդուկ աստուածոյն է[2], որ կ'երևի համանուն արքայի գլխին ևս, և ասոր ստորոտը միայն շրջանակուած է աստղերով[3]։ Կայ նոյնը, վերին շուրթը թեթևակի քուանման կարկառուն, և ճակատին վրայ քանդակուած երկուստեք երեք երեք կամ աւելի կարգերով եղջերակերպ զարդեր, և կատարին՝ մեծ աստղ մը, ինչպէս կը տեսնենք աստուածոց խմբի մը վրայ՝ որ կ'օրհնեն աջով[4]։ Վերջապէս կայ սաղաւարտանման գմբեթարդը, ճակատին նոյն եղջիւրներով, և կատարին շուշանանման ծայր մը, ինչպէս Աշուր աստուծոյն և այլոց գլխին[5]։ Այս ձևերէն ո՞րն էր Արգիշտեայ դրածը, յայտնի չէ։ Բայց անոր յատուկ յիշատակութիւնը կրնայ վերաբերիլ աստեղ քան ձևին, որ Ասորեստանի թագաւորաց գլխին տարբեր էր նախորդներէն, կոնաձև, վերև նեղ, կտրուած, և աւարտած սեպանման յաւելուածոյ կատարով մը[6]. ինչպէս ի Ձև 2, որ կը ներկայացնէ զՇամսիրամման Դ, Բրիտանական թանգարանէն։*



Ձև 2. Շամշիրամման Դ

*Ըսի՝ թէ խոյրը կը դնէին հանդիսական առթիւ միայն։ Զայս կը հաստատէ Ուրսայի պարագայն, որ կը խզէ վարսերը, կը խլէ ապարօշը. և խուրի յիշատակութիւնը չկայ բօթին հանելու պահուն, որ սովորական ժամանակ մը կ'ենթադրէ, ուր խոյրը գլխին վրայ չէր գտնուեր։*

1. Jast. — 2. Նոյն՝ թ. 14. — 3. Նոյն՝ թ. 41. — 4. Նոյն՝ թ. 98. — 5. Նոյն՝ թ. 51, 56 ևն. — 6. Place, III, տխ. 27, 50, 51, 52 ևն.

5. *Հանգոյց բաշի կոչուած երէզ մը կը շրջապատէր գխոյրը ստորոտէն, լայնութեան կիսովն անոր փարելով և միւս կիսովը գլխին, որպէս զի խոյրը հաստատուն մնար. և յետակողմէն կապուելով՝ կը կախէր ծայրերը, ինչպէս կը տեսնենք Ասորեստանեայց վրայ*[1]*։ Չեմ տարակուսիր՝ որ Ուրարտեանք ալ ունէին զայդ, ինչպէս կը տեսնենք անոր շարունակութիւնը յաջորդ շրջանաց մէջ։*

6. *Գինդերը կամ ականջի օղերը զանազան ձևերով, կ'ամբողջացնէին գլխին զարդարանքն Ասորեստանի թագաւորաց վրայ*[2]*, ինչպէս և անոնց իշխանաց*[3]*. և որ կը յորդորեն զմեզ նկատել նաև Ուրարտացւոց վրայ, ըստ որում յետոյ ևս կը տեսնենք զանոնք հայ թագաւորաց ականջին։*

7. *Պատմուճանը գլխաւոր հագուստն էր թագաւորաց։ Ասորեստանեայց վրայ պճղնաւոր էր այն, ամփոփ, և կարճ թեզանեօք՝ որ արմկէն վեր կը մնան։ Ժանեկանման հարուստ դրուագներ՝ ձգուած զանազան ուղղութեամբ՝ կը ծածկեն զայն ամբողջովին։ Նոյնպէս է նաև Ուրզանայի վրայ։ Բայց հոս կրկին է այն. մին ներքին ու կարճ, որ կը հասնի մինչև ծնկները. և միւսն արտաքին ու պճղնաւոր, և առաջակողմէն բաց՝ դիւրացնելու համար քայլելը։ Ճոխաբար ասղնագործած, և երկուքն ալ եզերուած են ծոպերով։ Ուրարտուի թագաւորաց հագածը չէր կրնար տարբերիլ ասորմէ՝ գլխաւոր գծերուն մէջ։ Բայց կարելի է՝ որ Ասորեստանի թագաւորաց սովորաբար հագածին մէջ՝ պատմուճանին լանջերն իրարու վրայ շրջած և փակ ձև մը ստացած լինէին։*

8. *Կամար մը, լայն ու ճոխ, կը պրկէ Ուրզանայի փորիբաց պատմուճանը, ինչպէս է վերոյիշեալ ասորեստանեան կնքոց վրայ ևս. ուր Ասորեստանեայց միւս ձևերը քիչ անգամ կը ցուցնեն զայն, կ'երևի՝ պատմուճանը սովորաբար կապերով հաստատուած լինելով։ Ուրարտեանք գուցէ ըստ ժամանակին ունէին մէկ և միւս ոճը։*

9. *Ապարանջանք բազկաց՝ անպակաս են Եգիպտացւոց*[4]*, Ասորեստանեայց*[5] *և Հրէից*[6] *թագաւորաց վրայ, բնականապէս ոսկեղէն։ Նոյները կ'երևին նաև Ուրզանայի թաթից մօտ, և նոյն ինքն ուրարտեան ներքինւոյն վրայ* (Զև 3)*, որպէս զի համոզուինք՝ թէ մեր արքայք ալ զուրկ չէին կրնար լինել այդ զարդէն։*

10. *Մատանին, ծանօթ իւր ձևով ու պաշտօնով իբր կնիք՝ բոլոր քաղաքակիրթ ազգաց մէջ, անպակաս էր և հոս։ Սարգոնի*

1. Place. տխ. 27, 40, 45, 58։ — 2. Նոյն՝ տխ. 27, 28, 52, 58։ — 3. Perr. II, 548։ — 4. Pris. II, տխ. 2, 5, 18 եւն։ — 5. Place, III, տխ. 27, 28, 52, 53, 58. Perr. II, 548, 615։ — 6. Բ Թագ. Ա, 10։

*կողոպուտին մէջ կար նաև «վաւերական մատանի մը, սահմանեալ կատարելու Բագբարտուի՝ Խալդիայի կնոջ հրամանները, յորում յեռեալ էին գոհարներ[1]»։ Բայց անտարակոյս դիցուհւոյն երևակայական հրամաններէն յառաջ՝ կը վաւերացնէր զայն նուիրող ուրարտեան արքայից հրամանները։ Գլխուն վրայ, որ տափարակ քար մ'էր, կար արքունի նշանը, դէմքը կամ գիրը. և գոհարները կը նստէին անոր շուրջ։ Մատանին չի նշմարուիր Ասորեստանի թագաւորաց մատներուն վրայ[2]. կ'երևի՝ թէ գործածելու պահուն միայն կը դնէին։*

11. *Գաւազանն ալ յատուկ էր այս շրջանի արքայից։ Խալդիայի կուռքին ձեռքը՝ Մուձածիրի մեհենին մէջ՝ դրուած էր, կ'ըսէ Սարգոն, «Ուրարտուի թագաւորական գաւազանը[3]»։ Ասորեստանեայցը սովորաբար շատ կարճ էր ու գնդագլուխ[4], որոյ նմանը կ'երևի նաև փարաւոնի մը ձեռքը[5]։ Բայց Ասորեստանի տեարց ձեռքը՝ կը տեսնենք մերթ հասակաչափ երկայնն ալ առանց գնդի[6]։ Ուրարտականը հաւանօրէն կարճն էր՝ իբր աւելի ընդհանուր ձև. բայց ունէր իւր վրայ անծանօթ յատկանիշ մ'ալ, որ զայն «Ուրարտուի» արքային սեպհական կը ցուցնէր։*

12. *Սուրը՝ վերջին զարդն էր թագաւորաց, իբր նշան անոնց տիրապետող իշխանութեան։ Ուրզանա աւար կը թողու Սարգոնի՝ «մեծ ոսկեղէն սուր մը, իւր բազկին սուսերը, որոյ կշիռն էր* 26 *մնաս* 3/36 *ոսկի[7]»։ Արքայական սպառուոյ այս զէնքը՝ շատ բնական է որ նկատենք Ուրզանայի ուրարտացի վեհապետին մէջքին ևս, անպակաս նաև քաղաքական կենաց մէջ, ինչպէս կ'երևի Ասորեստանի թագաւորաց վրայ[8]։ Մանաւանդ թէ ոսկին այդ սրին միայն յատուկ էր. և երբ պէտք լինէր գործածել, երկաթեղենին կը դիմէին։ Ասորեստանցի մեծ աւազակն երբ յետ Մուձածիրի արշաւեց Ուրարտուի վրայ և աւերեց զայն, եղկելին Ուրսա, կ'ըսէ, «իւր երկաթեայ սրով ճեղքեց իւր սիրտն ինչպէս խոզի մը և վերջ դրաւ կենացը[9]»։*

*Այսչափ է թագաւորական տարազի նկատմամբ մեր ծանօթութիւնը։ Չեմ խօսիր թագուհեաց զգեստի մասին, որոյ համար առանձին տեղեկութիւն չունենալով՝ ենթադրութեանց պիտի ապաւինէինք։ Կարելի է անոր մերձաւոր գաղափարը կազմել Ասորեստանի դշխոյից ձևերէն, որ թագաւորականաց կը նմանին, առաջնորդուելով նաև ուրարտեան տիկնանց նկարագրէն՝ զոր պիտի տեսնենք։*

1. Տող 385։ — 2. Bot. I, 12, 14 ևն։ — 3. Տող 342։ — 4. Place. III, տխ. 27, 45, 48, 60 ևն։ — 5. Pris. II, տխ. 2։ — 6. Bot. I, տխ. 12, 14։ — 7. Տող 377։ — 8. Bot. I, տխ. 12, 14։ — 9. II, տող 139։

### Գ. ՊԱԼԱՏԱԿԱՆՔ

*Յետ Թագաւորին՝ մեր ակնարկը կը դառնայ զայն շրջապատող աւագանւոյն վրայ։ Ահա այս ունինք Թանկագին յիշատակարան մը, պահուած Բերլինի Թանգարանին մէջ. արձանիկ մը, մարմինը պղընձեայ և դէմքը սպիտակ քարէ, և հասակը 35, 5 հրդ. զոր ընծայեցին Թոփրագգալէի պեղումները։ Անոր պատկերը հրատարակեցին Լեհման և Հաուպտ, կոչելով զայն «Ներքինի», ըստ որում անմօրուս է բոլորովին, և համարելով «խաղդեան (ուրարտեան) կերպարանաց օրինակ» մը*[1]*։ Անոյմէ յառաջ կը բերեմ և ես, Զև 3։*



Զև 3. Ներքինի ուրարտեան

*Ներքինիք՝ Ասորեստանի արքունեաց մէջ — յայտնի է թէ և ուրարտականին — շատ մեծ պատիւ ու պաշտօն ունէին*[2]*, ինչպէս էր տակաւին Հայր մարդպետը հայ Արշակունեաց օրով*[3]*։ Հետևաբար այս արձանիկը կու տայ մեզ ժամանակի իշխանական տարազն իսկ, որ շատ նման է ասորեստանեան պալատականաց վրայ երևածին։ Անոր նկարագիրը հետևեալն է։*

1. *Վարսերը՝ խիտ խիտ ու գանգուր՝ կը դիզուին պարանոցին վրայ, յար և նման Ասորեստանի իշխանաց, որոց օրինակները շատ են*[4]*։ Բնականապէս այդ գանգուրներն արուեստով կը պատրաստուէին։ Մեր կենդանագիրը մօրուք չունի, որովհետև ներքինի է. և որոյ նմանները կ՚երևին նաև ասորեստանեան քանդակաց մէջ։*

2. *Ասպարոշ կամ վարսակալ մ՚ալ կը պահանջէին այդ բարձր*

1. Leh. 98. — 2. Perr. II, 102. — 3. Փաւս. 206. — 4. Perr. II, 102. Bot. I, տխ. 13–19 են.

պաշտօնէին մազերը, զոր մեր մաշած օրինակին վրայ դժուարին է տեսնել, և որ կար Ասորեստանի իշխանաց գլխին ևս[1]։

3. Պատմուճան մ'ունի՝ նեղ, պճղնաւոր, ճոխ կերպով հիւսուած, փորիբաց և լանջերը նստած իրարու վրայ կոճակով՝ առանց գօտւոյ։ Թեզանիքը կը հասնին մինչև արմկէն վեր, և կ'աւարտին ժապաւէնաձև ասղնեգործ զարդով։ Նման յաւելուած մը կ'երևի նաև պատմուճանին քղանցքին շուրջ՝ սրունից ուղղութեամբ։ Իսկ պարանոցին մօտ ունի գոհարներ՝ քայլի պէս շարուած։ Նոյն հարուստ և անգօտի պատմուճանը կ'երևի նաև Ասորեստանի իշխանաց վրայ[2], և նոյնպէս փորիբաց ձևով[3]։

4. Ուրար մը կը կախէ մեր Ներքինին ձախ ուսէն վար, որ կ'աւարտի երկար կապով մը։ Տարազի այս մասը չկարողացայ գտնել ասորեստանեան ձևերուն մէջ. և Ուրարտացւոց կամ այդ աստիճանի անձանց յատուկ զարդ մը կը թուի։

5. Ապարանջաններ կը կրէ դաստակաց մօտ, բոլորակ ձևով, զոր ունին ասորեստանցիք ևս, գինդերով հանդերձ, զորս մեր արձանիկը չի ներեր մեզ տեսնել, թէև իրապէս ունենալու էր՝ ըստ պահանջելոյ աստիճանին[4]։

6. Ծաղիկ մ'է բռնած աջովը, որ սովորաբար կ'երևի Ասորեստանի արքայից ձեռքն ալ, Բոտտայէ կոչուած «այլաբանական ծաղիկ[5]». և որ ուրիշ ապացոյց մ'է մեր պալատականին բարձրութեան։ Ծաղկին ձևը զանազան է Ասորեստանեայց քով[6], և երբեմն անոր փոխան կ'երևի նռնւոյ կոնն ալ[7]։

Այսքան է մեր նշմարածը Բերլինի Ներքինւոյն վրայ, և աւելի տեղեկութիւն մը չունինք անոր հանդերձի մասին։

## Դ. ՔԱՂԱՔԱՑԻՔ

Զատ ձև մը չէ մնացեր հնութենէն՝ ասոնց տարազը տեսնելու համար. այլ պատերազմական երկու տեսարաններ, Զև 4 և 5, որոց մէջ Ուրարտացիք կը հանդիսանան զինուորական ձևով։ Բայց որովհետև այս նոյն էր քաղաքականին հետ ըստ գլխաւոր մասանց, ասոնց և ասորեստանեան քանդակաց առաջնորդութեամբ կրնանք գծել քաղաքականը ճշգրիտ կերպով։

1. Աստ՝ 22։ — 2. Place. III, տխ. 48, 57 ևն։ — 3. Աստ՝ յօդ. Դ, 3։ — 4. Աստ՝ 22։ — 5. Bot. V, 147։ — 6. Place. III, տխ. 57. Bot. I, տխ. 74. II, տխ. 105։ — 7. Bot I, տխ. 25–28։

1. Վարսից ու Մօրուաց գործածութիւնը՝ բոլոր Ուրարտացւոց յատուկ էր քաղաքական կենաց մէջ, որոյ համար նաև զինուորութեան մէջ կը կրեն զանոնք։ Թէև քաղաքակիրթ աշխարհը կանանց թողուց միշտ խնկապէս երկար մազերը, սակայն արևելեան քաղաքակրթութիւնը՝ զարտուղելով հելլենականէն ու հռովմէականէն, անոնց գլխին վրայ ևս պահեց հերաց չափաւոր երկայնութիւն մը։ Այսպէս են բոլոր Ուրարտացիք. իրենց վարսերը կ'իջնեն կը ծածկեն ծոծրակը, ինչպէս Ասորեստանեայք ալ կ'ընէին։



Զև 4. Ուրարտացիք Ազդուրի լերան վրայ

Իրենց մօրուքն ընդ հակառակն աւելի կարճ կտրուած է համեմատութեամբ ասորեստանւոյն։ Կարծես տոհմային ձև մ'էր այս, որ կը նշմարուի միւս սաղմանասարեան քանդակաց մէջ ալ՝ երկու կողմի զօրաց միջև։ Ցամենայն դէպս ստիպողական էր մօրուքը, և անոր սափրումը ծանր նախատինք կը համարուէր այս շրջանիս Հրէից համար[1], անշուշտ և ուրիշ արևելեայց։

2. Բացագլուխ էին Ուրարտացիք պատերազմէ դուրս, իրենց ծածկոյթ ունենալով առատ վարսերը, ինչպէս սովորութիւն էր և Ասորեստանցւոց քով[2], և առանց կրելու ազնուականաց սեպհական վարսակալը։

3. Պարեգօտը, յար և նման ուրարտեան զինուորաց հագածին,

1. Բ Թագ. Ժ, 4-6։ — 2. Place. III, տխ. 44 են։

Նոյն ձեւով ու կարճութեամբ յատուկ էր Ասորեստանի ժողովրդեան ևս[1], հակառակ ազնուականաց պճղնաւորին, ինչպէս և ուրիշ ժամանակակից ցեղերու՝ զորս կը տեսնենք անոնց քանդակաց վրայ մի և նոյն պարեգօտով։ Կը ծածկէր իրանն ամբողջ և կը հասնէր ծընկներէն վեր, ունենալով երիզաձև վերջաւորքը։ Իսկ Թեզանիքը կարճ էին, և կը հասնէին վերին բազկին կիսէն վեր, մնացած մասը մերկ թողլով։ Ասորեստանեան քանդակաց մէջ, ուր աւելի յստակ են ձևերը, պարեգօտը փորիբաց է, լանջաց վրայ օձիքէն դէպ ի վար աղեղնաձև կտրուած, և ձախակողմեան փեղկը կը հանգչի աջակողմեանին վրայ[2], մերթ հանգուցուած երկու երիզով[3]։ Նոյնպէս փորիբաց լինելու է ուրարտեանն ալ, դատելով նաև անոր նեղութենէն։ Գոյներու զանազանութիւնը հաճելի էր Ուրարտացւոց· Խալդիայի մեհենին կողոպուտին մէջ Սարգոն գտաւ «բազմագոյն հանդերձներ ու կտաւի պարեգօտներ, կապոյտ բուրդ և հիւսելի շիկակարմիր բուրդ՝ Ուրարտուի և Կիլխուի աշխարհներէն[4]»։

4. Գօտին, անբաժանելի ընկեր պարեգօտին՝ Ասորեստանեայց[5] և բոլոր արևելեայց վրայ ամէն ժամանակ, յատուկ էր Ուրարտացւոց ևս՝ քաղաքական կենաց մէջ, ինչպէս զինուորականին, և անհրաժեշտ պահանջ մը՝ մանաւանդ փորիբաց պարեգօտն ամփոփելու համար։

5. Սանապանք և Կօշիկք թէ կը գործածուէին Ասորեստանցւոց կողմանէ և թէ ոչ, ըստ աշխատութեան զոր կը կատարեն. և միշտ երկու մասերը միասին կը կրեն կամ ոչ։ Նոյնպէս կրնանք երեւակայել Ուրարտացւոց քով ևս, ինչպէս արդէն կ'երևին զինուորաց վրայ։

Պատերազմէ դուրս որ և է զէնք չէին կրեր Ասորեստանեայք, ոչ ալ Ուրարտացիք։ Քաղաքային անդորրութիւնն ու կենաց ապահովութիւնը, երաշխաւորուած քաղաքակրթութենէն և օրէնքէն, աւելորդ կը դարձնէին զէնքը քաղաքական կենաց մէջ։

## Ե. ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆՔ

Սաղմանասարեան խաթարուած պղինձներէն յառաջ բերած եմ, տանելով Կինգի գեղեցիկ հրատարակութենէն, յիշած երկու կտորներս, բոլոր մասանց մէջ լաւագոյն պահուածները. որոց մին կը ներկայացնէ ուրարտական խմբակ մը՝ կանգնած Աղղուրեայ կատարներուն

1. Անդ։ — 2. Անդ՝ 51։ — 3. Անդ՝ 62։ — 4. Տող 366։ — 5. Place, 44, 54 ևն։

*վրայ, կռուելով Ասորեստանեայց դէմ՝ որոնք ստորոտէն կը յարձակին դէպ ի վեր, և անտես կը մնան մեր համառօտուած պատկերին վրայ (Զև 4)։ Երկրորդին մէջ, որ աւելի նկարչական է, Ուրարտացիք կը գտնուին ճակատ առ ճակատ յարձակողաց հետ. և իրենցմէ մին ծնրադիր գթութիւն կը հայցէ, մինչ ուրիշ մը գետին ընկած է անգլուխ (Զև 5)։*



Զև 5. Ուրարտացիք Ասորեստանցւոց դէմ

*Մեր տեսակէտով շատ ճոխ են ասոնք, և կու տան զինուորական*

*տարազին կրկին տեսակները, զոր արդիւնք կը համարիմ զինուց զանազանութեան։ Ոմանք պարեգօտաւոր են ու կարճաթեզան, և ոմանք թեթևազգեստ. այս ինքն մարմնոյն ձևով պիրկ հագուստով մը, նոյնպէս կարճաթեզան, որոյ նմանը չկարողացայ տեսնել աստրեստանեան քանդակաց մէջ՝ ուրիշ ցեղերու վրայ։ Առաջինք կը թուին դաշտային զինուորներ, և իրենք կ'երևին հասարակօրէն Արամայ քաղաքին մօտ դաշտի վրայ. իսկ միւսները՝ լեռնայինք, որ կը կռուին նոյնպէս ուրիշ լերան մը վրայ ևս*[1]. *և այսպէս թեթև հագուած են՝ դիւրաւ մագլցելու և շարժելու համար բարձրութեանց վրայ։ Ուրարտեան հնարագէտ մտաց արդիւնք է այս զանազանութիւնը։*

1. *Պարեգօտը, հաւասար քաղաքականին ու յարձակող Ասորեստանեայց հագածին, հանդերձին միակ մասն է՝ որ կը զատէ զայն կրող զինուորները թեթևազգեստներէն. իսկ ուրիշ բոլոր մասերով համաձև են իրարու հետ։*

2. *Գտակն կայ հաւասարապէս երկու համազգեստից վրայ ևս, ցուցնելով՝ թէ վախճանը միայն պարեգօտը զսպել չէ, այլ մէջքն ալ ամուր բռնել, մանաւանդ պատերազմողաց։ «Մէջքը պնդելու» նպատակով կը գործածէին զայն և Հրեայք*[2]։

3. *Հերք և Մօրուք կը պահուին հաստատուն այն ձևով՝ զոր նկարագրեցինք քաղաքացւոց վրայ, և զոր աւելորդ է կրկնել հոս։*

4. *Սաղաւարտ մը, հաւանօրէն երկաթեայ, անպակաս է մեր զօրաց գլխին, կրելով բոլորովին սեպհական ձև մը։ Գմբեթարդ է. կը ծածկէ ճակատին կէսը, և երկուստեք անկիւնաձև վար կ'իջնէ ականջաց մօտ, ցոյց տալով վարսից ծփումն իւր ներքև. իսկ վերև զետեղուած է թրթռանման վերջազարդ մը, գուցէ բաշէ շինուած։ Աստի շատ տարբեր է Ասորեստանեայցը, զոր կը տեսնենք. կնգղակերպ սրածայր, և մերթ ասոր վրայ աղեղնաձև կամ գալարուն վերջազարդ մ'ալ։ Իմ կանխաւ յիշատակած*[3] *մուձաձիրեան տեսարանին մէջ անոր զինուորք բացագլուխ են։ Եւ ուրիշ ոչ մի ժամանակակից ցեղի վրայ տեսայ ուրարտեան ձևը, որ և ոչ յունականաց կամ հռովմէականաց հետ կը համաձայնի ճշդիւ*[4]։

5. *Սռնապանք ստիպողական են՝ մեր պատերազմողաց սրունքները պաշտպանելու համար նետերէ։ Դժուարին է զանազանել անոնց նիւթը. երեսը խորտաբորտ է, կարծես փուշէ լինէր*[5]։ *Զանկապանաւոր էր Ասորեստանի զինուորութիւնն ալ*[6]։

1. King. տխ. 12. — 2. Գ Թագ. ԺԲ, 46. Դ Թագ. Թ, 1. Յոբ, ԼԲ, 3, ևն. — 3. Աստ՝ 16. — 4. Dar. II, 1429-51. — 5. Հմմտ. գլ. Գ, յօդ. Դ. — 6. Place. III, տխ. 53, 61 ևն.

*6. Կօշիկներն անբաժան մասն էին սռնապանաց, և կը նշմարենք մեր զօրաց ոտներուն՝ ամփոփ ձևով մը. և ծայրերը թեթևակի սրացած ու վեր դարձած՝ կը գրկեն ամբողջ թաթը, որոյ վերև կապ մը հաստատուն կը բռնէ զանոնք։ Ընդ հակառակն բոլոր ասորեստանեայ զօրքերը կը կրեն երկայնավիզ կօշիկներ[1]։*

*7. Թուր մը կ'երևի ցանցառաբար ոմանց վրայ (Ձև 5), որ խորհել կու տայ մեզ՝ թէ աղոնք զօրագլուխներ էին։ Կարճ է, լայն ու դէպ ի ծայրը սրայած, և գնդածայր դաստապանով մը, զոր կը կախեն ձախ կողմէն՝ ուսընդանութ իջնող փոկով մը, նման ասորեստանւոյն, որոյ պատեանը խաչաձև է ծայրին մօտ։ Սարգոնի աւարին մէջ ալ կային «305,412 պղնձի սուրեր ծանր ու թեթև»[2]։*

*8. Վահանն անպակաս է մեր ձևերուն զօրաց ձախ ձեռքը։ Փոքր են ասոնք ու բոլորակ. և դատելով գետին ընկածներէն, որ մեր պատկերներէն դուրս կը մնան, կեդրոնը գնդաձև կարկառուն է, և իւր շուրջ կը դառնան երկու շրջանակներ, և ներքուստ բռնատեղ մը՝ ձգուած եզրէ եզր[3]։ Նպատակը ծածկել չէր մարմինը, այլ նետերու և տէգերու դէմ դնել։ Շատ նման էր մերոց՝ մուձածիրացւոցն ալ. ցած կոնաձև մը, դէպ ի կեդրոնն անկլինայած ու վերջացած առիւծի գլխով, ինչպէս կը յիշէ և Սարգոն[4], որ Խալդիայի տաճարէն կողոպտեր էր «25,212 պղնձի վահաններ ծանր ու թեթև[5]»։ Ասորեստանեանք շատ մեծ էին. մերթ բոլորշի[6], և յաճախ երկար ու կամարանման, և վերին շուրթն աղեղնաձև[7]։*

*Բերլինի Թանգարանը կը պահէ, և Լեհման ու Միւլլէր[8] յառաջ կը բերեն՝ պատկերն Ուրարտուի Ռուսաս Գ Թագաւորի կիսաքանդ վահանին՝ անոր յատուկ արձանագրութեամբ, գտնուած ի Թոփրագգալէ։ Եւ է ողորկ, արտաքուստ ծածկուած առիւծի և միեղջերուի երեք կարգ քանդակներով։ Իսկ ներքուստ՝ գոգին մէջ՝ մեծ մանեակ մը, ձեռքին մէջ բռնելու համար, և երկու փոքրեր, անշուշտ փոկի տեղեր, որով իրենց վրայ կը կախէին։ Շատ նման է ասոր՝ բոլորակութեամբ ու քանդակաց ոճով՝ Բրիտանական Թանգարանին պահած «ուխտական վահանը», ասորական գործ, որոյ ձևն յառաջ կը բերէ Պերրոտ[9]։*

*9. Աշտէ մ'ալ բռնած են մեր բոլոր Ուրարտացիք իրենց աջով, որոյ ծայրն ըստ սովորութեան երկաթեայ էր, տերևանման՝ տափարակ ու սուր, նման Մուձածիրացւոց կրածին։ Սարգոնի կողոպուտին մասն էին «1514 պղնձի նիզակներ ծանր ու թեթև[10]»։ Ասորեստա-*

1. Place. III, տխ. 53, 61. — 2. Տող 394. — 3. King. տխ. 52. — 4. Տող 379. — 5. Տող 392. — 6. Dieu. III, տխ. 14. — 7. Place. III, տխ. 51, 55. — 8. Leh. 99. Mül. 194. — 9. Perr. II, 756. — 10. Տող 593.

*Նեայց ձեռքերը կ'երևին բուն նիզակներ, կամ որ նոյն է՝ երկար աշտէններ*[1]*։*

10. *Աղեղը նոյնպէս ի գործածութեան է այս ժամանակ. Սարգոն իր կողոպուտին մէջ կը թուէ նաև «պղնձի աղեղներ» և «պղնձի նետեր*[2]*»։ Ասորեստանեայք ալ ունին զայն, ինչպէս կ'երևի մեր Զև* 5 *քանդակին վրայ՝ լարուած վիճակի մէջ. մինչ ուրիշ քանդակաց վրայ ուղիղ կը տեսնուին՝ երբ թոյլ են, և շատ ծանծաղ զոգով մը. իսկ ծայրերը կեռ կամ օղակաձև՝ լարը կապելու համար։ — Եթէ չենք տեսներ աղեղն Ուրարտացւոց ձեռքը մեր քանդակաց մէջ, պատճառը պարզ է։ Աշտէ և վահան բռնող զինուորը չէր կարող նաև աղեղը գործածել։ Հետևաբար մեր քանդակաց մէջ պակաս են բուն աղեղնաւորք, որոց գործը կը զօրէր հեռաւորութեան մէջ, մինչ հոս Ուրարտացիք խառնուած են թշնամեաց հետ կամ անոնց մօտ, և կռուեւ ու կարգը վահանակիր աշտենաւորաց է։*

11. *Գիլք կամ ձեռամբ նետելի քարերը վերջին զէնքը կը կազմէին Ուրարտացւոց, որոցմէ մին՝ Աղղուրի լերան խմբէն՝ արդարև բռնած է գիլ մը և վարսելու հետ է թշնամեաց դէմ։ Զէնքիս կարևորութիւնը զգալի է մանաւանդ մեր պատմութեան յետնագոյն շրջանաց մէջ։ Այսպէս կ'ունենանք մեք զինուորական համազգեստին ամբողջութիւնը։*

*Եթէ զէնքերը պատերազմի մէջ երկաթեայ կամ պղնձի էին, խաղաղութեան ժամանակ աւելի հարուստ ու զարդարուն կը լինէին, ոսկեղէն կամ արծաթեղէն, բնականապէս աւելի զօրապետաց կամ արքունի զօրաց ձեռքը։ Ասոցմէ շատ քանակութեամբ ձօնուած էին Խալդիայի տաճարին, ուսկից Սարգոն կողոպտեց հետևեալները։*

*«Վեց ոսկեղէն սուր» և «ոսկի դաշոյն*[3]*», որմէ զոյգ մը գնդածայր դաստապանով՝ կ'երևի խրած նաև ասորեստանեան զինեալ արքայի մը մէջքը՝ ձախ կողմէն. և ուրիշի մը վրայ՝ աջ կողմէն, թեթևակի կոնաձև դաստապանով, լայն մասը դէպ ի դուրս*[4]*։*

*«Արծաթեայ վահաններ*[5]*», և «տասներկու ծանր վահան արծաթեայ, վիշապի՝ առիւծի կամ ցլավայրոյ գլխներով զարդարուած*[6]*»։ Նոյնպէս «վեց ոսկի վահաններ՝ իր (Ուրզանայի) բնակարանին մէջ յաջ ու ձախ կախուած էին, և կը փայլէին ճաճանչագեղ, որոց միջև նաև ցցուած էին խոժոռադէմ շնագլուխներ. և ունէին հինգ տաղանդի և տասներկու Մնասի բոցագոյն կարմիր (ոսկւոյ) կշիռ*[7]*»։*

1. Place. III, *տխ.* 50, 51 *են*։ — 2. Տող 394։ — 3. Տող 357։ — 4. Perr. II, 509, 615։ — 5. Տող 382։ — 6. Տող 379։ — 7. Տող 370-71։

*«96 արծաթեայ նիզակ», և «արծաթ աղեղներ, արծաթեայ նետեր, դրուագեալ և յեռեալ ոսկւով[1]». «արծաթեայ ոսկեդրուագ նետեր[2]», ու «կապարճներ արծաթի[3]»։*

*Բոլոր այս ձօները, կատարուած Ուրարտացւոց ու Մուձածիրացւոց կողմանէ մեծ աստուծոյն, կը կազմէին նաև անոնց զօրաց զարդերն արքունեաց և ազգային հանդիսից մէջ։*

## Գ. ՏԻԿՆԱՑՔ

*Ոսկի վզանոց մը բախտաւոր, գտուած ի Թոփրագգալէ՝ հին շտեմարանի մը մէջ, զոր կը պահէ Բերլինի Թանգարանը, կու տայ մեզ այս շրջանէս զոյգ մը կանացի կենդանագրեր, որոց մին՝ նստած յաթոռ՝ աստուածուհի մը կը համարուի, և միւսը բազկարաց՝ աղօթական մը, Լեհմանէ և Հաուպտէ՝ որ ասոր գծագրական պատկերը հրատարակեցին, և զոր ես Բերլինի բնագրէն իսկ յառաջ կը բերեմ՝ շնորհիւ Ուս. Բեգլինգի. Զև 6։ Յիշեալ հրատարակիչք այս կանացի դէմքերը հեռի կը գտնեն ասորականներէ, և խաղդեան (ուրարտական) կը համարին[4]։ Մեր պատկերին մէջ դիցուհին ու պաշտօնարկուն միանգամայն կը կրեն այն ժամանակի տիկնոջ տարազը, երկուքին վրայ գրեթէ նոյն ձևով, որ ունի հետևեալ մասունքը։*

1. *Պատմուճան պճղնաւոր և ճոխ, որոյ երկար ստորոտը գետնաքարշ է աղօթականին վրայ. իսկ դիցուհւոյն ամփոփ կ'երևի, գուցէ նստելուն պատճառաւ։ Անոր կերպասը ծածկուած է քառակուսի հիւսկէն զարդերով, և դիցուհւոյն հագածին վերջաւորքն ունի ասղնագործ ծոպ մ'ալ։ Թեզանիքը կարճ են, հասնելով մինչև արմկները (ինչպէս էր և առնականը), և կը վերջանան ժապաւինեալ զարդերով՝ երկու անձանց վրայ ևս։ Գեղեցիկ օրինակ մ'են պատմուճաններս՝ ուրարտեան ճարտարարուեստի։*

2. *Գօտի մը լայն ու հարուստ՝ կը պատէ դիցուհւոյն մէջքը, և կը նշմարուի նաև աղօթականին վրայ՝ առաջակողմէն, և աւելի նեղ, երկուքն ալ իրենց երկարութեամբ որոշուելով կերպասին չորեքկուսի դրուագներէն։*

3. *Քող մը, թանձր, դատելով կերպասին ձևէն՝ որ ծածկուած է պատմուճանին քառակուսի զարդերով, և շրջապատուած ասղնեգործ ծոպով մը, կը սքողէ անոնց գլուխը մինչև ճակատին կէսը,*

1. Տող 378. — 2. Տող 358. — 3. Տող 382. — 4. Leh. 84-6.

*և քունքին քովէն կ'իջնէ կը պատէ ամբողջ թիկունքը, կշտերուն կիսովը։ Կրկին ձև ունի. աւելի երկար է դիցուհւոյն վրայ, հասնելով մինչև պատմուճանին ստորոտին մօտ, նման հատեան կանանց կրածին[1], իբրև տեսակ մը կրկնոց. իսկ աղօթականին վրայ՝ մինչև ազդրերը կը հասնի։ Համոզուած եմ՝ թէ քողը կը կրէին տնէն դուրս միայն. վասն զի թէ մեր 7 Ձևի կանայք և թէ ասորեստանցի դշխոյք[2] առտնին բացազլուխ կը տեսնուին։*



Ձև 6. Դիցուհի և աղօթական

4. *Վարսերն անտես կը մնան քողին ներքև. բայց անոնք երկար ու յարդարուած էին, դատելով ուրարտացի արանց հոգածութենէն՝ զոր կը ցուցնեն իրենց հերաց վրայ, և ասորեստանեան սովորութենէն։ Կու տամ հոս մուձաձիրեան կարծուած կանացի տեսարանը՝ զոր յիշեցի կանխաւ[3], Ձև 7, որպէս զի ճշգրիտ գաղափար մը կազմեն ընթերցողք ծամերու յարդարման մասին, որ հաւասար էր*

1. Perr. IV, 556, 557։ — 2. Place, III, տխ. 57։ — 3. Աստ՝ 9։

ժամանակի բոլոր հաղորդակից ազգերու քով, Ասորեստանեայց, այդ անծանօթ կանանց և Ուրարտուհեաց վրայ։

5. Ապարանջաններ կը կրեն երկուքն ալ իրենց դաստակաց մօտ, որոց նիւթը կրնար ըլլալ ոսկի կամ արծաթ։ Ի Թոփրագգալէ գտնուեցաւ այս շրջանէս, և կը պահուի Բերլինի թանգարանին մէջ, արծաթեայ ապարանջան մը՝ աւարտած օձագլուխ[1], որոյ նմանը կ'երևի նաև ասորեստանեան արուեստին մէջ[2], և անոնց արքայի մը բազկին վրայ[3]։

6. Վզանոցը սովորական էր անոնց, որուն օրինակ ունինք նոյն ինքն մեր աղբիւրը. բաւական նուրբ գործ, ոսկեղէն, փոքր ինչ երկարաձև, լայնութիւնը 4, 6 հրդ. բարձրութիւնը 4, 8 առանց օղակին. և որ իւր կանացի պատկերներով ու կրօնական հանգամանօք անտարակոյս բարեպաշտ ուրարտուհւոյ մը պարանոցին զարդն էր։



Զև 7. կանայք

7. Մահիկն ալ կը յիշուի Սարգոնի արձանագրութեանց՝ Մուծածիրի կողոպուտին մէջ. «արծաթեայ մահիկներ ու մատանիներ[4]»։ Մահիկը կը տեսնենք իբր զարդ՝ լուսնոյ Սելենէ դիցուհւոյն ճակատին վերև[5]. և նորին գործածութիւնը կը յիշէ Եսայի մարգարէն նաև Հրէուհեաց կողմանէ[6]։ Շատ բնական է ուրեմն խորհիլ՝ թէ Սարգոնի յիշածն ալ Ուրարտուհեաց ճակատին կամ վզին յատուկ էր. ըստ որում ասորեստանեայ արանց վրայ չի նշմարուիր բնաւ քանդակաց մէջ։

8. Մատանին՝ Սարգոնի լեզուին մէջ տարբեր է կնքոյ մատանւոյն գործածութենէն զոր տեսանք[7], և կը թուի հոս՝ մահկին հետ ու նման՝ իբր կանացի զարդ, ինչպէս միշտ կը նկատուի կանանց վրայ։

9. Կօշիկը բաւական որոշակի նշմարելի է դիցուհւոյն ոտքին. անկրունկ, ցած ու սրակտուց. և կ'ամբողջացնէ կանացի տարազը։

10. Ծաղիկ մ'ալ բռնած է դիցուհին ձախովը, ինչպէս տեսանք ներքինւոյն ձեռքը[8], բայց աւելի նեղ քան զայն։ Ապացոյց մ'այս՝ թէ բարձրաստիճան տիկնայք ալ կը կրէին զայն։

Ռամիկ ուրարտուհւոյն տարազը հարկաւ նման էր տիկնանց հագածին, բաց ի նիւթին ու ձևին ճոխութենէն։

1. Sayce, 31. — 2. Perr. II, 763-4. — 3. Jast. բ. 56. — 4. Տող 360. — 5. Dar. III. 1390. — 6. Ես. Գ, 20. — 7. Անդ՝ 22. — 8. Անդ՝ 25.

# ԳԼՈՒԽ Գ

## ՓՌՒՒԳԵԱՆ ՇՐՋԱՆ (Բ)

### Ա· ՆԿԱՐԱԳԻՐԸ

ԱՅՍ շրջանն ալ մին է հնագոյններէն, և բաւական մթին, զոր գտնելու համար՝ քրիստոնէական թուականէն հինգ դար վեր ելնելու ենք։ Իւր տեղեկատուն է Հերոդոտոս, որ նկարագրելով Քսերքսեսի նշանաւոր բանակը, որուն գերեզման եղան Ելլադայի կիրճերը, կը թուէ այն ցեղերը՝ որ գինուորեալ էին անոր մէջ, և անոնց հետ նաև «Հայեր՝ զրահաւորեալ (εσεσάχατο) նման փռիւգացւոց. որոնք սուուգիւ փռիւգացւոց գաղթական իսկ են», և լեզուով ալ, կ'ըսէ, նման իրարու։ Եւ որովհետև փռիւգացիք ևս կային Պարսից բանակին մէջ, երկու համազգեստ ցեղերն իրենց նմանակցութեան պատճառաւ կը գտնուէին մէկ հրամանատարի՝ Արտոքմեսի ներքև[1]։

Այս է բոլոր տեղեկութիւնը՝ զոր ունինք այս մասին։ Պատմիչս ժամանակակից է Քսերքսեսի, ապրած լինելով Ե դարուն մէջ (Ն. Ք.), ուստի իւր տուած այդքան մանրապատում ծանօթութիւնը Հայոց և անոնց զգեստին նկատմամբ՝ ճշմարտապէս պատմական է, և հեռի այն կասկածէն՝ որուն կ'ենթարկէ զինք Հ. Խնճիճեան առանց փաստի[2]։

1· Մեր խնդրէն դուրս է անշուշտ քննել՝ որքան ստոյգ է փռիւգական ծագումը, որոյ մասին Հերոդոտոսի վկայութիւնը չունի հաւասար ոյժ. և զոր կը կրկնէ Եւդոքսիոս Կնիդացին ևս Դ դարուն (Ն. Ք.), որոյ խօսքերը յառաջ կը բերէ Ստեփանոս Բիւզանդացի[3]։ Պատմագիտաց գործ է այս կէտին ճշդումը։ Բայց չենք կրնար տարակուսիլ՝ թէ հագուստի նմանութիւնն երկու ցեղերուն մէջ, կատարուած յետ Ասորեստանեայց անկման ու Փռիւգացւոց զօրացմամբ, արդիւնք էր քաղաքական սերտ կցորդութեան մը, որոյ տեսակը ստուգելի կը թուի։

1· Հեր. Է, հզ։ — 2· Խնճ. Բ, 266։ — 3· Ստեփ. Ա, 59։

Այդ քաղաքական ու լեզուական աղերսը կը ստիպէ զմեզ տարազուց նմանութիւնը տեսնելու ոչ միայն զինուորականին, այլ առտնին զգեստին մէջ ալ։ Վասն զի եթէ հայ ժողովուրդն որ և է ազգագրական պատճառաւ փարած մնացեր էր փռիւգական զինազգեստին, և այն՝ նոյն իսկ պարսկական հզօր ու մեծ բանակին մէջ գտնուելու պահուն, այդ մի և նոյն պատճառաւ պէտք էր պահած լինել քաղաքական հանդերձին ձևն ալ, որ զինուորականէն աւելի և քան զայն կանուխ ենթարկուած լինելու էր նոյն ազդեցութեան։ Եւ զինուորականը միայնակ շատ քիչ պիտի լինէր՝ Հայերը Փռիւգացւոց ցեղակից կարծել տալու օտարաց։

Կնորէլ կ'ուզէ՝ որ Փռիւգացիք Հայոց գաղթականութիւն եղած լինին[1]։ Տարազի նմանութիւնն ընդ հակառակն իրաւունք տալ կը թուի Հերոդոտոսի։ Վասն զի եթէ Հայաստանի մէջ յառաջ ուրիշ տարազ կար, ինչպէս տեսանք, հարկ է որ փռիւգականը դրսէն եկած լինի։ Արդեօք փռիւգական զօրաւոր գաղթականութեան մը ձեռքով, թէ անոնց տիրապետութեամբ Հայոց վրայ՝ մեր աշխարհի մէջ և կամ դուրսը, ուսկից Հայք նոյն տարազով յետոյ մտան ի Հայաստան, քննելի կը մնայ։ Սակայն պատմական ստուգութիւն է աղերսն երկու ցեղերու մէջ՝ զգեստով, լեզուով, և մինչև իսկ բնակարանաց նմանութեամբ, ինչպէս կ'աւանդեն յիշեալ Կնիդացին և և ուրիշ հիններ։

2. Փռիւգիա թողուց ճարտարապետական մնացորդներ, բայց ոչ և քանդակներ՝ իւր տարազին մանր ու վաւերական քննութեան համար։ Պերրոտ անոր պեղումներէն և յունական անօթներէ զինուորական ձևը միայն գտած է։ Նաև Վրոթ յառաջ կը բերէ փռիւգական դրամներ Բ դարէն (Ն. Ք.)[2], որոնք անօգուտ են մեզ իրենց նորամուտ տարազով։ Որով միակ աղբիւր մեզ՝ հելլէն արուեստին ու գրականութեան պահած ձևը կը մնայ քաղաքական զգեստին համար, որ սակայն արուեստաւորաց քմահաճոյքով կ'երևի ոչ փռիւգացի հին անձանց ոմանց վրայ ևս, Դարեհի, Պրիամոսի, Որփէոսի, Հռադամանթի. այս ինքն արքայից, քրմաց, աստուածայնոց. աւանդական ձև մ'էր յունական արուեստին մէջ, նման ուրիշ զանազան ձևերու, որոց ազգայնական տարբերութիւնքն որոշել միշտ անխախտ կերպով՝ դիւրին չէ, կ'ըսէ Սայլիոյ[3]։ Ցամենայն դէպս չենք կասկածիր՝ թէ յոյն պատմիչը Հերոդոտ և յոյն արուեստաւորը «փռիւգական» ըսելով՝ մի և նոյն բանը կ'իմանային. և որ այսպէս կո-

1. Knob. 58. — 2. Wr. Phr. — 3. Dar. I, 674.

չուելու համար պատմական պատճառ մ'ալ ունենալու էին, որով և համաձևութիւն մը պահուած է նոյն տարազին՝ նկարուց մէջ։

Այդ զգեստին մերձաւոր նկարագիրը կու տայ լատին քերթողը Վիրգիլիոս, Նումանոսի բերանը դնելով հետևեալ խօսքերն առ Տրովացիս. «Դուք, ներկուած քրքմով և զգեցած ծիրանեփայլ հանդերձներ, վատասիրտներ էք. միայն պարերը կը սիրէք, և պարեգօտի թեզանիներ ու երիզաւոր խոյրեր։ Ո՛վ ճշմարիտ Փռիւգացիք, բայց և ոչ իսկ Փռիւգացիք, գնացէք ի բարձր Դինդիւմա», և այլն[1]։ Այս նկարագիրն ալ կատարելապէս նոյն է փռիւգեան պատկերաց տարազին հետ, և պիտի ծառայէ մեզ։

Նոյն շրջանին է որ կը գրէ և Քսենոփոն, կոչելով հայ մանկանց հագուստը «բարբարոս զգեստ[2]». և կը զգացնէ մեզ՝ եթէ ոչ անոր ստոյգ ձևը, գէթ զանազանութիւնը հելլենականէն։

Անցնինք այժմ տեսնել այս փռիւգեան տարազը։

## Բ. ՔԱՂԱՔԱՑԻՔ

Ասոնց հանդերձին օրինակ կ'առնում Դարեմբերգի բառարանէն պատկեր մը[3], որ կը ներկայացնէ դժոխքը, գծուած անօթի մը վրայ՝ որ կը համարուի գործ Դ դարու (Ն. Ք.)։ Եւ որ բարեբախտաբար կը ներկայացնէ Փռիւգիոյ Տանտաղոս թագաւորն իսկ, որոյ զգեստին ու ժողովրդականին մէջ զգալի տարբերութիւն չենք կրնար երևակայել, բաց ի նիւթի կամ գունոյ ազնուութենէն։ Եւ հին արուեստն ալ չի զանազաներ զանոնք. զոր օրինակ՝ մեր պատկերին մէջ կայ նաև Որփէոս ու դժոխոց դատաւոր մը՝ մի և նոյն զգեստով։ Այդ նկարէն յառաջ կը բերեմ ես հոս փռիւգացի արքայն միայն. Ձև 8։

1. Հերք և Մօրուք ուշագրաւ են մեր պատկերին մէջ, ուր Տանտաղոս թէև գլխափակ, բայց յստակ կերպով կը ցուցնէ իւր գիսակները՝ որ կ'իջնեն կը ծածկեն ծոծրակը և կը հանգչին ուսոց վրայ, նման ուրիշ փռիւգեան ձևերու։ Միանգամայն արձակ ու ծփուն թողուած էին աղոնք, յայտնի չէ՝ զսպուա՞ծ արդէն վարսակալով մը, թէ տակաւին ոչ։ Իսկ մօրուքը՝ քաղաքակիրթ աշխարհի հետ Փռիւգիա ևս կը պահէր չափաւոր երկայնութեան մը մէջ, որով աւելի վայելուչ կ'երևէր։

2. Խոյրը կերպասեայ էր, կնգղաձև, աւարտած ճակատին վերև,

1. Վիրգ. Են. Թ, 614–18. — 2. Քսեն. Արշ. Դ, դ. — 3. Dar. III, 510.

և երեսին կողմէն գոգացած. իսկ յետակողմէն կը կախէր ծփուն երիզներ ուսերուն վրայ, որով և Վիրգիլիոսէ կը կոչուէր «երիզաւոր խոյր»։ Այս շրջանիս կը պատկանի Քսենոփոնի տեղեկութիւնը, թէ երբ Կիւրոս ձերբակալած Հայոց Թագաւորը՝ կը դատէր, արքայորդին Տիգրան ի լուր սպառնալեաց պարսկին՝ իւր գլխէն «խլեց



Ձև 8. Տաճատղոս արքայ Փռիւգիոյ

խոյրը (τιάρα)[1]». ուր յունարէնը չի նշանակեր յատուկ ձև մը, այլ որ և է բարձր գլխանոց[2]. ուստի նաև փռիւգականը, զոր մեք նկատելու ենք բնականապէս այդ Տիգրանի գլխին։ Դիտելի է՝ որ զայն չի հաներ նա, ոչ իսկ ի ներկայութեան Կիւրոսի, այլ միայն երբ կը ներկայանայ իւր վիշտը յայտնելու առիթը. և բնականապէս ժամանակի սովորութեան արդիւնքն էր այդ։

1. Քսեն. Կիւր. Գ, ա։ — 2. Dar. V, 296։

3. *Պարեգօտը պճղնաւոր է հոս, լայն ու խորշ խորշ. օձիքն ու ստորոտը կը վերջանան որ և է զարդով մը։ Ունէր երկայն ու նեղ թեզանիք՝ ամբողջովին հիւսուած, որով կը զանազանէր հանդերձին միւս մասերէն։ Այս տարբերութիւնը սակայն ըստ քիմս էր, և չկայ Դարեհի ձևին մէջ*[1]*, որ ընդ հակառակն հիւսկէն զարդեր ունի կրծոց ու մէջքին վրայ՝ նման Որփէոսի պատմուճանին*[2]*։ Բախտաւոր ենք ասոր յիշատակութիւնն ալ գտնելու մեր քով, շնորհիւ նոյն Քսենոփոնի, որ յիշեալ տեղւոյն մէջ կը յարէ Տիգրանայ մասին. « և պատմուճանը* (πέπλους) *պատռեց »։ Յունարէնն ի սկզբան նշանակած անթեզան ու մէկ կողմէն ճեղքած պարեգօտ մը*[3]*, յետոյ դասական շրջանին կը նշանակէր նոյն ինքն թեզանաւոր փակ պճղնաւորը*[4]*։ Ուստի մեք հոս ալ ունինք փռիւգացի պարեգօտը կամ վիրգիլեան « պարեգօտի թեզանիքը », զոր կը հաստատէ նաև Պոլլուքս հետևեալ բացատրութեամբ, ի մեկնութիւն նոյն տեղեկութեան. « իսկ հայը* (*Տիգրան*) *պատմուճանը պատռեց, կ'ըսէ. գուցէ զայն իսկ կ'ըսէ՝ որ բարբարոսաց էր, և կանացի զգեստներով կը զուարճանային*[5] *», որ է պճղնաւորը։*

4. *Գօտին կայ և կը մնայ բոլոր փռիւգական ձևերու մէջ, չափաւոր լայն, և հոս աւելի ևս կարևոր՝ ամփոփելու համար պարեգօտին լայնութիւնը։*

5. *Լանջագօտի մ'ալ կ'երևի մեր ձևին մէջ, որ զոյգ է, և կ'իջնէ ուսերէն վար առ ի շեղ, խաչաձևելով զիրար։ Նոյնը կը տեսնենք դժոխոց դատաւորին վրայ ևս*[6] *և ուրիշ պատկերի մը մէջ*[7]*, ուր այլ փռիւգազգեստ թագաւոր մը և Դարեհի վերոյիշեալ կենդանագիրը չունին զայն։*

6. *Մեկնոց կամ թեթև փիլոն մը, բռնուած ուսոց վրայ՝ գուցէ նոյն զոյգ լանջագօտիէն, և ծալ ի ծալ կախուած թիկունքէն վար, կը հասնի ծնկները, և բաց կը թողու լանջքը, ինչպէս կ'երևի Որփէոսի ծանօթ ձևին վրայ ևս. և որ ըստ հաճոյս զգեցողին՝ կրնար դառնալ ու պատել մարմինն ալ, ինչպէս դժոխոց դատաւորին վրայ։*

7. *Կօշիկները բոլոր փռիւգեան տարազուց մէջ ոտից թաթերուն ձևն ունին, և ամբողջովին կը ծածկեն զանոնք։ Սովորաբար կիտուածով զարդարուած են,- բաց ի Դարեհի հագածէն։*

8. *Գաւազան մ'ալ կը կրէ Տանտաղոս իբր թագաւոր, զոր հաւանօրէն Հայոց արքայն ալ ունէր, և նոյնպէս կարճ։*

1. Dar. I, 674. — 2. Նոյն՝ III, 510. — 3. Նոյն՝ IV, 382-4. — 4. Անդ՝ 385. — 5. Poll. VII, 13. — 6. Dar. III, 510. — 7. Նոյն՝ III, 1667.

## Գ. ԿԱՆԱՑՔ

*Ցոյն անօթոց նկարիչները փռիւգացի գլխանոցին ներքև տուին կանացի տարազներ՝ փոքր ի շատէ տարբեր իրարմէ, որոնք արդիւնք կը թուին արուեստաւորաց քմահաճոյից։ Զոր օրինակ կայ Մեդէայի կենդանագիրը*[1]*, ուր Կողքիդի արքայադուստրը կը կրէ գլխին փռիւգեան խոյրը. մարմնոյն վրայ հագած է փռիւգական պճղնաւորը. իսկ ատոր վրայ յաւելուած ունի անթեզան պարեգօտակ մը, որոյ ստորոտը կը ծածկէ մինչև ծնկները. ատոր վրայ կապած է գօտին. և մեկնոց չունի։ Այսպէս է նաև Արտեմիսի մէկ պատկերը*[2]*, առանց պարեգօտակին։*

*Նոյն Մեդէայի ուրիշ պատկերի մը մէջ՝*[3] *օրիորդը կը կրէ նոյն խոյրը, մեկնակ պճղնաւոր, որ գօտիէն քիչ վար ծալ մ'ունի շուրջանակի, և թիկունքին կարճ մեկնոց մը, որ մինչև ծնկները կը հասնի։ Մի և նոյն տարազն ունին անօթոց վրայ ամազոնք ալ, այս ինքն չորս կտոր, և կրծոց վրայ յանչացօտին խաչաձև*[4]*։ Անոնց պարեգօտը կրկին ձև ունի. մին պճղնաւոր է՝ առտնին ագանելի, և միւսը մինչև ծնկները՝ պատերազմի յատուկ, անկից վար ցոյց տալով վարտիքը։*

*Թէև նկարուց մէջ աննշմարելի, բայց այս շրջանիս ալ անպակաս էին մանր զարդերը կանանց և արանց վրայ։ Կիւրոս՝ Տիգրանի կնոջ կը նուիրէ «շատ գոհարեղէն», պատերազմի ժամանակ ամուսնոյն հետևած ըլլալուն համար*[5]*։ Կարծեմ թէ կարճ պարեգօտով էր այդ պարագային։ Խորենացին ակնարկելով նոյն Տիգրանի թագաւորութեան՝ կ'ըսէ. «Մթերս ոսկւոյ և արծաթոյ և քարանց պատուականաց և զգեստուց և պէսպէս գունոց և անգուածոց՝ արանց հասակաց և կանանց միանգամայն բազմացոյց. որով տգեղագոյնքն իբրև զգեղաւորս երևէին սքանչելիք, և գեղաւորքն ըստ ժամանակին առ հասարակ դիւցազնացեալք»*[6]*։ Եթէ այս նկարագիրը կը յարմարի ամէն ժամանակի, ի դէպ է և ներկայիս։*

## Դ. ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆՔ

*Հերոդոտոս յետ վկայելու՝ թէ հայ զինուորութիւնը փռիւգացւոց ձևով հագուած էր, կը լրացնէ իւր տեղեկութիւնը՝ գրելով. «Նաև*

1. Dar. III, 1667. — 2. Նոյն՝ II, 146. — 3. Guhl, 296. — 4. Ger. տխ. 4, 5 ևն. — 5. Քսեն. Կիւր. Ը, գ. — 6. Խոր. Ա, իդ.

*փռիւգացիք ու Պափղագոնացիք զինուած էին նման իրարու՝ դոյզն տարբերութեամբ »։ Եւ կու տայ Պափղագոնացւոց նկարագիրը [1], զոր պիտի տեսնենք այժմ, ի միասին Պերրոտի տուած զինուորական պատկերին հետ [2], որ միակ և « ճշմարիտ փռիւգական արուեստի » օրինակն է, և զոր յառաջ կը բերեմ հոս, Զև 9։ Ասկից թեթևակի կը շեղին հելլենական անօթոց տուած փռիւգացի զինուորական ձևերը նոյն հնախօսին քով [3], շատ աւելի նուրբ քան զմիւսը, զոր նոյնպէս ուշադրութեան պիտի առնունք, Զև 10։*

1. *Սաղաւարտն է՝ որ նախ աչքի կը զարնէ մեր պատկերաց մէջ։ Գմբեթարդ է, և ստորոտը դուրս կը շեղի ծոծրակին վրայ.*



Զև 9. փռիւգացի զինուոր

*իսկ գագաթին իբր զարդ ունի եղջերաձև մեծ աղեղ մը, որոյ ծայրերը վար կ'իջնեն։ Գլխանոցիս մասն էր երեսին դիմակը, որ կը պահպանէր նեածերէ։ Գլխանոցիս նիւթը զգալի չէ՝ ձևերու անկատարութեանը մէջ. թէև Հերոդոտ կը հաստատէ՝ թէ Պափղագոնացիք « իրենց գլխին հիւսկէն սաղաւարտներ » կը կրէին։*

2. *Զրահ մը կը ծածկէ անոնց մարմինը, մերկ թողլով բազուկն ամբողջովին։ Արևելեան ժողովրդոց մէջ շատ ընդհանրացած էին վուշէ հիւսուած զրահներ [4]. և նոյնպէս էին ըստ Քսենոփոնի՝*

1. Հեր. Է, հբ. — 2. Perr. V, 173. — 3. Նոյն՝ X, 180-1. — 4. Dar, III, 1261.

նաև Քաղերաց հագածները, որոնք Հայաստանի ժողովուրդ մ'էին[1]։ Մեք գինուորին բոլոր հասակը չենք տեսներ մեր փռիւգեան ձևին մէջ. բայց տարակոյս չկայ՝ թէ պճղնաւոր չէր կրնար կրել, ինչպէս պատերազմիկ ամազոնք անգամ կարճ կը հագնէին. և մեր յունական պատկերին մէջ զրահը կը ծածկէ մինչև ազդերաց կէսը։

3. Գօտին զգալի կերպով լայն ու զարդարուն է մեր 10 Ձևի զօրաց վրայ։

4. Կօշիկները կը լրացնէին այդ տարազը, և որոնք Պափղագոնացւոց վրայ մինչև «սրունից կէսը կը հասնէին» ըստ Հերոդոտի, մինչ յունական փռիւգացիք սրունից առաջակողմէն զանկապաններ կը ցուցնեն։



Ձև 10. փռիւգացի մենամարտիկք

5. Վահան մ'է բռնած ձախով, ճիշդ բոլորաձև ու չափաւոր, ինչպէս Պափղագոնացիք ալ կը կրէին «ոչ մեծ վահաններ» ըստ Հերոդոտի։ Յունական ձևերուն մէջ անոնք զարդարուած են անասնոց պատկերներով։ Թէ ինչ նիւթէ կը շինուէր ասպարը, կ'արժէ դիտել՝ որ Պարսիկներն որսի պահուն ունէին ուռով հիւսուած վահաններ, կ'ըսէ Քսենոփոն[2]։

6. Տէգ մը՝ յարձակողական միակ զէնքը կը կազմէ մեր պատկերաց մէջ։ Պափղագոնացիք ունէին նիզակներ ու դաշոյններ ևս, որոց վերջինը կայ նաև մեր գինուորաց մէջքին։

1. Քսեն. Արշ. Դ, ժե։ — 2. Քսեն. Կիւր. Ա, դ։

*Զգեստի այս ձևը նոյն էր անշուշտ բոլոր Փռիւգացւոց և Հայոց համար. սակայն զէնքերը կրնային փոփոխիլ ըստ գնդի. զի կարելի չէ՝ որ փռիւգահայ բանակը զուրկ լինէր աղեղան ու սուրի նման ամենահասարակ և հին զէնքերէն։*

*Արուեստագէտք ամէն ժամանակ իրենց կարողութեան և ախորժակաց համեմատ յատուկ պահանջներ ունէին։ Զոր օրինակ՝ յոյն նրբաճաշակ նկարիչը չէր կարող հետևիլ փռիւգացի քանդակողին կոպիտ և անհարթ գծերուն, և պիտի տար մեզ գեղեցկագոյն ձև մը։ Բայց կը միաբանին երկուքը՝ նիւթի ընտրութեան մէջ, և զինուորական կեանքէն կը զատեն այնպիսի տեսարան մը՝ որ աւելի նկարչական է յինքեան, և տեսնողներուն աւելի ընտանի և հաճոյական. այն է վահանակրաց ձևը, փռիւգացւոյն՝ պատերազմողի դրից մէջ, և յունին՝ մենամարտողաց։ Եթէ ռազմական ընդհանուր տեսարան մը տալ ուզէին, պիտի տեսնէինք հոն նաև միւս զէնքերը։*



# ԳԼՈՒԽ Դ

## ՄԱՐՍԵԼԵԻԿԵԱՆ ՇՐՋԱՆ (Գ)



### Ա. ՆԿԱՐԱԳԻՐԸ

ՍՏՐԱԲՈՆ *կապադովկացի աշխարհագիրը, մեռած քրիստոնէական թուականին սկիզբները, երկու տեղ կը խօսի զգեստուց վրայ՝ որոց հետ կը խառնէ Հայոց անունն ալ։ «Շատ բաներու մէջ, կ'ըսէ տեղ մը, Մարաց ու Հայոց սովորոյթները նման են. որովհետև աշխարհններն ալ իրարու կը նմանին։ Նախ Մարք հնարեցին զանոնք և Հայոց բերին. ինչպէս կանխաւ Պարսից ալ, որոնք գրաւելով զՄարաստան՝ անոր յաջորդեցին Ասիոյ տիրապետութեան մէջ. վասն զի այժմ իսկ կը կոչուի պարսկական զգեստ... Ջի խոյր, ապարօշ, գդակ և թեզանաւոր պարեգօտ ու վարտիք՝ ցուրտ և հիւսիսային վայրերու մէջ՝ ինչպէս Մարաստանն է, հանգիստ ագանելիք են»։ Եւ կը յարէ՝ թէ Պարսիկք յետ նուաճելու զՄարս, անոնց օրինակաւ՝ «փոխան մերկութեան ու թեթև զգեստին՝ ընտրեցին կանացի զգեստն ու պճղնաւոր հանդերձը[1]»։*

1. *Այս նկարագրին հապճեպ ընթերցմամբ այնպէս կը թուի՝ թէ Ստրաբոն կը նոյնացնէ Մարաց, Պարսից ու Հայոց տարազները։ Բայց նա Պարսից ու Մարաց համազգեցութիւնն իբր օրինակ կու տայ մարական ազդեցութեան Պարսից վրայ, որուն ենթարկուեցան, կ'ըսէ, Հայք ևս, ոչ տարազին՝ այլ «շատ բաներու մէջ»։ Եւ զայս կը ճշդէ ու կը հաստատէ իւր երկրորդ վկայութեամբ, երբ յիշելով Աղեքսանդրի զինակից Կիւրսիղոս փարսաղացւոյ և Մեդիոս ղարիսացւոյ կարծիքը՝ թէ Հայաստան իւր Արմենիա անունը ստացաւ Արմենոս թեսաղացիէն, որ արշաւած էր հոն, կը յարէ. «Արդարև հայկական զգեստն ալ ոմանք թեսաղականը կը համարին. ինչպէս*

1. Ստր. ԺԱ, ժգ, 9։

երկար պարեգօտները, որ ողբերգակաց վրայ Թեսաղականք կը կոչուին, և կրծոց վրայ գօտեորեալ. և մեկնոցներ՝ զոր ողբերգակները Թեսաղացւոցմէ օրինակեցին[1]»։ Քաջ կը տեսնենք մեզ հոս՝ որ այս նկարագրութեան տարազը կը տարբերի նախորդէն՝ թէ անուամբ, և թէ գօտւով ու կրկնոցով՝ որ չկան անոր մէջ, ոչ ալ հին քանդակաց մարական պարսկացած հանդերձին վրայ[2]։

Հայ տարազին այս ստրաբոնեան նկարագիրը պատմական է իսկապէս, որուն ականատես է աշխարհագիրը, ու կը խօսի ներկայ ժամանակաւ, և ոչ «ըստ նախնի առասպելաբանութեանն Յունաց», ինչպէս կը կարծէ Ինճիճեան[3]։ Սակայն Արմենիայի աւանդութիւնը, որ անոր արշաւանքը կը դնէ քրիստոնէական թուականէն տասներեք դար յառաջ, կը հերքուի փռիւգական և աւելի կանուխ ուրարտեան տարազներէն, որ կային Հայաստանի մէջ այս թեսաղական զգեստէն յառաջ։ Անընդունելի է ինձ նաև՝ որ ստրաբոնեան ձևը Թեսաղացւոցմէ եկած լինի որ և իցէ ժամանակ։ Արդէն այդ կարծիքն աշխարհագրին անգամ չէր, այլ «ոմանց» միայն։ Թէև Թեսաղացիք, դրացի ու ցեղակից Յունաց, զգեստուք աւելի արևելցի, բարեկամ ու զինակից էին Աքեմենեանց՝ ըստ Գերոդոտի, ուստի ծանօթ և հաղորդակից Հայոց ևս, բայց այսքանը չէր բաւեր՝ անոնց հանդերձն իշխեցող ընելու մեր վրայ։

Հարկ է ուրեմն ուրիշ ծագումն որոնել, և ըստ իս՝ մարական տարազէն իսկ, անոր հարազատ ձևին մէջ՝ որ պահուած է յոյն արուեստէն՝ պարսիկ թագաւորական կենդանագրին վրայ[4], և շատ նման՝ գուցէ և աղբիւր՝ թեսաղական ոճին՝ թէ իւր մասանց թուով, և թէ ընդհանուր հանգամանօք. մինչ անոր պարսկացած կամ աքեմենեան ձևը փոխուած ու հեռացած է բնագրէն՝ իւր անկրկնոց վիճակով, դէպ ի բերանը չափազանց լայնշլի թեզանեօք և մէջքէն վար խորշաքաղ պատմուճանով, զոր Վիգուրուի բառարանն[5] ու Ֆալկէ[6] սխալմամբ մարական կը համարին դեռ։

Ե՞րբ մտեր է մեր մէջ բուն մարական ձևը։ Անտարակոյս՝ Ե դարէն կամ փռիւգահայ շրջանէն վերջ, երբ Մարաստան Կիւրոսի օրերէն (550) արդէն ընկած էր Պարսից լծին ներքև. որով հայ տարազին մարացումն եթէ ոչ տիրապետութեամբ, զօրաւոր գաղթականութեամբ մը միայն կրնար պատահիլ։ Յիշենք այս տեղ՝ որ Արտաշէս Ա (իբր 190–159 թուին) «աւելի քան զբիւր մի» Մար կը գերէ և կը բնակեցնէ ի Հայս[7], որոնք կը բռնեն Մասեաց ամբողջ

1. Ստր. ԺԱ, ժդ, 12։ — 2. Perr. V, 716, 794–800 են։ — 3. Ինճ. Բ, 288։ — 4. Dar. V, 297. հմմտ. I, 674։ — 5. Vig. IV, 921-6։ — 6. Falk. 50։ — 7. Խոր. Ա, Լ։

տորոտը[1]. ուսկից էր և Մուրացան մեծ նախարարութիւնը[2]։ Չէ կարելի ըսել՝ թէ միակ կամ առաջին սերտ կցորդութիւնն է այդ երկու ցեղերուն մէջ։ Մարական տարազին մուտքն աւելի կանուխ լինելու է, և Ստրաբոնի օրով կը մնար տակաւին հայ ժողովրդեան վրայ, զոր նա կը տեսնէր ու կը շօշափէր մեր սահմանակից Կապադովկիայէն։

Բայց ասոր կը զուգադիպի՝ սկսեալ Բ դարու վերջերէն՝ (Ն. Ք.) պարթևական զգեստն ալ, որոյ մասին պիտի խօսինք յաջորդ գլխով։ Եւ կը հարկադրինք հետևցնել՝ թէ մարականը մնացեր էր կեդրոնէն հեռի և Կապադովկիոյ կողմի հայ գաւառաց մէջ, մինչդեռ վերին Հայաստանի մէջ, ուր կը տիրապետէին Պարթևք, սկսած էր իշխել անոնց տարազը։ Այժմ իսկ ամէն երկիրներու մէջ կը հանդիպին իրարու բնիկ կամ հին ու նորամուտ զգեստները։

2. Այս շրջանիս հետ կապուած են քանի մը թագաւորներ, որոնք իշխեցին՝ Հայաստանի տիրող մեծին Աղեքսանդրի մահէն (324) ծնած և Ասորւոց իշխեցող Սելևկեան տոհմի լծին ներքև, աւելի կամ նուազ չափով հպատակելով անոնց. և իրենց իշխանութիւնը կը տարածուէր Հայաստանի աւելի կամ պակաս ընդարձակ մէկ բաժնին վրայ։ Շատ մութ է աղոնց թիւը, ազգութիւնը, պատմութիւնը և տիրապետութեան սահմանները։ Կան աղոցմէ կարծեցեալ և իրական իշխեցողք Հայաստանի, որոց վերջինք իրենց դրամներով առանձին կարևորութիւն մ'ունին մեր նիւթին համար։

Այդպիսիք են Արշամ, ժամանակակից Բ Սելևկոսի (246 – 226), որոյ մասին կը գրէ Պոլիենոս՝ թէ ասպնջականեց զԱնտիոքոս՝ Սելևկոսի եղբայրը, որ ապստամբելով՝ մեր երկիրն ապաւինեցաւ[3]։ — Զարիադր կամ Զարեհ, Արտաշիսի հետ «զօրագլուխք բանակաց» Գ Անտիոքոսի, յիշատակուած Ստրաբոնէ[4], որ յետ պարտութեան Անտիոքոսի ի Հռովմայեցւոց՝ 190 թուին, իրենք զիրենք թագաւոր կը հռչակեն, Արտաշէս՝ վերին Հայաստանի մէկ մասին, և Զարեհ՝ Ծոփաց փոքր Հայոց, և հետ զհետէ կ'ընդլայնեն իրենց տէրութեան սահմանները։ — Քսերքսես, յիշատակուած Պողիբոսէ իբրև թագաւոր Արշամաշատի Ծոփաց[5], և Յովհան Անտիոքացիէն՝ իբր «բռնաւոր Հայոց[6]», որ Անտիոքոս Դ Եպիփանի (175 – 164) հպատակութեան կը մտնէ[7]։

Բաբլոն տուաւ մեզ այս երեք թագաւորաց դրամոց ձևերը[8]։

1. Խոր. Բ, իը։ — 2. Նոյն՝ Բ, ը ևն։ — 3. Պոլ. Դ, 17։ — 4. Ստր. ԺԱ, ժդ, 5, 15։ — 5. Պող. Ը, իե։ — 6. Frag. IV, 557։ — 7. Պող. Ը, իե։ — 8. Bab. Rois. Introd. 193, 194, 197. տխ՝ 29։

Եւ անոնց հետ ուրիշ երեք ևս, երկուքն անյիշատակ պատմութեան մէջ, զորս կ'ախորժի հայ համարիլ. և են Քարասպ, (Դիոսկուրեան աստուածոց դիմօք՝ զորս Ասորպետ սխալմամբ կը կարծէ «հայ Թագաւորի և Թագուհու պատկերը միասին[1]»), դատելով անուան պարսկակերպ և հայացած ասպ (ձի) վերջաւորութենէն ու դրամական հանգամանքներէն[2]. Արդիսար, տարազով յար և նման Քսերքսեսի, որուն հայր կամ որդի կը կարծէ[3]. և Մորփիղիզ՝ անկատար և երկբայական անուամբ ու Զարեհի ճգրիտ խուրով, զոր կը նոյնացնէ Խորենացւոյն համանուն անձին հետ[4]: Ուրիշ պատմագէտք հայացուցին նաև զՍամէս (կոնաձև խուրով) և զՄիհրդատ (կնգղաձև խուրով), հաստատուելով յարմարական փաստերու վրայ, ինչպէս Յ. Եկքէլ[5], Վիսկոնտի[6], Լանգլուա[7] և այլք. մինչ Յ. Մորգան զՍամէս կը համարի առաջին թագաւոր և հիմնադիր արքայութեան Կոմմագենի[8], որ ծանօթ է նոյն անուամբ՝ փշաճառագայթ թագով[9]: Կը թողում նաև Տրիբազի, Դադամի կամ Մազայոսի նման կասկածելի անուններն՝ Սելևկեաններէն ալ կանուխ, որոց իշխանութիւնը Հայաստանի մէկ մասէն սկսելով՝ կը տարածուէր օտար երկիրներ[10], և որոնք մեզ համար հաւասար են Աղեքսանդրի նման օտար իշխեցողաց:

Հետևաբար իբր իսկապէս Թագաւոր Հայաստանի պիտի նկատենք առաջին երեքը, Արշամ, Զարիադր ու Քսերքսէս, և պիտի քննենք անոնց տարազը, որ Սելևկեանց ազդեցութեան ներքև կը հեռանայ ժողովրդականէն, իւր մէջ ալ տարբերութիւններ ցոյց տալով:

## Բ. ԹԱԳԱՒՈՐՔ

Ասոնց տարազին միակ աղբիւր ունինք իրենց յիշատակեալ դրամներն իսկ, Արշամին՝ պահուած Պարիսի Ազգ. Մատենադարանին մէջ, բաւական մաշած, որ իւր վրայ՝ բոլորին սեպհական յունարէն լեզուով՝ ունի այս գիրը. Արքայի Արշամայ: Անոր ձևը հրատարակեցին վերոգրեալ դրամագէտք, և լաւագոյնը Բաբլոն, որ ինձ շնորհեց կաղապար մը բնագրէն, ուսկից է հոս տուածս՝ ձև 11: — Զարեհին, Բեռլինի Թանգարանին մէջ, համառօտեալ գրութեամբ մ'Անահտայ պատկերին շուրջ, զոր Բաբլոն լրացնելով կը կարդայ՝ Զարիադր

1. Ազգ. Հնդ. 1912, Թ. 2, էջ 28. — 2. Bab. Rois. Introd. 192. տխ. 29. — 3. Անդ՝ 194, 195, և տխ. — 4. Անդ. 199, և տխ. — 5. Eck. մասն I, հտ. III, 205-7. — 6. Vis. II, 317. տխ. 16. — 7. Lang. Num. — 8. Morg. 64. — 9. Bab. Rois. տխ. 30. — 10. Ասորպետ յԱզգ. Հնդ. 1912, Թ. 1, էջ 212-31.

(որդի) Անտիոքոսի։ Գծագրութեամբ յառաջ բերուած է նոյն Բաբելոնէ, և անոր Ատրպետէ[1]. և զոր ես բնագրէն իսկ՝ շնորհիւ Ռուս. Բեգլինգի՝ կը դրոշմեմ հոս, Ձև 12։ — Եւ Փսեբքսեսին՝ երկու կտոր, մին փոքր և միւսը մեծ, Պարիսի մատենադարանէն. իր գիրն է՝ Արքայի Փսեքքսեայ։ Դարձեալ Բաբլոնէ ստացայ բնագրաց կաղապարները, որոց պատկերը կու տամ հոս, Ձև 13 և 14։ Բնականապէս շատ մեծցուցած եմ բոլորն ալ՝ զգեստուց մանր մասունքը զգալի ընծայելու համար։ Ահաւասիկ ատոնք։

1. Հերք չափաւոր են Արշամայ և Զարեհի[2] գլխին, ինչպէս կ'երևի անոնց ծայրերէն ճակատին վրայ։ Յայտնի է նմանութիւնը



Ձև 11. Դրամ Արշամայ (19 ճգ.)  Ձև 12. Դրամ Զարեհի (18 ճգ.)

Սելևկեանց հետ, որոնք հռովմէական կամ մակեդոնական ոճով կարճ ու խառնակ կը թողուին իրենց մազերը[3]։ Ընդ հակառակն Փսեբքսէս կը զարտուղի նախորդներէն, շուրջանակի գանգուրներ կախելով մէկ դրամին վրայ, որոնք աւելի կարճ են միւսին վրայ։ Գանգրաւոր է նաև Աբդիսար։

2. Մօրուք և պեխեր ածելուած են Արշամայ ու Զարեհի վրայ, սովորութեամբ մը՝ որ կը սկսի Եգիպտոսէ, և կ'անցնի Յունաց, Հռովմայեցւոց, Մակեդոնացւոց, Սելևկեանց՝ քիչ բացառու-

1. Ազգ. Հնդ. 1911, էջ 203։ — 2. Ատրպետ վերջնոյս ճակատի մազերը վրիպակաւ կարծեց «մի շարք ոսկի զարդեր», նմանեցնելով կարնեցի կանանց «ճակատոսկուն». անդ՝ 1912, Թ. 2, էջ 33։ — 3. Poole.



Ա. — ԱՐՇԱՄ ԹԱԳԱՒՈՐ (ն՛կ. 17)

*Շրջանիս հանդերձին նկարագիրն աւարտած էի, երբ առիթ ունեցայ Վիեննա երթալու, և հոն Մխիթարեան Հարց ճոխ հաւաքածոյին մէջ հանդիպեցայ Արշամայ կրկին դրամոց։ Մին հաւասար էր մեր պարիսեան օրինակին (Զև 11), և քան զայն մաշած։ իսկ միւսն էր ներկայս, որոյ ձոյլն ընդունեցայ շնորհիւ Հ. Ղև. Մովսէսեանի։ իւր գիրն է՝ Արքայի Արշամայ։ Հոս աւելի յստակ են թագաւորին մօրուագերծութիւնը և թագին հանգոյցը։ Բայց աստ խոյրն աւելի երկար ու սուր է, և ծայրը պառկած դէպ յառաջ. այս ոճով կը մօտենայ Պարթևաց ժողովրդական ձևին։ Ցայտնի է թէ կրկին ձև ունէր թագաւորին վրայ իսկ։*

թեամբ, և Հելլէն քաղաքակրթութեան հետևող ուրիշ տոհմերու կամ անհատից, որոց կարգէն են և մեր այս թագաւորք։ Իսկ Քսերքսէս՝ մօրուանի Սելևկեանց ոմանց հետևող մ'է, ինչպէս և Արղիսար։

3. Խոյրը կը ներկայանայ երեք տարբեր ձևերով։ Արշամի վրայ կոնաձև գմբեթարդ է, չափաւոր բարձրութեամբ, դրած դէպ յետ կողմ, և որ անշուշտ զարդարուած էր թանկագին քարերով, ինչպէս կը գտնենք հետագայ շրջանաց մէջ, հոս մաշածութենէն աննշմարելի մնացած։ Հեռի է խոյրս Սելևկեանց փշաճառագայթ պսակէն[1]։ Դարեմբերգի բառարանը խօսելով գդակի կամ խուրի (πέπλος) մասին, որ ծանօթ էր ի Յունաստան, Իտալիա և այլուր, աւելի կամ նուազ բարձր, և գմբեթարդ կամ սրաձև, այնքան պարզ գիտ մ'է, կ'ըսէ, որ ծագումը Բաղղէաստանի, Փիւնիկէի կամ ուրիշ ժողովրդոց մէջ փնդռելու պէտք չկայ[2]։

Սակայն Արշամայ ուրոյն ձևը, տարբեր մեր նախընթաց փոխւ-գականէն և ժամանակակից սելևկեանէն, հայ թագաւորի մը գլխին անցնելու համար՝ մեծագոյն կարևորութիւն մ'ունենալու էր։ Առ այս դիտելի է՝ որ Աղեքսանդրի դարուն և ապա Սելևկեանց քով շատ մեծարուած էին վերոյիշեալ քաջամարտիկ աստուածները, Դիոս-կուրեան եղբարք՝ Կաստոր և Պոլլուքս, պաշտպանք պատերազմի, որոց խուրակիր պատկերը քանդակեց իւր դրամոց ոմանց վրայ Սելևկոս Ա, փոխան իւր կենդանագրին[3], ինչպէս և յիշեալն Բա-րսապ, խուրին շուրջ փոխան հանգուցին գործածելով սաղեպսակներ։ Արդ՝ Դիոսկուրեանց խոյրը նոյն է Արշամայ կրածին հետ՝ թէ այդ օրինակաց և թէ ուրիշ հելլենական քանդակաց մէջ, բայց փոքր մի սրացած[4]. մինչդեռ բոլորովին նման է Արշամին հետ՝ սպարտական դրամի մը վրայ[5]։ Շատ հաւանական կը կարծեմ՝ թէ Արշամ ներ-շնչուեցաւ նոյն դիցապաշտական ձևէն։ Այս գաղափարին արդարև կը համաձայնի իւր հեծելութիւնն ալ դրամին հակառակ երեսին վրայ, եթէ սակայն այս վերջին պատկերը նոյն ինքն Դիոսկուրեանի մը չէ՝ իբրև պաշտպանի հայ թագաւորութեան։

Զարիադրի խոյրը կնգդաձև է, վերև յաւելուածով մը, և երեք երիզներով՝ որոց մին ընկած է ծոծրակին վրայ, և երկուքը կը հան-գուցուին կլափին ներքև։ «Կապադովկեան» կը կոչէ զայն Բաբլոն, և կը համեմատէ ուրիշ բերլինեան համախոյր դրամի մը, որոյ հա-մառօտուած գիրն ու բոլոր հանգամանքները կը մերձեցնէ կապա-

1. Poole, տխ. XII են. — 2. Dar. IV, 479. — 3. Poole, տխ. II, Bab. տխ. 2. — 4. Dar. II, 252, 254 են. — 5. Անդ՝ 255.

դովկիոյ Արիարամնոս արքային[1]. և դարձեալ բեռլինեան երրորդ դրամի մը, երկրայական գրով, ուր ոմանք կը կարդան կապադովկեան «Սարիքա» քաղաքին և «Մորիմենոս» գաւառին անունները, իսկ Ռ. Բլաւ՝ «Մորփի(ղիգեայ) որդւոյ Զարի(աղրի)». և զոր Բաբլոն կը համեմատէ Խորենացւոյն Մորփիղիգի հետ, ինչպէս ըսի վերև։ Գրեթէ նոյն է վերոյիշեալ Միհրդատայ խոյրն ալ, բայց կանգուն ձևով ու սրածայր. նոյնպէս Տրիրազին, այլ վերջացած զմբեթարդ, և կլափին ներքև մերթ կապուած ու մերթ արձակ թողուած։ Աւելի նման է Զարեհի դրամին, բայց կնգղին ծայրը դէպ ի վեր կարկառած, Պարթևաց Ա. Տրդատայ (248-7, 211–10) և Ա. Փրաատայ (210–191) դրամը[2], և որոց վրայ զգալի է աքեմենեան ձևին ազդեցու-



Զև 13 (12 նգ.) Դրամք Քսերքսեսի Զև 14 (17 նգ.)

թիւնը, որ կ'երևի նախանշանակեալ հելլենաւանդ նկարին վրայ[3], յառաջ ընկած ծայրով, և այտից վրայ առիկախ երիզներով. և որոց հիմը փուլգականն է անտարակոյս։ Այսքան ընդհանուր էր ուրեմն Զարիադրի գլխանոցին ձևը, որով չի կրնար բնիկ հայկական նկատուիլ։

Ընդ հակառակն բոլորովին եզական է Քսերքսեսի դրամը, զոր Բաբլոն «հայկական» կ'անուանէ, ըստ որում անծանօթ ուրիշ ազգերու մէջ։ Կը նմանի այժմեան եպիսկոպոսականին, ճեղքուած, առաջակողմէն լայն ու բարձր, յետակողմէն նեղ ու ցած։ Արդեօք բուն արքայական թագն էր այս, թէ քրմական ձև մը, որով կը զանա-

1. Bab. Rois, Introd. 199. — 2. Wr. Part. տխ. I. — 3. Ատ՝ 45.

զանէր նախորդներէն։ Հայ թագաւորաց քրմութեան մասին պիտի խօսիմ յաջորդ գլխոյն մէջ։

4. Հանգոյց բազիճ հոս ալ կայ, և կ'երևի Արշամի խոյրին շուրջ, մաշելէն ծայրերն աննշմարելի մնացած։ Աւելի զգալի կերպով լայն է Քսերքսեսի գլխին, և ճոխաբար կը կախէ ծայրերը։ Համաձայնապէս կը կրեն զայն՝ Արդիսար, և Պարթևաց վերոյիշեալ Տրդատ ու Փրաատ թագաւորք։ Ընդ հակառակն մերս Զարիադրէ վրայ չենք տեսներ զայն, քանդակողին մոռացութեամբ, թէ որովհետև իւր խոյրն անկարօտ էր նոյն կապին, չեմ կարող ըսել։

5. Քղամիդը ցոյց կու տայ իւր գոյութիւնը Զարիադրէ ու Քսերքսեսի պարանոցին շուրջ, շիգզով մը ճարմանդուած աջ ուսին վրայ, որով շարժելու ազատ կը թողուր նոյն բազուկը։ Նոյնը կ'երևի նաև Արդիսարի և Սելևկեանց վրայ[1]։ Մեր դրամոց փոքրկութիւնը չի ներեր նշմարել պատմուճանը՝ որ անպակաս էր։

Ու երկուքին ալ գոյնը ծիրանին էր, սկսեալ հին ժամանակներէն՝ սեպհական արքայեան և արևմտեան արքունեաց, ինչպէս Եգիպտոսի, Ասորեստանի, Պարսկաստանի, Մակեդոնիոյ, Հռովմայ և այլն, մերթ և արքունի պաշտօնէից[2]։ Յատկապէս այս շրջանիս համար յիշենք ոչ ժամանակակից՝ բայց և ոչ շատ հեռաւոր վկայութիւնը Քսենոփոնի՝ թէ Կիւրոս հագած էր «պատմուճան ծիրանի սպիտակախառն[3]»։ Կուրտիոսին՝ թէ Դարեհ ունէր «պատմուճան ծիրանի կէս սպիտակ խառնած. և ոսկի կրկնոց՝ ոսկեղէն բազէներով զարդարուած[4]»։ և Եփիպպոսին՝ թէ Աղեքսանդր կը կրէր «պատմուճան սպիտակախառն» ծիրանի յատակով, և «քղամիդ ծիրանի[5]» համակ։ Այս քիչ մ'ընդհանրացած խառն գոյնը, որուն պիտի հանդիպինք յետոյ և մեծն Տիգրանի վրայ, ընծայելու չենք նաև շրջանիս հայ թագաւորաց։

6. Երեք հայ թագաւորաց վրայ տեսանք իրանին վերին մասը միայն։ Անծանօթ կը մնայ մարմնոյն ստորին մասը, ճշդելու համար՝ որքան երկար էր պատմուճանը, քղամիդը և այլն։ Սելևկեանց տարազին վրայ զգալի է հելլենականին ազդեցութիւնը, դատելով անոնց լերկ այտերէն ու կարճ մազերէն, որոնք նոյնպէս են նաև Մակեդոնացւոց վրայ, և ապացոյց նաև ասոնց հնդերձին հելլենականութեան։ Մակեդոնեան տարազն ամենէն աւելի պիտի երևէր Աղեքսանդրի վրայ, որոյ արձանները սակայն՝ ամբողջ հասակով և

1. Poole. VI, 14. XV, 4. ևն. Bab. Rois. տխ. 6, 18, 19 ևն. — 2. Dar. IV, 777-8. — 3. Քսեն. Կիւր. Ը, գ, 13. — 4. Curt. III, 3, 17. — 5. Առ Աթենէոսի, 12.

*արքայական ձեւով կը պակսին։ Նէապոլսոյ Թանգարանին մէջ կայ անոր պղնձի անդրին ձիաւոր, հրատարակուած[1], ուր Թագաւորին պատմուճանը կը հասնի ծնգաց մօտ, սրունքը զանկապանով, և լօդիկը նոյնպէս կարճ։*

*Արշամի ու Զարեհի անմօրուս երեսները բաւական երաշխաւորութիւն են մեզ՝ անոնց զգեստին վրայ ևս նշմարելու մակեդոնականին կամ սելևկեանին հանգամանքները. այս ինքն պատմուճանը կարճ, արքունական կամար, որ Դարեհի վրայ կը կոչուի «ոսկի կամար՝ կանացաբար կապուած, ուսկից դաշոյնը կը կախուէր[2]», և քղամիդը նոյնպէս կարճ։*

## Գ. ՔԱՂԱՔԱՑԻՔ

*Ստրաբոն հայ ժողովրդական զգեստը սահմանեց Թեսաղական կամ ողբերգակաց ձեւով։ Հաւատարիմ գտնուելու համար իր բացատրութեան, իբր օրինակ առնունք ոչ մարականը, այլ նոյն ինքն յոյն ողբերգակաց պատկերը, զոր կու տայ Դարեմբերգի բառարանը[3], և որ շատ յարմար է մեր նպատակին. Ձև* 15։ *Ի հաստատութիւն այս պատկերին և աշխարհագրին տեղեկութեան՝ նկատողութեան պիտի առնունք նաև յոյն մատենագիր Պոլլուքսի ողբերգական հանդերձին նկարագիրը, որ իր մանրամասնութեամբ շատ կարևոր է։*

1. *Հերք և Մօրուք կը մնան միշտ, և կը պահեն չափաւոր երկայնութիւն մը։ Հոս չկան «կեղծ ծամերը»՝ զոր Քսենոփոն կը ցուցնէր Աժդահակայ գլխին՝ «ինչպէս սովորութիւն է Մարաց[4]»։ Ողբերգակաց վրայ առատ են անոնք, բայց ոչ երկար. որոյ շրջանն անցած կը թուի հոս, ոչ միայն թագաւորաց, այլ և ժողովրդեան համար։*

2. *Գլխանոցի մասին լռութեամբ կ'անցնի Ստրաբոն, մինչդեռ կը յիշէ մարականները, «խոյր, ապարօշ, գդակ». և իր լռութիւնը նշան մ'է՝ թէ Հայոց կրածը չէր կարող համեմատել ողբերգականին հետ, որ մեր պատկերին մէջ կեղծ ձև մ'է՝ տափարակ ու կոնաձև։ Պոլլուքսի նկարագրին մէջ հոս գլխանոցները զանազան են ըստ անձանց՝ զոր կը ներկայացնէին ողբերգուք. «Թագ, գլխադիր (կանանց), խուրակապ, խոյր[5]», որոնք նոյնպէս անստուգութեան կը մատ-*

1. Ujf. էջ 117. — 2. Curt. III, 3, 18. — 3. Dar. I, 1123. III, 218. — 4. Քսեն. Կիւր. Ա, գ. — 5. Poll. IV, 18.

*նեն զմեզ։ Եւ կը հարկադրինք դիմելու յոյժ հաւանական ենթադրութեանս՝ թէ ժողովրդական գլխանոցն ալ նոյն էր Զարիադրի կնգղաձևին հետ, այսինքն շարունակութիւնը նախորդ շրջանի փռիւգականին՝ փոքր ինչ վերածուած։*

3. *Պարեգօտը, ստրաբոնեան նկարագրին մէջ «երկար», մեր պատկերին վրայ նոյնպէս պճղնաւոր է. ամփոփ քան զփռիւգականը, նեղաթեզան մինչև դաստակները, և թատերաբեմին կամ խաղին պահանջման համեմատ՝ նաև ճոխարար հիւսուած, ինչ որ հարկաւ չենք կարող նկատել հայ ժողովրդեան սոսկական պարեգօտին վրայ, բայց եթէ ազնուականաց։ Նոյն մեծութիւնն ու ձևն ունի նաև մարական հարազատ տարազին վրայ՝ զոր ցոյց տուի կանխաւ[1]։ Նաև Քսենոփոն կը յիշէ Մարաց «ծիրանի պատմուճանները[2]»։*



Ձև 15. Յոյն Ողբերգակներ

4. *Գօտին, յատկապէս յիշուած աշխարհագրէն «կրծոց քով», կ՚երևի նաև մեր պատկերին վրայ, բաւական լայն, և երկու եզերքն երիզուած։ Դարեմբերգի մարական պատկերն անգօտի է, թերևս թագաւոր լինելուն համար։*

5. *Մեկնոցը կ՚ամբողջացնէ մեր այս տարազը Ստրաբոնի նկարագրին մէջ, մեր պատկերին ու Դարեմբերգի մարականին վրայ։ Պճղնաւոր է, կախուած թիկունքն ի վայր, և բաց կը թողու առաջակողմը, ուր կ՚երևի զայն բռնող երկար երիզը։ Ի հնուց յայտնի էին և Քսենոփոնի՝ Մարաց «մեկնոցները[3]»։ Պոլլուքս ողբերգակաց վրայ կը զատէ հետևեալ «արտաքին» զգեստները. «պճղնաւոր կանաչ, մեկնոց, քղամիդ ոսկեզօծ՝ ոսկեհիւս՝ ծիրանի[4]»։ Բոլորն ալ*

1. Աստ՝ 45։ — 2. Քսեն. կիւր. Ա, գ։ — 3. Անդ։ — 4. Poll. IV, 18։

չափէս նոյն են, ստրաբոնեան «մեկնոցները», գունոյ և ուրիշ փոքր տարբերութեամբ իրարմէ։

Չենք կարող ճշդել, անցեր կամ մնացեր էին արդեօք Հայոց քով՝ և ինչ չափով՝ մարական միւս պաճուճանքները, զոր կը Թուէ Քսենոփոն Աժդահակայ և Մարաց վրայ. «Աչքերը ներկած, դէմքը սնգուրած... զի այս ամէնը մարական են, ինչպէս և... քայռերը պարանոցին շուրջ և ապարանջանք ձեռներուն. ուր Պարսիկք դեռ այսօր իսկ (Ե – Դ դարուց մինչև) իրենց երկրին մէջ բնակելու ժամանակ՝ աւելի պարզ զգեստներ կը կրեն»։ Աժդահակ իւր Թոռանը՝ Կիւրոս մանկան ևս կու տայ «գեղեցիկ հագուստ մը», և կը զարդարէ «քայռերով և ապարանջաններով[1]»։

Կանանց տարազի մասին չունինք առանձին յիշատակութիւն մը։ Բայց Ստրաբոն մարական պարսկացած ձևը կոչելով «կանացի զգեստ», կը զգացնէ երկու սեռից հանդերձի նմանութիւնը։ Որով կանայք ևս այս շրջանիս կը կրէին պճղնաւոր պարեգօտը, գօտին ու մեկնոցը։ Իսկ գլխանոցը նոյնպէս անորոշ, հեռի լինելու չէ արանց վրայ մեր նշմարածէն, ինչպէս նման էին փռիւգական շրջանին մէջ ևս։

1. Քսեն. Կիւր. Ա. գ։

# ԳԼՈՒԽ Ե

## ՊԱՐԹԵՒԱԿԱՆ ՇՐՋԱՆ (Դ)



### Ա. ՆԿԱՐԱԳԻՐԸ

ԵՐՐՈՐԴ դարու կիսուն (Ն. Ք.) կը կանգնէր Պարթևաց թագաւորութիւնը, — անոնց իշխեցող տոհմը կոչուած նաև Արշակունիք՝ յանուն հիմնադրին Արշակայ, — որ հետ զհետէ տիրեց Ասիոյ, Պարսկաստանի և Հայաստանի, որուն յետ ժամանակաց տուաւ նաև առանձին թագաւորութիւն մ'ալ՝ որ կոչուեցաւ Հայ Արշակունեաց։ Այս վերջինք եկան ի Հայս իրենց իշխաններով ու զօրքերով, որոնք իրենց ազգային տարազը կը կրէին ու պահեցին միշտ։ Տրդատ Ա երբ գնաց ի Հռովմ՝ ստանալու համար Հայաստանի գահը, իւր հետ ունէր «երեք հազար պարթև այրուձի», կ'ըսէ Դիոն[1]։

1. Դիւրին է երևակայել՝ թէ որքան մեծ պիտի լինէր այդ պարթևական տարազին ազդեցութիւնը Հայոց վրայ։ Եւ պիտի իշխէր այն գլխաւորապէս Հայաստանի կեդրոնին կամ Այրարատայ մէջ, ազնուականութեան ու ժողովրդեան վրայ, թողլով որ նախկին մարական զգեստը շարունակէր ապրիլ միւս գաւառաց մէջ՝ ուր պարթև տարրը չէր հասնէր, ինչպէս տեսանք[2]։ Մեծին Տիգրանայ յաջորդաց օրով Հայոց գահը գայթ ի գայթի էր ըստ արտաքին պատմութեան, ընդունելով իւր վրայ մերթ պարսիկ Արշակունիներ ու մերթ հռովմէական լուծը։ Եւ այդ նորեկ Պարթևները հաստատուն կը բռնէին հոն իրենց տարազը, որ սերտօրէն ազգային էր իրենց ցեղին համար, և սեպհական անոնց իշխեցողաց ու ժողովրդեան միանգամայն։ Հռովմայ հին քանդակները պահած են առատօրէն անոր ձևերը։

Շատ բազմաթիւ են բարեբախտաբար նաև ժամանակիս հայ

1. Dion, LXIII, 2. — 2. Աստ՝ 46.

տարազին վկայող յիշատակարանք։ Եւ նախ՝ հայ թագաւորաց դրամները, որոց ամբողջական քննութեամբ զբաղեցան Վիկտոր Լանգլուա[1], Վիսկոնտի[2], Եր. Բաբլոն[3], Պետրովիչ[4], Հ. Յ. Տաշեան[5] և Ատրպետ[6]. իսկ ուրիշներ՝ մասնականաբար։ Ունինք նաև հռովմէական դրամներ՝ որոնք կը պատկերացնեն Հայաստանի նուաճումն անոնց կողմանէ՝ զանազան հայկական բնիկ ձևերով, և կամ Հայոց թագաւորաց պսակումներ։ Ինչպէս մեծն Տիգրան ալ իւր դրամոց ոմանց վրայ նուաճեալ Անտիոք քաղաքը և անոր ոտից ներքև Որոնդէս գետը դրաւ կանացի կերպարանօք[7], առնելով քան զինք շատ հին ձևէ մը՝ որ ծանօթ է քանդակաց մէջ, և որ յետ Տիգրանայ կ՚երևի նաև Աւգոստոսի անտիոքեան դրամոց վրայ[8]. որով հայկական ձև մը կարծուելու չէ։ Կան դարձեալ քանդակներ, գոհարներ ու պատմական տեղեկութիւնք, զորս պիտի տեսնենք իրենց կարգին։

2. Երբ սկսած է մեր մէջ պարթևական տարազը։ Խորենացին, ինչպէս յայտնի է, Վաղարշակէն կը դնէ Արշակունեաց թագաւորութիւնը Հայաստանի վրայ, ինչ որ չեն կարող ոմանք միաբանել արտաքին պատմութեան հետ, որոյ մէջ այդ շրջանին տարբեր անուններ կը տեսնեն։ Ադոնք են հայ և օտար պատմագէտք, ինչպէս Ռայնախ, Մորգան, Գարագաշեան, Սանտալճեան, Հ. Ասատուրեան, Բասմաջեան և այլք, որ կազմեցին՝ այդ ժամանակամիջոցէն սկսելով՝ Արտաշիսեան կոչուած հարստութիւն մը, հայկական ծագմամբ, որոյ հիմնադիր կը կոչեն նախորդ գլխոյս մէջ յիշուած Արտաշէսը[9]. և ասոր սերունդ կը դնեն զմեծն Տիգրան և յաջորդները։ Այս հարստութեան կը յաջորդեցնեն, յետ միջանկեալ ժամանակի մը և առաջին դարէն (յ. Ք.), Արշակունիքը՝ ցեղակից Պարթևաց։

Ադոնց հակառակ կը խորհին ուրիշներ, որոնք կը յենուն խումբ մը դրամներու վրայ, զանազան կենդանագրերով և «Արշակայ արքայի» անուամբ ու սելևկեան թուականով։ Այդ անունը սեպհական էր նաև բոլոր Պարթև արքայից՝ իրենց դրամոց վրայ. սակայն նկատելով ասոնց հետ աննմանութիւնը յիշեալ խմբի ձևերուն, եւ միանգամայն նոյն խմբի պատկերաց ու թուականաց զանազանութիւնըն իրարու մէջ, հունգարահայ բանասէրը Պետրովիչ զանոնք վերագրեց Վաղարշակայ (ամ սելևկ. 173=139 ն. Ք.), Ա Արշակայ (սելևկ. 188=124 ն. Ք.), Ա Արտաշեսի և Արտաւազդայ, որուն հաւանեցան Ատրպետ և Հ. Տաշեան ևս, մինչ Վրոթ չէր կարողացած

1. Lang. Num. — 2. Vis. Icon. II, 317, տխ. 16. — 3. Bab. Rois. — 4. Petr. — 5. Հանդ. Ամս. 1904-5. — 6. Ազգ. Հնդ. 1902, թ. 2. — 7. Gard. 103-4, տխ. 27, ևն. — 8. Head. 779. — 9. Աստ՝ 46.

ճշդութեամբ նշանակել. անոնց անձնաւորութիւնն ու տեղը պարթեւականաց մէջ։ Խնդիրը լուրջ է երկուստեք. և շատ ուշագրաւ կը դառնայ այս վերջին բանասիրաց տեսութիւնը՝ պատմական վկայութեանց հետ[1] նաև մեծին Տիգրանայ մէկ դրամով, արձանագրուած՝ «արքայի Արշակայ հելլենասիրի», որ այդ հայ կարծուած թագաւորը կը կապէ պարթև Արշակունեաց ու վիճեալ խումբի դրամներու արքայից հետ[2], անոնց ցեղակից ու յաջորդ կ'ընէ զայն։ Այս պարագային՝ հայ տարազին վրայ պարթևական ազդեցութիւնը սկսած կը լինի իբր Բ դարու կիսուն Ն. Ք։

Յամենայն դէպս ես այդ խմբէն յառաջ պիտի բերեմ հոս երկուքին ձևերը միայն, — ըստ որում տարազի նկարագիրը յիշեալ բոլոր «Արշակաց» վրայ հաւասար է, — առնլով Բրիտանական Թանգարանի հաւաքածոյէն[3], շնորհիւ Հիլի։ Ադոնք են Վաղարշակին համարուածը, զոր Վրոթ չէ կարողացեր ընծայել յատուկ արքայի մը. և Ա Արշակին, զոր անգղիացի ցուցակագիրն Ա Արտաւանայ դրամոց կարգին զետեղած է, թէև դիմագիծը շատ աննման է Արտաւանայ վերագրուած միւս դրամոց։

3. Կան նաև ուրիշ ձևեր ալ, որոնք քննութեան կը կարօտին։ Եւ նախ Տրայանոսի մէկ քանդակը, ագուցուած Կոստանդիանոսի կամարին վրայ ի Հռովմ, ուր Յ. Պ. Բելլըրի կը տեսնէ զՊարթամասիրիս, Պարթևաց Խոսրով արքայի եղբօրորդին, զոր նա՝ ըստ Դիոնի տեղեկութեան՝ Հայաստանի թագաւոր կը կարգէ. և որ ի տես Տըրայանոսի յաղթական արշաւանաց՝ կը փութայ աղաչաւոր անոր ընդ առաջ, որ զինք կ'ընդունի բազմած իւր բեմին վրայ։ Հայոց արքայն իւր «վարսակալը» կը դնէ կայսեր առջև. և անլսելի ձայնով՝ զահազուրկ կը լինի, անոր համար որ «իւրմէ չէր ընդունած վարսակալը, այլ Պարթևաց թագաւորէն». և Հայաստան հռովմէական գաւառ կը դառնայ[4]։ Այս պարագայք իսկապէս կը համաձայնին յիշեալ քանդակին հետ, ինչպէս կը դիտէ և Բելլըրի[5]. ուր կայսրը բազմած ի բեմի, և անոր առջև պարթևազգեստ երևելի անձ մը կանգնած է աղաչաւոր՝ յեցած մանկլաւիկի մը։

Չի համոզեր զմեզ Պատերսենի կամ Կուրբօղի կարծիքը՝ թէ այս և յարակից քանդակները Մարկոս Աւրելիոսի վերագրելի են, և աղաչաւորը՝ ապստամբ Աւիդիոս Կասսիոսին սարքի անձանօթ հետևող մը[6], երբ նկատենք՝ թէ նոյն տեսարանը կրկնուած է Տրայա-

1. Հանդ. Ամս. 1905, էջ 98։ — 2. Ազգ. Հնդ. 1911, 219-20։ — 3. Wr. Part. III, 10. V, 2։ — 4. Dion. IX, 427-33։ — 5. Bell. տխ. 31։ — 6. Mon. 75-116։

*նոսի ուրիշ դրամի մը վրայ ևս, զոր Դիւրուի յառաջ կը բերէ իբրև Պարթամասիրիսի դէպքը*[1]. *և անոր ներքև գրուած է՝* REX PARTHEUS (*արքայ պարթև*), *ակնարկելով տոհմին՝ և ոչ աթոռին։ Սակայն Դիւրուի՝ կամարին քանդակը կը մեկնէ, իբր թէ «Տրայանոս թագաւոր մը կու տայ Պարթևաց*[2]*»։ Բայց անոր անձին աղերսական կերպարանքն ու դիրքը, շատ տարբեր Հռովմայեցւոց թագաւոր տալու աւանդական ձևէն, որմէ յառաջ բերած եմ երեք կտոր* (Ձև 27, 30, 31), *կը հերքեն գաղիացի պատմագրիս ենթադրութիւնը, և կը զօրացնեն Բելլօրեայ և Նիբբեայ*[3] *համոզումը՝ թէ տրայանեան քանդակին անձը Պարթամասիրիս է արդարև։ Եւ ինչ ալ խորհին ուրիշներ, մեզ հոս ունինք հարազատ պարթևական տարազի օրինակ մը։*

*Հ. Ալիշան կու տայ արքայապատկեր մը, հանուած գոհարէ և արշակունի թագով*[4], *զոր Անծանօթ կը կոչեմ, և որոյ ոչ աղբիւրն և ոչ բնագրական ճշդութեան աստիճանը յայտնի է։ Անոր գլուխը միայն՝ նման միւսին՝ յառաջ կը բերէ Թ. Հոպ*[5], *իբրև «հայ թագաւոր», նոյնպէս լռելով աղբիւրը, զոր ի զուր որոնեցի Պարիսի, Լոնդրայի և Հայագի թանգարանաց մէջ։ Լոնդրայէն պատասխանեցին ինձ՝ թէ նոյն քանդակը կարող է և պահլաւական լինել. իսկ Հոտտենրոթ՝ տալով անոր գլուխը միայն՝ Արտաւազդայ գլխոյն ու տիգրանեան թագին հետ, սելևկեան կարծեց զանոնք*[6]*։ Երկու հակառակ ենթադրութիւնքդ արդէն կը հերքեն զիրար։ Անոր թագը հայկական է, ինչպէս պիտի տեսնենք, և մեզ ունինք հոս հայ արշակունի մը գիսաւոր, որոյ մերձաւոր ժամանակն ալ կարելի է ճշդել։ Այդ գիսաւորութեան մէջ կայ պարթև Արշակունեաց ազդեցութիւնը։ Անոնց առաջին թագաւորք՝ Տրդատ Ա* (*ամ* 248–210) *և Փրաատ Ա* (176–171), *իրենց կնգզաձև խուրին ներքև կը ցուցնեն՝ դրամոց վրայ՝ գէսեր վիզն ի վայր*[7]*։ Աղոնց կը յաջորդեն անգէս և առատ վարսեր*[8]. *և ապա սկսեալ Բ Արտաւանէն* (*ամ* 88–77) *մինչև Միհրդատ Դ* (130–147 *յ. Ք.*) *կ՚երևին համաչափ գանգուրներ՝ կախուած մինչև վզին արմատը*[9]*։ Մեր թագաւորը չի կրնար առաջին շրջանէն լինել իւր տիգրանեան թագով. ոչ ալ միջնէն կամ անգէս ու մօրուագերծ Տիգրանեանց շրջանէն, որոց հակառակ է իւր ձևը, և անընդունելի է Հ. Ալիշանի վարանոտ ենթադրութիւնն իբր Բ Արտաշիսի կենդանագիր*[10]*։ Հետևաբար երրորդ շրջանէն է, որ մեր*

1. Dur. IV, 819. — 2. Անդ՝ 825. — 3. Nib. I, 452. — 4. Արր. 415. — 5. Hope, II, տխ. 16. — 6. Hot. I, 108. — 7. Wr. Part. տխ. 1. — 8. Նոյն՝ տխ. 2-7. — 9. Նոյն՝ տխ. 8-33. — 10. Հյպտ. 59.

*քով կը սկսի Վոնոնով* (16 *յ. Ք.*), *առաջին պարթևն յետ Տիգրանեանց, որուն կը յաջորդեն և ուրիշներ։*

*Իմ ստաղձիս մէջ կայ Անտոնիոս Պիոսի մէկ դրամը,* 140–143 *թուականէն, անյաջող կերպով հրատարակուած և Կոհենէ*[1], *յորում Հռովմայ կայսրը Հայաստանի թագաւոր մը կը կարգէ՝ ըստ շրջակայ գրութեան,* REX ARMENIIS DATUS։ *Փոտ՝ բաբելոնացի Ցամբլիքոսէ առնլով կը պատմէ, թէ այդ թագաւորն էր Աքեմենիդ, պարթև ազգաւ, որ յիշեալ կայսեր օրով նախ Հռովմայ ծերակուտական ու բդեշխ եղած էր*[2]։ *Որով այս յիշատակարանն ալ պիտի ծառայէ մեզ հոս։*

*Պարիսի Ազգ. Մատենադարանն ունի «Արքայի Տիգրանեայ» մաշած դրամ մը*[3], *ուր թագաւորը մօրուանի է։ Նկատելով մեծին Տիգրանայ և բոլոր յաջորդաց մօրուազերծութիւնը, դրամին արքայի թագին վիժակը՝ որ յատուկ է մեծին Տիգրանայ, և յաջորդաց ոչ, և գրին պարզութիւնը՝ որ կ'երևի մեծին Տիգրանի նախնական դրամոց վրայ*[4], *մինչ յետոյ ինքն ու Տիգրան Գ կը յաւելուն յիշեալ բառից մէջ նաև «մեծի» կամ «արքայից արքայի», և Տիգրան Դ կը գրէ «Արքայ արքայից Տիգրանէս*[5]*», կը հետևցնեմ՝ թէ մօրուանին է մեծն Տիգրան Բ, ինչպէս կը համարի և Մորգան*[6], *որ կը սկսի այդ կզակազարդով և յետոյ կը յապաւէ զայն։*

4. *Բայց կան նաև քանի մը հայկական կարծուած մերժելի ձևեր։ Այսպէս՝ Բելլորի ուզեց Սեպտ. Սեւերոսի կամարին վրայ ևս տեսնել հայկական քանդակ մը*[7], *որպէս թէ Հայոց արքային ընծայաբերութեամբ կը շահի նոյն Սեւերոսի բարեկամութիւնը, որ կը սպառնար անոր տէրութեան, ինչպէս կը գրէ Հերոդիանոս*[8]։ *Սակայն Դիոն նոյնը կը պատմէ Պարթևաց Վողոգէս արքայի մասին, որդի Սանատրկոյ, որ այդ ողոքմամբ կայսերէն պարգև կը ստանայ Հայաստանէն բաժին մը*[9]։ *Յիշեալ քանդակին մէջ Սեւերոս աջը կը կարկառէ պարթևազգեստ՝ բացագլուխ անձի մը։ Բելլորեայ մեկնութեան չի ձայնակցիր Նիբբի և լռութեամբ կ'անցնի*[10]. *ոչ ալ մեք կրնանք վստահիլ, նկատելով հին պատմչաց ալ անմիաբանութիւնը։*

*Պարիսի Թանգարանը կը պահէ հռովմէական արձան մը՝ յանուն Ա. Տրդատայ Հայոց արքայի, որոյ պատկերը յառաջ կը բերեն Վիսկոնտի*[11], *Դիւրուի*[12] *և այլք։ Վիսկոնտի կ'ըսէ՝ թէ որ և է գրաւոր յիշատակ չկայ՝ ասոր Տրդատայ լինելուն, բայց միայն պար-*

1. Coh. II, 338, *թ*. 686։ — 2. Phot. 242։ — 3. Bab. Rois. *տխ*. 29, *թ*. 17։ — 4. Morg. 80։ — 5. Նոյն՝ 81, 82։ — 6. Նոյն՝ 83։ — 7. Bell. *տխ*. 11։ — 8. Erod. III, 9։ — 9. Dion, X, 255։ — 10. Nib. I, 481։ — 11. Vis. Mon. *տխ*. 23։ — 12. Dar. IV, 491։

թեական տարազը, և այն պարագայն՝ որ Հռովմայ բարեկամ արեւելեան թագաւորաց մէջ Տրդատ մեծագոյն ընդունելութիւն գտնողն եղաւ[1], որով հաւանօրէն իւր արձանը կանգնեց Հռովմ։ Սակայն Կլարակ[2] և թանգարանի տեսչութեան նամակն առ իս (28 Յնս. 1918) կը հաստատեն՝ թէ եկամուտ են անոր գլուխը, պարանոցը, աջ բազուկը և սրունից ստորին կէսը։ Հետևաբար տարազին այդ մասանց վերաբերեալ կտորներն օտար են արձանէն, որ ինքն իսկ արդէն ենթադրական, բոլորովին անպէտ բան մը կը դառնայ մեր ուսումնասիրութեան համար։

Հ. Ալիշան յառաջ կը բերէ Արտաւազդայ մէկ գծագիր «քանդակպատկերը», որոյ տեղը չէ ճշդեր[3]. ոչ ալ նշան մը կայ Արտաւազդայ լինելուն։ Անոր խոյրը վիժակաւոր է Տիգրանի պէս, մինչ դեռ Արտաւազդայ և յաջորդաց հարազատ պատկերաց մէջ վիժակը փոխուած է, ինչպէս պիտի տեսնենք։ Հակամէտ եմ խորհելու՝ թէ այդ ալիշանեան ձևը շինուած լինելու Արտաւազդի մաշած դրամէ մը, և կարծեօք վիժակ ալ տրուած, զոր Մխիթարեան տեղեկագիրն իբր քանդակպատկեր ընդունեցաւ կամ կարծեց։ Հետևաբար այս ալ անստոյգ և անօգուտ է մեզ համար։

Բերլինի թանգարանը կը պահէ դրամ մը՝ տիգրանեան թագով ու գրով, «Զարրիադրոս արքայից արքայի», զոր Հ. Ալիշան[4] և Ատրպետ[5] կ'ախորժին նոյնացնել մեր ծանօթ Զարիադրի հետ[6]։ Նոյն Sariaster անունը կը կրէ Վաղերիոս Մաքսիմոսի քով[7] Արտաւազդ Գ ալ, որ յայտնի է թէ կրկնանուն էր, ինչպէս կը դիտէ և Հ. Ալիշան։ Տիգրանեան թագը, և «արքայից արքայի» տիտղոսը, սիրելի Տիգրանայ և իւր որդւոյն, և Հայաստանի մէկ մասին միայն իշխողի մը համար չափազանց, չեն հաշտուիր մեր յայտնի Զարիադրի հետ։ Եւ պիտի հարկադրուէինք զայն վերագրել Գ Արտաւազդայ, եթէ զանազան հնագէտներէ ստուգուած չլինէր՝ թէ այս դրամը, որոյ մէկ օրինակն ալ կը պահէ Վիեննայի Մխիթ. Հարց թանգարանը, կեղծ է[8], զգալի նաև ձևին անճշդութենէն ու կոպտութենէն։

Հոպ[9] ևս ունի «հայ թագաւորի» մը գլուխը, ցած պսակով՝ որոյ բարձրութեան հաւասար են ժանեձև ճառագայթները, և կը վերջանան գնդաձայր. արև ու արծիւներ չունի։ Զևս գծագրութիւն է, և իւր այդ հանգամանքներն անմիաբան արքունի հարազատ պատ-

1. Vis. էջ 171-7։ — 2. Clar. V, 224. պրկ. Bustes, VI, 1102։ — 3. Արր. 418։ — 4. Բզմ. 1849, 248։ — 5. Ազգ. Հնդ. 1912, թ. 2, էջ 32։ — 6. Ատ՝ 46, — 7. Val. IX, 11, 3։ — 8. Հ. Տաշեան ի Հանդ. Ամս. 1905, 134։ — 9. Hope. I, տխ. 15։

կերաց՝ զոր ունինք։ Որով այս ալ երկրայական և աւելորդ է մեզ, մաշած բնագրերէ կամ անյաջող գծագրութեամբ հանուած ուրիշ ինչ ինչ թերի ձևերու հետ[1]։ Թողլով այս բոլորը, հետևինք մեր վաւերական աղբերաց, ու տեսնենք ժամանակիս տարազն իւր ընդարձակ սահմաններով։

## Բ. ԹԱԳԱՒՈՐԸ

Արքայական զգեստին աղբիւր ունինք գլխաւորապէս դրամներ, որոյմէ ընտրած եմ մաս մը միայն, որոնք լաւագոյն կը ծառայեն մեր նպատակին, և անեղծ պահուած են։ Եւ են. Վաղարշակայ և Ա Արշակայ ծանօթ կտորները, Ձև 16 և 17։ Բ Տիգրանի (ամ 94–56 Ն. Ք.) երեքը. Ձև 18, Պարիսի Մատենադարանէն, հրատարակուած Բաբլոնէ[2]. Ձև 19, Բրիտան. Թանգարանէն՝ շնորհիւ Հիլլ, նոյնպէս տպագրուած[3]. Ձև 20, մեր վանաց հաւաքածոյէն։ Գ Արտաւազդայ (ամ 56-34) երկուքը. մին՝ Վիեննացի Եգգէր եղբարց ցուցակէն[4], Ձև 21. որոյ գեղեցիկ ու միակ օրինակը վաճառուեր և անյայտ է, և ունի գիրս, «Արքայի արքայից Արտաւազդայ». և միւսը՝ Պ. Ն. Գալպճեանի բնագրէն ի Պարիս և իւրմէ իսկ շնորհուած, Ձև 22, որ քան զԼոնդրային[5] նուազ մաշած է։ Հայաստանը նուաճող հռովմէական բդեշխից, Մարկոս Անտոնիոսին՝ հայ Թագով, աղեղով ու նետով, Ձև 23, (35 Թուականէն), և Օգոստոս Հոկտաւիոսին՝ Թագով ու կապարճներով, (20 Թուէն), Ձև 24. երկուքն ալ Լոնդրայէ՝[6] Հիլլի ձեռքով։ Դ Տիգրանին (ամ 12-5) Երատոյի հետ, Վիեննայի Մխիթարեանց Թանգարանէն, Ձև 25, զոր շնորհեց Հ. Աղեքս. Վ. Մատիկեան։ Ե Արտաւազդին՝ ազգաւ մար (իբր 2 յ. Ք.) Օգոստոսի հետ, Ձև 26՝ Լոնդրայէ[7], զոր կը պարտիմ նոյնպէս Հիլլ։ Գ Արտաշիսի կամ Զենոնի պոնտացւոյ Գերմանիկոսէ պսակմանը՝ (ամ 18) ի Պարիս, Ձև 27, զոր ստացայ Բաբլոնէ։ Պարթամասիրիսի (ամ 114) քանդակն ի Հռովմ, Ձև 28, և անծանօթ Արշակունին, Ձև 29, որոց մասին արդէն խօսեցայ կանխաւ։ Աքեմենիդի Անտ. Պիոսէ պսակման (ամ 143) դրամը, Ձև 30, զոր յիշեցի, և Սոյեմոսի պսակմանը Ղուկիոս Վերոսէ (ամ 163), Ձև 31, երկուքն ալ Հռովմայ արքայական հաւաքածոյէն՝ ձեռամբ Ու. Սերաֆիննեայ։

1. Բզմ. 1849, 275. Սրբտ. 352. Հյպ. 40. են. — 2. Bab. Rois. տխ. 29, թ. 12. — 3. Head. տխ. 61, թ. 13. — 4. Egg. X, 1521. — 5. Wr. Gal. տխ. XIV, 2. — 6. Grueb. տխ. 115, թ. 10. տխ. 119, թ. 4. — 7. Wr. Gal. XIV, 3.

*Այդ դրամները յիշեալ աղբիւրներէն զատ, որոնք ուղղագոյն արտագրողներն են, հրատարակուեցան ուրիշներէ ևս աւելի կամ նուազ թուով, ինչպէս Լանգլուա, Կոհէն, Վիսկոնտի և այլք, սակայն գծագրութեամբ, և բոլորն իրենց բնական չափով։ Մեծագոյն հաւատարմութեան և հանդերձի մանրամասնութեանց համար ես բնագրերն իսկ լուսանկարեցի ստացած ճշգրիտ կաղապարներէս ու մեծցուցի։ Ջանց կ'ընեմ Գ Տիգրանայ (ամ 20–12) դրամն Աւգոստոսի հետ*[1]*, և Դ Տիգրանի պարիսեանն Երատոյի հետ*[8]*, երկուքն ալ հրատարակուած, բայց յոյժ մաշած ու մասամբ միայն օգտակար մեզ։*



Ձև 16. Վաղարշակ (26 ճգ.) Ձև 17. Արշակ Ա (30 ճգ.)

*Բոլոր այդ թագաւորք, — բաց ի Տիգրանի վինեալ ցեղէն (ինքն, Գ Արտաւազդ, Գ և Դ Տիգրանք) և միւս երկուքէն (Դ Արտաւազդ և Գ Արտաշէս), — պարթև են ազգաւ, և կը ներկայացնեն մեզ պարթևական տարազը, որ ինչ ինչ փոփոխութեանց կ'ենթարկուի։ Պարթևաց ու Հայոց իշխեցողաց համազգեցութեան գրաւական է, ցեղի միութենէն զատ, նաև ընտանեկան ու քաղաքական սերտ աղերսը՝ որ մնաց միշտ անոնց միջև, նոյն իսկ մեր հայ կարծուած թագաւորաց օրով ևս։ Ջոր օրինակ, մեծին Տիգրանայ ժամանուն որդին կը փեսայանայ Պարթևաց Փրաատ արքային*[2]*։ Արտաշէս Բ յետ մահուան Արշակայ պարթևի՝ կը թագաւորեցնէ Պարսից անոր Արտաշէս որդին, և կ'ապահովէ անոր իշխանութիւնը*[3]*։*

1. Bab. Rois. տխ. 29. — 2. Պլու. Պոմպէոս, ԼԳ. — 3. Խոր. Բ, ծգ.

*Խոսրով՝ հայր մեծին Տրդատայ՝ «էր երկրորդ տէրութեանն Պարսից, կ՚ըսէ Ագաթանգեղոս. զի որ Հայոց թագաւոր էր՝ նա էր երկրորդ Պարսից տէրութեանն[1]»։ Ուրեմն հին էր Հայոց արքային այս պատիւը. և այս պատճառաւ Խոսրով վրէժխնդիր կանգնեցաւ Պարթևաց գահուն յափշտակիչ Սասանեանց դէմ[2]։*

*Անցնինք այժմ տեսնել մեր արքայական հագուստը։*

1. *Հերք՝ Պետրովիչի հայ Արշակունեաց ու հոս Վաղարշակայ և Արշակայ վրայ չափաւորապէս երկար և առատ են, ու բոլորակ հատմամբ կ՚իջնեն մինչև ծոծրակին կէսը. յար և նման ժամանակակից պարթև Արշակունեաց մազերուն։ Տիգրանայ և յաջորդաց թագակիր գլխոց վրայ գէս չի նշմարուիր, մինչ չափաւոր վարսից ծայրերը զգալի են Տիգրանի ճակատին վերև ու քունքին մօտ։ Արտաւազդ Ե, հոլովմէջացած բարուք, մազերն ալ անոնց պէս կարճ կը բռնէ։ Պարթամասիրիս շատ յայտնի կերպով՝ և Աքեմենիդ կը պահէն տոհմային չափը։ Իսկ Անծանօթ արշակունին իւր բոլոր յառաջբերութեանց մէջ[3] ցոյց կու տայ վիզն ի վայր կախ գէսեր, արդիւնք՝ ինչպէս ըսի՝ պարթև Արշակունեաց Նորամուտ սովորութեան ազդեցութեանը, որոցմէ մէկն էր ինք։*



Զև 18 (20 ճգ.) Դրամք մեծին Տիգրանայ Զև 19 (28 ճգ.)

2. *Մօրուքն անպակաս է բոլոր թագաւորաց և Վաղարշակայ*

1. Ագթ. 30. — 2. Նոյն՝ 29–35. Խոր. Բ, հա–հզ. — 3. Արրտ. 415. Հյպտ. 59. Hope, II, տխ. 16.

*ու Արշակայ վրայ, բռնուած որոշ չափի մը մէջ։ Մեծն Տիգրան կը սկսի՝ հետեւելով նոյն սովորութեան, ինչպէս տեսանք իւր մէկ նախնական դրամին վրայ*[1]*։ Յետոյ ինքն իսկ կը յապաւէ իւր մօրուսը, հրապուրուած յոյն և հռովմէական ոճէն, որոց հետ մրցակից էր քաղաքականութեամբ և զինուք։ Իրեն կը նմանին յաջորդներն ալ, Արտաւազդ Գ, Գ և Դ Տիգրանք, Արտաւազդ Ե և Արտաշէս Գ։ Կը զարտուղին՝ Անծանօթ արշակունին, որ հերաց հետ մօրուքն ալ կ'առնու Պարթևներէն, որոնք կը պահեն միշտ զայն առանց բացառութեան, և Պարթամասիրիս և Աքեմենիդ, որոնք իրենց հայրենի մօրուօք կու գան ի Հայաստան։*

3. *Վարսակալը, ինչպէս կոչելու ենք հիմայ հին ճոխ ապարօշը, կ'երևի դեռ հոս, բայց տեղն ու նշանակութիւնը փոխուած։ Այս ինքն ճակատէն անցած է գլխին, և դարձած արքայական թագին հաւասարապատիւ զարդ մը։ Աստրեստանցիներէն ժառանգած էին զայն Պարսիկները, և ասոցմէ՝ նախ Աղեքսանդր մակեդոնացին, ապա Պոնտոսի թագաւորք ու կայսերք Հռովմայ, որոց քով դարձաւ զուտ արքունի նշան մը*[2]*։ Յետոյ անպակաս կ'երևի Պտղոմեանց*[3]*, Սելևկեանց*[4] *ու պարթև Արշակունեաց*[5] *գլխին ևս։*



Ձև 20. Մեծն Տիգրան (25 ճզ.)

*Զանազան վկայութիւնք կը ցուցնեն վարսակալին գոյութիւնը նաև մեր քով, և այս շրջանիս դեռ թագաւորաց միայն պատկանիլը։ Նախ կը տեսնենք զայն Վաղարշակայ, Արշակայ և Ե Արտաւազդայ բաց գլխոց վրայ։ Եթէ միւսները գլխափակ են, պատմութիւնը կը հաստատէ անոր ներկայութիւնը նաև անոնց վրայ։ Պլուտարքոս կը պատմէ՝ թէ երբ մեծն Տիգրան պարտուած կը դիմէր Պոմպէոսի մեծանձնութեան, անոր քով հասնելուն՝ «հանեց վարսակալը* (κίταρις) *և դրաւ անոր ոտից ներքև*[6]*»։ Նոյնը կը կրկնէ Դիոն Կասիոս, ըսելով՝ թէ «հանեց իւր վարսակալը* (διάδημα)*»*[7]*. և Եւտրոպիոս՝ թէ «վարսակալը* (diadema) *յանձնեց անոր ձեռքը*[8]*», զոր հռովմայեցի զօրավարը կը փութայ վերստին կապել անոր գլխին։ Վարսակալը յանձնել՝ կը նշանակէր իւր թագն ու թագաւորութիւնն իսկ յանձնել. այսքան մեծ էր այս կապին կարևորութիւնը։*

1. Աստ՝ 59։ — 2. Dar. II, 120-21։ — 3. Poole, Gr։ — 4. Bab. Rois — 5. Wr. Part։ — 6. Պլու. Պոմպէոս, ԼԳ։ — 7. Dion, II. 229. III, 111. — 8. Eutr. VI.



Բ. — ՏԻԳՐԱՆ ՈՐԴԻ ՄԵԾԻՆ ՏԻԳՐԱՆԱՑ (ñq. 20)

*Ներկայ դրամս, Այրքայի Տիգրանայ (մեծի՞ անընթեռնլի), Վիեննայի Մխիթ. Հարց թանգարանին մէջ գտայ՝ շնորհիւ Հ. Մովսէսեանի, երբ այս էջերն արդէն տպագրած էի։ Նոյն է՝ բայց աւելի լաւ պահուած՝ պարիսեան օրինակին հետ, որոյ անորոշութենէն վերագրած էի զայն մեծին Տիգրանայ (ատ՝* 59, 64)*։ Սակայն ներկայիս դիմագիծն որոշակի կը տարբերի մեծին կենդանագրէն, որոյ համար Բաբլոն կը ստիպուի պարիսեանը (որով և մերս) համարելու Գ. Տիգրանայ* (Bab. Rois, 215. *տխ.* 29, *թ.* 17)*։ Բայց սոյն արքայիս Աւգոստոսի հետ ձուլած դրամին պատկերը, շատ մաշած* (Egger, 1522), *հեռի է ներկայէս իւր ամփոփուած վիժակով և անմօրուս այտերով։ Հետևաբար մերս ամենայն հաւանականութեամբ մեծին Տիգրանայ համանուն ապստամբ որդին է, որ կարճ ժամանակ մը տէր եղաւ հօր երկրի մէկ մասին, Պոմպէոսի ձեռքով՝ որուն օգնած էր ծնողին դէմ* (Bab. Rois, Introd. CCV. *Սանտ. Բ,* 474). *և քաղաքականութեան պահանջմամբ կը կրէ հայապարթև վիժակն ու Պարթևաց մօրուսը, որոց փրատա Գ. արքային փեսայ էր միանգամայն, և որուն ապաւինեցաւ ապստամբութեան սկիզբը։*

Ներոնի օրով Հռոմ ուզելով հպատակեցնել զՀայաստան, առաջարկեց ի նորոյ հաստատել Ա. Տրդատայ իշխանութիւնը։ Անոր եղբայրն ու պաշտպանը, Վողոգէս արքայ Պարթեւաց, զիջաւ ու պատասխանեց՝ թէ «Տրդատ չպիտի մերժէր գալ ի քաղաքն (Հռոմ) ընդունելու վարսակալը, եթէ քրմութեան պաշտօնը չխափանէր[1]»։ Հանդերձ այսու գնաց Հայոց արքայն սահմանեալ վայր մը, «հանեց գլխէն վարսակալը» և դրաւ Ներոնի արձանին ոտքը, զոր հոն կանգնած էին[2]։ Այս գործով կը հրաժարէր թագաւորութենէն, զոր վերստին ընդունելու համար ի Հռոմ գնաց, ուր Ներոն հանդիսապէս «կապեց անոր վարսակալը[3]»։ Յիշեցինք Պարթամասիրիսի գահազըր-



Ձև 21 (19 ֆզ.) Դրամք Գ Արտաւազդի Ձև 22 (16 ֆզ.)

կութեան մէջ ալ վարսակալին կատարած դերը[4]։ Մեր ձևերու մէջ Աքեմենիդ ու Սոյեմոս կը պսակուին վարսակալով։ Եւ ըստ Դիոնի՝ Տրդատ Բ, որ է Խոսրով՝ հայր մեծին Տրդատայ, կ'ընդունի «վարսակալը՝ զոր Մակրինոս (կայսր Հռոմայ) յղեց իրեն[5]»։ Զարդիս մեծ յարգն այնպէս կ'ընէր՝ որ բոլոր զայն գործածող թագաւորք, զորս յիշեցի վերև, իրենց դրամոց վրայ ասով միայն քանդակուին յաճախ, իբր թագին հաւասար նշանով մը։

Կ. Կուրտիոս այսպէս կը նկարագրէ Դարեհի վարսակալը. «Պարսից արքային գլխի նշանն ապարօշ (citaris) կը կոչեն. այս երկնագոյն կապը սպիտակ բծերով՝ կը շրջապատէր» գլուխը[6]։ Պարթեւք

1. Tac. XV, 24. — 2. Անդ՝ 29. — 3. Dion, LXIII, 4. — 4. Աստ՝ 57. — 5. Dion, LXIII, 27. — 6. Curt. III, 3, 19.

ճոխացուցին զայն․ որոց հետևողութեամբ նաև մեր Արշակայ կապածն ունի իւր վրայ ազնիւ քարերու շարք մը։ Վաղարշակին ու Ե Արտաւազդին՝ որ պարզ կ'երևին, գէթ մարգարտաշար էին, ինչպէս Խորենացին կը պատմէ՝ թէ Նինոս իրաւունք կու տայ մերս Արամայ՝ «վարսակալ ածել մարգարտէ[1]»։ Եթէ այս վկայութիւնը չի հասնիր մինչև ցԱրամ, բայց անտարակոյս շատ վեր կ'ելնէ քան պատմագրին դարը, որ Վաղարշակայ օրով ալ կը յիշէ «ոսկւոյ և ականց վարսակալը», ինչպէս դրամինն է, և իրեն միայն յատուկ․ և «զկրտսեր մարգարիտն երեքտակեան» կամ երեքկարգեան, զոր կ'արտօնէ կրել և Ասպետին[2]։ Արդարև պարթև Արշակունեաց գլխին




Ձև 23 (18 նկ.) Հռովմէական դրամներ Ձև 24 (19 նկ.)

ալ կը նշմարենք՝ նախ երկտակ ու երեքտակ մարգարտեայ վարսակալը, և ապա չորեքտակը․ առաջին թագաւորաց վրայ կապուած նըման մերոց, և վերջնոց վրայ՝ ճակատին, նման ապարօշի[3]։

Կ'երևի՝ թէ վարսակալը կը մնար միշտ արքայի գլխին, նոյն իսկ երբ թագն ալ դնէր։ Այսպէս էր նաև Մակեդոնացւոց թագաւորաց սովորոյթը, որոց վահանաձև խոյրը թոյլ կու տայ տեսնել յայտնապէս վարսակալն իւր ներքև[4]։ Նոյնպէս կ'ընէ դեռ յետոյ և Վասակ Սիւնի․ «կապէր և զպատիւ վարսին (որ է վարսակալը), և զխոյրն ոսկեղէն դնէր ի վերայ[5]»։ Հին ոճին շարունակութիւնն էր այդ, ինչպէս կը հետևի։

1. Խոր. Ա, ժզ. ընդունելի չէ Հ. Ալիշանի մեկնութիւնը, «էր թագ մը, բայց մազերը բռնելու յարմար»։ Բզմ. 1850, 39։ — 2. Խոր. Բ, է։ — 3. Wr. Part։ — 4. Dar. I, 975։ — 5. Եղիշ. 106։

4. Թագը կը տարբերի նախորդ շրջանի արքայական գլխանոցներէն՝ իւր նոր ձևով, զոր նախ կը տեսնենք մեծն Տիգրանի դրամոց վրայ։ Եւ է գլանակերպ, թեթևակի կոնաձև, չափաւոր բարձրութեամբ, և աւարտած ճառագայթներով, որոնք մերթ ժանեձև են (Ձև 18, 19), և մերթ կազմուած իրարու վրայ նստող երեք կարգ մարգարտով, ստորև խոշոր ու վերև փոքր (Ձև 20)[1]։ Թագէն կը կախուի վիժակ մը, բաժնուած երեք ծուէններու, որոց լայնագոյնը կը ծածկէ ծոծրակը, և երկու նեղերը կ'իջնեն ականջաց ուղղութեամբ։ Թագն ու վիժակը համակ եզերուած են խիտ մարգարտով, որ լոնդոնեան օրինակի վիժակին վրայ մասամբ մաշած է (Ձև 19)։

Ուշագրաւ են թագին զարդերը։ Մեծին Տիգրանի մէկ դրամը,



Ձև 25. Տիգրան Դ (17 Թզ.) Ձև 26. Արտաւազդ Ե (18 Թզ.)

զոր ձուլման կարգով հնագոյնը կը կարծեմ (Ձև 18), թագին կողին վրայ կը ցուցնէ ութճառագայթ արեգակը՝ զետեղուած մեկուսի։ Ատրպետ՝ ասոր և ուրիշ պարիսեան օրինակի մը վրայ արեգական քով՝ աջ կողմը՝ կ'ուզէ նշմարել արծիւ մ'ալ[2], ինչ որ սակայն անորոշ է իւր, Լանգլուայի, Բաբլոնի և իմ այս հրատարակութեան մէջ։ Եթէ կայ այդ արծիւը, կրնանք հետեւցնել՝ թէ արեգական միւս կողմն ալ կար երկրորդ մը, այդ օրինակաց վրայ անտես մնացած, և յաջորդաց վրայ երկուքն ալ ի տես դրուած։ Եւ կը կազմէին Արշակունեաց նշանը, որոյ մասին խօսած եմ այլուր[3]։

1. Տես և ոսկեդրամ Էջմիածնի յԱզգ. Հնդ. 1911, 202։ — 2. Անդ՝ 213, 221։ — 3. Դրոշ. 25–26։

*Ո՞վ հնարեց նախ այս թագը։ Մեծն Տիգրանի նախորդ Արշակունիք բացագլուխ են միշտ իրենց դրամոց վրայ, ինչպէս մեր Վաղարշակն և Արշակ։ Հ. Ալիշան Քսենոփոնի ծանօթ վկայութիւնը՝ թէ արքայորդին Տիգրան «խլեց խոյրը և պատմուճանը պատռեց[1]», կը թարգմանէ ոչ ըստ բնագրին՝ թէ «ընկենոյր զխոյրն և զվերջաւորսն փողփողեալս», և տիգրանեան թագին ձևը մինչև այդ ժամանակ կը հանէ[2], ուր գիտենք թէ փոխւզականը կ'իշխէր։ Իրականն այս է՝ թէ նոյն թագը կ'երևի նախ մեծին Տիգրանի և անոր սերընդոց բոլոր դրամոց վրայ. և այս փարումն այդ ձևին՝ խորհիլ կու տայ ինձ, թէ կրնայ նոյն իսկ Տիգրանի գիւտը լինել, և իւր նախորդները կրած լինին ցեղակից պարթև Արշակունեաց զմբեթարդ խոյրը, զոր անոնց մէկ ճիւղը նախանձայուզութեամբ տարաւ նաև Եդեսիոյ գահին վրայ[3], և ուսկից Հայաստանի առաջին Արշակունիք դժուարաւ կրնային հրաժարիլ. ուր ընդ հակառակն աւելի դիւրաւ պիտի փոխէր զայն Տիգրանի անկախութեան, «արքայից արքայ» հռչակուելու և աշխարհակալութեան խրոխտ ոգին, և նոյն իսկ հայութիւնը, եթէ կարելի է հաստատել։ Եւ իւր սերունդն ալ անպակաս պահեց զայն իւր դրամոց վրայ, թերևս իբր նշանակ նոյն ոգւոյն՝ զոր իրենք ալ շարունակել ուզեցին։*

*Տիգրանեան թագը չի նմանիր պարթև արքայից զմբեթարդին, ոչ մակեդոնական վահանաձև լայն խուրին[4], և ոչ ասորի Սելևկեանց փշաճառագայթ ցած պսակին[5], զորս կը տեսնենք անոնց դրամներու վրայ։ Եւ սակայն տիգրանեանը կրած լինելու է որ և իցէ արտաքին ազդեցութիւն մը։ Արդէն անոր հիմը կազմող գլանաձևը շատ հին է պատմութեան մէջ. և կ'երևի ասորեստանեան քանդակաց մէջ՝ աստուածոց գլխին, կեղծ ճառագայթներով[6]. և ուրիշ անծանօթ արքայի մը վրայ՝ կոնաձև, քան զտիգրանեանը բարձր, վերև շատ նեղ, և աւարտած երեք ժանեձև ճառագայթներով[7]։ Կայ նաև Կապադովկիոյ դիցապաշտական քանդակաց մէջ երևցած խոյրը, բարձր, ու քառակուսի ճառագայթներով[8]։ Տիգրանեանին աւելի կը մօտենայ Աքեմենեանց՝ Դարեհի և այլոց դրածը, քան զմերը ցած պսակ մը, մերին հաւասար ժանեձև ճառագայթներով[9]. և զոր կը տեսնենք քրմաց գլխին ևս[10]։ Այս բոլորը, հեռի տիգրանեանէն ժամանակաւ, և ձևով ոչ բոլորովին հաւասար, անմիջական աղբիւր չեն թուիր հայ թագին։*

1. Աստ՝ 38-9։ — 2. Բզմ. 1848, 278։ — 3. Lang, Num. տխ. 4-6։ — 4. Dar. I, 975։ — 5. Poole, տխ. XII եւն։ — 6. Աստ՝ 21։ — 7. Place. III, տխ. 45։ — 8. Perr. Exp. II, տխ. 38, 48 եւն։ — 9. Perr. V, 848, 852-4, 360, 863։ — 10. Masp. III, 593։

*Մերոյս նմանութիւնը՝ բաց ի զարդերէն՝ կը գտնենք Տիգրանէն շատ հին՝ յոյն խեցեղէն անօթոց վրայ, Արտեմիս դիցուհւոյն գլխին[1]. և զայս դիցուհին հրատարակիչք մերձեցուցին «պարսկային Անահտայ[2]», յիշուած Պլուտարքոսէ[3] և յայլոց։ Պարսկային Անահիտն ալ իսկապէս կրած է նոյն խոյրը պարսիկ քանդակաց մէջ, որուն նըմանած լինին և հայ Արշակունիք, չենք կարող հաստատել, չլինելով Անահտայ պատկեր բուն Պարսկաստանէն, և պարսկային յատուկ նկարագիրն ունեցող յոյն ձևեր զուրկ են խուրէն[4]։ Բաց աստի՝ յոյն խեցեգործք նոյն թագը կու տան նաև Լատոնի, Իլիթիայի, Դեմետրի և Մեդէայի[5]։*

*Բայց հելլէն արուեստին ազդեցութեան գաղափարն ալ չի հանգուցաներ միտքս. և հուսկ կը մղուիմ Հայոց աւելի մերձաւոր աղբիւրի մը, Միհրի պատկերին։ Փ. Լայարդ յառաջ կը բերէ Միհրի պաշտաման վերաբերեալ ընդարձակ խումբ մը ձևերու, որոց մէջ շատերն ունին տիգրանեան թագին նմանութիւնը, աւելի կամ նուազ մերձաւոր անոր բարձրութեան, աւելի կամ պակաս նման անոր, և հասարակօրէն կը գտնուին ցըլասպան Միհրի գլխին[6], որ յետոյ Պարթևաց տիրապետութեան ներքև պարթևական տարազն ու կնգղաձև խոյրը զգեցաւ։ Արդ եթէ նկատենք՝ որ Միհրի պաշտօնն ու տաճարն Հայոց ընտանի և անոնց մէջ ալ կար մինչև ցԼուսաւորիչ[7], և թէ հայ թագաւորք միանգամայն քրմապետ էին[8], դիւրաւ կը համոզուինք՝ որ Տիգրանի թագը կրօնական գաղափարով ստեղծուած ու հետևողութիւն էր Միհր աստուծոյն դրածին, և ոչ որ և է ժամանակակից արքայական օտար խուրի։ Եւ Հայաստանի գաճակալաց գլխին իրաւամբ կը կոչուի հնախօսներէ «հայկական թագ»։*



Ձև 27. Արտաշէս Գ պսկ. (17 ћգ.)

1. Lenor. II. տխ 11, 25, 36b. — 2. Նոյն՝ էջ 10, 77. — 3. Պլտ. Լուկուլլոս, ԻԴ. — 4. Dar. II, 153. — 5. Lenor. I, էջ 194. տխ. 57, 65a. — 6. Laj. տխ. 13, 15, 19, 25 ևն. — 7. Ագթ. 593. — 8. Աստ՝ 65.

Բաց ի ձևէն՝ Հայոց թագին զարդերը մասամբ նոյն են պարթևականին հետ՝ ըստ դրամական ցուցակին Վրոթի: Պարթևն ալ ունի հոն հայուն վիժակը՝ բոլորովին նոյն, — որ ըստ էութեան փռիւգականն է, — և աստղը կեդրոնին մէջ, որոյ աստուածեան հին նշանակութիւնը ծանօթ է մեզ[1]: Հայ թագին հնարողը զատոնք պարթևականէն առաւ, և աստղին քով դրաւ երկու տոհմային արծիւները, որ չի տեսնուիր ժամանակակից կամ նախկին օտար խոյրերու վրայ:

Տիգրանի թագն ամբողջութեամբ կ'անցնի նաև իր յաջորդաց, և կը տեսնենք զայն անոնց գլխին. ինչպէս Դ Արտաւազդայ (Զև 21, 22), Գ Տիգրանի, Մրկ. Անտոնիոսի և Հոկտաւիոսի դրամոց վրայ (Զև 23, 24) ու Դ Տիգրանի (Զև 25). և ասոնց տոհմին սպառելէն վերջ՝ նաև Գ Արտաշիսի և Անծանօթի գլխին (Զև 27, 29), որոց մին թէև մար և միւսը պարթև, անփոփոխ կը պահեն Հայոց ձևը, առաջնոյն վրայ՝ դրամին փոքրկութենէն թերի կերպով շինուած: Եւ խորհիլ կու տան մեզ՝ թէ ասոնց յաջորդներն ալ, որոնք մերթ Պարթևաց ու մերթ Հռովմայ կողմէն կը կարգուէին, իրենց պէս յարգած լինելու են հայ աւանդութիւնը: Բնագրաց մանրութենէն և քանդակման թերութենէն անոնց մէջ յառաջ եկած զանազանութիւնք հաշուի առնուելու չեն: Անտոնիոսի տուած թագին և Անծանօթին վրայ աստղեր միայն կան՝ առանց արծուոյ. Դ Տիգրանին աստղը միայն նշմարելի է՝ մեկուսի զետեղուած, և թագին վերև արեգական նմանող զարդ մը: Հարկ չկար՝ որ մեծին Տիգրանի բոլոր յաջորդները մի և նոյն թագը կրէին. այլ կրնային նորեր շինել, և թէ իրենք և թէ անհմուտ քանդակողներ իսկ փոփոխել անոնց զարդերը:

Սակայն շատ որոշ է՝ որ Տիգրանի որդին Արտաւազդ չի հանդուրժեր վիժակի տաղտուկին. և պահելով ծոծրակին մասը. կը հանէ անոր ականջապանները, կամ գուցէ կը շրջէ թագին ետև, որով անոր թագաւորութեան օրով Անտոնիոս վերստին կը կախէ զանոնք, և Հոկտաւիոս պահելով՝ շրջել կու տայ թագի կողին: Տիգրան Գ, ժամանակակից վերջնոյս, իր մաշած դրամին վրայ, և Տիգրան Դ իր երկու դրամոց վրայ կը ցուցնեն՝ թէ հետևեր են Արտաւազդի գործնական ու հաճելի օրինակին: Եւ Մորգան կը խաբուի՝ երբ այդ երկու արքայից մաշած կտորները կը գծագրէ վիժակով հանդերձ[2]: Բայց Անծանօթ պարթևը՝ Պարսկաստանի իր տոհմայնոց ոճով կը դառնայ վերստին կախել վիժակը. որ հաստատուն կը մնայ այնուհետև, ինչպէս և պարթև Արշակունեաց վրայ մինչև վերջ. որով կը հանդիպինք անոր նաև մեր հետագայ շրջանին:

1. Աստ՝ 20. — 2. Morg. 89.

*Ի հաստատութիւն տեսութեանս՝ թէ մեծն Տիգրանի օտար յաջորդներն ես պահեցին իւր թագը, պէտք է գիտնալ՝ թէ զայն օրինակեց, ժանեձև ճառագայթներով՝ քանդակներով ու վիժակով հան-*



Ձև 28. Պարթամասիրիս Տրայանոսի առջև (մասնական)

*դերձ, Կոմմագենի Անտիոքոս Ա թագաւորն ալ, երբ Հռովմայեցւոց յաղթութեամբ Տիգրանի վրայ՝ ընդարձակեց իւր իշխանութիւնը Կոմմագենի և Միջագետաց մէջ, և երբ յաջորդ հայ աշխարհակալին՝ նոյն գաւառաց վրայ, սեպհականեց անոր թագին ձևն ալ, զոր և*

*վրոթ «հայկական» կը կոչէ[1], մինչ Անտիոքոսի նախորդները կապադովկեան կնգղաձևը կը կրէին[2]։ Յետոյ նոյն արքայի մէկ քանդակին մէջ նոյն թագին վիժակը վերցած և արծիւք առիւծի փոխուած են[3]։ Նոյն թագը, ձևուած առանձինն Կոմմագենի Եպիփան և Կալլինիկոս արքայից դրամոց վրայ ևս, ու մաշած քանդակով, նոյնպէս անվիժակ են[4], զգացնելով՝ թէ այդ թագաւորք այս մասամբ ալ հետևեր են Տիգրանեանց օրինակին։ Հայ թագին արծուեզարդն աւելի վերջ առած կը թուին և Սասանեանք, փոխանակ քանդակելու կողին վրայ՝ արձանակերպ նստեցնելով իրենց թագին վերև[5]։*

5. *Հանգոյց թագին կայ և կը ցուցնէ իւր գոյութիւնը նաև հիմայ՝ մեր բոլոր թագապսակ գլխոց վրայ, Տիգրաններու, Արտաւազդի և Անծանօթին. և կը կախուի յետակողմէն։ Նոյնը կը տեսնենք և ժամանակիս պարթև արքայից դրամներու վրայ[6]։ Գ Արտաշիսի պսակման տեսարանին մէջ՝ յայտնապէս կ'երևի զայն կապելու գործողութիւնը. մէկ ծայրէն բռնած է պսակողը, և միւս ծայրէն՝ պըսակեալը։ Մեծին Տիգրանի հանգոյցն այնչափ իջած է ճակատին վըրայ, որ մազից ծայրերը վերէն կարկառած են, մարգարտի երևոյթը տալով։ Ընդ հակառակն մարգարտի երկու շարքեր կը զարդարեն կապըն իսկ՝ Էջմիածնի տիգրանեան ոսկեդրամին վրայ[7], նշմարելի նաև նոյն արքայի պարխեան մէկ օրինակին[8], և մեր կիսամաշ 19 Ձևի առաջակողմէն։*

6. *Գործապահանգք, ինչպէս կը կոչուէին մանեկաձև օղերը, սովորական են Պարթև արքայից ականջին[9] և մերոց միանգամայն։ Եւ յայտնապէս կը տեսնենք Արշակայ և Գ ու Ե Արտաւազդից վըրայ։ Իսկ այլոց՝ կամ վիժակը կը ծածկէ, կամ յարատև չէին կրեր զայն, որով չեն ալ տեսնուիր։ Մեր ունեցած օղի օրինակներէն կը հետևցնենք նախ՝ թէ այս շրջանիս մանեկաձևը միայն կը գործածուէր։ Եւ երկրորդ՝ թէ սոսկ արքայից սեպհական էր այն. այս պատճառաւ իշխաններէն առանձնաշնորհեալք միայն կընային կրել զայն թագաւորին հրամանաւ, ինչպէս անոր Երկրորդը, զոր պիտի տեսնենք Դ յօդուածիս մէջ։*

7. *Գումարտակը, կամ զանազան կարգերով մարգարտաշար վըզնոց մը՝ կը զարդարէ նախ Աքեմենեանց[10], յետոյ պարթև Արշակունեաց[11] պարանոցը, որոց կը նմանին և մեր թագաւորք, կրելով*

1. Wr. Gal. տխ. 14. — 2. Bab. Rois. էջ 208. — 3. Dar. III, 1944. — 4. Wr. Gal. տխ. 15, թ. 6, 9. — 5. Raw. 103. — 6. Wr. Part. տխ. 8, 10, 11. — 7. Ազգ. Հնդ. 1911, էջ 212, 217. — 8. Bab. Rois. տխ. 29, թ. 9. — 9. Wr. Part. 10. Ա Եգր, Գ, 6. — 11. Wr. Part.

զայն հանդիսական առթից մէջ. որով ամենուն վրայ չենք տեսներ նոյնը։ Ժամանակի կարգով նախ Արշակի վզին շուրջ կ'երևի. բայց փոխանակ մարգարտի՝ ոսկեղէն մահկի մը երևոյթը տալով։ «Մանեակ ոսկի» կը գործածէին և Եգիպտացիք ու Բաբելացիք[1]։ Մեր միւս վիճեալ Արշակունեաց վրայ կը տեսնուի մարգարտեայն[2]. նոյնպէս մեծին Տիգրանի մէկ դրամին (Զև 18), և իւր որդւոյն Արտաւազդի վրայ (Զև 21)։

8. Պատմուճանը ճոխ է հոս իւր նկարագրով և խոկութեամբ։ Վաղարշակի վրայ ցոյց կու տայ խորշաւոր օձիքը. մինչդեռ Արշակին եզերուած է մարգարտի հատիկներով կամ գոհարներով, նման պարթև արքայից հագածին, որոց վրայ աւելի առատ են քարերը[3]։ Խորենացին կը պատմէ Բ Արտաշիսի թաղման առթիւ՝ թէ «պատմուճանն որ զմարմնովն՝ ոսկերէն» էր[4]։ Սակայն միակ գոյնը չէ այս՝ շրջանիս արքայից վրայ։ Մեծն Տիգրան իւր պատմուճանին համար կ'ընտրէ, և կամ աւանդութենէ կ'ընդունի, սպիտակախառնը, զոր տեսանք Կիւրոսի, Դարեհի և Աղեքսանդրի վրայ[5]։ Դիոն Կասիոս է զայս յիշատակողը, գրելով՝ թէ երբ Տիգրան իրեն յաղթող Պոմպէոսի առջև պիտի ելնէր, «մերկացաւ սպիտակախառն (μεσόλευκος) պատմուճանը, և կրկնոցը համակ ծիրանի[6]», թէ մին և թէ միւսը լինելով թագաւորական նշանակներ. ուր վերջնոյն «համակ» բառը՝ ծիրանի իմանալ կու տայ պատմուճանն ալ, որոյ վրայ կար նաև սպիտակը՝ շերտերով կամ կէտերով. վասն զի յունարէնն ըստ տառին կը նշանակէ միջասպիտակ, նոյն բառով բացատրուած նաև Կիւրոսի և Աղեքսանդրի վրայ, և որոյ նշանակութիւնը տարտամ է լաւագոյն յունարէն բառագրոց մէջ անգամ։



Զև 29. Անծանօթ արշակունի

1. Ծննդ. ԽԱ, 42. Դան. Ե, 7. — 2. Ազգ. Հնդ. 1911, էջ 42, 50, 52. — 3. Wr. Part. — 4. Խոր. Բ, Կ. — 5. Ատ՝ 51. — 6. Dion. III, 111.

Բնականապէս իմ այս նկարագրին հետ չի միաբանիր Հ. Ալիշանի կարծիքը՝ թէ «սեպհական գոյն հանդերձից թագաւորին Հայոց (որ և ազգային) սպիտակն էր[1]»։ Այս գունով ներկել տուած կը թուի ինքն իսկ Անծանօթ արշակունւոյն պատմուճանն ալ։

Պատմուճանը՝ Գ. Արտաշիսի, Աքեմենիդի ու Սոյեմոսի վրայ պարթևական ոճով կ'իջնէ մինչև ծնգաց մօտ, չափաւոր լայնութեամբ. Պարթամասիրիսին աւելի կանոնաւոր, կը ծածկէ ծնգներն ալ։ Իսկ անոր թեզանիքը կ'աւարտին ուսերուն մօտ, ի տես դնելով ճերքճակ պարեգօտի մը երկայն թեզանիքը՝ որ կը ծածկէ ամբողջ բազուկը։ Հ. Տաշեան կոմմագենացի Անտիոքոսի տիգրանեան թագէն կը փորձուի՝ վերջնոյս երկու քանդակներն ի Նեմրուտ Տաղ իբր օրինակ առնուլ հայ տարազին[2]։ Ես տեսայ այդ քանդակները[3], և շատ տարբեր գտայ անոնց զգեստը պարթևահայէն, սկսեալ պատմուճանէն՝ որ պճղնաւոր է, և զոյգ կապ մը ցայլէն անցնելով վեր կը բարձրացնէ. թող ուրիշ արտառոցութիւնքը։

9. Կամարը, չափաւորապէս լայն, և Պարթամասիրիսի վրայ պարզ՝ ըստ պահանջելոյ պարագային, Անծանօթ արշակունւոյն վրայ կը ներկայանայ իւր արքայական ճոխութեամբ, այս ինքն մարգարտի զոյգ մը խիտ կարգերով, և կեդրոնը՝ ցանցառ կարգով մը։

10. Քղամիդը զգալի է մեր պատկերներէն ոմանց վրայ. ինչպէս Տիգրանի, Աքեմենիդի, Սոյեմոսի, Պարթամասիրիսի և Անծանօթին։ Ամենունը ճարմանդուած է աջ ուսին վրայ, ինչպէս Տիգրանին և Աքեմենիդի, և կամ ուսին մօտ, ինչպէս Պարթամասիրիսի և Անծանօթին, այս վերջնոյ վրայ ցոյց տալով նաև ականազարդ շիգը։ Անծանօթին, կ'ենթադրեմ նաև Տիգրանի, աջ բազուկն ազատ էր՝ շարժելու և գործելու, և ձախը ծածկուած։ Պարթամասիրիս, Աքեմենիդ ու Սոյեմոս քղամիդն ամփոփած են նաև ձախ ուսին վերեւ, որպէս զի նոյն բազուկն ալ ազատ թողուն։ Տիգրանի «մեկնոցն համակ ծիրանի» էր, ըստ Դիոնի։ Նոյնպէս էր, ցոյց տուինք այլուր, բոլոր հին թագաւորաց վրայ։ Պարթամասիրիսին եզերուած է նաև ծոպերով։ Եւ ամենուն ստորոտը կը հասնի մինչև պատմուճանին ծայրը, նման պարթևական ընդհանուր ոճին։ Վաղարշակ, Արշակ և Արտաւազդ Գ. առանց քղամդի են, որովհետև քանդակուած են արքունեաց մէջ՝ ուր միշտ ստիպողական չէր հանդերձին այդ մասը, այլ աւելի պաշտօնական կամ հանդիսական առթից յատուկ և կամ արքունիքէն դուրս կրելի։

1. Արրտ. 416։ — 2. Հանդ. Ամս. 1905, էջ 171։ — 3. Puch. տխ. 39։ — 4. Աստ՝ 51։

11. *Վարտիքը, տեսանելի Գ Արտաշեսի, Պարթամասիրիսի, Աքեմենիդի և Սոյեմոսի վրայ, շատ լայն չէ. և թեթև խորշերով կ'իջնէ մինչև թաթերուն մօտ, ուր և կը կապուի։ Կը համարիմ՝ որ այս ևս ծիրանեգոյն էր, ինչպէս հանդերձին միւս մասունքը։*

12. *Կօշիկները՝ Պարթամասիրիսի վրայ, ուր աւելի զգալի են, կը ծածկեն ամբողջ թաթը։ Նկատելով՝ որ Հայոց արքայն երբեմն նախարարաց ոմանց իրաւունք կու տար կարմիր կօշիկ կրելու, ինչպէս կը տեսնենք Դ յօդուածիս մէջ, կը հետևի՝ որ ինքն ալ կարմիր կը հագնէր, նման Պարսից արքային ու Հռովմայ կայսերաց։*

13. *Սուրը կը մնայ միշտ իւր ճոխութեամբ հանդերձ, և հոս անբաժան է արքայի կամարէն։ Տիգրան առ Պոմպէոս աղաչաւոր եր-*



Ձև 30. Աքեմենիդ պսկ. (28 ճզ.)    Ձև 31. Սոյեմոս պսկ. (18 ճզ.)

*թալու պահուն ձի նստած ու սուրը մէջքին էր. և երբ ազդարարեցին՝ թէ հռովմէական սովորութիւնը չէր ներեր ձիով մտնել անոնց բանակը, իջաւ, կ'ըսէ Պլուտարքոս, և «իւր սուրն ալ քակեց և անոնց յանձնեց[1]»։ Տրդատ Ա երբ Ներոնի քով հասաւ ծանօթ խնդրով[2], հակառակ հրամանին զոր ընդունեցաւ, մերժեց հանել իւր թուրը[3]։ Արտաշիսի յուղարկաւորութեան ժամանակ անգամ իւր քովն էր «զէնն ոսկւով» կամ ոսկեզարդ[4], որ է սուրը։*

*Արքունի գաւազանին յիշատակութիւնը չունինք այս շրջանիս մէջ, և այս պարագայն կը ժխտէ նաև անոր գոյութիւնը. վասն զի*

1. Պլտ. Պոմպէոս, ԼԳ։ — 2. Անտ՝ 65։ — 3. Dion, LXIII, 2։ — 4. Խոր. Բ, Կ։

եթէ լինէր, առանձին կարեւորութիւն մը պիտի ունենար և պիտի յիշուէր ևս։ Պարսից քով Աքեմենեանք ունէին զայն ոսկեղէն[1], և կը տեսնենք անոնց ձեռքը՝ ձևով գնդագլուխ և երկար[2]. բայց Պարթևք չէին գործածեր զայն, ու չեն ցուցներ դրամոց, քանդակաց ու պատմութեան մէջ։ Այս պատճառաւ սոյն շրջանի հայ թագաւորք ալ ունենալու չեն զայն, թէև Հ. Ալիշան հաւանական կը կարծէր անոր գոյութիւնը և մեր քով «որպէս Մարաց և Պարսից[3]»։

## Գ. ԹԱԳՈՒՀԻՆ

Զորս կարեւոր յիշատակարաններ ունինք ասոր տարազին քննութեան համար։ Երատոյի դէմքը, — երկուք են այս անուամբ թագուհիներ, կամ նոյնը կրկին անգամ իշխած, — որ կը գտնուի քանդակուած իւր ամուսնոյն՝ Դ Տիգրանի պարիսեան մաշած դրամին վրայ[4], Զև 32, հանուած բնագրէն։ Նոյն դշխոյի ուրիշ մէկ դէմքը, դարձեալ ամուսնոյն հետ, որ կը պահուի Վիեննայի Մխիթարեանց քով, ինչպէս ըսի կանխաւ[5], Զև 33, նոյնպէս բնագրէն։ Եւ քան զամէնը կարեւոր՝ գեղեցիկ քանդակ մը նարնջագոյն կարկեհանի մը վրայ՝ Պարիսի մատենադարանին մէջ, Զև 34, զոր ստացայ Բաբլոնէ. և զոր վաղուց հրատարակած են գծագրութեամբ՝ Կայլիւս[6], Լայարդ[7], Լանգլուա[8] և Բաբլոն[9]. առաջինը բաւական հեռի բնագրէն, և միւսները՝ ոչ բոլորովին նման. այնպէս որ Հ. Ալիշան ստիպուեր է առնուլ Կայլիւսի և Լանգլուայի օրինակները միանգամայն իբր զատ պատկերներ, կասկածելով հանդերձ՝ թէ կրնան մէկ աղբիւրէ լինել[10]։

Լայարդ այս քանդակը կը համարի «հայ թագուհւոյ մը կենդանագիրը»։ Լանգլուա, մերժելով արքունի քանդակաւոր ականց ցուցակագրին կարծիքը, որ կը համարի զայս Մուսա՝ կին Դ Փրաատի, կ'ուզէ՝ որ լինի նոյն ինքն Երատոյ, դատելով հերաց ու կերպարանաց նմանութենէն՝ որ կայ ասոր ու պարիսեան դրամին մէջ[11], թէև դիւրին չէ նշմարել այդ մաշած կտորին վրայ։ Իսկ Բաբլոն կը կրկնէ նոյն ցուցակագրին կարծիքը, որ նոյնպէս պարզ ենթադրութիւն մ'էր. այս պատճառաւ թերևս պատասխան չտուաւ հարցմանս՝ թէ ինչ ապացուցի վրայ հիմնած էր զայն։ Միւս կողմանէ Պարթևաց

1. Եսթեր, Ը, 4. ԺԵ, 6, 14. — 2. Dar. I, 674. V, 297. — 3. Արտ. 425. — 4. Bab. Rois. տխ. 29. — 5. Աստ՝ 62. — 6. Cay. II, տխ. 42. — 7. Laj. տխ. 65, թ. 18. — 8. Lang. Num. տխ. 3. թ. 6. — 9. Bab. Grav. 193. — 10. Արտ. 367, 418. — 11. Lang. I, էջ 39–40.

դշխոյին կենդանագիրը, Վրոթի ցուցակին չորս զանազան դրամներու վրայ բոլորովին նոյն[1], շատ կը հեռանայ մեր կարկեհանէն՝ իւր դիմագծերով. իւր վարսերով՝ խմբուած գլխին ետև ու դէպ ի վեր հիւսուած. իւր խոյրով՝ կոնաձև, ու ծածկուած շար շար մարգարտով՝ առանց ճառագայթից և աստեղաց. իւր թեզանաւոր փակ պատմուճանով և անգորշապաճանգ ականջներով։ Մեր կարկեհանի թագուհին հայ մ՚է, փոյթ չէ՝ Դ Տիգրանի կի՞նը՝ որ յաջորդեց անոր, թէ ուրիշ մը։

Վերջապէս ունինք հռովմէական Երապետաց դրամոց թագուհին, 20 թուականէն (Ն. Ք.). երեք օրինակ Պետրոնիոս Կուրպիլիանոսի, և մի Ակ. Փլորոսի, ձուլուած նոյն կաղապարով, որոնք կը պահուին



Ձև 32 (22 մմ). Երատոյ թագուհի Ձև 33 (17 մմ.)

Բրիտանական թանգարանին մէջ[2]. և որոց վրայ թագուհի Հայաստանը ծնրադիր՝ աղաչաւոր կեցած է։ Նոյնպէս կը համարին Գրիւբէր և այլք[3]։ Զայն յառաջ կը բերեմ Փլորոսի բնագրէն՝ շնորհիւ Հիլի. Ձև 35։

Հաստատուած այդ քանդակաց վրայ, տեսնենք հայ դշխոյի ձևը։

1. Հերք միակ զգալին են պարիսեան մաշած Երատոյի վրայ։ Գագաթին՝ ողորկ նստած են գմբեթարդ ձևով, և գլխին շուրջ կը կազմեն պսակ մ՚ուռուցիկ և ոլորուն։ Մեծ է նմանութիւնն ասոր և ժամանակակից Աւգոստոս կայսեր կնոջ Լիւիայի վարսից հետ՝ ասոր դրամոց վրայ[4]։ Ժամանակիս ընդհանուր ձևն է՝ քան ազգեցութեան

1. Wr. Part. տխ. 22. — 2. Grueb. տխ. 66, թ. 5, 6, 7, 19. — 3. Rac. II, տխ. 14, թ. 22. — 4. Coh. I, 172, 174.

արղլինք. այս պատճառաւ նոյն ոճով յարդարուած են մեր 34 և 35 Ձևերու Թագուհեաց մազերն ալ, Թագին շուրջ պսակ կազմելով։ Բայց կանացի ճաշակը մէկ ձևով չի գոհանար միշտ. և վիեննական Երատոյ փոխանակ պսակին՝ մազերը կ'ամփոփէ գլխին ետև։

2. Թագը կը պահէ 34 և 35 Ձևերուն վրայ տիգրանեանին ընդհանուր նմանութիւնը։ Վիեննականին ճառագայթներն այլոց ճշգութիւնը չունին։ Ասոր և կարկեհանի Թագերը կը հեռանան իրարմէ նաև քան-



Ձև. 34. Հայ թագուհի (17 ֆզ.)

դակներով. մին ճոխացած կոր շերտերով, և անոնց մէջտեղ, ներքև ու վերև մարգարիտներ ու գոհարներ, և միւսը՝ խորհրդաւոր աստղերով։ Ցամենայն դէպս՝ իր ձևին ծագումը նոյն է արքայականին հետ՝ զոր տեսանք, սակից իսկ օրինակուած։ Տարբերութիւն մը կայ նաև դնելու մէջ. կարկեհանի և հռովմէական Թագուհիք՝ կանացի ուշադրութեամբ մը զետեղած են զայն աւելի կամ պակաս ետև, ողջ պահելու համար վարսից պսակը. իսկ վիեննականն ուղիղ բռնած է առնաբար ճակատին վրայ։

3. Հանգոյց բագին կ'երևի նաև մեր դշխոյից գլխին։ Կարկեհանին՝ կապուած է թագին կեդրոնը կարճ ծայրերով. աւելի զարդ է քան կապ։ Հռովմէականը՝ կապուած է թագին շրթանց վրայ։ Իսկ վիեննականը՝ թագին ու ճակատին վրայ բաժնած է զայն՝ արքայական ոճով։ Վերջինս ունի նաև մարգարտի երկար շարք մը, որ թագին վերէն կը կախուի երկուստեք։

4. Գորշապահանգները, զոր տեսանք արքայից ականջին, կը տեսնուի նաև կարկեհանի դշխոյին վրայ։ Միւսներն ալ ցոյց պիտի տային զայն՝ եթէ նրբութեամբ փորագրուած լինէին։

5. Բայոը, որ է մարգարտաշար վզանոցը, կ'երևի երեք կարգով՝ վիեննական թագուհւոյն պարանոցին շուրջ, որպէս զի այս զարդով ալ վար չմնայ թագաւորէն։ Ըստ քիմս գործածողին կամ քանդակողին է՝ եթէ կարկեհանի դըշխոյն չէ դրած զայն։ Բայոը կրնար անշուշտ աւելի պարզ ալ լինել, ինչպէս Մուսային որ միակարգ է։



Զև 35. Հայաստան (18 ռզ.)

6. Պատմուճանը կրկին ձև ունի մեր պատկերաց մէջ։ Վիեննականին ու հռովմէականին վրայ փակ է այն. այսինքն կը ծածկէ ամբողջ իրանը մինչև վզին քով, և բազուկները, և կը հասնի ոտից թաթերուն։ Այս սովորական ձևն է, յատուկ առտնին կենցաղավարութեան։ Կայ նաև հանդիսականը, զոր կը կրէ կարկեհանի թագուհին։ Եւ է յունական ոճով. վիզը, ուսերն ու բազկները բաց կը թողու, թեթևակի ճարմանդուելով ուսոց վրայ, և վայելուչ խորշերով կ'իջնէ վար։ Այս նրբաճաշակ ձևին մէջ հայ կամ յոյն քանդակողին երևակայութիւնը դեր չունի։ Եթէ արևմտեան բարուց հրապոյրը կը մղէ հայ Արշակունիքը մինչև իսկ ածելելու իրենց մօրուսը, աղկից չէին կարող զերծ մնալ արքայազն տիկնայք ալ. կը բաւէ նկատել՝ որ Երատոյի անունն իսկ, որ դուստր էր Գ Տիգրանայ և քոյր ամուսնոյն, երաժշտութեան համանուն յոյն մուսայէն փոխ առնուած էր։ Պատմուճանիս գոյնը սովորաբար արքունեաց սեպհական ծիրանին էր. թէև զգեցողաց կանացի ախորժակը կարող էր և շե-

*ղումներ ունենալ, երբ Թագաւորի հագածին վրայ ևս տեսանք սպիտակին բաժինը։*

7. *Կամարը կայ և Թագուհւոյն պատմուճանին վրայ, ինչպէս կը նշմարուի հռովմէական պատկերին մէջ, փոքրկութեան պատճառաւ անխնամ թողուած, և որ իրականին մէջ հարուստ էր արքայականին պէս։*

8. *Կօշիկներն ալ կ'երևին նոյն պատկերին մէջ, և բաւական վայելուչ ձև մ'ունին, ինչ որ բնական էր թէ լինէր։*

9. *Սաղաւարտի մը յիշատակութեան ևս կը պատահինք պատմութեան մէջ։ Դիոն կ'ըսէ՝ թէ Ա Տրդատայ կինը կ'ընկերէր ամուսնոյն դէպ ի Հռովմ, «դրած ոսկի սաղաւարտ* (κράνος) *փոխանակ գլխադրի (քող են), որպէս զի չտեսնուի՝ ըստ իւր զարմին» սովորութեան*[1]*։ Այս տեղեկութեան մէջ կը տեսնենք նախ տնէն դուրս սքողուելու պէտքը՝ կանանց ու Թագուհեաց ևս։ Երկրորդ՝ հեռաւոր ուղևորութեանց համար՝ փոխան քողի սաղաւարտ կը գործածեն, որ միայն պատերազմի յատուկ չէր. և այդ սաղաւարտը Թագուհւոյն վրայ ոսկեղէն է՝ նման Թագին. ու կը ծածկէ դէմքն ալ, բաց թողլով աչքերը։*

## Դ. ԱԶՆՈՒԱԿԱՆՔ

*Այս տիտղոսին ներքև պիտի տեսնենք նախ հայ նախարարաց զգեստը, որ ընդհանուր նկարագիր մ'ունէր անշուշտ բոլորին վրայ։ Յետոյ զատ ակնարկ մը պիտի ձգենք երկու բարձր պաշտօնէից, Ասպետին ու Թագաւորի Երկրորդին վրայ, որոնք երբեմն արքային բարեյօժարութեամբ իրաւունք կը ստանան կրելու անոր զարդերէն մին կամ միւսը, իրենց սեպհականներէն զատ։*

*Ա.* ԻՇԽԱՆՔ։ — *Նէապոլսոյ Թանգարանը կը պահէ հռովմէական վիմաքանդակ մը, հանուած Պոսիդոնեան սրահէն* (Basilica Neptuni), *որ վերաշինուած էր Ադրիանոսէ (ամ* 117–138) *և զարդարուած անոր յաջորդ Անտոնինեաններէ. և իւր խարիսխը ծածկուած էր՝ հռովմէական գաւառները խորհրդանշող մարդապատկերներով, որոնք կան ցարդ ու կը կրեն տեղական տարազներ։ Ասոցմէ մին է յիշեալ քանդակը, զոր յառաջ կը բերեմ, Ձև* 36, *և որ հայկական գլխանոցով՝ Հայաստանի խորհրդապատկերը համարուած է մասնագէտներէ*[2]*։*

1. Dion. LXIII, 2. — 2. Ruesch. 261. Bienk. էջ 61, ձև 54. Jahr. 1900, էջ 6, ձև 3.

*Մեր ձևն ամազոնի պէս երկսեռ է. Հայաստանը՝ որ միւս լեզուաց մէջ իգական է, կը ներկայանայ հոս առնացի զգեստով, որ կը տարբերի ժամանակիս կանացիէն՝ կարճ պարեգօտովն ու կրկնոցով՝ որ արանց միայն յատուկ են*[1]*։ Եւ է յատկապէս իշխանական տարազը, որ իւր ճոխութեամբ կը հեռանայ ժողովրդականէն։ Ահա իւր նկարագիրը։*



Ձև 36. Հայաստան՝ իշխանական տարազով

1. *Հերաց և Մօրուաց գործածութեան մէջ մեր ազնուականք կրած լինելու չեն Թագաւորաց յեղաշրջութիւնները, որ ասոնց համար տոհմային հանգամանք ունէին. այլ պահած պարթևական անգէս և առատ վարսերը, և չափաւոր մօրուսը, նման ժողովրդեան։*

1. Տես Ձևք 35, 37։

2. Խոյր մ'ունի գլխին մեր պատկերը, կոնաձև, ծայրը տափարակ կտրուած, որ բաց կը թողու դէմքը, և վիժակով մը՝ որ միաձոյլ կը թուի, կը ծածկէ ծոծրակը շուրջանակի։ Այս է, ինչպէս ըսի, քանդակիս ամենէն յատկանշող մասը, որ կ'որոշէ այս գլխանոցը պարթևականէն, որ չունի այդ հատուածն ու վիժակը։ Զուտ հայկակա՞ն է ասոր ծագումը, թէ արտաքին ազդեցութեան մ'արդիւնքը։ Տեսած եմ՝ ի Փռիւգիա գտնուած քանդակ մը՝ որ կը ներկայացնէ երկու անձինք, ոչ փռիւգական և անծանօթ տարազով մը, որոնք կը կրեն ցած ու սրաձև խոյրեր, և յետակողմէն վիժակ մը՝ քան զմերը նուազ տարածուն[1]։

3. Վտաւակ մը կը կրէ ներքուստ մեր ազնուականը, չափաւոր լայնութեամբ, որ խորշերով կ'իջնէ ծնկներուն մօտ՝ ինչպէս պարթևականը. և կը վերջանայ ուղիղ ստորոտով։ Իրենն են թեզանիքը՝ որ կ'երևին պատկերիս մէջ, և դաստակաց մօտ զսպուած են երիզաձև յաւելուածով մը։

4. Պատմուճանը, անթեզան՝ լայն ու բազմախորշ, ձգուած է ներքնակին վրայ, քան զայն երկար, և առաջակողմէն վեր ամփոփուած՝ խորշեր կը կազմէ։ Ստորոտի երկու ծայրերէն կը կախուին մի մի ուռեր կամ գնդաձև զարդեր։

5. Գօտի մը լայն՝ կը զսպէ պատմուճանը, և կը կապուի յետակողմէն, որով ծայրերն աննշմարելի կը մնան։

6. Գրաստքը, լայն՝ ճոխ՝ բազմախորշ, կը ծածկէ թիկունքը. կը ճարմանդուի աջակողմեան ուսին մօտ՝ արքունի քղամդին պէս, և կ'իջնէ պատմուճանին հաւասար, իւր ծայրերէն ալ ուռեր կախելով։

7. Վարտիքը նոյնպէս պարթևականն է, չափաւոր լայն, և կը հասնի մինչև թաթերը, ուր և կը զսպուի ստորոտովը։

8. Կօշիկները լաւ չեն նշմարուիր ստուերի պատճառաւ. բայց ստոյգ է՝ թէ կը ծածկեն թաթերը, ինչպէս մեր 28 Ձևին մէջ։

9. Ապպիանոս կը պատմէ՝ թէ Հռովմայեցիք յետ յաղթելու մեծին Տիգրանայ, անոր բանակին անկելոց վրայ տեսան «պարանճաններ ու գումարտակներ», և չդպան անոնց, որովհետև զօրավարն արգելած էր կողոպտել[2]։ Որո՞նց կրնային լինել այդ հարուստ ու հրապուրիչ զարդերը, եթէ ոչ անկեալ ազնուականաց։

Հաշուի չեմ առնուր մեր պատկերին պատկանդարանն ու նետը՝ զորս պատահաբար ու խորհրդով մը տուած են իւր ձեռքը. և որ սովորական տարազին մասն չեն կազմեր։

1. Perr. Expl. տխ. 10. — 2. Ապպ. Միհր. Ձե.

Բ. ԱՍՊԵՏԸ։ — Խորենացին կ'աւանդէ՝ թէ Վաղարշակայ օրով Բագրատունեաց նահապետը Բագարատ՝ մարտի մէջ մեծ ծառայութիւն կը մատուցանէ արքային, և փոխարէն կը ստանայ իր տոհմին համար՝ պատիւը պսակելու նորընտիր թագաւորը, և կրելու Ասպետ կոչումը[1]։ Այս պատուոյն նշանակ մ'ալ կը շնորհէ արքայն. այս ինքն «առանց ոսկւոյ և ականց՝ զկրտսեր մարգարիտն երեքտակեան վարսակալ ածել՝ յորժամ յարքունիս և ի տան թագաւորին շրջիցի[2]»։ Մեզ ծանօթ եռակարգ մարգարտով վարսակալն է՝ արքային յատուկ, զոր բացառաբար կը կրէ և Բագարատ. «կրտսեր մարգարիտն» է այդ, որ կ'ենթադրէ աւագը կամ ականազարդն ալ, զոր արքայն իրեն կը պահէ[3]։

Արտաշէս Բ իւր դայեկին ու երախտաւորին Սմբատայ, նոյն ասպետական տոհմէն, որ զինքը թագաւորեցուց, կու տայ ուրիշ պատիւ մը, կրել «պսակ յակնթակապ»[4] կամ յակինթներով ծածկուած։ Այս պսակը ցած էր ու մանեկաձև, զոր պատմիչը գիտէ զատել անուամբ ալ բուն արքունի թագէն[5]։

Այնպէս կը թուի՝ թէ այդ վարսակալն ու պսակն անձնական էին, և ոչ ժառանգական՝ նման ասպետութեան. այս պատճառաւ չեն յիշուիր բնաւ ուրիշ Բագրատունեաց վրայ։ Փաւստոս նոյն տոհմին համար կ'ըսէ՝ թէ «թագադիրք թագակապքն լեալ էին ի բնմէ» Արշակունեաց[6]. ուր թագադիրքն երկդիմի է, և կրնայ նշանակել, իբր համանիշ յարակից թագակապին, նաև արքունի թագը բռնող ու կապող կամ դնող արքայի գլխին[7]։ — Խորենացւոյն բացատրութիւնը՝ թէ Արշակ Գ ու կինը կը խոժոռին Սահակ ասպետին դէմ, «որպէս թէ զարդ արքունական ունել նմա՝ ի փեսայէն իւրմէ մնացեալ», որ էր Վաղարշակ Բ[8], կը նշանակէ՝ թէ հանգուցեալ փեսային զարդերէն մին պահած էր իր քով, ոչ թէ իրեն շնորհուած էր գործածութեան համար, ինչպէս կ'իմանայ Հ. Ինճիճեան[9]. վասն զի նուիրեալ ու գործածուած զարդ մը ծանօթ կը լինէր ամենուն և խնդիր չէր հաներ։

Գ. ԵՐԿՐՈՐԴԸ։ — Բ Արտաշիսի երախտաւորներէն մին ալ էր Արգամ, Մուրացան տոհմի տանուտէրը, որ ունէր թագաւորին երկրորդութեան պատիւը, և զոր մեծն Տիգրան իւր քեռայրին Միհրդատայ տուեր էր. իսկ Երուանդ կը դարձնէ Արգամայ՝ անոր օգնու-

1. Խոր. Բ, գ, դ. Փաւս. 71։ — 2. Խոր. Բ, է։ — 3. Աստ՝ 66։ — 4. Խոր. Բ, խէ։ — 5. Նոյն՝ Բ, կ. Գ, գ։ — 6. Փաւս. 256։ — 7. Հմմտ. ջրաւոր կամ ցրուոր, որ է ջուր բերող կամ հանող։ — 8. Խոր. Գ, խգ։ — 9. Ինճ. Բ, 285։

թիւնը շահելու համար Արտաշէսի դէմ։ Սակայն վերջինս առաւելագոյն խոստումներով յաջողեցաւ իրեն որսալ զԱրգամ[1], որուն կը շընորհէ ապա «գխոստացեալ գահն երկրորդական». և անոր հետ արքունական պատուոյ նշանակներէն, որ էին «պսակ յակնթակապ», ինչպէս Ասպետին, և «գինդ յերկոսին ականջսն», զոր կը զլանայ Սմբատայ, «բայց միայն յերկուց գնդաց». ուսկից կը հետևի՝ թէ գինդն ալ արքային վերապահեալ էր։ Եւ հուսկ՝ «կարմիր զգեստ միոյ ոտինն»[2], զի երկուքը թագաւորին իրաւունքն էր. և զոր զգեստ կը կոչէ և ոչ կօշիկ, որպէս զի սռնապանով միասին հասկանանք։

Այս պատիւն երկար չտևեց. Արտաշէսի որդին Արտաւազդ մեծնալով, նախանձեցաւ ծերունի Մուրացանին, գրպարտութեամբ զրկել տուաւ իւր պաշտօնէն և ինք ստացաւ, ու սպաննեց նախարարը[3]։ Սոյն պաշտօնը նորոգուած կը տեսնենք յետոյ Պապայ որդւոյն Վաղարշակայ վրայ, որ «երկրորդ» կը կարգուի իւր Արշակ եղբօրէն[4]։ Բայց ինք արդէն կը կրէր արքայորդւոյ տարազը՝ թագով հանդերձ[5]։

## Ի. ՏԻԿՆԱՑՔ

Ղուկիոս Վերոս կայսր Հռովմայ՝ մեր կանխաւ տեսածներէն զատ ունի չորս դրամներ՝ 163–164 թուականէն, ոչ այնքան նուրբ գործեր, որ նոյնպէս կը ներկայացնեն Հայաստանի նուաճումը՝ սգաւոր հայ տիկնոջ մը ձևով, նստած ի գետին ձեռն ի ծնօտի. և զոր յառաջ կը բերեմ Հռովմայ արքունի հաւաքածոյի մէկ կտորէն՝ շնորհիւ Ռևս. Սերափիննեայ. Ձև 37։ Հայ տիկին կը համարիմ զայս, հաստատելով իւր խուրին վրայ, որ կը տարբերի թագուհւոյ կրած թագէն. և մենթանին, զոր ազնուական կանանց յատուկ պիտի տեսնենք յաջորդ շրջանին ևս։ Այս պատկերը, որ քան Վերոսի միւս նման ձևը[6] մեծագոյն, ճոխագոյն և յստակագոյն է, առաջնորդ պիտի բռնեմ հոս տիկնանց տարազին համար, որոյ նկարագիրն է հետևեալը։

1. Հերք պսակաձև ուռած են գլխին շուրջ, նման թագուհեաց ոճին, և որոց հաւասար են մեր 36 Ձևի առնազգեստ տիկնոջ մազերն ալ։ Վարսից յարդարման մէջ իշխողն էր կանացի ճաշակը, որ աստիճանի տարբերութիւն չէր ճանաչեր։

1. Խոր. Բ, խդ, խզ։ — 2. Նոյն՝ Բ, խէ։ — 3. Նոյն՝ Բ, ծա։ — 4. Փաւս. 256։ — 5. Նոյն՝ 245։ — 6. Coh. Emp. III, 172։

2. *Խոյր մը կը կրէ մեր իշխանուհին, որ է կոնաձև, նեղ, ոչ բարձր, տափածայր և անվիժակ, նստած գագաթին վրայ։ Կանացի ձև մ'է այս, որ նոյնպէս կը մնայ, և որուն պիտի հանդիպինք հետագայ շրջանին ևս։ Մի և նոյնը կը տեսնենք նաև հատեան քանդակաց մէջ՝ կանանց վրայ զոր յիշեցինք*[1], *ծածկուած անոնց քողին ներքև։*

3. *Պատմուճան մ'ունի պճղնաւոր, զոր կամ նստելու համար և կամ թերևս իբրև սգաւոր՝ ազդերաց վրայ ժողոված է։ Ամփոփ են թեզանիքը, և դաստակին մօտ կ'աւարտին կարկառուն զարդով մը։ Անոր վրայ գեղեցիկ զարդարուն գօտին ալ պիտի տեսնէինք անշուշտ, եթէ ծածկուած չլինէր հետագայ կտորէն, որ է*



Ձև 37. հայ տիկին (25 ֆզ.)

4. *Մենթանը, կարճ հագուստ մ'անթեզան, որ կը ծածկէ իրանը միայն, և ստորոտը կը վերջանայ ժանեձև երիզով մը։ Այսպիսի կարճ կրկնակ մը կ'երևի նաև յունական կանացի ձևերու մէջ, ստորոտն աղնագործ երիզով մը՝ առանց ժանեաց, և ասոր վրայ գօտեւոր կամ արձակ*[2]*։ Յայտնի է հոս հելլենական ազդեցութիւնը։*

5. *Վարտիքը մասն է և կանացի տարազին, շատ նման առնականին, պճղնաւոր և ամփոփ, և ցոյց կու տայ բնական թեթև խորշեր։*

*Մեր պատկերին մէջ կայ նաև պատերազմական աւար, դրօշներ, վահան և այլն, որոնք կը խորհրդանշեն Հայաստանի պարտութիւնը, և կապ չունին այս կանացի տարազին հետ։*

## Զ. ՔԱՂԱՔԱՑԻՔ

*Ասոնց հանդերձին աղբիւր ունինք հռովմէական եռապետներէն Ակ. Փլորոսի մէկ դրամը, 20 տարւոյն (Ն. Ք.), զոր կու տամ հոս՝ Բրիտանական Թանգարանի կիսամաշ օրինակէն, շնորհիւ Հիլլի, Ձև*

1. Աստ՝ 33։ — 2. Dar. IV, 384. V, 537–8։

38, հրատարակուած և Գրիւբերէ[1]. և որոյ յոռեգոյն օրինակ մ'ալ կը պահէ Տորինի Թանգարանը։ Մեր պատկերը որ և է զէնք չունի՝ զինուորական կարծուելու համար, ինչպէս վրիպակաւ համարեցաւ Բաբլոն[2], և զգեստի զանազանութիւն մ'ալ ցոյց կու տայ զինուորականէն, զոր կը տեսնենք յաջորդ յօդուածիս մէջ։ Ուստի հոս ունինք սոսկական հայ քաղաքացի մը, որ իւր հանդերձին պարզութեամբ կ'որոշուի իշխանական ձևէն։ Կայ նաև Ղուկիոս Վերոսի գեղեցիկ մէկ շքադրամը, անտարակոյս Հայաստանի նուաճման 163 Թուականէն (յ. Ք.), պահուած Պարիսի մատենադարանին մէջ, որո՛յ վրայ քանդակուած են յաղթանակին քով՝ երկու հայ ձեռնակապ գերիներ, և զոր նոյնպէս յառաջ կը բերեմ յիշեալ բնագրէն, Զև 39։ Մի և նոյն հայ կենդանագիրը կ'երևի նաև Մարկոս Աւրեղիոսի դրամոց երեսին[3], — որուն գահակից էր Վերոս, — միայնակ՝ նստած գետնի վրայ, և զգեստի մասանց մէջ ու սեռով ալ անորոշ։ Որով մեզ հոս լաւագոյն օրինակն ունինք մեր ուսումնասիրութեան համար։



Զև 38. հայ քաղաքացի (20 ñq.)

1. Հերք և Մօրուք՝ առանց բացառութեան հաստատուն կը մնան ժողովրդեան վրայ։ Մազերն առատ են պարթևական ոճով, բայց ոչ գիսաւոր, ինչպէս տեսանք Պարթամասիրիսի վրայ. և զգալի է նաև մեր կրկին ձևերու անձանց գլխին։ Մօրուքը կարճ է Փլորոսի դրամին վրայ, մինչդեռ Վերոսի Հայերը, որ պատանի կը Թուին, անմօրուս են, ոչ եթէ մօրուազերծ՝ որ հաւանական չէ ժողովրդեան վրայ։

2. Խոյրը կրկին ձև ունի հոս. փլորոսեան պատկերը դեռ կը պահէ տափածայր ու վիժակաւորը, որ բուն ազգայինն էր. և որ մընալով միշտ ազնուականաց գլխին, յետ ժամանակաց ռամկին վրայ կը փոխէ ձևը. վերոսեան դրամին վրայ կորուսած է վիժակը, եւ դարձած սրածայր, ինչ որ կ'երևի նաև Մրկ. Աւրեղիոսի վերոյիշեալ

1. Grueb. տխ. 66, Թ. 20։ — 2. Bab. Rois. I, 216։ — 3. Egg. Թ. 2513, ևն։

*դրամին վրայ։ Աւելի հին, ու նման բան մը կը թուի նաև հայ զինուորի մը դրածը Գ Տիգրանի պարխսեան մաշած դրամին վրայ*[1]*։ Դժբախտաբար շատ փոքր են մեր այս աղբերաց բնագիրները, ճշդելու համար իրենց նմանութեան աստիճանը պարթևականին հետ, որ ըստ էութեան կը համեմատի ասոնց, և ծայրը դէպ յառաջ ծըռռած է, ինչ որ չի նշմարուիր մերոց վրայ։ Ծանօթ է նաև կապադովկեան խոյրը, քան զմերը բարձր ու սրածայր, և ստորոտը շրջանակով մը՝ որ առաջակողմէն դուրս կը կարկառի*[2]*։ Վերջապէս ձևս*



Զև 39. Յաղթանակը և հայ գերիներ (36 ծզ.)

*այս ընդհանրականութեան մէջ դժուարին է հայկականին որոշ ծագում մը նշանակել։*

3. *Պարեգօտը կարճ է, և փլորսեան քանդակին անկատարութենէն լաւ չի տեսնուիր՝ թէ ո՛ւր կը հասնի. բայց պարթևակերպ ծնգներուն կը մօտենար անտարակոյս (հմմտ. Զև* 36, 40)*, ինչ որ շատ յայտնի է արդէն վերոսեան անձանց վրայ ևս։ Ունի երկար ու նեղ թեզանիք։*

4. *Գօտին սովորական ու զգալի է Փլորոսի դրամին վրայ։*

5. *Մեկնոցը կախուած է ուսերէն, և ամփոփուելով թիկանց*

1. Bab. Rois. *տխ.* 29, *թ.* 19. — 2. Perr. Exp. II, *տխ.* 38, 50.

*եսև, կ'իջնէ ծնկներէն վար՝ նման պարթևականին։ Փլորոսեանին Հայը բռնած է անոր երկու եզրերէն, զորս Բաբլոն անուշադրութեամբ նիզակ ու վահան մը կարծեց, ինչպէս ըսի, ուր Գրիւբէր ինծի նման կը մեկնէ*[1]*։ Հոս ճարմանդուած կը թուի լանջաց վրայ. իսկ վերոսեան Հայք հանգուցած են աջ ուսին քով։ Սոյն կրկին ոճը նըշմարեցի նաև ի Հռովմ՝ Սեպտ. Սևերոսի կամարին Պարթևաց վրայ։*

6. *Վարտիքը նոյն է ձևով իշխանականին կամ պարթևականին հետ։*

## Է. ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆՔ

*Ղուկ. Ակ. Փլորոս և Աւգ. Հոկտաւիոս* 20 *տարւոյն (Ն. Ք.) զՀայաստան կը ներկայացնեն նաև հայ զինուորի պատկերով՝ իրենց դըրամոց վրայ, որ կը պահուին ի Լոնդրա*[2]*, և որոյ նմանութիւնը, փլորոսեան օրինակէն՝ որ հաւասար է երեքին վրայ, կու տամ հոս,* Ձև 40, *շնորհիւ Հիլլի։ Երկու նշաններ կը զատեն զայս քաղաքական տարազէն. զէնքերը, և մեկնոցին պակասը՝ դիւրաշարժութեան համար. վասն զի յատուկ զինազգեստի մը գաղափարը տակաւին գոյութիւն չունի հոս, բաց ի սպառազէններէն՝ որոնք հաւանօրէն կային և այս շրջանիս։*




Ձև 40. հայ զինուոր (19 Ն.Ք.)

1. *Հերք և մօրուք, պարեգօտը, գօտին ու վարտիքը հաւասար են քաղաքացւոյն հետ։ Խոյրը նոյնպէս մի է քաղաքականին հետ՝ փլորոսեանին վրայ. մինչդեռ վերոսեան* 39 *Ձևի պատերազմական աւարին մէջ կայ քաղաքացւոց երկրորդ կամ նոր ձևի նմանը՝ զգեստին վերև զետեղուած։*

1. Grueb. էջ 69։ — 2. Նոյն՝ տխ. 66, թ. 20. տխ. 119, թ. 7, 8։

*2. Նիզակ մ'է բռնած փլորոսեանն աջովը, որոյ երկայնութիւնը հասակին չափ է, կամ աւելի ճիշդ՝ դրամին բարձրութեան չափով, որ կրնայ իրականէն պակաս լինել։*

*3. Աղեղն ալ կը գտնուի ձախին մէջ. օձագալար գործի մը, տեսանելի նաև մեր 23 Զևին վրայ, որ բնականապէս հայկականն է՝ յարակից Թագին պէս։*

*4. Կապարճը կամ նետերու ամանը, որ աղեղան մասն էր, կ'երևի նոյնպէս մեր 24 և 36 Զևերու մէջ. և կը նմանի յունականաց ու հռովմէականաց։ Երկրորդին վերէն ի վայր ձգուած փոկը կը վկայէ՝ թէ զայն ուսէն կը կախէին։*

*5. Նետն ալ զգալի է նոյն նէապոլսեան քանդակին վրայ. ծայրը սուր և ականջաւոր, և բնին սկիզբը ստուար։*

*6. Վահաններ ևս կը տեսնենք, բոլորշի և կեդրոնը խաչանման զարդով մը, Ղուկ. Վերոսի շքադրամին վրայ՝ պատերազմական հայ աւարին մէջ. և անոնց հետ աղեղ, նետեր և այլն (Զև 39)։*



## ԳԼՈՒԽ Զ

## ՍԱՍԱՆԵԱՆ ՇՐՋԱՆ (Ե)



### Ա. ՆԿԱՐԱԳԻՐԸ

ՊԱՐՍԻԿ *Սասանեան տոհմի Գ. դարու առաջին քառորդին կը տապալէր Պարթևաց գահը, և ձեռք կ'առնուր Պարսկաստանի թագաւորութիւնը։ Տրդատայ հայրը Խոսրով վրէժխնդիր կանգնեցաւ իւր տոհմակցաց*[1]*. սակայն Անակայ դաւն իւր դէմ՝ զՀայաստան ևս են-թարկեց այդ նոր տէրոց՝ տասներկու տարի, մինչև որ մեծն Տրդատ թափեց զայն Հռովմայեցւոց օգնութեամբ։ Բայց յետոյ Հայք վերըս-տին մտեցան Պարսից. Տիրանայ որդին Արշակ՝ թագաւոր կարգուե-ցաւ Սասանեան Ներսեհէ*[2]*։ Անոր ժամանուն Թոռան օրով Հայոց թա-գաւորութիւնը բաժնուեցաւ. արևմտեանը Յունաց հովանւոյն ներքև մտնելով, և արևելեանը Պարսից, յորում յաջորդաբար իշխեցին Խոսրով*[3]*, Վռամշապուհ և Արտաշէս*[4]*, կարգուելով միշտ Սասանեանց հրամանաւ, և ապրելով անոնց ազդեցութեան ներքև։ Անոնք գահըն-կէց ըրին զԱրտաշէս, և մեր աշխարհն այնուհետև ուղղակի հպատակ եղաւ Պարսից*[5]*, հազիւ մէկ տարւոյ ընդհատմամբ՝ Վարդանանց ապըս-տամբութեան առթիւ։*

1. *Այս սերտ կապն այնպէս ըրաւ՝ որ այդ նոր իշխեցողաց լուծը յեղաշրջէր հայ բարքերը, և մանաւանդ զգեստը. վասն զի Սասանեանց տարազը զգալի կերպով հեռի էր պարթևականէն։ Շատ յաճախ յիշատակուած է երկու ազգերուս համազգեցութիւնն այս շրջանիս։ Դ. դարուն Պարսից արքայն՝ ժամանակի սովորութեամբ զգեստեղէն նուէր կը յղէ հայ արքունեաց ու սպարապետին, որոնք կը գործածեն զանոնք իբրև իրենցը. և Վասակ Սիւնի նոյն ոճով կը*

1. Աստ՛ 63։ — 2. Փաւս. 57։ — 3. Նոյն՛ 261։ — 4. Փրպ. 35, 52։ — 5. Եղիշ. 7։

*մեծարուի Յազկերտէ իբր մարզպան[1]։ Այդ հանդերձք պարսկական ու միանգամայն հայկական էին, որով կը յղուին ու կ՚ընդունուին։*

*Եղիշէ կը պատմէ՝ թէ Արշակունեաց անկմանէն վերջ Հայոց այրուձին նախարարաց առաջնորդութեամբ կը կռուէր Պարսից բանակին մէջ, անոր մասն էր[2]. և նոյն տարազն ալ ունէր անոնց հետ։ Եւ արդարև յետ Աւարայրի ճակատամարտին՝ Հայոց ու Պարսից դիակներն այնպէս խառնուած էին իրարու, որ մերոնք, կ՚ըսէ պատմիչը, չէին կարող իրենց նահատակներն որոշել թշնամիներէն. «Ոչ կարէին կալ ճշմարտիւ ի վերայ սուրբ մարմնոց երանելեացն»[3]։ Չէին կարող, որովհետև երկու կողմանց մարտիկները մի և նոյն տարազը կը կրէին, զատուելով իրարմէ իրենց զօրագլխաց դրօշներով միայն[4]։ Այս է Եղիշէի բացատրութեանդ միակ իմաստը։*

*Նոյնպէս է տակաւին երկու դար յետոյ, ուր անգամ մը Սմբատայ ու Պարսից բանակներն իրարու կը հանդիպին, «և խմբեցաւ պատերազմն ընդ իրարս, կը գրէ Յոհան Մամիկոնեան, մինչ զի ոչ գոյր ճանաչել զմիմեանս, բայց միայն ի ձայն փողոցն և ի տեսս դրօշացն»։ Զիրար չէին ճանաչեր, որովհետև մի և նոյն հագուստը կը կրէին։ Այս պատճառաւ յետ մարտին Հայք կը կողոպտէին անկեալ թշնամեաց զգեստները, և կը գործածէին իբրև իրենցը. «Զքո զօրացն զգիշահոտ հալաւն և զարիւնաթաթախ հանդերձսն լուանալ տուաք և ագաք», կը գրէր Սմբատ առ Խոսրով արքայ[5]։*

*Պատերազմի հանդերձին այս դարաւոր նմանակցութիւնը կը յորդորէ զմեզ նոյնպէս երևակայել քաղաքականն ալ փոքր ի շատէ. որովհետև նաև հոս՝ ինչպէս նախորդ շրջաններուն՝ պատերազմական յատուկ ձև մը չկայ տակաւին, բաց ի զրահէն ու զէնքերէն, և մեր համեմատութեանց մէջ հետ զհետէ պիտի տեսնենք քաղաքական հանդերձից նմանութիւնն ալ երկու ժողովրդոց միջև։*

2. *Եթէ պարթևական շրջանը հարուստ էր քանդակաւոր յիշատակարանօք, ներկայս ընդ հակառակն բոլորովին աղքատ է այս մասամբ, զրկուած լինելով ներքին և արտաքին օժանդակութենէն։ Ոչ մէկ դրամ, և հազիւ յետամնաց քանդակ մը լոկ։ Բայց մատենագրօրէն ամենէն ճոխն է այս. և մեք հոս չենք կարօտիր արտաքին պատմութեան կցկտուր ծանօթութեանց։ Հայ տառից գիւտը մեզ կը շնորհէ ազգային հարազատ մատենագրութիւն մը, որ պերճաբար ցոյց կու տայ մեզ ժամանակիս տարազի մանրամասն նկարագիրը, միշտ ցրուած ու վերակազմութեան կարօտ վիճակի մէջ, տոհ-*

1. Աստ՝ 14։ — 2. Եղիշ. 7։ — 3. Նոյն՝ 92։ — 4. Նոյն՝ 74։ — 5. Մամ. 35-7։

մային անուանակոչութեամբք հանդերձ, ուսկից զուրկ էին նախկին շրջանները։ Որով և ուսումնասիրելի ընդարձակ նիւթ ունինք հոս։

Իսկ մեր քանդակաց թերին չափով մը կը դարմանուի սասանեան քանդակներէ, զորս հրատարակեցին Փլանդէն[1] ու Դիոլափուա[2], և ինչ ինչ ձևեր նաև Րօլինսոն[3], որոցմէ յառաջ պիտի բերեմ։ Նոյնպէս և սասանեան շրջանի կնքաքարերէն՝ զոր կը պահէ Լոնդրայի թանգարանը, հրատարակուած Հոռնէ[4]. և որոցմէ զոմանս, որոց պահլաւագիր անուանք հայերէն ալ կը հնչեն, քննութեան նիւթ ըրաւ Հ. Տաշեան[5]։ Այդ ձևերու և հայ մատենագրաց նկարագրութեանց մէջ այնպիսի ներդաշնակութիւն մը կայ, որ մեզ համար աղոնք հայկական յիշատակարանաց ոյժ ունին, բնականապէս ոչ առանց բացառութեանց ու տարբերութեանց։ Անցնինք տեսնել աղոնց բաղդատութեան մէջ ժամանակիս տարազը։

## Բ. ԹԱԳԱՒՈՐԸ

Գրաւոր յիշատակներէ զատ թագաւորական զգեստը պիտի որոնենք սասանեան քանդակաց մէջ. ինչպէս Բ և Գ Շապհոյ դէմքերը[6], Ձև 41, և արքայական ընտանեաց պատկեր մը զոր յառաջ կը բերեմ Փլանդենէ[7], Ձև 42. նմանապէս և այլոց՝ զորս հետ զհետէ պիտի կոչեմ ըստ տեղւոյն ու պիտոյից։ Այդ ձեւերը պիտի ծառայեն մեզ իբր համեմատութեան եզր, ոչ թէ որպէս կատարեալ օրինակ հայ արքայից տարազին։ Վասն զի Փաւստոս կը ժխտէ անոնց բացարձակ հաւասարութիւնը, գրելով՝ թէ երբ Հայոց թագաւորն Արշակ Բ հիւր կ'երթար ի Տիզբոն, Շապուհ Բ կը պատուէր զայն, զգեցնելով անոր իրեն պէս «զմիագոյն զմիանշան զհամահանդերձ զարդու»[8]. ուրեմն բոլորովին նոյն չէին երկու արքայից զգեստները։

1. Հերք և Մօրուք յատկապէս յիշուած չեն շրջանիս հայ թագաւորաց վրայ։ Բայց մեք տեսանք արդէն՝ թէ ի՛նչպէս յետ Տիգրանեանց վերստին կը հաստատուի մեր արքայից գիսաւորութիւնն ու մօրուանութիւնը[9], զոր կը հարկադրինք պահուած համարիլ նաև յետոյ սոյն շրջանիս, ուր մանաւանդ Սասանեանք ալ կը կրեն վարսից գանգուրներ, և կարճ կամ երկար մօրուս, և ուր նոյնպէս երկարամազ պիտի տեսնենք մեր իշխաններն ու ժողովուրդը։ Մեր թա-

1. Fland. — 2. Dieul. — 3. Raw. — 4. Horn. — 5. Հանդ. Ամս. 1905, 165-8։ — 6. Raw. 261։ — 7. Fland. տր. 186։ — 8. Փաւս. 124։ — 9. Աստ՝ 58, 64։

զաւորք չէին կարող զարտուղել իրենց իշխեցողաց ու հպատակաց ընդհանուր սովորութենէն։ Բայց ապահով չենք՝ թէ իրենք ալ նըմանեցան Պարսից արքային, որոյ համար կը պատմուի՝ թէ «ոսկի պերեկիշտա (յն. կզակս) եա գործել... և ընդ նոցա մազ մօրուացն ընդելուզանեն զոսկին»[1]. Թէև յետոյ Ը դարուն մեր քով ալ կը պատահինք այսպիսի մօրուայարդարութեան։

2. Պատիւ վարսին, ինչպէս կը կոչուի հիմայ վարսակալն ազնուականաց գլխին, թէպէտ անյիշատակ արքային վրայ, բայց ունէր և նա՝ իր երկար վարսից պահանջմամբ իսկ, ինչպէս ունէին և իշխանք։ Թէև այս ընդհանրացմամբ կորուսած էր իր նախկին նշանակութիւնն արքային վրայ[2], և այս պատճառաւ ալ լռութեան քողով ծածկուած ժամանակակից պատմութենէն։

3. Թագը, (որ կը ծագի պրս. թաճ հոմանիշէն[3]), զուրկ է հոս իր ճշգրիտ նկարագրէն, ինչ որ ցաւալի է անշուշտ։ Միւս կողմանէ որ և է ապացոյց չունինք, ոչ ալ հաւանականութիւն՝ թէ հայ արշակունի պսակն իր նախկին ձևը փոխած լինի հիմայ։ Եթէ յետ Տիգրանեանց եկող Պարթևք յարգեցին ու պահեցին անոնց գործածած աւանդական ու նուիրական ձևը, պատճառ մը չունինք խորհելու՝ թէ սասանեան շրջանին մեր թագաւորք հեռացան անկից, նմանելու համար Սասանեանց յոյժ անմիաբան ու խառնակ թագերուն[4], որոց նմանելն իսկ կարելի չէր։ Մանաւանդ թէ ասոր հակառակը կը հաստատէ Փաւստոս, ըսելով թէ Շապհոյ վերոյիշեալ առ Արշակ հիւրամեծարութեան առթիւ «զմիօրինակ թագն որ ըստ օրէ ինքեան և նմա թագաւորն Պարսից զարդ պատրաստէր»[5]։ Եթէ Պարսից արքայն իրեն հաւասարեցնող թագ մ'ալ կը դնէ անոր գլխին, ուրեմն Հայոց թագին ձևը զատ էր պարսկականէն։

Եւ ի՞նչ կրնար լինել։ Ոչ անշուշտ հռոմբիզանդեանը, զոր կը տեսնենք անոնց ազդեցութեան ենթարկուած հայ արքայից ոմանց գլխին[6], և որուն չպիտի հանդուրժէին Սասանեանք։ Ժամանակիս թագին կ'ակնարկէ Ագաթանգեղոս, խօսելով պատուական քարանց մասին՝ որոնք «զթագաւորս շքեղացուցանեն ի նմանութիւն արտախոյրն պսակի ի վերջաւորն փողփողելոյ[7]»։ Թէ ի՞նչ կը նշանակէ «վերջաւորդ», կը մեկնէ նոյն պատմիչն իսկ, ըսելով Խոսրովու համար՝ թէ Հայաստանի մեծեանները կը պատուէ «ոսկեղէն և արծաթեղէն զարդուք ի վերջաւորս փողփողեալս»[8], որ է՝ շողշողուն ստո-

1. Ոսկ. Թղթ. Ա, 605։ — 2. Աստ՝ 64։ — 3. Hüb. 153։ — 4. Տես և Fland. տխ. 9, 13, 14, 33, 49 են։ — 5. Փաւս. 124։ — 6. Աստ՝ գլ. Է։ — 7. Ագթ. 14։ — 8. Նոյն՝ 34։

րոտով կերպասներ. ինչպէս Ահարոնի լանջաց հիւսկէն տախտակին ներքև ալ կը շինեն «վերջս փողփողեալս[1]»։ Կը հետևի՝ որ արքունի թագին վերջաւորն ալ պարթևահայ գեղեցկահիւս վիժակն էր, որ տակաւին կը մնար հայ Արշակունեաց գլխին. և որ կը համոզէ ըզմեզ՝ թէ նոյն նախանձայուզութեամբ պահուած լինելու է նաև թագին նախկին ձևը։ Զի արդարև վիժակին — ուստի և թագին — վրայ յայտնի է հայ արքունեաց պահպանողութիւնը և անկախութիւնը Սասանեանց ոճէն, որոց առաջինը՝ Արտաշէս Ա՝ կ'ընդունի պարթեւական խոյրն ու վիժակը[2]. երկրորդը՝ Շապուհ Ա ու Վռամ Ա փոխած են խոյրը, պահելով վիժակը[3]. մինչ բոլոր յաջորդները, սկսեալ 276 թուականէն, ջնջած են վիժակը[4]. իսկ Հայք կը պահեն միշտ։

Մեր թագին հարստութիւնը կը գովէ Ագաթանգեղոս, առաքինութիւնը նմանեցնելով զայն պճնող մարգարտաց. «իբրև զմարգարիտս պատուականս զբոլորասերն[5], զլուսաւորն, զչքնաղագիւտն՝ որ ոչ ունի զեզութիւն[6] բաժանման իւրոյ ճաճանչաւոր լուսոյն. այլ լրութեամբ զարդ զանձին վայելուչ զթագ թագաւորացն զարդարեսցէ[7]»։ Ակներև է՝ թէ կ'ակնարկէ անսովոր կերպով գեղեցիկ մարգարտաց՝ որ կը շողային ժամանակիս արշակունի թագին վրայ։ Մեր թարգմանիչք ալ իրենց հայացուցած գործերու մէջ երբեմն կը խառնեն ակնարկներ հայ թագին։ Այսպէս Ոսկեբերանի քով կայ բացատրութիւնս, «խոյր ականակապ և թագն ոսկւով և մարգարտով[8]» արքայի գլխին, որոյ վրայ նոյն Հօր ուրիշ մէկ հոմանիշ բառը նոյնպէս կը փոխուի պարբերութեանս. «թագն յոսկւոյ և մարգարտոյ և յականց պատուականաց»[9]։ Եփրեմի թարգմանութեան մէջ ևս կը գտնենք հետևեալը. «Թագաւորն (Նինուէի) մատոյց զթագն և զխոյրն վերջիւքն» կամ «վերջաւորօքն»[10], ուսկից կը հեռանայ միակ ծանօթ լատիներէնը[11]։ Բոլոր այս զարտուղութեանց մէջ հայ թարգմանիչք ի նկատի ունին իրենց արքայական թագն ու խոյրը, և զանոնք իսկ կը նկարագրեն իրենց հայ ընթերցողաց։ Կը լրացնէ այդ տեղեկութիւնքը Փարպեցին, որ խօսելով վերջին Արշակայ շրջանին վրայ, կը յիշեցնէ Այրարատի բովերէն ելած «զպատուականն քարինս», զոր արուեստագէտ ձեռքեր «ի խոյրսն և ի թագսն... ընդելուզանէին»[12]։

1. Ելք, ԼԹ, 15, 17. յն. վերջս հիւսեալս, — 2. Morg. 98, — 3. Նոյն՝ 109, — 4. Dorn, — 5. Սերով կամ տեսակով բոլորակ, և ոչ բոլորասեր կամ «սիրելի վասն կատարեալ բոլորակութեանն» ըստ Հյկզ, — 6. Պրս. զեզ՝ է ճեղք. Թիր. 116, — 7. Ագթ. 13, — 8. Ոսկ. Թղթ. Ա, 747. յն. «երիզ (տենիա) ականակապ շուրջ ածեալ», — 9. Ոսկ. Մտթ. Գ, 63. յն. լոկ դիադեմա = վարսակալ, — 10. Եփր. Դ, 121, — 11. «Իւրաց թագաւորն զգանձս՝ որ էին առ նմա». Assem. III, 568, — 12. Փրպ. 25,

4. **Խոյրը**, (պրս. *խոյ* կամ *խող*=սաղաւարտ [1]), զոր տեսանք երեք վկայութեանցդ մէջ՝ յիշուած թագին հետ միասին, որով և զատ անորմէ, իսկապէս ձևով ալ կը տարբերէր։ Եւ ընդունելի չէ Հ. Ալիշանի կարծիքը՝ որ կը նոյնացնէ երկուքը [2]։ Խոյրը գմբեթարդ էր ձևով, և թագին հետ յատուկ այս շրջանի հայ թագաւորաց, կը յիշեցնէր Սասանեանց դրամն իբր թագ, որ նուազ ճոխ՝ կ'երևի նաև Պարսից աւագ իշխանաց վրայ (Զև 43)։ Հանդիսական առիթներէ դուրս՝ Հայոց արքային թագը կը պահուէր «ի տան թագաց» [3], և



Զև 41. Շապուհ Բ և Շապուհ Գ

զայն կը փոխանակէր խոյրը, որ աւելի փոքր ու թեթև էր, լինելով սովորաբար «բեհեզեայ [4]», և նոյնպէս շատ հարուստ, Ոսկեբերանի թարգմանչէն սահմանուած՝ «խոյր ականակապ». և Ագաթանգեղոսէ՝ թէ «ականք պատուականք հնդկային յաշխարհէն, որ ի վայելչութիւն զարդու զխոյր պսակին զարդարիցեն թագաւորաց [5]»։ Հնդկաստան ալ ուրեմն կ'օժանդակէր հայ խուրին փառաւորութեան։

**Խուրին** հոմանիշ մ'է *արտախուրակն* [6] ալ, զոր կը կրեն Երեք մանկունքը. և զոր Ագաթանգեղոս կը գործածէ նաև Ահարոնի վրայ [7],

1. Hüb. 160. — 2. Բզմ. 1848, 278. — 3. Աստ՚ 12. — 4. Խոր. Բ, լգ. Եղբ, ԼԹ, 27. — 5. Ագթ. 13. — 6. Դան. Գ, 21. յն. տիարա=խոյր. — 7. Ագթ. 319.

*ուր ս. Գիրքը «խոյր» կը գրէ[1]։ Տեսանք վերև նոյն պատմչի միւս մէկ ձևն ալ, արտախոյր պսակ, արդիւնք հոմանշեր կերտելու իւր տապին։*

5. *Հանգոյցք թագին, որ հիմայ կը կոչուի նաև աշխարաւանդ հանգոյց[2], (թերևս պրս. խշատրա=աշխարհ կամ իշխանութիւն, և ւանդ (բանդ)=կապ արմատներէն[3], իբր իշխանութիւնը կապող ար-քային գլխին), դեռ կը մնայ միշտ, անտարակոյս իւր հին ձևով ու պաշտօնով, ուսկից յառաջ կու գայ բազ կապել[4] բացատրութիւնը, որ է թագով պսակուիլ։ Մեծ էր իւր կարևորութիւնը, որով Պարսից արքայն նուէր կը յղէ զայն առանձինն՝ հայ գահուն խնամակալ Մանուէլի[5]։ Հայկականին նմանութենէն հեռի լինելու է Սասանեանցը, որ երկար՝ լայն ու ծփուն զոյգ ժապաւէն մ՚է միշտ, հաստատուած ոչ թագին շուրջ, ուր չի տեսնուիր[6], այլ «ի թիկանց[7]», ինչպէս մեր 41 և ուրիշ ձևերու վրայ[8]։*

6. *Գինդք, ինչպէս կը կոչուին այժմ գնդաձև օղերը, գրուած նաև գինտ[9], կը յաջորդեն արքայից վրայ նախկին գորշապահանգաց։ Սասանեան քանդակաց ու դրամոց վրայ զատոնք միայն կը տեսնենք, և լոկ արքայից ականջին[10], ինչպէս և մեր 42 Ձևին մէջ, ուր այլք բացառաբար կը կրէին. ինչպէս պիտի տեսնենք։ Ագաթանգեղոս կը նկարագրէ ատոնց նիւթն ու ձևը, համեմատելով բարեգործութեան յօժարութեան հետ. «գեղեցկագոյն և պատուական մարգարիտն և ծանրագինն՝ ընդ յօժարութեանն զարդ ականջաց գինդ եղեալ կա-խեսցի»։ Մեծ ու գեղեցիկ մարգարիտ մ՚է միայն զայն կազմողը։ Եւ ո՞ւր կարելի է փնտռել այդպիսի մեծագին զարդ մը, բայց եթէ Հայոց թագաւորի ականջին, որուն կ՚ակնարկէ պատմիչը՝ յարելով. «միայն զգլուխդ խոնարհեցո, և անդէն հոգևորական պսակն (արքա-յական) ի վերայ գլխոյդ... միայն յօժարեաց ի կոչումս արքայականս» և այլն[11]։ Անտարակոյս սասանեան ազդեցութեան արդիւնքն էր այս նոր օղը մեր թագաւորաց վրայ։*

7. *Գումարտակը դարուս սեպհական անունն է արանց մարգար-տաշար վզանոցին[12], պահլաւերէն գումարտակ=զօրախումբը[13] տը-րուած մարգարտախմբին, զոր Պարթևաց պէս կը պահեն Սասանեանք ալ, վերածելով մէկ կարգի[14], ինչպէս և մեր Ձևերու մէջ։ Մեր Ար-*

1. Եւս. ԻԸ, 40։ — 2. Փաւս. 245-6։ — 3. Հմմտ. Hüb. 101. Թիր. 42։ Աշխար-հաւանդ՝ կը թարգմանէ գյն. կապկայ=պանդոկ. Ոսկ. Թղթ. Ա, 176. Բ, 553։ — 4. Ագթ. 48. Փաւս. 261. Խոր. Բ, ձգ։ — 5. Փաւս. 245։ — 6. Fland. տխ. 49, 51, 52, 192, 205. Արրտ. 431։ — 7. Փաւս. 245։ — 8. Fland. տխ. 13, 14, 33, 43, 52 են։ — 9. Եփր. Բ, 313։ — 10. Raw. 100, 262, 266 են։ — 11. Ագթ. 18։ — 12. Եղիշ. 106։ — 13. Թիր. 123։ — 14. Fland. տխ. 13, 14, 49-52 են. Արրտ. 431։

չակունիք պատճառ չունէին չպահելու նոյնը, զոր իրենց նախնիք ալ կը կրէին։ Եւ Դաշանց Թղթոյն խմբագրողը չէր սխալեր՝ երբ զՏրդատ կ'երեւակայէր զարդարուած «զումարտակօք անգին գո-հարօք[1]»։

8. Պատմուճանը (պհլ. պատմոճան=զգեստ[2]) կը տարբերի ար-քային վրայ ձեւով ու նիւթով։ Աւելի մեծ ու լայն է Սասանեանց քով, հասնելով մերթ ծնգներուն[3], և մերթ սրունից կէսը[4], ինչպէս կ'երեւի և մեր զոյգ Ջեբրու Թագաւորաց վրայ։ Նոյն մեծութիւնը յայտնի է և հայ արքայից հագածին վրայ։ Պապ իւր մէկ ընթրեաց պահուն երբ թէ պատուել ուզելով զԴրդակ մարդպետ, զոր սպաննել պիտի տար, իւր պատմուճակաց տունը տանել կու տայ զայն, և՛ անոր կը զգեցնէ «պատմուճան» մը, որ բնականապէս թագաւորականներէն էր, թէև ոչ անշուշտ արքայի հագածին չափ հարուստ. ինչպէս Պար-սից Արտաշէսն ալ հագցուց Մուշեղի «զպատմուճանն արքունի[5]», և Յազկերտ մեր նախարարները կը զարդարէ «ի հանդերձս թագաւո-րականս[6]»։ Արդ՝ Դրդակի կը զգեցնեն «զպատմուճանն մեծ», — ըստ որում փոքրն ալ կար՝ ինչպէս Սասանեանց վրայ, մին առօ-րական և միւսը հանդիսական. — «և էր հանդերձն անհեթեթ մե-ծութեամբ, զի խորշ զխորշիւ իջանէր». և կը պատէ զայն հանդերձին մեծութիւնը, թէպէտ ինք՝ մարդպետն ալ էր «այր մեծ և անձնեայ, քաջ հարուստ ոսկերօք». և մարմնոյն հետ թուրն ու սուսերն ալ կը ծածկէ[7]։ Այս հանդերձը պճղնաւոր չէր, այլ երկար, հասնելով նոյնպէս մինչև սրունից կէսը։ Իւր «անհեթեթ» լայնութիւնն այս շրջանիս յատկանիշն է, և նշանակ արքայական ճոխութեան։

Մեր պատմիչը զայս փոխ առ փոխ կը կոչէ ու կը հոլովէ նաև դրաստս և դրատիցն, որ կը պահանջէ դրաստք ուղղական մը. իսկ Կաղանկայտուացին դրաստս կ'ըսէ[8]։ Անհմուտ գրչագրողաց առեղ-ծած ձևեր են ադոնք, որոց մէջ ճշդագոյն կը կարծեմ դրաստք, և զոր կը համարիմ ծագած պրս. դիրիւսք (ըստ Նոր հնչ.) բառէն, որ կը նշանակէ ուղիղ. և հայերենի մէջ՝ երբ ուղիղ առորոտով պատմուճանը կամ պարեգօտը, հակառակ խուտորկաուրին՝ զոր նոյն Փաւստոս կը վերագրէ զինուորաց, և զոր պիտի տեսնենք իւր կար-գին. և կամ տարբերութեամբ արքունի զամբիւղաձևին՝ որ կ'երեւի մեր 41 Ջևին մէջ, զոր անշուշտ մեր թագաւորք ալ ունէին։

Արքունի պատմուճանին գոյնն ու նիւթը կ'որոշուէին միւսներէն։

1. Արր. 387. — 2. Hüb. 224. — 3. Fland. տխ. 14, 56, 188. — 4. Անդ՝ Fland. տխ. 9. — 5. Եղիշէր, Չ, 7, 11. — 6. Աստ՝ 14. — 7. Փաւս. 204. — 8. Կաղ. 138.

Հին ծիրանին կը շարունակէ մնալ անոր վրայ, յիշատակուած մեծն Տրդատայ օրերէն սկսեալ, ինչպէս ցոյց պիտի տամ Ի գլխոյն մէջ։ Ոսկեբերանի Թարգմանիչն երկու տեղ բնագրին ընդհանուր «ծիրանի» բացատրութիւնը Թագաւորաց մասին՝ կը մասնաւորէ «պատմուճան ի ծիրանեաց» և կամ «զծիրանի պատմուճանն[1]», իւր աչքին առջև ունենալով Հայոց արքունական հանդերձը։ Փիւնիկեցիք, Յոյնք և Հռովմայեցիք այս գոյնը կը հանէին ծովային յատուկ խղունջներէ, որոց տուածը լուսոյ ազդեցութենէն անայլայլ կը մնար[2]։ Զանազան էին ծիրանւոյն աստիճանները, որոց հիմն էր մանիշակագոյնը[3], և որ յաճախ աղօտ կարմրին կը մօտենար[4]։ Բիւզանդացի կայսերք նոյն ծովածինը ստացան ու պահեցին միշտ[5], յիշատակուած անոնց վրայ նոյն իսկ մեր Յոհան Եզնկացիէն[6]։ Եւ նկատելով՝ որ ծիրանին նոյն կայսրերէն կ'ընդունէին երբեմն մեր Թագաւորք[7], մերոց գոյնն ու աղբիւրն ալ նոյն լինելու է բիւզանդականին հետ։ Հայ արքունիքը լաւ պիտի ճանաչէր ինչ որ կը կարդար ս. Բարսղի հայ Թարգմանութեան մէջ. «Ուստի՞ իցէ խղունջնաց տալ զծիրանիս Թագաւորութեան, որ առաւել անցանեն պայծառութեամբ քան զամենայն ծաղիկս[8]». և դժուարութիւն չպիտի կրէր՝ զայն բերել տալ միշտ Յոյներէն։ Այս գոյնը շփոթելու չենք որդան կարմրին հետ, որոյ մասին յետոյ։

Անյուշ բերդին մէջ Դրաստամատ կը զգեցնէ Արշակայ «պատմուճան ազնիւ[9]»։ Այդ ազնուութիւնը կը կայանար՝ գունէն զատ՝ նաև նիւթին ու հարստութեան մէջ։ Փարպեցին կը յիշէ Արարատի ծոցէն հանուած «զպատուական քարինս», զորս կ'ընդելուզանէին նաև «ի հանդերձս ոսկեհուռս պաճուճեալս» Հայոց Թագաւորին[10]։ Նոյնը կը հաստատէ Եսթերի Թարգմանիչն ալ, յաւելուածով մը լրացնելով Պարսից Արտաշեսի պատմուճանին նկարագիրը, և Հայոց արքային մօտեցնելով. «զպատմուճան փառացն իւրոց, որ էր ընդելուզեալ ոսկւով և մարգարտով (չկայ ի յն.) և ակամբք պատուականօք[11]»։ Այդ հայ մարգարիտները կը յիշեցնեն մեր տեսածը նախորդ շրջանի Արշակունեաց վրայ, և որոնք դեռ կը մնան հիմայ, եւ կը ծածկեն ամբողջովին ու ստորոտը կ'եզերեն երկու խիտ կարգերով՝ Սասանեան Բ Խոսրովու հագածին ալ[12]։

9. Վարտիքը, (պրս. պարտակ=վարտիք, և վարտաք=հանդերձեղէն օժիտ հարսին[13]), նոյնպէս ծիրանի էր արքային վրայ։

1. Ոսկ. Մտթ. Գ, 63։ — 2. Dar. IV, 770–71։ — 3. Անդ։ — 4. Նոյն՝ 773։ — 5. Նոյն՝ 772։ — 6. Սոփ. Ե, 108։ — 7. Աստ՛ գլ. Է։ — 8. Վեցօր. 152։ — 9. Փաւս. 207։ — 10. Փրպ. 25։ — 11. Եսթ. ԺԵ, 9։ — 12. Fland. տխ. 9։ — 13. Թիր. 349։

*Սասանեանց հագածը քանդակաց մէջ կ'որոշուի անոնց միւս պաշտօնէից կրածներէն՝ իւր նշանաւոր լայնութեամբ ու ծփուն խորշերով, ինչպէս կ'երևի մեր Զևոց և այլոց վրայ*[1]*։ Նոյնպէս էր և հայ արքայինը, զոր ագուցին Դղակի, և որ իւր մէկ խորշով կը ծածկէր անոր նրանը*[2]*։*



Զև 42. Սասանեան ընտանիք մը

10. *Ապիզակ կոչուած զարդ մը կը յիշատակէ Փաւստոս, զոր Շապուհ կը նուիրէ Մանուէլ սպարապետին. «լանջաց պատիւ ապիզակ, որպէս օրէնք են ունել թագաւորաց*[3]*»։ Զորոշելով թագաւորացդ ազգը, կ'իմանայ Պարսից ու Հայոց միանգամայն։ Եւ Շապուհ*

1. Fland. տխ. 13, 14, 52 են։ — 2. Փաւս. 204։ — 3. Նոյն՝ 246։

*զայն կու տայ Մ'փնուելի՝ իբրև նշան հայ արքայական իշխանութեան ներկայացուցչի, որով հայկական ալ էր։ Հայկազեան բառագիրքը զայս կը մեկնէ պատմչին բառերովն իսկ՝ «զարդ լանջաց»։ Պարսկական բառ է այս, աւիզէ (կախեալ), որ ըստ Թիրեաքեանի կը նշանակէ ականջի օղ կամ զարդ, և առկախ ջահ[1]։ Իսկ մեր առթին մէջ, որովհետև զայն որոնելու ենք Սասանեանց լանջաց վրայ, կը համարիմ գտած լինել ապիզակին բուն նշանակութիւնը մեր 41 Ջևին մէջ։ Հոս ականազարդ լայն ժապաւէն մը կը գօտևորէ արքայից լանջքը, և կ'անցնի անթոց ետև. ուրիշ երկու գոհարազարդ ժապաւէնք ալ ուսերէն կ'իջնեն առ ի շեղ, և կու գան կրծոց կեդրոնը կը միանան միւսին՝ ականակուռ մեծ շիգզի մը ներքև։ Ահաւասիկ ինձ համար՝ արքայական «լանջաց պատիւը», որ ուրիշ պարսիկ պաշտօնէից վրայ չի տեսնուիր. և զոր Սասանեանց ազդեցութեամբ ստացեր են և մեր Թագաւորք։*

11. *Կամարը (պհլ. ու պրս. բառ՝ գօտւոյ նշանակութեամբ[2]), կը զատէ ազնուականացը ժողովրդականնէն՝ իւր լայնութեամբ ու ճոխութեամբ։ Բ Արշակայ կրածը կը սահմանէ Փաւստոս «արքունական կամար», որ էր քան զիշխանականը ճոխ՝ «ականակապ մարգարտազարդ[3]». և որոյ մէկ մասը միայն կը յիշէ Մեսրոպ, «մարգարտակապ կամար[4]»։ Ասոր նմանը կ'երևի և Սասանեանց մէջքին, չորս կարգ մարգարտով. և ուրիշ մը՝ մարգարտի և ականց զարդերով[5]։ Հայոց արքայն սովորաբար իւր վրայ չէր պահեր զայն, այլ գօտելոյծ կ'անցնէր, նման ժամանակի անտիոքացւոց ոճին, զոր Ոսկեբերան կը կոչէր «լոյծ և մեղկ կերպարանք[6]», մինչ Յոյներն ու Հռովմայեցիք կը շարունակէին իրենց նախկին գօտևորութիւնը[7]։*

12. *Սուրը, կամ «զարքունական սուսերն զպողովատիկն զոսկեպատեանն», կամարին հետ արքային քով կը բռնէր անոր սեննեկապետը, ինչպէս էր երբեմն մեծն Ներսէս՝ դեռ զինուորական. և զանոնք կը կրէր «մօտ ի սնարս արքային» Արշակայ՝ նոյն իսկ այն ժողովին մէջ, ուր զինքն հայրապետ ընտրեցին. ուսկից երբ կը փորձէր հրաժարիլ, Արշակ խլեց անոր ձեռքէն սուսերն ու կամարը, և բռնադատեց հաւանիլ ժողովին[8]։ Սասանեանք ընդ հակառակն սուրը մէջքին կ'երևին սովորաբար[9], ինչպէս և մեր Ջևերու մէջ։ Եւ որովհետև Հայոց արքային սուսերն այդ ոճով աւելի զարդ էր քան զէնք,*

13. *Նրան կամ դաշոյն մ'ալ անպակաս էր իւր վրայ՝ անձին*

1. Թիր. 58. — 2. Hüb. 164. — 3. Փաւս. 70, 69. — 4. Մեսր. 23. — 5. Fland. տխ. 9, 11. — 6. Ոսկ. Մտթ. Ա, 147. — 7. Dar. I, 1180-82. — 8. Փաւս. 69. — 9. Fland. տխ. 9, 13.

պաշտպանութեան համար, «կապեալ յաջու ազդերն իւրում», որոյ դաստապանին վրայ կը պահէ Պապ իւր աջը՝ Տերենտի ընթրեաց պահուն անգամ, պատրաստ քաշելու զայն՝ երբ պէտք լինէր. այս պատճառաւ իւր դաւադրաց հարուածը նախ աջին հասաւ, որպէս զի չկարենար գործածել զայն[1]։

14. Սամոյր մը (պհլ. և պրս. սամուր[2]) կը կազմէր արքային արտաքին հանդերձը։ Արքունեաց մէջ նա պատմուճանով կ'անցնէ, ինչպէս Ագաթանգեղոս կը նկարագրէ զՏրդատ սենեկին մէջ[3]. և Դրաստամատ զայն միայն կը զգեցնէ Արշակայ, ինչպէս տեսանք վերև։ Հին արքունի մեկնոցին յիշատակութեան չենք հանդիպիր այս շրջանիս. և համոզուած եմ թէ չկար, ոչ իրը և ոչ անունը։ Այս պատճառաւ Աւետարանի թարգմանիչն անփոփոխ կը պահէ յունարէն քղամիդը, զոր ձգեցին Յիսուսի վրայ՝ թագաւոր ձևացնելու համար[4], և որ անծանօթ է ոսկեդարեան լեզուին։ Ուրեմն մեր Արշակունիք այս շրջանիս՝ փոխան քղամիդին կը կրէին սամուրենի մուշտակ մը, երբ պէտք լինէր. այսինքն արքունիքէն դուրս և կամ հանդիսական առթից մէջ։ Արշակ Բ նաւասարդի մեծ տօնին ի Բագուան կը գըտնուէր. և երբ ս. Ներսէս աղաչաւոր եկաւ իրեն խորանը՝ խնայելու անմեղ Գնելայ զոր ի մահ դատապարտած էր, նա չլսելու համար՝ «զիւր սամոյրն զգլխովն ածեալ» կը խորդար[5]։ Հոս գոյութենէն զատ՝ յայտնի է ձևն ալ. արքայն զայն գլխին կը քաշէ, ուրեմն թեզանաւոր վերարկու մը չէր, այլ արձակ թիկնոց մը, ինչպէս էր և Պարսից վրայ՝ զոր պիտի տեսնենք. հաւանօրէն հաստատուած ուսին՝ շիզդ[6] կոչուած ճոխ ճարմանդով։ Եղանակն ամառ էր. այնպէս որ Արշակ հանդիսական պարագային պահանջմամբ միայն կը կրէ զայն հող։ Քիչ յետոյ պատմիչը կը յայտէ բացատրութիւնս ալ՝ թէ պառկած էր, և «զերեսսն վտաւատօքն ծածկեալ՝ ոչ բանայր»։ Կ'ախորժիմ այս վտաւատքը մեկնել իբր ծածկոյթ անկողնոյ, քան հոմանիշ մը թիկնոցին։ Դիտելի է՝ որ Սասանեանք փոխանակ սամուրի՝ թիկանց ետև ամփոփուած ծփուն մեկնոց մը կը կրեն իրենց քանդակաց մէջ[7], ինչպէս կ'երևի և մեր Ջևերու վրայ։

15. Կօշիկները, (որ է կաւշիկ, պրս. կաւշ=կաշի արմատէն[8], իբր կաշիէ շինուած), Սասանեանց վրայ կը ծածկեն ամբողջ թաթը։ Երիզաձև փոկ մը թաթին երկու կողմէն վեր կ'ելնէ ու կը միանայ կօշկին բերանը պրկող ուրիշ փոկի մը հետ[9]։ Յաճախ կ'երևի ժա-

1. Փաւս. 233։ — 2. Hüb. 236։ — 3. Ագթ. 150։ — 4. Մտթ. ԻԷ, 28, 31. Մրկ. ԺԵ, 17, 20։ — 5. Փաւս. 118։ — 6. Ա Մակ. Ժ, 89. ԺԱ, 58. ԺԴ, 44։ — 7. Fland. տխ. 49, 52 ևն։ — 8. Թիր. 112։ — 9. Fland. տխ. 14։

պաւինաձև ճոխ կապ կամ խոյր[1] մը, որ կը հանգուցուէր թաթին վրայ և կը կախէ երկար ծայրեր[2], ինչպէս և մեր Ջևերու մէջ։ Այսպէս էր անշուշտ և Հայոց արքայինը. և չեմ կասկածիր՝ թէ կը պահէր նախկին կարմիր գոյնը, որուն պիտի հանդիպինք նաև յետ այս շրջանիս։

16. Մատանին կը մնայ միշտ աւանդաբար, պաշտօն ունենալով կնքել արքունի հրովարտակները, ինչպէս կ՚երևի փարաւոնի[3], Հրէից թագաւորաց[4], Աքեմենեանց[5] ու Սելևկեանց[6] քով, և Սասանեանք ունէին «վարազ նկարագիր մատանի» մը[7]։ Մեր թագաւորն ալ ունէր իրենը, գուցէ արծիւ պատկերով[8]։ Մեսրոպ կ՚ըսէ՝ թէ ս. Ներսէս իւր սենեկապետութեան շրջանին «ի ձեռս թագաւորին զարքունական մատանին բարձեալ ունէր[9]»։ Արդարև Սասանեանց քանդակաց մէջ ալ բնաւ չի նշմարուիր մատանին ուղղակի անոնց մատներուն վրայ։

Հոս ևս չենք հանդիպիր արքունի գաւազանին յիշատակութեան. որովհետև մեր թագաւորք կը շարունակէին մնալ առանց անոր, ինչպէս էր և նախորդ շրջանին. և սասանեան բազմաթիւ քանդակաց մէջ ալ չկայ անոր նշմարանքը։

## Գ. ԹԱԳՈՒՀԻՆ

Զգեստի պատմութեան տեսակէտով՝ ժամանակիս ամենէն դըժբախտն է «Տիկինն[10]» կամ «Տիկինն Հայոց[11]», «Արշակունի Տիկինն[12]», «Բամբիշնն[13]», «Դշխոյն[14]» կամ «Թագուհին[15]», որոյ տարազի մասին շատ սակաւաթիւ և անորոշ ակնարկութիւններ միայն կան մեր մատենագրութեան մէջ։ Սակայն և այնպէս պիտի ջանամ կազմել նաև անոր նկարագիրը փոքր ի շատէ։

1. Թագը ծանօթ է հոս. Տրդատ իւր կնոջ Աշխենի «թագ կապել» կու տայ՝ որպէս զի թագուհի և Արշակունի դառնար[16]. և Շապուհ նուէր կը յղէ «թագ» մը՝ Պապայ այրւոյն Զարմանդխտոյ[17]։ Այս վկայութիւնք կը հաստատեն Հայոց բամբշին թագ կրելու սո-

1. Մննդ. ԺԳ, 23. Եփ. Ե, 27 ևն։ — 2. Fland. տխ. 33, 56, 186։ — 3. Մննդ. ԽԱ, 42։ — 4. Գ Թագ. ԻԱ, 8։ — 5. Եսթեր, Գ, 10։ — 6. Ա Մակ. Զ, 15։ — 7. Փաւս. 164։ — 8. Հմմտ. աստ՝ 67։ — 9. Սոփ. Զ, 19։ — 10. Փաւս. 244, 246, 253, 255։ — 11. Նոյն՝ 173։ — 12. Նոյն՝ 255։ — 13. Ուռհ. Մաթ. Գ, 58. Եփր. Ա, 420։ — 14. Մաթ. ԺԲ, 42. Ղկ. ԺԱ, 31։ — 15. Բ Մնց. Թ, 1. Խոր. Բ, ծ։ — 16. Խոր. Բ, ձգ։ — 17. Փաւս. 245։

*վորութիւնը։ Բայց ի՛նչ ձև կրնար ունենալ այդ գլխանոցը։ Ինչ որ ըսինք թագաւորին համար, հոս ալ կը զօրէ. այս ինքն՝ թէ նախկին շրջանի դշխոյից թագին ձևն աւանդաբար պահուած լինելու է նաև հիմայ, ինչպէս արքայիցը, քան զոր աւելի պատճառ մը չէր կրնար ունենալ փոխուելու։ Չենք կարող ստուգել՝ թէ Շապհոյ նուիրածը պարսկային նկարագիր մ'ունէր, ինչպէս է մեր 42 Չևի թագուհւոյ կրածը, և ոչ մանաւանդ ձևուած Հայոց Տիկնոջ ընտանի թագին վրայ։ Միանգամայն անծանօթ թագուհւոյ կենդանագիրը, զոր զետեղեցի պարթևական շրջանին մէջ (Չև 34), կրնայ և ներկայիս պատկանիլ, մանաւանդ իւր թագի հանգուցին կապուելու ոճով, որ կը հեռանայ հոն այլոց կերպէն (Չև 33, 35)։*

2. *Պսակակալ մը կը յիշուի ս. Գրոց մէջ՝ կանացի ճոխ զարդերու կարգին[1], որ բնագրին մէջ չունի իւր հոմանիշը։ Ինչ կրնայ լինել, եթէ ոչ հանգոյց թագին, զոնէ դատելով իւր բառական կազմութենէն։ Եւ որ յարակից զարդերու պէս հարուստ լինելու է՝ անոնց հետ յիշուելու համար թարգմանչէն։*

3. *Պատմուճանը գլխաւոր հանդերձն է թագուհւոյն, որոյ համար Շապուհ կը նուիրէ Զարմանդխտոյ նաև «պատմուճան» մը[2]. և այս է անոր պաշտօնական զգեստը թագին հետ։ Անոր ձևն որոշելի է թերևս մեր պատկերին Սասանեան դշխոյին վրայ (Չև 42), մանաւանդ քղանցին երկարութիւնը։ Անոր գոյնը զգալի է Խորենացիէն՝ թէ Տրդատ կը հրամայէ «զգեցուցանել ծիրանիս» Աշխենի[3]։ Եւթերի թարգմանիչը կը զգեցնէ անոր ևս՝ մեր տոհմային սովորութեամբ՝ «զծիրանիս իւր[4]»։ Եւ Արտաշեսեան տեսիլը Հայաստանի լերան մը վրայ կը նկատէ «կին ոմն ծիրանազգեստ[5]», որ յայտնի է՝ թէ հայ դշխոյի մը պատկերն է՝ իրականէն առնուած. զի այլոց ներելի չէր ծիրանին։*

4. *Տեռ մ'ալ հագած է Արտաշեսեան տեսլեան կինը, ծիրանի պատմուճանին վրայ «երկնագոյն ունելով զիւրեաւ տեռ[6]», զուցէ տնէն դուրս գտնուելուն պատճառաւ։ Այդ բառը, որոյ մեկնութիւնը յետոյ պիտի տամ, կը նշանակէ հոս նրբահիւս կերպասէ շինուած կրկնոց մը. վասն զի կը գտնուի «զիւրեաւ», ամբողջ անձին վրայ, որով չենք կարող գլխի քող կարծել զայն Հ. Ալիշանի հետ[7]։ Անոր երանգն է երկնագոյն, որ պարսիկ ու հայ արքունեաց ընտանի երկրորդ գոյնն էր. այս պատճառաւ Շապուհ ուրիշ արքայական զարդուց*

1. Ես. Գ, 20. Դատ. Ը, 26։ — 2. Փաւ. 245։ — 3. Խոր. Բ, ձզ։ — 4. Եսթ. ԺԵ, 4. յն. «զփառս իւր»։ — 5. Խոր. Ա, իզ։ — 6. Անդ։ — 7. Արր. 418։

*հետ նուիրեց Մանուելի նաև «կապուտակ երկնագոյն հովանոցս[1]»։ Այս կրկնոցիս համազօրն է մեր 42 Ձևի Սասանեան թագուհւոյն ծփուն թիկնոցը, ոչ լայն ու ձգուած «զիւրեաւ», այլ նեղ ու զթիկամբ։*

*Հայոց Տիկնոջ տարազին միւս մասունքը, որ անյիշատակ կը մնան, պէտք է որոնել իշխանուհեաց նկարագրին մէջ՝ զոր պիտի տեսնենք իւր կարգին։*

## Դ․ ԱՐՔԱՅՈՐԴԻՔ

*Կը զանազանէին միւս ազնուականութենէն՝ ինչպէս պատուով, նոյնպէս արտաքին ձևով ալ, որ աւելի ճոխ էր քան զանոնցը։ Արքայածին եղբարք ու քոյրերն ևս իրենց սեռին համեմատ կ'որոշուէին իրարմէ, որով և մեք առանձին պիտի նկատենք զանոնք։*

*Ա․ Արքայորդիք[2]։ — Մեր սասանեան 42 Ձևին վրայ կայ մանուկ մ'արքայական, կանգնած իւր ծնողաց միջև, և իւր հագուստը յար և նման է հայրենի տարազին, բաց ի փոքրկութենէն։ Նոյն թագը (մաշած), պատմուճանը, գօտին, լայն վարտիքը, խրացաւոր կօշիկներն ու սուրը։ Այս օրինակը կը ստիպէ զմեզ նոյն համեմատութիւնը տեսնելու նաև հայ արքայորդւոց վրայ։ Գիտենք՝ զոր օրինակ, որ Շապուհ նուէր կը յղէ «թագս՝» Պապայ երկու մանկանց՝ Արշակայ ու Վաղարշակայ[3], որոնք դեռ փոքր էին, և անոցմէ մին միայն ու տարիներ վերջ պիտի ելնէր հայրենի գահուն վրայ[4]։ Հետևաբար թագ կրելը նաև հայ արքայորդւոց յատուկ ու սովորական էր։ Այս բաւական է համոզելու զմեզ՝ թէ անոնց տարազին միւս մասունքն ու գոյնն ալ նոյնպէս թագաւորական էին, ինչպէս մեր պատկերին Սասանեան մանկան վրայ։*

*Բ․ Օրիորդք[5]։ — Ս․ Սանդխտոյ Նշխարաց գիւտին պատմութիւնը, որոյ լեզուէն, պատմական և աշխարհագրական անուններէն ու թուականաց բացակայութենէն դատելով՝ Ե դարու երկրորդ կիսուն գրուած լինելու է, կը ներկայացնէ զարքուհին՝ Կիրակոսի տեսլեան մէջ՝ իբրև «աղջիկ մի թագաւորազն», որ կը կրէ այս շրջանի արքունի օրիորդաց տարազը[6]։*

1․ փաւս․ 246։ — 2․ Դ թագ․ ԺԱ, 12․ խոր․ Բ, խը։ — 3․ փաւս․ 245։ — 4․ Նոյն՝ 256։ — 5․ Ագթ․ 600, 614, 620։ — 6․ Սոփ․ Ը, 88։

*Ունի գլխին «պսակ հրաշալի», փոխան արքայորդւոց թագին։ Այս զոյգ կոչումներն իրականին մէջ ալ տարբեր էին։ Վերջինը բարձր էր, և յատուկ արքունականին, ուսկից և թագաւոր ու թագուհի ածանցները. և կը թարգմանէ սառնց ընծայուած դիադեմա յունարէնը[1]։ Իսկ պսակը կը հայացնէ յն. ստեփանոսը[2], և կը ծագի պրս. պիսակ (ծաղկապսակ) բառէն[3], նշանակելով մեր լեզուի մէջ ալ թագին ցածը, շրջանակաձև կամ ճառագայթաւոր, մետաղեայ՝ ծաղկեայ և այլ նիւթերէ։ Հետևաբար Սանդխտոյ դրածն էր ցած շրջանակաձևը, որ կը յիշեցնէ բիւզանդականը. և էր «հրաշալի», այս ինքն հարուստ։*

*Սրբուհին հագած էր «հանդերձս ոսկեհուռս», որ է ճոխ պատմուճանը, ժամանակի սովորութեամբ յոգնակի գործածուած[4]։ Եւ անոր վրայ «արկեալ գիւրեաւ ծիրանիս», որ կը համապատասխանէ թագուհւոյ տեռին. այս զանազանութեամբ՝ որ մին ծիրանեգոյն է, և միւսն երկնագոյն, որ կ'երևի թէ օրիորդաց սովորական չէր։ Ոսկեբերանի թարգմանիչն այս մեկնոցը նափորտ կ'անուանէ բիւզանդացի տիկնանց վրայ. «նափորտուճքն արձակեալք, պարեգօտքն լայնեալք[5]», թէև այս կոչումն աւելի հաւատաւորաց կրածին կը յարմարի։ Օրիորդաց հանդերձիս միւս մասունքը նոյն էին տիկնանց տարազին հետ։*

## Ե. ԽՆԱՄԱԿԱԼ ԳԱՀՈՒՆ

*Բոլորովին պատահական պաշտօն մ'էր, և ըստ ինքեան չունէր յատուկ տարազ մը։ Մանուէլ Մամիկոնեան՝ յետ սպանման Պապայ՝ հայրենեաց սիրով վառուած, կու գայ կը վանէ անոր գահը յափշտակող Վարազդատը, և ինք իսկ կը կառավարէ Հայաստանը, մինչև որ մանուկ արքայորդիքն յարբունս հասնէին. և «տայր հրաման աշխարհի փոխանակ թագաւորի[6]»։ Խորշելով Յոյներէն՝ որ դաւեցին Պապայ, աւելի զօրաւոր լինելու համար՝ Պարսից հովանաւորութեան դիմեց։ Շապուհ հաճութեամբ ընդունեցաւ, և ի ցոյց իւր ուրախութեան՝ Հայոց սպարապետին նուէր ղրկեց արքունական զարդեր. ինչպէս «շիկակարմիր խորան» մը, և անոր վրայ «արծուենշան», սրահակներ, «կապուտակ երկնագոյն հովանոցս», և ոսկեղէն սպասներ իւր ընթրեաց տաճարին[7]։*

1. Բ Թագ. Ա, 10. Բ Մնց. ԻԳ, 11. Եսթ. Բ, 17 են։ — 2. Եսթ. Ը, 15. Ա Մակ. Ժ, 20. Ոսկ. Մատթ. Գ, 63 են։ — 3. Թիր. 323։ — 6. Աստ՝ 6։ — 5. Ոսկ. Թղթ. Ա, 67։ — 6. Փաւս. 244։ — 7. Նոյն՝ 246։

*Միանգամայն պատուեց զայն արքայական հանդերձին ինչ ինչ մասերով, որոնք անձնական էին Մանուէլի, և չէին կարող անոր պայազատից փոխանցուիլ, լինելով նշանակ պաշտաման մը՝ որ իւրմով պիտի վերջանար։ Բանաստեղծական յարմարութիւն մ'է լոկ, երբ Հ. Ալիշան նոյները կը զգեցնէ նաև մեծին Վարդանայ[1]. և այսպէս ալ կը նկարէ զայն Աւարայրի դիւցազանց խմբանկարին մէջ ի Մ. Ռ. վարժարանի, որ ունի նաև զանազան տպագրութիւններ վենետիկէն։ Աւարայրի նահատակը կրնար իւր հաւուն զարդերը պահուած տեսնել հայրենի ամրոցին գանձատան մէջ, բայց ոչ իւր վրայ առնուլ։ Իրաւ է՝ թէ ապստամբութեան շրջանին «առաջնորդ և զօրագլուխ» կարգուեցաւ նախարարներէն[2]. բայց թագաւորական նշաններն արքայից ձեռքէն միայն կրնային ընդունուիլ այդ դարերուն, ինչպէս կը վկայեն օրինակները՝ զոր տեսանք նախորդ գլխոյն մէջ և հոս։ Արդ՝ Մանուէլի ստացած զարդերն էին հետևեալք, իշխանականներէն զատ՝ զոր ունէր արդէն։*

1. *Գարգմանակ, այսպէս բացատրուած պատմչէն. «զգլխոյ պատիւ՝ գարգմանակ ոսկի արծաթ. ու ի պատիւ գլխոյ ի վերայ գագաթանն ի թիկանց արծուոյն՝ հանգոյցք թագի կապեալ, աշխարհաւանդ հանգոյց[3]»։ Հայկազեանն զգարգմանակը կը մեկնէ՝ «զարդ սաղաւարտի կամ խոյրի», և ուրիշներ կը հետևին իրեն։ Նոյնպէս կը հասկանայ և Հ. Ալիշան. «գլուխն արծաթախառն սաղաւարտ՝ ոսկէքանդակ գարգմանակաւ»։ Սակայն Փաւստոս աղոր մօտ սաղաւարտ և կամ խոյր չէ յիշած, որպէս զի այս անոր մասն համարուի. այլ գարգմանակն ինքնին առանձինն «գլխոյ պատիւ» կամ զարդ մ'է. ամբողջութիւն մ'ոսկեղէն և արծաթեղէն։ Ինքն իսկ գլխանոց մ'է, և ունի իւր մասունքը, որ են գագաթն և անոր վրայ արծիւ մը, որոնք դիմորոշ յօդուածն անոր կը պատկանին. գագաթանն և արծուոյն, այս ինքն գագաթան և արծուոյ նորին (գարգմանակի)։ Խուզարկելով սասանեան քանդակները, գտած կը կարծեմ աղոր նմանութիւնը։ Ա Շապհոյ գլխին կայ կոնաձև սաղաւարտ մը, վերջացած արծուի գլխով. իսկ Որմիզդ Ա ունի ամենացած պսակ մը, որոյ վրայ նստած է արծիւ մը, թևերը թեթևակի բացած, և գլուխը պսակի ճակատէն դուրս կարկառած[4]։ Այս վերջին արծուեկիր գլխանոցն է ուրեմն գարգմանակը, որոյ անուան պարսկային ծագում մ'անծանօթ է պարսկագիտաց։*

2. *Աշխարհաւանդ հանգոյցը, նուիրեալ աղոր հետ, աղոր մասն*

1. Յուշ. Ա, 257-8. — 2. Եղիշ. 78. — 3. Փաւս. 245. — 4. Raw. 94, 103.

ալ էր. ոչ թէ հին ոճով «անոր վրայ պլլուած,... որոյ ծայրերն ցցունազարդք՝ ուսոց վրայ կ'իջնէին», ինչպէս կը կարծէր Հ. Ալիշան. այլ «կապեալ ի թիկանց արծուոյն՝» ըստ Փաւստոսի, այս ինքն Սասանեանց պէս կապուած յետակողմէն ու ծփուն թողուած թիկանց վրայ, ինչպէս մեր 42 Ձևին մէջ։

3. Պատմուճան մ'ալ կ'ընդունի Մանուէլ, և նոյն ինքն «գրաստաւորական պատմուճանն», որոյ հանգամանքները տեսանք մեր արքայական տարազին մէջ՝ ճոխութեամբն ու լայնութեամբ[1]։

4. Ապիզակը, որ է թագաւորական ծանօթ լանջազարդը[2], կու գայ նոյնպէս փայլիլ Մամիկոնեանց նահապետին վրայ. «լանջաց պատիւ ապիզակ», որոյ բացատրութեան մէջ Հ. Ալիշան դարձեալ կը հեռանայ մեզմէ ու պատմչէն, գրելով. «զոր (սամոյրը) արևակերպ ականակուռ ապիզակ կամ ճարմանդ մը կուրծքէն վեր կու միացնէ, օղակներէն յակունթներ կախուած»։ Փաւստոս յիշատակութեան կարգով ալ սամուրէն շատ հեռի կը թողու ապիզակը։ Իսկ յակինթները փոխ առնուած են հայ սատրապաց նկարագրէն, զոր պիտի տեսնենք յաջորդ գլխոյն մէջ, և որոնք ծագմամբ և աշխարհով չեն կարող միաբանիլ Ուարայրի դիւցազին տարազին հետ։

5. Սամոյրը կը լրացնէր Մանուելի ստացած պարգևաց թիւը, Հ. Ալիշանէ երևակայուած «մեծ ծիրանի ու ոսկէթել սամոյրօձիք վերարկու՝» մինչև կօշիկները։ Նաև հոս անհամաձայն եմ մեր մեծ քերթողին հետ։ Այդ վերարկուն կամ մեկնոցն ամբողջովին սամուրենի էր, ոչ թէ օձիքը միայն և Թացորդը ծիրանի։ Իմ այս համոզումս կը հաստատուի սամոյր բացարձակ կոչմամբ Փաւստոսի, որ կ'իմանայ ամբողջութիւնը, և արքային[3] ու մարզպանաց[4] օրինակով և մեր 47 Ձևով։ Այսպէս քիչերը կարողութիւն ունէին կրելու այս մուշտակը. թագաւորք կամ անոնց փոխանորդք և այլն։

Հ. Ալիշան «նռնագոյն կօշիկներ» ալ կու տայ Վարդանայ, դարձեալ թելադրութեամբ նախայիշեալ սատրապաց նկարագրին, որ անընդունելի է մեր քաջին վրայ, ինչպէս և ոչ իւր հաւունն։

## Զ. ՄԱՐԶՊԱՆՔ

Արշակունեաց հարստութեան բարձմամբ (429ին՝) Հայաստան ընկաւ ուղղակի Պարսից լծին ներքև, և անոնց յղած պարսիկ կամ

1. Աստ՝ 97։ — 2. Աստ՝ 99։ — 3. Աստ՝ 101։ — 4. Աստ՝ 111։

նշանակած հայ մարզպանով մը կը կառավարուէր մինչև արաբական տիրապետութիւնը։ «Իշխան և գլուխ աշխարհին հայոց» էր նա[1], իբրև փոքրիկ թագաւոր մը։ Հայազգի մարզպաններէն ծանօթ են Վասակ Սիւնի, Վահան Մամիկոնեան, Մժէժ Գնունի, Վարազտիրոց Բագրատունի և այլք։ Հայ մարզպանք կարգուած են երբեմն նաև օտար աշխարհաց մէջ, ինչպէս Սմբատ Բագրատունի Է դարուն, որ նոյն պաշտօնով ի Վրկան գնաց, բարձր քան իւր բոլոր միւս պաշտօնակիցները. և յետոյ ընդունեցաւ «զտանուտէրութիւն՝ որ անուանեալ կոչէր Խոսրով Շում[2]». իւր պատուոյ անունն էր։

Յատուկ ձևով համազգեստ մ'ունեցած չեն մարզպանք։ Սովորութեամբ պիտի տարբերէր միւս իշխանաց հագածէն անոնց «օրէնք պատուոյն[3]» կամ աստիճանին հանդերձը, զոր կ'ընդունէին Պարսից արքայէն, և որ իրենց արդեանց կամ շահած վստահութեան համեմատ՝ աւելի կամ նուազ փառաւոր կը լինէր։ Այս կամայականութիւնը կը զգացնէ մեզ Փարպեցին հետագայ տողերով՝ Սիւնեցւոյ մասին. «Արկեալ զիւրեաւ զամենայն պատիւս՝ զոր ունէր ի Թագաւորէն (Յազկերտէ), գայր մտանէր ի խորանսն արքունի մեծաւ շքեղութեամբ», մասնակցելու թագաւորական ընթրեաց. «քանզի բաց ի պատուոյ Թագաւորացն՝ որ նուազէր նմա, այլ ոչ ինչ ի պատուոյ արքունի պիտոյ էր՝ զոր ոչ ունէր[4]»։ Եթէ սա ընդհանուր մարզպանական տարազ մը լինէր, այս բացատրութեանց տեղի չպիտի տար։ Սոյնպէս և Սմբատ երեք անգամով կ'ընդունի արքայէն իւր այլ և այլ զգեստեղէն զարդերը[5]։ Եղիշէ կը համեմատէ ու կը հաւասարեցնէ Վասակինը Պարսից մեծամեծ իշխանաց զգեստին, ըսելով՝ թէ «նա ըստ առաջին կարգի օրինացն արքունի՝ արկանէր զպատուական հանդերձն՝ զոր ունէր ի թագաւորէն[6]»։ Նաև Խոսրով արքայ զՍմբատ «զարդարէ ի հանդերձս պատուականս և յերևելիս[7]»։ Եղիշէի բացատրութիւնը, ինչպէս նաև երկու մարզպանացդ տարազին մանր նկարագիրը՝ զոր կու տան նոյն պատմիչք, յորդորեցին զիս անոր ձևն որոնելու սասանեան քանդակաց մէջ իսկ. և պատկերէ մը, ուր Շապուհ Ա շրջապատուած իւր աւագանիէն՝ կ'ընդունի Հռովմայեցիներ[8], յառաջ կը բերեմ «առաջին կարգի» իշխանաց խմբակ մը, Ջև 43։ Հաստատուած այս երրեակ աղբերաց վրայ, տեսնենք մարզպանական զգեստը։

1. Վարսերը գանգրաւոր կը ծփան մեր Ջևին մէջ, յիշեցնելով

1. Փրպ. 251։ — 2. Սեբ. 96, 102. պրս. շում=ձախող։ — 3. Եղիշ. 106։ — 4. Փրպ. 243։ — 5. Սեբ. 96, 102, 104։ — 6. Եղիշ. 106։ — 7. Սեբ. 96։ — 8. Fland. տխ. 33

արքայականը, բայց քան զայն նուազ ճոխ։ Եւ Մօրուքը խնամուած բոլոր մեծամեծաց վրայ, միօրինակ ոճով երկար և ամփոփ բռնուած է։ Աղոնցմէ զանազանելու չեն պարզպանք ևս։

2. Պատիւ վարսին կը յիշուի Եղիշէէ Վասակայ գլխին. «կապէր և զպատիւ վարսին[1]», որ էր վարսակալը. ասոր համար «կապէր», ոչ թէ դնէր։ Սեբէոս Սմբատայ ստացածը կը կոչէ «ձամբար ականակապ[2]», որ միւսին պարսկերէն հոմանիշն է[3]։ Եւ որ Սիւնեցւոյն վրայ ևս բաւական հարուստ և գէթ մարգարտազարդ լինելու է, արժանի նուիրողին։


Ձև 43. Պարսիկ իշխանք

3. Խոյր մ'ունի Վասակ գըլխին. «զխոյրն ոսկեղէն դնէր ի վերայ» վարսակալին, որ Սմբատայ վրայ կը կոչուի «արտախուրակս ոսկեզօծս» կամ «գդակ... յոսկւոյ օծեալ[4]»։ Նոյն Է դարուն՝ Պարսից Տիգրան զօրավարը կը հրաւիրէր զՍմբատ Մամիկոնեան ի հաշտութիւն, խոստանալով անոր Հայոց մարզպանութիւնը, և թէ՝ «եդից պսակ ի գլուխ քո[5]», զոր պատմիչը Միհրան մարզպանի վրայ կ'անուանէ «մարգարտապսակ[6]»։ Աղուանից պատմիչն ալ նոյն դարուն՝ Վրաց Ջուանշիր իշխանին ի Պարսից ստացածը կը կոչէ «պսակ ցանկալի[7]»։ Բառերու փոփոխութեամբ բոլորն ալ մի և նոյն ձևը կը հասկնան, որ սասանեան քանդակաց մէջ երկու տեսակ է. մին բարձր ու գմբեթարդ, որ յատուկ է արքայից և աւագագոյն իշխանաց, ինչպէս է մեր Ձևին մէջ, և միւսը նոյնպէս բարձր, և ծայրը թեթևակի սրացած ու յառաջ դարձած

1. Ըստ Անձևացեաց օրին. ուր վեննետկեանը կ'ըսէ վրիպակաւ «զպատուավուրսն»։ — 2. Սեբ. 104։ — 3. Hüb. 187։ — 4. Սեբ. 102, 104։ — 5. Մամ. 44։ — 6. Նոյն՝ 26։ — 7. Կաղ. 138։

*պարթեւական ոճով։ Առաջինն էր անտարակոյս Վասակայ ստացածը՝ իբրեւ ղասակից աւագագունից՝ նաեւ ուրիշ զարդերով։*

4. *Գինդք կամ գնդաձեւ օղերը կը պճնեն նաեւ Վասակի ըլթակները. «զգինդսն յականջսն»։ Վերոյիշեալ Ա Շապհոյ պատկերին մէջ, ուսկից մեր Զեն է, Թագաւորն եւ այս հինգ աւագագոյն նախարարք միայն ունին գնդեր. ապացոյց՝ թէ միւս իշխանք որ ներկայ են, իրաւունք չունէին կրելու զանոնք։*

5. *Գումարտակը կը շրջապատէ Վասակայ ու Սմբատայ վիզը, եւ Ջուանշիրի վրայ կը բացատրուի՝ «գումարտակ նոյնգունակ (մարգարտով) շուրջ զպարանոցաւն[1]»։ Օրինակներէս յայտնի է՝ որ արքայից արքային եւ անորմէ պատուեալ իշխանաց վերապահեալ էր այս զարդն ալ։*

6. *Պատմուճանը կ'իմանայ Եղիշէ՝ յիշելով Վասակայ «զպատուական հանդերձն զոր ունէր ի Թագաւորէն»։ Այդ պատուականութեան աստիճանն աւելի որոշ է Սմբատայ ստացածին վրայ, որ կը կոչուի «հանդերձս թագաւորականս» կամ «պատմուճանս բեհեզեայս յոսկւոյ օծեալ[2]»։ Իսկ Ջուանշիր ընդունած էր՝ «դրաւտս մնդուսս մետաքսառէշս՝ ոսկէթեզան փարուազով[3]» կամ ստորոտով։ Պճղնաւոր չէր բնաւ. Պարսից աւագանւոյն վրայ մերթ կը ծածկէ ծնկները[4], եւ մերթ արքունականին ոճով կ'իջնէ սրունից կէսը՝ բարձր իշխանաց վրայ, ինչպէս մեր Զեին մէջ։ Այսպէս էր եւ հայ մարզպանացը։*

7. *Կամարը, զոր կ'ընդունի Սիւնին, պատմիչը կը նկարագրէ շատ ճոխ. «զկռանակուռ ձոյլ ոսկի կամարն, ընդելուզեալ մարգարտով եւ ականք պատուականօք»։ Նման էր՝ բայց ոչ հաւասար՝ եւ Ջուանշիրին. «զօտի ոսկի ընդելուզեալ մարգարտով»։ Իսկ Խոսրով կ'ընծայէ Սմբատայ ուղղակի «զկամարն եւ զսուսերն՝ լեալ հօր իւրոյ Որմզդի[5]». շատ մեծ պատիւ։ Սուրն անպակաս էր եւ այլոց վրայ։*

8. *Վարտիքը պատմչաց ուշադրութիւնը չէ գրաւած, բայց կը գրաւէ մերը՝ իւր անսովոր եւ արքայականին մօտեցող լայնութեամբ՝ որ կ'երեւի մեր Զեի բարձր իշխանաց վրայ, եւ որուն կը հաւասարէր անտարակոյս մարզպանացն ալ։*

9. *Զանկապանք (պհլ. զանգա=սրունք եւ պանա=պահել բառերէն[6]) նոյնպէս կարեւորութիւն մ'ունին, Սիւնեցւոյն վրայ անյիշատակ մնացած, — որով յայտնի է թէ ստացած ալ չէր, եւ գուցէ իւր ղարուն սովորութիւն չկար նուիրելու, — եւ Սմբատայ վրայ նկարա-*

1. Կաղ. 138։ — 2. Սեբ. 102, 104։ — 3. Կաղ. 138. պրս. փարուազ=վերջաւորք. Hüb. 255։ — 4. Fland. տխ. 191։ — 5. Սեբ. 97։ — 6. Hüb. 149։

գրուած՝ «զանկապանակ ակամբք և մարգարտով կարգեալ[1]»։ Ջուանշիրի ընդունածն ալ էր՝ «զանկապանս մարգարտով»։ Բնական է՝ որ այս սռնապանք ծածկէին վարտեաց ստորոտը։

10. Սամոյր մը վերջին և արքայակերպ զարդը կը կազմէ Սիւնեցւոյն. «զսամոյրն գթիկամբքն», որ կրկնոցի ոճով ձգուած և անոր պաշտօնը կը վարէ, ծածկելով ամբողջ թիկունքը՝ նման թագաւորականին։ Այս թիկնոցն աւելի հայ արքայականին նմանութեամբ և գաղափարով շնորհուած կ'երևի Վասակայ։ Անոր համար պարսիկ բարձր իշխանք փոխանակ սամոյրին՝ ունին թեզանաւոր վերնազգեստ մը, որ կը հասնի ծնգներուն և կը ճարմանդուի կրծոց վրայ, ինչպէս մեր Ջևի մէջ, ուր ստորոտը փոքր ինչ անորոշ ծածկուած, այլուր աւելի յստակ կ'երևի[2]։

## Է. ԻՇԽԱՆՔ

Շատ կարևոր կէտ մ'է մեզ համար, գիտնալ թէ ինչ ձևով կը զգենուին մեր ազնուազգի տոհմերու Տեարք կամ Իշխանք, Նախարարք, Նահապետք կամ Տանուտեարք, – ինչպէս կը կոչուէին Դ–Ե դարուց մէջ, – որոց թիւն ինն հարիւրի կը հանէ Փաւստոս արքունի սեղանի շուրջ[3], և Մեսրոբ երէց՝ չորս հարիւրի[4], և որ մեծագոյն առիթն էր անոնց համար՝ իրենց զգեստուց պերճանքը ցոյց տալու, ինչպէս յայտնի է Վասակայ վերոյիշեալ օրինակէն։ Անոնք համազգեստ մ'ունէին իրենց, զոր կը զգացնէ Եղիշէ, ըսելով՝ թէ Յազկերտ կ'արձակէ մեր կալեալ ազատանին, և կը հրամայէ «ագանել նոցա հանդերձ զօրէն նախարարութեանն[5]»։ Անոնց այդ տարազն աւելի ազնիւ ու ճոխ էր քան զռամկին. բայց անհաւասար արքայականին։ Եւ ինչ որ Թ դարուն կ'ըսէր Զաքարիա կաթողիկոս, հոս ալ կարելի է կրկնել. «Թէ նշան ինչ թագաւորի գտանիցի առ նա (ոք), այսինքն թագ կամ ծիրանիս կամ կարմիր կօշիկս,... մահու մատնի[6]»։ Թագաւորը միայն կարող էր իւր նշաններէն մին շնորհել արժանաւոր անձին։ Առանց ասոր իսկ արդէն գեղեցիկ էր իշխական տարազը, զոր Խորենացին կը կոչէ՝ «պատուականքն առ մեզ զգեստուց և սակաւուց ագանելիք[7]»։

Նախնեաց ցիրուցան ակնարկութեանց հետ ասոր աղբիւր ունինք

1. Սեբ. 102։ — 2. Տես և Fland. տխ. 191։ — 3. Փաւս. 67։ — 4. Մեսր. 38-9։ — 5. Եղիշ. 152։ — 6. Զքր. կԹղ։ — 7 Խոր. Բ, ժա։

*Նաև քանի մը քանդակներ։ Ինչպէս Բրիտանական Թանգարանի սասանեան կնքաքարանց հաւաքածոյէն, որուն ակնարկեցի վերև[1], Վարդանակի կենդանագիրը[2], Ձև 44, և Միհրշահակին՝ Զարդխտի հետ միասին[3], Ձև 45, զորս ստացայ նոյն Թանգարանէն։ Կար և ուրիշ մը, անուամբս՝ «Պերոժ խաղունի որդի Ներսեհի», երբեմն սեպհական պոլսեցի յոյն Ֆեննեռլի բժշկին, զոր կը յիշեն Մորդտման, Յուստի և Հ. Տաշեան[4]. բայց վաճառուեր է Եւրոպայի մէջ, և հետքը չյաջողեցայ գտնել։ Ունինք Վրաց Աշուշայ բդեշխին դէմքն*



Ձև 44. Վարդանակ (16 մմ.)     Ձև 45. Զարդուխտ և Միհրշահակ (14 մմ.)

*ալ, պարսեան եղեգնաքարէ մը[5], զոր բնագրէն իսկ յառաջ կը բերեմ, Ձև 46։*

*Սակայն մեր մեծագոյն ուշադրութեան արժանի են երկու ամուսնաց աղօթական կենդանագրերը, կանգնած չորս սրբոց երկու կողմը, Մրենոյ եկեղեցւոյն արեւմտեան ճակատին՝ զոր կառոյց Դաւիթ Սահառունի. և իրաւամբ կը համարուի նոյն կենդանագրին տէրը՝ կնոջը հետ[6], երկուքն ալ իշխանական տարազով։ Ըստ Սեբէոսի՝ Սահառունիդ Հերակղ կայսերէն կուրապաղատ կը կարգուի և կ'անուանուի «իշխան ամենայն աշխարհացն», և կ'իշխէ երեք տարի. այս կը պատահի կայսեր դէմ պատրաստուած դաւէ մը վերջ[7], որ կատա-*

1. Աստ՝ 92։ — 2. Horn. թ. 379։ — 3. Նոյն՝ թ. 484։ — 4. Հանդ. Ամս. 1905, 198-9։ — 5. Հրա. ի Հյպա. 184. Vis. Icon. II, տխ. 45, թ. 10։ — 6. Strz. I, 429-30 . Շիր. 138։ — 7. Սեբ. 161-2։

րուեցաւ 635ին. որով իւր իշխանութիւնը կը հանդիպի իբր 635–638 տարիներուն։ Այս է ստոյգ տեղեկութիւնը, որոյ մէջ միաբան են ժամանակակից պատմչիս հետ և Յհ. կաթողիկոս ու Վարդան, և այդ շրջանին ալ կը դնեն եկեղեցւոյն շինութիւնը[1]։ Կը հեռանայ աստցմէ և կը վրիպի Ասողիկ, զայն Պարսից կողմանէ 30 տարի հազարապետ նշանակուած կարծելով[2]. որուն կը հետևի և Կիրակոս, նոյն իսկ «մարզպան» կոչելով զայն, և եկեղեցին շինուած ըսելով 613ին[3]։ Յիշուած չէ՝ թէ որ և է հանդերձ կամ զարդ ընդունեցաւ Դաւիթ կայսերէն, որ արդէն ակամայ տուած էր իրեն յիշեալ պատիւը, իբրև երկիւղալի դաւակցի մը իւր դէմ։ Որով կը հետևցնենք, և ձևէն ալ յայտնի է՝ թէ իւր տարազը ժամանակակից հայ իշխանականն է, զոր կու տամ հոս, Զև 47։

Վերև դիտեցինք՝ որ հայ իշխանք համազգեստ մ'ունէին։ Սիւնեաց պատմիչը, որ կ'ուզէ «թողուլ զամենայն սնոտիապատում վէպս հնոցն[4]», ինքն իսկ կը հնարէ զայն իսկոյն, նկարագրելով իւր տոհմի իշխանը հին ժամանակ թագաւորաց հրամանաւ «վարսակալ ածել մարգարտեայ, և մատանի ունել վարազագիր, նաև կօշիկ կարմիր, և մական ոսկի՝ ունելով ի վերայ գրեալ զանուն և զպատիւ ցեղին». և թէ այս իրաւունքը կը վերջանայ Վաղարշակայ նոր կարգաւորութեամբ[5]։ Տեղեկութիւնս՝ մեզ ծանօթ տարրերէն կարկատանք մ'է լոկ, ոչ պատմութիւն։ Թողունք և անցնինք տեսնել իշխանական բուն զգեստը։

1. Հերք անպակաս են բոլոր ազատաց վրայ՝ նման Պարսից, առատ ու երկար վիժակով։ Ժամանակիս հայ վիպասանք իրենց կարծեցեալ նախահայրը Հայկ՝ կ'երևակայէին «քաջագանգուր[7]», այս ինքն ոլորուն վարսերով, ինչպէս շրջանիս սովորութիւնն էր։ Եւ զոր կը հաստատէ ս. Ներսեսի օրինակն ալ, որ մինչդեռ աշխարհական և արքունի սենեկապետ էր, գլխին կը կրէր «զհերսն գանգրագեղս զվայելուչ թագագանգուր վարսիցն». և զորս երբ ձեռնադրութեան պահուն կը վիրային, ներկայից շատերը կու լային անոր գեղեցկութեան խանգարման վրայ[8]։

Վարսերն երեք վիճակ ունէին հոս։ Մին արձակ էր, և ի բնէ կամ արուեստով գանգրացած. զայս կը ցուցնէ Հայկի քաջագանգուրը։ Պատերազմի մէջ նոյնպէս կախ, և հաւանօրէն հաղկ իսկ էին, ուր պչրանք չէր մտներ. այսպէս բռնած էին Սահակ ասպետ և

1. Յհ. կթ. 103-4. Վրդ. 62։ — 2. Ասող. 87։ — 3. Կիր. 30։ — 4. Օրբ. 8։ — 5. Նոյն՝ 9։ — 6. Աստ՝ 83, 84, 102։ — 7. Խոր. Ա, ժ։ — 8. Փաւս. 70։

*իւր պարսիկ ախոյեանն իրենց վարսերը․ որոց ձիերն երբ իրարու մօտեցան, ձեռք ձգեցին իրենց երկար մազերը․ «բուռն հարեալ զմիմեանց հերաց»՝ այնպէս կ'ոգորէին, կ'ըսէ Փարպեցին*[1]*։ Այդ չպիտի պատահէր, եթէ թողած չլինէին երկար վարսեր։ Գիտենք՝ որ նաև Պարսից իշխանացը գանգրաւոր էին, ինչպէս մեր* 43 *Ձևին մէջ․ նոյնպէս կը տեսնենք նաև Աշուշայի վրայ* (*Ձև* 46), *որպէս զի համոզուինք՝ թէ ընդհանրացած էր այդ ոճը։*

*Երկրորդ վիճակն էր հիւսուածը, որ յատուկ էր հանդիսական առթից, և պերճութեան ցոյց մը, յիշուած Մանդակունիէն․ «Զեն ինչ պէտք զհերսն հիւսելոյ ի ժամ աղօթիցն*[2]*»․ և կը խօսի արանց ոչ թէ կանանց՝ որոնք տնէն դուրս հերասքող էին, և որոց հերարձակութիւնը սգոյ առթիւ՝ կը պարսաւէր նոյն բեմբասացէն*[3]*, ոչ եթէ հիւսելը։ Այդ հիւսումը կը կայանար՝ գանգրագեղ մազերը գլխին շուրջ կանացի կերպով ուռուցիկ պսակաձև հաւաքելուն մէջ։ Այս պարագայն զգալի է Ներսեսի «Թագագանգուր» վարսից վրայ, որ է թագի պէս ամփոփուած ու գանգուր։ Նոյն ոճով քանդակուած են Վարդանակ (քանդակին անկատարութենէն գանգուրները գնդացած, և զորս զատելու է յարակից գրէն,) ու Միհրշահակ ևս՝ մեր* 44 *և* 45 *Ձևերու մէջ, և ուրիշ Պարսիկներ սասանեան կնքոց վրայ*[4]*․ նոյնպէս և Սահառունին մեր* 47 *Ձևին մէջ։*

*Երրորդ վիճակն էր մազերը ցից կազմել, որ կը նշանակէր երկար խուրձ հերաց՝ հիւսուած ի մի, և գլխէն ցցի նման կախուած*[5]*։ Սովորական չէր այս, այլ ըստ քիմս գործածուած անհատներէ, ինչպէս Մերուժան, որ «զցիցն երկայն կախեալ էր»․ և անով Մամիկոնեան կանայք կարողացան որոշել անոր կտրուած գլուխը՝ թէ իրենց Սամուէլին չէր (որուն շատ կը նմանէր դէմքով), ինչպէս կարծած էին ու ճիչ բարձած*[6]*։*

2․ *Մօրուքն ածելի չէր տեսներ բնաւ․ այլ բուսած օրէն կը սկսէր կազմել այտերուն շատ հաճելի զարդը։ «Այն ինչ դեռ տեգ մօրուացն (առաջին ցանցառ մազերն) ի վերայ գեղեցկատեսիլ վարդափթիթ ծնօտիցն բուսանէր», կը գրէ Ղազար՝ Աղան Արծրունւոյ մասին, կը հեռանայ աշխարհէ*[7]*։ Յայտնի է բացատրութենէս՝ մօրուաց վայելած խնամքը, ինչպէս Ամմ․ Մարկեղինոս Պարսից համար ալ կը վկայէ Դ դարուն՝ թէ «իրենց մօրուքները գեղեցիկ են*[8]*», և կ'երևին նաև անոնց քանդակաց ու մեր* 43 *Ձևին վրայ։ Աւելի*

1․ Փրպ․ 395։ — 2․ Մանդ․ 43։ — 3․ Նոյն՝ 176 են։ — 4․ Horn․ Թ․ 498, 500, 604 են։ — 5․ Ղ․ եռ․ ԺԹ, 27․ յն․ սիսոյկ=ցցունք, հերաց հիւսակներ։ — 6․ Փաւս․ 255․ — 7․ Փրպ․ 15։ — 8․ Ամմ․ ԻԳ, 6։

*բնական՝ քան շեղում մը կը թուի Սահառունւոյն կայծ և անշուք մօրուքը մեր 47 Ձևին մէջ, հակառակ տոհմային սովորութեան՝ զոր Ոսկեբերանի Թարգմանիչն իմաստասիրաց պարսաւին մէջ կը դնէ մեր առջև, ըսելով. «զմօրուսն երկայնս հանդերձ մանեկաւ (ոլորած) պերեճշտիւք մարձէին[1]»: Պերեճշտեկից[2] յարդարումը կ'ըսուէր՝ «առնել զընչօք[3]»:*

3. *Պատիւ գլխոյ կամ վարսակալը սեպհական է հիմայ ամբողջ ազնուականութեան: Փաւստոս կը պատմէ՝ թէ բոլոր նախարարութիւնը կը բազմէր արքունական սեղանին շուրջ՝ «պատիւ ի գլուխ[4]», որ կը նշանակէ՝ թէ միակ զարդն էր գլխին՝ որ անծածկոյթ կը թողուէր: Ասոր ոսկեդարեան ընտրելագոյն կոչումն էր ապարօշը (պրս. ապա՝ ժխտական, և բաշ=լոյս արմատներէն, իբր լուսարգել, ծածկոյթ[5]), գործածուած ս. Գրոց մէջ. ինչպէս Ղևտացւոց համար՝ «ածցես նոցա ապարօշս[6]», յն.* κίδαρις, *որոյ նշանակութիւնը տեսանք այլուր[7], և հոս իսկ ածցես բային մէջ, որ կ'իմանայ շրջապատել, ինչպէս «գօտի ածել[8]». և որոյ բացատրութեան պիտի հանդիպինք նաև յաջորդ յօդուածիս մէջ: Աւելի ռամկօրէն ու նշանակալից է պատիւը, որ է զարդ. և հետևաբար ունէր որոշ չափով ճոխութիւն մ'ալ, որ բնականապէս չէր կրնար հաւասարիլ Ասպետին (երբեմն) և մարզպանաց գլխին տեսածնուս: Բայց ինքնին գեղեցիկ ու յարգի է, և այս պատճառաւ ժառանգաբար կ'անցնի իրենց պայազատաց. այսպէս Մամիկոնեան Վաչէի մահուամբ՝ «զհօրն զպատիւն ի գլուխն դնէին» անոր Արտաւազդ որդւոյն, և սպարապետ կ'անուանեն[9]: Զգալի է այն նաև Միհրշահակի գլխին՝ վարսից պսակին վերև, և ուրիշ պարսիկ կնքոց վրայ. մինչ Վարդանակի և Աշուշայի գլխին չի տեսնուիր, գուցէ քանդակողին անուշադրութեամբ, կամ որովհետև ստիպողական չէր կրել միշտ:*

*Այս շրջանիս մեր իշխանք բացագլուխ կը թուին տնէն դուրս ալ, ինչ որ յայտնապէս պիտի տեսնենք նաև ռամկին վրայ: Դիզակ մարզպետի հանդերձին նկարագրութեան մէջ որ և է գլխանոցի ակնարկութիւն չունի Փաւստոս[10]: Եւ խոյրերը, զոր ոմանք Պարսկաստանէն նուէր ընդունելով՝ կը գործածեն բացառաբար, մեր պատմչաց ուշադրութիւնը կը գրաւեն[11]: Յոյնք և Հռովմայեցիք ալ գլխաբաց կը շրջէին քաղաքաց մէջ[12]. և մեր ազնուականաց առատ վարսերը,*

1. Ոսկ. Թղթ. Ա, 330. յն. «*զմօրուսն երկայնէին*»: — 2. Կաղ. 109: — 3. Անդ՝ 11: — 4. Փաւս. 67: — 5. Թիր. 56: — 6. Ելք, ԻԹ, 9. *Նիւթը բեհեզեայ*. ԻԸ, 39. — 7. Անդ՝ 64: — 8. Ղևտ. ԺԶ, 4 *են*: — 9. Փաւս. 28: — 10. Նոյն՝ 204: — 11. Անդ՝ 109: — 12. Dar. V, 767, 770:

զսպուած վարսակալէն, կարող էին գլխադրի տեղ բռնել անոնց։ Կը համարիմ՝ թէ պարսկային սովորութենէն կամ մեր տեսած ցանցառ օրինակներէն թելադրուած էր Հ. Ալիշան, ըսելու համար՝ թէ «խոյրակիր էին և մեծամեծ իշխանք Հայոց[1]». այս ընդհանրացումը պատմական չեմ կարծեր։

4. Գինդեր կրելն եթէ սովորական չէ բոլոր իշխանաց[2], բայց կը գտնուէին նաև Վասակայ նման առանձնաշնորհեալք արքայէն, որոց կ'ակնարկէ Եղիշէ՝ երբ կ'ըսէ. «յորժամ գինդք ծօնեալք զականջաց կախիցին կամ զարանց կամ զկանանց[3]», Գեդէոնի պարագայն մեկնողաբար մերձեցուցած հայ սովորութեան։ Աղոցմէ են նաև Վարդանակ և Աշուշայ, որոնք ցոյց կու տան իրենց գնդերը. և զորս կախելու համար՝ կը ծակէին ականջները[4] հերիւնով։

5. Վտաւակք առաջին հանդերձն էր ազնուականաց ու մեծատանց, զոր կը զգենուին անմիջապէս մարմնին վրայ, որպէս զի արտաքին ազնիւ պատմուճանը մաքուր մնար։ Կը թարգմանէ յն. ὑποδύτης (ներքնակ) բառը[5], զոր Փիլոնի թարգմանիչը ստորնակ կ'ըսէ ըստ յոյն բնագրին[6]։ Եւ ուր Ահարոն կը զգենու «զպարեգօտս պճղնաւորս[7]», հայ թարգմանիչը կը յաւելու՝ «ի վերայ ներքնակացն», տալով մեզ վտաւակին երկրորդ կոչումն ու տեղը մարմնոյն վրայ։ Տեսանք կանխաւ՝[8] որ զայս ունէին ուրիշ քաղաքակիրթ ազգեր ևս. և զոր կը յիշէ Փիլոն ալ այս բառերով. բժիշկներն «զներքնակ պատմուճանս ի վեր քարշելով, եթէ որովայնն ուռոյց է՝ հարցափորձեն[9]»։ Նկատեցինք զայս նաև մեր նախորդ շրջանի 28 և 36 Ձևերու վրայ, որոնք կը հաստատեն աստ ի հնուց գոյութիւնը և մեր քով։

6. Պատմուճան կոչումն յատուկ է նաև իշխանազանց արտաքին հանդերձին՝ իւր պատուականութեան համար, և կ'որոշուի ռամկի պարեգօտէն։ Տրդատ ու Հայոց իշխանք լսելով Լուսաւորչի քարոզութիւնը, «զպատմուճանս պատառէին[10]», և ս. Ներսէս դեռ արքունի սենեկապետ, «զարդարեալ էր գեղեցիկ պատմուճանաւ[11]»։ Այս խտրութիւնը կը դնեն մեր թարգմանիչք ալ, նոյնպէս կոչելով թագաւորաց[12], իշխանաց[13], Յովսեփայ[14], Ահարոնի[15] և Յիսուսի[16] հագածները, առանց միտ դնելու նոյն իսկ բնագրաց կոչմանց զանազանութեան։

Իւր ձևն որոշ է։ Հայր մարդպետ մը, թշնամի եկեղեցւոյ, ի

1. Արրտ. 416։ — 2. Աստ՝ 110։ — 3. Եղիշ. 183։ — 4. Վկյբ. Ա, 7։ — 5. Ելք. ԻԸ, 31–34. ԼԹ, 20–23։ — 6. Փիլ. Մնց. 544, 546։ — 7. Ելք, ԻԹ, 5։ — 8. Աստ՝ 5։ — 9. Փիլ. Նխ. 60։ — 10. Ագթ. 182։ — 11. Փաւս. 69։ — 12. Բ Թագ. Զ, 14. Գ Թագ. ԻԱ, 27։ — 13. Բ Թագ. ԺԵ, 32. Ա Մակ. Բ, 14։ — 14. Ծննդ. ԼԷ. Հ, — 15. Ելք, ԻԸ, 2, 4։ — 16. Յհ. ԺԹ, 23։

տես Աշտիշատի հայրապետական կալուածոց կը սրտնջէր՝ որ այդ գեղեցիկ տեղը «կանանցաճաճերձ մարդկան տուեալ է և ոչ արանց[1]»։ Եկեղեցականաց ու կանանց այդ հաւասար հանդերձը՝ պճղնաւոր պարեգօտն էր, ինչպէս պիտի տեսնենք։ Կը հետևի՝ որ այդ մարդ-պետն և իւր բարձակից «արք» կարճը կը զգենուին մինչև ծնկները, նման Գարսկաց հագածին (Զև 42, 50)․ ի բաց առեալ անոնք՝ որ թագաւորական արտօնութեամբ կը կրէին «զպատմուճանն մեծ» մին-չև սրունից կէսը[2], ինչպէս է և Սահառունւոյն վրայ (Զև 47)։ Առաջակողմէն փակ էր հանդերձս․ այս պատճառաւ Արշակ տեսնե-լով Ներսեսի ընդդիմութիւնը ձեռնադրուելու, անոր պատմուճանն «ի բաց պատառեալ հրամայէր[3]», փութով հանելու համար զայն։ Անոր կիտուածոց ու ժապաւինազարդ քղանցին ճոխութիւնը զգալի է Վարդանակի ու Սահառունւոյն Զևոց վրայ։ Պատմիչք լռութեամբ կ'անցնին անոր գունոյ մասին, ուսկից յայտնի է՝ թէ խտրութիւն չէին դնէր, բաց ի ծիրանւոյն, որ արքայազանց էր։ Հռիփսիմեանց պատանաց համար թագաւորն և իշխանք կը բերեն «գոյնազոյն նա-րօտս պատանաց, զմետաքսասէչս և ոսկէթելս կերպասուց[4]», որոնք բնականապէս իրենց հանդերձից նիւթերն էին․ գոյնագոյն, ուրեմն զանազան՝ ըստ իւրաքանչիւր ախորժակաց և մասանց։

Պատմուճանի կամ պարեգօտի մասերէն ոմանք իրենց յատուկ կոչումներն ունէին։ Կայ օձիքը[5], կամ վերին գիծը, որ օձի պէս կը պատէ վիզը․ և որպէս զի դիւրաւ չպատռէր, ներքուստ իւր վրայ կը կարուէր «բչիփն անկուած խիտ և հոծ[6]», որ է հաստատուն երիզ մը։ — Ունի թեզանիքը[7] կամ բազուկները ծածկող մասունքը։ — Իւր ստորին կողմը կը կոչուի ստորոտ[8] կամ քղանցք[9], կազմուած քող և ծանց արմատներէն, այս ինքն ուր զայն ամրացնող առասանը կ'անցնէր․ նոյնպէս վերջաւորք[10] կամ քղանցաւորք[11], մի և նոյն վկա-յութեան մէջ, որոյ վրայ կը կարուէր ծոպք[12] կամ զարդարուն ժա-պաւէնը, որ արտաքուստ կը շրջապատէր զայն։ Ստորոտին առան-ձին մասունքը, որ կը ձևանային ծալքերէն, կ'ըսուէին տոտանք[13] կամ պոչեր․ և եզակի՝ տոտն[14] կամ դրօշակ[15], երկուքն ալ նմանութեամբ

1. Փաւս. 114. — 2. Աստ՝ 97. — 3. Փաւս. 70. — 4. Ագթ. 571. Հմմտ. «երփն երփն նարօտուց». Եզեկ. ԻԷ, 24. — 5. Ագթ. 182, 585. Ելք, ԻԸ, 32. Եղիշ. 60. Ան. — 6. Փիլ. Մնց. 545. — 7. Ոսկ. Թղթ. Ա, 68. — 8. Ելք, ԻԸ, 33. յն. լումա=եզր. — 9. Մաթ. ԺԳ, 36. յն. կրա՛սպեդոն=ծայր զգեստոյ. — 10. Սղմ. ԽԳ, 15. յն. եզր. — 11. Ոսկ. Թղթ. Բ, 554. Եփր. Ա, 271. — 12. Թուք, ԺԵ, 38, 39. Բ Օր. ԻԲ, 12. — 13. Թուք. ԺԵ, 38. յն. պտերի՛գիոն=թևակ. Բ Օր. ԻԲ, 12. յն. կրա՛սպեդոն. — 14. Ա Թագ. ԺԵ, 27. ԻԴ, 6, 12. — 15. Հոբ. Գ, 9. յն. պտերի՛գիոն. Մաթ. Թ, 20. յն. կրա՛սպիդոն.

տրուած հայկական կոչումներ։ — Կարծեմ թէ պատմութեանն միւս կողմերը կը կրէին մարմնոյն համապատասխանող մասանց անունները, ինչպէս կը տեսնենք կօշկին վրայ. այսինքն՝ ճանճք, թիկունք, ուս, մէջք։

7. Կամար կը կոչուի գօտին, նոյնպէս ճոխ, նաև իշխանաց[1], բիւզանդացի ազնուականաց[2], Դանիէլի[3], Ահարոնի[4] և այլոց վրայ, թէպէտև Փաւստոս իւր ռամկախօսութեամբ գիտէ նաև գօտի կոչել Դղակինը[5]։ Բաց ի Թագաւորէն, բոլոր նախարարք իրենց մէջքին կը պահէին զայն միշտ։ Ի զարուն Մուշեղ Մամիկոնեան Խոսրովու խորանին առջև հասած, երբ կ'առաջարկէին հանել կամարն ու զէնքերը, պատասխանեց. «Լուծից զկամարս և զգօտիս յանձնէ իմմէ, զոր ոչ երբեք լուծեալ է իմ ի տան իմում յուրախութեան[6]»։ Կ'ուսանինք վկայութենէս՝ թէ կամարին ներքև կը պահէին նաև գօտին. զէթ Մուշեղի օրով յայտնի է այս։ Միհրշահակ ալ ցոյց կու տայ իւր կամարը՝ զարդարուած եռաշար մարգարտով, որ գրաւական է հայ իշխանականին ալ հարստութեան։

8. Վարտիքը չափաւոր լայնութիւն մ'ունի իշխանաց վրայ, քան արքային ու մարզպանաց. այս պատճառաւ Դղակայ ստացածը պատմչին ուշադրութիւնը կը գրաւէ՝ իբր անսովոր միւս իշխանակցաց համար[7]։ Պարսից հագածն ալ նոյնպէս չափաւոր է, խորշ խորշ, և թաթերուն քով զսպուած յատուկ կապով մը[8]։ Խոնչանը կամ վերին կապը կը բռնէ զայն մէջքին վրայ[9]։ Ոսկեբերանի Թարգմանիչը մովկք բառով կը կոչէ վարտիքը՝[10] բիւզանդացի ազնուականաց վրայ, յն. ἀναξυρίςի դէմ՝ որ կը մեկնուի լայն վարտիք։

9. Անդրավարտիք[11] բառն ալ կայ հիմայ, որ տրուած է Ահարոնի ազդերաց կտաւի ծածկութին՝ «միջովք չափ և բարձիւք չափ»։ Թարգմանիչն այլուր նոյն յունական բառին դէմ երկու հայերէն կը դնէ. «զանդրավարտիսն տաբատ[12]». երկրորդը մակդիր առաջնոյն, իբր տափհատ, ուղիղ կտրուած ներքուստ՝ առանց ստորոտից։ Հայ կոչումն անդրավարտիք, որ է անդր քան զվարտիս, զայս կը թելադրէ մեզ նկատել իշխանաց ազնիւ վարտեաց ներքև, համեմատ պատմութեանն ներքնակին։ Անոր գոյութիւնը կը հաստատէ և Սեբէոս, գրելով թէ Յոյնք կը մերկացնեն զՍմբատ Բագրատունի. և «ագուցեալ անդրավարտիս», գազանաց կը ձգեն[13]։ Անշուշտ իշխանին էր այդ արդէն, զոր իրեն կը թողուն իբրև սփածանելի։

1. Աստ՝ 110։ — 2. Ոսկ. Թղթ. Ա, 463։ — 3. Դան. Ժ, 5։ — 4. Ելք. ԻԸ, 4, 40։ — 5. Փաւս. 204։ — 6. Սեբ. 72։ — 7. Աստ՝ 99, 110։ — 8. Fland. տխ. 33, 53, 191։ — 9. Եղիշ. 17։ — 10. Ոսկ. Թղթ. Ա, 463։ — 11. Ելք, ԻԸ, 42. յն. պերիսկելէս=զարունիւք։ — 12. Անդ՝ ԼԹ, 27։ — 13. Սեբ. 90։

10. *Մոյկք* (պհլ. մոկ[1]) կը կոչուին կօշիկները Դղակի վրայ[2]. նոյնպէս և կամսարական Արշաւրի[3]. իսկ ազնիւ բարբառը կօշիկք կամ օդք կ'ըսէ[4], վերջինս եզակի ալ գործածելով[5]։ Կարծեմ պարսկայնոց պէս կը գրկէին ամբողջ թաթը (Զև 42)։ Հետաքրքրական է, և թերևս մեզ համար ոչ աւելորդ, անտիոքացի ազնուական երիտասարդաց կօշկաց նկարագիրն Ոսկեբերանէն։ «Զմետաքսն, կ'ըսէ, առեալ՝ ընդ



Զև 46. Աշուշայ բդեշխ վրաց (43 ծզ.)

կօշիկսն կարես, և զմորթսն այնու դրօշես» կամ «դրոշմես»։ Կը մեղադրէ զայն՝ «որ առաքինութիւն զմետաքս մանեալ և զերանգոցն ծաղիկս համարիցի, և նշատերև (յն. բաղեղ) քանդակս ի նկար կօշկացն հանդերձեալ յողայցէ». և կամ «զօղն ոսկւով զարդարիցէ[6]»։ Այսքան մեծ էր մետաքսի, ծաղկի և ոսկւոյ բաժինը կօշկաց վրայ։ Հայոց շինածներն ալ յարգի լինելու են, որով Սուրէն մարզպանի տուրք կու տան «հասս և կօշիկս[7]». յատկապէս ասոնցն էր նշատերև զարդը։

1. Hüb. 196. — 2. Փաւս. 204. — 3. Փրպ. 191. — 4. Ոսկ. Մտթ. Բ, 706, 708. Ցճխ. 214. — 5. Ոսկ. անդ, եզ. 707, 708, 709, 744. յոգ. 706, 710, 745. — 6. Նոյն, անդ՝ 707, 708, 709. — 7. Փաւս. 246.

11. Գրաստք՝ (պրս. կիրաստ՝ «հին զգեստ մը[1]». գուրար՝ կրկնոց կանանց,[2]) կը թարգմանէ Թագ. μανδύας ը[3], զոր կ՚ամրապնդէ Եւս. Եմեսացւոյ թարգմանիչն ալ, ըսելով՝ թէ «մանդիլան գրաստք են[4]»։ Աղեքսանդր յունարէնը կը մեկնէ զինուորական վերարկու[5]. և Սայ-լիոյ՚որ և է ձևով վերարկու[6]։ Ցամենայն դէպս՝ վերարկուի իմաստը հաստատուն է, որոյ հետ կը յարմարի դրօշակք (ծփուն քղանց) կոչումն ալ. որով կը թարգմանուի նոյն յունարէնը Մնացորդաց[7] և նոյն Եւսեբեայ քով, մի և նոյն դիպուածի կրկին յիշատակութեան մէջ։ Այդ մանդիլասը կրողներն են Դաւթի դեսպանները, ինչ որ կը յորդորէ զմեզ անոր հայ հոմանիշն ալ որոնելու անոնց հայազգի աստիճանակցաց վրայ, այս ինքն ազնուականաց, ի փոխարէն ռամկի մեկնոցին՝ զոր պիտի տեսնենք։ Կարճ էր ըստ նախկին սովորութեան (Զև 36) ու զատ բիւզանդական պճղնաւոր քղամդէն (Զև 55), որոյ համար Ոսկեբերանի թարգմանիչը վերջինս կը յիշէ նոյն յն. քղամիր բառով[8]։ Անշուշտ կարթաձև ձարմանդ մը և օղ[9] մը, ծածկուած շիզղի մը ներքև, զայն կը բռնէին աջ ուսին մօտ՝ ըստ առաջնոյն (Զև 36)։

12. Մորթերն ալ կը գործածուէին հիմայ, յիշատակուած Եզնկէն՝ թէ գազանաց «կիսոցն մորթքն պատսպարան մերկութեան մերոյ լինին», և թէ անոնց «զմորթն զգենումք[10]»։ Թէ որո՛նք էին զգեցող-ները, կ՚իմացնէ մեզ Փաւստոս, պատմելով Դ դարու կղերին համար՝ թէ ժամանակ մը զգեցան «հանդերձ զինւորաց[11]», որով կ՚իմանային նախարարութիւնը, որոնք միանգամայն զինուորական էին. և այդ բառով կ՚որակուին Պապ և Աթանագինէս[12], մեծն Ներսէս[13], և առ հասարակ ազատանին[14]։ Արդ՝ այդ հանդերձին մասն էին սամոյրենիք, կնգմենիք[15], գայլենիք և աղուեսենիք, կ՚ըսէ Փաւստոս[16]։ Հետևաբար մեր իշխանք զասոնք ալ կը կրէին, բայց ձմեռը՝ փոխան գրատին, և տնէն դուրս միայն. որոյ համար արքունեաց մէջ մեծն Ներսէս ու Դղակ պատմուճանով միայն կը նկարագրուին[17]։ Այս մուշտակաց զգալի օրինակ մ՚է Սահառունւոյն կենդանագիրը, որոյ վրայ կը տեսնենք մորթ մը պճղնաւոր, փիլոնի ոճով, պատմուճանէն ալ երկար, որոյ երկու կողմերէն կը կախուին շատ երկայն թեզանիններ, որոնք իբր զարդ շինուած են, և բազկներն ազատ թողուած։ Դաւթի մուշ-տակաւոր քանդակումն ապացոյց է՝ թէ մորթերն աւելի յարգի էին

1. John. 1038. — 2. Գև. 40. ըստ Menins. III, 981, կտոր, մասն հանդերձի. — 3. Բ Թագ. Ժ, 4. — 4. Եմես. 218. — 5. Alex. 875. — 6. Dar. III, 1571. — 7. Ա Մնց. ԺԹ, 4. — 8. Ոսկ. Թղթ. Ա, 463. — 9. Ելք. ԻԶ, 11. — 10. Կողբ. 65–6. — 11. Փաւս. 263. — 12. Նոյն՝ 35. — 13. Նոյն՝ 68. — 14. Կոր. 27. Եղիշ. 18. — 15. Պհլ. կակուռմա (աքիս սպիտակ) արմատէն. — 16. Փաւս. 263. — 17. Նոյն՝ 69, 204.

*քան զգրատս. և անոնց մէջ ալ ազնուագոյնն էր պատմչէն Նախակարգեալ սամուրենին, որով Նախամեծար կը համարէին զայն արքայն և ուրիշ աւագագոյն իշխանք ևս*[1]։

*Այս շրջանիս մորթերու գործածութիւնը, նախորդին մէջ անծանօթ, պարսկային ազդեցութեան արդիւնք կը թուի։ Բ դարու երկրորդ կիսուն Պոլլուքս արդէն կը տեսնէր Պարսից մեկնոցը «երբեմն և ի մորթոց» շինուած*[2]*։ Եւ Գրիւնայսէն կու տայ անոր մէկ ձեր՝ պարսկական կոչուած անօթէ մը, Գ—Դ դարու, որ յովազի մորթ մ'է՝ բաց փիլոնի ձևով. կը ծածկէ թիկունքը, կը հանգուցուի կրծոց վրայ, և կիջնէ մինչև ծնկները*[3]*։ Սահառունւոյն հագածը՝ ժամանակի շրջանին մէջ զարգացած ձևն է. խառնուրդ մը պարսկական թեզանաւոր վերարկուին* (Ձև 43) *ու մուշտակին։*

13. *Սուսերը, իշխանական պատուոյ նշանակներէն մին, անբաժան է միշտ կամարէն։ Վասակ Մամիկոնեան երբ կը մտնէր Շապհոյ արքունիքը, «զսուսերն ընդ մէջն ունէր», զոր գործածեց իր թագաւորը նախատող ախոռապետին վրայ*[4]*։ Գնէլ Անձևացին Տերենտի ընթրեաց մէջ նոյնպէս կապած է «զիւր սուսերն», որով կը ճակատի Պապայ դաւադրաց դէմ*[5]*։ Զայն կը կրէ և Նախայիշեալ Մուշեղ Մամիկոնեանը ծանօթ առթիւ, մերժելով զայն քակելու առաջարկը՝ զոր ըրին Պարսիկները*[6]*։ Դղակ մարդպետ արքայապարգև հանդերձին հետ ստացաւ նաև «սուսեր ընդ մէջ», և «թուր» մը գօտիէն կախուած*[7]*։ Երկու զէնք են. սուրը մեծ է, և առանձինն կապուած մէջքին, ինչպէս կը տեսնենք և Պարսից վրայ. իսկ թուրը փոքր է, և կապուած գօտւոյն։ Ասոնց մասին աւելի պիտի խօսինք յետոյ։ Անոնց սայրը «պողովատիկ*[8]*» (պհլ. պոլապատէն*[9]*) կամ պողպատեայ է, ինչպէս էր և արքայականը*[10]*, որով աւելի հաստ կը լինէր. հանգամանք մը, որ շատ յարգի է ժամանակիս, և թարգմանութեանց մէջ անգամ կը մտնէ՝*[11] *բնագիրը զօրացնելու համար։ Սուրը յարատև կրելը պարսկային էր, որոց համար Ամմ. Մարկեղինոս կը գրէ Դ դարուն՝ թէ «բոլորն ալ անխտիր, նոյն իսկ խնճոյից մէջ և հանդիսական օրերուն, կ'երևին սուր կապած*[12]*»։ Քաղաքական կենաց մէջ հայ իշխանին սուրը զարդարուն է, և ասկից կը տարբերի յատուկ «սուսեր պատերազմի»՝ զոր կը կրէ կռուի մէջ*[13]*, քան զառաջինը պարզ։*

14. *Նրանճ ալ կայ միշտ իշխանաց վրայ՝ ինչպէս արքային.*

1. Աստ՝ 101, 107, 111։ — 2. Poll. VII, 13։ — 3. Grün. 188։ — 4. Փաւս. 125։ — 5. Նոյն՝ 233։ — 6. Եղ. 72։ — 7. Փաւս. 204։ — 8. Ագթ. 39։ — 9. Hüb. 231։ — 10. Աստ՝ 100։ — 11. «Սուսեր պողովատիկ». Իմաստ. ԺԸ, 16. Զաք. Թ, 13. յն. լոկ «սուր»։ — 12. Amm. XXVI, 6։ — 13. Սամ. 14։

Դղակ «զնրանն յազդեր» կը կրէ Պապի ընթրեաց պահուն[1]. և Բատ Սահառունի իւր նրանով սպանեց զքաջն Մուշեղ՝ Վարազդատայ տաճարին մէջ[2]։ Նեեմեայ թարգմանութիւնս, «զսուսեր իւր եդեալ ի վերայ բարձի իւրոյ[3]», հայ թարգմանիչը կը վերածէ այսպէս. «զսուսեր իւր ընդ մէջ իւր, և զմիասայրին ի վերայ բարձի իւրոյ»։ Հայ սովորութիւնն է այս, որոյ միասայրին դաշոյնն է, զգացնելով՝ որ սուսերն երկսայրի էր։ Կը կոչուի նաև դաշոյն, կախուած Հողեփեռնի ազդեր վրայ[4], կամ դարշոյն[5]. և համանիշ է պրս. դաշնա բառին[6], որ իրապէս ալ կ'երևի սասանեան քանդակի մը մէջ, կարճ՝ լայն և ուղիղ սայրով[7]։

15. Մանեակ մը (յն. μανιάκης[8]) փոխան վերապահեալ զումարտակին կը պճնէ իշխանաց վիզը, յիշատակուած ուրիշ զարդուց հետ փարպեցւոյն հետևեալ տողերուն մէջ. «փառացն ցանկացողք արք և կանայք, որք անյագութեամբն համակեալք՝ ոսկւովք և պատուական ակամբք և մարգարտովք կապեն ախորժելով զիւրոյին անձանց զձեռս և զոտս և զպարանոց[9]»։ Հոս փառացն ցանկացողք՝ ազնուական դասն է. ոսկեղէն ականակուռ զարդը՝ կապուած պարանոցին՝ մանեակն է, որ սովորաբար ոսկեղէն կը լինէր ուրիշ ազգաց մէջ ալ[10]։ Նոյն զարդը կ'երևի նաև Վարդանակի ու Միհրշահակի վզին, քանդակին անկատարութենէն տարտամ ձև մ'առած. իսկ Աշուշայի վրայ աւելի լայն է և յստակ, խառնուած պատմուճանին հետ՝ իբրև անոր օձիքը. բայց հնոց անծանօթ էր կարկառուն օձիքը։ Ամմ. Մարկեղոսի վկայութիւնը Դ դարու Պարսից նկատմամբ՝ կը զուգընթանայ Ղազարու բանից հետ. անոնք կը կրեն, կ'ըսէ, «ոսկի ապարանջաններ և մանեակներ, առատ գոհարներ, մանաւանդ մարգարիտներ, զորս ընդունեցան յետ Լիդիոյ և Կրեսոսի պարտութեան». և այդ մարգարտաց աղբիւր ցոյց կու տայ Հնդկաստանի ու Պարսկաստանի ափերը[11], ուսկից էին և հայ թագին ակունքը[12]։

16. Ապարանջանք (պրս. ապրանջան[13]), շատ յեղյեղուած ոսկեդարեան թարգմանութեանց մէջ, անյիշատակ կը մնան ինքնագիր մատենագրութեան մէջ, թերևս անոր համար՝ որ այլոց նման առանձնաշնորհեալ զարդ չլինելով, պատմչաց ուշադրութեան չեն հանդիպած։ Բայց ապահով է իրենց գոյութիւնը, թէ նախորդ շրջանի օրինակով[14], թէ փարպեցւոյն վերոյիշեալ յայտնի վկայութեամբ՝ թէ

1. Փաւս. 204։ — 2. Նոյն՝ 237, — 3. Նեեմ. Դ, 18։ — 4. Յդթ. ԺԲ, 8. ԺԶ, 11։ — 5. Եփր. Ա, 345։ — 6. Hüb. 134։ — 7. Raw. 25։ — 8. Դան. Ե, 7։ — 9. Փրպ. 275։ — 10. Ծննդ. ԽԱ, 42. Ա Եզր. Գ, 6. Ա Մնց. ԺԲ, 7։ — 11. Amm. XXIII, 6։ — 12. Աստ՝ 95։ — 13. Hüb. 104։ — 14. Աստ՝ 82։

*մեր ազնուականք «ոսկեօղք կապեն զձեռս», որ են ոսկի ապարան-ջանք, և թէ Պարսից օրինակով ըստ Ամմիանոսի, որոնք նաև Վրաց Ջուանշիր իշխանին կը շնորհեն «ապարանջանս բազկացն[1]»։*

17. *Մեհեւանդ կոչուած զարդ մ'ալ կայ, զոր արանց մէջ առաւելապէս կը գործածէ առոյգ հասակը. «մատուցին... երիտա-սարդքն զմեհեւանդս» Յովնանու, կ'ըսէ Եփրեմի թարգմանիչը[2], որ*



Ձև 47. Դաւիթ Սահառունի

*ինքնահնար կը թուի, և անմիաբան է լատին թարգմանութեան հետ[3]։ Այդ բառն այլուր կը թարգմանէ յն.* χλιδώνը[4], *որ կը մեկնուի ապարանջան ու քայռ, և նոյն յունարէնն ուրիշ տեղեր կը հայանայ «ապարանջան» բառով[5]։ Նոյն մեհեւանդը կը թարգմանէ նաև յն.* ἐμπλόκιονը[6], *որ հեռի է նշանակութեամբ[7]։ Կը թարգմանէ նաև յն.* στραγγαλίςը[8], *որ է կապ կամ լար։ Յայտնի է օրինակներէդ մեր բառին ազատ գործածութիւնը, ոչ թէ բազմանշութիւնը՝ զոր կ'են-*

1. Կաղ. 138։ — 2. Եփր. Դ. 121։ — 3. Assem. III, 568։ — 4. Թիւք, ԼԱ, 50։ — 5. Բ Թագ. Ա, 10. Յդթ. Ժ, 4. Սիրաք, ԻԱ, 24։ — 6. Ես. Գ, 20։ — 7. Ատ՝ 127։ — 8։ Դատ. Ը, 26։

*Թաղրէ Հայկազեանը*[1]: *Իւր իսկական նշանակութիւնը մօտ է ապարանջանին, – զոր փոխանակած է* χλιδώνի *Թարգմանութեան մէջ, – բայց ոչ հաւասար, անոր համար երկու տեղ ասոր հետ միասին ալ գործածուած է իբրև իրարմէ զատ իրեր*[2]: *Իւր ստոյգ իմաստը կը կարծեմ տեսնել Փարպեցւոյն վերոյիշեալ տեղւոյն մէջ. «պատուական ակամբք և մարգարտովք կապեալ ախորժելով զիւրոյին անձանց զձեռս»: Հնութեան մէջ արևելեան ապարանջանի մարմինը բոլորակ էր, ինչպէս կ'երևի մեր 3 Ձևի մէջ, և ծայրերն անջատ թողուած. իսկ նիւթն՝ ոսկի միայն: Կար նաև երիզաձևը, գոհարազարդ ու կապուած բազկին, ինչպէս կը տեսնենք մեր 2 Ձևի և այլ ասորեստանեան քանդակաց*[3], *մեր 41 Ձևի Սասանեանց, և ուրիշի մը՝ երկու շար մարգարտով ու կեդրոնը մեծ քարով մը*[4], *և յոյն ու հռովմէական հնութեանց վրայ*[5]: *Ճիշդ այս է մեր մեհեանդը, որ Ղազարայ վկայութեան մէջ գոհարազարդ է և կապուած: Անունը Թիրեաքեան կը հանէ պրս. մահբանդ բառէն, և կը մեկնէ՝ «մահիկի ձևեր ունեցող կանացի զարդեր, զոր մահիկ ալ կ'ըսենք*[6]», *ըստ որում բաղդուած պհլ. մահ=լուսին և բանդ=կապ արմատներէն: Բայց ոսկեդարը կը զատէ մահիկն ու մեհեանդը. և կը կրկնեմ՝ թէ վերջինս լայն ապարանջանն էր, հաւանօրէն ի սկզբան լուսնով կամ մահիկով զարդարուած, ուսկից առած է կոչումը:*

18. *Մատանին սեպհական է բոլոր նախարարաց, որոնք կը գործածէին զայն իբր կնիք և զարդ մատանց: Վարդանանց երդումն Աւետարանին վրայ, առ Յոյնս և ուրիշ պաշտօնական թղթեր, բոլորը կնքուած էին «մատանեաւ» Վասակայ և միւս իշխանաց*[7]: *Փարպեցւոյն մէկ բացատրութենէն կ'իմանանք՝ որ քրիստոնէութեան շրջանին մատանւոյն պատկերը խաչն էր. «Դիր զմատանին՝ զգծած խաչի քո՝ ի մատին աջոյ ձեռին մերոյ», կ'աղօթէին Վարդանանք*[8]: *Խաչին քով կար ստացողին մենագիր անունն ալ, որ կ'որոշէր զայն ուրիշներէ, ինչպէս Դ դարէն կ'երևի և յարևմուտս*[9]: *Պատմիչը կը նշանակէ մի միայն մատանի, և զայն կը դնէ «ի մատին աջոյ ձեռին», նոյնպէս արևմտեայց նման, որոց քով մատն ալ յայտնի է, ճկութին մերձաւորը*[10]:

19. *Կշտապանակ մ'ալ կը յիշէ Ոսկեբերանի Թարգմանիչն երկու անգամ, անկախաբար բնագրէն, ուստի հայ կեանքէն առնլով. մին*

1. Աստ՝ Ցուցք. ԺԴ. — 2. Թիր., ԼԱ, 50. Եւ. Գ, 20. — 3. Place, III, տխ. 58, 66. Lay. I, տխ. 35–38 են. — 4. Fland. տխ. 9. — 5. Dar. I, 435–9. — 6. Թիր. 273. — 7. Փրպ. 178, 184. Եղիշ. 103. — 8. Փրպ. 180. — 9. Mart. 46. — 10. Cabr. I, 2179.

*արանց զարդերու կարգին, «հանդերձս, մատանիս և կշտապանակս[1]», և միւսը կանանց[2], որուն պիտի դառնանք իւր կարգին։ Հայկազեանի հետ որոնելու չենք զայս կշտին վրայ։ Այս բառն ուրիշ երեք տեղ կը թարգմանէ յն. περιδέξιονը[3] (աջանոց), որ ըստ կազմութեան կը մեկնուի ապարանջան աջ ձեռին։ Բայց յարմարական և անբնական է մեկնութիւնդ. իսկ հայերէն բառը յիշեալ տեղերու մէջ գործածուած է ազատօրէն։ Սա՝ ինքն իւր մէջ ունի իւր նշանակութիւնը. կը ծագի պհլ. կուշտապանակէ մը (զնդ. անկուշտ=մատն արմատէն և անկուշտապանա ածանց հոմանշէն), և կը նշանակէ մատնոց[4]։ Եւ որովհետև բոլոր վկայութեանց մէջ մատանեաց կից և յետ անոր զետեղուած է, որով չի կրնար անոր հետ նոյնանալ և միանգամայն անոր մօտ որոնելի է, ես կը յորդորուիմ մատանի բառով իմանալ կնքելու սահմանուածները, ինչպէս հասարակօրէն կը տեսնուի մեր վերոյիշեալ և ուրիշ վկայութեանց մէջ. և կշտապանակով՝ զարդի մատանիներն այլազան ձևերով կամ գոհարներով՝ որ կ՚երևին հնութեան մէջ[5]։ Անոնց պաշտօնի տարբերութիւնը՝ կոչմանց ալ զանազանութիւն մը կը պահանջէր իրաւամբ, և գործածութեան մէջ ալ կարևոր։ Կշտապանակները շատ անգամ թուով աւելի էին մատներուն վրայ[6], ըստ կարողութեան և ճաշակի։*

20. *Ուրիշ զարդեր ևս տեսանք Փարպեցւոյն վերոյիշեալ վկայութեան մէջ, նոյնպէս գոհարներով յօրինուած, որոցմով «կապէին զոտս»։ Անաշխատ կը հասկանանք ասոնց էութիւնը, երբ ակնարկ մը ձգենք մեր 41 Զևի Սասանեանց վրայ, որոց ոտները կը պճնեն ականակուռ աստեղաձև ու տերևանման զարդեր։ Այդ տեղ և այդ կամ այլ ձևերով կապուած էին Հայոց ոտնազարդերն ալ։*

21. *Դիտեցինք կանխաւ՝[7] որ խոյրը, գումարտակն ու գինդերն առանձնաշնորհեալք միայն կրնային կրել. հետևաբար փնտռելու չենք իշխանական դասուն վրայ։ Դարձեալ՝ միւս ճոխ զարդերը հանդիսական առթից մէջ միայն կը կրէին, ոչ թէ հանապազօր։ Վասակ Սիւնի, որ յետ պատերազմին ի Տիզբոն գնաց, այն պահուն միայն հագաւ իւր պատուոյ հանդերձն ու զարդերը՝ երբ պիտի երթար արքային ընթրեաց[8]։*

*Արքայական և իշխանական տոներն և ընդունելութիւնք՝ անոցմէ կը պահանջէին նաև ուրիշ արդուզարդ մը. լուացումն, օծումն և հիւսումն հերաց[9]։ Անոնց պճնասիրութիւնն երբեմն զեղծման կ՚երթար,*

1. Ոսկ. Մաթ. Ա, 146։ — 2. Ոսկ. Թղթ. Բ, 554։ — 3. Ելք, ԼԵ, 22. Թիւք, ԼԱ, 50. Ես. Գ, 20։ — 4. Թիր. 210։ — 5. Dar. I, 294–6. Cabr. I, 2184–2212. — 6. Dar. I, 283։— 7. Աստ՝ 109, 110։ — 8. Եղիշ. 106։ — 9. Ճաշեր. 146, 149։

*և մինչև սրբավայրը կը հասնէր, Մանդակունի հայրապետին բողոքը հրաւիրելով. «Ի ժամ աղօթիցն... լուանամք և օծանիմք և զհանդերձս պաճուճեմք, որպէս թէ ի բոզանոցս կազմիցիմք...։ Չէն պէտք պաճուճանաց... և ոչ օծանելոյ և զհերս հիւսելոյ ի ժամ աղօթիցն[1]»։*

*Այդ պճնութեան նպատակն էր աւելի պայծառ ցոյց տալ առնական գեղեցկութիւնը, որ մեծապէս յարգուած էր ազնուական դասուն մէջ։ Մեծն Ներսէս, թոռն հայրապետի ու թագաւորի, աշխարհական վիճակին մէջ իր չքնաղութեամբ կը պանծացուի Փաւստոսէ՝ հետագայ կերպով. «Մեծ և բարձր ցանկալի հասակաւ և վայելուչ գեղով. զի ոչ գտանէր ուրեք նման նմա գեղեցկութեանն ի վերայ երեսաց երկրի, տենչալի ցանկալի և զարմանալի և ահագին ամենայն նայեցող տեսողաց», և «չքնաղատես՝ հերօք վարսից իւրոց»[2]։ Հայ վէպը զՀայկ կ'երևակայէր «գեղապատշաճ և անձնեայ, քաջագանգուր, խայտակն և հաստաբազուկ». և զՏիգրան Ա՝ «խարտեաշ... երեսօք գունեան և մեղուակն, անձնեայ և թիկնաւէտ, առոյգաբարձ և գեղեցկոտն[3]»։ Հայ իգական սեռն ալ իրենց կենակցաց մէջ կը փնտռէին արտաքին վայելչութիւնը, և աքսորական իշխանաց տիկնայք, կ'ըսէ Եղիշէ, «կարօտացան տեսանել զցանկալի գեղ երեսաց նոցա[4]»։*

## Ը· ՏԻԿՆԱՑՔ

*Ուրիշ կարևոր ու ճոխ գլուխ մը կը բացուի մեզ հոս. տեսնել զարգացած ճաշակն ու պճնելու կերպը «Հայոց աշխարհին փափկասուն Տիկնայց[5]» կամ «իշխանականաց[6]», որոց հեշտակեաց կենցաղավարութեան մասին խօսած եմ այլուր[7]. և որ անոնց կու տար քաղաքակրթութեան նրբութեանց հաղորդ կնոջ պատշաճ տեղը։ Գրական առատ տարերաց հետ՝ ադրիւր ունինք տիկնանց տարազին նաև երեք կենդանագրեր. Զարդխոտին՝ Միհրշահակի հետ, Զև 45. Արմինդխտին՝ Բրիտ. Թանգարանի սասանեան կնքաքարէ մը, Զև 48. և Դաւիթ Սահառունւոյ կնոջը՝ զոր յիշեցի կանխաւ[8], Զև 49, և որոյ անունն անծանօթ է։ Հետևելով աղոնց, տեսնենք մեր իշխանուհեաց հանդերձը։*

*1. Ծամք կը կոչուին տիկնանց վրայ ընտիր լեզուաւ՝[9] ինչ*

1. Մանդ. 43. — 2. Փաւս. 68-9. — 3. Խոր. Ա, Ժ, Իդ. — 4. Եղիշ. 157. — 5. Նոյն՝ 156. — 6. Կոր. 25. — 7. Ճաշեր. 254, 256. — 8. Աստ՝ 112. — 9. Ռսկ. Թղթ. Ա, 604, 659, 835.

*որ արանց համար վարսք էին, երբեմն վերջինս[1] և հերք[2] ալ ըսուած տկար մատենագրերէ, և արձակ վիճակի մէջ՝ գէսք[3]։ Անոնց հանապազօրեայ սովորութիւնն էր զանոնք «յարմարել սանդրով[4]». և այդ յարմարման կերպը կախուած էր հերաց տեսակէն և կամ իրենց կամքէն։ Ընդհանրապէս կ'ամփոփէին գլխին վրայ, ինչպէս ցոյց կու տան Զարդուխտ, Արմինդուխտ և ուրիշ պարսկուհիք[5]. և աւելի վայելուչ ձևով մը Սահառունի տիկինը, որոյ զանգրագեղ վարսերը կը ծածկեն ականջները և այտից շուրջ կը բոլորին, ինչ որ շատ կը տեսնենք նաև ժամանակիս արևմտեան կանացի դէմքերու վրայ[6]։ — Մանկամարդներէն որոնք գեղեցիկ ծամեր ունէին, կ'ախորժէին զանգուրներ շինել ու կախել. այսպէս Տիրան արքայի դուստրը՝ «չքնաղագեղն» Երանեակ, կին Տրդատ Բագրատունւոյ, կախ թողած էր «զդեղձան հերսն և զվարսիցն խոպոպիս», զորս ամուսինը բարկութեան մէկ պահուն կտրեց ու փախաւ[7]։ Ասոր նմանութիւնը կ'երևի նաև մեր 42 Զևի Սասանեան դշխոյին և պարսիկ կնքոց ոմանց[8] վրայ։ — Բայց տիկնանց վարսայարդարութեան խիստ սահմաններ չկային՝ ոչ մեր և ոչ օտարաց քով[9]. որով զուցէ երկուքէդ զատ կերպեր ալ ունէին։ Միակ անսովոր ձևն էր հերարձակութիւնը, սեպհական սգոյ, զոր պիտի տեսնենք իւր կարգին։ Եւ որպէս զի գլխին վրայ հիւսուած ծամերն անքակ մնային, կը գործածուէր*

2. **Փողոշտկը**, *(արմ. փողոշ հմմտ. ընդ* φλόος*=պատատ[10]), յիշուած ս. Գրոց մէջ[11] փոխան յն.* ἐμπλόκιον*ի, որ կը մեկնուի զարդ խառնելի հերաց մէջ[12]. և զոր հայ թարգմանիչը կը հաստատէ «ընդելուզեալ» յաւելուածով, որ կը նշանակէ մանուած ոսկւով կամ յեռեալ մարգարտով։ Այսպիսի հերակապ մը կ'երևի հին հելլենուհեաց գլխին, խառնուած ու գալարուած վարսից հիւսերուն հետ[13]։ Եւ ուղիղ կը հասկնայ Վարդան, երբ փողոշուկը կը մեկնէ, «որ զծամս խոպոպիս ի ներս առնուն ներքոյ ականջաց[14]»։ Իրեն հոմանիշ ունի ծամակալն ալ, որ տեղ մը կը թարգմանէ յիշեալ յունարէնը[15]։ Հայկական բարդութիւն, նաև ուրիշ թարգմանութեանց մէջ բնագրէն անկախաբար կը խառնուի կանացի զարդերուն[16], կամ «մի ծամակալս ի ծամս[17]». և տեղ մը կ'որակուի «ոսկեհուռ ծամակալօք[18]», որոյ յոյն բնագիրը* (περίθεσις*=շրջածութիւն) անորոշ, անոր*

1. Խոր. Բ, կզ։ — 2. Փրպ. 332։ — 3. Փաւս. 120։ — 4. Փրպ. 332։ — 5. Horn. թ. 466, 565։ — 6. Cabr. III, 1311-14։ — 7. Խոր. Բ, կզ։ — 8. Horn. թ. 490, 638։ — 9. Cabr. III, 1315։ — 10. Alex. 1543։ — 11. Թիւք, ԼԱ, 50։ — 12 Alex. 479։ — 13. Hot. I, տխ. 31։ — 14. Վրդ. Թիւ. ԺԴ։ — 15. Ելք, ԼԵ, 22։ — 16. Ես. Գ, 19։ — 17. Ոսկ. Թղթ. Ա, 894. չիք յն։ — 18. Ա Պետ. Գ, 3։

*ոսկեհուռ մակղիրը կը զուգուի հայ ժամակայրին, անգամ մ'ալ հաստատելով ասոր հարստութիւնը։*

3. *Թաղ կոչուած խոյր մը, որուն հանդիպեցանք նաև նախորդ շրջանին*[1]*, կը շարունակէ միալ մի և նոյն ձևով տիկնանց գագաթին վրայ իբր զարդ, մանաւանդ առտնին ընդունելութեանց ժամանակ, դատելով իւր գոյութենէն նաև ռամիկ կանանց վրայ, ինչպէս պիտի տեսնենք, և իրեն վերաբերեալ հետագայ զարդէն։ Իւր անունն յայտնի է իբր խիտ ու պինդ գործած բրդեայ, յիշուած պատմահօրէն*[2]*, որուն այսօր Թաղիք կ'ըսենք, և համեմատելի պրս. թագեայ (գլխանոց) բառին, և գաւառաց մէջ ցարդ պահուած համանման կանացի կարմիր գդակին։*

4. *Թաղհար մը կը յիշէ Ոսկեբերանի Թարգմանիչը՝ հայ կանանց Թանկագին զարդերու մէջ՝ յաւելուածովս. «մի... տեռակալս և թաղհարս ի գլուխս*[3]*»։ Շատ հեռի միջնադարեան թաղար (անօթ բուսոց) բառի իմաստէն, ու Հայկազեանի և անոր հետևողաց մեկնութենէն՝ «գլխարկ կանանց ի ձև Թաղարի», է պարզապէս բարդ մը թաղ ու հար արմատներէն. և կը նշանակէ ըստ իս հարուստ գլխով գնդասեղները, որոցմէ Ասիոյ ու Եւրոպայի ազնուուհիք ալ կը գործածէին*[4]*. և մեր պարագային իրենց պաշտօնն էր հարկանել զթաղն, այսինքն վարսել հաստատել մազերուն վրայ*[5]*։ Եւ արդէն Ոսկեբերանի Թարգմանիչը չէր կարող արգելուլ («մի՛ Թաղհարս») Թաղհար գլխանոցը, որոյ մերկացումը կը պարսաւէ այլուր*[6]*. այլ կը մեղադրէ ոսկեղէն ու գոհարեղէն գնդասեղները։*

5. *Քող*[7] *մը, կոչուած նաև գլխադիր*[8]*, կը սքողէր անոնց գլլուխը Թաղով ու երեսը՝ տնէն դուրս, ինչպէս կ'աւանդէ Փարպեցին, իմացնելով՝ թէ մինչև անոնց աչքերը կ'իջնէր, դիւրութիւն տալով՝ «ստէպ ընդ քօղով այսր անդր հայեցողութեան զաչս ածելոյ*[9]*», ինչ որ ակնարկութիւն է փողոցաց։ Մի և նոյն վիճակին կ'ակնարկէ Ոսկեբերանի Թարգմանիչն ալ, յաւելուածովս Նորահարս կնոջ մասին. «մինչչև քողընկէց բացխփիկն խաղայցէ*[10]*». այսինքն քողը Թերաբաց պահէ, ինչպէս կ'ընէին հարսնութեան շրջանն անցնելէ յետոյ։ Այս ալ շատ նուրբ է, հաւանօրէն և մարգարտազարդ, կոչուելու համար Եղիշէէ «զարդ երեսաց». և Աւարայրի պատերազմէն յետոյ Պարսից ընչաքաղցութիւնը կը կողոպտէ զանոնք գերեալ նախարարաց կանանց*

1. Աստ՝ 85։ — 2. Խոր. Գ, Բ։ — 3. Ոսկ. Թղթ. Ա, 894։ — 4. Dar. I, 62–64. Hot. I, տխ. 48։ — 5. Հմմտ. «հարկանել զխորան», Ծննդ. ԼԳ, 19 են, որ է հաստատել ցիցերով։ — 6. Աստ՝ 144։ — 7. Եւ. Խէ, 2. Յոր, ԻԴ. 15 են։ — 8. Ոսկ. Թղթ. Ա. 895. յն. տարրեր. Եզեկ. ԺԳ, 18. են։ — 9. Փրպ. 332։ — 10. Ոսկ. Թղթ. Ա, 895։

գլխէն. «Առան, կ'ըսէ նոյն պատմիչը, գանձք իւրեանց յարքունիս, և ոչ մնացին ամենևին զարդք երեսաց իւրեանց[1]»։ Զայս ալ պէտք էր հաստատել գլխին վրայ, որոյ համար կը գործածուէին

6. Տեռակալք, յիշուած վերև Ոսկեբերանի Թարգմանչէն, յարակից Թաղհարին հետ և «ի գլուխս», և անոր պէս ճոխ գնդասեղներ էին։ Իւր արմատը տես՝ քողին նիւթն էր, ինչպէս պիտի տեսնենք ստորև, որ իւր անունը լայնաբար տուած է երբեմն իւրմէ շինուած զգեստեղինաց ալ[2], և հոս նաև քողին՝ գէթ տեռակալ բարդին մէջ։ — Գլխէն անցնելով իրանի զգեստուց,

7. Պախճաւանդք եզական անուան և իրին կը հանդիպինք Ոսկեբերանի Թարգմանչին մէկ բացատրութեան մէջ. «Այնպիսի պախճաւանդօք և լանջագեղ կամարօք զարդեալ լինիցիս ընդակազմ[3]»։ Երկու կապեր կան հոս, որոց պաշտօնն է զսպել. և զսպման տեղն է լանջքը, յայտնի «լանջագեղ» բարդին մէջ։ Մին ներքին է և միւսն արտաքին։ Առաջինը, պախճաւանդ, բարդուած կը կարծեմ պրս. պախչ (արմատ պախչիտըն=շրջապատել բային) և ւանդ (բանդ=կապ) բառերէն. ուստի կը նշանակէ շրջապատող կապ, որ կը յիշեցնէ երկար երիզը՝ որով հին ժամանակ կանայք ուղղակի



Զև 48. Արմինդուխտ (21 ճզ.)

մորթի վրայէն կը պատէին իրենց լանջքը, տալով անոր իրենց հաճելի ձևը[4]։ Այժմու սեղմիրանի պաշտօնը կը վարէ, նաև մեր Նրբաճաշակ Հայուհեաց վրայ։ Եւ այդ պրկումը շատ զգալի է Արմինդըխտոյ և Սասանեան դշխոյին վրայ (Զև 42)։

8. Պատմուճանը, բնականապէս յետ ներքնակին, կը յաջորդէր ադոր. Թեզանաւոր ու պճղնաւոր, ըստ ակնարկութեան Փաւստոսի[5], և մեր երեք կանացի Զևերուն, ու միշտ խորշաքաղ[6], աւելի մէջքէն վար։ Անոցմէ հանդիսականք պճղնաւորութեան սահմանէն անց-

1. Եղիշ. 156։ — 2. Աստ՝ 103։ — 3. Ոսկ. Թղթ. Բ, 554. յն. լոկ «այնպիսիս զգեցիր»։ — 4. Dar. II, 980-81։ — 5. Աստ՝ 117 ։ — 6. Ոսկ. Թղթ. Ա, 68։

նելով, գետին կը ձգեն երկար և առատ քղանցներ, ինչպէս կ'երևի Սասանեան Թագուհւոյն և Արմինդխտոյ վրայ, հակառակ 45 և 49 Ջևերու չափաւորութեան։ Նոյն սովորութեան մեր քով ալ լինելուն հարազատ վկայ մ'է Ոսկեբերանի Թարգմանիչը, գովելով անոր հակառակն՝ իբր աւելի համեստ. «Յորժամ ի քարշելոյն և յօձտելոյն (աջ ու ձախ նետուիլ) հանգուցն (ամփոփ) իջէ». և բնագիրը կը շարունակէ, «գիւրև ամփոփիցէ համեստութեամբ[1]»։ Այս երկարութիւնը շատ հին էր, զոր տեսանք ուրարտեան շրջանէն[2], և կար հին Պարսից քով ալ. Եսթեր Թագուհին երբ Արտաշիսի առջև կ'ելնէ, նաժիշտներէն մին «ունէր զստորոտ զգեստու նորա ի վեր[3]»։ Եւ Սիոնի դստերք «ի գնացս իւրեանց քարշէին զստորոտս իւրեանց[4]»։

9. Մենրան մը (պրս. նիմրէն[5], նիմ=կէս ու րէն=մարմին արմատներէն, և Թրք. մինրան), արդէն նախորդ շրջանէն ի գործածութեան[6], կը շարունակէ ծածկել մարմնոյն կէսը, այսինքն իրանը՝ պատմուճանին վրայ։ Աւելի նոր է քան զներքինը, որոյ համար աչքին կը զարնէ Ոսկեբերանի Թարգմանչին, որ կը յիշէ զայն հետագայ ազատ բացատրութեան մէջ. «Անդէն (հարսանեաց կամ պարահանդիսի մէջ) զարդուցն ռայք և ժամանակ մենրանաց, անդ սեթևեթել և անդէն փերևեթել[7]»։ Ամենօրեայ հանդերձ մը չէր ուրեմն մենթանը, այլ հանդիսական։

10. Կամար կը կոչուի նաև տիկնանց գօտին, ինչպէս յայտնի է Եսայեայ Թալգմանութենէն Սիոնի պերճուհեաց վրայ[8], նմանութեամբ մեր տիկնանց, որոց զայն կրելն անկասկած է, դատելով Թագուհւոյն ու ռամկուհեաց օրինակէն ևս։ Ունէր իւր զարդարուն առկախ ծայրերն ալ, «զծոփս գօտւոյն[9]», ինչ որ կ'երևի նաև մեր 42 Ջևի դշխոյին վրայ։

11. Տեղը կ'ուզեմ նկատել, իբրև արտաքին հանդերձ, նաև մեր տիկնանց սեպհական, ինչպէս կար Թագուհւոյն, իրենց ամուսնաց՝ տարբեր անուամբ[10], և Արմինդխտի վրայ, ամփոփ ու կախ Թիկունքն ի վայր մինչև ծնգները, և կ'աւարտի ծոպով մը։ Թերևս ասոր կ'ակնարկէ Ոսկեբերանի Թարգմանիչը՝ տարտամ բացատրութեամբս, «զարդուցն ռայք», որ արաբերենի մէջ ալ կայ դրօշի իմաստով[11]. և լաւ կը համեմատի Արմինդխտոյ դրօշանման մեկնոցին, և հայերէն դրօշակ քղանցին[12]։ Յետոյ նոյնը պճղնաւոր մուշտակի կը փոխուի՝

1. Ոսկ. Թղթ. Ա, 66։ — 2. Աստ՝ 32։ — 3. Եսթ. ԺԵ, 6։ — 4. Նոյն՝ Գ, 16։ — 5. John. 1347։ — 6. Աստ՝ 85։ — 7. Ոսկ. Թղթ. Ա, 66։ — 8. Ես. Գ, 24։ — 9. Ոսկ. Թղթ. Ա, 68. յն. «զգօտին»։ — 10. Աստ՝ 103։ — 11. Hüb. 275։ — 12. Աստ՝ 117։

երկար և անգործածելի թեզանեօք, դարձեալ նման իշխանականին, ինչպէս հագած է մեր Սահառունի տիկինը, և որ ունէր անշուշտ իրեն նմանող ուրիշ սեռակիցներ ևս։

Հոս ըսելու եմ՝ թէ մեր իշխանուհեաց տարազի այդ չորս մասանց նիւթերը շատ ազնիւ ու թանգ տեսակէ էին։ Փարպեցին զանոնք կ'որակէ՝ «կերպասեայ ոսկեհուռ զգեստք[1]», որոցմէ «զոսկեհուռն դիպակն» հայ տիկնայք կը բերեն նաև Հոփսիմեանց պատանաց համար[2]։ Գլխաւոր երկու նիւթերն են մետաքս և ոսկին, միասին՝ ինչպէս այդ օրինակաց մէջ, կամ զատ գործուած, որ իրենց տեսակի զանազանութեանց համեմատ, զորս դիւրին չէ ճշդիւ սահմանել, այլ և այլ կոչումներ ալ ստացած են հայ լեզուի մէջ, և որոց պիտի դառնամ յօդուածիս վերջը։

12. Կօշիկները մեր տիկնանց վրայ ևս տարբերելու են առնականէն, ինչպէս Անտիոքի մէջ էր[3], լինելով աւելի փափուկ և նուրբ։ Անոնց ճոխութեան ապացոյցը կը գտնենք Յուդթայ գրոց թարգմանչին մէկ շեղման մէջ, որ գեղեցիկ հրէուհւոյն կը հագցնէ «կօշիկս ոսկեզօծս», յատուկ հայ տիկնանց, փոխան անոր «սանդալներուն[4]»։ — Կօշիկն ունի իւր մասունքը՝ պէսպէս կոչումներով, որ են. կրունկ, և հակառակ կողմն առաջք, որոյ ծայրը կտուց կ'ըսուի, և սուր է, որով կօշիկն ալ սրակտուց. ստորոտը գարշապար է և նեղ, որով կօշիկը նեղագարշապար[5]. կայ նաև գարշապարին հոմանիշը՝ ներբանք[6]. իսկ առոր ու կրնկին մէջ կը գտնուի դատարկութիւն մը՝ խորշ կոչուած[7], կամ անկարուրդ[8], այսինքն տեղն՝ ուր կ'ընդհատուի կօշկին կարը։ Արմինդխտի կօշիկներն արդարև փոքր ի շատէ համաձայն են այս նկարագրին (Զև 48)։

Անցնելով մեր իշխանուհեաց մանր զարդերուն, զորս հանդիսական առթից մէջ իրենց վրայ կ'առնուն, պիտի տեսնենք անոնց

13. Ապարօշը, գործածուած Յուդթայ գրոց մէջ, ցոյց տալով կապուելու տեղն ալ նոյն տիկնոջ վրայ, «կապեաց զապարօշն ի ձակատ իւր[9]», բոլորովին հեռի բնագրէն և ըստ հայկական սովորութեան. և որ նոյն իմաստով թարգմանած է նաև յոյն χίταρις հոմանիշը[10] Ղևտացւոց վրայ, «ածցես նոցա ապարօշս[11]», ուր ածել՝ զօտւոյ և նմանեաց յատուկ է։ Արդ՝ այդ ճոխ երիզը կամ պարթևա-

1. Փրպ. 331։ — 2. Ագթ. 571։ — 3. Ոսկ. Մատթ. Բ, 707։ — 4. Ատ՝ Յուդ. ԺԳ։ — 5. Ոսկ. Թղթ. Ա, 68։ — 6. Եփր. Ա, 278։ — 7. Ոսկ. Թղթ. Ա, 68։ — 8. Յեսու՝ Թ. 5. յն. կի՛շոս=փորուած, գոգ. հմմտ. ծողովուրդ, կապուրդ։ — 9. Յդթ. Ժ, 3. յն. «եդ զխոյրն (մի՛տրան) ի վերայ նորա», որ է գլխոյն։ — 10. Տես առ՝ 64։ — 11. Ելս. ԻԹ, 9։

*ձայն[1] ապարօշը կը մեկնէր հայ տիկնոջ ճակատէն, և կը դառնար կը հանգուցուէր գլխին ետև, ինչպէս կը տեսնենք Ջարդխտի և Արմինդըխտի վրայ, որոց Թիկունքէն երկար ծայրեր ալ կը կախէ։ Այսպէս սոյն զարդս, իւր գործածութեան ձևով ծանօթ ուրարտեան շրջանէն[2], և ընտանի երբեմն Եգիպտուհեաց՝ պարզ կամ ասղնեգործ[3], և ուրիշ ասիացի կանանց[4], Հելլենուհեաց[5], Հռովմայեցի և բիւզանդացի տիկնանց[6], պէսպէս ձևերով, յաճախ ճակատէն աւելի լայն և կեդրոնը զոհարազարդ, հիմայ սեպհականութիւն է և հայ տիկնանց, որոնք զայն կը կրեն տան մէջ, ինչպէս մեր զոյգ Ջևերը ցոյց կու տան, և աւելի իրենց ընդունելութեանց առթիւ. որովհետև դուրսը քողով կ՚ելնէին։*

14. *Լանջազեղ կամարը, յիշատակուած Ոսկեբերանի Թարգմանչին յաւելուածին մէջ[7], և զատ մէջքի կամարէն. ինչպէս Ասանեթի պատմութիւնն ալ անոր երկու գօտի կու տայ. մին «ընդ մէջ իւր», և միւսն՝ «ի վերայ կրծոց իւրոց հանդէպ ստեանցն[8]»։ Նաև Երեմիայի Թարգմանիչը հրեայ օրիորդաց «լանջակապը» կը վերածէ «լանջազեղ կամարի[9]»։ Ոսկեբերանի մէջ պախճաւանդին հետ նոյն դերն ունի զարդս. միոյն ներքուստ և միւսին արտաքուստ. այն է «զըսպել» ու «պնդակազմ» պահել լանջքը, և միանգամայն իւր գեղեցկութիւնը փոխանցել անոր, ինչպէս յայտնի է անունէն։ Հոմերոսի քով ալ կայ այն, ուր Աստղիկ կը քակէ «ի լանջացն ասղնեգործ գոյնզգոյն գօտին», որ իւր հրապուրանաց զէնքն էր, և կը յանձնէ Հերայի՝ խաբելու համար զԱրամազդ[10]. և զոր հոմերական շրջանէն յետոյ յոյն ձևերու մէջ այլ ևս չտեսայ, մինչ ահա Հայուհիք կը պահեն։*

15. *Գոռշապահանգք (պրս. գոշ=ականջ և իրան. ուպահանգս =կախել ինչ[11]) կան դեռ հիմայ, և կ՚երևին միայն տիկնանց վրայ[12]։ Ասոր համար ս. Գրոց Թարգմանիչք սոյն բառով կը հայացնեն Երուսաղեմի ականջաց* τροχίσκος*=օղակը[13], և Յուդթայ* ἐνώτιον*= ականջանոցը[14]։ Որով չենք կարող Հ. Տաշեանի հետ նոյնացնել զայս ու գինդը[15]։ Բայց վերջինս ալ հաւասարապէս կը գործածուի հիմայ հայ տիկիններէն, ինչպէս յայտնի է Ոսկեբերանի Թարգմանչին ներմուծումներէս՝ կանանց համար. «գինդս[16]» կամ «զմարգարտեայ*

1. Hüb. 105, Թիր. 56։ — 2. Ա․․․՝ 20։ — 3. Pris. II, տխ. 2, 7, 15, 28, 45 են։ — 4. Նոյն՝ տխ. 47. Vig. I, 571։ — 5. Dar. I, 1360. Hot. I, տխ. 31։ — 6. Hot. տխ. 48, 68։ — 7. Ա․․․՝ 129 — 8. Պա. Ասան. 174։ — 9. Երեմ. Բ, 32։ — 10. Հոմ. Իլ. ԺԴ, տող 214 են։ — 11. Hüb. 129։ — 12. Հմմտ. ասա՝ 72, 96։ — 13. Եզեկ. ԺԶ, 12. Եփր. Բ, 306։ — 14. Յդթ. Ժ, 4։ — 15. Ուս. Դ. Հ. 514։ — 16. Ոսկ. Թղթ. Բ, 554։

*գնդովք[1]», կամ «չտենչանալ յոսկւոյ և ի մարգարտոյ գինդս յականջս[2]», և Եղիշէի բացայայտ վկայութենէն զոր տեսանք[3]: Տիկնանց համար չկայ այս զարդին վերապահութիւնը, որուն ենթարկուած էին իշխանք, արքունեաց հետ իրենց կապակցութեան պատճառաւ, որ տարբերութիւններ կը պահանջէր իրենց ու թագաւորին մէջ:*

16. *Քառամանեակ[4] (մանեակ ի քայռէ), կամ քայռ[5], քեառ[6] և քեռ'[7] կանացի վզնոցին կոչումներ են, զոր կը կազմեն ոսկին, գոհարն ու մարգարիտ՝ ըստ վկայութեան Ղազարայ զոր տեսանք[8]: Նոյնը կը հաստատէ Յուդթայ թարգմանիչն ալ, բետիղուացի դիւցազնուհւոյն վիզը պճնելով՝ հայ տիկնոջ պարանոցին գեղեցիկ զարդովը. «քայռս յականց պատուականաց ընդելուզեալս մարգարտով[9]»: Նման շեղումներ ունի Ոսկեբերանի թարգմանիչն ալ, յաւելլով տեղ մը՝ «զքայռամանեկօք[10]». այլուր՝ «այնպիսի քառամանեակս արկանիցես ընդ պարանոցդ[11]». և տեղ մ'ալ բնագրին «քառամանեկաց» տալով «ոսկի և ականակապ» մակդիրները[12]: Բոլոր ասոնք կը ցուցնեն զարդիս մեծ յարգը Հայոց մէջ:*



Ձև 49. Տիկին Սահառունեաց

17. *Ապարանջանք ինչպէս իշխանաց, հաճելի են և տիկնանց, որուն վկայեց Փարպեցին կանխաւ[13], և կը հաստատեն Ոսկեբերանի Թարգմանչին ներմուծումները, «կին հաւատացեալ գայ... զապարանջանօք[14]», և «մի՛ ապարանջանս ի ձեռս[15]»: Թերևս այս բառին մէջ*

1. Ոսկ. Թղթ. Բ, 556: — 2. Անդ՝ Ա, 894. յն. «մի՛ կախել ոսկեղէնս յականջս»: — 3. Աստ՝ 116: — 4. Երգ. Դ, 9. Ովս. Բ, 13. Եզեկ. ԺԶ, 10: — 5. Յդթ. Ժ, 4: — 6. Ոսկ. Թղթ. Ա, 894: — 7. Պտ. Աստ. 156: — 8. Աստ՝ 122: — 9. Յդթ. Ժ, 4. յն. լոկ «քայռ»: — 10. Ոսկ. Թղթ. Բ, 556: — 11. Անդ՝ 554: — 12. Անդ՝ Ա, 639: — 13. Աստ՝ 122: — 14. Ոսկ. Թղթ. Բ, 556: — 15. Անդ՝ Ա, 894:

կ'իմանայ մեհեանդքն ալ, զորս Ղազար սեպհական ցոյց տուաւ արանց ու կանանց միանգամայն[1]։

18. Փողկք մ'ալ կայ, որ Եսայեայ մեկնութեան մէջ կը թարգմանէ յն. χλιδώνը՝ հոմանիշ մեհեանդին։ Բայց սա և քօղէք միասին յիշուած բուն Եսայեայ մէջ[2], բնականապէս մի և նոյն բանը չեն կարող լինել։ Ոսկեբերան կը մեկնէ. «քլիդոն՝ անշուշտ ոսկեղէն զարդն զբազկօք», ուր հայերէնը, աղաւաղեալ գրչագրողէն, կ'ըսէ. «Փողկք՝ որ (արմկանց վերայ)[3] զոսկի ապարանջան ի տիգսն արկանեն». և ուր զատ են բուն «ապարանջանքն՝ որ ի դաստակ ձեռացն[4]»։ Յայտնի է ուրեմն՝ որ քօղէքը մեհեանդի նմանող զարդն է մերկ բազկաց վերև, որ կ'երևի՝ հին ազգերու մէջ։ Տեսանք Արշակունի թագուհեաց մերկաբազկութիւնը[5], որ կը յորդորէ զմեզ մեր տիկնանց վրայ ևս նկատել հանդիսական առթից մէջ. կամ թէ իմանալու ենք թեզանեաց անրանման զարդը նոյն տեղւոյն վրայ, որ կ'երևի մեր 43 Ձևին մէջ և այլուր։

19. Մատանիք և կշտապանակք[6] կը փայլին նաև տիկնանց մատներուն վրայ։ Ոսկեբերանի թարգմանիչն երկու տեղ կը յիշէ զաղոնք յաւելուածով՝ կանացի զարդուց մէջ. «մատանիս և կշտամբանակս[7]», և այլուր՝ առանց զանազանութեան՝ «զոսկւովք մատանեօք[8]», խօսելով մէկ կնոջ մասին, որ ահա մեկէ աւելի կը կրէ. ինչպէս Յուդիթ ալ կը դնէ «մատանիս[9]»։ — Ոտից թանկագին զարդերն ալ յիշուած տեսանք Փարպեցիէն՝ միանգամայն հայ. տիկնանց վրայ[10]։

Թէ մեր իշխանուհեաց ճոխութիւնն ոսկւոյ՝ քարանց ու մարգարտի մինչև ո՛ւր կը հասնէր, վկայ է Եղիշէի տեղեկութիւնը՝ թէ ուրացողն Վասակ արքունի հարկերը հատուցանելու համար՝ իւր հարց ստացուածոց հետ ստիպուեցաւ վաճառել «և զզարդս կանանց[11]», որոյ արտադրած գումարը թեթև բան մը լինելու չէ։ Միացնենք Սիւնեցի տիկնանցդ հարստութեան հետ այլոցն ալ, և պիտի ունենանք մերձաւոր գաղափար մ'անոնց համագումար պերճութեան։

20. Ինչ որ ըսի իշխանաց համար, հոս ալ պիտի կրկնեմ՝ թէ տիկնանց այս զարդուց մեծ մասն յատուկ էր հանդիսից և ընդունելութեանց կամ խնճոյից՝ զոր իրենք իսկ կու տային ազատաց[12]։ Եւ այն ժամանակ աղոնց վրայ կը յաւելուին ուրիշ հեթեթանքներ ևս. լուացումն օճառներով, օծումն անոյշ իւղերով, անուշահոտ նիւ-

1. Աստ՝ 124։ — 2. Ես. Գ, 20։ — 3. Փակագծի բաժանումն իմս է։ — 4. Ոսկ. Ես. 37։ — 5. Աստ՝ 79։ — 6. Տես աստ՝ 124։ — 7. Ոսկ. Թղթ. Բ, 554. կշտամբանակ նաև յՈսկ. Ես. 37։ — 8. Նոյն՝ Բ, 556։ — 9. Յդթ. Ժ, 4։ — 10. Աստ՝ 122։ — 11. Եղիշ. 108։ — 12. Ճաշեր. 123։

թերու բարձումն իրենց վրայ[1], որպէս զի աւելի փայլուն ցուցնէին իրենց հայկական գեղը, զոր կը նկարագրէ Ոսկեբերանի թարգմանիչը, հետագայ շեղագիր մասերովն ամբողջացնելով բնագիրը. «Աչս ծառխ. յօնս միակիցս. բիբս խարտեաչս, մեղմս, քաղցրահայեացս, ցածունս, հանդարտագոյնս... արտևանունս թոյրաթուխս, ներքոյ և արտաքոյ անտառախիտ մացառաձև զբբօքն պսակեալ... ճակատն պաղպաջուն. այտքն ի ներքոյ միահարթք, երկայնածնօտք, յղկեալք մարմարաձևք. կլափն բոլորակ. ունչքն պարզք (հարթ). շրթունքն հատարակ (իրարու հաւասար). ատամունքն սպիտակք. ամենևին գեղեցիկ, քնարին փայլուղ[2]»: Ագաթանգեղոս՝ Դիոկղետիանոսի որոնած կնոջ վրայ խնդրել կու տայ «պայծառակերպ հասակաչափ զգեղ երեսացն և զմրազարդ յօնիցն[3]»: Եւ այդ շնորհաց ժառանգորդաց մէջ կը յիշուին՝ Սիւնեցին փառանձեմ, «զորմէ կարի անուանեալ էր գեղեցկութեամբ և պարկեշտութեամբ[4]». և Մամիկոնեան Համազասպուհին, «սպիտակ մարմնով և պայծառ տեսանելոյն[5]». որով Եղիշէ իւր տառապեալ «փափկասուն տիկնայց» համար կ'ըսէ՝ թէ «սևացեալ ներկան մորթք մարմնոց նոցա[6]», որոց սպիտակութեան այնքան խնամք ունեցեր էին երբեմն:

Այդ բնատուր գեղոյն օժանդակ կ'առնուին ներկեր ևս, որոնք կրկին էին, սնգոյր և ծարիր. մին երեսաց համար, և միւսն յօնքերու կամ արտևանանց, զոր բոլոր աւելեք կը գործածէր, Ոսկեբերանի կշտամբութեանց ալ առիթ ընծայելով[7]: Սնգոյրը (պրս. շանգար[8]), գունով կարմիր, լօռ կոչուած ծովային բոյսէն կը հանուէր, զոր և կը թարգմանէ[9]. և ծարիր'[10] համանուն սև քարի փոշին էր: Ասոնց կիրարկման կ'ըսէին՝ «ի ծարիր ի և սնգոյր շպարիլ[11]»: Ոսկեբերանի թարգմանիչը ցոյց կու տայ ասոնց չափազանց գործածութիւնը Հայուհեաց կողմանէ՝ գրելով այսպէս. ոսկի զարդը նուազ անպատեհ է «քան զսնգոյրն ի յայտսն ծեփելոյ, զյօնսն հանելոյ (ներկով շինելու), և զծարիրն ի յաչսն ամանալոյ[12]»: Բայց աւելի կենդանի է Զգօնի թարգմանչին նկարագիրը Յեզաբելի անձին վրայ, որ նոյնպէս հայ կանանցն է. «բլիփ ածեալ (գիծ քաշելով) պաճուճեաց զանտառս արտևանանցն, և սևացոյց թխացոյց զմացառսն առ բբօքն. և սնգուրեցաւ յերփնաներկս (այտից վրայ), և լուսաւորեաց

1. Ճաշեր. 148: — 2. Ոսկ. Թղթ. Ա, 660: — 3. Ագթ. 112: — 4. Փաւս. 116: — 5. Նոյն՝ 178: — 6. Եղիշ. 156: — 7. Ոսկ. Թղթ. Ա, 38, 67, 659 ևն: — 8. Hüb. 238: — 9. Իմաստ. ԺԳ, 14: — 10. Երեմ. Դ, 30: — 11. Եզեկ. ԻԳ, 40. յն. լով «սևէիր զաչսդ»: — 12. Ոսկ. Մտթ. Բ, 466. յն. լով «քան զզոյնսն և զներկումն աչաց»:

զճականն սպիտակս[1]»։ Ներկուած ամբողջական է հոս, և կը կատարուի հայերէնն առջև[2], որոյ վկայութիւնը կը փնտռուի միշտ։

21. Հոս վայրկեան մը պիտի զննենք մեր տիկնանց հանդերձից պաստառները, որպէս զի կարենանք աւելի կատարեալ գաղափար մը կազմել անոնց զգեստուց ճոխութեան վրայ։

Եսայեայ Թարգմանիչը Սիոնի դստերաց, և Եզեկիելին՝ պճնասէր Երուսաղեմի հանդերձից նկարագրերը հայացնելու պահուն՝ կը հեռանան բնագրէն, և Այրարատի պերճուհեաց պաստառները կը խմբեն, և անոնց սահմանները կու տան մեզ՝ հետագայ տողերու մէջ։ Եսայի. «Հանցէ Տէր զփառս հանդերձից նոցա... զդիպակս և զձեղանակս,... զբեհեզն և զերկնագոյն և զկարմիր շղաշատեան և զձամկալսն և զոսկեձամոյկն և զոսկետառսն[3]»։ Եզեկիէլ. «Ագուցի քեզ զերկնագոյնն, և ածի ընդ մէջ քո բեհեզ, և արկի զքև սնդուս... և հանդերձ քո բեհեզ և զառնաւուխտ և ձաձանաւուխտ[4]»։ Եփրեմ կը կրկնէ զայս. «Արարի զհանդերձս քո բեհեզս, և զզարդս քո ի սնդուս զառնաւուխտ և ճաճանաւուխտ[5]»։ Եզեկիէլ կրկին. «Բեհեզ ընդ դիպակի գործեցաւ քեզ ի պաստառս յԵգիպտոսէ՝ արկանելիք քեզ ի փառս[6]»։ Բոլոր շեղագիր բառերը անկախ են բնագրէն, յաւելուած կամ փոփոխեալ և յատուկ հայերենի, որով և հայ տարազին սեպհականք. իսկ միւսները՝ հասարակ մեզ և այլոց։

Ամփոփելով իրարու մօտ, կ'ունենանք պաստառներ, որոց նիւթ կը կազմեն ազնիւ կտաւներ՝ որ կը կոչուին բեհեզ (յն. βύσσος[7]), և մետաքսեայք՝ որ կերպաս[8] (պրս. կիրպաս[9]) կ'ըսուին։ Սնդուս (պրս. սունդուս[10]) կերպասին մէկ նուրբ տեսակն է, որով Եզեկիելի մէջ զարդուած բեհեզէն։ Իսկ երկուքին ալ նուրբը՝ խառն շղաշ կամ տեառ անունը կը կրեն, հասած մեզ շղաշատեառ կամ շարգաշատեառ[11] բարդին մէջ, որով հայ Թարգմանիչը կը զարդարէ և զՑուղիթ՝ փոխան անոր «կտաւի հանդերձին[12]»։ Բայց տեառն ալ (լծ. յն. θέρος =ամառն բառին) կը գործածուի՝ նշանակելու իւրմով շինուած հանդերձի մէկ կամ միւս մասը[13]. և կը Թարգմանէ յն. θέριστρον (ամառնոց) բառը, որ կը նշանակէ ջերմ եղանակին յարմար նուրբ և ազնիւ պատմուճանը՝ հետագայ վկայութեանց մէջ. Թամար «արկաւ տեառ և զարդարեցաւ», որ քիչ յետոյ «ձորձ» ալ կը Թարգմանուի[14].

1. Ջրօն, 336. բն. լոկ «զարդարեցաւ». Հ. Վարդանեան ի Հանդ. Ամս. 1923, 426. — 2. Ագթ. 504. — 3. Ես. Գ, 18, 21-23. — 4. Եզեկ. ԺԶ, 10, 13. — 5. Եփր. Բ, 305. — 6. Եզեկ. ԻԷ, 7. — 7. Hüb. 392. — 8. Եւթ. Ա, 6. Վեցօր. 177. — 9. Hüb. 168. — 10. Նոյն՝ 238. — 11. Ոսկ. Ես. 37. — 12. Ցղթ. ԺԶ, 11. — 13. Աստ՝ 103, 129. — 14. Ծննդ. ԼԸ, 14, 19. հմմտ. աստ՝ 7.

և կամ՝ «Հռեբեկայ մի միայն տեսն բաւական եղև ի զարդ[1]»։ Ասկից յառաջ կու գայ տեառագերծ առնել[2], որ է մերկացնել՝ կողոպտել. և տեռատես[3], որ է հանդերձը հոգացող՝[4] ախտային պատճառով. քողարկեալ բացատրութիւն մը։ Կատարելապէս հոմանիշ է տեռին և խոյր իբր հանդերձ (պրս. խոյր=շքեղ հանդերձ), որ կը թարգմանէ յիշեալ յն. θέριστρονը[5]. և Փիլոնի թարգմանիչը Ռեբեկայի պարագային[6] կը գործածէ նոյն հայերէնը՝ մի և նոյն յունարէնի դէմ, տալով նաև անոր սահմանը. «Նշանակ է խոյրն երևելի՝ բափանցանցայոյս առաքինութեան[7]». այսինքն թէ առաքինութեան պէս նուրբ ու թափանցիկ էր։ Երկու հոմանիշերդ այս իմաստով իրարու հետ ալ կը բարդուին տեղ մը. «զարտաքին խոյատեսս լակոնացիս[8]», փոխանակ «զերևելի (յն. թափանցիկ) լակոնացին[9]»։

Պատառի երկրորդ դասակարգը կը կազմէին գունաւորները։ Ասոնց մէջ ամենէն պարզն է «երկնագոյն սպիտակն իբրև զձիւն», և շատ յարգի Հայոց մէջ[10], նոյնպէս և Հրէից՝ ինչպէս վերև։ Հաճելի են անոնց և ճկարէնք[11] կամ ձամկաւորք[12], որոց վրայ նկարուած են ձամոյկք[13] (պհլ. ձամակ=կիտուած կամ զարդ[14]), մեր քով երանգոց նշանակութեամբ, ուսկից է բացատրութիւնս. «ազգի ազգի դեղքն ընդ միմեանս ի ձամոյկն մտեալ» որմերու վրայ[15], կամ սիրամարգի «բազմաձամոյկ տուտնն[16]»։ Ջգօնի թարգմանիչն իւր կողմէն կը զարդարէ զԹեզաբէլ՝ հայ տիկնանց նման՝ «ի ճարօտս երփնագոյնս[17]», որ կը նշանակէ պէսպէս գոյներ։ Գիտենք՝ որ անտիոքացւոց կերպասուց վրայ կը նկարուէին նաև «գազանակերպ ինչ պատկերք[18]», որ Հայոց ալ անծանօթ լինելու չեն. ս. Շուշանկան վրայ յայտնապէս կը յիշուի «պարեգօտք անտիոքացի[19]»։ Գոյներու և մետաքսի շողիւնը միացած՝ կը ստեղծեն ձաձանաւոյխոյր (հյ. ձաձանչ և պրս. տաոյխտ=հիւսուած արմատներէն[20]), որ կը թարգմանէ յն. πιχίλοςը (ներկեալ, գունաւոր), և Եփրեմի վկայութեան մէջ ածական է անդուսին, իբրև ասոր մէկ տեսակը։

Երրորդ դասը կը կազմէին ոսկեխառն պաստառները, — սովորաբար ոսկին կերպասի հետ կը զուգուէր[12], և երբեմն ալ բեհեզին[22],

1. Ոսկ. Թղթ. Ա, 664։ — 2. Կողբ. 162, ևն։ — 3. Մատթ. Թ, 20. յն. արենահոս, — 4. Հմմտ. տեռատես ևն։ — 5. Երգ. Ե, 7։ — 6. Ծննդ. ԻԴ, 65 «զձորձս»։ — 7. Փիլ. Մնց. 353։ — 8. Ոսկ. Ես. 37։ — 9. Ես. Գ, 20. — 10. Ագթ. 571։ — 11. Եւս. ԻԸ, 16, ևն։ — 12. Ոսկ. Թղթ. Բ, 554։ — 13. Ոսկ. Մատթ. Բ, 706։ — 14. Թիր. 261։ — 15. Ոսկ. Թղթ. Ա, 465։ — 16. Անդ՝ 429։ — 17. Զգօն. 356. հմմտ. Հ. Վարդանեան ի Հանդ. Ամս. 1923, 426։ — 18. Ոսկ. Մատթ. Բ։ 706։ — 19. Սոփ. Թ, 32։ — 20. Հմմտ. Թիր. 158։ — 21. Ասա՝ 117, 113։ — 22. Ասա՝ 110։

*— որոնք կը կոչուէին դիպակ[1] (պհլ. դեպակ=ոսկեհուռ հանդերձ[2]), և որոյ իմաստը զգալի է նաև այս բացատրութեանց մէջ. «ոսկեհուռ դիպակին[3]», կամ «ոսկեհուռ դիպակագործ պատմուճանիդ[4]»: Կայ նաև զառնառուխտ (պրս. զառ=ոսկի և առուխտ=հիւսուած արմատներէն[5]), որ է ոսկեհիւս, և Եփրեմի քով ածական է սնդուսին. և ոսկեձամուկ, որ կը նշանակէ ոսկեգոյն. և անորոշ ձեղանակը, որ կը հնչէ պրս. ձիլինկը, «տեսակ մը կերպաս ոսկեղէն կամ արծաթեղէն՝ կամ ոչ[6]»: Մերթ ոսկեհիւս կ'ընէին ստորոտը միայն, և կ'ունենային ոսկետառուն հանդերձը, որ չկայ Եսայեայ յն. բնագրին մէջ:*

*Ինչպէս Հրէից և ուրիշ ազգերու, անտարակոյս Հայոց ալ ծանօթ էին ասղնագործ զարդարանքը, զոր կ'ընէին պէսպէս գոյներով «պարեգօտին[7]» և այլ հանդերձից վրայ:*

## Թ. ԻՇԽԱՆՈՐԴԻՔ

*Նախարարաց զաւակները մատաղ հասակին մէջ զանազանութիւն մ'ունէին իրենց ծնողաց հանդերձի ձևէն. և այդ տարբերութիւնը կը կայանար հետագայ քանի մը մանրամասնութեանց մէջ:*

*Ա. Իշխանորդիք[8]: — Փաւստոս կ'աւանդէ՝ թէ «ըստ մանկութեանն օրինի, ըստ կրօնից (սովորութեան) Հայոց»՝ մանկանց գլուխները կը սափրէին շուրջանակի, և գագաթէն կը կախէին ցիցեր[9] կամ հիւսակներ և գէս՝ խառն. այսպէս էր Մամիկոնեան Արտաւազդ պատանին՝ դեռ «անմուրուս», որոյ «գերծեալ էր զգլուխ... և ցցուն էր թողեալ և գէս[10] արձակեալ[11]»: Գերծման սովորոյթն ուրիշ ասիացի ցեղերէ ոմանց մէջ ալ կ'երևի. Խազրաց իշխանը 627ին ասպատակութեան պահուն իւր բանակին մէջ ունէր զանազան ազգեր «գլխագերծաց և գիսաւորաց[12]»: Ձենոբայ գրոց խմբագրիչը՝ խօսելով Հայոց ի քրիստոնէութիւն դարձին վրայ, կ'ըսէ՝ թէ Գիսանեայ քրմերը կեղծեօք դարձած, կը սահմանեն «ծամ միայն թողուլ ի գլուխ մանկանցն», որպէս զի յիշեն իրենց անցեալը. ուսկից կը զգուշացնէ ժողովուրդը, որպէս զի «մի՛ լինիջիք, կ'ըսէ, ընդ անիծիւք[13]»: Է դարու գրչիս այս տեղեկութեան և ընդդիմութեան մէջ կ'ախորժիմ տեսնել աւելի իւր ժամանակի սովորոյթն ու հոգին,*

1. Աստ՝ 131: — 2. Թիր. 144: — 3. Ես. Գ, 24: — 4. Ոսկ. Ես. 38: — 5. Թիր. 158: — 6. John. 435: — 7. Ելք, ԻԸ, 16. Բ Թագ. ԺԳ, 18: — 8. Մամ. 52, 57: — 9. Աստ՝ 114: — 10. Պրս. գէս=երկար մազ. Hüb. 127. — 11. Փաւս. 252-3: — 12. Կաղ. 105: — 13. Զեն. 36:

որ յառաջ կու գար արանց գիսաւորութեան նուազութենէն, որոյ մասին պիտի խօսիմ Ը գլխոյն մէջ։

Տնէն դուրս իշխանորդիք ալ բացագլուխ են՝ նման իրենց հարց ու ժողովրդեան. որով Մանուէլ Մամիկոնեան կրնար բռնել իւր բանակին մէջ՝ յիշեալ Արտաւազդ պատանին, և «տանջել զմերկ գլուխն» անոր[1]։ Այսպիսի գլուխներ անշուշտ վարսակալի ալ անկարօտ էին, մինչև որ մեծնային, և կամ իրենց վաղավախճան հօր տեղն անցնելով՝ ընդունէին անոր վարսակալը[2]։

Պատմուճանին վրայ, որ չէ յիշուած՝ բայց բնական է թէ կար, ունէին մեկնոցը, որուն կ՚ակնարկէ Ղազար՝ յիշեցնելով Վահանայ իւր սննդակցութիւնն անոր ու եղբարցը հետ, և «կրելով, կ՚ըսէ, ի խաղու զարկանելիս[3] ձեր զկնի ձեր[4]», զորս կ՚առնուին տնէն դուրս, և զբօսանաց պահուն կը հանէին։ Զայս նկատելու ենք նաև ռամիկ տղայոց վրայ՝ նման չափահասից։

Եփրեմի Թարգմանիչն ունի յաւելուածս՝ թէ Յովնանու քարոզութեան ժամանակ՝ Նինուէացւոց «անմեղքն (որ են մանկունք) մատուցին զմանեակս իւրեանց» մարգարէին[5], ինչ որ կը պակասի լատին Թարգմանութեան մէջ[6]։ — Զգիտեմ՝ թէ իշխանորդիք սուր ալ կը կրէին արքայորդւոց նման[7]. թէև յայտնի է անոնց սուսերածգութեան վարժութիւնը, զոր ցոյց կու տայ վերոյիշեալն Արտաւազդ և ուրիշներ։ Հանդերձի միւս մասերը նոյն էին հայրենի տարազին հետ։

Բ. Օրիորդք[8]։ — Ասոնց կամ «մեծամեծացն դստերաց[9]» գլխաւոր զանազանութիւնը կը կայանայ պատմուճանին մէջ։ Այս տեղեկութիւնը կը պարտինք դարձեալ Ոսկեբերանի Թարգմանչին, որ տեղ մը՝ ուր բնագիրը բիւզանդացի օրիորդաց կը զգեցնէ «կտաւս ազնիւս և փափուկս», ինք զայն կը փոխանակէ հայ օրիորդաց հագածով. «Շապիկս բարակս ճամկաւորս, ուռովք գնդովք պճնեալք[10]»։ Շապիկ՝ պատմուճանին ռամկական կոչումն է. և ճամկաւոր է, այս ինքն զունազեղ։ Ունի իւր վրայ ուռեր կամ ցցեր, երկուքն ալ հոմանիշք՝ առանց շաղկապի. և կը նշանակեն ուռուցիկ գնդաձև զարդեր՝ կցուած ստորոտին, նման անոնց որ կ՚երևին մեր 36 Ջևին մէջ։ Միանգամայն կը հետևի՝ որ շապկին երկարութիւնը չափաւոր էր՝ ցուցնելու համար գնդերու շարքը, և ոչ գետնաքարշ՝ իւրենց մարց պատմուճանին նման։ Այս զանազանութիւնը կը զգացնէ ս. Գրոց Թարգմանիչն ալ, Թագաւորաց կոյս դստերաց պարեգօտին տալով

1. Փաւս. 253։ — 2. Աստ՝ 115։ — 3. Նոյնպէս և ի Նեեմ. Ե, 13. յն. անաբոլի = վերարկու։ — 4. Փրպ. 572։ — 5. Եփր. Դ, 121։ — 6. Assem. III, 568։ — 7. Չմմտ. սատ՝ 104։ — 8. Փրպ. 162։ — 9. Ագթ. 571։ — 10. Ոսկ. Թղթ. Ա, 814։

կոճկեն մակղիրը[1] (յն. χαρπωτός=դաստակաւոր, Թեզանիքը ձեռաց դաստակին համնող[2]): Իւր արմատը կոճ՝ Ե դարուն կրկին իմաստ ունի. դրան կողմնական սեմերը[3], որ հեռի է մեր նիւթէն, և ոտից համանուն ոսկրը[4]. որով կոճկենը պէտք է իմանալ կոճերուն հասնող, ինչպէս էր հայ օրիորդացը՝ զոր կը նկատէր Թարգմանիչը. և հոմանիշ է պճղնաւորին[5], որ կը նշանակէր մինչև պճղունքն իջնող:

Փարպեցին կը յիշատակէ օրիորդաց ուրիշ զարդ մը, ոչ առանձնայատուկ, բայց ուշագրաւ իւր ճոխութեամբ. «ձիտակս և կամ գտակս ինչ մարգարտոյ կարի մեծագնոյ», զոր հարք և մարք կը շինեն, կ'ըսէ, «յանուն նոցա», անոնց իբր յիշատակ մնայուն, և «մեծաւ աշխատութեամբ», և զոր անոնք իրենց վրայ կը պահեն միշտ[6]: Կրկին են աղոնք և ըստ կամս. ձիտակ (հմմտ. պրս. ձիտ=գեղեցիկ վիզ, ձիտա=գեղեցկավիզ[7]), որ է պարանոցին զարդ, ինչպէս ոսկի քառամանեակը. և տակ կամ շար մարգարտաց, ուսկից է Խորենացւոյն երեքտակեն բարդը[8]: Միւս մասերով օրիորդք հաւասար կը զգենուին իրենց մայրերուն:

## Ժ. ՌԱՄԻԿԸ

Հայ ժողովրդեան տարազը կը գտնենք նոյնպէս մեր ազգագրական գանձատան՝ Փաւստոսի քով: Սա կու տայ նկարագիրն երիտասարդի մը, որ կը հանդիպի աղուաշ Ցոհան եպիսկոպոսին[9]: Եւ էր ռամկական ոմն, «պատանի մի աշխարհական», արդէն ամուսնաւոր, անկնիք ու տգէտ, մանաւանդ «խառնագնաց» մը, որ «գայր Թերևս յաւազակութենէ». պարզապէս շինական մ'է՝ որ իւր «գիւղը» կը դառնար: Բայց բարեկեցիկ է, նշան՝ գեղեցիկ ձին, որ եպիսկոպոսին ցանկութիւնը կը շարժէ: Եւ կը պատահի «ի ճանապարհի», հետևաբար իւր տարազին ամբողջութեան մէջ, որ հեռի է լինելէ «լոկ զգեստ յանձին, հողաթափ յոտս և ծածկոյթ ի գլուխն», ինչպէս համարեցաւ Հ. Տաշեան[10]: Ցոյց տուի կանխաւ հայ ու պարսիկ հանդերձից հաւասարութիւնը. կը տեսնենք զայդ հիմայ, մեր դիմաց ունենալով նաև 50 Ջևի պարսիկ զօրաց տարազը, որ ըսինք Թէ ժողովրդականէն զգալի կերպով չէր զանազաներ[11]:

1. Վարսերն երկայն են նաև ռամկին վրայ, ինչպէս Պարսիցն

1. Բ Թագ. ԺԳ, 18, 19: — 2. Alex. 733: — 3. Եզեկ. ԽԱ, 2, 3: — 4. Գա. Աղ. 54: — 5. Ելք, ԻԵ, 7. ԻԸ, 39 են. Փաւս. 263: — 6. Փրպ. 263–4: — 7. John. 447: — 8. Աստ՝ 83: — 9. Փաւս. 266-7: — 10. Ուս. Պ. Հ. 601: — 11. Աստ՝ 91:

ալ «երկար ու ձաղկ» կը նկարագրէ Ամմիանոս[1], և մեր Ջևին մէջ կ'երևին փոքր ի շատէ։ Մեր երիտասարդը շատ խնամած է զանոնք. «յուացեալ զհերս իւր, օծեալ, ներձեալ», այսինքն մարձեալ, կոկած, առանց ուրիշ ձևեր տալու։ Տնէն դուրս ելնելու ժամանակ չեն մոռնար այդ խնամքը, թէև աւազակութեան իսկ երթային։ — Մօրուքն ալ անպակաս է ամէն Հայու վրայ։ Ջուիթ երիցու մօրուքը սկսեր էր անոր «հնգետասան» տարիէն, և անխախտ մնացեր[2]. այս պատճառաւ Արտաւազդ պատանին Մանուէլի բանակին մէջ իսկոյն աչքի զարկաւ իւր «անմուրուս» երեսով[3]։

2. Վարսակալն ընդհանրացած էր նաև ժողովրդեան մէջ, որոյ համար մեր երիտասարդը «վարսակալ եդեալ (էր) ի գլուխ իւր», և զոր անոր երկար թողուած վարսերն իսկ կը պահանջէին։ Իւր կոչումը, տարբեր ազնուականէն[4], ապացոյց է իւր անշքութեան։ Բաց աստի ուրիշ գլխանոց չունի երիտասարդը. ասոր համար ակներև ու դարմանուած են իւր մազերն ու վարսակալը, որոնք փակ գլխի վրայ անտես պիտի մնային ժողովրդէն ու պատմչէն։ Մեր 50 Ջևի Պարսիկներն ալ գլխաբաց են, և անոնց ազդեցութեան պտուղն է Հայոց այս հրաժարումը նախկին շրջանի գլխանոցէն։

3. Պարեգօտը (լծ. լատ. paragaudis=զգեստ երիզաւոր[5]) ռամկի շապկին անունն է, նիւթին պարզութենէն գոյացած, զոր պատմիչն աւելորդ կը համարի յիշել երիտասարդին վրայ, ներսն ու դուրս սովորական լինելուն համար. և կը հասնի ծնկներէն վեր, ինչպէս նախորդ շրջանին և 50 Ջևի Պարսկաց վրայ։ Մեր նախնիք կը զատեն զայս ազնուականէն, յն. χιτὼν բառը պատմուճան թարգմանելով իշխանաց և Յիսուսի վրայ[6], ու պարեգօտ՝ Ահարոնի պատմուճանի ներքնակին[7] և առաքելոց վրայ[8], ըստ որում ասոնք անշուք էին։ Վերջինս ունի իւր շապիկ հոմանիշն ալ, աւելի ընտանեկան կոչում, որ կը թարգմանէ մի և նոյն յունարէնն Աւետարանի մէջ[9], և զոր Ոսկեբերանի թարգմանչին յստակախօսութիւնը պարեգօտ կ'ըսէ հոն[10] և ուրիշ շատ տեղեր[11]։ Նոյն հոմանշութիւնը կը շեշտուի նաև Եփրեմի թարգմանչէն, երբ կ'ըսէ՝ թէ Յակոբ իւր Յովսեփայ շինեց «շապիկս թեզանեօք. բայց հեբրայեցին՝ շապիկս նկարէնս ծաղկեայս, այսինքն պարեգօտս[12]», ուր ս. Գրոց թարգմանիչը պատմուճան կը կոչէ՝ գեղեցկութեան պատճառաւ[13]։ Այս է ուրեմն մեր շապկին իմաստը,

1. Amm. XXIII, 6։ — 2. Փաւս. 174։ — 3. Նոյն՝ 254։ — 4. Աստ՝ 115։ — 5. Hüb. 227։ — 6. Յղթ. ԺԴ, 17. Յհ. ԺԹ, 23։ — 7. Ելք, ԺԹ, 5։ — 8. Մրկ. Զ, 9։ — 9. Մտթ. Ե, 40. Մրկ. Զ, 9. Ղկ. Զ, 29։ — 10. Ոսկ. Մտթ. Ա, 243, 287։ — 11. Ոսկ. Թղթ. Ա, 453, 455, 456։ — 12. Եփր. Ա, 103. և պարեգօտ՝ 113, 114 են։ — 13. Ծննդ. ԼԷ, 3 են։

*զոր բիւզանդացիք ալ իրենց* χαμίσιον*-ին (շապիկ) ընծայեցին*[1], *թէպէտ պհլ. շապիկ՝ այժմեան նշանակութիւնն ունենայ, և պրս. շապի՝ գիշերային կամ գիշերազգեստ նշանակէ*[2]: *— Կարծեմ՝ թէ Հրէից ժողովրդեան*[3] *և մեր ազնուականաց պէս՝ հայ ռամիկը ներքնակ պարեգօտ մ'ալ ունէր, գէթ ձմրան ցրտին դէմ:*

4. *Գօտին կայ Փաւստոսի երիտասարդին վրայ, Ոսկեբերանէ սահմանուած «փոկեայ գօտի*[4]*», ինչպէս լինելու է և մեր քով: Բոլոր Հայք գօտևոր էին, ըստ այլաբանական ակնարկութեան Եղիշէի. «Միով գօտեաւ ճշմարտութեան պնդեցին զմէջս արք և կանայք*[5]*». և ուր պնդեցին՝ անգամ մ'ալ կը հաստատէ գօտւոյն նպատակը, և արդիւնքը՝ որ է հանգրիձել, ինչ որ «մատուցանէ ոլոքացն զդիւրաւ շարժմունս*[6]*»:*

5. *Վարտիքը, ամփոփ ստորոտով, ինչպէս կ'երևի Պարսից վրայ, և կօշիկը, որուն կ'ակնարկէ Յաճախապատումն այլաբանօրէն, «ամրացեալ պահպանական կօշկօք առաքինութեան*[7]*», սովորական էին և ռամկին:*

6. *Մեկնոց մը՝ կը կազմէ նաև անոր արտաքին հանդերձը, յիշատակուած Փաւստոսի երիտասարդին վրայ. «օդիկ արկեալ զուսովք իւր», և ապա՝ թէ Յոհան կը հրամայէ «լուծանել զհանգոյցս մեկնոցին»: Վերջին բառիս իմաստը յայտնի է. մեկնելու, տնէն ելնելու զգեստ: Իսկ օդիկ հոմանիշն ուղղելի է ըստ իս յօդիկ, քան Հայկազեանի հետ իմանալ օդւոյ կամ ոչխարի մորթ, որ ունի արդէն իւր յատուկ ձևը՝ օդենի*[8]*, զոր կը վաւերացնեն գառնենին, գայլենին և այլն, բայց օդիկը՝ ոչ: Էր «արկեալ զուսովք», ինչպէս իշխանական զրատքը, և երկու հանգոյցք զայն կը բռնէին՝ կապտելով լանջաց վրայ: Իրանեան քանդակի մը մէջ, որ կը ներկայացնէ որսական տեսարան մը, բոլորը կը կրեն այս թիկնոցը, որ կը ծածկէ՝ ուսոց վերին մասն ու թիկունքը, և երկար կապով մը կը բռնուի վզին շուրջ*[9]*: Ամմիանոս կը տեսնէր զայս նաև Դ դարու Պարսից վրայ, որ «դէպ յետ կոյս կը ծփայ, կ'ըսէ, հովէն, բաց թողլով կուրծքն ու կշտերը*[10]*»: Այսպէս էր հայկականն ալ, ինչպէս կը պահանջէր տարազուց նմանութիւնը:*

*Մեկնոցին ուրիշ հոմանշեր ևս կան: Կրկնոց, կազմութեամբ և իմաստով նոյն յն.* διπλοΐδα *բառին հետ՝ զոր կը թարգմանէ*[11].

1. Grün. 130: — 2. Hüb. 211: — 3. Մրկ. Զ, 9: — 4. Ոսկ. Թղթ. Ա, 926: — 5. Եղիշ, 11, 51: — 6. Փիլ. Մնց. 462: — 7. Յճխ. 123: — 8. Ադթ. 93: — 9. Masp. III, 597: — 10. Amm. XXIII, 6: — 11. Ա Թագ. Բ, 19. ԺԵ, 27. ԻԸ, 14. Յոբ, ԻԹ, 14. Բարուք, Ե, 2:

*և կիւրղի քով կրկին ձև ունի. «կրկնոցակ մի զիւրեաւ ունէր... բաժանէին զկրկնոցն[1]»։ Բայց Թարգմանութեանց մէջ աւելի հայաբար կը գործածուի մեկնոցը՝ աղոր[2] և այլ յոյն հոմանիշերու դէմ[3]։ — Կայ թաձկոնն ալ, շատ անգամ գործածուած[4] և աւելի ժողովրդական. և տեղ մը խառն ուրիշ հոմանիշի մը հետ. «զթաձկոն ընկերի քո... այն է վերարկու նորա[5]», որոց վերջինս կայ իբր մեկնոց նաև առանձինն, նիւթական Թարգմանութեամբ յն.* περιβόλαιον[6]. *և կամ ածականաբար՝ «զհանդերձս վերարկուս[7]», այսինքն մարմինը ծածկող. ըստ որում ընդհանուր ծածկութի իմաստ ունի բառս[8], մինչև իսկ անկողնոյ[9], նման իւր միւս հոմանիշին՝ օրոցի, որ բաց յայլոց՝ մեկնոցի նշանակութիւնն ալ ստացեր է տեղ մը. «արկար (վրադ առիր) զլոյս որպէս զօրոց[10]»։*

7. *«Սուսեր ընդ մէջ և բոյր զգօտւոյ» կ'երևի Փաւստոսի երիտասարդը, ճիշդ Դղակ մարդպետի ոճով[11]. ինչ որ խորհել կու տայ ինձ՝ թէ զանոնք կրելուն պատճառ լոկ իւր ուղևորութեան նպատակը չէր, այլ սովորութիւնն իսկ, որ այնքան արմատացած ազնուականութեան մէջ, դժուարաւ կրնար չթափանցել ժողովրդեան մէջ ևս, որոց զէնք ունենալն իսկ ապացոյց մ'է կրելուն զայն, ինչպէս ընդհանուր սովորութիւն էր և Պարսից, ըստ Ամմիանոս[12]։*

ԺԱ. ՌԱՄԿՈՒՀԻՆ

*Մեծապէս կը տարբերէր տիկնոջէն իւր հանդերձով, թէ ըստ որակի և թէ անոր մասանց ու զարդուց թուով. և իւր հագածին պարզութիւնը զայն կոչել կու տայ երբեմն պարզապէս հանդերձիկ[13] և կամ զգեստիկ[14]։ Ասոր կրկին օրինակներ ունինք ժամանակիս պատմութեան մէջ. Ուշտունեաց Համազասպուհի տիկնոջ դայեակը, որ ռոսկական կին մ'է[15]. և Եղիշէի տիկնայք յետ պատերազմին, ուր պատմիչը զանոնք կը նմանեցնէ «շինական» կանանց, որոց հաւասար կեանք մը կը վարեն. ձեռագործով կը պատրաստեն իրենց օրապահիկը, և կը հագնին իրենց նաժշտաց պէս. «մի հանդերձ*

1. Կիւր. Ընծ. 258։ — 2. Եփր. Ա, 359, 374, 380։ — 3. Հոբ. Գ, 15, կանանց վրայ. Եզեկ. Ե, 3։ — 4. Մաթ. Ե, 40. Ղկ. Զ, 29. Ոսկ. Մաթ. Ա, 290. Եփր. Ա. 114. Եղիշ. 183։ — 5. Ելք. ԻԲ, 26։ — 6. Անդ՝ 27։ — 7. Ոսկ. Մաթ. Ա, 706։ — 8. Սիրաք, ԼԱ, 19։ — 9. Եղիշ. 134։ — 10. Սղմ. ՃԳ, 2։ — 11. Աստ՝ 121։ — 12. Անդ։ — 13. Ոսկ. Թղթ. Ա, 671. Բ, 552 ևն. Ագթ. 155։ — 14. Ագթ. 150։ — 15. Փաւս. 178։

*էր հասարակաց[1]»։ Բայց դժուարին է ընդհանուր խիստ սահման մը դնել ռամիկ կամ շինական կանանց տարազին, որոց տնտեսական վիճակը կարող էր նաև արդուզարդի փոփոխումներ յառաջ բերել։ Սակայն և այնպէս պիտի ուրուագրեմ անոր մերձաւոր նկարագիրը։*

*1. Հերք՝ նուազ խնամք վայելելու չեն ժողովրդական կանանց վրայ, որոց սրտին մէջ աւելի զօրաւոր էր զարդասիրութեան զգացումը, քան թէ արանց՝ զորս տեսանք օծուած ու մարձուած գլխով։ Արդարև Մակարայեցւոց Թարգմանչին մէկ յաւելուածը, «զիւղաթուրմ ցցունսն» հարսանց[2], կը զգացնէ՝ թէ հայ մանկամարդները սովոր էին հիւսակներ կախել իրենց գլխէն, ինչպէս կը նշանակէ այդ բառը[3]։ Բայց աւելի յաճախեալ է վարսերն արձակ թողլու դրութիւնը. որով և վերոյիշեալ տիկնայք «չյարմարեցին սանդրով զհեր գլխոյ իւրեանց». այսինքն չզարդարեցին՝ ինչպէս յառաջ կ'ընէին, և «չօծան իւղով[4]»։ Եւ յետ երկու դարուց Կաղանկայտուացին Խազրաց զօրքը կը նկարագրէ «ի ձև իգական գիսարձակս[5]»։*

*Կանայք ալ իրենց ապարօշն ունենալու են, ինչպէս այրերը վարսակալը, մանաւանդ արձակ վարսերն ամփոփելու համար։*

*2. Թագը կամ գդակը[6] կայ անոնց գլխին, և տան մէջ անգամ, ինչպէս կ'իմացնէ Ոսկեբերանի Թարգմանիչը։ Ուր հայրապետը կը խօսի ցասկոտ տիկնանց, որոնք նաժշտաց գլուխը կը մերկացնէին ու ծամերէն կը քաշէին, և կ'ըսէ՝ թէ դուք նախատինք պիտի համարէիք ձեզ՝ եթէ նաժիշտը «մերկագլուխ» տեսնէիք, Թարգմանիչը կը գրէ «քաղաքափ[7]», ցուցնելով հայ աղախնաց՝ որով և ռամիկ կանանց՝ թագ կրելը միշտ։*

*3. Պարեգօտքը կանացի հանդերձին ալ կոչումն է, և ձևով միշտ պճղնաւոր, ինչպէս տեսանք Փաւստոսի մէկ ակնարկութեան մէջ[8]։ Սովորականն էր այս, որոյ վրայ կ'առնուին տնէն դուրս երկրորդ մ'ալ, յիշուած նոյն պատմչէն՝ Համազասպուհւոյ դայեկին վրայ. «Ագաւ պարեգօտ մի՝ զոր անակիղս կոչեն»։ Այս վերջինս յունարէն ἀνάχωλος բառն է, որ կը նշանակէ անսրուն. այսինքն պարեգօտ՝ որ մինչև ծնկները չէր հասնէր[9]. տիկնանց ծանօթ մեներանին համազօրն է։ Ամենօրեայ չէր ոչ մին և ոչ միւսը, ինչպէս և ոչ Հելլէնուհեաց վրայ, այլ ըստ կամս և պարագայից։ Անոր համար պատմիչը յատկապէս կը յիշէ զայն հոդ, ուր դայեակը նպատակով մը*

1. Եղիշ. 155-7։ — 2. Գ Մակ. Դ, 6։ — 3. Աստ՝ 10, 114։ — 4. Փրպ. 332։ — 5. Կաղ. 106։ — 6. Աստ՝ 129։ — 7. Ոսկ. Թղթ. Ա, 835։ — 8. Աստ՝ 117։ — 9. Alex. 98։

կը հագնի. նահատակ սանին ոսկերոտին «յիւր ծոցն ժողովէր» ու կը տանէր. ուսկից յայտնի է՝ թէ լայն ալ էր, և ամփոփուած

4. Գօտիէն՝ զոր յայտնապէս ալ կը կրէ դայեակը. «էած գօտի ընդ մէջ իւր»։ Եղիշէ զայս վերագրեց արանց ու կանանց միանգամայն, ինչպէս տեսանք[1]։

5. Եղիշէի տիկնայք «բոկ և հետի» կը գնան եկեղեցի, և Շուշանիկ իւր բանտարկութեան մէջ «բոկոտն» էր[2]։ Այս էր ուրեմն ժամանակիս շինական սովորոյթը, եթէ կանանց՝ ապա և արանց, եթէ դուրսը՝ ապա և տան մէջ[3]։ Բայց այս չի նշանակեր՝ թէ բնաւ կօշիկ չհագնէին դուրսը, մանաւանդ ձմեռը. ևս աւելի ունևոր շինականք, որոնք գիտէին ըստ պարագային նաև զարդարուիլ։

6. Անոնց հանդերձից նիւթ կը կազմէին բրդէ շինուած պաստառները։ Յիշեալ տիկնայք «խոշոր բրդեայս» կը հագնէին, կ՚ըսէ Ղազար[4], այսինքն թանձր գործուած, ասով զգացնելով մեզ նաև նրբին գոյութիւնն ու գործածութիւնը բարեկեցիկ կանանց կողմանէ. և որոնք ինչ արուեստով ալ շինուէին, կը կոչուէին նաև ասուի[5], ասուեայ[6] կամ ասրեղէն[7]։ Բայց անոնք դիւրաւ պիտի գտնէին և պարզ կտաւը[8], կտաւին[9] կամ կտաւեղէնը[10]. և իրենց անծանօթ լինելու չէ բամբակն ալ, որոյ մշակութիւնը կը յիշուի ի Փայտակարան, ուսկից կ՚ելնէր «բամբակ անբաւ[11]», և Աղուանից մէջ[12]։

Այդ պաստառները զարդարուած էին այլազան գոյներով, որոնք շատ հաճելի էին հայ ժողովրդեան։ Փարպեցին Այրարատի լանջակողմանց վրայ սփռուած գոյնզգոյն ծաղկանց նայելով, կը կարծէր տեսնել «հանդերձս ինչ՝ և ոչ ծաղկաբոյս գոյնս[13]». այսինքն համախմբեալ բազմութեան մը հանդերձից գոյներուն կը նմանեցնէր ծաղկալից մարգագետինը։ Երանգոց զանազանութիւնը կար ոչ միայն անձանց, այլ և մէկ հոգւոյ հանդերձին մասանց մէջ, ինչպէս Ամմիանոս կը վկայէ և Պարսից համար՝ թէ «անոցմէ շատերն իրենց զգեստները շողշողուն և զանազան գոյներով կը ծածկեն[14]»։ Գոյներու մէջ յետ ծիրանւոյն շատ յարգի էր որդան կարմիրը, զոր կ՚արտադրէր Այրարատ, տալով «օգտասիրացն շահս և շքեղութիւնս[15]». և զոր Խորենացւոյն աշխարհագրութիւնն ալ կը թուէ մեր երկրի բերոց մէջ, «որդն յարմատոյ սիզոյ առ ի զարդ կարմրութեան գունոյ[16]»։ Սոյն որդիս գոյնը, կոկկինոս կոչուած, ծանօթ էր Յունաց ալ, և կը

1. Աստ՝ 142։ — 2. Սոփ. Թ, 32։ — 3. Աստ՝ 5։ — 4. Փրպ. 332։ — 5. Ղևտ. ԺԳ, 47 են. — 6. Անդ՝ 59. Զգօն՝ 119։ — 7. Եղիշ. 174։ — 8. Օրին. ԻԲ, 11 են։ — 9. Ղևտ. Զ, 10 են. — 10. Փիլ. ի Հյկզ։ — 11. Խոր. Մատ. 610. — 12. Կաղ. 7։ — 13. Փրպ. 23։ — 14. Amm. XXIII, 6։ — 15. Փրպ. 25։ — 16. Խոր. 611։

պճնէր ազնուականաց հանդերձները[1]։ Հայոց զգեստուց պաստառները կը ներկուէին անշուշտ հայ Նարօտաներկաց[2] ձեռքով։

7. Ռամիկը չէր կարող մօտենալ այն գոհարներուն, որոցմով «փառացն ցանկացող» ազնուականութիւնը կը պճնէր[3]։ Բայց աղոնց փոխարէն՝ դիւրաւ ձեռք կը բերէին ապակեայ ուլունները, որոց պատրաստութիւնը ծանօթ է ժամանակիս Հայոց։ Ագաթանգեղոս կը գրէ Հռիփսիմեանց միոյն համար՝ թէ «ունէր արուեստ ապակագործութեան՝ առնել ուլունս ապակեղէնս[4]». և հայ վէպը կը նկատէր զանոնք Շամիրամայ վրայ ևս, և անոնց երանգները փոխադրուած վանայ լճին մկանանց վրայ. «Ուլունք Շամիրամայ ի ծով[5]»։ Իսկ Երգոց երգոյն թարգմանիչը կ'իմացնէ՝ թէ անոցմով կը զարդարէին վզերը. «Ցարմարութիւն բարձից քոց՝ նմանութիւն ուլանց յեռեալց[6]», այսպէս վերածելով բնագրին քայոր։

8. Բայց աղոցմէ աւելի դիւրագիւտ էին ծաղկունք, որոցմով շատ կ'ախորժէր զարդարուիլ ռամիկը, մանաւանդ տօնական օրերուն, և առաւելապէս կանայք։ Վարդավառի ճառը, Խորենացւոյն ընծայուած, կը հաստատէ՝ թէ այդ առթիւ «առաքինութեանն լուսահրաշ վարդիւք և շուշանօք՝ տօնասիրացն ոսկեվարսեալ վայելչանան գլուխք[7]». այլաբանականը յարասութիւն է իրականին։ Այս ոճով ծաղկեայ պսակաց ակնարկութիւնք շատ են մեր հին մատենագրութեան մէջ[8]։

## ԺԲ. ԱՂՔԱՏՆԵՐԸ

Բախտէն լքելոց վրայ փնդռելու չենք յատուկ համազգեստ մը. այլ հասարակաց հանդերձը կը կրէին, բայց թուով ու տարածութեամբ պակաս և որակով անպիտան, զոր կամ իրենք կը կարկատէին, և կամ մուրողութեամբ կը ճարէին՝ երբ թշուառութիւնը ստիպէր։ Վերջին պարագայիս կ'ակնարկէր Մանդակունին՝ երբ կ'ըսէր մեծատան. «Տաս զանպիտան քեզ զգրգլին, և զանմահութեան հանդերձն զգենուս[9]»։ Աղքատաց հանդերձին ընդհանուր անունները տեսանք կանխաւ[10], որոնք առանձին մասանց չէին պատկաներ։ Հոս կը մնայ նկատել մասերն իսկ՝ իրենց սեպհական կոչումներով հանդերձ, զոր կու տայ ոսկեդարը։

1. Dar. I, 1265։ — 2. Վեցօր. 102. Սրր. 155. Նարօտ՝ է զունաւոր պաստառ. տես՝ 117։ — 3. Աստ՝ 122։ — 4. Ագթ. 123։ — 5. Խոր. Ա, ժը։ — 6. Երգ. Է, 1։ — 7. Խոր. 384։ — 8. Նոյն՝ 317, 322, 325. Ագթ. 94, ևն։ — 9. Մանդ. ի Հյկզ։ — 10. Աստ՝ 7–8։

Սանդր ու մկրատ չէին մօտենար անոնց գլխին, և կը շրջէին «ի բրդգեղ[1]» (յն. κομῶντος=երկայնահեր), այսինքն մազերնին բրդի պէս գեղած ու խառնուած անկանոն կերպով, զորս Մանդակունին թաղկեալք ալ կ'ըսէ[2], որ է թաղի նման պրկուած իրարու մէջ։

Իբր հանդերձ ունէին միակ պարեհճակ մը, ինչպէս կը կոչէ Ոսկեբերանի թարգմանիչը. «որ մի միայն պարեհճակս (χιτωνίσκος=պարեգօտիկ) ունիցին, և զայն ծակոտկէն[3]»։ Հաւանօրէն կազմուած է պարհ (պարհել=պահել) արմատէն, իբրև պարհենակ կամ պահպանակ մերկութեան։ Ուրիշ անուն մը կու տայ Եփրեմի թարգմանիչը, նկարագրելով Սարեփթայի սովահար աղքատ այրին, «զի գնայր իսկ, և զգեցեալ էր թամբատեակ մի[4]», զոր Երեմիայի թուղթը հեթանոսաց կոոց ալ կը զգեցնէ. «զթամբատեակսն՝ զոր ուրուք ուրուք արկեալ էր զնոքօք». և զոր յետոյ կը կրկնէ «հանդերձիկ[5]» բառով՝ ըստ յունին (ἱματισμός), որ նոյն է նաև թամբատեակին դիմաց։ Կարծեմ թէ բառս մեկնելի է իբր թամբ-հատ-եակ, այսինքն թամբից կամ ազդերաց վրայ կտրուած՝ շատ կարճ հանդերձ։ Երրորդ կոչում մ'ունի Փիլոնի թարգմանիչը, խօսելով նախածննդաց մասին. «Ընդէ՞ր թզենւոյ տերևս կարեն և քորաճակս[6]», փոխան Աստուածաշնչի սփածանելիս բառին[7], որով և կը մեկնէ հոն Հ. Մկ. Աւգերեան քոթանակը։ Բայց նոյն թարգմանիչը քիչ յետոյ կը հաւասարեցնէ յիշեալ բառը «պարեգօտիճ՝ զտեղեաւ ծննդականացն». և ձայնով ալ լծորդ է յն. χιτώνին (պարեգօտ). և ակ նուազականով (քորաճ-ակ՝) կը նշանակէ պարեգօտին կարճը, թամբատեակն իսկ, ու պարեգօտիճ պէս փոխաբերաբար գործածուած սփածանելւոյն տեղ։ Ձայնով ու կարճ պարեգօտի այս իմաստով լծորդ է նաև իտլ. cottaին հետ։ — Այդ հանդերձը հին ու կճատաձորձ էր[8], այսինքն դիւրապատառ, և յաճախ «քծքծեալ պատառատուճ[9]» կամ քայքայուած. և այս վիճակին մէջ կը կոչուէր ցնցոտիք կամ գրգլիք[10]։ Իսկ զայն կրողը կ'ըսուէր բրդզգեալ[11], իբր զգուած բուրդ հագնող, այնքան հեռացած էր հանդերձը բնական ձևէն։

Աւելորդ է աղքատին վրայ որոնել մեկնոց, կօշիկ[12] կամ այլ յաւելուածական մասեր, ինչպէս յայտնի է Մանդակունւոյն հետագայ գեղեցիկ նկարագրէն։ «Առ վտանգս քաղցոյն բռնութեան յածի և շրջի անհանգիստ. ի տօթոյ տապանայ, ի ցրտոյ դողայ. որովայնն

1. Ոսկ. Թղթ. Բ, 504։ — 2. Մանդ. 51։ — 3. Ոսկ. Թղթ. Ա, 529։ — 4. Եփր. Ա, 433։ — 5. Թղթ. Եր. 32, 57։ — 6. Փիլ. Մնց. 27։ — 7. Ծննդ. Գ, 7։ — 8. Ոսկ. Մտթ. Գ, 64. յն. չունի։ — 9. Ագթ. 150։ — 10. Աստ՝ 8։ — 11. Ոսկ. Թղթ. Ա, 210։ — 12. Հմմտ. աստ՝ 145։

*սին, և մարմինն մերկանդամ (հանդերձին անբաւականութենէն), հերքն թաղկեալք, դէմքն դեղնեալ և թոշոմեալք, և ամենայն մարմինքն գգուաղեալք և երիթացեալք։ Թափառի, վարանի, և ի դուրս դուրս երերեալ և դադարեալ կառանչէ, և խանդաղատելի ողորմուկս արկանէ առ աղէտս վշտին. և զանագորոյն զմիտս մեր գիտելով՝ զխեղ անդամս ամօթոյ անակնածելի ցուցանէ, (կ'երևի՝ վարտիք ալ չունէր), զի զանողորմութիւնս մեր ի գութ խոնարհեցուցանէ։ Ցանդգնի լրբի, և սուղ ինչ կերակուր բազում աշխատութեամբ գտանէ։ Երկիւղիւ ի դրունս, երկիւղիւ ի գաւիթս, երկիւղիւ ի տունսն մտանէ. զի ի տունսն ամենայն ի շանցն դողայ, յանասնոցն երկնչի. զի ձիքն կիցս հանեն, եզինքն եղջիւր ածեն, շունքն վիրաւորեն, և մարդք չարք և անողորմք բամբասեն և թշնամանեն[1]»։*

*Փակենք կենաց այս տխուր գրուագը, և անցնինք զուարթին։*

## ԺԳ. ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆՔ

*Ամէն ազգերու պէս Հայերն ալ ունէին իրենց յատուկ զինուորութիւնը, որ ինչպէս պատերազմի, նոյնպէս և խաղաղութեան ժամանակ փոքր ի շատէ կ'որոշուէր պարզ քաղաքացիէն՝ իւր հանդերձով։ Արդէն ունեցանք ակնարկելու սոյն տարազին[2], զոր հոս պիտի տեսնենք աւելի մօտէն։ Հասարակ զինուորին զգեստը չէ այս, այլ զօրագլխացը, որով աւելի գեղեցիկ էր քան զսոսկական քաղաքացւոցն ալ։ Փաւստոս է զայս նկարագրողը, Դ դարու կղերին վրայ՝ որ ժամանակ մը նոյն տարազը հագաւ։ Անոր ամենէն աւելի յատկանշող մասն էր*

*1. Խոտորկտուրքը, որ էր պարեգօտի տեսակ մը. սկսան, կ'ըսէ, «զխոտորկտուրսն ի վերայ ծնգացն ունել[3]»։ Անուանս մէջ յայտնի է իւր ձևը. խոտոր կամ առիշեղ կտրուած ստորոտով, որ մինչև ծնգները կը հասնէր, առաջակողմէն կարճ և յետակողմէն երկար, որպէս զի դիւրացնէր զօրականին քայլելն ու հեծելութիւնը։ Հին աւանդութենէ եկած ձև մ'է, զոր կը տեսնենք նաև ասորեստանեան զօրաց վրայ՝ զանազանութեամբ քաղաքականէն[4]. նոյնպէս և քաղդէացւոց[5]. և շատ աւելի զգալի ասորեստանեան այրուձիոյն վրայ[6]։*

*Այս պարեգօտը, հաւանօրէն սեպհական բոլոր զօրաց, զօրա-*

1. Մանդ. 51։ — 2. Աստ՝ 120. — 3. Փաւս. 263։ — 4. Place, III, տխ. 54, 55, 57 են։ — 5. Masp. I, 767-9. — 6. Place, տխ. 50, 53։

գըլխաց վրայ զարդարուած էր «պէսպէս ճարտուք», կ'ըսէ պատմիչը. այսինքն գունագոյն պաստառներով. կամ ուրիշ բացատրութեամբ՝ «արիճեայս և զտապակեայս, զժապաւինեայս ճարտուք», կամ «դամղայեայս և ժապաւինեայս[1]»։ Աստզմէ տապակեայ՝ կը ծագի տապակ արմատէն, որ կը թարգմանէ այլուր յն. ἀσπιδίσκη (վահանակ), «ոսկեովք տապակօք» իբր զարդ[2], ինչպէս կը նշանակէ նոյն յունարէնը, որ կը հայանայ նաև վահանակ բառով Ահարոնի վակասին վրայ[3]։ Արդ՝ Փաւստոսի տապակեայ պարեգօտը կը նշանակէ պճնուած նոյն բոլորաձև զարդերով։ Միանգամայն դամղոյեայ էր, ինչ որ մօտ կը հնչէ պրս. քամխայ բառին, որ կը նշանակէ նկարէն հանդերձ։ Եւ վերջապէս ժապաւինեայ ճարտուք, այսինքն եզերուած գունագոյն ժապաւէնով։ Անծանօթ կը մնայ արիճեայը. արդեօք կրնա՞յ համեմատուիլ յունարէն նոյնաձայն ἀθηναΐζω=աթենանամ բային հետ, որ կը նշանակէ Աթենացւոց պէս ապրիլ[4], և հոս՝ հեգնօրէն ուղղուած յոյն պատմըչէն՝ Զաւենի նոյն հանդերձին, իբր հելլենացած կամ նրբացած։

2. Զինուորական հանդերձին մասն էին և մորթերը, զորս Դիղարու այլափոխեալ կղերը կ'առնուր իւր վրայ, և որոց գործածութիւնն ընդարձակ էր աշխարհականաց մէջ, ինչպէս տեսանք[5]։ Զասոնք ալ սպայից վրայ միայն նկատելու ենք, և այն ալ ձմրան եղանակին։ — Իսկ ամառն ունէին լօդիկը, որ կը թարգմանէ յն. ἐπένδυμα (վերարկու) Յովնաթանու վրայ[6], և διπλοΐς (կրկնոց) Սաւուղի վրայ[7]. երկուքն ալ զինուորական տարազով, բայց կռուի մէջ չեն։ Նոյնը տեսանք ու սրբագրեցինք նաև Փաւստոսի երիտասարդին վրայ, որ զինուած էր, և այս պատճառաւ ալ կը կրէր լօդիկը[8], որ ըսինք՝ թէ շատ թեթև էր, յայտնի նաև իւր նուազական վերջաւորութենէն, և այն պարագայէն՝ որ յիշեալ երիտասարդի հեծելութեան արգելք չի լինիր։ Կարծեմ թէ մինչև ազդրերը կը հասնէր, որով կարճ էր քան զգրապը՝ որ քաղաքային կենաց յատուկ էր[9]։ Կայ ասորածին ամղաճ կոչումն ալ (աս. ամիլլա=մեկնոց[10]), որ կը թարգմանէ յն. ψιλή (յեշկ պաստառ, և անով շինուած հանդերձ[11]). «ամղաճ մի նկարէն գեղեցիկ», որ կը գտնուի Երիքովի աւարին մէջ[12]։ Յայտնի չէ՝ զինուորակա՞ն էր թէ քաղաքական, կամ թէ նիւթին՝ թէ ձևին պատճառաւ այդպէս կը կոչուի, թէ լոկ լօդկին հաւասար օտարամուտ հոմանիշ մ'էր։

1. Փաւս. 263, 271։ — 2. Ա Մակ. Դ, 57։ — 3. Ելք, ԼԹ, 17։ — 4. Alex. 31։ — 5. Աստ՝ 120։ — 6. Ա Թագ. ԺԸ, 4։ — 7. Անդ՝ ԻԴ, 6։ — 8. Աստ՝ 142։ — 9. Աստ՝ 120։ — 10. Hüb. 300։ — 11. Alex. 1606։ — 12. Յեսու, Է, 21։

3. *Զինուորական տարազը բնականապէս կ'ամբողջանար քաղաքականին յիշեալ մասերով, որ են վարսակալ, գօտի, վարտիք, մոյկեր և սուր։*

*Ինչպէս դիտեցինք ի սկզբանէ[1] և շրջանիս իշխանաց վրայ[2], խաղաղութեան ժամանակ մեր ազնուազգի զօրականին և արքունի զօրաց կրած զէնքերն ալ աւելի զարդարուն ու ճոխ էին։ Փաւստոս Տերենտի զօրքերը կը նկարագրէ «ոսկիկմբէ վահանօք[3]»․ և Ոսկեբերանի Թարգմանիչը Թագաւորական զինուորաց բռնածները հայաբար կը պճնէ շեղագրածովս․ «ոսկեզօծ վահանօք՝ կուռ ոսկի զմբէիք[4]»։ Այսպէս և Սիւնեաց Բիւրեղ տիկինը Հերակլ կայսեր կը նուիրէ «զէնս ոսկեկուռս չորեքհարիւր[5]», որոնք բնականապէս չէին կրնար յանձնուիլ պատերազմի կոյր բախտին։*

## ԺԴ. ՊԱՏԵՐԱԶՄԻԿՔ

*Ճակատի դժնդակ հանգամանաց հետ չէին հաշտուեր շողշողուն հանդերձները, և անբաւական էին պահպանելու ռազմիկը վտանգէն։ Ուստի ամէն ազգերու նման մեր նախնիք ալ ունէին պատերազմական առանձին հագուստ մը և զէնքեր, որով դիմադրէին և ընկճէին թշնամին։ Եւ որովհետև ճակատի պէտքերը զանազան էին, համազգեստն ալ ըստ այնմ կը փոփոխուէր։ Աւարայրի ճակատամարտէն յառաջ Միհրներսեհ կը հարցափորձէր, կ'ըսէ Եղիշէ, թէ Վարդանայ բանակին մէջ «քանի՞ այն ոք իցեն՝ որ սպառազէնքն իցեն․ և կամ քանի՞ այն ոք իցեն՝ որ մերկ առանց զինու աղեղնաւորք իցեն, սոյնպէս և վասն վահանաւոր հետևակացն[6]»։ Ուրեմն երեք տեսակ էր հոն Հայոց բանակին տարազը, որ խնայողութեան արդիւնք կը թուի․ վասն զի եղած են բարգաւաճ շրջաններ, ուր ամբողջ զօրքերը սպառազէն էին․ ինչպէս Բ Արշակայ, Վասակայ, Մուշեղի, Դղակայ և Մանուելի բանակները[7], եթէ սակայն չափազանցութիւն չկայ պատմչէն, ինչպէս անոնց թուոյն մէջ։*

*Մեք պիտի կենանք Եղիշէի սահմանին վրայ, և զայն քննենք, օժանդակ առնլով մեզ՝ պատմութեան հետ՝ նաև մէկ կտորը սասանեան քանդակի մը, Ձև 50, Փլանդենի հրատարակութենէն[8], — լաւագոյն Դիոլափուայի քով, բայց մասամբ ստուերի ներքև ծածկուած,*

1. Աստ՝ 31. — 2. Աստ՝ 121. — 3. Փաւս. 233. — 4. Ոսկ. Թղթ. Ա, 769. — 5. Շպհ. 10. — 6. Եղիշ. 74. — 7. Փաւս. 130, 137, 200, 203, 249. — 8. Fland. տխ. 49.

— ուր Շապուհ Բ շրջապատուած իւր զօրագնդերէն, կ'ընդունի պարտեալ Վաղերիանոսը։ Դիոլափուա հռովմայեցի կարծեց այդ զօրքերը, ինչ որ անկարելի է. որովհետև նախ՝ հռովմէական զգեստի հետքը չկայ անոնց վրայ. երկրորդ՝ պարտեալ կայսրը չէր կարող զինեալ գնդերով ներկայանալ Պարսից արքային. և երրորդ՝ ծնրադիր աղերսաւոր կայսեր զօրաց անպատեհ էր յաղթողի դիրքով կենալ հող իրենց տիրոջ ու յաղթականին քով։ Իրաւունք ունէր ուրեմն Ֆլանդէն զանոնք համարելու պարսիկ կամ հպատակ ցեղերու գնդեր, զանազանութիւնս սակայն աւելորդ։ Ունինք նաև 51 Ձևը զէնքերու, զորս խմբած եմ նոյն սասանեան քանդակներէն։ Անցնինք տեսնել հայ զօրաց տարազները։

Ա. Սպառազէնք։ — Այսպէս կը կոչուին երկաթապատները[1], բարդուած սպառ և զէն (բազ. զէն[2]) բառերէն՝ իբր համակ զինուած. և որոց վերջինն առանձին կը նշանակէ երկաթեայ հանդերձը[3]։ Կ'ըսուին նաև զրահաւորք[4], զրահապատք[5] կամ զրահավառք[6], բարդուած զրահք արմատէն (պհլ. զրեհ, պրս. զիրիհ[7]), որ յատուկ էր նոյն հանդերձին[8]։ Պատենազէնք[9], կազմուած պատեանք արմատէն՝ որ նոյնպէս զրահ կը նշանակէր[10], նմանութեամբ այդպէս կոչուած։ Շերտաւորք[11], հագուած զրահին տեսակէն, և ոչ թէ «ունող զգործի շերտ շերտ կտորելոյ՝» ըստ Հայկազեանի. զի շերտ՝ այդպիսի գործի մը չի նշանակեր, և Խորենացւոյն քով շերտաւորք՝ հակադրութիւն է «մերկաց»։ Ոսկեբերանի Թարգմանիչը տեղ մը կը յաւելու՝ «զրահապատից» քով՝ կողինաւորք բառն ալ[12], զոր լծորդ պիտի ցոյց տամ շերտաւորաց։

Շատ կենդանի է զրահից նկարագրութիւնը Մանուելի վրայ, որ «յամրակուռ յերկաթապատ յոտիցն մինչև ցգլուխն առ հասարակ յանվթար զինէն», ինչպէս և «ի հաստատուն երիվարէն և յապազէն վառելոյն՝» — զի ձին ալ զինուած էր՝ — բլրան մը պէս երևեցաւ իւր ախոյեան Վարազդատայ[13]։ Տրդատ՝ Եփրատայ ափանց վրայ կռուելու պահուն ունէր իւր զառնազէնն, և ձին՝ զապազէնն[14]. և Խորենացին կ'ակնարկէ անոր «կուռ վառուածոցն[15]»։ Մամիկոնեան Վասակայ զօրքերը կը նկարագրուին «սպառազէնք կուռ վա-

1. փաւս. 137, 242. Եղիշ. վերև. Ա Մակ. Դ, 28 ևն. Ես. ԺԳ, 4։ — 2. Hüb. 151։ — 3. փաւս. 241. Եղիշ. 74, 81։ — 4. փաւս. 130, 203. Խոր. Գ, լէ։ — 5. Ոսկ. Մատթ. Գ, 66։ — 6. Ջգօն, 341։ — 7. Hüb. 152։ — 8. Եղիշ. տես՝ 153. Ագաթ. 133։ — 9. փաւս. 130, 203. Եփր. Դ, 116. Եղիշ. 91։ — 10. Ա Մակ. Զ, 2. Յոբ, ԽԱ, 4։ — 11. փաւս. 15, 52. Խոր. Ա, իդ։ — 12. Ոսկ. Մատթ. Գ, 66։ — 13. փաւս. 241-2։ — 14. Ագաթ. 158։ — 15. Խոր. Բ, ձբ։

ռեալք[1]». և Դիղակայ զինուորները՝ «կուռ վառեալք պատենազէնք և զրահաւորք[2]»: Մեծն Վարդան Աւարայրի ճակատամարտէն յառաջ նոյնպէս կը կազմէ իր սպառազէն գունդը. և «որոյ զէն չէր՝ զէն պատրաստէր[3]»: Եւ այնքան մաքուր ու փայլուն կը պահուէին զրահները, որ նոյն կռուի պահուն «ի բազմութենէ սաղաւարտից և ի փայլուն պատենազէն վառելոցն իբրև նշոյլք ճառագայթից արեգական հատանէին», կ'ըսէ պատմիչը[4]: Հայոց զրահից «փայլմունք և շողիւնք» չեն վրիպիր նաև պատմահօր աչքէն[5]: Եւ Բիւրեղ Սիւնեցի կը նուիրէ Հերակլի «հազար զրահս պատերազմի[6]». ապացոյց՝ թէ ձևի խտրութիւն չկար ազգերու մէջ: Այդ զգեստը կը կազմէն՝

1. Սաղաւարտ (ասոր. սանուարտա[7]), որ այս շրջանիս է և կը կոչուի նաև «գլխանոց երկաթի[8]», և անբաժան է ամէն զրահէ. որոյ համար Մամիկոնեան Վասակայ զօրքերն ալ սաղաւարտաւորք էին[9], ու Վարդանանց օրով ժողովուրդը կը պատրաստուի մօգութեան դէմ «զինեալք և սաղաւարտեալք[10]»: Նաև Բիւրեղ կ'ընծայէ Հերակլի «սաղաւարտս հազար[11]»: Ասոր ձևը զանազան է պարսիկ քանդակաց և նոյն ինքն մեր 50 Ձևին մէջ: Կայ կնգղաձև սրածայրը, ուղիղ կամ յետ ծռած, որ յատուկ է զինուորաց. սպայինը, վերին ծայրը յառաջ շրջած ու ստուար. և իշխանացը՝ խուրաձև գմբեթարդ[12]: Այս ձևերու մէջ որոնելու ենք հայ սաղաւարտն ալ:

Ուրիշ յատկանիշ մ'ալ կար իշխանականին վրայ, որ է նախարարին սեպհական նշանը, կարևոր՝ իր գնդին առաջնորդելու ժամանակ. և զոր տեսանք արդէն Մամիկոնեան Մանուէլի գլխին[13]. արծիւը, որ անոր տոհմային նշանն իսկ էր[14]: Այսպէս և Մերուժան իր վերջին կռուին մէջ՝ «զնշանն սաղաւարտին» շատերուն վրայ դրած էր, «և ինքն զիւր նշանն ոչ ունէր՝» անճանաչելի մնալու համար[15]: Խորենացին՝ ժամանակի սովորութեամբ՝ Բելայ գլխանոցը կ'երևակայէ «նշանաւորօք վերջօք[16]». այսինքն նշանը դրուած վերին ծայրը: Եւ Բաբիկ Սիւնի, Պարսից արքայի զինուք ճակատած Հոնագուրայ դէմ, «վագրակերպ սաղաւարտաւն զգեղեցիկ գլուխն» զարդարած էր[17]: Ուրեմն պարսկական էր սովորոյթը, զոր կը տեսնենք նաև Սասանեան արքայի մը և իշխանաց վրայ, բաժնուած երկու կարգի. ոմանց սաղաւարտին վերին ծայրը նեղցած՝ կը կարկառի դէպ ի ճակատը, և կ'աւարտի անասնոյ մը գլխով, ինչպէս առիւծի, ձիու

1. Փաւս. 137: — 2. Նոյն՝ 203: — 3. Եղիշ. 81: — 4. Նոյն՝ 91: — 5. Խոր. Ա, իդ: — 6. Շպհ. 10: — 7. Hüb. 235: — 8. Խոր. Ա, ժա: — 9. Փաւս. 130: — 10. Եղիշ. 84: — 11. Շպհ. 10: — 12. Հմմտ. և Fland. տխ. 50: — 13. Աստ՝ 106: — 14. Գրոշ. 54–9: — 15. Փաւս. 253: — 16. Խոր. Ա, ժա: — 17. Կաղ. 84:

*և այլն[1]։ Այս ոճով են մեր պատմչաց յիշածները։ Ոմանք ալ իրենց խուրի կողին վրայ ունին յարմարական նշաններ, ձևացած մահկէ, խառնրդէ մը, կամ գծագրական ձևերէ[2]։*

2. *Զրահք, զէն, առնազէն, սպառազինութիւն[3] կամ վառուածք՝ հասարակ կոչումներն են զինազգեստին, որ այս շրջանիս կը բաժնուի երեք տեսակի, երեքն ալ «զգեստք երկաթոյ[4]» ըստ նիւթին կամ*



Ձև 50. Պարսիկ զօրականք

*պղնձեայ, բայց տարբեր յօրինուածով։ — Առաջնոյն նկարագիրը կու տայ մեզ Խորենացին Բելայ վրայ. «տախտակս պղնձիս թիկանց և լանջաց[5]», որ յատուկ անուամբ կը կոչուին նաև վարապանակք[6] (պրս. բար=լանջ և պանակէն[7]) կամ վարապանակք զրահից[8], անկախաբար յոյն բնագրերէն, և կամ լանջապան[9]։ Ասոնք կը թուին և պատեանք, զինապատեանք[10] կամ պատենազէն զրահք[11]։ Ասոնց մասն*

1. Fland. տխ. 43, 49, 186, 188։ — 2. Նոյն՝ տխ. 43, 44, 138, 191. Raw. 100, 138, 265։ — 3. Բ Թագ. Բ, 21. Յոբ, ԼԹ, 20. Եփես. Զ, 11. Պամ. Աղ. 33. Եղիշ. 169։ — 4. Խոր. Ա, իդ։ — 5. Անդ՝ ժա։ — 6. Ա Թագ. ԺԸ, 4. յն. մանդիաս. տես սաս՝ 120։ — 7. Hüb. 244։ — 8. Բ Թագ. Ի, 8. յն. «զպարեգօտ հանդերձն իւր»։ — 9. Պամ. Աղ. 140։ — 10. Նոյն՝ 94։ — 11. Եղիշ. 87։

էին և «պահպանակք բարձից և բազկաց[1]», որ բարձապանք ալ կ'ըսուին[2]։ Քաղաքական հանդերձին զանկապանաց[3] փոխարէն՝ պատերազմականին մէջ կային սրունքը պահպանող սռնապանք[4] կոչուած մասունքը, ս. Գրքէն և Աղեքսանդրի ու Մամիկոնեան պատմիչներէն յայտնապէս յիշուած սպառազինաց վրայ[4]։ Հոն ուր զրահից կտորները իրարու կ'ագուցուին, կը կոչուէին «աղխք պատենից[5]», կարան[6] կամ կարաւանդք[7], (կար և պհլ. բանդ=կապ արմատներէն)։ Զրահներն եթէ երկաթի են զօրաց վրայ, և պղնձիք զօրագլխաց, աւելի ճոխ էին թագաւորաց վրայ. որով Բաբիկ Սիւնի ծածկուած էր Պարսից արքային «ճաճանչաւոր մարգարտական զրահիւքն[8]». ինչ որ գրաւական է նաև Հայոց թագաւորին համանման սովորութեան։

Երկրորդ տեսակն էր չերտք, այսինքն չերտ չերտ բաժնուած, զոր նկատեցինք վերև՝ չերտաւորք ածանցին մէջ, որ տրուած է Մազքթաց և Յունաց՝ Փաւստոսի կողմանէ, և Ա Տիգրանայ զօրաց՝ պատմահօրէն։ Հետևաբար ընդհանուր էր այս ձևն ալ։ Ասոր համանիշ կը կարծեմ և կողէնք, որ ծածկուած է կողինաւորին մէջ. և աղերս կը թուի ունենալ յն. κόλλησις (զօդումն, կապ[9]) բառին հետ, ինչպէս իրարու զօդուած էին չերտերը։ Այս զրահին օրինակները կ'երևին պարսիկ քանդակաց մէջ, ստորոտը տերևանման հիւսուածով մը. և մասամբ ծածկուած անթեզան պարեգօտակին ներքև, ի տես կը դնէ բազկաց, ազդերաց ու սրունից մասերը[10]։

Երրորդ տեսակը վերտք կը կոչուի, և կը նշանակէ շղթայակերպ խիտ հիւսուածք, որ աւելի կը դիւրացնէր շարժումը։ Այս իմաստն ունի ս. Գրոց մէջ բնագիրն ու թարգմանութիւնը. «զրահս վերտս (ἁλυσιδωτός) զգեցեալ[11]»։ Եւ Աղուանից պատերազմին մէջ Տրդատ «վառեալ (էր) վերտ պահպանակօք՝ ուր ոչ գծէին նետք[12]»։ Այս օրինակաց մէջ վերտք ածականաբար գործածուած է։ Սոյն ոճն ալ կ'երևի սասանեան քանդակաց մէջ, նոյնպէս մասամբ ծածկուած պարեգօտակին ներքև[13]։ Հոս և նախորդ քանդակաց անձինքն են թագաւորք և անոնց բարձր թիկնապահք. որով ստիպուած չենք պարեգօտակն ենթադրել նաև պարզ զինուորաց վրայ. ընդ հակառակն հայ ու պարսիկ զրահներն Աւարայրի մէջ բաց էին և արևու պէս կը շողային, ըստ Եղիշէն։

3. Գոտին ստիպողական էր և զրահին վրայ, անկից ինչ ինչ-

1. Խոր. Ա, ժա։ — 2. Պատմ. Աղ. 140։ — 3. Աստ՝ 110. Դան. Գ, 21։ — 4. Ա Թագ. ժէ, 6. Պատմ. Աղ. 94, 140. Մամ. 35։ — 5. Յոբ, ԽԱ, 4։ — 6. Փաւս. 255։ — 7. Ա Թագ. ԼԱ, 3։ — 8. Կազ. 81։ — 9. Alex. 799։ — 10. Fland. տխ. 183, 184։ — 11. Ա Թագ. ժէ, 5։ — 12. Խոր. Բ, ժե։ — 13. Fland. տխ. 43։

*զէնքեր կախելու համար։ Եղիշէ այլաբանօրէն «զրահս հաւատոյ» պնդուած կը գրէ «միով զօտեաւ ճշմարտութեան[1]». և Խորենացին զԹէլ կը ներկայացնէ «զօտեօրեալ զմէջսն[2]»։*

4. *Մոյկեր ալ կը կրէին ռազմիկները, կամ գոնէ սպայք, ինչպէս Արշաւիր կամսարական, որ անոցմէ մին խրած թողուց կուրի մօրերուն մէջ, և «միամոյկ» դուրս ելնելով՝ յարձակեցաւ թշնամեաց վրայ[3]։ Գոնէ սպայք՝ ըսի. զի զինուորներն անկօշիկ կը թուին։*

*Զինուորական ծպտման ուշագրաւ պարագային ալ կը հանդիպինք Փաւստոսի քով։ Վասակ Մամիկոնեան դաւելու կ՚երթայ իւր Վարդան եղբայրը։ Եւ որպէս զի կասկած չարթնցնէ, իւր զօրքերն անոր ամրոցը կը մտցնէ խաղաղութեան կերպարանօք. այս ինքն՝ «ամենեքեան ի ծածուկ վառեալք (զրահաւորք), և ի վերայ ազուցեալք հանդերձ[4]»։*

5. *Զէնք, որ զրահէն զատ կը նշանակեն նաև ամէն պատերազմական գործի, կ՚ամբողջացնեն ռազմկին տարազը. և «ամենայն զէնք պատերազմողացն, կ՚ըսէ Եղիշէ, յերկաթոյ կազմին... տէգք և նիզակատէգք, սուսերք և սլաք նետից, և ամենայն սպառազինութիւնք վառելոցն[5]»։ Սպառազէն այրուձին սովորաբար երկու զէնք միայն ունի, ինչպէս Տիգրանին էր, «ի սուսեր և ի տէգ նիզակի վառեալք[6]»։ Սուրը մէջքին, գեղարդն աջին մէջ[7], և ձախը ձիուն սանձը կը բռնէր։ Երկու զէնքն ալ կը գործածուէին ըստ պարագային։ Տրդատ իւր սրով կը ճեղքէ Բասլաց թագաւորն ու ձին[8]։ իսկ Մանուէլ Մերուժանի[9] և Սահակ ասպետ իւր ախոյեանին հետ[10] նիզակօք կը կռուին։ Նիզակաւորք կը կոչուին Վասակայ, Դղակի և Մուշեղի զօրքերն ալ[11], և ուրիշ զէնք չի յիշուիր, բաց ի սուրէն՝ որ լռելեայն կ՚իմացուի։*

*Աղոնց հետ Ե դարուն ծանօթ է մուրճն ալ, զոր նախորդաց հետ կը գործածէ Ամբատ Մամիկոնեան[12], վերջինս՝ նմանութեամբ յունական կռցաւոր մրձին[13]. և իւր դերը զգալի է նոյն զօրավարին ձեռքը, որ անով կը գօգէ թշնամւոյ մը սաղաւարտը և կը խրէ գանկին մէջ. և Մուշեղ անով կը ցրուէ Նիխորճիշի ուղեղը[14]։ Կան հեծեալք՝ որ վահան ալ կը կրեն, ինչպէս Մանուէլի բանակին մէջ[15]. և զոր Ագաթանգեղոս կը կոչէ վահանակ երեսաց, զգացնելով անոր փոքրկութիւնը, և չափաւոր պաշտօնը, որ էր պաշտպանել ճակա-*

1. Ագթ. 142։ — 2. Խոր. Ա, ժա։ — 3. Փրպ. 191։ — 4. Փաւս. 128։ — 5. Եղիշ. 169։ — 6. Խոր. Ա, իդ։ — 7. Կաղ. 84։ — 8. Խոր. Բ, ձդ։ — 9. Փաւս. 254։ — 10. Փրպ. 395։ — 11. Փաւս. 137, 200, 201, 202, 203։ — 12. Մամ. 35, 36, 40։ — 13. Խոր. Գ, իը։ — 14. Մամ. 13։ — 15. Փաւս. 243։

րէ[1] երեսը միայն, որ միակ անպատսպար մասն էր։ Բարիկ Սիւնի ևս կռուի մը մէջ իւր վահանը «յահեակ ուսն ընկեցեալ» էր[2]։ Իսկ հետևակ սպառազէնք անպակաս ունին զայս. Վարդանանց օրով զինեալ ժողովուրդը «սուր ընդ մէջ և վահան ի ձեռին» կը ներկայանայ[3]. և Բէլ կը նկարագրուի՝ սուրը ձախ գօտին վրայ, նիզակն աջին ու վահանը ձախին մէջ[4]։

Սուրին վրայ պէտք է կանգ առնունք վայրկեան մը, որ աւելի յաճախ կը կոչուի սուսեր (աս. սաֆսերա, պհլ. շաֆշէր[5]), և մերթ խարբ[6] (աս. խարբա[7])։ Սովորաբար պողովատիկ[8] կամ պողպատեայ էր, աւելի պինդ և հաստ լինելու համար։ Ունի իւր բերանը[9] կամ սայրը[10] կամ սայրադիրը[11], կամ երախը՝ ծանօթ «երախակալ» բառդին մէջ, (և առանձինն իբրև բերան մարդոյ[12]). և սովորաբար երկուստեք սրուած լինելով, սուրերն երկսայրի էին[13], ու մերթ միասայրի[14]։ Ունի երախակալը[15] կամ դաստապանը[16] (պրս. դաստոստան=ձեռնոց[17]), յետոյ ռամկացած ձեռնատեղի կամ բռնատեղ ձևերով[18], զոր սայրէն կը բաժնէ կռուանը[19] կամ խաչաձևող մասը, ծագած «կռուիլ» կամ կառչիլ բայէն, այսինքն մինչև ուր կը մխուի սուրը պատենից[20] մէջ ու կը դադրի։ Ասով միասին զայն ծպնէին[21] կամ ածէին ընդ մէջ[22]։ Երբ զայն գործածելու վերահաս պէտք մը կար, բերաքամեալ վիճակի մէջ կը պահէին[23], որպէս զի դիւրաւ հանէին[24] կամ մերկէին[25] կամ մերկէին ի պատենիցն[26]. և ապա վերստին դարձուցանէին կամ արկանէին ի պատեանն[27]։

Թուր կը կոչուէր սուրին փոքրը[28], որ պատերազմի մէջ ալ կը գործածուէր[29]։ Մեր 51 Ձևին մէջ իրարու քով դրած եմ զայս և սուրը, առնլով սասանեան քանդակներէ։ Պատեհաւոր են. և Թուրն աւելի փոքր է, աւելի լայն, ու կռուանը ձևով տարբեր։ — Կայ նաև վաղակաւորը, (արմատը վաղակ՝ հմմտ. ընդ պրս. վաղա=մարտ[30], իբր կռուի յատուկ գործի[31]), որ կը թարգմանէ յն. ἐγχειρίδιος=

1. Ագթ. 114–15։ — 2. Կաղ. 84։ — 3. Եղիշ. 44։ — 4. Խոր. Ա, ժա։ — 5. Hüb. 316։ — 6. Փիլ. Մնց. 432։ — 7. Hüb. 304։ — 8. Աստ՝ 121։ — 9. Բ Օր. ԺԳ, 15, ևն. Խոր. Ա, ժա։ — 10. Գ Մակ. Ձ, 4։ — 11. Սիրաք, ԼԳ, 31։ — 12. Ա Մակ. Թ. 55։ — 13. Խոր. Ա, ժա։ — 14. Կաղ. ի Հյկզ։ — 15. Դատ. Գ, 22։ — 16. Փաւս. 233։ — 17. Hüb. 135։ — 18. Մամ. 40, 41։ — 19. Ոսկ. Թղթ. Ա, 822։ — 20. Ա Թագ. ԺԷ, 51. Երեմ. ԽԷ, 6. Եզեկ. ԽԱ, 3. միշտ յոգնակի։ — 21. Բ Թագ. Ի, 8։ — 22. Սաղմ. ԽԴ, 4։ — 23. Ագթ. 39։ — 24. Մատթ. ԻԶ, 51։ — 25. Դատ. Թ, 54. Ա Թագ. ԼԱ, 4։ — 26. Ա Թագ. ԼԱ, 5։ — 27. Ա Մնց. ԻԱ, 21. Յհ. ԺԸ, 11։ — 28. Աստ՝ 121։ — 29. Փաւս. 243։ — 30. John. 1371։ — 31. Հմմտ. երկնաւոր, հոգեւոր, որ է յատուկ երկնի, հոգւոյ։

ղաշոյնը[1]. որուն կ՚ապաւինի Խոսրով Գարդմանացի՝ Շապհոյ ընթրեաց մէջ[2], և զոր Եփրեմի Թարգմանիչը ղաւով Աբեններեայ կուշտը խրել կու տայ Ցովաբայ[3]. այս ինքն նրանի պէս կը գործածուի[4], իբրև անոր մերձաւոր զէնք մը. բայց ինչպէս անուամբ տարբեր, մեծութեամբ ալ աւելի լինելու է։ — Բնականապէս պատերազմիկն երեքէն մին միայն կրնար կրել՝ ըստ միւս օժանդակ զէնքին։

Նիզակն ալ (պհլ. նեզակ[5]) արժանի է ուշադրութեան։ Կը կազմուի կրկին մասերէ. վերինը՝ կոչուած տեգ[6] (անս. տիգմա=սրածայր, պրս. տիղ=ծայր, սուր[7]) կամ նիզակատեգ[8] կամ տեգ նիզակի[9],



Ձև 51. Սուր, թուր, աղեղն, վահան

կարճ ու համակ երկաթեայ կամ պողպատեայ. և ստորինը՝ փայտեղէն ու երկար, որ կ՚ըսուէր տիգաբուն[10], նիզակաբուն[11] կամ փայտ նիզակի[12]։ Մինչդեռ տէգը զրահները կը ծակէր, անոր բունով Մուշեղ Ուռնայրի և Մանուէլ Վարազդատայ կառափը կը ծեծէին, չըսպաննելու համար զանոնք[13]։ Զէնքս կը կոչուի նաև գեղարդն, բոլորովին հոմանիշ իրարու, որով անխտիր կը Թարգմանեն մի և նոյն յունարէն բառը[14]. և վերջինն ալ ունի նոյն բաժանումը. «բուն

1. Երեմ. Ծ, 42. Եզեկ. ԻԱ, 3–5։ — 2. Խոր. Գ, ծե։ — 3. Եփր. Ա, 392։ — 4. Լաստ՝ 122։ — 5. Hüb. 204։ — 6. Ա Թագ. ԺԷ, 7. Յհ. ԺԹ, 34. Եփր. Բ, 237։ — 7. Hüb. 253. Թիր. 362։ — 8. Փաւս. 242. Եղիշ. 182. Փրպ. 465։ — 9. Փաւս. 242. Բ Մակ. Ե, 11. Ժ, 24. Գ Մակ. Գ, 9. Ջ, 4. հայ թրգ. յատուկ։ — 10. Եզեկ. ԼԹ, 9։ — 11. Եփր. Ա, 371. Փաւս. 198։ — 12. Բ Թագ. ԻԱ, 19. ԻԳ, 7. Ա Մնց. Ի, 5։ — 13. Փաւս. 198, 242։ — 14. Նիզակ՝ Ա Թագ. ԺԷ, 7. Բ Թագ. Ա, 6 են. գեղարդն՝ Ա Թագ. ԺԳ, 19, 22. ԺԷ, 7 են,

գեղարդաւ... և տէգ նորա[1]», և կամ «ոսկետէգ գեղարդամբք[2]»։ Եւ որովհետև ինք բարդ է, կայ առանձինն իւր մէկ արմատն ալ, արդն, դրուած նոյնիմաստ յոյն λόγχη բառին դէմ[3], առանց հաշուելու յունաձայն գայիսոնը[4], որ կը մեկնուի փոքր նիզակ, համակ երկաթեայ կարծուած[5]։ Տիգին ծայրը կրկին ձև ունէր. մին՝ լայն, «յընդարձակ տէգ նիզակին[6]», և միւսը բոլորակ, «զնիզակն զբոլորատէգ, որ էր արեամբ զեռնոց մխեալ[7]», և տուած վէրքը կը թունաւորէր։ Այս երկու ոճերը կ'երևին նաև սասանեան քանդակաց մէջ[8], որոց մին մեր 50 Ձևն է։

Վերջապէս հեծելոյն ձեռքը կարևոր էր մորակ մ'ալ (աս. մատրկա[9]), որով «մորակ ի կուշտ արարեալ երիվարացն[10]», կամ «մորակեալ զերիվարն[11]», իրարու դէմ կը յարձակէին. և նոյնը կը կրէր Մանուէլ ևս, որով բանակին մէջ տանջեց անհնազանդ Արտաւազդ պատանւոյն գլուխը[12]։ Կը շինուէր փոկէ կամ պղինձէ, ագուցուելով ձողի մը ծայր կամ ուրիշ կերպ յարմարած[13]։ Մոյկերու ետև հաստատուած խթանները, ծանօթ Հելլենաց ու Հռովմայեցւոց[14], մեր քով յիշուած չեն դեռ այս շրջանիս։

Բ. Մերկք։ — «Առանց զինու» կամ անզրահ զօրաց կոչումն էր[15]։ Ասոնք ունէին սեպհական համազգեստ մը, որով Վարդան իւր բանակը քննելու ժամանակ «որոյ զէն (զրահ) չէր՝ զէն պատրաստէր, և որում հանդերձ պիտոյ էր՝ հանդերձ զգեցուցանէր[16]». այսինքն մարտկի զգեստ, վասն զի անոնք մերկանդամ չէին եկած հոն։

1. Այդ հանդերձն եթէ երբեմն հաւանօրէն մեզ ծանօթ խոտորկոտոր պարեգօտն[17] էր նաև պատերազմի մէջ, հիմայ՝ Վարդանանց օրով՝ արդէն հաւասարած է պարսկականին[18], որ ուղիղ կտրուած է ստորոտէն (Ձև 50)։ Այս էր զօրավարին տուածը, բայց անշուշտ համաչափ ու համագոյն, որոյ և այլ ամէն զինուց մթերքն ունէր բանակը՝ սպարապետին տրամադրութեան ներքև։ — Ուշագրաւ են մեր Ձևին վարտիքներն ալ, որոնք կը զանազանին իրարմէ երկայնութեամբ ու լայնութեամբ, կ'երևի՝ ըստ և այլ ծառայութեան զոր կը մատուցանէին։ — Գօտին անպակաս է Պարսից՝ որով և մերոց պարեգօտին վրայ։ — Ս. Գրոց մէջ կը հանդիպինք նաև տառատոկ կոչուած զգեստամասին, որոյ ներքև կը ծածկէ Աւովդ իւր դաշոյնը՝ կա-

1. Ա Թագ. ժէ, 7։ — 2. Ոսկ. Թղթ. Ա, 769։ — 3. Յոբ, ԽԱ, 17։ — 4. Յեսու, Ը, 18, 26։ — 5. Dar. II, 1428։ — 6. Խոր. Ա, ԻԹ։ — 7. Նոյն՝ Բ, Բ։ — 8. Fland. տխ. 43։ — 9. Hüb. 312։ — 10. Ագթ. 48։ — 11. Խոր. Բ, ձե. Գ, ծե։ — 12. Փաւս. 253։ — 13. Dar. I, 814-15։ — 14. Նոյն՝ II, 1152-6։ — 15. Եղիշ. տառ՝ 150։ — 16. Եղիշ. 81։ — 17. Աստ՝ 148։ — 18. Աստ՝ 91։

պած ազդրին[1]։ Այս նկարագրէն և յոյն μανδύας բնագրէն կ'իմանանք՝ որ քաղաքական գրատից[2] կամ զինուորական լօդկին[3] զուգակիցն է այս. մեկնոց մը՝ քան զաղոնք լայն՝ երկար ու թանձր, զգալի իւր անունէն ալ, որ ըստ իս բարդուած է տառ և տոկ բառերէն. տառ՝ որ է տարր[4], որով կը կոչէ Եզնիկ խոնաւութիւնը, ցամաքութիւնը, ցրտութիւնն ու ջերմութիւնը[5]. և տոկ՝ որ է տոկալ բային արմատը։ Հետևաբար տառատոկը՝ բացօթեայ բանակող բոլոր ռազմկաց պատսպարանն էր ցրտին ու խոնաւութեան կամ անձրևի դէմ, յայտնի անունէդ և Աւուղի վիճակէն ալ, և զոր կռուի ու շարժման պահուն մէկ կողմ կը դնէին. այս պատճառաւ մեր 50 Ջևի զօրաց վրայ կը պակասի այն։ — Ասոցմէ պարզերը բոկոտն կը թուին, և յայտնապէս մերկազլուխ են, ինչպէս լինելու են և հայ զինուորք, դատելով նաև հայ շինականաց սովորութենէն[6]։

2. Մերկերն իրենց յատուկ զէնքերն ալ ունէին, որոց գլխաւորն տեգեղն է, որոյ համար Եղիշէ զանոնք նաև տեգեղնաւոր կը կոչէ[7]։ Երկրորդն է պարսը, ուսկից պարսաւորաց զունդը[8], զատ նախորդներէն, որոյ գործունէութիւնը կը տևէր Է դարուն[9] և յետոյ ևս։ Ասոնց հետ կը կրէին ուրիշ երեք զէնքեր ալ, որոնք կը գործածուէին ըստ պարագային. Արտաւազդ պատանին նախ հեռուէն կը կռուէր «նետիւ». յետոյ երբ թշնամիք կը վտանգուէին, «առեալ զճիգակն», զոր նետելու պահուն գետին դրած էր, կը վազէ փախստէից ետևէն. որոց երբ կը հասնի, «ընդ սուր հանեալ՝ կոտորէր[10]»։ Ասոնք չէին կարող գործածել ու չունէին վահանը։

Աղեղան մասունքն էին լիճք[11] կամ գոգը, նմանութեամբ ըսուած, ուսկից նոյն գործւոյն լայնալիճ[12] մակդիրն ալ. ժամանակիս աղեղանց վրայ կրկին է լիճը՝ երբ բնական վիճակի մէջ են, ինչպէս մեր 51 Ջևը[13] ցոյց կու տայ. և ասկից է թերևս Եմեսացւոյն յոգնակի գործածութիւնը։ Ջղերէ շինուած լար մը կը պրկէ աղոր ծայրերը, և սաստիկ հնչական է. այնպէս որ Աւարայրի մէջ «ճայթմունք լարից աղեղանցն զլսելիս ամենեցուն առ հասարակ խլացուցանէին», կ'ըսէ Եղիշէ[14]։ — Աղեղէն կը թռչէր հանրածանօթ նետը[15], կոչուած նաև սլաք[16], ճիգ[17], փքին[18] (պրս. փէյքեան[19]) կամ ճերձակ[20], վերջինս յու-

1. Դատ. Գ. 16։ — 2. Աստ՝ 120։ 3. Աստ՝ 149։ — 4. Փիլ. ի Հյկզ։ — 5. Կողբ. 80։ — 6. Աստ՝ 145։ — 7. Աստ՝ 150. և Փաւս. 130։ — 8. Խոր. Ա, ԻԴ. — 9. Մամ. 39, 48. Ջեն. 37։ — 10. Փաւս. 254։ — 11. Եմես. 225։ — 12. Խոր. Ա, ժա. Իմաստ. Ե, 22։ — 13. Fland. տխ. 227։ — 14. Եղիշ. 91։ — 15. Եւս, ԺԹ, 13. ևն. Եղիշ. 7. Փրպ. 466. ևն։ — 16. Փաւս. 161, 237. Խոր. Ա, ժա. — 17. Ոսկ. Թղթ. Ա, 935։ — 18. Ա Թագ. Ի, 20-38։ — 19. Թիր. 369։ — 20. Եմես. 211։

*Նարենի նիւթական թարգմանութիւն. և կը շինուէր երկաթէ[1]: Իւր ծայրը յաճախ երկքբեւեան[2] էր, մեծ հերձումն կամ պատառուած գործելու համար, և շատ անգամ «դեղեալ[3]» կամ թունաւոր: Փարպեցւոյն բացատրութեանս մէջ, «ոչ եթէ նետիւ կռուիմ, այլ գեղկով պողեալ զբոլորս ցնդեմ[4]», Հայկազեանը գեղիկդ կը համեմատէ յն. γλυφίς-ի հետ, որ է նետին յետակողման փոսիկը. և որուն հոմանիշ կը թուի անեզական պայթիքն ալ՝ որ կը թարգմանէ Նիւսացւոյն նոյն յունարէնը[5]: — Նետերը կը պահուէին իրենց յատուկ պատկանդարանին[6] մէջ (պրս. պայկան=նետ, և դարան=կրող[7]), որ կապարճք[8] կամ աղեղնակապարճ ալ կ'ըսուի, և զոր հիմայ Փաւստոսի երիտասարդը կապած է «զմիջովն[9]»:*

*Պարսը[10] կամ պարսատիկը[11] մորթէ երկար երիզ մ'էր կրկնածալ, ստորոտը լայն ու գոգաւոր, ուր կը դնէին պարսաքարը[12], և կը նետէին թշնամեաց. ծանօթ էր ուրիշ ազգերու ևս[13]: — Ասոր հետ յիշենք գիլը[14], բռնաքարը[15] կամ վիրգն[16] ալ, որ էին յատուկ քարեր՝ ձեռամբ նետելի, և հայ բանակին զինուց մասն էին, գործածուած արդիւնաւոր կերպով՝ ձորերու և ամրոցաց մէջ:*

*Գ. Հետևակք: — Երրորդ և հետիոտն գունդն էր հայ բանակին, կոչուած այդպէս[17], կամ հետևակամարտք[18] և հետևակազօր[19]: Զգեստով նման էին մերկաց, և զինուք միայն տարբեր, որոց համեմատ կը բաժնուէին ջոկատներու, և անոնց անուամբ ալ կը կոչուէին. ոմանք վահանաւորք[20] կամ ասպարակիրք[21] կամ սպարակիրք[22]. ոմանք նիզակաւորք[23]. ուրիշներ՝ սուսերաւորք[24] կամ մկնդաւորք[25] կամ տիգաւորք[26]. և մաս մ'ալ սակրաւորք ու վաղրաւորք[27]. իսկ բոլորը նաև սուսերաւորք[28] էին:*

*Վահան[29] կամ ասպար[30] (բաղ. սպար, պրս. իսպար կամ սիպար[31]), իրարու կատարելապէս հաւասար են ու կը թարգմանեն մի և նոյն յունարէնը[32]: Այս պաշտպարան զէնքը սասանեան քանդակաց մէջ*

1. Աստ՝ 155: — 2. Խոր. Ա, ժա: — 3. Եղիշէ. 7: — 4. Փրպ. 466: — 5. Հյկզ: — 6. Եղիշ. 7: — 7. Hüb. 224: — 8. Ծննդ. ԻԷ, 3. Սղմ. Ժ, 3. ևն: — 9. Փաւս. 266: — 10. Ա Թագ. ԺԷ, 40. Բ Մնց. ԻԶ, 14: — 11. Ա Թագ. ԻԵ, 29. Առակ. ԻԶ, 8: — 12. Զաքար. Թ, 15. Խոր. Գ, ը: — 13. Dar. II, 1363–66: — 14. Ա Մակ. Բ, 36. Մամ. 39, 48: — 15. Թիւք. ԼԷ, 47 ևն. Փաւս. 16: — 16. Եղիշ. 44: — 17. Եղիշ. սատ՝ 150. Փաւս. 118: — 18. Խոր. Ա, իդ: — 19. Ագթ. 584: — 20. Աստ՝ 150. Ագթ. 590. Փաւս. 201: — 21. Ոսկ. Թղթ. Ա, 497. Փաւս. 204: — 22. Փաւս. 118, 200, 204: — 23. Նոյն՝ 118: — 24. Անգ. Ագթ. 584: — 25. Ագթ. 584. Ա Մակ. Թ, 4. չիք ի յն: — 26. Խոր. Բ, խգ: — 27. Փաւս. 118: — 28. Անգ: — 29. Ոսկ. Թղթ. Ա, 769. Բ, 490, ևն: — 30. Եղիշ. 58 ևն: — 31. Hüb. 109: — 32. Վահան՝ Բ Մնց. ԺԲ, Գ. ԺԴ, 8. ևն. ասպար՝ Բ Թագ. Ա, 21. Բ Մնց. ԻԵ, 5. ևն:

*խոշոր է, ճիշդ բոլորշի, թեթեւակի ուռած ու երիզաւոր, ինչպէս մեր* 51 *Ձևին մէջ*[1]*. իսկ կեդրոնն ունի կարկառուն մաս մը, որ կը կոչուի կմբեայ, գմբեայ կամ կմբեբեայ*[2]*, և կը ծառայէր հարուածելու։ Համակ երկաթեայ էր, որով Արտազու ճակատին մէջ «կոփինք վահանաւորացն» ականջ կը խլացնէին, կ՚ըսէ Եղիշէ*[3]*։ Կեղծ կը թուին «երկերիւր կաշեայ ասպար», որով Գայլ Վահան կը զինէ հարիւր ջորի՝ խաբելու համար թշնամին*[4]*։ Բիւզանդական վահանաց չափը կու տայ Ոսկեբերան, երբ կ՚ըսէ. «Մի՛ կարճ, մի՛ կճպեա (նեղ), գուցէ կամ ոտքն մերկանայցեն կամ այլ ինչ անդամն. այլ զի կշիռ ըստ չափու հասակին իցէ վահանն*[5]*». որով քան զպարսկականները մեծ էին։ Կար «թառնալի վահանին*[6]*» կամ փոկը, որով կը կախէին զայն ուսէն*[7]*, կամ բազկին կ՚անցնէին։*

*Սուսեր*[8] *կամ մկուսեր*[9] *հոմանիշերը, որ Եսայեայ մի և նոյն վըկայութիւնը կը թարգմանեն, կը նշանակեն նիզակին փոքրը՝ ձեռամբ նետելի*[10]*։ Գիւտ կաթ. կը յիշէ մկնդակը նիզակին հետ՝ իբր զատ անկից*[11]*։ Ուրիշ հոմանիշ մ՚է նաև աշտեայ կամ աշտէ*[12] *(զենտ. արշտի*[13]*), զոր Խորենացին կը յիշատակէ նախորդ երկուքին հետ՝ մի և նոյն դիպուածի մէջ*[14]*, կրկնութենէ խուսափելու համար։ Վերջապէս աղոնց կարգէն է տէգն ալ, որ կը զատուի նիզակէն՝ յաջորդ վկայութեանց մէջ. «զտէգս և զգեղարդունս*[15]*», կամ «տէգք և նիզակատէգք*[16]*»։ Սակայն աղոնց մէջ տարբերութիւն մը կայ. Եղիշէ երկաթեայ կ՚ըսէ տէգը*[17]*. ընդ հակառակն սուսերը փայտեայ բուն մ՚ունի այրելի, որ սուսերակոթ կը կոչուի*[18]*. այս պատճառաւ Գիւտ կրնար վերջինս սահմանել «թանձր և ստուար մկնդակ*[19]*»։ Հետևաբար տէգը փոքր էր, և միւս երեք հոմանիշից նշանակածը՝ մեծ քան զայդ։*

*Սակրաւորաց զէնքն էր սակուր (աս. սեկուրա, լատ.* securis[20]*), որ կը նշանակէ և կը կոչուի նաև տապար*[21]*, կազմուած երկաթէ ու մեղեխէ*[22]*. և զոր վահանաւորք «զգօտւոյ» կը կրէին*[23]*, տապալելու համար արգելիչ ծառեր, ջախջախելու քաղաքաց կամ ամրոցաց դռներ և այլն։ Բայց սպանութեան ալ գործիք է. զԴղակ կը փողոտեն սակրաւոր սպարակիրք. և Յոյնք կը մահացնեն զՊապ «սակրաւ*[24]*»։*

1. Fland. տխ. 8, 49։ — 2. Ոսկ. Թղթ. Ա, 769. նոյն՝ Մտթ. Գ, 66. նոյն՝ Թղթ. Բ, 490։ — 3. Եղիշ. 91։ — 4. Մամ. 45։ — 5. Ոսկ. Թղթ. Ա, 935։ — 6. Պամ. Աղ. 165։ — 7. Աստ՝ 156։ — 8. Ես. Բ, 4. Խոր. Բ, Ե։ — 9. Ոսկ. Ես. 7։ — 10. Խոր. Բ, Ե։ — 11. Կաղ. 17։ — 12. Ա Մնց. ԺԲ, 8. Խոր. Բ, Ե։ — 13. Hüb. 102։ — 14. Խոր. Բ, Ե։ — 15. Ոսկ. Մտթ. Գ, 66, յն. մի բառ։ — 16. Եղիշ. աստ՝ 155։ — 17. Անդ։ — 18. Եզեկ. ԼԹ, 9։ — 19. Կաղ. 17։ — 20. Hüb. 316։ — 21. Պամ. Աղ. 167. Սեբ. 65։ — 22. Բ Օր. ԺԹ, 5։ — 23. Փաւս. 232։ — 24. Նոյն՝ 204, 233։

Խորենացւոյն ծանօթ են սակուրք երկրերանք[1], որոյ ճիշդ նմանը կը տեսնենք նաև մեր 51 Ձևի զօրաց ոմանց ձեռքը՝ կայծակուն։

Կար վաղրն ալ՝ վաղրաւորաց ձեռքը, որոյ իմաստը հեռի է Հայկազեանի ենթադրած վաղակաւորէն. վասն զի Փաւստոսի կրկին բարդ վկայութեանց մէջ[2] «վաղրաւորք» հեռացած են «սուսերաւորներէն» ու զուգուած «սակրաւորաց» հետ, ցուցնելու համար՝ թէ ասոնց մօտ էին իրենց զէնքով, և զոր մեք ալ իսկապէս մօտ կը գտնենք մեր սասանեան Ձևին մէջ, ուր երկաթով նոյն է սակրին հետ, բայց մեղեխը շատ երկար։ Պաշտօնով ալ նման էին իրարու. զինուոր մը «վաղերբ» կը ջախջախէ Երուանդայ գլուխը[3]։

Ցարդ յիշուած պատերազմական զինուց հրահանգութեան ու գործածութեան եղանակի մասին աւելի ընդարձակ տեղեկութեանց համար կարելի է դիմել աշխատութեանս, «Դաստիարակութիւնը հին Հայոց քով»։

Դ. Նշանակիրք, Նշանաւորք կամ դրօշաւորք՝[4] մասն էին բանակին. անհատներ՝ որ պաշտօն ունէին իւրաքանչիւր գնդի հրամանատար իշխանին սեպհական դրօշը կրելու։ Իրենց հագուստը հաւասար էր գնդին՝ որուն կը պատկանէին. և ուրիշ զէնք չունէին՝ բաց ի սրէն, և դրօշին նիզակէն՝ զոր ի հարկին կը գործածէին։ Մերուժանայ նշանակիրն երբ տեսաւ Արտաւազդ պատանւոյն յարձակումն իւր դէմ, դրօշը պատեց նիզակին և փորձեց պաշտպանուիլ անով[5]։ Չեմ խօսիր դրօշուց մասին, որոց վրայ առանձին գրած եմ, «Հայ դրօշները պատմութեան մէջ»։

Փողարք[6], փողահարք[7] կամ փողակարդացք՝[8] նոյնպէս բաժնուած էին իւրաքանչիւր գնդաց մէջ, և անոնց տարազով ալ. ու խմբակներ էին, ոչ անհատներ, ինչպէս կը զգացնէ Եղիշէ, և Փաւստոս՝ բացատրութեամբս, «բազմաձայն փողարօքն», յիշեալ տեղերու մէջ։ Անոնք կը հնչէին՝ պատերազմի սկզբնաւորութեան նշան տալու[9], կռուի պահուն հրամաններ արձակելու[10], և յետ մարտին զօրքերը հաւաքելու[11] համար. նոյնպէս երբ մեծն վահան Պարսից բանակը կը մտնէր[12], և այլն։ — Պղնձի էին անոնք[13], ձևով ուղիղ՝ որ էին բուն փողք[14] կամ շեփորք[15], շեփորայք (աս. շեփորա[16]). և գալարունք՝ գալարափողք[17] կոչուած։ Յատկապէս «խստաձայն» շինուած էին, լի-

1. Խոր. Գ, իը։ — 2. Փաւս. 118, 130։ — 3. Խոր. Բ, իզ։ — 4. Փաւս. 254, 130. Հմմտ. 194, և Եղիշ. 74։ — 5. Փաւս. 254։ — 6. Նոյն՝ 130։ — 7. Եղիշ. 74։ — 8. Ձգօն, 340, 342։ — 9. Խոր. Բ, խզ։ — 10. Եղիշ. 92. Ձեն. 44։ — 11. Ձեն. 45։ — 12. Փրպ. 503։ — 13. Խոր, Բ, խզ։ — 14. Ագթ. 235։ — 15. Ձգօն, 296։ — 16. Hüb. 313։ — 17. Եղիշ. 92։

նելու համար «պատերազմաց փողք[1]», կամ «փողք պատերազմականք», որոց ձայներու սաստկութենէն «հնչեալ երկիրն թնդէր[2]». և ըստ պարագային կը դառնային նաև «ազդարար փողք[3]»։

Հոս կ՚աւարտեմ սասանեան շրջանի մեզ աւանդած հայկական տարազին ճոխ և այլազան նկարագիրը, որ այսքան երկար զբաղեցուց ու գրաւեց զմեզ։ Բայց վերջակէտը չդրած՝ կարևոր է դիտողութիւն մը։ Անոր անուանց մեծագոյն մասը պահլաւիկ լեզուէն առնուած տեսանք։ Երկու կերպ կարելի էր այդ փոխառութիւնը. կամ նոյն բառից նշանակած մասերով հանդերձ, և կամ արդէն մեր ունեցած մասանց տալով տիրող ցեղի լեզուին սահմանները։

Երկրորդը հնարաւոր է՝ գէթ մասնականաբար. իսկ առաջինը հաւաստի է, նկատելով տարազի յեղաշրջութիւնը՝ զոր կը կրէ պարթևական շրջանը մարականին վրայ, հաստատելով պարթև ու հայ նրբացած քաղաքակրթութեանց ներքին սերտ կապը՝ որ կար։ Նաև սասանեան տիրապետութեան ներքև նոյն պահլաւական նախկին ազդեցութիւնը շարունակեց մնալ, որուն բաւական չափով ենթարկուած էին Պարսիկներն ալ։ Այս պատճառաւ մեր Ե դարը կը պահէր տակաւին հին անուանակոչութիւնը, զոր ուշադրութեան պիտի առնուինք նաև պարթևական շրջանին, եթէ ունենայինք այն ժամանակէն տոհմային գիր ու մատենագրութիւն։ Մ՚եզ կը մնայ ուրեմն երկրորդով ըմբռնել առաջինն ալ իւր շատ մասանց մէջ։

1. Ոսկ. Թղթ. Ա, 337. յն. լոկ փող. — 2. Փրպ. 503. — 3. Զեն. 45.

# ԳԼՈՒԽ Է

## ՀՌՈՄԲԻՒԶԱՆԴԵԱՆ ՇՐՋԱՆ (Զ)



### Ա. ՆԿԱՐԱԳԻՐԸ

*Թէ մեր տոհմային պատմութենէ և թէ Ամմիանոսի տեղեկութիւններէն յայտնի է այն մրցակցութիւնը՝ որ կար Տիզբոնի ու Բիւզանդիոնի մէջ, իւրաքանչիւրն իւր կողմ որսալու երկու պետութեանց միջնորմ Հայաստանը։ Առաջինն իւր դրացութեամբ ու բռնութեամբ զգուշաւոր կ'ընէր զՀայն իրեն նկատմամբ. երկրորդը՝ նրբագոյն քաղաքակրթութեամբ ու քրիստոնէութեան կապով իրեն կը քաշէր զայն։ Այսու՝ Դ—Ե դարերուն մէջ յառաջ եկան արքայական ու հայրապետական աթոռոց անգամ բաժանմունք, որ տուին մեզ հռոմբիւզանդեան կրթութեամբ ու ճաշակով դաստիարակուած և կայսերական հովանւոյն ներքև իշխեցող թագաւորներ։*

1. *Մեծն Տրդատ՝ քաղաքական պարագայից բերմամբ՝ ի մանկութենէ փախստական հօր դաւաղիրներէն, կամ ըստ ոմանց հայրենի գահէն*[1], *սնաւ Հռովմայեցւոց տէրութեան մէջ, և յետոյ զինուորեցաւ Դիոկղետիանոս կայսեր բանակին մէջ, որոյ օգնութեամբ յետոյ իւր երկիրն եկաւ թափեց Պարսից ձեռքէն*[2]*։ Կայսեր հրամանաւ թագաւորեցին նաև իւր որդին Խոսրով, և թոռը Տիրան*[3]*։ Պապ իւր երիտասարդութիւնն անցուց յարքունիս կայսեր*[4], *և անոր ձեռամբ և օժանդակութեամբ ժառանգեց հայրենի գահը*[5]*։ Բիւզանդիոնէն առաւ իւր իշխանութիւնը նաև Վարազդատ*[6]*։ Պապայ որդւոյն՝ Գ Արշակայ օրով Հայոց թագաւորութիւնն երկփեղկեցաւ. ինք անցաւ յունական բաժնին մէջ իշխելու, և արևելեան Հայաստանը՝ Խոսրովու հետ մնաց Պարսից*[7]*. այս եղաւ համաձայնութեամբ Գ Շապհոյ և Ա Թէոդոսի՝*

1. Սանտ. Բ, 577։ — 2. Ագթ. 41–49. Խոր. Բ, հզ, հթ, ձբ։ — 3. Խոր. Գ, ը, ժա։ — 4. Փաւս. 122, 170։ — 5. Նոյն՝ 185. Amm. XXVII, 12։ — 6. Փաւս. 234։ — 7. Նոյն՝ 261-62։

383–388 թուականաց միջև[1]։ Արդէն ասկից յառաջ՝ 363ին ևս՝ Հայաստանի գաւառներէն Յովիանոս ստացած էր՝ դաշնադրութեամբ Բ Շապհոյ հետ[2]։

Գ Արտաշեսի մահուամբ յունական գաւառները, Եփրատէն մինչև Ամիդ քաղաք, սկսան կառավարուիլ հայ իշխանաց կամ սատրապաց ձեռքով, որոնք կայսերէն կը կախուէին, կ'ըսէ Պրոկոպիոս. և կը հաշուէ հինգ սատրապներ, որոնք տոհմային աւատական դրութեամբ ցկեանս կ'իշխէին իրենց սեպհական գաւառաց վրայ։ Ասոնք 488ին ապստամբեցան Զենոն կայսերէն, հակառակաթոռ Ղևոնդիոսի կողմն անցնելով. և կայսրը ջնջեց այդ ժառանգական սատրապութիւնքը, իւր նշանակած իշխանաց յանձնելով վարչութիւնը[3]։ — Սակայն այնուհետև չեն պակսիր յունական Հայաստանի մէջ կայսերէն ընտրուած կիւրապաղատներ, պատրիկներ, դուկեր և այլն, որոցմէ կ'երևին մեր պատմութեան մէջ մինչև ԺԱ դար։

2. Այդ քաղաքական սերտ կապակցութիւնը Բիւզանդիոնի հետ՝ չէր կրնար առանց ազդեցութեան մնալ հայ տարազին վրայ. և իրական փաստեր ալ ունինք ապացուցանելու համար զայս։ Սկսելով Տրդատէն, Ագաթանգեղոս կը պատմէ՝ թէ Դիոկղետիանոս զայն հաստատելով իւր իշխանութեան մէջ, «թագ կապեալ ի գլուխն նորա, և ծիրանեօք զարդարեալ մեծացոյց զնա, և կայսերակերպն զարդու շքեղացուցեալ՝ մեծարեաց զնա[4]»։ Եթէ մեր այս պատմիչը բացարձակ վստահութեան արժանի աղբիւր մը չէ, սակայն նախորդ շրջանաց մէջ տեսանք՝ որ օտար թագաւորներէ ստացուած հանդերձներն ու զարդեր՝ նուիրողի սեպհական ձևով կը լինէին, իբր առաւելագոյն նշանակ մ'իրենց ազդեցութեան՝ զոր ունէին կամ կ'ուզէին ունենալ Հայոց վրայ։ Այսպէս և Կոստանդ Ա զԽոսրով թագաւորեցնելու ժամանակ յղեց «ծիրանիս՝ հանդերձ պսակաւ[5]»։ Նոյնը պատահեցաւ անտարակոյս նաև մեր միւս թագաւորաց, որոցմէ Բ Արշակայ մասին կը գրէ Ամմիանոս՝ թէ «գեղեցիկ ու պերճ զգեստներ» ընդունեցաւ նոյն Կոստանդէն[6]։ Բայց այս խորագէտ Արշակունին գիտէր ըստ պարագային առնուլ իւր վրայ Սասանեանց ձևն ալ[7], որոց ձեռքով ի գահ ելած էր։

Պրոկոպիոս կը վկայէ նաև վերոյիշեալ հինգ սատրապներու համար՝ թէ իրենց պատուոյ «նշանները» կ'ընդունէին կայսերէն. և կը նկարագրէ զանոնք իբրև հետաքրքրական բան մը, զոր «այսու-

1. Գիւտ. 22։ — 2. Նոյն՝ 13։ — 3. Պրոկ. Շին. Գ, 1։ — 4. Ագթ. 48։ — 5. Խոր. Գ, ե։ — 6. Amm. XXI, 6։ — 7. Աստ՝ 92։

*հետև մարդիկ չպիտի տեսնեն», կ'ըսէ։ Անոնց այս տարազը, զոր պիտի նկատենք, սկսած կ'երևի Գ Արշակայ մահէն յետոյ, որով և տևած իբր դար մը։ Գալով միւս տիտղոսաւոր ազնուականաց, կայ նաև անոնց ստացած հանդերձից յիշատակը։ Գրիգոր Վկայասիրի հետ յԵգիպտոս կ'երթան հայ տոհմիկներ, որոնք երբ նաւէն ցամաք կ'ելնէին, «զարդարեցան... ինքեանց ոսկիակուռ պատմուճանօք՝ զոր ընկալեալ էին պարգև ի թագաւորէն Յունաց», կ'ըսէ պատմիչը[1]։ Պատկեր մ'ալ ունինք բիւզանդահայ ազնուականի, որ լաւ առաջնորդ մ'է մեզ այս հանդերձին քննութեան մէջ։*

*Բնականապէս պիտի չուզեմ ուշադրութեան առնուլ տարազն այն հայազարմ իշխանաց, որոնք ուղղակի Յունաց մէջ ապրեցան ու գործեցին իբրև յոյն. ինչպէս Ներսէս պատրիկ մը Զ դարուն, որոյ հանդերձը, նշմարելի Հռաւեննայի խճանկարուց մէջ՝ Թէոդորա կայսրուհւոյն քով[2], բոլորովին նոյն է մեր 55 Ձևի պալատականաց հագածին հետ. կամ անոնք՝ որ Բիւզանդիոնի գահուն վրայ ելան բազմեցան։ Այդ անձինք և իրենց զգեստը՝ ոչինչ ունին հայ ազգին և անոր տարազի պատմութեան հետ։*

## Բ. ԹԱԳԱՒՈՐՔ

*Ի՞նչպէս էր ուրեմն «կայսերական զարդը», որով պճնեցան Տրդատ և ուրիշներ։ Կրկին էր Հռովմայ ինքնակալաց տարազը, արքունական ու զինուորական, որոնք մի և նոյն ձևով փոխադրուեցան ի Կոստանդնուպոլիս, և մնացին անփոփոխ Դ դարուն և յետոյ ևս։ Աղբերացս մեծագոյն հաւատարմութեան համար՝ իբր օրինակ պիտի առնում հոս մեր հոռոմազգեստ արքայից ժամանակակից կայսերէն, հանելով հռովմէական շքադրամոց նոր ու գեղեցիկ հրատարակութենէ մը[3]։ Եւ են. Նախ՝ զՏրդատ պսակող Դիոկղետիանոսը, Ձև 52։ Երկրորդ՝ Վաղենտինիանոս Ա՝ կանգուն, և զինուորական տարազով, Ձև 53։ Երրորդ՝ Վաղէս ու նոյն Վաղենտինիանոս Ա՝ նստած ի միասին արքունական հանդերձով, Ձև 54։ Բիւզանդիոնէն մեր թագաւորաց ղրկուածն անտարակոյս արքունական հանդերձն էր, որ զգալի է Տրդատայ ստացածին մէջ ևս։ Բայց սա նախ քան զայդ կը զգենու զինուորականն ալ, որով իբրև կայսրը կը ճակատի Գթաց*

1. Սոփ. ԺԴ, 24. — 2. Alt. I, տխ. 3. Գեղ. 1909, 31. — 3. Gnec. I, տխ. 4, բ 15. տխ. 18, բ. 1. տխ. 34, բ. 15.

արքային դէմ[1]. և այդ զինուորական ձևն իրեն ընտանի դարձած էր իւր երկար ծառայութեամբ հռովմէական բանակին մէջ։ Արդ՝ կրնար նա, և շատ բնական էր, այս տարազն ալ իւր հետ տանիլ ի Հայաստան, ու կրել հոն գէթ ազատութեան կռիւներուն մէջ՝ իրեն զինակից հռովմէական գունդերուն հետ։ Ցամենայն դէպս այդ երկուքն ալ նկատելու ենք հոս։

Ա. Արքունականք։ — 1. Հերք և Մօրուք չէին կարող հեռանալ հռովմէականէն՝ մեր «կայսերակերպ» Տրդատայ վրայ, ոչ Գթաց ճակատին մէջ և ոչ ալ արտաքոյ։ Հետևաբար կարճ մազեր ունէր նա և գերծուած այտեր։ Հայրենի գահն ելնելէ վերջ շա-



Ձև 52. Դիոկղետիանոս Ձև 53. Վաղենտինիանոս Ա.

րունակեց այդ վարժած ոճը, հանդիսանալով նոր Տիգրան մը, թէ դարձաւ տոհմային երկար վարսից ու մօրուաց. դժուարին է ինձ դրական պատասխան մը գտնել մեր պատմութենէ։

2. Պսակը, բացատրուած՝ «թագ կապեալ» ընդհանուր ձևով Տրդատայ գլխին, և «պսակաւ՝» Խոսրովու վրայ, մեր միտքը ստիպեալ կը տանի հռովմէականին, որ էր ցած, փշաձև ճառագայթներով, ինչպէս մեր 52 Ձևին մէջ. և որ ի սկզբան աստուածոց և դիւցազանց յատուկ, ապա անցաւ մեծին Աղեքսանդրի յաջորդաց, Հռովմէական կայսերաց[2] ու Սելևկեանց[3]։ Եւ յետ Դիոկղետիանոսի՝ կ'երևի դեռ

1. Ագթ. 47. — 2. Dar. I, 564-7. — 3. Bab. Rois. տե 20.

Բիւզանդիոնի մէջ ալ՝ մեծին Կոստանդիանոսի[1] և Բ Կոստասի[2] գլխին, մինչ ուրիշ կայսերք բացագլուխ շինուած են։ Ոսկեղէն սարդեպսակն ալ կը կրէին հռովմէական կայսերք՝ իբրև նշանակ քաջութեան ու յաղթանակաց[3], որ դժուարաւ կրնար տրուիլ օտարաց։ — Հաւանական է՝ որ Տրդատ և որդին հռովմէականին հետ կրեցին հայկական թագն ալ, նշանակն իրենց հայրենի իշխանութեան, որով պահուած տեսանք զայն Սասանեան շրջանին ևս, քան հետևցնել՝ թէ իրենց յաջորդները նորոգեցին զայն։ Բայց հակապատմիկ կեղծիք մ'է Տրդատայ անունը կրող գմբեթուռոյց թագը, որ կը պահուի Էջմիածնի թանգարանին մէջ, և յառաջ բերուած է Հ. Ալիշանէ[4] և ուրիշներէ։



Ձև 54. վաղէս և վաղենտինիանոս Ա

3. Պատմուճանը (tunica), աւելի կամ նուազ կարճ, ինչպէս կը տեսնենք Ցուստինիանոսի վրայ (Ձև 55), հանդիսական առթից մէջ պճղնաւոր էր, ինչպէս է մեր 54 Ձևի զոյգ կայսերաց հագածն ալ, աւարտած լայն ու ճոխ վերջաւորով մը, և նեղ թեզանեօք՝ որ կ'եզերին հիւսկէն բազպաններով։

1. Gnec. I, տխ. 8, թ. 13-15։ — 2. Նոյն՝ III, տխ. յաւ. թ. 8։ — 3. Dar. I, 1535։ — 4. Բզմ. 1849. 152, 153. Արրտ. 393։

4. Հարուստ կամար մը կը զսպէ անոնց մէջքը, կեդրոնէն կախելով աստեղանման ականակուռ զարդ մը։

5. Քղամիդը (paludamentum), նոյնպէս պճղնաւոր, կը փոխանակէ հիմայ հռովմէական նախկին կրկնոցը (toga), որ սեպհական էր քաղաքական կենաց[1]. կը ճարմանդուի աջ ուսին մօտ, և նստելու ժամանակ քղանցները կ'ամփոփէ առաջակողմը։ «Ծիրանի» կոչեցին մեր պատմիչք՝ Տրդատայ և Խոսրովու ընդունածին գոյնը, երբեմն ընդարձակ Հռովմայեցւոց մէջ, և վերջերը կայսերաց և ապա Բիւզանդիոնի վեհապետաց սեպհականուած[2]. և որ յատուկ էր առաւելապէս քղամդին. որովհետև պատմուճանը զանազանութիւններ ալ կը կրէր[3], և Ցուստինիանոսի վրայ սպիտակ է։

6. Կօշիկները, որոնք կարմիր էին[4] ու կը ծնան դեռ[5], կ'երևին նուրբ ու սրակտուց յօրինուածով մեր զոյգ կայսերաց վրայ։

Տրդատ ալ բանեց արդեօք հռովմէական երկրագունդը, նշանակ արքայական իշխանութեան, չեմ կարող հաստատել կամ ժխտել։ Ասոր սակայն պիտի հանդիպինք մեր քով աւելի ուշ։

Բ. Զինուորականը։ — Հռովմէական կայսերք աւելի յաճախ կը կրէին զինուորական տարազը. և զայս իսկ հագաւ, ըսինք, Տրդատ՝ Գթաց թագաւորին դէմ, պատմչէն սահմանուած «զարդ կայսերական» և «ծիրանիս[6]»։ Զայս կը կրեն Դիոկղետիանոս ու Վաղենտինիանոս մեր 52 և 53 Ձևերու մէջ։

Առաջինն ունի գլխին փշաճառագայթ պսակը, որ յայտնի է՝ թէ նոյն տարազին ալ մասն էր, ինչպէս արքունականին։ — Կարճ ու նեղ պարեգօտ մը ցոյց կու տայ իր գոյութիւնը, իջնելով մինչև ծնկները, և ուսերուն մօտ դիզուելով՝ առանց թեզանեաց։ — Ասոր վրայ կու գայ զրահ մը, սովորաբար ծածկուած նուրբ քանդակներով, զոր կը շրջապատէ գօտին։ — Սանապանք կը ծածկեն սրունից կէսը միայն։ — Եւ հուսկ կայսերական ծիրանի երկար քղամիդը կը լրացնէ հանդերձին ձևը։

## Գ. ՍԱՏՐԱՊՔ

Ասոնց պրոկոպեան եզական տարազն ուրիշ բան չէ, բայց յարմարական փոխառութիւն մը կայսերական հանդերձին։ Իբր համեմատութեան եզր՝ յառաջ կը բերեմ հոս Ցուստինիանոս կայսեր

1. Dar. III, 426։ — 2. Նոյն՝ IV, 778։ — 3. Հմմտ. աստ՝ 73, 98։ — 4. Աստ՝ 75։ — 5. Աստ՝ 171։ — 6. Ագթ. 47։

*կենդանագիրը, Ձև 55, Հռաւեննայի Ս. Վիտալիոսի խճանկարներէն, որ գործ են Զ դարու. և գունաւոր հրատարակուած Ալտենեկէ[1] և յայլոց։ Կայսեր քով կանգնած պալատականներէն յայտնի է՝ թէ մեր հինգ նախարարութեանց զգեստը տարբեր էր անոնց հագածէն,*



Ձև 55. Յուստինիանոս Ա իր դրանիկներով

*ինչպէս և հայ իշխանականէն։ Ասոր երեք կարեւոր կտորները միայն կը յիշէ ու կը նկարագրէ յոյն պատմիչը, որովհետև ադոնց մէջ իսկ կը կայանար իրենց գլխաւոր զանազանութիւնը միւս իշխանակիցներէն. և են հետևեալք։*

1. Alt. I, *տխ.* 4։

*«Պատմուճանը մետաքսեայ, համակ պճնած ոսկեղէն զարդերով, զոր սովոր էին կոչել փետրային», այսինքն Նրբահիւս. և որ անտարակոյս մինչև ծնկները կը հասնէր, որպէս զի կարենային տեսնուիլ զանկապանները, զորս կը կոչէ՝ «կօշիկներ մինչև ծնգները, ծիրանի գունով, զոր միայն Հռովմայեցւոց ու Պարսից Թագաւորաց ներելի էր հագնիլ»։ Արդարև Թէ կարճ պատմուճանը, սպիտակ գունով և ուսին մօտ ու քղանցքին վրայ ոսկեդիպակ յաւելուածով, և Թէ կարմիր զանկապանք կ'երևին նաև Յուստինիանոսի վրայ, որ նոյն խճանկարին մէջ ցոյց կու տայ կամարն ալ, տեսանելի նաև պալատականաց վրայ[1], և զոր մեր իշխանք եւս ունէին անկասկած՝ ըստ ընդհանուր սովորութեան։*

*Երրորդ կտորն էր «քղամիդը (χλαμύς), շինուած ասրէ, ոչ ոչխարի, այլ ծովէն հանուած անասնոց, զորս ռամիկը պինա կը կոչէ, և որոցմէ կ'ելնէ այն»։ Պիննա՝ ժժմակ մ'էր, մինչև ցարդ ծանօթ բնագիտաց նոյն անուամբ, և որոյ մասին ս. Բարսեղ հետևեալ տեղեկութիւնը կու տայ. «Ասրն ոսկեղէն, զոր իպանեիաս (կամ եպինեաս, αἱ πίνναι) գազանք սնուցանեն. զի ի նոցանէ լինի ասրն այն, որ ոչ երբեք ուրեք յիմաստուն նարօտաներկաց կարաց յայնպիսի գոյնս ներկել յաշխարհի[2]»։ Պրոկոպիոս կը շարունակէ. «Ոսկեգոյն էր ծիրանւոյն այն մասն՝ ուր կը միանար ու կ'ամփոփուէր։ Քղամիդին վերին մասին վրայ կը գտնուէր ոսկեղէն շիգղ մը, որ իր մէջ կը կրէր թանկագին քար մը, ուսկից երեք յակինթներ կը կախուէին ոսկեղէն ճապուկ շղթաներով»։ Պճղնաւոր քղամիդը՝ այդ բոլոր հանգամանօք՝ կայ և Յուստինիանոսի վրայ։*

*Այդ կայսերատուր տարազը կրողները բնական էր որ ուրիշ մասերով ալ մօտենային բիւզանդական բարուց, զորս յոյն պատմիչը չէ յիշած՝ սովորական լինելուն համար։ Ուստի ունենալու են մեր Ձևի պալատականաց նմանող՝ մանաւանդ Թէ կայսեր գոհարազարդ կօշիկներն ալ, որ միանգամայն տոհմային սովորութեան պահանջն էր[3]։ Հաւանօրէն անոնց վարսերը կտրուած էին նոյն պալատականաց չափով։ Եւ պիտի ընտրէին կարճ մօրուքը՝ զոր կը կրէին նոյն Բիւզանդացւոց մէկ մասը, քան Թէ այլոց մօրուագերծութիւնը, որ բնականապէս հաճելի չպիտի Թուէր Թէ իրենց և Թէ հայ հպատակաց, որոց աչքերը մօրուաց վարժած էին։*

1. Alt. I, տխ. 3. — 2. Վեցօր. 152. — 3. Հմմտ. տես՝ 125.

## Դ. ՊԱՇՏՕՆԱԿԱԼՔ

Ս. Ղազարու մենաստանս կը պահէ Աւետարան մը, գրուած յԱդրիանուպոլիս ՆԾԶ (1007) թուականին, որոյ ստացողն է կայսերական հայ պաշտօնատար մը. «Ես Յովհաննէս պռոտոսպաթար թագաւորի և պռոքսիմոսս դուկիս Թոթորակնիս ճորտս». այսինքն պրոտոսպաթարիոս (աւագ սուսերակիր) կայսեր ու պրոքսիմոս (բդեշխ), որոնք երբեմն պաշտօններ էին, և յետոյ Բիւզանդիոնի մէջ տիտղոսներու վերածուեցան. ու մեր Յովհաննէս Ադրիանուպոլսոյ բեռոտարագմոս (աստուածերկիւղ) դուկին (դքսին) կամ զինուորական կուսակալին ձորտը, որ է պաշտօնեայ կամ օգնական, և անոր պէս զինուորական շքադիր տարազը կը կրէ: Բայց հայ է և կը մնայ սրտով ու լեզուով, և ինք զինքը կենդանագրել տուեր է հոն իր բիւզանդական տարազով, Աւետարանը նուիրելով Աստուածամօր. և զոր կը ներկայացնեմ հոս, Ձև 56: Սա կը յիշեցնէ յունական Հայաստանի մէջ կայսերական պատիւներու արժանացած մեր միւս ազնուականաց ոմանց հանդերձն ալ, որով կրկնակի ուշագրաւ է մեզ համար:

1. Մազերը չափաւոր են, և մօրուքը՝ ոչ շատ երկար:

2. Փակեղը, որուն պիտի անդրադառնանք յաջորդ գլխոյն մէջ, իբր գլխադիր կը ծառայէ. գոյնն է աղօտ կապոյտ. և ճակատէն ուղիղ մեկնելով, կ'ամփոփուի յետակողմը, բազմախորշ ծայրը կախելով ծոծրակին վրայ: Իսկ ստուար ժապաւէն մը կը բռնէ զայն, դառնալով գլխին շուրջ: Ասոր նմանը կը նշմարուի նաև Ժ դարու բիւզանդական մանրանկարի մը մէջ, սպաթարիոսի մը գլխին [1]:

3. Ներքնակը, գունով աղօտ կապոյտ, կը ցուցնէ նեղ թեզանիքը, և ստորոտը՝ որ կ'իջնէ ծունկներէն վար՝ խորշերով:

4. Պատմուճանը, քան զայն կարճ հասակաւ ու թեզանեօք, ներկուած է աղօտ կարմիր կամ ծիրանի: Մէջքէն վեր կանաչ է, և ծածկուած՝ ինչպէս թեզանիքն ալ՝ շերտ զրահներով, դեղին (ոսկի) գունով, և ուսոց վրայ վահանաձև կապոյտ: Այս զրահը կը նմանի ժամանակի բիւզանդական ուրիշ ձևերու [2], ինչպէս և Աղեքսանդրի պատմութեան մանրանկարուց ի Ս. Ղազար, որոնք ուղղակի ոսկով ներկուած են: Մեր ազնուականին քղանցը ճեղքուած է երկուստեք, և շուրջանակի եզերուած լայն դեղին (ոսկի) ժապաւենով: Այդ ոսկին

1. Schl. Epop. I, 601: — 2. Պատմուճանը՝ անդ, II, 128. զրահը՝ անդ, 49. կապանք՝ անդ, 184, 249:



Ձև 56. Ցովհան Պառքսիմոս

կը համապատասխանէ Սոփերաց «ոսկիակուռ» կոչման՝ զոր տեսանք։

5. Վարտիքը սեղմ է և կանաչ յատակով, ու վրան գծերով խաղեր. իսկ ստորոտը կը կորնչի

6. Զանկապանաց մէջ, դեղին (ոսկի) գունով, որոնք կը հասնին սրունից կէսը, և առաջակողմէն աղեղնաձև վեր կը կարկառին։

# ԳԼՈՒԽ Ը

## ԱՐԱԲԱԿԱՆ ՇՐՋԱՆ (Է)



### Ա. ՆԿԱՐԱԳԻՐԸ

ՎԱՏԹԱՐԱՑԱԾ *սասանեան զօրութեան յաջորդեց արաբականն Է դարուն, որ հետ զհետէ ընդարձակուելով՝ եկաւ գրաւեց նաև Հայաստանի ոստանը Դուին։ Հայք քանիցս անգամ փորձեցին վանել զանոնք, բայց չյաջողեցան, և հուսկ հարկադրեցան խոնարհիլ անոնց բռնական լծին ներքև։ Այս վիճակին մէջ մեր երկիրը կը դառնար նշաւակ տիրապետական ցանկութեան ոստիկանաց ու միանգամայն Բիւզանդիոնի։ Առաջնոց գազանութենէն կը սոսկար, և վերջնոյն քրիստոնէական Թևածութենէն չէր ուզեր հրաժարիլ։*

1. *Բագրատունիք, վերականգնիչ հայ թագաւորութեան, արքայական աթոռը բարձրանալու համար՝ երկու կողման ալ հաճութիւնը կը ստիպուէին առնուլ յաճախ, և հաճութեան հետ նաև արքայական զարդեր, կը գրեն մեր պատմիչները։*

*Առաջին պսակաւորն Աշոտ Ա՝ «թագ կապեալ (լինէր* 886–7 *թուին) յերկոցունց թագաւորացն՝ յիսմայելացւոց և յունականէն», կ'ըսէ Սամուէլ*[1]*, որոց առաջինը միայն կը յիշէ Յովհաննէս պատմագիրը, և անոր հետ նաև «զգեստս թագաւորականս*[2]*». իսկ Ասողիկ՝ «կամակցութեամբ» Վասիլ կայսեր միայն կը նշանակէ*[3]*։ Իւր որդին Սմբատ Ա գահը կը բարձրանայ՝ դարձեալ «կամակցութեամբ Լևոն թագաւորի Յունաց՝» ըստ Ասողկան*[4]*. և ամիրապետին ու կայսեր՝ զգեստով հանդերձ՝ ըստ պատմագիր կաթողիկոսին*[5]*։ Ասոր որդին Աշոտ Բ կը թագաւորէ հաւանութեամբ Վրաց արքային. յետոյ կ'երթայ կայսեր ի Կոստանդնուպոլիս, անոր ալ հաստատել կու տայ իւր*

1. Սամ. ՑԲ։ — 2. Յհ. կթ. 175։ — 3. Ասող. 144։ — 4. Նոյն՝ 145։ — 5. Յհ. կթ. 185, 200։

իշխանութիւնը, և շքեղ հանդերձներ կ'ընդունի[1]։ Յուսուփ ոստիկանը սրտնեղած անոր դէմ, կը թագաւորեցնէ անոր հօրեղբօրորդին՝ Աշոտ սպարապետը. ապա միւսն ալ շահելու համար՝ նուէր կը յղէ զգեստ ու զարդեր[2]։ Խառն են ուրեմն Անւոյ տեարց ստացած ու կրած հանդերձները. արաբականք և յունականք, որ կը տևեն մինչև անոնց գահուն կործանումը, 1045 թուականը։

2. Սակայն Ժ դարուն թագաւորութիւնը տեսակ մը համաճարակ հիւանդութիւն կը դառնայ Հայոց. և Վասպուրական, Վանանդ կամ Կարս, Բաղք կամ Սիւնիք, Տաշիր կամ Լոռի, Անձևացիք ու Գարրբանդ իրենց առանձին թագաւորները կ'ունենան, և կը տևեն աւելի կամ պակաս[3], ապրելով արաբ կամ յոյն ազդեցութեան ներքև։ Ադոցմէ ոմանց հանդերձին հանգամանքներն ալ ծանօթ են պատմութենէն կամ արուեստէն. ինչպէս Վասպուրականի, ուր կ'իշխէին Արծրունիք (յամս 914–1080), և Տաշրի ու Վանանդայ՝ ուր թագաւորեցին Բագրատունեաց ճիւղերը ժամանակ մը։

Առաջին Արծրունի թագաւորն եղաւ Գագիկ, հակառակորդ Ա Սմբատայ Բագրատունւոյ, զոր Յուսուփ ոստիկանը ձերբակալելով, Արծրունւոյն տուաւ Հայոց գահը՝ արքայական զգեստով հանդերձ[4]։ Արաբացիք նախանձորդք իրարու դէմ, կը ջանային իւրաքանչիւրն իրեն որսալ Գագկայ բարեկամութիւնը։ Այս նպատակաւ Ջաբր ամիրապետ կը յղէ անոր «Թագ և հանդերձս զարդուց զարմանալիս». նոյնպէս և երկրորդ անգամ[5]։ Նաև Յուսուփ կրկին անգամ կ'ընծայէ «Թագ և հանդերձս երևելիս[6]»։ Յովհաննէս կաթողիկոս այս նուիրատուութիւնքը կը նկատէ իբր երիցս պսակումն «Թագիւ». երկուք Յուսուփէն, և մին ամիրապետէն՝ Փարկինի ոստիկանին ձեռամբ[7]։

Արաբական էր ուրեմն Արծրունւոյդ տարազը, զոր պիտի նկատենք նաև անոր կենդանագրին վրայ։ Եւ բնական չէ Ատրպետի հանած հետևութիւնը՝ թէ Գագկայ հանդերձն «օրինակ է ծառայել ամբողջ դարերով՝ սելջուկ, թաթար, պարսիկ և թուրք իշխաններին[8]»։ Ադոնք բնագիրը թողած՝ օրինակին չէին կարող դիմել։

3. Աշոտ Ողորմածի մահուամբ՝ Բագրատունեաց թագաւորութիւնը կը բաժնուի, և անոր կրտսեր որդւոյն Գուրգէնի կը վիճակի Տաշիր[9], նոյնպէս արաբական ազդեցութեան ներքև. այնպէս որ անոր թոռը Կորիկէ կը հարկադրի յետոյ դուստրը կնութեան տալ նոր

1. Յհ. կթ. 307, 356։ — 2. Նոյն՝ 366, 375։ — 3. Ինճ. Բ, 55–67։ — 4. Արծ. 321։ — 5. Նոյն՝ 322։ — 6. Նոյն՝ 323։ — 7. Յհ. կթ. 264, 267, 387։ — 8. Տրդ. 1915, 86։ — 9. Վրդ. Պտ. 90։

*բռնակալ պարսիկ Ալփասլան սուլտանին[1]։ Իսկ Կորիկէի որդւոյն օրով Թագաւորութիւնը կը ջնջուի[2]։*

*Ասոնք կը պահեն իրենց անեցի ազգակցաց արաբական տարազն ալ, որոյ ապացոյցը կայ։ Հաղբատայ եկեղեցւոյն ճակատին կ'երևին բարձրաքանդակ երկու արքայական կենդանագրեր, որոնք սրբավայրին օրինակը կը բռնեն իրենց բազկաց վրայ, և իրենց յարակից անուանք անընթեռնլի են[3]։ Տաճարս հիմնեց Աշոտ Ողորմածի կինը Խոսրովանոյշ[4]. յետոյ՝ ըստ արձանագրի եկեղեցւոյն, ՆԽ (991) տարւոյն, հայր Սիմէոն և Տիրանուն երէց կ'ամբողջացնեն զայն, գրելով՝ թէ «...շինեցաք զեկեղեցիս փրկութեան Սմբատայ և Գուրգենայ[5]», անտարակոյս և անոնց ծախքով։ Աղոնք են բնականապէս յիշեալ թագուհւոյն երկու որդիքը, Սմբատ Բ՝ Հայոց, և վերոյիշեալն Գուրգէն թագաւոր Տաշրի, որոնք կ'աւարտեն իրենց մօր գործը, և կը ներկայացնեն զայն հող բիւզանդական ոճով՝ իբրև իրենց շինածը։ Այդ երկուքն ալ արաբազգեստ են, որով Տաշրայեցող նկարագիրը պիտի խառնենք Անեցւոց հետ։*

*4. Կը մնան Վանանդացիք, դարձեալ Բագրատունեաց շառաւիղ, որոց հիմնադիր եղաւ Աշոտ Ողորմածի եղբայրը Մուշեղ[6], և յաջորդ ունեցաւ որդին Աբաս[7] ու թոռը Գագիկ, որոյ համար կ'ըսէ Կիրակոս՝ թէ «ընդ իշխանութեամբ» կայսեր էր[8]. և Ալփասլանայ ասպատակութեանց ժամանակ իւր հայրենիքը Յունաց կը յանձնէ փոխարէն Ծամնդաւի՝ ուր կ'ապաւինի[9], և հոն ալ կը մեռնի[10]։ Բարեբախտ ենք ունենալու նաև այս վերջին վանանդացւոյս կենդանագիրն՝ ընտանեաց հետ, մագաղաթեայ պահպանակի մը վրայ, յարակից յիշատակարանով միասին[11], և որ մեծապէս փնասուած՝ կը պահուի Երուսաղեմի վանուց մէջ։ Ասոր տարազին վրայ նոյնպէս զգալի է արաբական ձևը։*

*Այդ թագաւորութեանց և անոնց հանդերձից ինչ ինչ զանազանութիւնք կը պահանջեն՝ որ զատ զատ քննենք նաև անոնց տարազները, և յետոյ անցնինք իշխանականներին, որ նոյնպէս արաբական ազդեցութիւնը կրած է, այն սերտ կցորդութեան պատճառաւ՝ զոր իրենք ալ ստիպուած էին ունենալ արար իշխանութեանց հետ, որոցմէ յատկապէս հանդերձներ ալ կը ստանային շատ անգամ, ինչպէս պիտի տեսնենք իրենց կարգին։*

*Յետոյ պիտի զննենք ժողովրդականը և ուրիշ տարազներ, որոց*

1. Ուռ. ՁԸ։ — 2. Վրդ. Պտ. 106։ — 3. Թոսա. 15։ — 4. Հմմտ. Հյպտ. 287. Վրդ. Պտ. 90 ևն։ — 5. Թոսա. 17։ — 6. Ասող. 166–7։ — 7. Նոյն՝ 183. Ուռ. ԼԼ։ — 8. Կիր. 57։ — 9. Ուռ. ՃԺԶ։ — 10. Կիր. 59։ — 11. Արար. 1911, 686։

*քննութեան տարերքը նոյնպէս չեն պակսիր մեզ, և որոնք սակայն անկախ են արաբացի ձևէն։ Էջմիածնի հին աւետարանին մէջ, գրուած ի Սիւնիս 989ին, կան երեք մոգերը, որոց տարազը Սոչիգովսկի կը փորձէ հայացնել այս բացատրութեան մէջ. «փուշգական գդակէն շինուած է թերևս ազգային գլխանոց մը[1]»։ Բայց ասոնց սրաձև գդակը՝ հեռի շրջանիս հայ սովորութենէն, և անոր զոյգ ծփուն ժապաւէնը՝ յատուկ Սասանեանց[2], մեր դիմաց կը դնեն պարզապէս այն պարսկային տարազը՝ զոր քրիստոնէական արուեստը Գ—Դ դարերէն սկսեալ՝ կու տայ երկրպագող մոգերուն, ինչպէս կ՚ըսէ Գրիւնայսէն[3]։*

*Եւ որովհետև արաբական տարազը համեմատութեան եզրն է հայկականին, կը դնեմ նախ հոս անոր համառօտ նկարագիրը, ԺԳ դարու գրչագրի մը նկարուց համեմատ։ Փակեղ գլխին՝ գործածողին ձեռքով յարմարած. պճղնաւոր պարեգօտ, երկայն ու լայն թեզանեօք, և ժապաւինաձև գօտիով մը բազկաց վերև. լայնաստորոտ վարտիք, և կիսակօշիկ. իսկ գօտի չունին[4]։ Երիտասարդ մը կը զանազանի միւսներէն, կրելով երկայն ու նեղ մեկնոց մ՚ալ՝ ուս ընդ անութ ձգած ուրարի պէս[5], անշուշտ դիւրութեան համար։ Նոյն տարազն է նաև արաբական 1237ի գրչագրի մը մանրանկարուց մէջ, շինուած ի Բաղդադ, զորս հրատարակիչք յառաջ կը բերեն։ Միայն թէ մեկնոցը լայն ու քառակուսի է, թեթև փիլոնի ձևով ձգուած շատերուն վրայ[6]. իսկ փակեղները մերթ հաստատուն են[7] և մերթ գլխուն վրայ շինուած[8]։*

## Բ. ԲԱԳՐԱՏՈՒՆԻՔ

*Կրկին էր՝ ըսինք՝ Անւոյ արքայից հանդերձին ձևը, արաբական և յունական։ Առաջինը տիրողն է անոնց քաղաքային կենաց մէջ, հաճելու համար մերձակայ բռնաւորները։ Երկրորդը՝ վերապահուած էր անոնց արքայական օծման հանդիսին, իբրև քրիստոնէական տարազ և պատշաճագոյն այնպիսի սրբազան առթի մը։ Մեք զասոնք պիտի նկատենք իրարմէ անջատ։*

*Ա. Քաղաքային հանդերձ։ — Այս տարազը, զոր բոլոր Բագրատունիք կրեցին, ընդունելով նախ ամիրապետէն, ձևով արքայական էր, այսինքն պարգևողին յատուկ. որով պատմութիւնը կը կոչէ*

1. Սոչ. Աւետ. 20–21։ — 2. Աստ՝ 96։ — 3. Grün. 169, 197։ — 4. Pris. Arab. III, տխ. 49, 50, 51։ — 5. Նոյն՝ տխ. 51։ — 6. Schl. Epop. I, 233. և The Min. II, տխ. 11։ — 7. Schl. անդ՝ 237, 241։ — 8. Անդ՝ 245։

*զայն «զգեստս թագաւորականս» Ա Աշոտոյ վրայ[1], և «երևելի զգեստս արքունականս՝» Ա Սմբատայ վրայ[2]։ Արիստ. Լաստիվերտցին մեզ կու տայ անոր հետևեալ գեղեցիկ նկարագիրը։ «Թագաւորն, կ'ըսէ, յառաւօտինան յորժամ ի քաղաքէն ելանէր, զօրէն փեսայի՝ որ ելանէ յառագաստէ իւրմէ, կամ որպէս տունջենային արուսեակն՝ որ ի գլխոյն արարածոց բարձրանալովն՝ զամենայն տեսանելիս յինքն ձգէ, այսպէս և նա պաղպաջէր փաղփուն հանդերձիւք և մարգարտախուռն թագիւն, և զամենայն մարդ ի տեսութիւն և ի զարմանս ցուցանէր[3]»։ Այս և ուրիշ պատմական տեղեկութեանց հետ ունինք նաև երկու քանդակեալ կենդանագրեր, զորս յառաջ կը բերեմ. մին՝ վերոյիշեալ Սմբատայ և Գուրգենի զուգաքանդակը, Ձև 57, զոր առած եմ անջատ լուսանկարէ մը. և միւսը՝ Ա Գագկայ արձանը, Ձև 58, — դարձեալ լուսանկարէ մը, — որ գտնուեցաւ Անւոյ մէջ, իւր կառուցած Ս. Գրիգորի աւերակաց ներքև, ձեռաց վրայ բարձած նոյն եկեղեցւոյն օրինակը, որ այժմ կը պակասի։ Ըստ այդ յիշատակարանաց՝ Բագրատունեաց տարազն ունէր հետագայ մասունքը։*

1. *Հերք և Մօրուք գուցէ իրենց ճոխագոյն շրջանին մէջ կը գտնուին հիմայ։ Վարսերը զանգրագեղ կախուած են, որոց մէջ Ն. Մառ կը նկատէ «հին աւանդութեանց շարունակութիւնը[4]»։ Բայց մօրուքն աւելի երկար է քան Արշակունեացը։ Եւ Բագրատունեաց մերձաւոր սովորութեան կ'ակնարկէր Լամբրոնացին, երբ հեգնօրէն կը գրէր առ Լևոն. «Աճեցուցէք զհերս և զմօրուս որպէս ձեր հարքն[5]»։*

2. *Թագ մը կը յիշուի յաճախ Բագրատունեաց վրայ. Աշոտ Ա ամիրապետէն կ'ընդունի «թագ թագաւորական[6]», և Սմբատ Ա՝ «թագ արքայութեան» կամ «թագ արքայական[7]» կամ «թագ թագաւորութեան[8]». և Յուսուփ կ'ընծայէ Բ Աշոտի «թագ արքայական[9]»։ Թագին հանգամանքներն անորոշ, աւելի ճշդուած են Ա Սմբատայ Յուսուփէն ընդունածին վրայ. «Թագ ևս յոսկւոյ սոփերայ կազմեալ, և ի նմա յելուզեալ յեռեալ վարսակալ մարգարտատող տպազարդութիւնս, և այլ ևս ականս պատուականս[10]»։ Այսինքն թէ թագը սոփերական (ընտիր) ոսկիէ շինուած էր, և անոր վրայ շուրջանակի յեռած մարգարտի և ականց շարքեր՝ վարսակալի նմանութեամբ։ Այս նկարագիրը կը կարծեմ տեսնել Բ Սմբատայ կրածին վրայ (Ձև 57), զոր նա հաւանօրէն ժառանգած է իւր համանուն նախահաւէն։ Եւ է տաշտաձև, վերև զարդարուած երեք երի-*

1. Յհ. կթ. 175։ — 2. Նոյն՝ 244, 249։ — 3. Լաստ. 39։ — 4. Rev. étud. I, 3, էջ 404։ — 5. Լմր. Թղթ. 239։ — 6. Յհ. կթ. 175։ - 7. Նոյն՝ 185, 244։ — 8. Ասող. 148։ — 9. Յհ. կթ. 375։ — 10. Նոյն՝ 249։

*զանման յաւելուածով, և շրթան վրայ չորրորդ մը, բոլորն ալ մար-գարտով ու գոհարներով ծածկուած։ Այս թագին պէս տաշտաձև է Ը դարուն նաև իտալ հռովմէական իշխանաց գլխանոցը[1]. Բիւզանդիոնի Բարսեղ Ա կայսեր կրածը՝ 886ի մանրանկարի մը մէջ[2]. Գերմանիոյ Բ Ոթոնի և անոր կնոջ Թէոփանոյի դրամները Ժ դարուն, եզերուած ականազարդ շրջանակով[3]. Սողոմոնին ու Հերովդեսին՝ նոյն դա-րու բիւզանդական գրչագրաց մէջ, եզրին ու գագաթին շրջանակ-ներով[4]. — այս վերջին չորս անձինք միանգամայն բիւզանդազգեստ են[5]. — և Շուաբենի հակաթոռ կայսեր Ռուդոլֆի (1057–1080) կրածը[6]։ Յայտնի է ուրեմն Սմբատայ թագին աղբիւրը, զոր Յուսփայ*



*Զև 57. Սմբատ Բ և Գուրգէն Բագրատունիք*

*խորագիտութիւնը նշմարեց և օրինակեց, քրիստոնէական հաճոյագոյն թագ մը տալու համար Հայոց արքային։ Այն պարագայն ևս՝ որ Բ Սմբատայ թագն արաբական տարազին հետ կը գտնուի, կրնայ ապա-ցոյց մը նկատուիլ նոյն թագին արաբական նուէրը լինելուն։*

*Ռոստոմ Բէգ Երզնկեանց գետնէն դիտելով Սմբատայ գլխանոցը, կարծեց «սրածայր թագ չորեքփեղկեան, եզերքն զարդարեալ ակամբք պատուականօք[7]»։ Նոյնը կրկնեց, բառացի կերպով իրեն հետևելով, Ե. Լալայեան ևս[8]։ Հաւանօրէն նոյն աչքի պատրանքը կայ նաև*

1. Jacq. Icon. տխ. 145. — 2. Kreks. տխ. 24. — 3. Falke, 149. — 4. Louan. I. — 5. Հմմտ. Schl. Emp. 181, 285. — 6. Alt. տխ. 56. — 7. Ռոստ. 14. — 8. Ազգ. Հնդ. 1901, 398.

*Սանահնի ճակատին կիւրիկէ և Սմբատ Թագաւորաց նկարագրին մէջ, զորս Լալայեան դարձեալ «սրածայր գլխարկով» կ'ըսէ*[1], *հետևելով Խս. Ցարութիւնեանի*[2]*։ Դժբախտաբար ատոնց ձևերը չկարողացայ ձեռք բերել։ — Մեզ այժմ յայտնի է ուրեմն Բագրատունեաց թագը. որով աւելորդ կը լինի Ն. Մառի Թուրքը՝*[3] *թէ Անւոյ Թագաւորք կայող են գործածած լինել Տրդատայ հօր՝ խոսրովու կարծեցեալ «զԹագն հրաշալի», զոր ըստ Կիրակոսի՝ իբր թէ Վրաց արքունիքը պահեր էր, և ԺԳ դարուն Թաթարաց ղանին տուեր*[4]*։*

3. *Շարփուշը (արբ. սերփուշ) կամ գլխապատը՝ երկրորդ գլխանոցն էր Բագրատունեաց, զոր կը տեսնենք Գուրգենի և Ա Գագկայ վրայ (Զև 57, 58)։ Իր և անուն Արաբներէն առնուած են, որուն կ'ակնարկէ և Լամբրոնացին՝ գրելով առ Լևոն արքայ. «Մի՛ կայք բացագլուխ . . . այլ դիք շարփուշ որպէս ձեր նախնիքն*[5]*»։ Ն. Մառ խօսելով Բագրատունեաց դրածին վրայ, յետ երկար Թափառելու ուրիշ նման արտաքին ձևերու մէջ, կը հետևցնէ՝ թէ նմանութիւն էր արաբականին*[6]*։ Թէ՛ երբ ընդունուեր է, չկայ պատմական փաստ. բայց հաւանօրէն առաջին Թագաւորէն իսկ, հանդերձին հետ միասին. և վերև յառաջ բերուած անորոշ «Թագի» յիշատակութիւնք կրնան մասամբ նաև այս իմաստով առնուիլ։*

*Գուրգենի շարփուշն ինք իւր մէջ հիւսուած է աղնագործ. իսկ Գագկլին՝ պատատուած շուրջանակի, և ներքին խուրին կոնաձև ծայրը կարկառած։ Երկուքն ալ ըստ կազմութեան ուրիշ բան չեն՝ բայց սպիտակ բեհեզի կոյտեր, ամիրապետաց կրածն իսկ։ Այս գլխանոցին, իրականին մէջ աւելի ճոխ, կը տանի մեր միտքը Լաստիվերտցին, նկարագրելով զԳագիկ Բ Անւոյ՝ «մարգարտախուռն Թագիւն*[7]*»։ — Գաղափարաց շփոթութիւն մը կայ Երզնկեանցի հետագայ բացատրութեան մէջ՝ Գուրգենի կրածին համար. «ապարօշ ազնիւ, պատուեալ Տիգրանեան շքանշան վարսակալաւ*[8]*», զոր նախայիշեալ տեղւոյն մէջ կը կրկնէ և Լալայեան, «ազնիւ ապարօշ (շալ) և վարսակալ դրուած», ուր մեք ծանօթ կամ ուրիշ վարսակալ չենք տեսներ։*

*Լամբրոնացին Բագրատունեաց ակնարկութեան մէջ ըսելով՝ «մի՛ կայք բացագլուխ», կը զգացնէ՝ թէ անոնք արքունեաց մէջ ալ շարփուշն իրենց գլխէն չէին հաներ, դարձեալ արաբական դրութեամբ, որուն հաւատարիմ հետևող էին։*

4. *Դուռայ կ'ըսուի հիմայ պատմուճանը, որ արաբերէն է*

1. Ազգ. Հնդ. 384. — 2. Անդ՝ 1898, Բ. 1, էջ 293. — 3. Մառ՝ Բն. և վէպք, 24-5. — 4. Կիր. 178. — 5. Լմբ. Թղթ. 339. — 6. Մառ՝ յիշ. գրծ. — 7. Վերև. — 8. Բռառ. 15.

և հանդերձին հետ եկած, ու կը նշանակէ ասրեղէն զգեստ[1]։ Անոր ծագման մասին սխալելով, — կ'երևի Պարսիկներն ալ առած էին Արաբներէն, — կը հաստատէ հնութիւնը Մագիստրոս, ըսելով. «Մեր ի Պարսից բազում ինչ ընտանեբար ուսեալ զգեստըս, որպէս դուռս և սիդէ[2]»։ Նոյնը կը յիշէ ու կը սահմանէ Լամբրոնացին ալ. «որպէս ձեր հարքն՝ զգեցիք դուռայ լայն և թաւ», հակադրելով զայն Ռուբինեանց «զսպեալ պատմուճանին[3]»։ Շատ ակներև է հանդերձս Գագկայ արձանին վրայ, և կ'իջնէ մինչև թաթերը. իր լայնութիւնն ալ զգալի է հոն։ Ցոյց կու տայ նաև իր լայն ու երկայն թեզանիքը, որ ըստ ականատեսի մը՝ «հաւաքուած ու ծալուած են մինչև դաստակներուն մօտ[4]», և արձանին վրայ վերարկուին նեղ թեզանիքէն դուրս կախուած, ինչպէս չափով մը նաև միւս երկու թագաւորաց վրայ։ Հանդերձին նիւթի մասին կը խօսիմ քիչ յետոյ։



Ջև 58. Գագիկ Ա Բագրատունի

5. Կամարը կը բռնէ իր տեղը և շատ հարուստ է։ Սմբատ Ա ամիրապետէն կ'ընդունի «կամար ականակապ ի համակ ոսկւոյ[5]». նոյնպէս և ուրիշներ։ Իրենք Բագրատունիք ալ գիտէին շինել տալ, կրել ու նուիրել նոյնպիսի կամարներ. ինչպէս էր Սմբատայ ընծայածն առ Յուսուփ, «կամար ի համակ ոսկւոյ՝ գործ հռոմայական ճարտարաց, յերանգս գունակ գունակ ապակւոյ[6]». այսինքն ոսկի՝ կիտուածանկարով։

6. Ռիդէն ալ յիշեց Մագիստրոս արաբական դուռային հետ, իբրև եկամուտ կոչում և իր. և որ իսկապէս արաբերէն է՝ ռիդա

1. Hüb. 264։ — 2. Մագ. Թղթ. Նկրած. Հյկզ. սխալմամբ Եզնկացւոյն կ'ընծայէ։ — 3. Լմբ. Թղթ. 239։ — 4. Արև. 1909, Յլս. 9։ — 5. Յհ. կթ. 244։ — 6. Նոյն՝ 250։

*հնչմամբ ու վերարկուի իմաստով*[1]։ *Մեր Թագաւորաց վրայ պճղնաւոր է, և առաջակողմէն բաց ու ճարմանդուած։ Գագկին, կ'ըսէ Թովմանեան, նաև «ետևի քղանցքը ճեղքուած (է) մինչև մէջքին մօտ»*[2]․ *իսկ մեզ կը տեսնենք անոր օձիքը ծալուած մինչև լանջաց վրայ, ինչ որ ոսկեդարը Ղևտացւոց պատմուճանին վրայ գրապան*[3] *(պրս. գրիպան=օձիք*[4]*) կ'ըսէր, և Եփրեմի Թարգմանչէն դարձք կոչուած է*[5]։ *Իւր Թեզանիքը նեղ են Գագկայ*[6] *ու Սմբատայ՝ և նեղագոյն ու խորշաւոր Գուրգենի վրայ։ Այս զանազանութիւնք անշուշտ արաբականաց ևս յատուկ էին։*

*Գուռայն ու ուրղէն Գագկայ արձանին վրայ կարմիր ներկուած են*[7]*, զոր պէտք է արքայական ծիրանին իմանալ։ Այս՝ սովորական գոյնն էր․ բայց Արաբներէն ընդունուածներն աւելի շքեղ ու զարդարուն էին, պատմիչներէն սահմանուած՝ «ոսկիակուռ զգեստ»․ «զոսկեճամուկ զգեցութիւնսն*[8]*»․ «ոսկեճամուկս և շղաշատեռն հրաշանկարս*[9]*»․ կամ «զզարդս զգեստուց պատուականս և պայծառս և վայելուչս*[10]*»։ Ահա թէ ինչո՞ւ Թագաւորը «պաղպաջէր փաղփուն հանդերձիւք», ըստ Լաստիվերտցին, որոց վրայ զգալի է նմանութիւնը Բաղդադի ամիրապետի տարազին, որոյ նկարագիրը Յովհան իմաստասէրի բերանը կը դնէ պատմագիր կաթողիկոսը՝ հետագայ կերպով․ «Զայս ապա և ի մարմնաւոր Թագաւորսդ ի ձեզ է տեսանել, ծիրանեփառ և ոսկեճամուկ զգեստուք և գեղեցիկ զարդուք և զինուք առ ի յանհարկութիւն բազմաց բերել*[11]*»։*

7\. *Կօշիկները նոյնպէս արաբական ձևով են մեր Թագաւորաց վրայ․ Թաթին իբր կէսը կը ծածկեն, և բերանը երիզաւոր է։*

8\. *Անձեռոցիկ մ'ալ կը յիշուի հիմայ Յովհաննէս պատմագրէն, որ խօսելով Սմբատ Ա արքայի նահատակութեան վրայ, «զիւր իսկ զանձեռոցիկն», կ'ըսէ, կը յափշտակեն և «հարստապէս նովին իսկ լնուին զբերան նորա*[12]*»․ և զոր Շապհոյ կարծուած նշխար մը կը կոչէ «զանձեռոցիկն թագաւորականն*[13]*», ուր յայտնի է անոր ազնուութիւնը։ Ի՞նչ կրնայ լինել Թագաւորին իւր վրայ կրած այդ փոքրիկ անձեռոցը, եթէ ոչ՝ լուացուած ձեռաց սրբիչ անձեռոցին*[14] *նուազականը, կամ հնոց «ի քրտանէ թաշկինակ» ըսածը*[15]*, որ Հայոց քով*

1\. Hüb. 264. *իսկ Շպհ.* 53 *կը գործածէ իբր գլխանոց. «էր արքայն (Բաղդադի) հագեալ սև, և առև սև ի գլուխ նորա»*։ — 2. Յշրր. 1907, 122։ — 3. Եւթ, ԻԸ, 32. ԼԹ, 21։ — 4. Թիր. 125։ — 5. Եփր. Ա, 271։ — 6. Հմմտ. Strz. II, 581։ — 7. Յշրր. 1907, 122։ — 8. Յհ. կթ. 175, 185։ — 9. Նոյն՝ 249։ — 10. Նոյն՝ 375։ — 11. Նոյն՝ 132։ — 12. Նոյն՝ 300։ — 13. Բզմ. 1922, 72։ — 14. Յհ. կթ. 214 (ըստ գրչ.)։ — 15. Գրծ. Առաք. ԺԹ, 12։



Գ. — ԳԱԳԻԿ Ա. ԲԱԳՐԱՏՈՒՆԻ

*Մեր 58 Ջևի արձանին մասն է այս, մեկուսի նկարուած, զոր յառաջ կը բերեմ Ստրիգովսկեայ գործէն (Strz. II, 581)։ Հոս աւելի զգալի են վարսից գիսակները, և դուռային թեզանեաց բազմախորշ ծայրերուն արաբակերպ կարկառումը ուղէին նեղ թեզանեաց միջէն։*

*այս առաջին անգամ կը յիշուի, առանց նոր լինելու բառը, որով և գործածութիւնը. և զոր Թագաւորին պէս ուրիշներ ևս իրենց վրայ կը կրէին անշուշտ։*

9. *Սուսերը կը մնայ և մեծագոյն կարևորութիւն մը կը ստանայ հիմայ, որով Սմբատ Ա. ամիրապետէն կ'ընդունի՝ արքայական զարդուց մէջ՝ նաև « սուսեր պատուական[1] ». և Յուսուփ կը Թագաւորեցնէ Աշոտ սպարապետը, « Թագ կապեալ՝ » քրիստոնէական ոճով, և « սուսեր ընդ մէջ ածեալ՝ » արաբական դրութեամբ[2]։ Բայց քաղաքային կենաց մէջ արքունիքէն ներս կամ դուրս՝ զայն կրելը սովորական չէ. որով չենք տեսներ ոչ մեր Թագաւորաց Ձևերուն և ոչ Լաստիվերտցոյն նկարագրին մէջ։ Տակաւին « երկսայրի » է այն, որով և ուղիղ, ինչպէս Արաբաց գործածածն էր[3]։ Անոր հարստութեան ապացոյց է այն պարագայն՝ որով Մանտալեանք յափշտակած էին « զթուրն և զճանդերձս » Բ Գագկայ, զորս յետոյ Գող Վասիլ կը կորզէ[4]։ Իսկ Անւոյ արքայական ապարանից պեղումներէն ելաւ, կ'ըսէ Ծոցիկեան, « սուր մը՝ պատեանով միասին, ուղղաձիգ, մէկ կանգուն երկարութեամբ և չորս մատ լայնութեամբ։ Պատեանը գեղեցիկ ու խորհրդաւոր տեսք մ'ունի, իսկ երախակալը կը վերջանայ կլորակ գունդով մը[5] », որ կը յիշեցնէ նախկին շրջանի ձևը[6]. և որոյ նման է բիւզանդականն ալ՝ Ժ դարու քանդակի մը վրայ[7], և արաբականը՝ հին գրչագրի մը մէջ[8]։ Անւոյ սուրին պատկերն է՝ զոր Մառ յառաջ կը բերէ[9], և ուսկից կ'առնում և ես հոս, Ձև 59. ըստ հրատարակչին՝ ամբողջ երկայնութիւնն 96 հրդ. է, սայրը՝ 73, վերև՝ 9, ծայրը՝ 5. և կոուան չունի (եԹէ կորած չէ). վասն զի հնութեան մէջ ծանօթ էին նաև անկոուան սուրեր[10]։*



Ձև 59. Սուր

10. *Խաչ մը՝ կը կազմէ վերջին արքայական զարդը, զոր կը տեսնենք Գագկայ վրայ, ոսկի շղԹայով մը կախուած վզէն մինչև փորին վրայ։ Միակ որոշիչն է Անւոյ քրիստոնեայ Թա-*

1. Յհ. կթ. 244։ — 2. Նոյն՝ 366։ — 3. Ասող. 158։ — 4. Վրդ. Պտ. 115։ — 5. Արև. 1909, Յլս. 8։ — 6. Աստ՝ 157։ — 7. Schl. Epop. I, 89։ — 8. Անդ՝ 277։ — 9. Մառ՝ Շարք. թ. 3, էջ 95։ — 10. Հմմտ. անդ՝ 95։

*գաւորին Բաղդադի ամիրայէն։ Հնոի հետևողութենէն հեռաւոր աստ-րեստանեան արքայից համանման զարդին, որ կ՚երևի նաև մեր Զ Ձևին վրայ[1], Բագրատունեաց (կամ գէթ Գագկայ) լանջախաչը կը ծագի քրիստոնէական ընդհանուր սովորութենէ մը, որ քան անոնց դարը շատ կանուխ կը սկսի[2], և կ՚երևի նաև մեր քով մկրտութեան առթիւ՝ զոր պիտի տեսնենք իւր կարգին։ Բայց Բիւզանդական կամ արևմտեան վեհապետաց վրայ չնշմարեցի և ոչ յիշուած գտայ այսպիսի խաչ մը․ բաց անտի՝ զոր Կոստաս Բ «ընդ անձին իւրում[3]» և մերս Աշոտ Բ «միշտ առաջի իւր[4]» կը շրջեցնէին։*

*Անւոյ Թագաւորաց վրայ որոնելու չենք Արշակունեաց զարդերը, վարսակալ, աշխարաւանդ հանգոյց, գնդեր և գումարտակ, որոնք Արարացւոց ալ անծանօթ էին, և չեն տեսնուիր անոնց մանրանը-կարուց մէջ։*

*Բ. Օծման հանդերձ։ — Ս. Ղազարու մէջ Թագաւորօրհնէից կարգ մը կայ[5], հրատարակուած Հ. Ալիշանէ[6], որ յիշատակը կ՚ընէ՝ այս առթիւ արքային գործածած բիւզանդական տարազին. և յորում կը նշմարենք մեր երեք Թագաւորաց Բիւզանդիոնէն ստացածն իսկ՝ զոր յիշեցինք։ Համեմատութիւն մ՚այդ կարգին ընդ յունականին, տը-պագրուած Գոյարէ[7], ցոյց տուաւ ինձ՝ որ հայկականը հետևողու-թիւն է անոր, և իւր աղօթքներէն երկուքը՝ «Տէր Աստուած մեր» և «Քեզ միայնոյ՛[8]» թարգմանութիւն են. բայց կարգը ճոխացած է հայ ձեռքէ մը՝ օծմամբ, հրահանգօք և այլ աղօթքներով։ Լեզուով հեռի է ոսկեդարէն, և բովանդակութեամբ՝ կիլիկեան կարգէն, զոր պիտի տեսնենք։*

*Արդարև հոս յիշուած հանդերձը կը յարմարի Բագրատունեաց վրայ՝ ըստ պատմութեան։ Նաև կոչման խօսքերը, «Աստուածային և երկնաւոր շնորհ հեղեալ ի վերայ այս անուն՝ կոչեն յաթոռ Թա-գաւորութեան տանս Թորգոմայ», իրենց ընդարձակ իմաստով կը պատ-շաճին Բագրատունեաց քան այլոց։ Բայց նոյն հանդերձներն անծանօթ չէին Արծրունեաց ալ. և օծման հանդիսադիրն է «Եպիսկոպոս» մը. մինչդեռ գիտենք՝ որ Անւոյ պսակաւորք կաթողիկոսէն կ՚օծուէին, ինչպէս ըրին Աշոտ Ա[9], Սմբատ Ա[10], Աշոտ Գ[11] և Գագիկ Բ[12], և յոյն բնագիրն ալ «պատրիարքը» կը նշանակէ օրհնիչ։ Կը խորհիմ՝ թէ օծման կարգս կրնայ նաև Արծրունեաց կամ ուրիշ տան մը պատրաստած գործը լինել։*

1. Աստ՛ 21։ — 2. Cabr. III. 2105-7։ — 3. Սեբ. 213։ — 4. Յհ. կթ. 39։ — 5. Գրչ. բ. 381։ — 6. Յուշ. Ա, 491-5։ — 7. Goar. 726-7։ — 8. Յուշ. 493, 494։ — 9. Յհ. կթ. 176։ — 10. Նոյն՛ 185։ — 11. Ուռ. Ե, Զ։ — 12. Նոյն՛ ԺԹ. Կիր. 52։

*Արդ աղոր սկիզբը կը կարդանք այսպէս. «Զգեցուցանեն զթագաւորական հանդերձսն, ուրոյն զքղամիդն և զթագն դնեն ի վերայ սեղանոյն՝ արծաթէ սկտեղբ», որոց մին կը զգեցնեն ապա յետ կոչման, և միւսը կը դնեն գլխին յետ օծման։ Որոշենք ու ճշդենք զասոնք, համեմատութեան եզր առնլով մեր 60 Ձևը, որ կը ներկայացնէ բիւզանդական կայսր մը Ժ–ԺԱ դարուն կարծուած*[1],



Ձև 60. Բիւզանդական կայսր Ժ կամ ԺԱ դարու

*և որոյ բնագիր քանդակը կը գտնուի ագուցուած Վենետկոյ պատի մը վրայ։*

1. *Թագաւորական հանդերձք, այսպէս յոգնակի, են անտարակոյս ներքնակն ու արտաքին պատմուճանը, զորս միշտ միասին կը տեսնենք բիւզանդական կայսերաց վրայ. առաջինը պճղնաւոր, և երկայն ու նուրբ Թեզանեօք. երկրորդը՝ մերթ քիչ մ'աւելի կարճ ստորոտով*[2], *և մերթ հաւասար միւսին*[3], *ինչպէս և մեր Ձևին մէջ.*

1. Schl. Epop. I, 141. Բզմ. 1918, 215. — 2. Schl. 45. — 3. Schl. Emp. 369.

և թեզանիքն աւելի կարճ ու լայն։ Արդ՝ այս երկուքը կը զգեցնէին արարողութեան սկիզբը։

2. Կամարն ալ կը միանար ադոնց՝ իւր արքայավայելչ ճոխութեամբ, ինչպէս էր Ա Սմբատայ ընդունածը Լևոն կայսերէն, «կամարս ականակապս ի համակ ոսկւոյ[1]», և Բ Աշոտին՝ պարզապէս բացատրուած, «կամարակապ ընդ մէջ իւր ածէր» Կոստանդնուպոլսի մէջ[2]։ Նոյնը կը տեսնենք նաև ժամանակի կայսերաց վրայ[3], և մեր Ձևին մէջ։ Բայց մեր օծման կարգը – որով և ոչ թագաւորք – չունի ասոնց վակասը, որ կը պատէ մարմինը։

3. Քղամիդը կը յաջորդէր յետոյ, ինչպէս ըսինք, հետևեալ եղանակաւ։ «Առնու եպիսկոպոսն զքղամիդն ի սեղանոյն (և զփիլոնն[4]), և տացէ քահանայիցն՝ զի արկցեն զնովաւ, և ի չորք ուսոյն Նորա զայն՝ եպիսկոպոսն ասէ» և այլն։ Շեղագիր բացատրութիւնքդ մատնացոյց կ'ընեն անոր ձևը, որ կը ձգուէր մարմնոյն վրայ և կ'իջնէր մինչև պճղունքը, հաւասար կայսերականին՝ որոյ օրինակները շատ են ամէն դարերէ։ Ասոր և Նախորդ հանդերձից պերճաշուք հարստութիւնն ալ կը զգացնեն մեր պատմիչք, Ա Սմբատայ ընդունածը կոչելով՝ «ոսկեհուռ հանդերձ զգեստուց[5]», և զԱշոտ Բ նկարագրելով զարդարուած «ծիրանազգեստ փառօք և երևելի ոսկեհուռն հանդերձիւք[6]». և Նախորդին օծման պահուն իսկ ցոյց տալով մեզ անոր «զոսկեձամուկ զգեցութիւնն[7]»։

4. Թագին կու գայ կարգը, որոյ մասին կը յարէ օծման կանոնը. «Ապա առնու եպիսկոպոսն երկոքին ձեռօքն զթագն ի սեղանոյն», և կը դնէ Նուիրելոյն գլխին՝ իւր բանաձևով։ Բիւզանդականն էր և այս, ինչպէս կը հաստատէ Վարդան, գուցէ մեկնելով Սամուէլի խօսքն Ա Աշոտոյ մասին, – «Թագ կապեալ յերկոցունց թագաւորացն[8]», – թէ «զնոյն (թագ և հանդերձ) և կայսրն Վասիլ առաքէ, և օրհնէ զթագն տէր Գէորգ» 888ին[9]։ Այսպէս և Շապհոյ կարծուած պատմական նշխար մը կ'ըսէ՝ թէ Աշոտ ի Բիւզանդիոն կ'երթայ ու կը դառնայ «թագիւ և իշխանութեամբ[10]»։ Այս թագը, որ կ'երևի ժամանակիս Բիւզանդական կայսերաց գլխին, է ցած՝ շրջանակաձև ոսկի և ականակուռ պսակ մը, զոր կը տեսնենք նաև պսակման արարողութեան նկարի մը[11] և մեր Ձևին մէջ, բայց առանց շղթայից՝ որ կը կախուի սովորական պսակէն[12]։

1. Յհ. կթ. 200։ — 2. Նոյն՝ 356։ — 3. Schl. Emp. 365։ — 4. Անյարիր ու նորամուտ է՝ իբր մեկնութիւն։ — 5. Յհ. կթ. 200։ — 6. Նոյն՝ 356։ — 7. Նոյն՝ 185։ — 8. Ասող՝ 174։ — 9. Վրդ. Պտ. 85-6։ — 10. Բզմ. 1922, 72։ — 11. Omont, տխ. 6. Schl. Epop. I, 285։ — 12. Անդ՝ 45 ևն։

5. *Ս. Սահակայ Տեսիլը կայ, որ հնարուած է Բագրատունեաց թագաւորութեան շրջանին. որովհետև կը գուշակէ Արշակունեաց գահուն կործանումն ու վերականգնումը, և նորոգումը կաթողիկոսական աթոռին «ի շառաւիղէ սրբոյն Գրիգորի[1]», որ են Պահլաւունիք. և ԺԲ դարուն արդէն կայ և ծանօթ է ժամանակի գրողաց[2]։ Արդ՝ ադոր մէջ կը յիշուի «գունգ մի ոսկի բոլոր», որ «նշանակէ զթագաւորութիւնն[3]»։ Բիւզանդական գունդն է՝ զոր տեսանք[4]։ Եւ եթէ Հայոց թագաւորութիւնն ալ կը յիշեցնէ անոնց, ապա այդ շրջանին ընտանի լինելու է նաև Հայոց, և յատկապէս գործածուելու էր օծման առթիւ՝ բիւզանդական տարազին հետ, թէև կարգը կը լռէ։*

## Գ. ԱՐԾՐՈՒՆԻՔ

*Յիշեցինք արդէն թագաւորութեան հաստատութիւնն Արաբաց ձեռքով, և անոցմէ արքայական զգեստուց ընդունելութիւնը[5]։ Հետևաբար առաջին պսակաւորը Գագիկ՝ արաբական տարազով կը սկսի։ Յետոյ անոր հինգերորդ յաջորդին՝ Սենեքերիմի համար կը կարդանք՝ թէ կ'երթայ Վասիլ կայսեր, և կը մեծարուի «արքունատուր պատուով», ընդունելով նաև «հանդերձս պայծառս[6]»։ Հոս ուրեմն հանդերձին ձևը փոփոխութիւն մը կը կրէ, ինչպէս կը փոխուին իւր իշխանութեան սահմաններն ալ, Սելճուքներէն վտանգուած Վասպուրականէն անցնելով ի Սեբաստիա, կայսերական տէրութեան մէջ[7], ուր անտարակոյս կը պահէ նոր տարազը։*

*Մեզ կարևոր և աւելի ապահովը նախորդաց զգեստն է, որոյ օրինակ ունինք յիշեալ Գագկայ կենդանագիրը, քանդակուած Աղթամարայ իւր դաստակերտ եկեղեցւոյն արտաքին որմին վրայ, բռնած անոր նմանութիւնը, և զոր կու տամ հոս, Ձև* 61։ *Ասոր հետ խառնելով պատմական տեղեկութիւնները, կը կազմենք իւր տարազին հետևեալ նկարագիրը։*

1. *Հերք հաւասար են Բագրատունեաց։ Թովմայի պատմութեան շարունակողը նոյն արքայի մասին կը գրէ այսպէս. «Հեր գլխոյ նորա թխակերպ դանգուրագեղ գիսաւորութեամբ աղեբեկ ջոկացեալ ի վերայ սպիտափառ ճակատուն՝ յոյժ խունախիտ թանձրութեամբ[8]»։ Արդարև կենդանագրին մէջ ալ անոր վարսերը կը խռնին ճակատին վրայ, և կ'իջնեն կը ծածկեն ծոծրակը։*

1. Սոփ. Ա, 60-61։ — 2. Յաւ. Արծ. 353. Լմր. Պտ. 26։ — 3. Սոփ. Ա, 49, 59։ — 4. Աստ՝ 168։ — 5. Աստ՝ 175։ — 6. Ասող. 269-70։ — 7. Լաստ. 14. Ուռ. ԼԸ։ — 8. Արծ. 340։

*Պատմչիդ օրով դեռ շատ երիտասարդ, հազիւ «տեգք մօրուաց նորա զօրէն մանուշակի ծաղկեալք (էին) ի վերայ գունագեղ այտից[1]»։ Սակայն պատկերին մէջ արդէն կազմուած է մօրուքը, և պահուած չափաւոր երկայնութեան մը մէջ։*

2. *Թագը, ոչ Ջարրին՝ որ անծանօթ է, այլ Յուսուփի նուիրածը, շատ շքեղ է պատմչին նկարագրութեան մէջ, որ է այսպէս. «Եդեալ թագ ի գլուխ նորա զուտ ոսկի բազմարուեստ յօրինմամբ, հիւսեալ մարգարտովք և մեծագնի ականբք պատուականօք, զոր այլ ոչ բաւեմ պատմել[2]»։ Է՛ նոյն ինքն մեր քանդակին ցոյց տուածը, որոյ «բազմարուեստ յօրինումն» ակներև է։ Շրջանակի ձևով մօտ բիւզանդականին, մանրամասնութեամբ կը հեռանայ թէ ասկից և թէ Բագրատունեաց տաշտաձևէն, և կը նմանի Բիւզանդիոնի կայսրուհեաց ոմանց կրածին[3]։ Նուիրատուն ուզեր է Անւոյ թագաւորին հակառակորդի յատուկ պսակ մը շինել Արծրունւոյն, որպէս զի տարբերէր աթոռով ու թագով։*

3. *Պատմուճանը միակ հանդերձն է՝ զոր կու տայ Յուսուփ ըստ պատմչին Արծրունեաց, «զգեցուցեալ ոսկեզարդ պատմուճան[4]», ինչ որ կաթողիկոս պատմագրի լեզուին մէջ անորոշ տեսանք. «հանդերձս երևելիս[5]»։ Քանդակին մէջ այս պատմուճանը կամ դուռայն պճղնաւոր է, առաջակողմէն փակ և քղանցը մինչև ծնկները ճեղքուած ու շարժումէն բացուած. ոճ մը՝ զոր պիտի տեսնենք նաև Արծրունի իշխանաց վրայ (Ձև 63), և որ հեռի է բիւզանդականէն և արաբական։ Ասղնագործ է, շերտերով և ասոնց վրայ օղակաձև զարդերով։ Թեզանիքը չափաւորապէս լայն, նոյն զարդերով, ու դաստակաց մօտ եռագիծ վերջաւորով մը։*

4. *«Գօտի ոսկեկուռ հանդերձ՝» կը լինի նոյնպէս Յուսփայ նուէրը, «ոսկեհուռն փայլեալ զարդու», կ՚ըսէ պատմիչը[6]։ Քանդակին մէջ անտես կը մնայ գօտին՝ որ կ՚ամփոփէ պատմուճանը. և սուրը բացակայ է՝ ինչպէս Բագրատունեաց վրայ։*

5. *Կօշիկները քանդակին մէջ կը ծածկեն ամբողջովին ոտից թաթերը. սրածայր են, և գարշապարաց ներքև գոգաձև. կը հեռանան Բագրատունեաց հագածէն։*

6. *Գրատքն ալ կը տեսնենք Գագկայ կենդանագրին վրայ, որ ոտիկանին պարգևաց մէջ չէ յիշուած, և կրնայ Վասպուրականի արքային հնարածը լինել։ Արաբականն է[7], այլ շատ նման անոր՝ որ կ՚երևի բիւզանդական կայսրուհեաց վրայ[8]. կը ծածկէ թիկունքը*

1. Արծ. 341։ — 2. Նոյն՝ 321։ — 3. Schl. Emp. 69, 261։ — 4. Արծ. 321։ — 5. Ասող՝ 175։ — 6. Արծ. 321։ — 7. Հմմտ. աստ՝ 177։ — 8. Schl. Emp. 161, 523։

մինչև սրունից կէսը. առաջակողմէն կը ճարմանդուի կրծոց կեդրոնը շիթով մը, արևմտեան ոճով[1], մինչդեռ կայսերուհեացը լանջափակ է. և ասոր պէս և առիշեղ համամբ կ'երթայ կը վերջանայ սրունից ետև։ Պերճաբար ասղնագործ, ծածկուած է լորամարգիներով կամ վառեակներով, և եզերուած եռագիծ ժապաւենով մը։



Զև 61. Գագիկ արքայ Արծրունի

7. Անւոյ Թագաւորին առջևէն՝ արաբական ոճով կ'երթար «սպիտակամազ նժոյգ՝ ոսկեզօծ զարդիւք[2]»։ Ըստ հակառակն Արծրունին Գագիկ կը նկարագրուի «հեծեալ յերիվարն քաջակազմ ոսկե-

1. Schl. Emp. 579. — 2. Լաստ՝ 39.

հրաշ սարուցն»․ և «ի գունագոյն ականցն հիւսելոց մարգարտախուռն զարդուցն ի գլուխս և ի լանջս և ի գաւակս երիվարին խրոխտացելոյ՝ ճաճանչք լուսոյ ճառագայթէին[1]»։ Հոս ունինք հեծեալ Թագաւորը։

## Դ. ՎԱՆԱՆԴԱՑԻՔ

Աղքատ է նկարագրութեամբ՝ Կարսի երրեակ Թագաւորաց տարազը։ Այսքան միայն գիտենք՝ թէ Վասիլ կայսրն անոնց երկրորդին՝ Աբասայ կը շնորհէ «հանդերձս պայծառս[2]», որ բնականապէս յունակերպ կը հասկացուին։ Բայց բախտն ազատած է ասոր որդւոյն՝ Գագկայ կենդանագիրը, զոր յիշեցինք, հրատարակուած անգամ մը՝ Մեսրոպ վ. Նշանեանէ[3]․ և զոր ես ևս յառաջ կը բերեմ, Զև 62, լաւագոյն վիճակի մէջ, գունաւոր լուսանկարէ մը՝ զոր կը պարտիմ Դուրեան Սրբազան Պատրիարքի առատաձեռն բարեացակամութեան, և որով միայն կարելի եղաւ ինձ ճշդել անոր հանգամանքները։ Մեր պատկերին աջակողմը նստած է արքայն, ձախ կողմն իւր կինը՝ Գորանդուխտ Թագուհին, և կեդրոնն իրենց դուստրը Մարեմ, որոնք այս շրջանիս կանացի հանդերձին միակ ներկայացուցիչներն են։ Մեք իրարմէ զատ պիտի նկատենք զասոնք։

Ա. Թագաւորը։ — 1. Արկածուած պատկերիս բիւզանդակերպ լուսապսակ գլուխները կիսակտուր՝ կազմողէ մը, աննշմարելի կը թուին արքային վարսերը։ Բայց մօրուքը՝ սրածայր ու չափաւոր, տեսանելի է, և կը հեռանայ անեցի տոհմակցաց պերճութենէն։

2. Միակ հանդերձը՝ զոր ցոյց կու տայ Գագիկ՝ պատմուճանն է․ պճղնաւոր՝ ինչպէս կը գուշակուի․ արաբական լայն թեզանեօք՝[4] ինչպէս համանուն Բագրատունւոյն արձանին վրայ ևս տեսանք, ու մէջքը սեղմուած։ Անոր կերպասը՝ բնագրին վրայ «կարմիր՝ կապոյտ և մանիշակի գոյներով զարդանկարուած» կը տեսնէ առաջին հրատարակիչը։ Իմ օրինակին մէջ տիրող գոյնը մանիշակն է․ թանձր կապոյտ մը՝ կրկնակարգ կը շրջանակէ վահանաձև մեծ զարդերը, որով ծածկուած է պաստառը․ և կարմիրը կ՚եզերէ նոյն վահանաց մէջ նկարուած կենդանիները, որոնք յայտնապէս առիւծ են՝ ագին շրջած թիկունքին վրայ, և աղօտ կապոյտ մը կը բոլորէ թե-

1. Արծ. 321, 341։ — 2. Ասող. 270։ — 3. Արար. 1911, 686։ — 4. Հմմտ. Schl. Epop. I, 233, 237, 245, արաբ ձևեր։



Զև 62. Գագիկ արքայ Կարուց, դուստրը Մարեմ և կինը Գորանդուխտ թագուհի ըստ մագաղաթեայ պահպանակին Երուսաղեմի

*զանեաց շրթները։ Բազկաց վերև՝ ուսերուն մօտ՝ կան ժապաւէնաձև լայն զարդեր, սպիտակ յատակով, ծածկուած ոսկի դրուագներով և եզերուած աղօտ կապոյտ երիզներով։ Ասոնք ծագմամբ պարսկական, ինչպէս կ՚երևին մեր 49 Ջևին վրայ[1], շատ ընդհանրացած են այս շրջանիս, և կը տեսնուին Արաբացւոց[2], — որոց նմանեցան և վանանդացիք, — Սարակինոսաց[3], Բիւզանդիոնի կայսերաց և աւագաց[4], Բուլղար արքայականաց[5], Ժ դարու արևմտեան կայսեր մ՚ու սրբոյ մը մանրանկարին[6], և դեռ այլոց վրայ. միով բանիւ՝ հասարակաց զարդ մը, թէև ոչ ամէն ձևերու մէջ տեսանելի։*

**Բ. Թագուհին։** — 1. *Գորանդխտի գլուխը կէս, անոր զարդն ալ կորած է։ Բայց գիտենք պատմութենէ՝ որ իւր ամուսնոյն հանը, երբեմն կին Մուշեղայ և Թագուհի, յետոյ արքայամայր Աբասայ, ասոր թագաւորութեան օրով «ի բաց ընկեցեալ զերկրաւոր պսակն» կը կրօնաւորի[7]։ Յայտնի է ուրեմն՝ որ նախկին երկու վիճակաց մէջ գլխին պսակ մը կրէր. և հետևաբար իրեն պէս ուրիշ արքայազն տիկնայք ալ՝ թէ ի Կարս և թէ միւս հայ արքունեաց մէջ, ինչպէս տեսանք Արշակունեաց քով[8] և պիտի տեսնենք Ռուբինեանց օրով։ Նարեկացւոյն ալ ծանօթ է պսակս, որով կրնար նմանութեամբ ըսել. «որպէս զդշխոյ ումն թագակալ հանդէպ ճակատոյ[9]»։ Հաղբատայ եկեղեցւոյն մէջ, զոր ըսինք[10] թէ հիմնեց Աշոտ Ողորմածի կինը Խոսրովանոյշ, ուղևոր մը 1884ին կը նկարագրէ որմանկար, և այժմ բոլորովին մաշած[11], «մի մանկամարդ գեղեցկադէմ թագուհի՝ թագը գլխին[12]»։ Եթէ արդարև Բագրատունի բամբիշն է այդ, փաստ մ՚աւելի ունինք հայ թագուհեաց պսակին գոյութեան, որ լինելու է բիւզանդական դշխոյից կրածին նման. և վերջինս կայսերականին պէս էր, մերթ շրջանակաձև պարզ՝ և ականայեռ[13], ու մերթ բարդ ճակատով[14], կամ ուրիշ թեթև տարբերութեամբ[15]։*

2. **Փառամանեակ** *մը, լայն, արծաթեայ յատակի վրայ, վերին ու ստորին եզերքն ոսկի երիզով մը, և մէջտեղ՝ մարգարտաշար, կը պատէ Կարսի Թագուհւոյն պարանոցը. վերին երիզի կեդրոնը կը կրէ մեծ մարգարիտ կամ գոհար մը։*

3. **Պատմուճանին** *կերպասը կանաչ է՝ ծածկուած կարմիր զարդերով։ Ցոյց կու տայ նաև նեղ թեզանիքը, որ կ՚աւարտին սպիտակ*

1. Աստ՝ 109. — 2. Schl. Epop. անդ են. — 3. Schl. Emp. 129, 249. — 4. Անդ՝ 304. — 5. Անդ՝ 341, 551, 555. — 6. Sacr. Ful. 53, 67. — 7. Ասող. 185. — 8. Աստ՝ 105. — 9. Նար. 383. — 10. Աստ՝ 176. — 11. Ազգ. Հնդ. 1901, 397. — 12. Արձգ. 1884, 627. — 13. Omont. տխ. 62. — 14. Նոյն՝ տխ. 59. — 15. Schl. Epop. I, 81, 733.

և ոսկեղրուագ բազպաններով։ Լանջաց վերին մասը զուտ կերպասէ շինուած է՝ աղօտ կապոյտ գունով։ Հաղբատայ Թագուհւոյն հագածը «կարմիր» կամ ծիրանի էր, և «կուրծքն ըստ երևութին ոսկեթել ասղնեգործած»։

4. Վրան առած է ժեկնոց մը, պատմուճանին պէս պճղնաւոր, սպիտակ գունով, ծածկուած սրտի նման ոսկեգոյն զարդերով, և ստորոտը զոյգ մը կարմիր՝ կապոյտ և ոսկի ժապաւեններով։ Մարգարտազարդ լայն ժապաւէն մը զայն կը բռնէ լանջաց կեդրոնը։

Գ. Օրիորդը։ — 1. Նոյնպէս զուրկ է անսքող գլխին կիսէն, որոյ վրայ հաւանական է՝ թէ պսակ մը կը կրէր, ինչ որ պիտի տեսնենք երբեմն նաև ուրիշ իշխանուհեաց վրայ։

2. Քայռ մ'ունի՝ մօրը պէս լայն, արծաթեայ յատակով, բայց երկու եզերքը մարգարտաշար, և ոսկի երիզը մէջտեղ դրուած, հաւանօրէն կեդրոնի գոհարով միասին։

3. Պատմուճանն է կարմիր (ծիրանի) կերպասէ, և վրան կապոյտ զարդեր։ Լանջաց վերին մասը զատ է ամբողջէն և ոսկեգոյն դիպակէ շինուած։

4. Մեկնոցակ մը, որ կ'իջնէ մինչև արմկները միայն, մայրենի վիճակէն կը զատէ օրիորդը։ Գոյնն է աղօտ կապոյտ, և բազկաց վերև սպիտակ լայն զարդեր, որ կը յիշեցնեն հօրը պատմուճանին վրայ տեսածնիս։

## Ե. ԻՇԽԱՆՔ

Բաւական ճոխ են պատմական ծանօթութիւնք ասոնց արաբակերպ տարազի մասին։ Արաբ տիրապետութեան սկիզբէն՝ Թէոդորոս Ռշտունի՝ Դամասկոսի իշխանէն պարգև կ'ընդունի «հանդերձս ոսկեղէնս և ոսկեթելս[1]»։ Բաղդադի ամիրայն Արծրունի Դերենկան կը նուիրէ «հանդերձ պատուական ոսկեհուռն[2]»։ Աշոտ Արծրունի և ուրիշ ազատք գերի էին Սալքայ ամիրային, որ տարիներ վերջ կը հանէ բանտէն, անոնց կու տայ «հանդերձս», և իր բանակին մէջ ծառայութեան կը դնէ[3]. և անկասկած այդ հանդերձը բանակին գործածած արաբականն էր։ Յուսուփ՝ Ա. Սմբատայ որդին Աշոտը կը կարգէ «Իշխան իշխանաց Հայոց», և կ'ընծայէ «պերճապաճոյճ երանգս զգեստուց[4]»։ Ունինք նաև Արծրունի երկու վկայից՝ Սա-

1. Սեբ. 224։ — 2. Շպհ. 45, 46, 49։ — 3. Նոյն՝ 58. Արծ. 227։ — 4. Յհ. կթ. 249։

*հակայ ու Համազասպայ քանդակպատկերն Աղթամարայ տաճարին վրայ, զոր յառաջ կը բերեմ հոս, Ձև 63, հանելով ամենափոքր լուսանկարէ մը։ Յիշուած չէ՝ թէ այդ հարազատք Արաբացիներէն զգեստ ընդունեցան. ընդ հակառակն անոնք 784ին նահատակուեցան անոնցմէ[1]։ Հետևաբար կամ անոնց օրով և կամ Աղթամարայ եկեղեցւոյն աւարտման ժամանակ (921) հայ իշխանական տարազն արդէն արաբացած էր, և անով քանդակուեցան յիշեալ Արծրունիք, որոց «գեղաղէշ վայելչութիւն փառաց նոցա» խայթեց իրենց սպանչին աչքը[2]։ Արդարև մեր իշխանաց զգեստներն այնքան ճոխ ու թանկագին էին, որ Գագիկ Արծրունի երբ իւր Դերեն եղբօր ձեռքէն կը գնէ Վան քաղաքը, զանազան փոխարինութեանց հետ կու տայ նաև «հանդերձս պայծառս[3]»։ Տեսնենք այժմ աղոնց մասունքը։*

*1. Հերք և Մօրուք նոյն վիճակը չունին իշխանաց վրայ՝ ինչ որ թագաւորաց։ Այլ ժամանակիս կրկնակ սովորութեանց համեմատ՝[4] մեր Ձևի իշխանք ունին առատ՝ բայց ոչ երկար վարսեր. ընդ հակառակն ԺԱ դարուն Աբդլմսեհ Արծրունի կը նկարագրուի «ցանցրահեր և գեղեցկատեսիլ[5]». և այդ գանգուրք բնականապէս երկար ալ էին։ — Ամէն հասակի մէջ կը պահեն մօրուքն ալ. կը յիշուի Դաւիթ Գնունւոյ «մրագարդ մօրուքն՝ (որ) ի ծնօտսն դեռ ևս էր տիգեալ և ընձիւղեալ[6]»։ Ուշագրաւ է Վասպուրականի Աշոտ իշխանի «նորափթիթ ծաղկազարդ ոսկեճաճանչն մուրուացն[7]» հանգամանքը, ուր ոսկեձաձանչը բնական գունէն տարբեր և արուեստականի գաղափարը կու տայ. այն սովորութեան, թերևս ոչ ընդհանուր, որուն հետեւող էր և Յոհան իմաստասէր, որ «ոսկի մանր խարտիւ աղացեալ և իւղովք անուշիւք յայն ընդխառնեալ՝ փչէր ընդ ծաղկեալ ալեօք մօրուսն[8]»։ Նպատակն այդ ներքսապէս խարազնազգեաց հոգւոյն, կը յարէ պատմիչը, քաղաքական էր. որով իւր գործը հետևողութիւն էր իշխանաց օրինակին, և ոչ ինքնահնար։ Մեր Ձևի մօրուքները կարճ բռնուած են ու բաւական սրածայր։*

*2. Թագ մը կը յիշուի Արծրունեաց պատմչէն՝ հետևեալ պարագայի մէջ։ Գուրգէն Արծրունի երբ Արաբաց բանակը կը մտնէր, անոնք կեղծաւորաբար պատուելու համար զինքը, փութացին «դնել թագ իշխանական ի գլուխ, և զգեստս արքունականս զանձամբ, և սուսեր ընդ մէջ ածեալ». յայտարարելով զինքը տէր Վասպուրականի՝ փոխան իւր Աշոտ եղբօր[9]։ Կը հետևի՝ նախ որ Թագդ յատուկ*

1. Ղևդ. 162–5. — 2. Նոյն՝ 162. — 3. Շպհ. 40. — 4. Աստ՝ 199-200. — 5. Արծ. 348. — 6. Յհ. կթ. 249. — 7. Արծ. 281. — 8. Յհ. կթ. 129. — 9. Արծ. 168.

էր ոչ բոլոր իշխանազանց, այլ տոհմից պետերուն միայն. և երկրորդ՝ հայկական սովորութիւն մը չէր, այլ Արաբացիք կու տային։ Ի՞նչ ձև՞ կրնար ունենալ այդ։ Մեք արաբական հին մանրանկարուց մէջ ուրիշ գլխանոց չենք տեսներ, բայց եթէ աւելի կամ նուազ ստուար շարփուշներ և կամ փակեղներ։ Ոչ իսկ ամիրապետի նկարագրին մէջ Յովհաննէս պատմագրէն՝ [1] հանդիպեցանք իսկական թագի ակնարկութեան։ Կը հետևցնեմ՝ որ Թովմայի թագն երկդիմի իմաստ ունի, և շատ հաւանօրէն կը նշանակէ շարփուշը, որ ըստ ինքեան տեսակ մը թագ էր և համազօր միւս ազգաց թագերուն։

Զայդ կը գործածեն անոնք միայն՝ որ կ'ընդունին Արաբներէն։ Իսկ միւս իշխանք և իշխանազունք՝ համոզուած եմ թէ կը կրէին փակեղը կամ վարշամակը, որ ժողովրդեան ալ ընտանի դարձած էր այս շրջանիս, ինչպէս պիտի տեսնենք, դարձեալ արաբական դրութեամբ։ Զայս կը հաստատեն մեր 56 Ձևը, և Շնորհալւոյն մխիթարական ոտանաւոր թուղթն «առ ոմն իշխան արևելեան», ուր կ'ակնարկէ անոր սգոյ զգեստին ու «վարշամակին այն մահարար [2]» կամ թուխ, որ փոխանակած էր սովորականին՝ որդեկորոյս իշխանին վրայ։



Ձև 63. Ս. Սահակ և Համազասպ Արծրունիք

3. Դուռայն՝ Սահակայ ու Համազասպայ վրայ պճղնաւոր է, փոբիբաց և լանջքն իրարու վրայ նստած։ Համակ կիտուածազարդ է այն։ Նաև Անւոյ իշխանական դամբաններէն Ն. Մառ հանեց մետաքսեայ պատմուճաններ՝ կենդանակերպ նրբահիւս կիտուածներով [3]։ Եւ Արիստակէս կը պատմէ՝ թէ Բագրատունեաց օրով մեր իշխանք կը նստէին համախումբ, «զգարնանաբեր ծաղկանոցաց բերեալ զնմանութիւն, վառ ի վառ գունովք առաջի կացեալք [4]»։ Սահակայ հագածին ներքև կը նշմարուի նաև անոր ներքնակին ստորոտը։

4. Կամարն ալ սովորական է անոնց, և շատ ճոխ։ Կը պատ-

1. Ասո՛ 182։ — 2. Շնրհ. Զափ. 311։ — 3. Բիւզ. 1909, Օգ. 21։ — 4. Լաստ. 38։

մուի՝ որ Գուրգէն Արծրունի Բուղայէ պարգև կ՚ընդունի «գօտի արիական՝ շրջապատեալ զմիջաւ[1]», և Աշոտ Արծրունի և որդին Գրիգոր՝ ամիրապետէն, և Սմբատայ արքայորդին Աշոտ Յուսուփէն՝ կը ստանան «կամար ականակապ[2]»։ Գրիգոր Վկայասէր երբ պիտի հրաժարէր աշխարհէ, «լուծանէր զիշխանականն կամար», կ՚ըսէ պատմիչը[3]։ Նոյնը կ՚երևի նաև մեր զոյգ նահատակաց մէջքին, զարդարուն, և ստորին կողմէն ատամնաւոր։

Ուշագրաւ է արաբական մեկնոցին պակասը մեր իշխանաց վրայ, զոր կ՚երևի թէ չէին գործածեր։

5. Ծղոտակապք կ՚ըսուին այժմ զարդարուն կօշիկները, յիշատակուած ս. Բարսղի կանոնաց մէջ միջնադարեան լեզուով, որ խօսելով վանականաց՝ կը զգուշացնէ ասոցմէ. «ոչ է պարտ զարդարիլ հանդերձիւք կամ զգեստուք ոտից՝ որ ծղոտակապք կոչին[4]»։ Անունս արմատակից է ծղոտաքարոյ ածականին[5], որ կը նշանակէ կանացի քծնողութիւնը, և կօշիկն ալ համեմատական էր նոյն բարուց։

6. Սուսերը նոյնպէս անպակաս է իրենց վրայ, և արաբական ոճով կապուած իրենց գահակալութեան հետ, ինչպէս վերև տեսանք Գուրգէնի մասին։ Բուղա յետոյ միւս Գուրգէնի ևս կը յղէ «ըստ օրինակի գլխապետութեան սուսեր իշխանական[6]», և ամիրապետն ալ յիշեալ Աշոտոյ և Գրիգոր որդւոյն նոյնպէս «էած սուսեր ընդ մէջ[7]»։

7. Մանեակն ալ կը յիշուի տակաւին։ Յուսուփ՝ Գնունի հարազատները Դաւիթ ու Գուրգէն մահմետականութեան որսալու համար՝ անոնց կը խոստանար «մանեակս ոսկեղէնս[8]», զոր յայտնի է՝ թէ նուիրողք և ընդունողք միանգամայն կը գործածէին։ Բնական է ուրեմն՝ որ սասանեան շրջանէն մնացեր էր մեր քով, յայտնապէս ալ յիշատակուած հարսանեաց առթիւ[9], և փոքր ի շատէ նշմարելի նաև 63 Ձևի իշխանաց վրայ։

8. Մատանին կը շարունակէ իւր աւանդական դերը։ Վահան Գողթնացի երբ ի հայրենիս կը դառնար, մատէն կը հանէ «մատանի մի ոսկի զվաւերականն իւր», և իբր վարձ կու տայ իւր գրաստաւորին[10]։ Գագիկ Արծրունի իւր Աշոտ եղբայրը տէր կարգելով Վասպուրականի, «տայ զմատանին ի ձեռս» անոր[11]։ Սիւնեաց Փիլիպպէ իշխանը կտակ կ՚ընէ, և հաստատութեան համար, կ՚ըսէ, «զիմ սովորական մատանիս ի վերայ եդի, և զիմ որդեաց և զայլ ազատաց[12]»։ Իսկ ձևին համար ուշագրաւ է նոյն տոհմէն Սոփիա տիկնոջ խօսքը,

1. Արծ. 223։ — 2. Նոյն՝ 227. Յհ. կթ. 249։ — 3. Սոփ. ԺԴ, 16։ — 4. Կան. իբ։ — 5. Մանդ. 132, 161։ — 6. Արծ. 223։ — 7. Նոյն՝ 227։ — 8. Յհ. կթ. 316։ — 9. Արծ. 191։ — 10. Սոփ. ԺԴ, 28։ — 11. Արծ. 305։ — 12. Օրբ. 152։

*որ Վայոց ձորոյ մենաստանը և 936ին իւր հոն շինած եկեղեցին կը համեմատէ մատանւոյ, այսպէս. «Մատանի էր անակն Վայոց ձորոյ. շինեցի զսա և եդի ակն ի վերայ[1]»։*

## Զ. ՏԻԿՆԱՑՔ

*Ոսկեղարու իշխանուհեաց նկարագրի ճոխութիւնը չունինք հոս։ Տկար է հիմայ մատենագրական բաժինն ալ, իսկ քանդակ կամ պատկեր՝ և ոչ մի։ Գուցէ նախկին փայլն որոնելու ալ չենք մեր այժմեան տիկնանց տարազին վրայ՝ արաբական ճնշող գերփող լծին ներքև։ Յամենայն դէպս պէտք է երևան հանենք մեր ազնուուհեաց այդ հանդերձին ձևը, զոր ես կը կարծեմ տեսնել յատկապէս Նարեկացի մեծանուն քերթողին մատենագրութեան մէկ անկիւնը, ծածկուած և աննշմարելի մնացած այլաբանութեան մը դիմակին ներքև։ Ծննդեան տաղի մը մէջ նկարագրել կ'ուզէ Տիրամայրը։ Բայց իւր արուեստագէտ միտքը կանացի օրինակ մը կը փնդռէ, ինչպէս պիտի ընէր նկարիչ մը։ Վասպուրականի ազատաց յարկերէն միոյն մէջ կը սպրդի մտօք, կ'ընտրէ և իւր առջև կը կեցնէ զարմանուհի մը, և իւր շողշողուն գրչով կը գծագրէ զայն[2]։ Հետևինք իրեն, լրացընելով իւր պակասն ուրիշ ցիրուցան տեղեկութիւններէ։*

1. *«Վարսիցն երամից զարդ՝ ոլորս են առեալ եռահիւսակն բոլորեալ այտիւք». այսինքն՝ կազմած երեքոլոր հիւսակներ, կը շրջանակեն այտերը և կը կապուին գլխուն ետև։ Եւ որովհետև այդ ազնուուհին իւր տօնական արդուզարդին մէջ է, նաև «ի ծամին խեղեփին հազրէ» կը կրէ. այսինքն վարսից ճեղքին մէջ զետեղած է հազրէ[3] կամ հազրէվարդ[4], որ ըստ եղանակին կրնար փոխուիլ նաև ուրիշ ծաղկանց։*

2. *Նուրբ յօնքերը ծայրով իրարու հետ միացուցած է կամարակերպ. «յունիցն նրբենից ի մի կից կամար». և որ կրնայ ոմանց վրայ նաև բնական լինել, և ոչ լոկ արուեստական։*

3. *Քառամանեկին գոյութիւնը կը հաստատէ Թհ. Իմաստասէր, իւր մանկութիւնը նմանեցնելով հարսանեկան վիճակին, և «կախեալ զպարանոցէ զոսկետեսակ քառամանեկին զգեղեցկութիւն[5]», ուր յայտնի է նիւթն ալ։ Եւ հարսնութեան սովորական ու հրապուրիչ*

1. Օրբ. 191. — 2. Նար. 471 — 3. Կայ արր. խազիրա=կանաչ. — 4. Նար. 471. — 5. Օձն. 1.

զարդս չէր կրնար անտեսուիլ ու չգործածուիլ նաև այդ վիճակէն դուրս, երբ արք անգամ փարած էին անոր։

4. Նիկ. Մառ Անւոյ մէջ գտաւ ազնուազգի փոքրիկ աղջկան մը մարմինը, որ մերկութեան վրայ հագած էր մետաքսեայ նուրբ շապիկ մը, թեզանիքն ոսկեթել ասղնեգործած, կ'ըսէ Ծոցիկեան[1]։ Ներքնակն է, զոր երբ մեծցնենք, կ'ունենանք տիկնանց հագածը։

5. Աղոր վրայ զգեցած էր մետաքսեայ «շրջազգեստ» մը, որ է պատմուճանը, գեղաճաշակ խորշերով, ու բազկաց վրայ իշխանական կապեր[2]։ Նարեկացւոյն զարմանուհին նոյնպէս «գեղեցիկ պատմուճանաւ զարդարեալ, ի կապուտոյ, ի ծիրանոյ, ի բեհեզոյ, ի յորդանէ, ոսկեշողէր գոյնն»։ Ուրեմն այդքան կտորներով կազմուած էր։



Ձև 64. Ոսկեզարդ Անւոյ օրիորդի քողին

6. Գօտին ալ կար Անւոյ աղջկան մէջքին։ Շատ ճոխ է Նարեկացւոյն նկարագրածը, որ առաջակողմէն տոներ ալ կը կախէր. «Գօտին արծաթափայլ ոսկէտտուն, կամարակապ յականց, յականց շափիւղայ, մանրամասին յօրինուածով պճնեալ»։

7. Քողն ինչպէս միշտ, հիմայ ևս անպակաս է տիկնանց գլխէն՝ երբ փողոց կ'ելնեն։ Անոր համար պատմչին յիշատակութեան կ'ենթարկուին «ազատ կանայք», որ «զքողն ի գլխոցն ի բաց առեալ՝» գերի կ'երթային[3]։ Դեռ կը պահէ իր հին պերճութիւնը, Արծրունեաց Սոփիա տիկնոջ վրայ սահմանուելով՝ «պատուադիր քող մարգարտահիւս զարդուն[4]». և զոր ուրիշներ կը ստիպուին օտարացնել՝ Ցուսուփի հարստահարութեանց ժամանակ. «կանայք պատուականք, կ'ըսէ պատմիչ մը, ի հարկէ կարօտութեանն զքօղումն ի գլխոց

1. Ասպր. 1917, Ապր. 13։ — 2. Անդ։ — 3. Լաստ. 11։ — 4. Արծ. 300։

մերկացեալք՝… մուրացիկ շրջէին[1] »։ Անոր օրիորդիկն ամբողջովին ծածկուած էր ծաղկանկար թափանցիկ քողով մը, որ իրեն համար չափազանց մեծ, անմխիթար մօրը զարդն ու նուէրը կը թուի տարագնաց սիրելւոյն՝ իբր պատանք. և որոյ վրայ շատ նրբօրէն հիւսուած են՝ ոսկի և մետաքս թելերով՝ զոյգ մը փոքրիկ վագրեր, հրատարակուած Ն. Մառէ[2], ուսկից և ես յառաջ կը բերեմ, Ձև 64։

## Է. ՌԱՄԻԿԸ

Ըսի՝ թէ ասոր տարազը հեռի մնաց արաբականին ազդեցութենէն, որ մինչև ազնուականաց հասաւ։ Ասոր յայտնի ապացոյցը կայ Բարսեղ Բ կայսեր (976-1025) հռչակաւոր պատկերազարդ Վկայաբանութեան մէջ, պահուած ի Վատիկան, որ ունի նաև Հռիփսիմեանց նահատակութեան տեսարանը, յառաջ բերուած և Հ. Ալիշանէն[3], զոր ես ալ կու տամ հոս՝ նոյն գրչագրին վերջին լուսատիպ հրատարակութենէն[4], Ձև 65։ Դիտեցի՝ որ բիւզանդացի նկարիչը ժամանակի հայ տարազն է զգեցուցեր Հռիփսիմեանց դահճին, որոյ յոյն պաշտօնակիցք կը զանազանին միւս պատկերաց մէջ՝ իրենց բաց գլխով, պիրկ վարտեօք, զանկապանօք, աւելի կարճ պարեգօտով, և յաճախ մեկնոցով, և որ անոնց ժողովրդական տարազն իսկ է[5]։ Այսպէս նկարիչը կը զատէ ուրիշ բարբարոս դահճի մը հագուստն ալ[6]։ Հետևաբար՝ մեք հոս հայ դահճին վրայ ունինք այս շրջանի ռամկական տարազը, որոյ աղերսը մեծ է սասանեանի հետ՝ զոր տեսանք։ Ահա աղոր նկարագիրը։

1. Հերք կը կորսնցնեն հիմայ իրենց նախկին կարևորութիւնը ժողովրդեան վրայ։ Է դարէն արդէն սկսած են խորշելի դառնալ, և Զենոբայ խմբագրիչը ժամանակի գաղափարով՝ զանոնք Անգեղտան իշխանին կտրել կու տայ Գիսանեայ պաշտօնէից գլխէն, որոնք « գէսք էին թողեալ[7] »։ Ժ դարուն անգէս Հայք կը տարբերին գիսաւոր Յոյներէն, և այս պատճառաւ կը բամբասէին զիրար։ Խաչիկ Բ կաթ. կը գրէր Սեբաստիոյ մետրապոլտին. « Իսկ զի՞նչ վասն վարսաւոր գիսակացդ ասիցէք, զոր իբրև սահման քրիստոնէութեան զայղոսիկ ունիք ». և յիշեցնելով Պաւղոսի խօսքն արանց գիսաւորութեան դէմ, կը յարէ. « Բայց ձեզ չէ ինչ փոյթ զգրելոցն. զի ոչ միայն դուք

1. Յհ. կթ. 328։ — 2. Մառ՝ Շարք. թ. 3, էջ 37։ — 3. Ալիշ. 237։ — 4. Menol. 75։ — 5. Համմ. անդ՝ 161։ — 6. Անդ՝ 212։ — 7. Զեն. 36։

յանցանէք, այլ և զոչ յանցուցեալսն (Հայերը) սարակինոսս անուանէք վասն ոչ զգեստ ունելոյ[1] »։ Արդարև Հռիփսիմեանց դահիճն ալ անզգեստ նկարուած է, ինչպէս էր և արաբական սովորութիւնը[2]։

Սակայն Հայոց մէջ ևս գիսաւորութիւնը ջնջուած չէ դեռ բոլորովին, և նոյն Ժ դարու կիսուն պայքարի նիւթ կը դառնայ Անձևացեաց Խոսրով եպիսկոպոսին և Մոկացի Անանիա կաթողիկոսին միջև։ Առաջինը կ'ուզէր հին սովորութեան պահպանութիւնը՝ հակառակ հայրապետին համոզման, ուսուցանելով խուզել մանկանց գլուխը՝ մինչև մօրուաց բուսնիլը, իբր թէ «այսր աղագաւ կոչի կտրիճ». և յետ մօրուաց թողուլ և «մանիլ ցսրունսն, զի այսր աղագաւ կոչին մանուկ[3]»։ Կիրակոս հակառակը կը հասկնայ, տարուելով անշուշտ կտրիճ և մանուկ բառից իրեն ծանօթ իմաստներէն[4]։ Վէճն այնքան սաստկացաւ, որ Անանիա բանադրեց զԽոսրով՝ այս և ուրիշ խնդրոց համար։ Բայց Անձևացեաց առաջնորդին պէս խորհողներ ալ շատ կային, մանաւանդ երիտասարդները, որոց «խոպոպք վարսիցն, կ'ըսէ Արիստակէս, փաղփեալք ի վերայ ճակատուն, զօրէն վարդի վառ ի վառ գունով զդիրս երեսացն պայծառացուցանէին[5]»։ Եւ Ս. Ղազարու մաշտոցը՝ ԺԱ դարու, կրօնաւորօրհնէից կանոնին մէջ կը գրէ. «եթէ հերով լինի» նուիրեալը, կը յապաւեն։

2. Մօրուքն ընդ հակառակն կը պահուի հաւատարմութեամբ բոլորէն։ Լաստիվերտցին կը հաստատէ՝ թէ ծերերը «հարկաւոր և պատուական ալեօք բարգաւաճեալ» էին. և երիտասարդաց «դեռաբոյս մօրուացն իբրև զնկար գեղեցկայարմար զայտսն զարդարէին[6]»։ Հետաքրքրական է հետևեալ դէպքը։ ԺԱ դարուն հայատեաց Անտիոքացիք մեր ազգէն զով բռնէին, «զմօրուքն կտրէին» ու կ'արձակէին։ Այսպէս վարուեցան նաև անեցի Գորգ քաջին հետ, որ ի վրէժխնդրութիւն այդ նախատանաց՝ թուրքերը թիկունք ըրած, Անտիոքայ գիւղերէն տասներկուքը հրոյ ու սրոյ ճարակ տուաւ, ըսելով. «Ես եմ Գորգ շիրակացին, որ զմօրուքն կտրեցիք. թ'ապա ածէ՞ այս մօրուք՝ թէ ոչ[7]»։ Զափազանց թանգ, ո՛վ տաք շիրակացի։

3. Կապայ (պրս. զապա) կը կոչուի հիմայ պարեգօտն ըստ Մագիստրոսի, որ կ'ըսէ Յունաց համար, թէ «ոչ ունելով նոցա սովորութիւն զգենուլ կապա, ի մէնջ առեալ (բառը՝) ոչ ուղղախօսեն, այլ անուանեն զնա կովա[8]»։ Աստղիկ դասական անուն մը կը գործածէ, նկարագրելով Ա. Աշոտոյ և անոր որդւոյն օրով հայ ժողո-

1. Ասող. 232։ — 2. Schl. Epop. I, 233, 273։ — 3. Մոկ. 276։ — 4. Կիր. 48։ — 5. Լաստ. 64։ — 6. Նոյն՝ 38, 61։ — 7. Ուռ. ԺԻԳ։ — 8. Մագ. Քեր. Ներած։

վրդեան բարգաւաճ վիճակը, «մինչև հովուաց և անդէորդաց մե-տաքսեայս զգենուլ պատմուճան[1]»։ Մեկնոցը չի յիշեր, որովհետև դադրած էր գոյութենէ նաև ժողովրդեան վրայ, ինչպէս ազնուականաց։ Հռիփսիմեանց դահճին վրայ կը պահէ հին ձևը, համնելով մինչև ծնգաց մօտ. սպիտակ է գունով, ծածկուած ոսկի զարդերով և ա-ւարտած ոսկի ժապաւէնով։ Թեզանիքը կարճ են՝ պաշտօնին բերմամբ։

4. Գօտին կը մնայ հաստատուն, ինչպէս մեր Ջևին մէջ. և



Ձև 65. Նահատակութիւն ս. Հռիփսիմեանց

վերոյիշեալ հին մաշտոցը գրելով՝ թէ կրօնաւորութեան եկողն «առնէն գօտելոյծ», կը զգացնէ՝ թէ բոլոր Հայք գօտևոր էին։

5. Վարտիքը նոյնպէս կը պահէ հին ձևը մեր պատկերին մէջ, երկար, ամփոփ ու սպիտակ, և զուրկ է զանկապաններէ։

6. Գուլպայք (աս. գուլպա, պրս. գուրաբ, արբ. ջուրաբ[2]) անծա-նօթ էին հին դարերու արևելեայց. որով Հրեայք տուն մտնելուն կը

1. Ասող. Գ, գ։ — 2. Hüb. 302։

լուանային իրենց փոշոտած կամ ցեխոտած ոտքերը[1]. և Հայք նոյնպէս զուրկ էին գուրպայէ[2], ուսկից զատ էին ազնուականաց ոմանց զանկապանք[3], բուն գուրպայն լինելով թաթից ծածկոյթը կօշկին մէջ։ Առաջին անգամ ներկայ շրջանիս կը հանդիպիմ ասոր՝ վերոյիշեալ հնագոյն մաշտոցին մէջ, հանգուցեալ քահանայի հանդերձից կարգին. «գուրպայս յոտսն»։ Որովհետև անկօշիկ կը թաղուէր մարմինը, գուրպայք միայն կը յիշուին, որոնք ուրեմն արդէն ի գործածութեան են ԺԱ դարուն՝ արաբական ազդեցութեան ներքև։

7. Կօշիկները կան Հռիփսիմեանց դահճի ոտքին, սպիտակ գունով, ու երեսին ոսկի գծեր. և կը ծածկեն ամբողջ թաթը։ — Տրեխք ալ կը յիշուին հիմայ, հասարակ կօշկէն աւելի անշուք ու տոկուն, և սեպհական հետիոտն ճանապարհորդաց։ Յովհաննէս կթղ. նկարագրելով իւր ժամանակակցաց տիրապետական ցանկութիւնը, «ծառայք, կ'ըսէ, ըստ Սողոմոնի հնարէին՝ զի զտեարս տրեխաւորեալ՝ ի գետնի զնացուսցեն, և ինքեանք ելցեն յերիվարս աճիպարանոցս[4]»։ Յայտնի է ուրեմն՝ որ տրեխը ծառայից ու ռամկին էր, և կօշիկն՝ ազնուականաց ու մեծատանց։

8. Խոյր մը կայ Արծրունեաց պատմչին շարունակողին քով։ Երբ, կ'ըսէ, մէկն ուզէ Աղթամարայ տաճարի գմբեթին նայիլ, թագաւորի մը պատիւ ընծայելու պէս՝ «նախ ի բաց հանցէ զխոյր գլխոյն[5]»։ Հին անուանց վրայ այժմ հին իմաստներն որոնելու չենք միշտ. և այս խոյրը կրնայ նշանակել նաև Հռիփսիմեանց դահճի գտակը, բոլորշի՝ ցած ու կարմրագոյն։ Բայց միակ գլխադիրը չէ այս։

Կամ աղօր հետ միասին, և կամ գաւառական զանազանութեամբ՝ կը գործածուի փակեղն ալ, որ է գլխապատ վարշամակը. յունարէն կոչում (φάκελος=ծրար, պատատ), և նման յունականին՝ զոր տեսանք մեր 56 Ջեին մէջ։ Ասոր գոյութեան ու նորութեան կը վկայէ Մագիստրոս, ըսելով. «փակեղն՝ որ է յունարէն, քանզի ոչ գոյր մեր և ոչ էր սովորութիւն», և Յոյներէն առնուեր է[6]։ Նաև ծանօթ հին մաշտոցը կը հաստատէ ասոր սովորականութիւնը, պատուիրելով չափահաս մկրտելոց՝ ութ օր եկեղեցւոյ մէջ անցնել, գլուխը ծածկած «սպիտակ փակեղամբ», որոյ քով նորագոյն օրինակներ կը յաւելուն՝ իբր մեկնութիւն՝ «կամ կտաւով ինչ»։ և ուր խորհրդոյն յատկանշականն է՝ մկրտութեան յատուկ սպիտակ գոյնը, իսկ փակեղն ընդհանուր գործածուածն էր։

1. Նշնդ. ԺԲ, 4 են. Երգ. Ե, 3. Ա Տիմ. Ե, 10։ — 2. Անդ՝ 145։ — 3. Անդ՝ 110։ — 4. Յհ. կթ. 321։ — 5. Անդ. 332։ — 6. Մագ. Քեր. Ներած։

9. *Անուոյ մէջ կմախքներէն ոմանց վրայ գտնուեցան «պղնձեայ ապարանջաններ ու մատանիներ [1]», որոց նիւթը ցոյց կու տայ անոնց ռամկականութիւնը. և որոնք կրնան թէ արանց և թէ կանանց սեփ-հական լինել, ինչպէս պիտի տեսնենք և յաջորդ շրջանին։*

10. *Սուր մ'ալ կախած է Հռիփսիմեանց դահիճն ուսէն՝ փոկով մը, բերանն երկսայրի, լայն և ուղիղ ձևով, և պատեանը՝ սև և ոսկի զարդերով, նման նոյն գրչագրի միւս սուրերուն։ Հաւանօրէն ամբողջ հայ ժողովուրդը կը շարունակէր կրել զայս ըստ հին աւանդութեան, զոր նկատեցինք Սասանեան շրջանին։*

**ԽՈՒԹՔ**

*Արծրունեաց պատմիչը կու տայ նկարագիրը* **Խոյթ** *լերան բնակչաց, որ են Սասնեցիք, որոց կենցաղավարութեան եղանակը, բարբառն ու տարազը կը զանազանէին դաշտականներէն այն ժա-մանակ՝ ինչպէս մեր օրերը, և այն ժամանակ դեռ աւելի, տալով անոնց* **Խուժ** *անունը [2]։ Անոնց հանդերձին պարզութիւնն անտարակոյս շատ աւելի վեր կ'ելնէ քան զԹովմա, և կը կազմուի երկու կտորէ։*

1. *«Էր զգեստ նոցա, կ'ըսէ, ասուիս՝ ի ծածկոյթ մերկութեանն». այսինքն մեկնակ պարեգօտ մ'ունէին, որոյ նպատակն էր մարմինը ծածկել, զուրկ զարդի գաղափարէն. և եղանակաց հետ անգամ փոփոխութիւն չէին կրեր, այլ «միով հանդերձիւ բաւականանան զամառն և զձմեռն»։ Իսկ անոր նիւթն էր ասրեղէն, մինչ դաշտայ-նոց վրայ մետաքսեայն ալ տեսանք։*

2. *«Օղ ոտիցն, կը յարէ, հնարաւորեն զձև կօշկաց՝ ի մորթոյ այծից կազմեալ». այսինքն փոխանակ ճարտարագործ կօշկաց՝ կ'առնուին այծենին, տրեխներ կը շինէին, և անով կը պատսպարէին իրենց ոտքերը լերանց սուր պարեխներուն վրայ։*

3. *Փոքր նիզակներ ունէին միշտ իրենց ձեռքը, երբ տնէն դուրս կ'ելնէին. «Են ստացեալ զէնս աշտեայս՝ հանապազ կրելով ընդ ինքեանս», որպէս զի, կ'ըսէ, լեռնաբնակ գազանաց ու թշնա-մեաց յարձակմանց դէմ միշտ պատրաստ գտնուէին։ Նոյն զէնքն ու սուր մ'ալ կը կրէին կռուի մէջ, ինչպէս երբ կը յարձակին Արա-բաց Յովսէփ զօրավարին· դէմ [1], կը պաշարեն զայն Մշոյ մէջ, կը կոտորեն զօրքը, և աշտէի մը հարուածով զինքն ալ կը տապալեն [3]։*

1. Յշրր. 1907, 87. — 2. Արծ. 134-5. — 3. Անդ՝ 133.

## Ը. ՌԱՄԿՈՒՀԻՆ

*Բարսեղ կայսեր Վկայաբանութեան նկարիչն ինչպէս Հռիփսիմեանց դահճին զգեցուցեր է ժամանակի հայ տարազը, վկայուհեաց ևս տուած կը թուի հայ աշխարհիկ կանանց ձևը, որ կը զանազանի նոյն գրչագրի յոյն հաւատաւորաց քողածածուկ հանդերձէն*[1]*: Հայ կը. կոչեմ ասոնց հագածը, թէև զգալի տարբերութիւն չունենայ նոյն Վկայաբանութեան մէջ նկարուած ուրիշ աշխարհական կանանց զգեստէն. զի կանացի հանդերձը՝ գէթ գլխաւոր գծերուն մէջ նոյն էր ժամանակակից քրիստոնեայ ազգաց քով: Բիւզանդացի նկարիչը Հռիփսիմեայ տուեր է անոր համբաւին համեմատ գեղեցկութիւն մ'ալ* (Զև 65):

1. *Վարսերը ճոխ են, շէկ և ուռուցիկ գլխին շուրջ. սեպհական մանկամարդ հասակի պճնութեան. և կ'երթան կը թափին՝ առանց հիւսուելու՝ ծոծրակին վրայ: Իսկ անոր մօտ Գայիանէ իբրև չափահաս կին, կը կրէ ձաղկ և նոյնպէս արձակ մազեր. և որոց հետ կը համաձայնի Ուռհայեցւոյն բացատրութիւնն ալ, որ* 1018*ին Հայաստանի վրայ խուժող Թուրքերը կը կոչէ «հերարձակս իբրև զկանայս*[2]*». ուրեմն վարսից այդ վիճակը սովորական էր կանանց:*

2. *Քօղը տնէն դուրս սեպհական էր նաև ռամիկ կանանց, ինչպէս կը զգացնէ Թովմայի շարունակողը, գրելով՝ թէ Արծրունի Դերենկան մահուան առթիւ «տիկնայք և աղախնայք թողեալ զկանացի բնութեանն պատիւ, ի գռեհս և ի փողոցս յայտագլխաւ ընդ երկիր զանձինս իւրեանց քարշէին*[3]*». Հետևաբար գլխաբացութիւնը հակառակ էր կանացի պատուոյն:*

3. *Պարեգօտ մ'ունի Հռիփսիմէ՝ սովորական ձևով, նկարչէն գծուած աղօտ դեղին գունով և ոսկի շողերով, ուր Գայիանէի հագածն արծաթագոյն է, և ստորոտն ոսկի ժապաւէն: Թէ դահճին և թէ ասոնց, ինչպէս և միւս նկարուց գոյներու մէջ նկատելու ենք իրականութենէն աւելի արուեստին պահանջը, որ երանգոց զանազանութիւն կ'ուզէր:*

4. *Գօտին աննշմարելի Հռիփսիմեայ վրայ, և պակաս Գայիանէի մէջքին, հաւանական է՝ թէ դեռ մնացած էր, ինչպէս տեսանք տիկնանց վրայ: Սակայն Վկայաբանութեան ուրիշ կանայքն ալ գօտելոյծ կ'երևին: Նկարչի՞ն վերագրելի է այս, թէ ժամանակի կրկնակ*

1. Menol. 4, 26, 29, ևն: — 2. Ուռ. ԼԸ: — 3. Արծ. 299.

*սովորութեանց, դժուարին է ճշդել։ Այս յայտնի է՝ թէ արաբականին յաջորդող թաթարական շրջանին արդէն ջնջուած է կանանց գօտին. կարելի է՝ որ ներկայ ժամանակամիջոցէս սկսած է այդ փոփոխու-թիւնը, և յետոյ ընդարձակուած։*

5. *Կօշիկը թուխ գունով գծուած է Հռիփսիմեայ ոտից վրայ, և կը ծածկէ ամբողջ թաթը՝ կանոնաւոր ձևով մը։*

6. *Ուլունք ծանօթ են հիմայ ևս, կազմելով կանանց լանջա-զարդ։ Նարեկացին զանոնք այսպէս կը նկարագրէ. «Ուլն յեռեալ՝ ժողովէ յինքն զպէսպէս զանազանութիւն գեղոց մարգարտաց[1]»։ Եւ Աստուածածնի ներբողին մէջ կը ներկայացնէ զայն քայռի ձևով. «քառեակ մանեկաւ նշուլափայլ մաքուր ուլանցն յեռմամբ», որուն կը համեմատէ Յիսուս մանկան մէջ խառնումն աստուածութեան, հո-գւոյ և մարմնոյ, ինչպէս նոյն քայռին մէջ կը խառնուէին զանազան գոյներ. և որդւոյն փարումն իւր մայրենի «լանջաց[2]», ինչպէս քայռը կ'իջնէր կը կախուէր կանանց լանջաց վրայ։ Հին տաղ մ'ալ, ժա-մանակն անծանօթ, նոյն դիրքը կու տայ ուլանց՝ Հերովդիադայ դստեր վրայ. «Ուլունքն ի վերայ լանջացն նմանեալ լերանց ծաղ-կանց[3]», որոնք յայտնի է թէ տարածուն էին ձևով։*

## Թ. ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆՔ

*Ասոնց տարազի մասին կան բաւական ծանօթութիւնք ժամա-նակի պատմչաց քով, որոնք կ'օժանդակեն մեզ՝ փոքր ի շատէ կազմելու անոնց ձևն ու զէնքերը։ Ես կու տամ հոս նաև երկու պատկերներ, որոց վրայ կը համարիմ տեսնել հայ զինուորական ձևը։ Մին կը ներկայացնէ Անւոյ միջնաբերդին մէջ քանդակուած երկու ձիաւորներ՝ իրարու դէմ, Զև 66, զորս առաջին հրատարա-կիչը Բրոսսէտ, ուսկից և ես կ'առնում, կարծեց ս. Գէորգ և ս. Թէոդոր կամ Դեմետր[4]։ Որոնք ալ լինին, այս յայտնի է՝ որ ադոնց հանդերձը հին կամ աւանդականը չէ։ Տարբեր է նաև նոյն սրբոց բիւզանդական տարազէն[5], և վրացի քանդակի մ'անոնց տուածէն[6]։ Հետևաբար սովորական ապաժամութիւնը գործուած է հոդ Անւոյ քանդակողէն, զգեցնելով անոնց հայ զօրականի հանդերձը։*

*Նոյն պայմանի մէջ կը գտնուի նաև Աղթամարայ տաճարին*

1. Նար. 341։ — 2. Նոյն՝ 414։ — 3. Հյկգ. Ուլն. — 4. Bros. 33, և տխ. 37։ — 5. Schl. Epop. I, 13, 25 են։ — 6. Bros. տխ. 36։

քանդակ Գողիաթը, որոյ տարազը շատ քիչ կը համեմատի ս․ Գրոց նկարագրին․ ունի ասոր «սաղաւարտն» ու «զրահս վերտս»․ իսկ «սռնապանք պղնձիք ի վերայ բարձից նորա, և վահան պղնձի ի վերայ թիկանց նորա, և բուն գեղարդան նորա[1]» չեն երևիր մեր պատկերին մէջ։ Ասոր քանդակողն անգէտ հին ձևերուն, հարկադրուած էր ժամանակակից զինուորութենէն առնուլ զրահաւորին գաղափարը։ Որով հոս ալ ունինք հայ տարազը, բաւական տարբեր բիւզանդական Գողիաթի մը կրածէն ևս[2]․ և զոր նոյնպէս յառաջ կը բերեմ փոքրիկ լուսատպէ մը, Ձև 67։



Ձև 66․ Քանդակ միջնաբերդին Անւոյ

Հայոց զինուորութիւնը կրկին գլխաւոր բաժանումն ունի այս շրջանիս․ հետևակազօր և հեծելազօր, որոց հանդերձն ու կազմածը կը տարբերին իրարմէ։

Ա․ Հետևակազօրը։ — Այս շրջանի գրիչներն իրենց մուրացածոյ գրաբարով, որ շատ հեռի է բուն աղբիւրէն, հետիոտն զինուորութեան կու տան այդ կոչումը[3], և կամ հետևակամարտք[4], հետևակազունդ[5], հետևակ զօր կամ հետևակք[6]։

1․ Ասոնք սովորաբար անզրահ են․ և իրենց հանդերձը, որ կը մօտենայ ժողովրդականին, հիմայ այս նորութիւնն ունի, որ Հայոց

1․ Ա Թագ․ ժէ, 5–7․ — 2․ Schl․ Emp․ 287․ — 3․ Յհ․ կթ․ 390․ Արծ․ 164, 220, 222․ — 4․ Յհ․ կթ․ 390․ — 5․ Ասող․ Գ, իգ, խգ․ — 6․ Նոյն՝ Գ, ը․

*բանակին մէջ ամէն իշխանի գունդ կ'որոշուի միւսներէն իւր սեպհական գունով։ Զայս կը վկայէ Արիստակէս, ըսելով՝ թէ «զօրէն գարնանաբոյս ծաղկանց՝ գունակ գունակ հանդերձիւք փայլէին[1]»։ Եւ Ասողիկ կը պատմէ՝ թէ Ափխազաց դէմ Վրաց օգնութեան գնացող հայ բանակին մէջ կար նաև Կարսի պատանի թագաւորն Աբաս, «կարմրագգեստ զգունդն իւր ունելով[2]», որով կը զանազանէր միւսներէն։ Թէ այս գունդերն անզրահ էին, գոյներէդ զատ յայտնի է և այն դիպուածէն, որ երբ 1018ին Հայոց զօրքն առաջին անգամ հակառակեցաւ Սելճուգեանց դէմ, անոնց ճարտար նետերը ծանր վնաս տուին իրենց. այնպէս որ հարկադրեցան նահանջել և «այլ զգեստ պատրաստել ընդդէմ նետիցն[3]»։*

*Որքան կարելի է վստահիլ մեր 66 Զևի հաւատարմութեան վրայ, որ գոնէ մերձաւոր լինելու է բնագրին, անոր անձինք թէև ձիաւոր, բայց անզրահ հետևակաց տարազը կը կրեն. բոլորակ գդակներ, մին պարզ և միւսը զարդարուն։ — Պարեգօտ՝ մինչև ծնկները. փորանկեալ միոյն վրայ, և փորիրաց միւսին, որ աւելի կը համաձայնի ժամանակիս ոճին[4]։ — Գօտին կ'ամփոփէ անոր լանջերը։ — Վարտեաց ստորոտները թաղուած են ոտնապանաց մէջ, որոնք մինչև ծնկները կը բարձրանան։ — Իսկ իբր ագանելիք ունին տրեխներ, յիշատակուած Յհ. կաթողիկոսէն, որ Հասան Արծրունւոյ համար կը պատմէ «տրեխաւորեալ» իւր զօրաց հետ[5]։*

2. *Հետևակազօրուն զէնքերն էին. վահաններ, որոցմով կը փակէին բանակին ճակատը՝ պատերազմի պահուն[6]. և աղոնց հետ նաև «յաղեղն և ի սուսեր վառեալ», ինչպէս Աշոտի զօրքը[7]. մին կը գործածէին անշարժ ճակատած, և միւսը յարձակման ժամանակ։ Նոյն երեք զէնքերը կը տեսնենք նաև Հասան Արծրունւոյ սրիկայից[8], ու Վրաց Գուրգէն իշխանի գնդին ձեռքը[9]։ Այսպէս և Կապուտ ամրոցին մէջ պաշարուած Հայերը կ'արձակէին թշնամեաց «գնետաձիգս ի լայնալիճ աղեղանց[10]». և Սևանայ ամրոյին տէրը Շահան Գէորգ՝ իւր նաւերէն կը հալածէ Բըշրի զօրքը՝ նոյն «լայնալիճ աղեղամբք[11]»։*

*Բայց զէնքերը հաւասար չեն միշտ, և փոփոխութիւն կը կրեն ըստ կամս զօրավարին և ըստ պիտոյից։ Աբաս սպարապետի վրանին շուրջ պահակ կանգնած էր գունդ մը՝ կրկին զէնքով, «վահանաւոր և նիզակաւոր՝ ամրափակ պնդութեամբ[12]», և Մուսէի դէմ ճակատած հայ միացեալ բանակին մէջ նոյն «վահանաւորքն և նիզակաւորքն գոչէին[13]»։*

1. Լաստ. 75։ — 2. Ասող. Գ. իը։ — 3. Ուռ. ԼԸ։ — 4. Հմմտ. աստ՝ 195։ — 5. Յհ. կթ. 240։ — 6. Նոյն՝ 386, 390. Արծ. 222։ — 7. Յհ. կթ. 386։ — 8. Նոյն՝ 240։ — 9 Նոյն՝ 397։ — 10. Նոյն՝ 294։ — 11. Նոյն՝ 445։ — 12. Արծ. 249։ — 13. Նոյն՝ 121։

— Կը պատահինք ուրիշ յարմարութեան մ'ալ. Ուշտունեաց մէջ երկու հայ սաղարներ կ'ընդհարին այլազգեաց հետ, «վահան ի թիկունս եդեալ, նիզակ ի ձեռին ունելով, ի կապարճս աղեղանց[1]», ինչ որ արաբականի նմանութիւն էր[2]: — Մեր Ձևին մէջ յայտնի են վահանին հանգամանքները, հնոյն պէս բոլորշի ձուացած, ինչպէս էր և Բիւզանդացւոց քով[3]: Անւոյ արքունի ապարանքէն յայտնուեցաւ նիզակ մը, եռաժանի և հանգոյցներով[4]: Եւ դեռ կը յիշուի այս շրջանիս դեղեալ նետից գոյութիւնը[5], և պարսատկաց[6] ու քարանց[7] կամ հին վիրգերու գործածութիւնը:

*Բ. Հեծելազօրը:* — Այսպէս[8], և հեծելազօրն[9] կամ հեծեալք այրուձիոյ[10] կը կոչուին ձիաւորք, որ կը տարբերին հետևակներէն իրենց տարազով ու զէնքերով: Պատերազմէ դուրս անոնք անզրահ են՝ ինչպէս վերջինք. բայց երբ զէնք ունին երկար նիզակ մը և աղեղնաձև նրան[11] մը՝ կախուած ձախ կողմէն, ինչպէս կ'երևի մեր 66 Ձևին վրայ: — Իսկ կռուի մէջ սովորաբար զրահապատ են իրենք ու ձիերը, որով Աշոտ արքայի զօրքը կը նկարագրուին «առնազէն ասպազէն[12]»: Գարդմանայ տէրը Սահակ՝ հեծելազօր գունդը կը պատրաստէ «սպառազինեալս և վառեալս ի զէն և ի զարդ[13]»: Վասպուրականի Աշոտ իշխանը կը ճակատի Արաբաց դէմ՝ «վառեալ զինու սպառազէն երիվարաց[14]». և ինքն Արծրունին կ'երևի այլուր հեծած նժոյգը և «զէն զանձամբ արկեալ[15]»: Նոյնպէս Գագիկ Արծրունւոյ զօրքը կը կռուի «վառեալ ի զրահս[16]»:

1. Այս գնդին ամբողջ կազմածը՝ ժամանակիս ռամկերէնը զաւնաձառ կը կոչէ, ինչպէս Շապհոյ վերագրուած պատմութեան մէջ[17], յայտնապէս հասկանալով զրահ, սաղաւարտ, սուսեր և տոմբ[18]. և բայը՝ զաւնաձառել[19]: Շնորհալին արբ. ձաւշ (զրահ[20]) բառը կը գործածէ Արաբաց վրայ, «ճաւշիւք ծածկեալ բոլոր անձին[21]», որ նոյնպէս ընտանի լինելու է Հայոց: Իւր սահմանն էր՝ «զգեստ երկաթապատ[22]» և «գլխանոց երկաթի[23]». և կամ «զրեհ» ու «սաղաւարտ[24]», որ աւելի մանրամասնած են Գարդմանայ իշխանին զօրաց վրայ. «ի սաղաւարտիցն և ի բիկնապահ և ի յանչապահ պղնձի տախ-

1. Յհ. կթ. 143: — 2. Հմմտ. նոյն՝ 147-8: — 3. Schl. Epop. II, 184, 493, 545, III, 293: — 4. Արար. 1911, 659: — 5. Արծ. 167, 178: — 6. Նոյն՝ 143. Յհ. կթ. 294: — 7. Արծ. 165: — 8. Յհ. կթ. 390, 410: — 9. Ասող. Գ, իգ: — 10. Արծ. 124: — 11. Յհ. կթ. 311: — 12. Նոյն՝ 370: — 13. Նոյն՝ 390: — 14. Արծ. 124: — 15. Նոյն՝ 238: — 16. Յհ. կթ. 220: — 17. Շպհ. 50, 62, 63: — 18. Նոյն՝ 59, 62, 63: — 19. Նոյն՝ 59, 60: — 20. Hüb. 270: — 21. Ողբ Եդես. տող 642: — 22. Ուռ. ժԱ: — 23. Յհ. կթ. 379: — 24. Շպհ. 41:

տակացն և ի պահպանակացն բարձից և բազկաց[1]». և փոխանակ հետևակաց տրեխներուն՝ կօշիկ կը տեսնենք Ապումկդէմ Արծրունւոյ ոտքերուն[2]։ Շատ մեծ է նմանութիւնն այս զրահից և արաբականաց՝ Բուղայի զօրաց վրայ և Լիդէացւոց թագաւորին՝ զորս կը նկարագրէ Թովմա[3]։ Աւելին կայ. մեր իշխանք երբեմն Արաբներէն իսկ կ'ընդունէին իրենց զէնքերը։ Այսպէս Է դարուն Արտաւազդ Մամիկոնեան իւր բանակով ի Դուին կ'երթայ, և «ստանայր անդ զէնս և անօթս պատերազմի, և վառէր զինքն զրահիւք և սաղաւարտիւք և ամենայն սպառազինութեամբ», զանոնք յետոյ Նուիրողաց դէմ գործածելու համար[4]։ Մեր ազատանին մերթ արաբական բանակին մէջ իսկ կը կռուին, զգեցած «զրեհս և սաղաւարտս՝» զորս ամիրապետէն կ'ընդունէին[5]։ Եւ անոնց յաղթելու ժամանակ ալ Դերէն Արծրունի կը կողոպտէ Մահմետի զօրաց «զաւնաճառս[6]», և Աշոտ նոյն տոհմէն՝ Մազրիպաց բանակէն աւար կ'առնու «զրէհս և զսաղաւարտս[7]». և զորս անտարակոյս գործածեցին ևս։



Ձև 67. Գողիաթ Աղթամարայ

Ժամանակիս լեզուի ու մատենագրութեան աղքատութենէն՝ անյիշատակ կը մնայ մեր Գողիաթի հագած զրահին տեսակը, զոր ոսկեդարը վիրտք կը կոչէր[8], և որ ծանօթ է ժամանակակից Բիւզանդացւոց[9], Ռուսաց[10] և այլոց ևս, մեր քանդակին սրածայր սաղաւարտով հանդերձ, որ շատ ընդհանրացած էր՝ Բիւզանդիոնի[11], Ռուսաց[12], Բուլգարաց[13] և այլոց մէջ։ Մեր պատկերը զրահին ներքև ցոյց կու տայ նաև պարեգօտը, որ

1. Յհ. կթ. 390. — 2. Արծ. 220. — 3. Նոյն՝ 147, 40. — 4. Ղևդ. 138. — 5. Շպհ. 59. — 6. Նոյն՝ 50. — 7. Նոյն՝ 62. — 8. Աստ՝ 154. — 9. Schl. Epop. II, 45, 49, 57, 184, 273. — 10. Schl. Emp. 345. — 11. Անգ՝ 73, 77, 81. — 12. Անգ՝ 345, 349, 567 ևն. — 13. Անգ՝ 737, 745.

*ծնկներէն վար կը հասնի. և զարդարուն է, ըստ որում իշխան մ՚էր Գողիաթ, և կը կրէ հայ ազնուականին զինուորական կարճը։*

*Հոս ալ կը յիշուի զրահից ծպտումը։ Ամատունի հինգ եղբարք ուզելով դաւել Ապումրվան Արծրունւոյ, «հագել էին զահն ի ներքոյ հանդերձից». զայն որսի կը հրաւիրեն և հոն կը սպաննեն զինքը*[1]*։*

2. *Գալով զինուց, ասոնք ալ աղերս ունին արաբականաց հետ. ամիրապետէն պատուեալ մեր յիշեալ իշխանք կը ստանան նաև «սուսերս և ըռումպս», և կը գործածեն կռուի մէջ*[2]*։ — Այդ զինուց առաջինն էր սուսերը կամ սուսերն պողովատիկ*[3]*, ժամանակիս խառնակ լեզուին մէջ կոչուած և թուր*[4]*, կամ պողովատ թուր*[5]*, կամ սուսկ պողովատ*[6] *և վաղակաւոր*[7]*, առանց որ և է զանազանութեան իմաստի։ Կրնար ըլլալ «երկսայրի», ինչպէս Աբասա արքային*[8]*, կամ միողնի (միասայրի) գոյականաբար գործածուած*[9]*։ Գողիաթի բռնածը լայն և ուղիղ է, այսինքն երկսայրին։*

*Կար նաև ռումբը*[10]*, կամ ըռումբ կամ ըռումպ*[11] *(արբ. ռումհ*[12]*), որ կը նշանակէ նիզակը, որով կը կոչէ Թովմա մի և նոյն զէնքը՝ նոյն պարագայի մէջ, Աշոտ Արծրունւոյ ձեռքը*[13]*. ուսկից է և «փայտ ըռմբի» յետնագոյն բացատրութիւնը*[14]*։ Զայս միասին կը կրեն սուրին հետ*[15]*, յիշուած նաև Գագկայ զօրաց ձեռքը*[16]*։ — Կը հանդիպինք ուրիշ յարմարութեանց ևս։ Հեծեալն Աշոտ արքայորդին փոխանակ նիզակի՝ ձեռքն ունի վաղր մը, որով «շեշտ ընդ մէջ ճեղքէր զամուր գլխանոցն» իւր հակառակորդին*[17]*, և Գուրգէն՝ որ Դերենկին սենեակը կը մտնէ սպաննելու համար, կը կրէ միանգամայն «զսուսեր մերկ... և վաղր և սակր մի*[18]*», յիշուած նաև արաբ զօրաց ձեռքը, «վաղերք և տապարք*[19]*»։ Այս վկայութեանց մէջ վաղրն ու սակր պահած են իրենց հին նշանակութիւնը. տապարի տեսակներ էին՝ մեծ կամ փոքր ըստ պիտոյից, ինչպէս պիտի տեսնենք և յաջորդ գլխոյն մէջ։ — Կային և գունդեր, ինչպէս Աշոտ արքային, զինուած «ի սուր սուսերի և ի սլաքս նետից և ի տէգս նիզակաց*[20]*», զորս կը կրէին նոյն թուով նաև Աշոտ արքայորդւոյն*[21] *և Գուրգէն Արծրունւոյ*[22] *գունդերն ալ։ — Իսկ երբեմն «սրով և աղեղամբ» միայն կ՚երևին, ինչպէս Գրիգոր Արծրունւոյ զօրքը գիշերային կռուի մը մէջ*[23]*։*

1. Շպհ. 75։ — 2. Նոյն՝ 59, 61։ — 3. Արծ. 297։ — 4. Շպհ. 75։ — 5. Ուռ. ԺԱ։ — 6. Նոյն՝ Թ։ — 7. Յհ. կթ. 160, 390։ — 8. Ասող. 158։ — 9. Արծ. 70, 86։ — 10. Ուռ. ԺԱ, ՃԷ։ — 11. Շպհ. 59, 61, 70։ — 12. Hüb. 275։ — 13. Շպհ. 61. Արծ. 238։ — 14. Մաշտոց Ջահկ. ի Հյկզ։ — 15. Շպհ. 59, 61։ — 16. Յհ. կթ. 410։ — 17. Նոյն՝ 379։ — 18. Արծ. 231։ — 19. Նոյն՝ 147. Յհ. կթ. 311։ — 20. Յհ. կթ. 370։ — 21. Նոյն՝ 378։ — 22. Արծ. 225։ — 23. Նոյն՝ 240։

*Տարբերութիւն մը կը նշմարեմ զօրաց ու զօրագլխաց միջև։ վերջինք՝ զրահին ու սաղաւարտին հետ սովորաբար լոկ սուսեր մ'ունին, ըստ որում իրենց գործն էր առաջնորդել քան կռուիլ. այսպէս զինուած էին պատերազմաց մէջ Արտաւազդ Մամիկոնեան[1], Սահակ Ապումկրդէմ Արծրունի[2], և Աբաս Թագաւոր Կարուց[3]. մինչ Արծրունին Աշոտ ճիզակ մ'ալ բռնած էր, – որ հիմայ կ'ըսուի և շուաան[4], – և անով ելաւ կանգնեցաւ իւր նիզակաւորաց վաշտին առջև, խրախուսեց զանոնք ի կռիւ, և յարձակեցաւ ցրուեց Մուսէի բանակը[5]։*

*Այսքան է մեր ծանօթութիւնն արաբական շրջանի տարազին վրայ, ուր Բագրատունի բազմարդիւն տոհմը գիտցաւ արար ոստիկանաց ու զօրագլխաց խժդժութեան և զօշաքաղութեան դէմ ճակատեցնել քաջութիւն, և աւելի քան զայն խորագիտութիւն, և ծածկուիլ մինչև իսկ անոր շարփուշով, ռիդէով ու զրահով, փրկելու համար վտանգուած հայրենիքը։ Այն քանդակները, որոց ձևերն այնքան խնամով հաւաքեցի այս շրջանէս ու զետեղեցի հոս, որքան կարելի էր, և որոցմով աւելի բախտաւոր է այս քան զսասանեանը, չկա՞ն այլ ևս. բարբարոս ձեռքը փշրեց զանոնք դեռ այսօր, աւարտելով իւր հարց գործը։ Եւ մեր այս նմանութիւնք նուիրական են հիմայ մեզ համար։*

1. Ղևդ. 169։ — 2. Արծ. 163։ — 3. Ասող. 158։ — 4. Արծ. 95։ — 5. Նոյն՝ 238։

# ԳԼՈՒԽ Թ

## ԹԱԹԱՐԱԿԱՆ ՇՐՋԱՆ (Ը)



### Ա. ՆԿԱՐԱԳԻՐԸ

ԱՐԱԲԱԿԱՆ *իշխանութեան տկարացմամբ մեր երկրի մէջ, սա ԺԱ դարու սկիզբներէն սկսաւ ասպարէզ դառնալ նոյն և ուրիշ կիսավայրենի ցեղերու փոփոխակի ասպատակութեանց ու կեղեքմանց, ինչպէս էին Սելճուկեանք, Սարակինոսք, Պարսիկք և Քուրդք, որոց դէմ յետոյ զօրացան Թաթարք, և ԺԳ դարուն իրենց տիրապետական լուծը դրին ու պահեցին երկար ժամանակ վերին Հայաստանի վրայ։ Այդ նոր իշխեցողք նոր յեղաշրջութիւն մը գործեցին հայ բարուց ու զգեստուց, զորս այժմու բարբառը շոր կը կոչէ. «Զքեզ շորերով մի՛ զարդարել», կ'ըսէ Առաքել Սիւնեցին*[1]*։*

1. *Հեթում, նախ սպարապետ և ապա կրօնաւոր, որ* 1307*ին անոնց պատմութիւնը շարադրեց գաղերէն լեզուով, ուսկից յետոյ լատիններէն ալ թարգմանուեցաւ, անոնց ազդեցութեան սահմանը կը գծէ Հայաստանի վրայ, զայս տարածելով «մինչև ի թագաւորութիւն Մարաց», և իւր մէջ ամփոփելով նաև զԻսաւրէժ։ Ապա կը յարէ. «Ազգերը՝ որ կը բնակին Հայաստանի երկրին մէջ, կը կոչուին այլ և այլ անուամբք ըստ գաւառաց ուր կը բնակին. և են ձիաւոր ու հետևակ, քաջ զինուորներ։ Զիերով ու զգեստներով կը հետևին Թաթարաց ձևին. վասն զի երկար ժամանակ մնացած են անոնց տէրութեան ներքև։ Զանազան տառեր ունին, որոցմէ ոմանք կը կոչուին հայկականք, ուրիշներ՝ ալոյէն*[2]*», զոր հրատարակիչք ալաններէն կ'ուզեն մեկնել։ Յայտնի է՝ թէ պատմիչս խառն կը խօսի հայ և միւս ցեղերու վրայ, և թաթարական տարազը կը վերաբերի նաև Հայոց։*

1. Աշուղ. 199. Գր. Անաւարզեցին իրր լաւ կը գործածէ շորը. Ցայսմ. Ապր. Գ. — 2. Recueil, II, 128. *հմմտ. և Հեթ.* 14.

վենետացի նշանաւոր ճանապարհորդը Մարկոյ Պոլոյ՝ ԺԳ դարուն, որ կոխեց ի Թաթարաստան, հետեւեալ համառօտ նկարագիրը կու տայ անոնց մասին. «Հարուստները կը հագնին ոսկեհիւս կերպասեայ, ճոխ մորթեր սամոյրի, սպիտակ կզաքսի, սկիւռի և աղուեսու»։ Իսկ զէնքերն են «աղեղունք, սուրեր ու լախտեր. բայց աւելի աղեղն կը գործածեն քան միւսերը, որովհետև քաջ աղեղնաձիգ են։ Կը հագնին պահպանակներ գոմշենւոյ և ուրիշ տեսակ եփած կաշիէ, որ շատ կարծր է[1]»։ Պիտի լսենք ուրիշ ուղևորներ ևս։

2. Այդ արիւնարբու ցեղին անդադար աւերումներն ու կոտորածները՝ թուով ու զօրութեամբ նուաղեցուցին հայ ազնուականութիւնը, որ մերթ խոնարհելով անոր առջև, և մերթ դիմադրելով և ապաւինելով անմատոյց բարձրութեանց ու ձորոց պաշտպանութեան, պահեց իւր գոյութիւնը ժամանակ մը, մինչև որ սպառեցաւ բոլորովին։ Իշխեցողաց հաճելի դարձողներ ալ եղան երբեմն անոնց մէջ։

Մինչդեռ Սմբատ Օրբելեան՝ Վրաց Դաւիթ արքայէն կը մեծարուի «թագաւորական զգեստուք», իւր եղբայրն ու յաջորդը Տարսայիճ՝ Թաթարաց Աբաղան ղանէն քանի մ'անգամ կ'ընդունի անոր հագած «զարքայական հանդերձն... յոտից մինչև ցգլուխն[2]»։ Այս տեղեկութեան հիմնական մասին օժանդակ կ'ելնէ հայ արուեստը, որ այս շրջանիս կը շարունակէ դեռ իւր գործունէութիւնը, տալով մեզ քանի մը կենդանագրեր այդ օրհասական ազատանիէն, որոնք աւելի շօշափելի գաղափար մը կ'ընծայեն անոր օտարակերպ նոր տարազին։ Եւ որովհետև Օրբելեանց վրայ խօսեցանք, յիշենք նախ նոյն Տարսայիճի թոռին՝ Բուրթելի քանդակը սեան մը վրայ, որ կը գտնուի Նորավանից իւր կերտած Ս. Աստուածածնի մէջ, մատեան մը բռնած ի ձեռին[3]. և ինք կը յիշուի 1295 տարեթիւ արձանագրութեան մէջ՝ իբր «իշխանաց իշխան[4]», և 1337ին՝ իբրև «սպարապետ Հայոց և Վրաց[5]»։

Անուանի է նաև Վասակեան կամ Պռօշեան տոհմը, Խաչենոյ Հաղբակեանց տնէն, որ իբր դար մը կ'իշխէ Սիւնեաց կողմերը։ Անոնց մին Էաչի, աներորդի Բուրթելի[6], Խոտակերաց ս. Նշանի պահարանին մէջ՝ զոր ինք շինել տուած է 1300ին, և այժմ յէջմիածին կը գտնուի, իւր ազգահամարը կ'ընէ այսպէս. «Ես Էաչի որդի Հասանա որդո Պռոշա որդո Վասակա յազգէ Հաղբականց[7]», որոնք նոյնպէս իրենց կենդանագրերն ունին, զորս կ'անցնինք խուզարկել։

1. Marc. 56–57։ — 2. Օրբ. 310։ — 3. Սոկ. 202 կ'ըսէ «զձև եկեղեցւոյն»։ — 4. Անդ՝ 199։ — 5. Անդ՝ 95։ — 6. Օրբ. 316։ — 7. Գեղար. 1911, 38. տես և Սոկ. 156։

*Արատէս վանուց եկեղեցւոյն արեւմտեան դրան վերև քանդակուած է Աստուածածին, և երկուստեք երկու ամուսինք աղօթական[1], որոնք սովորական մարդիկ չեն կարող լինել, ըստ որում այդ պատիւն յատուկ էր եկեղեցւոյ շինողաց կամ իշխողաց։ Կառուցման թուականն անծանօթ, կայ հոն* 1270*ի արձանագիր մը՝ Հայրապետ աբեղային, որ կ'ըսէ՝ թէ Սմբատ իշխանի և անոր Տարսայիճ եղբօր տէրութեան ժամանակ «կրկին շինեցի զվանս և նորոգեցի զեկեղեցիս[2]», որ ուրեմն աւելի հին էր։ Կ'երևի հոն երիցագոյն և տաճարին հետ կապուած անուն մ'ալ, վերոյիշեալ Վասակայ, որ կ'արձանագրէ իբր տէր նոյն կողմանց և պատարագ կը սահմանէ. «Ես Վասակ որդի Խաղբակայ, կողմնապահ ի Գառնւոյ մինչև ի Բարկուշատ» և այլն[3], որուն և կնոջը լինելու են հաւանօրէն այդ կենդանագիրք, նոյն դարու սկիզբներէն։*

*Նաև Սպիտակաւոր Աստուածածնի որմին վրայ քանդակուած կայ անձ մը, իշխանական ձևով բազմած. աղեղ մը գրկաց մէջ, և քովը պատանի մը, որ դարձեալ հիմնադիր մը կը թուի։ Շինութեան թուականն անյայտ, և կանուխ քան զՀասան «որդի Պռաւշոյ», որ իբր նուիրատու միայն արձանագրուած է հոն[4], այդ զոյգ դէմքերը կը թուին՝ այլոց[5] և ինձ՝ նոյն ինքն Պռօշ և իւր կրտսեր որդին Էաչի, — զոր պէտք չէ միացնել ասոր վերոյիշեալ համանուն եղբօրորդւոյն հետ, ինչպէս կ'ընէ Գ. Վ. Ցովսեփեան[6], — որ արձանագրութեանց մէջ անբաժան է հօրէն, անգամ մ'եղբարց հետ և անգամ մ'առանձին՝ իբր անոր Բենիամինը, կոչուելով միշտ «մանկաճ Էաչոյ[7]», ուստի և համաձայն մեր քանդակին։*

*Նոյն տաճարի մէջ կայ ձիաւոր մ'ալ՝ որսալու հետ, որ է նոյն իշխանի միջին որդին[8], արձանագրովս. «Ամիր Հասան որդի Պռաւշայ[9]»։ Եւ հուսկ՝ ասոր որդւոյն վերոյիշեալ պահարանին վրայ կիսամարմին կենդանագիր մը[10], որ անկասկած նուիրատուիդ է, որ նոյն նշանն իրեն «զաւրաւիգն եւ աւգնական» բռնած էր։*

*Ունինք նաև ուրիշ ինչ ինչ ձևեր գրչագրաց ու քանդակաց մէջ, որով կարող ենք ճշդել ժամանակիս ժողովրդական ու զինուորական տարազները, զորս պիտի տեսնենք իրենց կարգին, և որոնք նոյնպէս ազատ չեն մնացեր նոր տիրողաց ազդեցութենէն։*

1. Ջալ. Բ, 154, *երկու Մարեմանքը կարծեց, չնշմարելով միոյն մօրուսը։* — 2. Սսկ. 142։ — 3. Անդ՝ 143։ — 4. Անդ՝ 139։ — 5. Անդ՝ 137. Գեղար. 1911, 39։ — 6. Գեղար. 40. *Համմ.* Օրբ. 338. «*Մեք... Պապաքս և Էաչի, որդիք բարեպաշտ իշխանին Պռոշայ*»։ — 7. Սսկ. 119, 120։ — 8. *Համմ. անդ՝* 120։ — 9. Ջալ. Բ, 148։ — 10. Գեղար. 42։

## Բ. ԻՇԽԱՆՔ

*Մեր թուած իշխանական կենդանագրերը, զորս ժամանակի կարգով յառաջ կը բերեմ, են հետեւեալք։ Հաւանական Վասակին ու կնոջը, Ձև* 68, *Լալայեանի լուսանկարներէն*[1]։ *Հաւանական Պռոշին՝ որդւոյն հետ*[2], *Ձև* 69, *Բուրթելին*[3], *Ձև* 70, *Ամիր Հասա-*



Ձև 68. վասակ հաղբակեան և կինը

*նին*[4], *Ձև* 71, *և կրտսեր Լաչոյ*[5], *Ձև* 72, *որոց բնագիրք կամ շատ փոքր էին և ես մեծցուցի, կամ անորոշ տպագրութեամբ, և որոց լաւագոյներն անկարելի եղաւ ինձ ստանալ՝ ի հեճուկս բոլոր ջան-քերուս, արդի հաղորդակցական դժուարութեանց պատճառաւ։ Այդ պատկերաց ամփոփմամբ՝ կ'ունենանք շրջանիս ազնուական տարազը։*

1. *Վարսից երկարութիւնն արաբական տիրապետութեան Ներ-*

1. Լալ. Վայ. լու. 92, — 2. Նոյն՝ 80, — 3. Նոյն՝ 17, — 4. Գեղար. 1911, 39, — 5. Անդ՝ 42,

քև նուազած, հիմայ վերստին կը նորոգուի և կ՚ընդհանրանայ. որով-հետև առաջին ասպատակող Սելճուկեանք (1018ին) արդէն էին «հերարձակս իբրև զկանայս» կամ «գիսաւորս[1]»։ Յետոյ Թաթարք, որոց ազդեցութիւնն իսկ կ՚երևի մեր Ջևերու վրայ, իրենց երկար մազերէն հիւսակներ կազմած՝ կը կախէին ականջաց ետև, կ՚ըսէ



Ձև 69. Պռօշ և Էաչի երէց (՞)　　Ձև 70. Բուրթէլ Օրբելեան

հեղինակ մը[2], մինչ ժամանակի մոնղոլ մանրանկարուց մէջ կը տես-նենք միակ ու երկար հիւսակ մը[3]։ Թաթարական ոճը շատ զգալի է նաև մեր պատկերայ ոմանց վրայ. ինչպէս Ամիր Հասանայ և Բուրթելի, որոնք ցոյց կու տան երկար վարսեր, երկրորդին վրայ յայտնապէս գիսակաց ձևով. ինչպէս ԺԲ դարուն Սասնոյ իշխանոր-դին Զորտուանէլ ևս «գանգրահեր» կը նկարագրուի[4]։

1. Ուռ. ԼԸ։ — 2. Dub. 289։ — 3. The Min. I, տխ. A. II, 22, 27–30։ — 4. Հյպտ. 393։

2. *Թաթարք «մօրուս ոչ ունելով՝ բայց սակաւուց ոմանց կամ ի կլափն կամ ի շուրթն՝» ըստ Գանձակեցւոյն*[1], *մեր Վասակը, Հասան, Խաչի և Աւագ* (Ջև 77) *ջանացեր են անոնց մօտենալ իրենց ամենակարճ մօրուօք. մինչ Պռօշ ու Բուրթէլ աւելի երկար բռնած են իրենցը։ Եւ ամէն հասակ կը շարունակէ պահել զայն, ինչպէս Սիւնեաց պատմչին վաղամեռիկ եղբօր Փախրադուլայի համար կը կարդանք՝ թէ «տէգ մօրուացն փաղփեալ լինէր՝ թխատիպ տեսակաւ շուրջ բոլորեալ զպատշաճագեղ ծնօտիւքն*[2] *»։*



Ջև 71. Ամիր Հասան

3. *Գլխանոցը՝ մեր Ջեւերու մէջ այլազան ըստ երեւութին, իսկապէս երկու տեսակ է։ Մին՝ Պռօշի դրածն է, բոլորշի կերպասեայ ցած գտակ մը, որ կը մօտենայ մեր* 65 *և* 87 *Ջևերու մէջ գծուածին։ Երկրորդն է Բուրթելին, որ մոնգոլական ծագումն ունի. գմբեթարդ, վեր շրջած անկիւնաւոր եզրով, և կեդրոնը ցցուն զարդ մը, որոյ ճիշդ նմանը կ՚երևի մոնգոլ մանրանկարուց մէջ ևս սոյն շրջանէս*[3], *և մերձաւորը՝ սարակինոս իշխանի մը վրայ*[4]*։ Նոյնպէս է Հասանին ալ, սակայն վերջազարդն աննշմարելի։ Նոյն է և Խաչոյ կրածը, բայց ուղիղ և աւելի ցած եզրով և առանց վերջազարդին, յար և նման մոնգոլական ձևին՝ որ կ՚երևի* 1490*ի մանրանկարի մը մէջ*[5]*։ Սա ծանօթ էր նաև ի Կիլիկիա ու Եւրոպացւոց ևս, ինչպէս պիտի ցուցնեմ յաջորդ գլխոյն մէջ։ Եւ* 1435*ին ի Կոնթեր*[6] *գրուած Յայսմաւուրքի մը մէջ (ի Ս. Ղազար) տակաւին կ՚երևի երկու թռչնամարդոց գլխին*[7]*. որով յայտնի է՝ թէ ի սովորութեան էր դեռ։*

1. Կիր. 147։ — 2. Օրբ. 362։ — 3. The Min. II, *տխ.* 27, 30։ — 4. Schl. Emp. 129։ — 5. The Min. II, *տխ.* 65։ — 6. Անշուշտ Եկեղեաց Կոթերը. Լաստ. 105։ — 7. Էջ 701, 768։

4. Դուռայն բնականապէս կը մնայ ցարդ, որով կրնար Լամբրոնացին յիշել այդ անուամբ իսկ, և նկարագրել «լայն և թաւ[1]», տեսնելով ժամանակակից արևելեան կենդանի իշխանաց՝ քան Բագրատունեաց հեռաւոր քանդակաց վրայ։ Վասակայ հագածը թէև շատ կոպտաքանդակ, բայց ցոյց կու տայ իւր պաստառին ազնուութիւնը։ Գրեթէ պճղնաւոր է նոյն իշխանի և մեր միւս քանդակաց վրայ, մոնգոլական ոճով։ Եւ փորիբաց էր, թէև մեր Ձևերու մէջ աննշմարելի, ինչպէս էր և թաթարականը, որոյ փեղկերը կը նստէին իրարու վրայ՝ և կը հաստատուէին կշտին մօտ[2], արաբականին պէս։

5. Գօտին, սեպհական նաև Թաթարաց[3], կ'երևի յայտնապէս Հասանայ և Բուրթելի վրայ։ Ապաղայ ղանն Օրբելեան Տարսայիճի կը նուիրէ իւր «զկամարն ի համակ ոսկւոյ, բազմագին ակամբք և մարգարտօք լցեալ[4]»։



Ձև 72. Նաչի կրտսեր

6. Ուղէն ալ կայ դեռ դուռային վրայ, և կ'երևին մոնգոլական մանրանկարուց մէջ, փորիբաց, պընճղնաւոր ու կարճաթեզան, մեկուսի հանգուցուած[5]։ Այս արտաքինն է Նաչոյ վրայ տեսածնիս՝ առանց գօտւոյ, և յայտնապէս կարճաթեզան ալ է Պռօշի, որդւոյն ու Բուրթելի վրայ. վերջինս նաև գօտին դրսէն կապած է, ինչպէս պիտի տեսնենք յետոյ ռամկին վրայ։ Երիզաձև զարդ մը կը ժապաւինէ Բուրթելի և Նաչոյ ուղէին եզերքը, և ճոխ ասղնեգործութիւն մը կ'երևի վերջնոյն պաստառին վրայ։ Մետաքսը կը պահէ մեծ բաժինը մեր իշխանական հանդերձից մէջ, ինչպէս կը գրէ Ուռհայեցին՝ թէ շերամը «վաստակովք իւրովք ի գոյնս գոյնս զարդարէ զթագաւորս և զիշխանս[6]»։ Թաթարք ալ կը հագնէին բեհեզ, ծիրանի և դիպակ պարեգօտ. իսկ ձմեռը զոյգ մուշտակ, միոյն ստևը մարմնոյն կողմ դարձած և միւսին դէպ ի դուրս[7]։

7. Կօշիկները շատ որոշ են Պռօշի և որդւոյն վրայ, թաթարական կիսակօշիկներն իսկ, աւելի ցած քան արաբականները՝ զորս տեսանք նախորդ շրջանին։

1. Աստ՝ 181։ — 2. Plan. I։ — 3. Dub. 289։ — 4. Օրբ. 310։ — 5. The Min. II, 27, 30, 43, 44, 54 են։ — 6. Ուռ. ՃՀԱ։ — 7. Rubr. VII. Plan. II։



Դ. — ՊԱՏՐՈՆ ԲՈՆԱՒՈՐ ՆՒ ՏՂԱՅ ՏԻԿԻՆ

Ստացողք Նոր Ջուղայի 1236ի աւետարանին, նուիրուած խծկօնից ուխտին (ի Շիրակ), որ կողմեր բնականապէս կը բնակէին իրենք ալ, Թաթարաց լծին ներքև, որոց հարստահարութեանց մասին կը խօսին (Բզմ. 1924, 326), և իրենք ալ անոնց տարազը կը կրեն։ Այս պատկերն ընդունեցայ բնագրէն, շնորհիւ Պր. Սող. Մելիք–Յակոբեանի, յետ նկարագրելու թաթարական շրջանը։

Այրը հագած է կարմիր ճերքճակ, թեզանիքը միայն տեսանելի։ Ասոր վրայ անթեզան պատմուճան սպիտակ ու ծաղկազրուագ։ Գօտին կապուած թոյլ կերպով։ Վերնազգեստը սպիտակ, կարմրազրուագ, արձակ թեզանեօք՝ ինչպէս մեր 47 Ձևին, և օձիքն երկար ու ծալուած. իսկ ներքուստ մուշտակապատ։ Գլխարկը թաթարական, վերև կարմիր և շուրթը թուխ մորթ։ Եւ մատանի աջ ճկութին վրայ։

Կինն ունի կարմիր պարեգօտ, թեզանիքը միայն ակներև։ Պատմուճան անթեզան և անգօտի, մէջքէն վեր կանաչ, վարը սպիտակ, ոսկի ծաղկօք ու կարմիր գծերով։ Քող գլխին վարդագոյն, որ կ'իջնէ կը ծածկէ թիկանց կէսը, և կարմիր ապարօշ մը կը հաստատէ զայն ճակատին վրայ, կախելով երկար ծայրը։ Երկու մատանի կը զարդարեն ձախ բութն ու ճկոյթը։

## Գ. ՏԻԿՆԱՑՔ

Ունինք երկու պատկերներ՝ ատոնց տարազին ի նպաստ։ Մին՝ Հաւանական Վասակայ կնոջը՝ մեր 68 Ձևին մէջ, որոյ նման զգեցուցեր է քանդակագործը նաև զԱստուածածին։ Իսկ միւսն է Մամախաթունին, Գրիգորէս ամուսնոյն հետ, Ձև 73, զոր առած եմ Ս. Ղազարու ԻՁ Ոսկեփորկէն, — հրատարակուած և Հ. Ալիշանէ[1], — գրուած իրենց նպաստիւք 1317ին, Վայոց ձորոյ Գլաձոր անապատին մէջ, ծանօթ «Ամիր Հասանայ» իշխանութեան օրով՝ ըստ յիշատակարանին։ Այս կինը թէպէտ ցեղով ազնուական մը չէ, բայց իւր ընտանեկան բարեկեցիկ վիճակը կը ներէ իրեն հագուիլ տիկնոջ մը պէս. և իւր հանդերձը կը տարբերի ռամկականէն՝ զոր պիտի տեսնենք։ Ասոնց հետ խառնելով ինչ ինչ տեղեկութիւններ, կ'ունենանք հետևեալ արդիւնքը։

1. Ներքնակի մը թեզանիքը ցոյց կու տայ Մամախաթուն, որ իւր պաստառին գունով ու գծագրութեամբ կը զատուի արտաքնէն։ Ատոնին հանդերձն է այն, զոր կը լրացնէ նոյն տիկնոջ վրայ

2. Պատմուճանը, հանդիսական զգեստը, լայն, փորանկեալ, նուրբ կերպասէ՝ աղօտ դեղնագոյն, և պերճօրէն ծաղկազարդուած. թեզանիքը, ուսերուն մօտ վերջացած, անտես կը մնան քողին ներքև։ Իսկ Վասակայ կնոջ վրայ թանձր ու ասղնագործ է, և փորիբաց ու կապուած՝ նման Թաթարուհեաց[2]. մէջքին մօտ աւելի նեղ, և դէպ ի վար լայնացած։ Եւ որովհետև արուեստը կը զանազանէ պաստառները, Աստուածամօրն ողորկ է, բազմախորշ ու փորիբաց։

Հիմայ գօտին բոլորովին ջնջուած է կանանց վրայ, և չի տեսնուիր մեր Ձևերու մէջ։ Նոյնը կը հաստատէ և Գր. Տաթևացին, ըսելով՝ թէ գօտին արութեան նշան է, և այս պատճառաւ «արանց է գօտին և ոչ կանանց[3]»։

3. Հաչաղ (հաւանօրէն աղաւաղը պրս. յաչակին[4]) կը կոչէ Վարդան քողը. «հաչաղն՝ ծածկոյթ դիմաց[5]», որ կը պատէ մեր 68 Ձևի տիկնանց գլուխն և ուսերը, և Մամախաթունի թիկունքն ալ։ Վերջինոյս կապոյտ է գունով և ունի կարմիր երիզներ։

4. Մոձակը (պհլ. մոձակ[6], պրս. մոզա=զանկապան[7]) կանացի կօշկին անունն է հիմայ, յիշատակուած Յհ. Եզնկացիէն, «կօշիկք,

1. Սսկ. 134։ — 2. Plan. I. Rubr. VIII։ — 3. Քրզ. Ցմր. 666։ — 4. Տես ԺԱ։ — 5. Վրդ. Երգ. 162։ — 6. Թիր. 275։ — 7. Hüb. 196։

մուճակ[1]», և աւելի յայտնապէս Հարանց վարուց մէջ. «էարկ յոտս զմուճակս կնոջն», զոր հոն միջնադարեան թարգմանիչը հին օղ բառով ալ կը կոչէ[2]։ Մեր պատկերաց մէջ դժբախտաբար աննշմարելի է իւր ձևը։

5. Վզանոց մը կը յաջորդէ այժմ նախկին ճոխ քայուին, յիշուած Նարեկացւոյն լուծողէն՝ այսպէս. «զքառամանեակն ասէ, որ լինի ի վզանոցն չորեքկուսի աղխւանման, արծաթ կամ ոսկի[3]»։ Կ'իմացուի՝ թէ վզէն շղթայով կախուած էր լանջաց վրայ, ինչպէս ճշդագոյնս կը բացատրէ Եսայի Նչեցին, գրելով. «Մանեակ պարանոցի՝ զարդ է կանանց, զոր լանջագեղ կոչեն. որ ի պարանոցի արկեալ, հասանէ մինչև ի լանջսն[4]»։ — Մամախաթուն ցոյց կու տայ մանեակ մը վզին շուրջ, ժապաւինաձև, կեդրոնը կապոյտ երիզով մը, և երկու եզերքը նուրբ կարմիր գծեր։ Իսկապէս կերպասեայ էր, թէ աւելի թանկագին՝ — նման մեր 62 Ձևի մանեկաց՝ — անկատար կերպով գծուած, չեմ կարող ըսել։

6. Առպնչանի հաւաքական կոչումը կը կրեն արդի բարբառին մէջ հին ապարանջանքը, որ տակաւին ի գործածութեան են ազնուականաց վրայ։ Վայոց ձորոյ Ս. Սիոն անապատի մէջ կայ տոհմիկ Մամաք տիկնոջ արձանագիրը 1318ին, որ կ'ըսէ. «զիմ ոսկի առպնչանի գոնցէն (թերևս գղ. consigne, իբր գրաւ, փոխարէն) տուաք սուրբ Սիոնի տակի հողն, և ի սուրբ ուխտս տուաք[5]». այդքան ճոխ ու մեծագին էին զարդերդ, կալուած մը գնելու չափ։

7. Մատանին ալ կայ դեռ, ու կը փոխանակուի իբր «նշան՝» հարսնախօսութեան առթիւ, որով և կը մնայ միշտ խօսեցելոց վրայ. և «նիւթ մատանւոյն ոսկի կամ արծաթ» էր[6]։ Եթէ կը գործածուի իբր նշան, ուրեմն սովորական զարդերէն էր։ Եւ ոչ այս միայն, այլ

8. Գինդն ալ կը տրուի աղոր հետ, ըստ Գէորգ Երզնկացւոյն, «գինդն և մատանին[7]», հաստատելով մեզ նաև օղերու գործածութիւնը սովորական կենաց մէջ։

## Դ. ՍԱՄԻԿԸ

Ասոր ներկայացուցիչ մ'է Գրիգորէս, որոյ կենդանագիրը տեսանելի է մեր 73 Ձևին մէջ, և որոյ հանդերձն ինչ ինչ մասերով

1. Յ. Եզ. Քեր. ի Հյկզ. — 2. Վրք. Հրց. Ա, 698. — 3. Լծ. Նար 610. — 4. Նչ. Եզեկ. ԺԶ, 10. — 5. Սոփ. 114. — 6. Քրզ. ամր. 199–200. — 7. Գ. Եզ. Պօկ.

*կը հեռանայ իշխանականէն։ Կայ նաև Դ Լևոնի դատաստանին նկարը, զոր պիտի տեսնենք յաջորդ գլխոյն մէջ. գործ Պիծակ Սարգսի՝* 1331*էն, ուր Հայոց Թագաւորին առջև ի դատ բերեր է արևելեան հայ մ'իբրև դատախազ, և կին մ'իբր ամբաստանեալ։ Այս կրկին պատկերները, որոց տարազը Թաթարականն է, առաջնորդ պիտի լինին մեզ՝ ժողովրդեան հանդերձին քննութեան համար։ Նոյնպէս նաև մահարձան մը Վայոց Ձորոյ Հերեր գիւղին մէջ, Ձև* 74*, ուր կը ներկայանան երկու անդէորդներ։ Ամփոփելով աղոնց հանգամանքները, կ'ունենանք ռամկական տարազի հետագայ նկարագիրը։*



Ձև 73. Գրիգորէս և Մամախաթուն

1. *Հերք և մօրուք չեն զանազանիր այն ձևէն՝ զոր տեսանք իշխանաց վրայ։ Գրիգորէս ու դատախազը կը ցուցնեն իրենց երկար վարսերը՝ հիւսակ մը կազմած ծոծրակին վրայ, և առաջնոյն հիւսակին ծայրէն կախուած է մազկապը։ Նոյնպէս երկայնահեր են և տղայք, որոց մասին կը գրէ Վարդան՝ թէ ցցուններ ալ կը շինէին։ «Ցցունս ի վարսից՝» հեթանոսներէն եկած սովորութիւն է, կ'ըսէ, «զոր և արդ առնեն տղայոց ի լուանալն*[1]*». ուրեմն յարատև չէր այդ ձևն անոնց գլխին։*

1. Վրդ. Դկա. ՁԵ.

*Մօրուքը կը պահուի միշտ նախանձայուզութեամբ. վասն զի «մօրուսն փառք է մարդոյ», կ'ըսէ Յհ. Եզնկացին[1] ժամանակի գաղափարով։ Եւ պատանիք ալ փարած էին անոր, որով* 1449*ի յիշատակարան մը կ'ողբայ Մերտնոյ մէջ կոտորուած «զմանկունս մուրուացայի[2]»։ Մեր Ջևերու անձանց վրայ կարճ բռնուած է այն։ Եւ պճնասիրութիւնը, որ կ'ուզէ զայն սև տեսնել ու ցուցնել՝ ի նշան երիտասարդութեան, գիտէ արդէն այս ժամանակ անոր ու վարսից սպիտակացումը ծածկելու հնարքը. Գոշի առակաց մէջ զօրական մը «հնարի զհերս ներկել և զմօրուս[3]»։*



Ձև 74. Մահարձան ի Հերհեր

2. *Կապայն կը շարունակէ նշանակել ռամկին պարեգօտը, յիշատակուած Յհ. Եզնկացիէն[4], ինչպէս կը կարդանք և Քերովբէ ողբասացի քով ԺԵ դարուն. «Զկապաս (կամ զհալաւս) ի յանձնէս հանին[5]»։ Անոր երկար թեզանիքն ակներև են Գրիգորիսի և դատախազին վրայ։ Առաջինոյն՝ կանաչ է գունով, և երկրորդին՝ աղօտ դեղին։*

3. *Ռիդէն կայ երկուքին վրայ ևս. Գրիգորիսին ցոյց կու տայ պճղնաւորութեան հետ նաև իւր լայնօրէն ժապաւինեալ ստորոտը. և թեզանիքը շատ աւելի կարճ ու ժապաւինեալ. լանջքը, նոյնպէս ժապաւէնով, միշտ իրարու վրայ են, և դատախազին՝ ճեղքուած*

1. Յ. Եզ. Մոթ. Ժ, 8։ — 2. Հյպտ. 577։ — 3. Գոշ՝ Առկ. ՃՀՁ։ — 4. Յ. Եզ. Քեր. Ա։ — 5. Տղր. ԻԹ, 352։

երկուստեք։ — Հայ շինականին դաշտային կեանքը չէր հանդուրժեր քաղաքացւոյն հանդերձից երկարութեան. անոր համար Հերերի անդէորդաց հագածն աւելի կարճ է և դիւրատար։

4. Գօտին՝ ռամիկը կը կապէ ռիդէին վրայ, ինչպէս է ցարդ Թաթարաց քով[1], հակառակ ազնուականաց ոճին։ Գրիգորիսին կար-



Ձև 75. հովիւք պիծակ Սարգսի

մրագոյն է, աւելի լայն, ծալ ի ծալ, հանգուցուած ձախակողմը և ծայրը կախ։ Դատախազին նեղ է, պիրկ ու դրուագաւոր։ Ըստ Տաթևացւոյն՝[2] անպակաս է այս արանց վրայ. «կապեն արք ընդ մէջ և ընթանան ի ճանապարհս, ի վաստակս գործոց, կամ ի պա-

1. Hot. I. տխ. 110, 112, — 2. Քրզ. ձմր. 666։

*տերազմ»․ և թէ ոմանք, կ'ըսէ, կրծոց և ոմանք ալ մէջքին վրայ կը կապեն ըստ կամս։*

5․ *Վեշմակ (պրս․ վեշմէք=կօշիկ կաշեայ*[1]*) բառը կը գործածէ 1307ին՝ Փիլոնի բառից լուծողը*[2]*, ի սխալ բացատրութիւն «վարապանակին*[3]*», որոյ իմաստն անծանօթ էր իրեն։ Մեք իւր սխալէն կը սովրինք՝ թէ այս էր ժամանակիս կօշկի անունը, և ձևը՝ հաւանօրէն պարսկային կրնկաւորը, որ ցարդ կը մնայ ի Հայաստան՝ պաշմաք անուամբ․ մեր հերերցոց վրայ զգալի է իւր կրունկը միայն։*

6․ *Գդակ մ'ունի Գրիգորէս, տաշտաձև, վերին մասը պայծառ կարմրագոյն պաստառէ, և շուրթը եզերուած թուխ մորթով, իսկ կեդրոնը կարմիր գնդակ մը․ և զոր իբր աղօթական մեկուսի դրած է։ Կատարելապէս թաթարական է գդակս, մի և նոյն նկարագրով ու գոյներով, ինչպէս ցարդ կ'երևի Թաթարաց վրայ*[4]*։ Այս ձևը քաղաքացւոց յատուկ է․ որով մեր հերերցի տուարածք անգդակ քանդակուած են։*

7․ *Օղերու յիշատակութեան կը հանդիպինք նաև ռամկին վրայ՝ դէպ ի վերջերն այս շրջանիս։ Վերոյիշեալ Քերովբէ ողբասացը «կորիճ մեռելոյն» այսպէս ըսել կու տայ․ «Զօղերս (կամ զգինդս) յականջէս առին*[5]*»։ Եւ ուրիշ մը՝ Պաւղոս՝ դարձեալ «կորիճ մեռելոց» կողմանէ կը կրկնէ նոյն տրտունջը․ «Եւ յականջէս առին զօղերս յոյժ սիրական*[6]*»։ Ասիոյ և Հնդկաստանի քանի մը գաւառաց մէջ այս զարդը սեպհական էր նաև արական սեռին, ինչպէս ցարդ կ'երևի Արաբաց ու Քրդաց վրայ․ և մերն արդիւնք է արտաքին ազդեցութեան մը, քան սասանեան շրջանի սովորութեան շարունակութեան, որ մինչև հոս անյիշատակ կը մնայ։ Թանկագին էին այդ օղերը, որով թաղման պահուն կը հանէին։*

8․ *Մատանին ալ կը յիշուի նոյն ողբասացներէն իբր զարդ։ Առին, կ'ըսէ Քերովբէ, «զմատանիս զոր խիստ սիրէի»․ և միւսը՝ թէ «Զմատանիս իմ հանեցին փայփայական»։ Երբեմն իշխանութեան այս հին նշանը*[7] *հիմայ կորուսած է իւր նշանակութիւնը, ինչպէս դիտեցինք և յառաջ*[8]*։ Թէ այս և թէ օղերն աւելի երիտասարդաց ընտանի կը թուին՝ ըստ յիշեալ վկայութեանց։*

9․ *Վերջապէս անձեռոցիկը, որուն պատահեցանք արաբական շրջանին*[9]*, հիմայ յայտնապէս ալ կը տեսնուի դատախազին ձախ ձեռքը՝ կարմիր գունով։*

1. John․ 1366, — 2. Բոք․ փիլ․ 133, — 3. Անդ՝ 153, — 4. Hot. 1, տխ․ 110–112, — 5. Իթ Տղր․ 352, — 6. Մշտ․ տպ․ 1785, 320, — 7. Անդ՝ 124, — 8. Անդ՝ 203, — 9. Անդ՝ 182,

*Իսկ աղքատին հանդերձն ինչպէս միշտ, հիմայ ևս կը տարբերի ընդհանուր ժողովրդական ձևէն։ Կիրակոս կը պատմէ՝ թէ Աստուածատուր վրդ. արճիշեցին՝ ԺԲ դարուն, բարեկեցիկ ընտանեաց զաւակ, իւր հայրենի ժառանգութեան եկամուտը տարուէ տարի ստանալով, «գնէր նոքօք մորթս ոչխարաց, և կարէր ձեռօք իւրովք հանդերձս, և տայր աղքատաց[1]»։ Այս զգեստը, բնականապէս մեկնակ ու կարճ, կրնայ համեմատուիլ Պիծակ Սարգսի Աւետարանի[2] մէկ հովուին հետ, զոր կու տամ հոս,* Զև 75։

*Զոյգ են ադոնք. մին, մօրուանի և երկայնահեր, արևելցի է. և մորթ հագած, որ թաթարական ոճով փոփիբաց է ու գօտեով զսպուած։ Իսկ գլխին դրած է սրածայր գլխանոց մը, որ սովորական է այս ժամանակ նաև ի Կիլիկիա, և որով Մկրտիչ Նաղաշ ալ[3] գծագրած է իւր հովիւները։ Եւ հուսկ՝ փոքր մախաղ մ'ունի ուս ընդ անութ կախած։ Իսկ պատանի հովիւը կիլիկեցի է, որոյ մասին յետոյ պիտի խօսիմ։*

Ի. ՌԱՄԿՈՒՀԻՆ

*Կը տարբերի իւր հանդերձով ազնուական սեռակցէն. և զանազանութիւնը կը կայանայ զգեստի ձևին ու գունին մէջ։ Ի քննութիւն ասոր ունինք երկու նկարներ. մին առակի այրին է, գծուած ժամանակի արևելեան տարազով՝ Պիծակ Սարգսի յիշեալ Աւետարանին մէջ[4],* Զև 76. *և միւսն է Լևոնի դատաստանին կինը՝ զոր յիշեցինք, նոյն նկարչէն ու թուականէն։ Ասոնց հանդերձը ճշդիւ կը համաձայնի գրաւոր աղբերաց հետ, և կը հեռանայ կիլիկեանէն։ Ահաւասիկ ադոր նկարագիրը։*

1. *Վարսից ձևն որոշ է յիշեալ կանանց վրայ։ Դատաստանին, որ պճնասէր մ'է, կարճ բռնած է զանոնք, որ կը հասնին ծոծրակին արմատն՝ առանց հիւսուելու, և մաս մ'ալ ճակատին վրայ կը կարկառի։ Այս ոճն անպատեհ կը թուէր եկեղեցականաց. և Բարսղի կեղծ կանոնները կը դատապարտեն զայն երիցակնոջ վրայ. «Կին քահանային թէ փոքրեսցէ զհերս իւր, . . . եղիցի նզովեալ» և այլն[5]։ Եւ Սիմէոն եպս. Աղձնեաց կը պարսաւէ այն կինը՝ որ «զհերսն հատանէ[6]»։ Աւելի համեստ է այրին, որ իւր մազերը սանդըրած ու*

1. Կիր. 91. — 2. 1331ին, ի Ս. Ղազար. — 3. Աստ՝ 234. — 4. Էջ 273, հրտ. և ի Սիս. 235. — 5. Կանոն ՄԸ. — 6. Աղձ. 112.

բռնած է գլխին ետև, գործածելով անշուշտ փողոշուկը՝ որ դեռ մնացած է. վասն զի ներկայ ժամանակաւ կը յիշէ զայն Վարդան[1]։

2. Եթէ վարսերն անտես մնացած են քողազարդ տիկնանց վրայ, բայց կ'երևին Պիծակի կանանց գլխին, որոնք քող չեն գործածեր՝ ժամանակիս ռամկական սովորութեամբ. ինչպէս այդ նկարուց հետ կը հաստատէ Աղձնեաց յիշեալ եպիսկոպոսն ալ, բողոքելով անպարկեշտ կանանց դէմ՝ թէ «անամօթաբար շրջին բաց երեսօք և գլխով՝ առ ի պատրել զազգս անմիտ երիտասարդաց[2]»։ Աւետարանի այրին կը վկայէ՝ թէ պարկեշտ կանայք ալ անքող էին. բայց կային նաև գլխափակներ, ինչպէս կը կարդանք Կարնոյ Գրիգորիս եպիսկոպոսի վկայաբանութեան մէջ՝ 1321ին, թէ «կին մի բարեպաշտ» կը բանայ «զվարշամակ գլխոյն» և անոր մէջ կը հաւաքէ վկային արիւնը[3]։ Այս «սգեստ գլխոյն՝» գայթակղեցնելու չափ զարդարուն էր պճնասիրաց վրայ, ըստ հին կեղծ ճառի մը յանուն Լուսաւորչին[4]։

3. Վայա մը (պրս. = վեհ, վերին[5]) կը յիշուի Յհ. Երզնկացւոյն մօր վրայ, «հագեր վայա, վըրան ճուպայ[6]», որ կը համեմատի ներքնակին հետ իւր դիրքով, և զգալի է մեր կանանց վրայ։ Ամբաստանելոյն հագածը ցոյց կու տայ կարմիր երկար ու նեղ թեզանիքն ու քղանցին ծայրը՝ նոյն գունով, հաստատելով՝ թէ ամբողջը միագոյն էր։ Ասոր վրայ կու գար

4. Կապայն[7], որոյ դերն աւելի մեծ է։ Պիրկ է ձևով երկու կանանցն ալ։ Ամբաստանելոյն օձիքը կարկառուն յաւելուած մ'ունի պարանոցին շուրջ, որ կը մօտենայ այժմու ոճին. իսկ այրւոյն՝ մերկապարանոց է ու քառակուսի կտրուած։ Անոնց թեզանիքը մինչև արմկները կը հասնին։ Գոյներու զանազանութիւն մը կայ անոնց վրայ. ամբաստանելոյն օձիքն ու լանջքը մինչև մէջքը, և յետակողմը մէջքէն վար՝ կարմիր է. լանջաց վերին մասն ու մէջքէն վար և թիկունքը կանաչ է. և լանջքը զարդարուած է չորս կարգ ոսկեգոյն գնդակներով կամ կոճակներով։ Իսկ այրին ունի կարմիր կուրծք, աջ կողմ, թեզանիք և յետոյք. դեղներանգ կանաչ թիկունք, ձախ կողմ, թեզանիք և առաջոյք. վարդագոյն ժապաւինեալ օձիք, և կապոյտ լայնշի երիզներով վերջացած թեզանիք։

Նկարչին քմահաճոյքը չէ որ կը ստեղծէ այս բազմագունութիւնը, այլ իրականէն առնուած է, արդէն ծանօթ Նարեկացւոյն օրերէն[8]։

1. Աստ՝ 127։ — 2. Աղձ. 111։ — 3. Հյպտ. 532։ — 4. Ճառընտ. ԼԱ, 118։ — 5. John. 1352։ — 6. Փփզ. 88։ — 7. Հմմտ. ի գլ. ԺԲ, ռամկուհւոյ հագածին։ — 8. Աստ՝ 198։

Շնորհալին ըսել կու տայ Եղեսիոյ. «կարմիր կանաչ գոյն զգեցայց[1]»։ Նոյնը կը հաստատեն արևելեան տաղասացք ալ. Կոստանդին Երզնկացի ԺԴ դարուն՝ իր գեղանւոյն համար կ'ըսէ. «երբ գունըզգոյն ելնէ փայլէ, – Ջերկիր ի յիւր լուսոյն հալէ[2]»։ Գր. Աղթամարեցւոյն գեղանին հագած է «կարմիր և կանաչ գունով, երփնազարդ որպէս ծիածան . . . կարմիր վարդ կանաչ Թփով[3]»։ Առաքել Սիւնեցին ԺԵ դարուն կ'ըսէ. «Օտար գեղիդ կարմիր ու կանանչն ի սև կու փոխի քեզ» միւս աշխարհին մէջ[4]։



Ձև 76. Ղուկասու տակի այրին

Գոտեւորութիւնն ընդհանուր է բոլոր կանանց, որով գօտին չի տեսնուիր նաև պատկերաց վրայ։ Ներքին պախճաւանդի արդիւնք է բոլորակութիւնը կամ «բոլոր լանջացն՝» զոր կը դատապարտէ վերոյիշեալ կեղծ Լուսաւորիչը, և որ կ'երևի մեր 76 Ձևի կնոջ վրայ ևս։ Կանացի պչրանաց այս ոճն ամէն ժամանակ ունեցեր է իրեն հետևողներ[5]։

5. Ճուպպայ (արբ. = լայնաթեզան վերարկու) մը յիշատակուած տեսանք վերև՝ Յհ. Երզնկացւոյն մօր վրայ՝ իբրև վերնազգեստ։ Կ'երևի թէ չափահասու ծանրաբարոյ կանայք փոխան գոյնզգոյն պարեգօտին զայս կը հագնէին, անուամբ ու ձևով Արաբներէն առնուած։ Այսր օրինակը, պճղնաւոր, կը տեսնենք 1237ի արաբական մանրանկարուց մէջ[6], արանց ու կանանց վրայ, որմէ զատ կը կրեն երկար ու նեղ մեկնոց մ'ալ՝ փիլոնի պէս առած իրենց վրայ։

6. Սնգուրի ու ծարրի հինաւուրց գործածութիւնը կայ ու կը

1. Շնրհ. Եղես. — 2. Փփգ. 77. — 3. Ձ. Տղր. 609. — 4. Սիւն. Դ. — 5. Հմմտ. աստ՝ 129. — 6. The Min. II, տխ. 11. Schl. Epop. I, 229, 233, 237.

*միայ դեռ պճնասէր Հայուհեաց վրայ։ Սողոմոն, կը գրէ Վարդան, վայ կու տայ այն կանանց՝ «որք շինեն զաչս և զերեսս դեղօք՝ ի գայթակղութիւն երիտասարդաց[1]»․ և նոյնը կը յիշէ և այլուր[2]։ Այս ախտէն զերծ չէին մնացած երիցուհիք անգամ, որոց կը հարկադրէր գրել Առաքել Սիւնեցին. «Մի՛ ծարուրով զաչքըդ դեղել, — Մի՛ զտեսողաց աչքըն գերել[3]»։ Իսկ Բարսղի կեղծ կանոնք կը նզովեն այն երիցակինը՝ որ «զգեղն այլակերպէ[4]»։*

*Անուշահոտութիւնք ևս հաճելի են անոնց։ Վանական վրդ. կ'աւանդէ՝ թէ «զարդասէր կանայք սովոր են ծրարս խնկոց զանազանից զպարանոցէն կախել (հանդերձին տակէն). զայն տաշխ անուանեն[5]», որ է հին ստաշխը։ Անոնց ուրիշ տեսակն ալ կը յիշէ Առաքել Սիւնեցին, ըսելով երիցուհեաց. «Մուշկ և ամբարդ քեզ ինչ օգուտ — Երբ դու հոտած ես յաշխարհի[6]» բարոյապէս։ Աղձնեաց ծանօթ եպիսկոպոսն ուրիշ պարագայ մ'ալ ունի. մարմինը, կ'ըսէ, «չարոք կառավարէ զաղճկունս, և քաղէ յղըճկաց նոցա զհոտ աստուածածանօթութեան[7]»․ ակնարկելով եղնգաց ու մատներու օծման անուշ իւղերով, որոնք կը վանեն, կ'ըսէ, բարեպաշտութեան բոյրը։*

## Զ․ ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆՔ

*Հայ զինուորութիւնը, համառօտուած և ամփոփուած գլխաւորապէս Սիւնեաց կողմերը, տակաւին կը պահէ իւր զէնքը, զոր Թաթարականին նմանեցուցած էր, ըսաւ Հեթում[8]։ Զինուորական ձևիս իբր օրինակ կրնանք առնուլ որսական տեսարան մը, որ կայ Վայոց ձորոյ Գնդեվանից մահարձանի մը վրայ, սեպհական՝ ըստ արձանագրին՝ «պարոն Աւաքին», որ չի կրնար լինել Իւանէ սպասալարի համանուն որդին, մեռած 1250ին[9], և թաղուած «ի Գդնձահանքն[10]»։ Սակայն անծանօթ «պարոն» կամ ազնուական մ'է, և ինքն է որսորդը։ Արձանագիրը, որքան կարողացայ հանել լուսանըկարէն, կ'ըսէ. «Այս է հանգիստ պարոն Աւաքին որ կարճաւրա... թիք ելաւ էառ անդառամ պսակն նայ էր որդի պ...»։ Ստչիգովսկի կը նշանակէ նաև 886 (ՊՁ, 1357) կամ 850 (ՊԾ, 1401) թուականը[11]։ «Կարճօրեայ» վախճաներ է. փաստ մ'աւելի՝ թէ մեր քանդակին անմօրուս որսորդն ինքն իսկ է, զոր յառաջ կը բերեմ Լալայեանէ[12], Զև 77։*

1. Վրդ. Քրզ. 315։ — 2. Վրդ. Շն։ — 3. Աշուղ. 199։ — 4. Կանոն ՆԸ։ — 5. Վնկ. Հրց։ — 6. Աշուղ. 201։ — 7. Աղձ։ — 8. Աստ՝ 212։ — 9. Վրդ. Գամ. 148, Օրբ. 302։ — 10. Կիր. 180. Վրդ. Գամ. 148։ — 11. Strz. I, 439-40։ — 12. Լալ. Վայ. Լռ. 57։

1. Անգրանձ զինուորականի տարազին մէջ է մեր Աւագը. և փոխանակ պճղնաւորին՝ կը կրէ երկայնաթեզան կարձ պարեգօտ, որ կ'երևի նաև իր զինակրին վրայ։ Զինուորական կ'ըսեմ զայս, որովհետև Ամիր Հասան ալ որսալու հետ է, բայց քաղաքային երկայնն է զգեցած։ Աւագ մէջքէն վեր վերտ կրահի երևոյթն ունի, եթէ սակայն պաստառաց զանազանութեան արդիւնք չէ։ — Գլխարաց կ'երևին երկուքն ալ։ Գօտին անպակաս է իրենց վրայ. և ոտներուն կը կրեն ոտնապաններ ու կօշիկ։ — Իսկ ժամանակիս նախամեծար համարուած զէնքն է աղեղը, նման Թաթարաց[1]. և զայս կը տեսնենք



Զև 77. Մահարձան պարոն Աւագի

Պռօշի ձեռքն՝ իբր խորհրդանշան իր զօրութեան, ու Հասանայ և Աւագի կողմէ գործածութեան մէջ։

2. Սպառազինութն ալ կայ տակաւին, որոյ օրինակ կրնանք առնուլ զԼիպարիտ Օրբելեան, ապրած ԺԱ դարուն, զոր իրենց պատմիչը կը նկարագրէ իր ժամանակի գաղափարով ու ձևով։ Զիաւոր է, և կը հագնի «ոսկեհուռ գրահ և սաղաւարտ». կռնակին կը ձգէ «զոսկենկար վահանն». ձախովը կը բռնէ նիզակը, և աջով «զլայն պողովատիկ շմշիրն (պրս. շեմշիր=սուր[2]) երկբերանի». իսկ ազդրէն վար կը կախէ «զվաղրն ահագին», որ կը նմանէր, կ'ըսէ,

1. Աստ՝ 213. — 2. John. 763.

*դարբնաց ուռին կամ քարահատաց կոցաւոր սակրին[1]. ուստի հեռի իւր ոսկեղարեան նշանակութենէն[2]։ Ասոր հոմանիշ կը թուի Ուռհայեցւոյն ձիկօ բառն ալ, որով Ապլղարիպ կը զարնէ Հեր քաղաքի երկաթեայ դրան, և «պատառեալ զերկաթն և յայն դեհն անցուցանէր[3]»։ Կը յիշուի նաև «երկաթի լախտ» մը, որով Թուրք մը կը զարնէ Երուսաղեմի արքայի թիկունքին[4]. բայց Հայոց կողմանէ յայտնի գործածութեան չեմ հանդիպած. և ինք՝ բառն ալ պարսկերէն է[5], որով իւր գոյութիւնը մեր քով աւելի ևս կասկածելի։*

1. Օրբ. 275։ — 2. Վաս՝ 162։ — 3. Ուռ. Ի։ — 4. Նոյն՝ ՄԺԳ։ — 5. Hüb. 157։

# ԳԼՈՒԽ Ժ

## ԿԻԼԻԿԵԱՆ ՇՐՋԱՆ (Թ)



### Ա. ՆԿԱՐԱԳԻՐԸ

ՏԱՍՆԵՐՈՐԴ *դարէն յիշատակուած*[1]*, և աւելի կանուխ ալ սկսելով, Կիլիկիա ընդունեցաւ Հայերէն գաղթականութիւն մը, որ արաբական բռնութենէն զզուած, եկաւ հանգիստ փնտռելու անոր լեռանց պաշտպանութեան ներքև, ու նոր հայրենիք մը կերտելու. և ուր ԺԱ դարու կիսուն կ՚ունենար հայկական իշխանութիւն մ՚ալ Ռուբինեան տոհմին ձեռքը*[2]*։ Այդ երկիրը մերձաւոր կամ հաղորդակից էր Անտիոքայ, Կիպրոսի, Երուսաղեմի և ուրիշ գաւառաց, ուր կը տիրէին արևմտեան ազնուականք, միասին տանելով իրենց հայրենի բարքերն ու տարազներն ալ։ Նոյն ինքն հայացեալն Կիլիկիա ընդարձակ ասպարէզ էր, մանաւանդ Թագաւորութեան շրջանին, եւրոպացի քաղաքագիտաց, վաճառականաց, խաչակրաց, քարոզչաց ու բնակչաց ևս. և ատոնց մէջ կարևոր թիւ մը կը կազմէին Յոյները, որոնք — կը գրէ Լամբրոնացին առ Լևոն — «ունին մուտ և ել ի ձեր արքունական ապարանսն... ունին ի ձէնջ իշխանութիւն և պատիւ և ռոճիկ և սէր*[3]*»։ Տարսոնի մեծ եպիսկոպոսի վիճակին մէջ ևս կային անոցմէ. և «փարիմք սիրով, կը գրէ իւր լայն մտքով, և զՀայաստանեայս և զԼատինացւոցն, զՀելլենացւոցն, և զամենեսեան մի գիտեմք ի Քրիստոս*[4]*»։*

1. *Դիւրին է երևակայել այն մեծ հրապոյրը, զոր եւրոպական բարուց հետ անոնց տարազն ալ պիտի գործէր կիլիկեցի Հայութեան վրայ, արքունեաց ու ժողովրդեան միանգամայն։ Ռուբինեանք իրենց արքայական պատիւը ստացան Բիւզանդիոնէն և առաւելապէս արևմուտքէն։ Մեծն Լևոն երբ յղացաւ թագաւորութեան գաղափարը,*

1. Սիս. 47։ — 2. Անդ՝ 44։ — 3. Լմբ. Թղթ. 238։ — 4. Անդ՝ 235։

*տեսաւ որ Կոստանդնուպոլիս դէպ անկում կը դիմէր, իսկ արեւմտեայք երթալով կը զօրանային, և իրեն զինուց ոյժը մինչև արևելք ալ կը տարածէին՝ խաչակրութեամբ ու հաստատելով հոն իշխանութիւններ։ Լաւագոյն համարեցաւ անոնց յենուլ. մանաւանդ որ Կղեմէս Գ պապին 1189ի հրաւէրն ալ կար՝ առ նա և առ կաթողիկոսն Գրիգոր Տղայ՝ ձեռնտու լինելու խաչակրաց[1], ինչ որ յօժարութեամբ կատարեց։ Ցարմար առիթն էր, և Լևոն թագ խնդրեց խաչակրաց պետէն, որ էր Փրեդերիկ Շիկամօրուս Գերմանիոյ, և նա խոստացաւ կատարել[2], զոր սակայն վերահաս մահը (1190ին) խափանեց։ Աւելի վերջ խնդիրը կրկնեց Լևոն անոր յաջորդին՝ Զ Հենրիկի ևս[3], քան զոր փութաց կանխեց (1196ին) յղել թագ Ալեքս Գ Բիւզանդիոնի[4], արդիւնաւոր երևելու համար Հայոց հզօր իշխանին առջև։ Բայց Լևոն սպասեց գերմանականին ալ գալստեան, որ աւելի ցանկալին էր, և այս զոյգ թագերով «ի Ֆռանգաց և ի Ցունաց[5]», 1198ի Ցունուարի 6ին պսակուեցաւ Տարսոնի եկեղեցւոյն մէջ, կը գրէ Լամբրոնացին[6]։ Ցայտնի է ուրեմն իւր տարագին աղերսն արեւմտեայց հետ, առանց հաշուելու խնամութեան կապերը, որով Ռուբինեան արքունեաց մէջ կը նազէին եւրոպացի թագաւորք, թագուհիք և իշխանուհիք, և հայ լեզուին ու պալատական կարգերուն անգամ կրած ազդեցութիւնը։*

*Այդ բոլոր յեղաշրջութիւնք կատարուած էր արդէն ԺԲ դարու վերջերը, ուր երբ վերին Հայոց վանականք կը մրմռային Լամբրոնացւոյն անխտրականութեան և ըրած բարեփոխութեանց դէմ առ Լևոն, և սա ազդարարեց անոր, Տարսոնի առաջնորդը պատասխանեց. «Որպէս հրամայեցէք դուք մեզ՝ մեր առաջին հարցն շաւղաց ընթացակիցս լինել, լե՛ք և դուք ձերոցն». և մի առ մի կը թուէ անոր արևմտեան սովորոյթները՝ հանդերձի ձևին, ձիու սարասին ու պատուոյ կոչումներու մէջ[7]։ Ցետոյ կը յարէ. «Իսկ ապա թէ իշխանութեանդ ձեր ծանր է այսօր զՂատին ազգին՝ որ են Ֆռանկք՝ անօսր և բարակ սովորութիւնն թողուլ, և ի հնոց Հայաստանեայց թանձրութիւնն դառնալ», ինձ ալ, կ'ըսէ, ծանր է հին անկարգութեանց յարիլ[8]։*

*Միայն արքունեաց մէջ չէ հանդերձի փոփոխութիւնը, այլ ամբողջ կիլիկեան Հայութեան վրայ։ Նոյն Լամբրոնացին է որ կը հաստատէ զայս, կշտամբելով բարեպաշտութեան պակասն անոնց մէջ՝ համեմատութեամբ արևմտեայց, և ըսելով՝ «Սա Հայս՝ որ զգեստուք փառաց է ձևացեալ», Փրանկին հետ եկեղեցի մտնելով՝ և ոչ*

1. Սիս. 446, 467. — 2. Անդ՝ 446. — 3. Անդ՝ 463-4. — 4. Սմբ. ՌԽԵ. — 5. Վրդ. Պատմ. 138. — 6. Սիս. 469. — 7. Լմբ. Թղթ. 239-40. — 8. Նոյն՝ 241.

իսկ աղօթել գիտէ[1]։ Ցայտնի է՝ թէ կը խօսի ոչ ազնուականութեան, այլ ժողովրդեան հետ, որ մինչ հոս փրանկ կը ձեւանայ, մի և նոյն ժամանակ իւր արեւելահայ եղբայրն ալ թաթար ձեւացած տեսանք։

2. Ի հաստատութիւն բոլոր տեղեկութեանցդ կիլիկեան արուեստը թողած է մեզ բաւական առատ նիւթ. ինչպէս թագաւորական կնիքներ ու դրամներ, և ոչ սակաւ նկարներ՝ պահուած զանազան կողմեր, որոցմէ բաւական թուով յաջողեցայ ձեռք բերել, և պիտի տամ հոս յաջորդաբար։ Այս տեսակէտով՝ հայ տարազի պատմութեան համար ամենէն փայլուն շրջաններէն մին կը հանդիսանայ կիլիկեանը։

Չեմ ուզեր զբաղիլ ու զբաղեցնել ընթերցողներս քանի մը յարմարական անճիշդ ձեւերով, ինչպէս են մեծին Լեւոնի գունաւոր կենդանագիրը Հ. Ալիշանէ[2], և ուրիշ մը՝ լատինական՝ ԺԹ դարէն[3], և այլ նոյնպիսիք, և կամ վերջին Լեւոնի զանազան պատկերները՝ եւրոպական ձեռքերէ[4], որոց մէջ նաև իւր մահարձանն ի Պարիս, որոց ամենուն վրայ կ'երեւի՝ ոչ Կիլիկիոյ հայ թագաւորը, այլ Ս. Ուենի նոր տէրը՝ գաղիացած տարազներով։ Անոր մէկ կենդանագիրն ալ կայ արար զգեստով, զոր աւելորդ է «արեւելեան» համարելով՝ ընդհանրացնել բոլոր Ռուբինեանց՝ նման Բագրատունեաց, ինչպէս ըրաւ Պ. Բասմաջեան[5]։ Անոր իբր ութամեայ բանտարկութիւնն ի Գահիրէ և յետոյ Բարկուկ իշխանէն ընդունած «ոսկեհուռ արտակիտեալք կլնգմեննեաւ[6]» աւելի լաւ կը մեկնեն այդ նկարին ծագումը, քան պատմութիւնը որ կը լռէ, մանաւանդ թէ յիշեալ ենթադրութեան հակառակը կը հաստատէ Լամբրոնացւոյն բերանով[7]։ Զանց կ'ընեմ այս բոլորը. որովհետև վաւերական ձեւերն արդէն կու տան մեզ կիլիկեան տարազին հարազատ նկարագիրը, զոր կ'անցնինք տեսնել։

## Բ. ԹԱԳԱՒՈՐԸ

Ինչպէս Բագրատունեաց համար ըսինք, Ռուբինեանց հանդերձն ալ տարբերութիւն մ'ունէր արքունեաց մէջ և օծման առթիւ, զոր կը հաստատէ անոնց թագաւորօրհնէքը, ստիպելով զմեզ զատել հոս երկու տարազները։

Ա. Արքունական հանդերձ։ — Ասոր քննութեան աղբիւր ունինք՝ Ա Լեւոնի ոսկեկնիքը[8], որոյ չորս օրինակ կը գտնուին Վատիկանի

1. Լմբ. Պտ. 323։ — 2. Սիս. 435. տեղեկ. 440։ — 3. Անդ՝ 440։ — 4. Բասմ. Լե. 1, 110։ — 5. Անդ՝ 37, 158։ — 6. Դարդ. 183։ — 7. Աստ՝ 180, 181։ — 8. Անկատար հրա. ի Սիս. 433. լաւ՝ ի Schl. Mel. 160։

դիւանին մէջ, առ Ինոովկենտ Դ գրած թղթերէն կախուած. և որոց լաւագոյնին կաղապարը, զոր անձամբ ստացայ հոն՝ Գեր. Ուգոլինի դիւանապետէն, յառաջ կը բերեմ, Ձև 78, 79։ Լևոն Բ, կնոջը կեռանի և հինգ զաւակաց հետ, աղօթականք, հանուած Երուսաղեմի 1272ին գրուած Աւետարանէն, Ձև 80, գեղեցիկ ու նուրբ գործ. և հրատարակուած Մեսրոբ վրդ. Տէր Մովսէսեանէ ևս[1]. որոյ զունաւորն ալ շնորհեց ինձ Դուրեան Ս. Պատրիարքը։ Բ Հեթմոյ կենդանագիրը, Ձև 81, քանդակուած Կոստանդին Բ կաթողիկոսի պահարանին մէջ, 1293էն, որ կը գտնուի ի Լէյդա Հոլլանդիոյ[2]։ Եւ վերջապէս Լևոն Դ ի դատաստանի՝ Անտիոքայ Անսիզի վենետկեան օրինակին մէջ, 1331 թուականէն, զոր նոյնպէս կու տամ հոս[3]։ Ասոր կը նմանի և Դաւիթ արքայ՝ Ս. Ղազարու 1319ի Աստուածաշնչին մէջ Նաղաշ Մկրտչէ, զոր աւելորդ կը համարիմ դնել հոս։

1. Հերք և Մօրուք հասարակօրէն կարճ կը բռնեն Ռուբինեանք. ինչպէս կը զգացնէ Լամբրոնացին[4], և յայտնապէս ալ կ՚ըսէ՝ թէ «ոչ հերս ժողովէք և ոչ մօրուս երկայնացուցանէք[5]»։ Նոյնը կ՚երևի նաև Ա և Դ Լևոններու վրայ, մինչ Հեթում ու Լևոն Բ երկայնամօրուս են, և ուր յայտնի է քմահաճոյից դերը։ Չափաւոր մազերըն ու կարճ մօրուքը կ՚երևին նաև մեծին Լևոնի ժամանակակից արևմտեան արքայից վրայ, Գերմանացւոց[6], Նորմանաց[7], Գաղիացւոց[8]։ — Մեր թագաւորք արքունեաց մէջ սովորաբար բաց գլխով կը կենան, ըստ աւանդելոյ Տարսոնի եպիսկոպոսին. «Մ՛ի կայք բացագլուխ ըստ Լատինացւոց իշխանացն և թագաւորացն, զոր Հայք մաղասկաթացն ասեն ձև[9]», իբրև անարգելով գլխաբացութիւնը։ Բայց պաշտօնական առթից մէջ թագապսակ կը տեսնուին, ինչպէս Լևոն Դ դատաստանի պահուն։

2. Թագը կարևոր է մեզ ձևով ու ծագմամբ։ Առաջին պսակաւորը Լևոն կրկին թագ ընդունեցաւ՝ ըսինք։ Մին բիւզանդական էր, որ կը սահմանուի Կիրակոսէ՝ «ոսկւով և ակամբք պատուականօք ընդելուզեալ[10]»։ Ասոր ձևն արդէն ծանօթ է մեզ[11], և պիտի տեսնենք նաև մեր արքայազանց վրայ[12]։ Յակոբ վարդապետ՝ որ ներկայ էր մեծին Լևոնի օծման, Յունաց նուիրածին վրայ խաչ մ՚ալ կը տեսնէր. «բերեալ նմա, կ՚ըսէ, նշան զխաչանիշ թագն[13]»։ Ժ—ԺԲ դարու կայսերական պատկերաց մէջ չի նշմարուիր այդ խաչը[14]. մինչ-

1. Անհտ. 1907, 200-4։ — 2. Հրտ. ի Սիս. 107։ — 3. Հրտ. անդ՝ 481. Հյպտ. 528։ — 4. Ատտ՝ 178։ — 5. Լմր. Թղթ. 241։ — 6. Krets. տխ. 30, 32։ — 7. Նոյն՝ տխ. 33։ — 8. Նոյն՝ տխ. 29, 34։ — 9. Լմր. Թղթ. 239։ — 10. Կիր. 76։ — 11. Ատտ՝ 185։ — 12. Ձև 84։ — 13. Հյպտ. 442։ — 14. Schl. Epop. I, 45, 60, 100 են. Hot. I, տխ. 67։

դեռ Ժ, Նախորդ և յաջորդ դարերու բիւզանդական դրամոց վրայ անպակաս է[1], ինչպէս նաև ուրիշ ձևերու մէջ՝ Փոկասու և Բ Յուստինիանոսի վրայ[2], որով կը մեկնուի Լևոնի խաչը։

Սակայն քաղաքականօրէն կարևորագոյնն էր գերմանականը, զոր Կիրակոս կ'անուանէ «Թագ ազնիւ՝ զառաջին Թագաւորացն[3]». և Դարդէլ՝ աւելի պերճօրէն, «Թագ ոսկեձոյլ մեծագին յոյժ, ընդելուզեալ ակամբք պատուականօք, մարգարտօք, յակնթօք, շափիւղայիւք, զմրխտօք և այլովք գոհարօք[4]»։ Ոթոն կայսրն ալ 1211ին



Ձև 78. Կնիք Մեծին Լևոնի

կը յղէ «Թագ արքայական բազմածախ և բազմագին յականց պատուականաց և ի մեծագին մարգարտից ընդելուզեալ», որով մեծն Լևոն կը պսակէ իւր Թոռը Ռուբէն իբր ժառանգ իւր գահուն[5]։

Գալով աղոր ձևին, գերմանական հին նկարուց ու դրամոց վրայ չորս տեսակ Թագերու հանդիպեցայ խուզարկութեանցս պահուն։ Առաջինն է մանեկաձև, իւր վրայ կրելով կոնաձև գնդածայր ճառագայթներ, ինչ որ կ'երևի նախ Կարոլինգեանց (752–987) գլխին[6], և ապա գերման դրամոց վրայ՝ Գ Հենրիկի[7] (1039–56), Գ Կոնրադի[8]

1. Wr. Byz. — 2. Krets. տխ. 23. — 3. Կիր. 75. — 4. Դարդ. 14. Համա. բնա. — 5. Սիս. 83. — 6. Jacq. տխ. 24. — 7. Cappe, I, տխ. VI, 87, 89. — 8. Նոյն՝ II, տխ. III, 15, 16, 120, 236 ևն.

(1138–52), Ա Փրեդերիկի[1] (1152–90), Զ Հենրիկի[2] (1190–97) և այլոց։ Երկրորդն է նոյն մանեկաձևը, իբր ճառագայթ ունենալով լոկ չորս գնդակներ, ինչպէս է Բ Հենրիկին (1002–24) և կնոջը Կունիգոնդային[3], և դրամոց ոմանց վրայ՝ դարձեալ Գ Հենրիկի[4], Գ Կոնրադի[5] և Զ Հենրիկի[6]։ Երրորդն է նոյնը, ճառագայթները կազմուած երեք երեք գնդակներէ. ինչպէս կ'երևի Գաղիոյ Կարոլոս Կճտին կենդանագրին մէջ՝ Թ դարէն[7], և գերմանական դրամոց Բ Կոնրադի[8] (1024–39), Գ Հենրիկի[9], Ե Հենրիկի[10] (1106–55), Ա Փրեդերիկի[11] և այլոց։ Եւ չորրորդն է շուշանաձև ճառագայթներով, զոր կը կրեն Հենրիկ Բ իւր կենդանագրին մէջ[12], և դրամոց վրայ՝ Կոնրատ Բ[13], Փրեդերիկ Ա[14], Ոտտոյ Դ[15] (1198–1218), Գուլիելմոս[16] (1248–56), Հռոդոլփ Հաբսբուրգի[17] (1273–91), Հենրիկ Է[18] (1308–13), Լուդուիկ Դ[19] (1314–47)։ Նոյնպէս և Գաղիացիք՝ Զ, Թ, ԺԲ և այլ դարերու ձևոց վրայ[20], Անգլոսաքսոնք Ը դարուն և Անգղիացիք ԺԳին[21]։

Յիշեալ բոլոր գերմանական ձևերու թագն անխաչ է. նոյնպէս են նաև Ա և Բ Փրեդերիկներու կենդանագիրք[22]. մինչ Բ Հենրիկին խաչաւոր է[23]։ — Գերմանք գնդաճառագայթ թագերէն կը կախեն յաճախ, բիւզանդական ոճով[24], մի մի շղթայ երկու կողմէն, աւարտած երկու կամ երեք զոհարով. ինչպէս Հենրիկ Դ[25] (1056–1106), Փրեդերիկ Ա[26], Հենրիկ Զ[27] և Ոտտոյ Դ[28]։ Եւ մերթ մարգարտի երկու շարք՝ փոխան շղթայից, ինչպէս Փրեդերիկ Ա[29], Կոնրադ Դ[30] (1250–54) և Ոսբրեխտ Ա[31] (1298–1308). իսկ շուշանճառագայթ թագերէն ոչ մին ունի զատոնք։

Թէ յիշատակեալ թագերէն, որոց բոլորին գոյութիւնը կանուխ կը սկսի քան զթագաւորութիւն Լևոնի, ո՞րը ստացաւ սա, մեք ուրիշ ապացոյց չունինք՝ բայց եթէ իւր կնիքն ու դրամները, որոց վրայ

1. Անդ՝ 17, 20, 21, են։ — 2. Նոյն՝ III, տխ. III, 36. IV, 53։ — 3. Falke, 150։ — 4. Cappe, I, տխ. VI, 86, 87։ — 5. Նոյն՝ III, տխ. IV, 58։ — 6. Նոյն՝ III, տխ. III, 33, 38. IV, 60։ — 7. Bast. Հտ. VI։ — 8. Cappe, III, տխ. II, 19, 20։ — 9. Նոյն՝ I, տխ. V, 71-78. III, տխ. II, 21-26։ — 10. Նոյն՝ III, տխ. II, 32։ — 11. Նոյն՝ I, տխ. IX, 141. III, տխ. IV, 48։ — 12. Krets. տխ. 30։ — 13. Cappe, I, տխ. V. 67։ — 14. Կենդան. ի Krets. տխ. 32։ — 15. Cappe, I, տխ. X, 161։ — 16. Անդ՝ տխ. XI, 178։ — 17. Անդ՝ 181-184։ — 18. Անդ՝ տխ. XII, 186, 187։ — 19. Անդ՝ 189-194։ — 20. Krets. տխ. 25, 27. Dem. 80։ — 21. Krets. տխ. 22, 38. Engel, 842, 859։ — 22. Krets. տխ. 32, 36։ — 23. Նոյն՝ տխ. 30։ — 24. Աստ՝ 170։ — 25. Cappe, I, տխ. VI, 90, 91. VII, 112, 114 են։ — 26. Նոյն՝ II, տխ. III, 18, 19. VII, 48։ — 27. Նոյն՝ I, տխ. XVI, 260։ — 28. Անդ՝ տխ. X, 168։ — 29. Նոյն՝ II, տխ. IV, 22, 28 են։ — 30. Անդ՝ տխ. XVII, 175, 176, 179, 180։ — 31. Նոյն՝ I, տխ XVI, 266։

կը տեսնենք գնդաճառագայթը միայն, ինչպէս նաև իւր առիւծի գլխին, որ գերման դրամոց նիւթական օրինակութիւն մը չէ, այլ արդիւնք նոյն պսակին գործածութեան։ Զայս հաստատել կը թուի և Կիրակոս, կոչելով զայն «զառաջին թագաւորացն», իբր հնագոյնը գերմանական կայսերաց կրածին. որ և սովորական թագը կը դառնայ մեր թագաւորին։ Իւր ձևն աւելի յստակ է կնքոյն վրայ, ստորև բոլորուած խոշոր ու խիտ մարգարտով, որուն կ'ակնարկէ թերևս Վարդան՝ յիշելով արքայական «զթագն մարգարտաշար[1]»։ Վերև ցոյց կու տայ երկու օղակաձև ճառագայթներ, օղերու դատարկութիւնը գոհարներու նշանակութեամբ, նման անոր որ կ'երևի նաև Գերմանացւոց վրայ[2], Լէոնի Բ Փերդինանդի[3] (1157–88) և այլոց գլխին։ Միայն թէ չորս ճառագայթներէն գէթ երեքը տեսնելու էինք՝ եթէ լաւ շինուած լինէր, ինչպէս ցոյց կու տան նոյն կնքոյն առիւծն ու դրամները։ Թագին կեդրոնը փոքր ինչ բարձրանալով, պատուանդան կը դառնայ խաչի մը, որ աւելի բիւզանդակերպ է, ընդհանրապէս զգալի նոյն դրամոց ու կնքոց վրայ։ Իսկ երկու կողմէն կը կախէ երեք երեք մարգարտածայր շղթայք, դարձեալ բիւզանդական թուով։ Այս հանգամանքը բաւական նշմարելի են նաև Լևոնի դրամոց վրայ[4]։



Ձև 79. Առիւծ կնքոյն Լևոնի

Մեծ Ռուբինեանի թագին ձևը սակայն հաստատուն չմնաց իրականին մէջ, թէպէտ աւանդաբար պահուած կը տեսնենք նաև իւր յաջորդաց դրամներու վրայ, սովորաբար կախեալ զարդերով հանդերձ։ Առաջին արքայէն 74 տարի վերջ՝ Բ Լևոնի թագը ցոյց կու տայ մեզ նոր ձև մը, դէպ ի վեր լայն, ալեձև ու եռագնդակ ճառագայթներով. իսկ շղթայները չկան։ Ասոր հետ գաղափարի մեծ նմանութիւն ունի թագը լատինագիր մէկ դրամին «Լևոնի», զոր Շլիւմբերգէր կ'ուզէ առաջին թագաւորը նկատել[5]. բայց փաստերը

1. Վրդ. Վճռ. — 2. Engel, II, 743. — 3. Անդ՝ 821. — 4. Սիպիլ. տխ. Ա, 1, 3, 7, 9, 11, 13, 14. — 5. Նոյն՝ 19.

բուական համոզիչ չեն, և կրնայ Բ Լևոնի ևս լինել։ — Իսկ յետոյ Դ Լևոնի վրայ կ'իշխէ դարուն եւրոպական ձևը, որ է շուշանակերպ ճառագայթներով, և համակ եզերուած մարգարտով։ Սոյն թագով կը նկարէ Նաղաշ զԴաւիթ 1319ին, Պիծակ՝ երեք մոգերը իւր Աւետարանին մէջ՝ 1331ին[1], և լատին նկարիչ մը զմեծն Լևոն՝ նոյն դարու սկիզբը[2], որով և անօգուտ մեր նոյն արքայի համար։ Լէյսենրաք կ'ըսէ՝ թէ շուշանի նմանութիւնը թագերու և գաւազանաց վրայ՝ կար Փրանկներէն կանուխ՝ ուրիշ թագաւորաց քով ալ ամէն կողմ. և կը կարծէ՝ թէ այդ ձևն էր «Նիզակի մը տէգը, որոյ վերին ծայրն ունէր միասին ուրիշ երկու ծայրեր՝ դէպ ի վար շեղած», որ յետոյ շուշանի ծաղիկը կարծուեցաւ ու կոչուեցաւ[3]։

Լևոն Ե իւր ձերբակալութեան ժամանակ Մելէք ամիրային կը յանձնէ զգրոց մը, որոյ մէջ կային «մարգարիտք և ականք պատուականք երկուց արքայական թագիցն» և ուրիշներ ալ[4]։ Սա իւր թագաւորութեան սկիզբը գտաւ մի միայն «թագ ոսկւոյ[5]», մնացած նախորդէն։ Հետևաբար երկու թագերէն մին կամ ինք շինած էր և կամ կնոջն էր։ Եւ դիտելի է՝ որ անոնց գոհարները շարժական էին և առանձին կը պահուէին, կորստէ ազատ մնալու համար անշուշտ։

3. Ներքնակը զգալի է Դ Լևոնի ու Դաւթի վրայ՝ իւր նեղ թեզանեօք՝ որ մինչև դաստակները կը հասնին, և ասղնեգործ կը վերջանան. Հայոց արքայինը վարդագոյն է։

4. Պատմուճանը գլխաւոր հանդերձն է տակաւին, որով Յակոբ վրդ. զայն կը սահմանէ՝ «աւգոստական ծիրանափայլ պատմուճան[6]»։ Պճղնաւոր է բոլորին վրայ, և Լամբրոնացւոյն ըսածին պէս «զապեալ[7]»։ Թեզանիքը նեղ են ու թաթերուն կը հասնին Ա և Բ Լևոններու վրայ, նման Բ Հենրիկ, Ա և Բ Փրեդերիկ և այլ գերման կայսերաց[8]. իսկ Լևոն Դ կարճ բռնած է զանոնք գաղիական ոճով, որ կ'երևի ս. Լուդովիկի[9] և այլոց վրայ։ Նիւթն է բնականապէս մետաքսը՝ զոր «թագաւորք և իշխանք վայելեն[10]»։ Իսկ գոյնը՝ «ծիրանեփայլ» է մեծին և Բ Լևոնի վրայ, մինչ Լևոն Դ ընդ հակառակն կապոյտ ու ծաղկանկար հագած է։ Կարծեմ սոյն հանդերձին կ'ակնարկէ Դաշանց թուղթն ալ, — կիլիկեան շարադրութիւն, — Տրդատի հասակը ծածկել տալով «օքսունական (յն. ὀξὺς=մանիշակագոյն[11]) մետաքսօք մարգարտամակճօք[12] (արբ. մաճ=ալիք)». այսինքն մանիշակագոյն պատմուճանը զարդարուած մարգարիտներով, որ ալէ-

1. Աստ՝ 225։ — 2. Սիս. 441։ — 3. Eysen. 226–9։ — 4. Դարգ. 147։ — 5. Նոյն՝ 81։ — 6. Հյպտ. 442։ — 7. Աստ՝ 181։ — 8. Krets. տխ. 30, 32, 36։ — 9. Dem. 81։ — 10. Գոշ՝ Ատկ. ժԴ։ — 11. Fresne, 1047։ — 12. Արբտ. 387։



Ձև 80. Լևոն Բ, կնոջ թագուհին և զավակունք

ձև հիւսուած էին անոր վրայ. եթէ սակայն ուղղագրական սխալ չկայ՝ Թագաւորն ազատ էր ըստ կամս փոփոխել գոյնը, և անոր մէջ ոսկին ալ խառնել, որով Վարդան կրնայ յիշել անոր «զպատմուճանն ոսկեհուռն[1]»։ Բազկազարդը Թեզանեաց վերև, որոյ ծագման մասին խօսեցանք[2], կ'երևի նաև Բ Լևոնի վրայ։

5. Վակաս մը, զոր տեսանք բիւզանդական կայսերաց վրայ[3], փոքր ի շատէ կը նշմարուի մեծին Լևոնի[4], Բ Կոստանդնի[5] և Դ



Ձև 81. Հեթում Բ ըստ պահարանին Կոստանդնի

Լևոնի[6] դրամոց վրայ. և աւելի յայտնի կերպով զարդարուած են անով՝ իրենց կենդանագրոց մէջ՝ Բ և Դ Լևոնները. մեծագոյն խնամով նկարուած առաջնոյն վրայ, ոսկեհիւս և ականակուռ, որ կը պատէ ուսերը, կ'իջնէ լանջէն վար ցգետին, և միւս ծայրը թիկունքէն կը դառնայ մէջքին շուրջ ու եռև կ'անցնի։ Նախայիշատակեալ արևմտեան թագաւորք չունին զայս, ինչպէս Հենրիկ Բ, Փր. Շիկամօրուս, Փիլիպ Աւգոստոս և այլք, բայց միայն Փրեդերիկ Բ։ Յայտնի է՝ թէ Ռուբինեանց համար զարդս աղբիւրը Բիւզանդիոն եղաւ։

1. Վրդ. Վճռ. — 2. Աստ՝ 192. — 3. Աստ՝ 185. — 4. Սիպիլ. Ա, 2. Դ, 7. — 5. Նոյն՝ Դ, 43. — 6. Նոյն՝ Ե, 61.

6. Կամարը միշտ մասն է արքայական հանդերձին։ Լամբրոնացւոյն բացատրութիւնը, թէ թագաւորը պալատին մէջ «գօտեկոյծ ի գահոյսն բազմի[1]», թագաւորութենէն յառաջ ըսուած է, և կ'ակնարկէ բիւզանդական սովորութեան։ Ընդ հակառակն մեծն Լևոն բազմած ի գահոյս՝ կը կրէ ականազարդ կամարը, ինչպէս արևմտեան թագաւորք ալ։ Նոյնպէս են նաև Հեթում Բ ու Լևոն Դ, որոց երկրորդի գօտին առաջակողմէն մագոգաձև ու ծաղկանման դրուագով է։ Գօտևոր են իրենց դրամոց վրայ նաև Հեթում Ա[2] ու Սմբատ[3]։ Վարդան չէ անտեսեր արքունական «զկամարն ականակապ[4]». և թագաւորական գանձին մէջ կը պահուէին «ականակապ գօտիք[5]»։

7. Փիլոն կը կոչուի հիմայ քղամիդը[6], զոր անպակաս իրենց վրայ կը կրեն մեր թագաւորք, թէ մեր Ջևրու մէջ և թէ դրամոց։ Պճղնաւոր է, ինչպէս բիւզանդականն ու բոլոր արևմտեան թագաւորացը։ Բիւզանդացիք ու Հենրիկ Բ Գերմանիոյ՝ զայն կը ճարմանդեն աջ ուսին վրայ. Փիլիպ Աւգոստոս Գաղիոյ և իւր յաջորդները՝ ձախին մօտ[7]. իսկ գերմանք՝ Օթոն Ա[8], Փր. Շիկամօրուս, անանուն կայսր մ'ու Փրեդերիկ Թ[9] կրծոց կեդրոնը, որոց կը հետևին և Ռուբինեանք։ Հարուստ շղթով մը կը լինի այդ ճարմանդումն Ա Լևոնի և Բ Հեթմոյ վրայ. իսկ Բ և Դ Լևոններ որ և է կապ չունին փիլոնին, այլ պարզապէս ձգած ուսոց վրայ, մինչ Լևոն Ե շղթաւոր է[10], և իւր գանձուց մէջ կային «ականակապ ճարմանդք[11]»։

Փիլոնն իրեն պաստառ ունի «զբեհեզն ցանկալի և զոսկեթել ծիրանին՝ որ է զգեստ թագաւորի[12]», և կամ «քղամիդ ծիրանի և մետաքս, որ է թագաւորական գոյն[13]», և որ «ծովածին (կամ ծովային) ծիրանին» է տակաւին[14], ինչպէս էր և հին ժամանակ[15]։ Արդարև նոյն գոյնը հագած են Լևոն Բ և Դ, առաջնոյն կիտուածազարդ, և վերջնոյն կրածը ծածկուած աստղաձև զարդերով։ Իսկ Բ Հեթմոյն շուրջանակի եզերուած է մարգարտանման խիտ գնդակներով։ Բ Լևոնի փիլոնին ներսը ծածկուած է սամոյրենով մը, որ հաւանօրէն ցուրտ եղանակին հետ կապուած էր, և այս պատճառաւ Լևոն Դ չունի։ Իսկ աղոր փոխարէն՝ ներքուստ ագուցուած լինելու է ուրիշ աւելի թեթև պաստառով մը, որով կ'ունենար երեսք և աստառ[16]։

Այն դրամոց վրայ, ուր մեր թագաւորք ձիաւոր քանդակուած

1. Լմր. Պտ. 85։ — 2. Սիպիլ. Բ, 16. Գ, 27։ — 3. Նոյն՝ Զ, 78։ — 4. Վրդ. Վճռ։ — 5. Դարդ. 147։ — 6. Լմր. Թղթ. 239. և սստ՝ 215։ — 7. Dem. 81, 85։ — 8. Schl. Emp. 579։ — 9. Krets. տխ. 30, 36։ — 10. Սիպիլ. Զ, 75. — 11. Դարդ. 147։ — 12. Վրդ. Վճռ։ — 13. Լմր. Ատկ. ԼԱ, 22։ — 14. Արթս. 387։ — 15. Աստ՝ 98։ — 16. Վրդ. Սղմ. ի Հյկզ։

են, փիլոն չեն ցուցներ, ինչպէս Հեթում Ա[1], Լեւոն Բ[2], Սմբատ[3], Լեւոն Գ[4] և այլք։ Կ'երեւի՝ թէ այս պարագային զանց կ'ընէին փիլոնը, որ իւր տարածութեամբ արգելք պիտի լինէր հեծելութեան։

8. Կօշիկները, զգալի մեծին Լեւոնի ոտքերուն, և եւրոպական ձեւով սրակտուց, կը շարունակեն՝ ըստ սովորութեան՝ պահել իրենց կարմիր գոյնը։

9. Մանեակն ալ կայ հիմայ թագաւորի վզին, յիշուած Վարդանէն արքայական նկարագրին մէջ, «զմանեակն ոսկի[5]», և Թագաւորօրհնէից կարգին մէջ՝ զոր պիտի տեսնենք։ Նմանապէս Դաշանց Թուղթը կը զարդարէ զՏրդատ «գումարտակօք անգին գոհարօք[6]»։ Ցայտնապէս ալ կ'երեւի այս Բ Հեթմոյ պարանոցին շուրջ (Զե 81)։ Իսկ միւս Զեներու մէջ պակասը գուշակել կու տայ՝ որ ստիպողական մասն չէր արքայական տարազին, այլ ըստ կամս գործածուած։

10. Գաւազանը, կոչուած նաև մականն Օրբելեանէ[7], որ նախկին երկու թագաւորութեանց ժամանակ մոռցուած էր, վերստին կը նորոգուի այժմ եւրոպական ազդեցութեան ներքեւ։ Եւ ունի զանազան ձեւեր։ Առաջինն է խաչագլուխ կարճարուն, որ կ'երեւի Լեւոնի կնքոյն առիւծի թաթին մէջ (Զե 79). և որոյ նմանը ցոյց կու տան իրենց դրամոց վրայ նաև բիւզանդացի կայսերք, Ռոմանոս, Վաղենտինիանոս Գ և այլք մինչև Ժ դար, մերթ մենագրաձեւն ու մերթ բուն խաչը[8]։ Այսոնց կը նմանին գաղիացւոց՝ մեծին Կարոլոսի ու Լուդուիկ Հեզի, և գերմանացւոց՝ Փր. Շիկամօրուսի և Գ Ոթոնի բռնածներն ալ[9]։ — Սա երբեմն կրկնախաչ է, այսինքն զոյգ խոտորնակներով, ինչպէս կ'երեւի մեծին և Բ Լեւոնի քանի մը դրամոց վրայ[10], դարձեալ նմանութիւն բիւզանդականին, զոր կը ցուցնեն Բ Յուստինիանոսի, Թէոփիլոսի և ուրիշ շատերու դրամներն ալ[11]։ Սոյնպիսի խաչեր իրապէս կային, և օրինակներ չեն պակսիր Ժ–ԺԳ դարերէն[12]. բայց թէ դրամներէն դուրս արքունի գաւազանին վրայ ևս ելած են, չեմ կարող հաստատել։

Երկրորդ գաւազանն է շուշանագլուխ, յիշատակուած Թագաւորօրհնէից մէջ, զոր հանդիսադիրը կու տայ օծելոյն ձախ ձեռքը, «գաւազան զօրութեան, և ի ծայրն ծաղիկ», որ է շուշանը, կոչուած հոն նաև գղ. ֆլաւտրիս (fleur de lis), որ արևմտեայց քով կը նշանակէր արքայական իշխանութիւնը, և զայն՝ կարճարուն

1. Սիպիլ. Բ, 15, 17. Գ, 26։ — 2. Նոյն՝ Գ, 28-31։ — 3. Նոյն՝ Դ, 41–43։ — 4. Անդ՝ 45–47։ — 5. Վրդ. Վճռ։ — 6. Արրտ. 386։ — 7. Աստ՝ 113։ — 8. Carr. VI, տխ. 482, թ. 1, 2, 4. Wr. Byz. տխ. 1, 2, 4, 11, 19, 20 են։ — 9. Cah. IV, 168–170։ — 10. Սիպիլ. էջ 9. Սխ. 380–81։ — 11. Wr. Byz. տխ. 41, 48, 50 են, — 12. Schl. Emp. 421, 477. Migne, հտ. 27, էջ 1482–83։

*բռնած են Փրանկաց Կարոլոս Կունտոն Թ դարուն, և Գերմանաց Ա և Բ Փրեդերիկներն ԺԲ-ԺԳ դարերուն*[1]*: — Մեր Ա Լևոնի կնքոյն* (*Զև* 78) *և իւր ու յաջորդաց ոմանց դրամոց վրայ կը տեսնենք լոկ շուշանը ցօղնով*[2]*, նման գաղիականաց՝ Փիլիպ Աւգոստոսի* (1180) *և ս. Լուդովիկի*[3] (1240)։

*Վերջապէս կը յիշուի գնդագլուխ գաւազանն ալ Վահրամէ, Ա Հեթմոյ պսակման առթիւ. «Իւր գաւազան ոսկւով օծեալ, - Ի գոյնս ոսկի ընդելուզեալ, - Զայն ի յաջոյ ձեռին եղեալ*[4]*». այսինքն թէ անոր բունն ոսկեզօծ էր, և գունդը ձոյլ ոսկի։ Ճիշդ նմանութիւն է այս՝ Գաղիոյ Կարոլոս Կնտի, արևմտեան Լոթէր կայսեր*[5]*, Գերմանիոյ Բ Ոթոնի*[6] *և այլոց ձեռք նկարուած երկայնաբուն ու գնդագլուխ մականին՝ առանց խաչի, և որուն հանդիպեցանք ուրարտեան շրջանին և Աքեմենեանց քով ալ*[7]։

11. *Ոսկի խնձոր մը կը յիշէ կիլիկեան թագաւորօրհնէքը, գրելով՝ թէ հայրապետը կու տայ արքային աջը «խաչ՝ ի վերայ խնձորոյ ոսկւոյ», որ նշանակ էր աշխարհի, որոյ մէկ մասին պիտի տիրէր։ Խնձորն էր արդարև այդ գունդը, ինչպէս կը հաստատէ և Մխ. Գոշ, տանձին հարցնել տալով խնձորին. «Զիա՞րդ թագաւորք զօրինակդ քո արարեալ ոսկի, ի ձեռին նկարեն*[8]*»։ Զայս կը տեսնենք նաև մեծին Լևոնի կնքոյն* (*Զև* 78) *և ուրիշ ռուբինեան դրամոց վրայ*[9]*, և իրենցմէ ալ յառաջ՝ զայն բռնած կ'երևին իրենց դրամոց վրայ՝ Հռովմայ կայսրերէն ոմանք, ինչպէս Վաղերիանոս*[10]*, և ապա անոնց քրիստոնեայ յաջորդներն արևելք և արևմուտք, գնդին վրայ խաչ մ'ալ դնելով*[11]*։ Զայս օրինակեցին նաև գերման կայսերք՝ Հենրիկ Բ, Փրեդերիկ Ա*[12] *և այլն, և ուրիշ եւրոպացիք, որոց նմանեցան մեր Ռուբինեանք։*

12. *Սուրը, կոչուած և բուր*[13]*, մասն է արքայական տարազին, և օծման պահուն կը յանձնեն անոր, ըստ Թագաւորօրհնէից, «զսուրն վաղակատ՝ որով հանդերձեալ է կալ յիշխանութիւն ժողովոյ»։ Սակայն ոչ մէկ արքայական կենդանագրի վրայ կ'երևի այս, որովհետև հանդիսական առթից մէջ միայն կը կրէին՝ ըստ սովորութեան մեր նախորդ թագաւորութեանց զոր տեսանք*[14]*, բիւզանդացւոց և արևմտեայց։ Բայց ամենայն վստահութեամբ կրնանք ըսել՝ թէ Ռու-*

1. Krets. 27, 32, 36։ — 2. Սիս. 438, 381։ — 3. Dem. 80, 81։ — 4. Վհր. տող 866–68։ — 5. Bast. հտ. V և VI։ — 6. Grün. 323։ – 7. Աստ՝ 23, 76։ — 8. Գոշ՝ Առկ. ԺԱ։ — 9. Սիս. 381, 435։ — 10. Grueb. տխ. 51 են։ — 11. Աստ՝ 168, 185. Carr. XI, տխ. 482. Wr. Byz. տխ. I, V–X։ — 12. Krets. տխ. 30, 32։ — 13. Սմբ. Ճնկ։ — 14. Աստ՝ 100, 183։




Ն· — ԼԵՒՈՆ Դ Ի ԴԱՏԱՍՏԱՆԻ (1331)

*Ըստ վենետկեան թ. 107 գրչագրին, որոյ բովանդակութիւնն է «Անսիզ Անտիոքայ» և «Օրէնք և կանոնք» Հայոց, գրուած ՁՁ թուականին՝ նոյն թագաւորին համար։*

բինեանք արևմտեան տարազին հետ անոնց սուրին նմանն ալ կապեցին իրենց մէջքին, որ էր միանգամայն հին հայկականը։ Զի արդարև եւրոպականը, գերման, գաղիական և այլն, ԺԲ–ԺԴ դարերուն՝ իւր գլխաւոր գծերուն մէջ կը յիշեցնէ հինը. ուղիղ՝ լայն ու երկայրի, դէպ ի ծայրը փոքր ինչ նեղ. դաստապան չափաւորապէս երկայն, աւարտած ստուար գնդով մը. կռուան ուղիղ ու մերթ կորացած երկուստեք դէպ ի բերանը. և սուր ու պատեան պարզ կամ ճոխազրուագ՝ ըստ աստիճանի կրողին[1]։ Հայ նմանաձև սրոյն օրինակ կրնայ նկատուիլ Վարդանայ բռնածը մեր 96 Զևին մէջ։

Այժմ կան զանազան սուրեր՝ յանուն «Լևոնի Թագաւորի Հայոց», Ս. Ղազարու և Աթենայ Թանգարանին մէջ, Կիւլպէնկեան ընտանեաց քով և այլն, որոց մասին խօսած եմ այլուր[2], ցուցնելով բոլորին ալ կեղծութիւնը, որոյ ապացոյց են անոնց ձևերու, զարդարանաց, գրերու, ուղղագրութեան ու թուանշերու նորութիւնը, անուանց ու թուականաց անմիաբանութիւնք, ուրիշ արուեստական սխալներ և յայտնուելու եղանակը, որոնք փոխանակ անոնց վաւերականութեան՝ կը հաստատեն կեղծողաց տգիտութիւնը։ Եւ բնականապէս խոտելի են բոլորը։

13. Խոյերու հին հոտերը[3] դեռ հեշտ են Ռուբինեանց նրբացած ռունգերուն. և Վարդան արքունական պճնութեանց մէջ կը թուէ նաև «զանազան խունկս անուշահոտս[4]», որոցմով անոնք կ'օծուէին ու կը բուրէին՝ աւանգանւոյն մէջ գտնուելու պահուն, և ոլոցմով կը խնկէին իրենց պալատան օդը։

Բ. Օծման հանդերձ։ — Այս նուիրական արարողութիւնը յեղաշրջելով արքայական զգեստը, կու տար անոր սրբազան նկարագիր մը։ Բագրատունիք իրենց արարական ձևը քրիստոնէականի կը փոխէին, և Ռուբինեանք՝ քաղաքականը կէս եկեղեցականի։ Զայս կ'ուսանինք իրենց Թագաւորօրհնէից կարգէն, զոր լատիներէնէ թարգմանեց Ն. Լամբրոնացին՝ «վերստին յարմարմամբ» ըստ իւր յիշատակարանին. այսինքն համաձայնելով ժամանակի հայ բարուց. և զոր յառաջ բերաւ Հ. Ալիշան[5]։

Հանդիսին սկիզբը, կ'ըսէ այդ կարգը, «ընտրեալն ունենայ հալաւ ձիաւորի. փիլոն, չաղչեր և մանկզ»։ Այս կոչմանց բացատրութիւնը պիտի տեսնենք յետոյ ձիաւորաց տարազի քննութեան մէջ,

1. Hot. II, տխ. 11, 14, 21, 35, 38։ — 2. Տարեց. Կիլիկ. դրատան, 1922։ — 3. Ալտ՝ 125. — 4. Վրդ. Վճռ։ — 5. Սիս. 472-75։

որոյ մէկ մասն են միայն յիշեալքդ։ Իսկ խորանը մտնելէ յառաջ կը հանեն փիլոնը. և յետ օծման՝ անոր կը զգեցնեն, կ'ըսէ,

1. «Երախ կտաւի հանդերձ՝ որպէս երիցու»։ Անսովոր երախ կոչումն, որ հին ժամանակ բերան կը նշանակէր[1], կը թուի հոս քահանայական հանդերձին պճղնաւոր սպիտակ շապիկը, ինչպէս կը գուշակուի իր միւս զուգակիցներէն, որ են,

2. «Ապա մետաքս կարմիր փոքր սարկաւագի», որ է սոյն պաշտօնէիս պճղնաւոր պատմուճանը. վասն զի «պատմուճանն պճըղնաւոր՝ ամենեցուն է ժառանգաւորաց եկեղեցւոյ զգեստ՝» ըստ նոյն Թարգմանիչ վարդապետին[2], և իր կարմիր գոյնը կը յիշեցնէ արքունական ծիրանին։

3. «Եւ ի վերայ՝ սարկաւագի, նոյնպէս կարմիր, պատուական պաւլովն լայնթեզանի և գօտէլոյծ»։ Հոս սարկաւագի «պաւլոֆն՝» պէտք է հասկնալ, ինչպէս Հ. Ալիշան ալ կը մեկնէ, pallium, որ կը նշանակէր ամէն տեսակ վերարկու[3]. և մեր պարագային՝ սարկաւագի պատմուճանը, քիչ մը կարճ քան զպճղնաւոր պարեգօտը, և թեզանիքը լայն ու նոյնպէս աւելի կարճ, ինչպէս կ'երևի Ժ դարու գերմանական նկարի մը[4] և այլոց մէջ։

4. Յետոյ եպիսկոպոսք կը յանձնեն օծելոյն «զսուրն վաղակաւոր». պարանոցին կը դնեն «մանեակ» մը, ձեռքին «մատանի», և վրան կը ձգեն արքայական «փիլոն»։ Ապա հայրապետն անոր աջ ձեռքը կու տայ «խաչ ի վերայ խնձորոյ ոսկւոյ», և ձախը՝ «գաւազան զօրութեան և ի ծայրն ծաղիկ». և հուսկ եպիսկոպոսաց հետ միասին կը վերցնէ «զպսակն մեծաւ պատուով», ու կը դնեն անոր գլխին. և այդ իւրաքանչիւր մասանց տուչութեան յատուկ աղօթքները կ'արտասանեն։

Ինչպէս կը տեսնենք, եկեղեցական և արքայական հանդերձից խառնուրդ մ'է այս տարազը։ Առաջին Թագաւորին պսակման պահուն Յակոբ վարդապետ տեսաւ զայն զգեցած «զուգոստական և զծիրանափայլ պատմուճանն[5]», և ոչ սարկաւագին։ Թագաւորօրհնէքն այդ ժամանակ դեռ նոր հայացած, տառական ճշդութեամբ չէ գործադրուեր ի սկզբան, այլ յետոյ է ընտանեցեր, ինչպէս պատահած է այդ ամէն ծիսական նորութեանց։

1. Աստ՝ 156։ — 2. Լմր. Պտ. 147։ — 3. Dar. IV, 285։ — 4. Lab. II, տխ. 51։ — 5. Սիս. 471։

## Գ. ԹԱԳՈՒՀԻՆ

Գրաւոր յիշատակութիւնք ի նպաստ Կիլիկիոյ բամբշանց հանդերձին՝ շատ ցանցառ են։ Բայց ունինք նկարներ՝ որ անոնց Թերին կը լեցնեն։ Եւ են, Լամբրոնի իշխանաղստեր և Բ Լևոնի կնոջ Կեռանի՝ մեր 80 Ձևի մէջ. և Մարիուն Թագուհւոյ՝ Կոստանդին Բ Թագաւորի մօր, յառաջագոյն տիկին Բարձրբերդի, նկարեալ Սարգսէ աղօթական խաչելութեան առջև՝ Երուսաղեմի 1346 Թուականաւ Աւետարանին մէջ, ուսկից և ես յառաջ կը բերեմ, Ձև 82։ Նոյն գրչագրի մէջ կայ ծննդեան տեսարանն ալ, ուր Մարիուն կը լուայ զՅիսուս մանուկ, կը տեղեկացնէ Մեսրոբ եպս. Տէր Մովսիսեան[1]։ Տեսնենք մանր աղոնց հանդերձը։

1. Թագը կրկին ձևերով կը ներկայանայ այդ Թագուհեաց վրայ։ Կեռանին տաշտաձև է, որոյ մասին խօսեցայ կանխաւ, և ցոյց տուի անոր եւրոպական ծագումը[2]։ Սա ունի իւր վերև հինգ գնդաձև գոհարներու յաւելուածական շարքը, և երկուստեք կը կախէ շղթայակերպ մի մի մարգարտաշար, բիւզանդական դշխոյից ոճով[3]։ — Ժամանակի յառաջացմամբ՝ (երկու կենդանագրոց մէջ 74 տարի կայ՝) Թագին ձևն ալ կը փոխուի և կը նմանի արքայականին, զոր տեսանք Դ Լևոնի գլխին. այն է շուշանաձև ճառագայթներով, և շուրջանակի եզերուած խիտ գոհարներով, առանց կախ մարգարտաշարից։ Այս ձևին մէջ ալ կայ Թելադրութիւնը նոյն դարու գերման ու գաղիացի Թագուհեաց օրինակին, որոնք նոյն պսակն ունին[4]։ Ա Հեթմոյ դրամներէն ոմանց վրայ ինքն ու կինը Զապել ընդ հակառակն կը կրեն գնդաճառագայթ պսակը[5]. որ Թէ որքան կը համաձայնի իրականին, դժուարին է ինձ ճշդել։ Գալով այս տիկնանց պսակին ճոխութեան, Դաշանց Թուղթն Աշխենի և Խոսրովիդխտոյ անուանց ներքև կը նկարագրէ ասոնց կրած «Թագս և պսակս յակունթեայս և յասպիս ամբարհաւաճատեսիլս և ադամանդէս բազմաքանքարս[6]», զոր չափով մը միայն կրնային ցոյց տալ մեր ունեցած նկարները։

2. Քող մը Թեթև կը պատէ երկու Թագուհեաց վարսերը, և կ՚իջնէ կը դառնայ պարանոցին շուրջ. հաստատուն ձև մ՚է այս արքայազն տիկնանց, անտես պահել իրենց ծամերը։ Դաշանց Թուղթը

1. Ազգ. Հնդ. 1913, թ. 1, էջ 80։ — 2. Աստ՝ 179։ — 3. Jacq. Icon. տխ. 19. Schl. Emp. 369։ — 4. Krets. տխ. 44, 48։ — 5. Սիպիլ. տխ. Բ, 18-20։ — 6. Արտ. 387, և գրչք։

կը յիշէ «վարսակալս վայելչավառս», որոցմով եթէ այս ծածկոյթը չի հասկնար, չեմ գիտեր՝ թէ ո՞ւր կը գործածէին ու կը ցուցնէին աղոր վայելչութիւնը։

3. Պատմուճանն ամբողջովին կը ծածկէ ներքնակը, և ցոյց կու



Ձև 82. Մարիուն թագուհի մայր

տայ իւր գորշ գոյնը կեռանի վրայ, և նեղ թեզանեաց ասղնեգործ ծայրերը։ Իսկ Մարիունին կարմիր (ծիրանի) է, և աստեղաձև զարդերով. կարմիր է ծննդեան պատկերին մէջ ևս։ Մարգարտայեռ են թեզանեաց ծայրերը։ Մարգարտաշար կանաչ ժապաւէն մը, որ նեղ

վակասի կը նմանի, մեր Ջևին մէջ կը պատէ օձիքը և կ'իջնէ լանջքն ի վար։ Անոր պաստառը Դիաշանց Թղթէն կը սահմանուի՝ «յապրիշ-մեղինաց գործ ճարտարաց անգիւտք և անգինք»։ Եւ վերջաւորին համար կ'ըսէ Վարդան՝ թէ «ազանին Թագուհիք զառքաշ (պրս. զար-կաշ=ոսկեթել հանդերձ[1]) առ ստորոտովք[2] », ինչ որ մեր պատկերաց մէջ անտես մնացած է։

4. Կամար մը մարգարտաշար՝ կը պատէ Մարիունի մէջքը, ինչ որ սովորական է նաև բիւզանդացի կայսրուհեաց[3], և կ'երևի զաղիացի Թագուհեաց վրայ ևս ԺԳ դարու սկիզբը[4]։

5. Վակասն ալ կը կրէ կեռան իւր վրայ, ճիշդ ամուսնոյն պէս շքեղ ոսկեգոյն, և նոյն ոճով պատած իւր մարմինը, որ դարձեալ նմանութիւն է բիւզանդական կայսրուհեաց, որոցմէ տեսած եմ ԺԲ դարէն օրինակներ[5]։ Մարիուն չունի զայն. — գոնէ վստահ չենք՝ որ կրած զարդը վակասն է, որոյ ճոխութիւնը չի ցուցներ. — գուցէ անոր համար՝ որ բուն Թագուհի չէր, այլ արքայամայր. և կամ իւր օրով դադրած էր վակասի գործածութիւնը։

6. Փիլոնը նոյնպէս յատուկ է Թագուհւոյն ևս, որ կ'երևի Մարիունի վրայ, կապոյտ գունով ու ծաղկանկար, առանց հանգուցի ձգուած իւր ուսոց վրայ։ Կեռան ևս կը կրէ զայն, ծիրանեգոյն, և ներքուստ պատած սամուրենիւով։ Նոյն մուշտակը, գետնաքարշ ըս-տորոտով և անհանգոյց, կը տեսնուի նաև գաղիացի տիկնանց վրայ՝ ԺԴ դարու սկիզբը գրուած գրչագրի մը մէջ[6]։

7. «Բաճուանեղս բիւրականս» կը յիշէ Դիաշանց Թուղթը Թա-գուհւոյ զարդուց մէջ, որ է գնդ. պաճուճեղ (նոր պրս. պազու-ցեճա, պաճու կամ բազու=բազուկ և պաճեղ կամ ճաճեղ=կապ արմատներէն), այսինքն բազկակապ կամ ապարանջան, — աւելի հին մեհեանեղ կո-չուածը[7], — որոյ գործածութիւնը սովորական տեսանք դեռ այս շրջա-նիս։ Ոչ մեր նկարք և ոչ մատենագրութիւնն ուրիշ նման զարդուց նշ-մարանք չեն տար մեզ, թէև ապացոյց մը չէ այս անոնց չգոյութեան։

## Դ. ԱՐՔԱՅԱԶՈՒՆՔ

Ասոցմէ արական սեռն առհասարակ պարոն (baron) տիտղոսը կը կրէ[8], բայց տարազով կը տարբերին իրարմէ՝ ըստ իրենց աստիճանին։

1. Hüb. 150. — 2. Վրդ. Սղմ. ԽԳ. — 3. Hot. I, տխ. 67. — 4. Jacq. Icon. տխ. 189. — 5. Schl. Emp. 261. Tex. տխ. 66. — 6. Louand. I. — 7. Աստ՝ 123. — 8. Սիս. 146. Ազգ. Հնդ. 1913, թ. 1, էջ 70, 71.

*Մեք բախտաւոր ենք ունենալու ասոնցմէ քանի մը կենդանագիրներ, որոնք ճշգրիտ գաղափար մը կու տան մեզ իրենց հանդերձի զանազանութեանց։ Հարկ է որ զանոնք զատենք իրարմէ։*

*Ա. Ժառանգ գահուն։* — *Ասոր օրինակ ունինք Ա Հեթմոյ անդրանիկին (յետոյ Լեւոն Բ Թագաւոր) կրկին պատկերները. մին՝ առանձինն, Նոր Նախիջեւանի Ս. Լուսաւորչի թ.* 14 *Աւետարանին մէջ, — գրութեան հարազատ թուականը կորած*[1], *— զոր Կոստանդին կաթողիկոս նուիրեր է նոյն Լեւոնի, երբ տակաւին էր « որդի Հեթում թագաւորի », և զոր յառաջ կը բերեմ Մեսրոպ եպիսկոպոսի հրատարակութենէն*[2], *Ձև* 83։ *Երկրորդն է Երուսաղեմի* 1261 *թուականաւ Աւետարանի նկարը՝ կնոջը Կեռանի հետ, բռնած նոյն սուրբ գիրքը, և նոյնպէս հրատարակուած*[3], *որոյ գունաւոր օրինակ մ'ալ շնորհեց ինձ Դուրեան Ս. Պատրիարքը, Ձև* 84։

1. *Հերք բաւական երկար բռնուած են երկու կենդանագրոց մէջ ևս։ իսկ մօրուքն անգոյ Նախիջևանեանին մէջ*[4], *— ուր կ'երևի թէ դեռ չէր բուսած, և կամ ածելուած էր՝ ժամանակիս արևմտեան ազնուականաց ոճով*[5], *— յաջորդ նկարին մէջ արդէն կը մրոտէ անոր ծնօտը. զի* 1271*ին ի գահ ելած « Լե ամաց*[6] *», այդ նկարման պահուն քսանևհինգամեայ էր արդէն։*

2. *Պսակ մ'ունի Լեւոն գլխին, որ ժամանակիս բիւզանդականն է*[7], *շրջանակաձև, ցած և ականազարդ։ Արքայազն իշխանի ձևն է, տարբեր բուն արքայականէն՝ զոր յետոյ իր վրայ իսկ տեսանք։*

3. *Պատմուճանը, պճղնաւոր, Նախիջևանեանի վրայ համակ ոսկեհուռ է, և ծածկուած կապտագոյն կանգուն առիւծներով՝ շրջանակաց մէջ. օձիքը ժապաւինեալ ու մարգարտաշար, և ստորոտը նոյնպէս ժապաւինազարդ։ Իսկ Երուսաղեմեանն է մանիշակագոյն, մագլցող առիւծներով՝ շրջանակաց մէջ, լանջքն ոսկեհիւս յաւելուածով, և թեզանեաց ծայրերն ու ստորոտն ականազարդ ժապաւինեալ։*

4. *Կամար մը, ոչ լայն, և ասղնագործ, կը զգէ պատմուճանը, ուսկից կը կախուի՝ հին ոճով՝ իր անձեռոցիկը կամ թաշկինակը, որուն հանդիպեցանք և յառաջ*[8]։

5. *Փիլոնը կը լրացնէ տարազը, Նախիջևանեանին համակ ծիրանի, հանգուցուած լանջաց վրայ. անոր մօտ երկուստեք կան բիւզանդական քառակուսի յաւելուածներն ոսկեգոյն, և ստորոտն ոսկենկար ասղնեգործ ժապաւէն. իսկ Երուսաղեմեանը սպիտակ է,*

1. Ազգ. Հնդ. 1910, թ. 2, էջ 16։ — 2. Անդ՝ էջ 5։ — 3. Անդ։ — 4. Անդ՝ էջ 14։ — 5. Hot. II, տխ. 20, 33 են։ — 6. Սամ. Ձի։ — 7. Հմմտ. աստ՝ 186։ — 8. Աստ՝ 182։

ծածկուած մարդագլուխ թռչուններով շրջանակաց մէջ. և լանջաց քառակուսիքն ու ժապաւէնը՝ որ կը շրջանակէ ամբողջ փիլոնը, ոսկեհուռ են և զարդարուած գոհարներով ու մարգարտով։

6. Կօշիկները բնագրին մէջ բաւական նշմարելի են իրենց նրբութեամբ ու ծածկուած մարգարտով։

7. Խնձորիկ մը բռնած է աջով նախիջևանեանը՝ հազիւ նշմարելի, և որ կը նշանակէ՝ թէ սահմանուած է բռնելու թագաւորական մեծ խնձորը։



Զև 83. Լևոն պայազատ Ս. Հեթմոյ

Բ. Գահաժառանգ Լևոն։ — Մոմ ի ձեռին՝ ի պատիւ Աւետարանին՝ կանգնած ամուսնոյն քով, Կեռան ցոյց կու տայ իւր տարազին հետևեալ մասունքը։

1. Պսակը, հաւասար Լևոնի դրամին՝ ձևով ու ճոխութեամբ։

*2. Քողը կարմրագոյն, որ կը ծածկէ վարսերը՝ նման Թագուհեաց կրածին, բայց քան զայն հարուստ՝ մարգարտով ականջաց վրայ։*

*3. Պատմուճանը, համակ ոսկեգոյն, և ժապաւինեալ զոհարազարդ ստորոտով, պաստառին վրայ ունի գալարուն շերտեր, որոնք փորին ու սրունից դէմ կը կազմեն մի մի ձուաձև լայնութիւն, և ատոնց մէջ մի մի նկարուած Թագակիր հրեշտակներ։ Զայս Մեսրոբ վրդ. «փորուրար» կարծեց վրիպակաւ[1]. վասն զի պատմուճանին գունով և անոր մասն է իմ գունաւոր օրինակին մէջ, և վակասը Թագաւորաց ու Թագուհեաց յատուկ էր, զոր ամուսինն ալ չունի։*

*4. Փիլոնը կարճ է քան զամուսնին, կարմիր, կիտուածազարդ, և բոլորշի ականակուռ շիզզով մը հանգուցուած լանջաց վրայ, ուսկից կը կախուի մարգարտազարդ ժապաւէն մը։ Ունի ոսկեժապաւէն մարգարտայեռ եզր ու ստորոտ։*

*5. Կօշիկները են նուրբ, և երեսը զարդարուած երկու կարգ մարգարտով, ձգուած լայնութեամբ։*

*Գ. Արքայորդիք։ — Մեր 80 Զևին մէջ Բ Լևոնի առջև ծնրադրած են անոր երեք արու զաւակները, անդրանիկն Հեթում երկու հարազատօք, որոնք դեռ պատանեակ, բոլորովին տարբեր տարազ մը կը կրեն քան իրենց հայրն՝ երբ տակաւին գահաժառանգ էր ու չափահաս։ Հասակի՞ արդիւնք էր այդ զանազանութիւնը, թէ ժամանակի փոփոխութեան, դժուարին է ստուգել։*

*1. Մազերն առատ են անոնց վրայ, բայց ոչ շատ երկար։*

*2. Պսակներ, շատ ցած ու փոքր, և երեք նուրբ ու բարձր ճառագայթներով, որոնք կ՚աւարտին իրրեակ մարգարտով, կը հանգչին անոնց գագաթին վրայ։ Բոլորովին օտար է և հեռի իրականէն՝ Մեսրոպ եպիսկոպոսի կարծիքը, որ անոնց գլխին կը համարի տեսնել «արախչիններ[2]», կամ «փոքրիկ ասեղնագործ գլխարկներ[3]»։*

*3. Ներքնակ մը պճղնաւոր ու նրբաթեզան, երկուքին վրայ սպիտակ բեհեզէ, և երրորդին կապոյտ, կը կազմէ անոնց առաջին հանդերձը։ Մին ցոյց կու տայ նաև բազկազարդը։ Ասոր վրայ կու գայ*

*4. Պատմուճանը, նոյնպէս պճղնաւոր ու կարճաթեզան, որոյ թեզանիքը բազկներէն զատուած ու կախ կը մնան. երիցուն հագածը բազկազարդն ալ ունի։ Փորիբաց է ձևով, բայց ճեղքը կը հանդիպի առաջակողմը, և կը կոճկուի լանջաց վերև։ Զանազան են անոնց պաստառները. երիցուն՝ կապոյտ, շերտաւոր ու ծաղկանկար. երկրոր-*

1. Անհտ. 1908, 202. — 2. Ազգ. Հնդ. 1910, թ. 2, էջ 19. — 3. Անհտ. 1907, 203.

*դին՝ վարդագոյն ու ծաղկանկար. երրորդին՝ կարմիր աստեղանկար. պահանջ նկարչութեան քան թերևս իրական։*

*Մեսրոպ եպս. գօտի մ'ալ կը նշմարէ երկու կրտսերաց վրայ, զոր ես չտեսայ, և չի համաձայնիր հետագայ օրինակաց հետ ևս, որոնք յայտնապէս գօտելոյծ են։*



Ձև 84. Լևոն պայազատ և կինը Կեռան

*Դ. Օրիորդք։ — Նոյն նկարի մէջ՝ իրենց մօր Կեռանի առջև ծնրադիր կեցած են Լևոնի երկու դստերքը՝ Զապել ու Ռիթա, որոնք յայտնապէս կը զանազանին իրենց եղբայրներէն զգեստով, և ոչ թէ իրենց « տարազը նման է տղաներին », ինչպէս կ'ըսէ Մեսրոպ եպս։*

*Նոյն ճերքճակը հագած են սպիտակ գունով. և անոր վրայ անթեզան ու փոքանկեալ պատմուճանը՝ մի և նոյն հարուստ կերպասներէն. մին կանաչ, միւսը կապոյտ ու ծաղկանկար։ Գօտեւործ են. և իրենց վրայ առած կարմիր փիլոններ՝ նման իրենց մօր, որոնք մինչև գետին կ'իջնեն, և ոչ թէ «մինչև ծնկներն իջնող գլխի լաչավը»։ Իսկ իրենց ճակատն ու գլուխը կը զարդարեն ուլունքներ, որոնք երկուստեք գեղեցկահիւս կը կախուին մինչև մէջքը։*

*Ե. Արքայեղբայր։* — *Երուսաղեմեան Թ. 2568 Աւետարանն ունի Ա Հեթմոյ եղբօր և Բ Լևոնի հօրեղբօր «Պարոն Վասակի» նկարը, իւր երկու փոքր զաւակաց հետ աղօթական Յիսուսի առջև, և որոց իւր աջովը կը հովանաւորէ ու կը միջնորդէ Տիրամայրը։ Մէկ կողմէն որդի իշխանի (Կոստանդնի տեառն Պապեռոնի) և ինքն իսկ տէր Ճանճոյ բերդին, և միւս կողմէն եղբայր Թագաւորի, խառն ձև մ'ունի իւր տարազը, տարբեր Լևոն արքայորդւոյն հագածէն, ու գունով արքայական։ Իւր կենդանագիրն արդէն հրատարակուած Մեսրոպ եպիսկոպոսէ*[1], *ես ալ կու տամ հոս լուսանկարէ մը,* Ձև 85։

1. *Մազեր ու Մօրուք բաւական առատ թողուած են, նման եղբօրորդւոյն վրայ տեսածնուս։*

2. *Ներքնակ մ'ունի՝ յար և նման ձևով ու գունով՝ արքայորդւոյ կրածին։ Ասոր վրայ*

3. *Պատմուճանն է առած, նոյնպէս պճղնաւոր անթեզան, կարմրագոյն (ծիրանի), ներքուստ սամուրենիւով ծածկուած, որ կ'երևի առաջակողման ճեղքէն և գօտեւործ է։*

4. *Փիլոնը ձգած է ուսերուն, շատ աւելի կարճ քան արքայականը, արտաքուստ կարմրագոյն, և ներքուստ դարձեալ սամուրենի։*

*Զ. Որդիք արքայեղբօր։* — *Վասակայ երկու որդիքը Կոստանդին ու Հեթում բոլորովին նման հագած են իրենց հօրեղբօրորդւոյն՝ Լևոն արքայի զաւակաց. ապացոյց՝ թէ արքայազն մանկանց ընդհանուր ձևն էր այդ։*

*Մազերն առատ են, բայց ոչ երկար։ Նոյն սպիտակ ճերքճակն է երկուքին վրայ ևս։ Իսկ իբր վերնազգեստ կը կրեն գօտեւործ պատմուճանը, բազկազարդով ու զարդարուն կամարով մը լանջաց վրայ. մեծինը կապոյտ ու շերտաւոր, փոքրինը կարմիր, ու ներքուստ սամուրենի, նման հօրը հագածին։* — *Ոչ այս մանկունք և ոչ իրենց հայրը պսակ չեն գործածեր, որոյ իրաւունք ունենալու չեն,*

1. Ազգ. Հնդ. 1910, բ. 2, էջ 5.



Ձև 85. Վասակ արքայեղբայր և որդիքը

ըստ որում արքայական սերունդ չէին, այլ ազգականք միայն. և անշուշտ գտակ կը դնէին դուրսը, և արքունեաց մէջ բացագլուխ էին[1]։

1. Հմմտ. տստ՝ 234։

## Ե. ՊԱԼԱՏԱԿԱՆՔ

Կիլիկեան ազնուականութիւնը կը կազմուէր՝ ոչ թէ բացառաբար մեր հին նախարարաց պայազատներէն, այլ յաճախ նոր պարոններէ ու պալատականներէ, վարժած արեւմտեան բարքերով ու զգեստներով։ Ասոնց տարազին կ'ակնարկէր Շնորհալին, երբ կ'ըսէր՝ թէ եպիսկոպոսաց որսի երթալն այնպէս է՝ «որպէս թէ զգդակ կարմիր դիցէ



Ձև 86. Դաւիթ արքայահայր

ի գլուխ կրօնաւորն փոխանակ քուսիթայի, և զգեստ քեճեզեայ՝ ընդ ասուոյ և այծեաց[1] »։ Լամբրոնի իշխանորդւոյն՝ ապագայ մեծ եպիսկոպոսի մասին կը կարդանք՝ թէ երբ դեռ հայրենի տան մէջ էր, «ի փաղփուն հանդերձից հրաժարեալ՝» կոպիտներ կը հագնէր[2]։ Եւ Լեոն վերջին երբ եկաւ ընդունել Կիլիկիոյ թագը, «տուեալ բերել հանդերձս գեղեցիկս և պատուականս, ետ արկանել» ազատաց վրայ՝ «ըստ սովորութեան աշխարհին[3] »։

1. Շնրհ. Ընդհ. 42։ — 2. Սմփ. ԺԵ, 15։ — 3. Դարդ. 109. հմմտ. աստ՝ 14։

Շատ անորոշ են այս տեղեկութիւնք ազնուականութեան հանդերձին նկատմամբ. և դժբախտաբար չկան կամ թէ ես չեմ հանդիպած նկարչական ձևերու՝ որ աւելի յստակ գաղափար մը տան մեզ։ Ընդ հակառակն ծանօթ են նկարներ՝ որ կը ներկայացնեն արքունեաց հետ կապուած անձանց տարազներ։ Եւ կը բաժանուին երկու դասակարգի. բուն ազնուականք՝ բարձր պաշտամանց վրայ, ինչպէս էր արքայահայրը, գունդստապլը (սպարապետ), մարաջախտն ու սեննեսկալը (հազարապետ պալատան), և երկրորդական պաշտօնեայք, ինչպէս ջանսըլերը (ատենադպիր) և ուրիշներ։



Զև 87. Յովհաննէս արքայեղբայր

Ա. Ազնուականք։ — Պապեռնի Կոստանդին իշխանի որդի և Ա. Հեթմոյ եղբայր՝ Յովհաննէս արքեպիսկոպոսի Աւետարանը կայ՝ ՉԺԲ (1263) թուականէն[1], յորում կը գտնուին երեք կենդանագրեր. Մատթէի հարիւրապետին և իշխանին՝ լուսանցի մէջ, և նոյն արքայեղբօր՝ կանգնած Ղուկասու առջև և Աւետարանը բռնած, որ թէև առանց անուան՝ բայց ինքն է անկասկած. — ինչպէս Պիծակ Սարգիս ալ ինք զինքը նկարած է 1331ին Մատթէի և Ղուկասու առջև[2]։ — Երեքն ալ համազգեստ, կը կրեն բիւզանդացի պալատականաց տարազը, զոր հայացած տեսանք Լևոն գահաժառանգին վրայ, և նոյնը կը հաստատէ հոս Հեթմոյ եղբայրն ալ՝ իւր դրացի կենդանագրաց հետ։ Ինչպէս ի Կոստանդնուպոլիս, նաև Սսոյ մէջ լոկ պալատական բարձր պաշտօնատարք կը

1. Սեպհ. Գ. Մանուկեանի ի Կ. Պոլիս։ — 2. Գրչ. 1331ի ի Ս. Ղազար։

*հագնէին այս ձևը, զոր Յովհաննէս արքեպիսկոպոս ալ կը կրէ իբրև արքայեղբայր, ոչ միայն նկարիդ մէջ, այլ հաւանօրէն իրապէս ևս, և զոր յառաջ կը բերեմ հոս, Ձև* 87։ *Մի և նոյն տարազը կը կարծեմ տեսնել նաև Դաւթի վրայ, որ քանդակուած է Կոստանդին կաթողիկոսի պահարանին մէջ՝* 1293 *տարւոյն, հեռի աւանդականէն ու թագաւորականէն, ինչպէս ժամանակի հանդերձը կը կրեն հոն ուրիշ պատմական անձինք ևս. կարծես Հայոց թագաւորին «արքայահայր» կամ «թագաւորահայր» իշխանին*[1] *ձևը զգեցուցած են Յիսուս թագաւորի հօր Դաւթի, զոր նոյնպէս կու տամ հոս՝ իւր կարևոր մանրամասնութեանց համար, Ձև* 86։ *Ահա այդ տարազին նկարագիրը։*

1. *Վարսերն առատ ու գանգուր են Դաւթի վրայ, մինչ եպիսկոպոսը կարճ բռնած է իրենը՝ որպէս եկեղեցական։ Չափաւոր մօրուք մ'ալ պահած է Դաւիթ։*

2. *Գտակ մը կը կրէ սա, ցած, շուրթն եզերուած մարգարտով, և ճակատին ուրիշ աննշմարելի ականակուռ զարդ մը։ Ճշդիւ կը համապատասխանէ այս՝ Շնորհալւոյն յիշած իշխանական «կարմիր գդակին», ծանօթ նաև ժամանակակից արևելեան հայ իշխանաց գլխին, ինչպէս տեսանք*[2]։

3. *Պատմուճանը՝ նեղաթեզան մեր երկու Ձևերուն մէջ, աղօտ ծիրանի է արքայեղբօր վրայ, և ունի ոսկի բազպաններ ու բազկազարդն ալ. և կ'իջնէ մինչև գետին, ստորոտը նոյնպէս ոսկւով ու զմրխտով զարդարուած։ Աւետարանի հարիւրապետին հագածը կանաչ է, և իշխանին՝ կապոյտ, պահելով միւս հանգամանքները։ Իսկ Դաւթին փորիբաց կը թուի՝ նման Վասակայ զգեցածին։*

4. *Գօտին նեղ է արքայեղբօր և այլոց վրայ, ու ծածկուած։*

5. *Փիլոնը, ճարմանդուած կրծոց կեդրոնը, շատ պերճ է Յովհաննու վրայ, քան զպատմուճանը կարճ, մանիշակագոյն, և լանջաց դէմ բիւզանդական քառակուսի զարդերն՝ ոսկեհուռ ու ծածկուած կապոյտ քարերով։ Զարդերով հաւասար, հարիւրապետին հագածը կարմիր է, և իշխանին ծիրանի. երկուքն ալ ոչ ճարմանդուած, ինչպէս մեր Ձևոց մէջ, այլ ձգուած ուսոց վրայ։*

6. *Գումարտակն ալ կը կրէ Դաւիթ պարանոցին շուրջ, ինչ որ իրականութենէ հեռի լինելու չէ, գէթ արքայի ազգականաց համար։*

**Բ. Պաշտօնեայք։** — *Հ. Հապեշեան հրատարակեց*[3] *կենդանա-*

1. Նոյն պատիւն ունէր Յովհ. արքայեղբօր հայրն ալ։ — 2. Աստ՝ 217։ — 3. Հնդ. Ամս. 1922, 141։

գիրը Հանէս Ջանսլերի, աղօթական Աստուածամօր առջև, իւր գաղափարած սաղմոսէն՝ զոր գրեր է ՉԼԲ (1283) Թուականին ի Սիս, Բ Լևոնի հրամանաւ։ Ակնարկութիւններէս, «աղաչեմ յիշել զՀանէս և որդին իւր» կամ «զծառայս Հանէս[1]», յայտնի է՝ որ ազնուա-



Ձև 88. Հանէս Ջանսլիր աղօթական

կան մէ չը քարտուղարս։ Սա՝ որ կը ներկայացնէ իւր դասակարգի արքունական պաշտօնէից տարազը, և զոր կու տամ ես նոյն աղբիւրէն, Ձև 88, հետևեալ կերպով զգեստաւորած է։

1. Հնդ. Ամս. 1922, 151.

*Մազեր ու մօրուք չափաւոր բռնուած են։ Մարմնոյն վրայ հագած է ներքնակ մը՝ նեղ ու երկայն թեզանեօք։ Անոր վրայ պճղընաւոր պատմուճան մը, որոյ թեզանիքն արմկները կը հասնին, և ծայրերը ժապաւինեալ։ Ասղնեգործ կամ մարգարտաշար գօտի մ'է կապած։ Եւ վրան առած՝ առանց հանգուցի՝ ծաղկանկար փիլոնը՝ նոյնպէս պճղնաւոր։ Հանդերձին այս վերջին մասն է գլխաւորապէս, որ կը զատէ իւր տարազը ռամկականէն, որ զուրկ էր փիլոնէն, ինչպէս պիտի տեսնենք։*

*Դատելով մեր 90 Զաէն, պէտք է որ միւս ազնուականաց վրայ ևս նկատենք պճղնաւոր ներքնակն ու պատմուճանը, և բոլոր միւս հանգամանքները։ Բայց թէ ունէին պարզ փիլոնն ալ՝ նման Հանեսի, դժուարին է պատասխանել։*

## Զ. ՏԻԿՆԱՑՔ

*Ասոնց հանդերձից ու պճնութեան մասին ևս ունինք ինչ ինչ տեղեկութիւններ, որոնք կու տան մեզ անոնց մերձաւոր գաղափար մը։ Այս դասուն և ոչ անշուշտ ռամկուհեաց կը խօսի Շնորհալին՝ երբ կը յորդորէ, «առաւել քան ոսկւով և արծաթով՝ ամօթխածութեամբ և պատկառանօք զարդարել զանձինս ձեր[1]»։*

*Նոյն հայրապետը տիկնանց ձևն ունէր իւր աչաց հանդէպ, երբ զԵղեսիա կը նկարագրէր՝ «Ոսկետառն և ճամկաւոր — Փողփողելով ի վերջաւոր, — Պայծառազգեստ և պճնաւոր[2]». այսպիսի էր անոնց պատմուճանը։ Եւ Սարգիս մեկնիչ կը բամբասէ կիլիկեցի մեծուհեաց խնամքն «ի բազմազունեան հանդերձս պայծառս՝ զօրէն բոզիցն կերպարանաց»։ Նոյնպէս նաև անոնց պճնումն «ի հիւսս գլխոյն և յոսկեհուռ ծամակալս[3]»։ Ծանօթ էր իրեն նաև անոնց «պարանոցի զարդն[4]», և անոր շինուելու եղանակն ալ, «շար ոսկի ընդ մարգարտոյ խառնեալ[5]», զոր Գր. Սկևռացին քառամանեակ կը կոչէ և կը թուէ հարսանեկան զարդուց մէջ. և անոր հետ նաև գինդ և ապարանջանք[6], հարուստ նկարագրով մը՝ զոր պիտի տեսնենք հարսանեկան հանդերձից կարգին։ Սարգիս վարդապետ կը յիշէ նաև իւր ձաղած կանանց պչրումն «ի սնգոյրս և ի ծարոյրս». և կամ «դեղ երեսաց և մրազարդ յօնից և կարմրութիւն շրթանց[7]», որ կայ ու կը մնայ անընդհատ։*

1. Շնրհ. Ընդհ. 82։ — 2. Շնրհ. Եղես. տող 488-90։ — 3. Սրգ. 372։ — 4. Նոյն՝ 373։ — 5. Նոյն՝ 382։ — 6. Սոփ. Ժ-Ե, 43։ — 7. Սրգ. 372. 373։

*Թագն ալ կը յիշուի երբեմն իշխանուհեաց գլխին։ Վարդան կը պատմէ Բարսեղ կաթողիկոսի Գրիգոր եղբօր համար՝ թէ «տէր էր մեծ զօրաց և բազում ազատաց»․ և լսեր էր՝ այդ ազնուականաց կանանց «հինգ հարիւր թագս երևելիս» կրելը[1]։ Կրնայ թիւս չափազանցուած լինել․ բայց պսակի գործածութիւնը ստոյգ համարելու ենք, հետևողութեամբ արևմտեան իշխանուհեաց օրինակին։ Զայս կը հաստատէ նաև Ուռհայեցին, պատմելով Գող Վասլի մասին, — որ էր «իշխանաց իշխան», և տիրած էր «բազում բերդից և գաւառաց[2]», — թէ կ'իշխէր Բերդուս ամրոցին ու սահմանաց դէպ ի հիւսիս Մարաշոյ․ և յետ իւր մահուան՝ իւր գանձերէն շատ բան կը տանին Անտիոքայ կողմին, և «զթագն կնոջն Վասլին՝» կոմսուհւոյն կը յանձնեն[3]։ Եթէ թագիս գոյութիւնն իրական չլինէր այժմ, ոչ իւր գաղափարը պիտի ունենար և ոչ յիշէր պատմութիւնը, որ անցելոյն մէջ լռութեամբ կ'անցնի այս մասին։*

## Է․ ԶԻԱՒՈՐՔ

*Հին հայ ասպետութեան[4], որ կը վերջանայ իրապէս մեր Արշակունեաց և անուանապէս Սասանեան շրջանին հետ, Կիլիկիոյ մէջ կ'երևի եւրոպական ձևը, Ճիւաորութիւնը[5], որ շատ պատուաւոր աստիճան էր։ Ի սկզբան լոկ զինուորական նկարագրով, յետոյ միջին դարուն զգեցաւ կրօնական հանգամանք մ'ալ․ ուխտեալ զինուորութիւն մը, նպատակ ունենալով հայրենեաց, կրօնից ու տկարաց պաշտպանութիւնը։ Ասոր համար արևմտեայք եկեղեցական արարողութեամբ կու տային զայն, որոյ նման կարգ մը չեմ գտած կիլիկեան մաշտոցաց մէջ։ Ռուբինեանց թագաւորելէն յառաջ՝ Անտիոքայ իշխանէն կ'ընդունէին Հայք այդ աստիճանը[6]․ և յետոյ մեր թագաւորք սկսան տալ, կապելով զայն նշանաւոր առթից հետ։ Այսպէս Հեթում Ա 1259ին գրաւելով Մունդաս բերդը, «արար ձիաւոր» իւր որդիքը Լևոն ու Թորոս[7]․ և 1264ին՝ Լևոն արքայեղբօր Կոստանդին մանկան մկրտութեան օրը «ձիաւորեցուցին» Սմբատ սպարապետի որդիքը Հեթում և Վասիլ[8]։ Լևոն Բ 1284ին Աստուածայայտնութեան տօնին՝ նոյն պատիւը կու տայ իւր Հեթում ու Թորոս որդւոց, ուրիշ իշխանորդւոց և արքունի պաշտօնէից․ և հոն Յհ․ Եզնկացի կ'ատե-*

1․ Վրդ․ Պտ․ 104։ — 2․ Վրդ․ պտ․ 117։ — 3․ Ուռ․ ՇԿԱ։ — 4․ Աստ՝ 83։ — 5․ Լմբ․ Թղթ․ 240։ — 6․ Սիս․ 486։ — 7․ Սմբ․ ԶԸ։ — 8․ Տրգ․ Կիլ․ ԶԺԴ։

*Նարանէ[1]։ Եւ Դարդէլ յաճախ կը յիշէ հայ ձիաւորաց ներկայութիւնը կարեւոր գործոց ու պաշտամանց մէջ[2]։*

*Ձիաւորք իրենց սեպհական տարազն ունէին ամէն տեղ։ Արեւմըտեան ձիաւորաց զանազան կարգեր կային, զգեստին ալ տարբերութեամբ, որոցմէ թէ որո՞ւն կը պատկանէին հայկականք անուամբ ու ձեւով, Հ. Ալիշան չէ գտեր ոչ մէկ յիշատակութիւն ԺԷ դարէն կանուխ, և իրաւամբ կը կասկածի այդ նոր և անապացոյց տեղեկութեան վրայ՝ թէ Ս. Վլասի կարգն ունէին Հայք[3]. յառաջ բերելով նաև նոյն կարգի ձիաւորի մը պատկերը՝ իբրև հայ համարուած եւրոպացի հրատարակչէն, որ սակայն ենթադրական է, և իմ տեսած ուրիշ հրատարակիչ մը կը կոչէ լոկ «Ս. Վլասի ձիաւոր[4]»։*

*Արեւմտեան ձիաւորաց հին ձեւերու մէջ երկու տեսակ տարազ կը տեսնենք. անզրահ՝ քաղաքային կենաց յատուկ, և զրահաւոր՝ պատերազմի սեպհական։ Առաջինն է՝ որով կ'աւանդուի ձիաւորութիւնն ԺԳ դարու մանրանկարի մը մէջ[5]. և այս է՝ զոր յիշեց կիլիկեան թագաւորօրհնէքն ալ, նշանակելով անոր երեք գլխաւոր մասերը, «փիլոն, ջաղջեր և մահմէզ[6]», զորս Հ. Ալիշան ալ կը բացատրէ[7]։ Զգեստաւորման կարգով՝ առաջինն է*

*1. Պարեգօտը, որ չէ նշանակուած. բայց յիշեալ մանրանկարին մէջ կայ ու պճղնաւոր է ըստ գաղիական սովորութեան՝ որ կը սկսի ԺԲ դարէն[8]. բայց մերը նախընթաց կարճն էր, որով ջաղջերը (վարտիք) տեսանելի էր և կարեւորութիւն ստացած։ Արեւմտեան — որով և հայ — ասպետաց վրայ համակ սպիտակ ու կտաւի էր պարեգօտն ի նշան մաքրութեան[9]։*

*2. Գօտի մը, նոյնպէս սպիտակ[10], կը զսպէ զայն յիշեալ մանրանկարին մէջ։*

*3. Փիլոնը նոյնպէս պճղնաւոր է հոն, ամփոփուած թիկանց ետև, և երիզներով հանգուցուած լանջաց վրայ, և անտարակոյս դարձեալ խորհրդաւոր ճերմակ գունով։ Ըստ Լուանդրի՝ կը կոչուէր «պատուոյ կրկնոց», և կը կրէին՝ երբ զրահ չհագնէին[11]։ Ընդ հակառակն գերման Տաճարական ասպետք զրահաւոր են և ունին զայն, բայց կարճ՝ մինչև սրունից կէսը, ինչպէս կարճ է անոնց պարեգօտն ալ[12]։ Նոյնպէս կը համարիմ նաև հայ ձիաւորացը։*

*4. Ջաղջերը (պրս. չախչիր=անդրավարտիք[13]) սովորական*

1. Սիս. 486։ — 2. Դարդ. 46, 47, 54, 55, 68, 69, 106։ — 3. Սիս. 487։ — 4. Med. Ev. տե. 42, — 5. Lacr. Mil. 150։ — 6. Ալտ՝ 245։ — 7. Սիս. 481, — 8. Quiche. 147, — 9. Lacr. 160։ — 10. Անդ։ — 11. Louand. I, 99։ — 12. Pulle, 147։ — 13. Գ.Հ. 381։

*վարտեաց տեղը կը բռնէր, և հին նկարագրի մը մէջ կը սահմանուի ասպետաց վրայ՝ «գօրշ կերպասեայ վարտիք[1]»։*

5. *Մահմէզը (արբ. միհմազ) կը նշանակէ կօշկաց խթանը, և ընդարձակ իմաստով՝ խթանաւոր կօշիկը, որ ձիաւորութեան նշանն էր նաև ձիէն հեռի։ Վերոյիշեալ մանրանկարին մէջ երկու հոգի խոնարհած՝ ձիաւորին կօշկաց ետև կը կապեն խթանները, որոնք աստղանման են, հաստատուած աղեղնաձև ձողի մը վրայ՝ որ կը գրկէ կօշկին կրնկակողմն այժմեան ոճով։*

6. *Սուր մ՚ալ կը կապուի նոյն մանրանկարի ասպետի մէջքին, նաև ըստ պատմութեան[2], և լատին մաշտոցի կանոնին[3], զոր միր թագաւորօրհնէքը չէ յիշած, որովհետև արքայական սուսերը պիտի տային յետոյ. մինչ բուն ձիաւորք զայն ալ կը կրէին։*

*Պատերազմի ժամանակ ձիաւորք իրենց պարեգօտին ներքև, որ միշտ կարճ է հին ձևերու մէջ, ինչպէս և հեծելութեան պահուն, — և զոր կը կրկնէ նաև Լուանդը, և կը նկարագրէ զարդարուած ոսկւով, արծաթով, մարգարտով ու կարմիր կամ ծիրանի գունով[4], — զրահ կը հագնէին՝ որ կը ծածկէր ամբողջ մարմինը, և գլխին կը դնէին երկաթի սաղաւարտ պէսպէս ձևերով։*

## Ը. ՌԱՄԻԿԸ

*Իւր տարազը պիտի ձևեմ Պիծակ Սարգսի մանրանկարուց վրայ, որ՝ ինչպէս յառաջ ալ տեսանք[5], ապաժամութեան դրութիւնը կը գործածէ՝ ուրիշ արևմտեան նկարչաց պէս, աւետարանական անձանց շատերուն զգեցնելով իւր ժամանակի հանդերձները, որոնք կը հեռանան հին նկարչութեան աւանդական ձևերէն։ Այս մասամբ երախտապարտ ենք իրեն։ Այդ անձինքն են. Յիսուսի հիւրընկալ փարիսեցին, Զև* 89. *Մատթէի լուսնոտին աղաչաւոր հայրը, Զև* 90. *Ղուկասու երիքովեան կոյրը, Զև* 91. *և Յովհաննու ի ծնէ կոյրը, զոր Յիսուս կաւով կը բուժէ, Զև* 92։ *Բաւական ճոխ են այս նկարները՝ կիլիկեցի ժողովրդական տարազին քննութեան համար. և ատոնց հետ կը զուգուի մեր* 75 *Զևի երիտասարդ հովիւն ալ[6], զոր նկարիչն արևելցոյն հետ բերեր է Կիլիկիայէն՝ յերկրպագութիւն Փրկչին։ Ադոնց նկարագիրն է հետևեալը։*

1. Lacr. Mil. 160. — 2. Նոյն՝ 161. — 3. Նոյն՝ 149. — 4. Louand. I, 98-99. — 5. Ստ՝ 225. — 6. Ստ՝ 223.

1. Հերաց մասին խօսելով Լամբրոնացին, կ'ըսէ՝ թէ առաքելական պատուիրանին համեմատ՝ «ամենեցուն հասարակաց արանց հարկ է զաւելորդսն ի հերացն յապաւել»։ և թէ այդ էր ժամանակի «փռանգաց» կամ արևմտեայց սովորոյթն ալ, որոնք «առանց յաւելուածոյ հերաց» էին։ Կ'իմացուի այս խօսքերէն՝ որ Հայոց մէջ օրինազանցութիւնը կար, ինչպէս յայտնի իսկ կը յիշէ «Նշկահելն զօրէնս[1]», զոր արևմտեան հայութեան մասին իմանալու ենք։ Վասն զի ինքն իսկ վկայեց կիլիկեցի ազգայնոց փրանկ ձևանալը[2]։ Նոյնը կը հաստատեն ապա՝ Բարսեղ Մաշկևոր, գրելով 1325ին՝ թէ տաճիկ լրտեսներն անգամ ի Կիլիկիա Հայոց նմանելու համար՝ կը փոխէին իրենց ձևը, «զվարս կտրելով և զգեստս փոխելով[3]»։ և Պիծակի բոլոր ձևերը, որոնք ունին չափաւոր մազեր։ Պիտի տեսնենք յետոյ հերաց յապաւման արարողութիւնն ալ։

Մօրուաց զանազանութիւն մ'ևս կայ մեր Ձևերու մէջ. փարիսեցին և լուսնոտին հայրը մօրուանի են՝ իբր չափահաս անձինք. իսկ երկու կոյրերն ու հովիւը լերկ են։ Ոչ Աւետարանի նկարագրին և ոչ մեր նկարներու մէջ կոյրերը մանուկ չեն. և Յովհաննու յիշածին համար յայտնապէս ալ գրուած է՝ թէ «ի չափ հասեալ է»։ Հետևաբար այդ անձինք ածելուած են, հաստատելով Կիլիկիոյ հայ երիտասարդաց նոյն սովորութիւնը։

2. Գլխանոցի այլ և այլ ձևեր կ'երևին մեր աւետարանական անձանց վրայ։ Գդակ մը կայ Յովհաննու կուրի գլխին, զմբեթարդ ու բարձրաշուրթն, որ նոյն է ժամանակակից արևելեան Հայոց վրայ տեսածնուս հետ[4]. և միանգամայն եւրոպական է, զոր կը կրեն գերման կոմս մը՝ ԺԲ դարէն[5], 1362ի յոյն գրչագրի մը մէջ՝ Յոբայ բարեկամաց մին[6], ԺԵ դարու արևմտեան ձևեր[7], և գաղիացի տիկնայք՝ 1259, 1260 և 1261 տարիներու նկարուց մէջ[8]։ — Երկրորդն է գանկին ձևով ու չափով, զոր Պիծակ կը դնէ Մաթէի զոյգ կուրաց միոյն (միւսը բացագլուխ է) և Ղուկասու կուրի գլխին (Ձև 91), — կ'երևի՝ աղքատաց յատուկ էր, — առաջնոյն սպիտակ գունով, և վերջնոյն՝ կապոյտ։ — Երրորդն է կնգղաձևը, կարմրագոյն, որ կը տեսնուի նաև արևմտեան մանրանկարուց մէջ, մերթ կպած հանդերձին, ինչպէս Ժ դարու գրչագրի մը հովուաց վրայ[9], ու կիլիկեան շրջանիս գաղիականաց[10]։ Եւ մերթ անջատ, որոյ գործա-

1. Լմբ. Պտ. 142։ — 2. Աստ՝ 232։ — 3. Հյպտ. 536. Մեկ. Մրկ. Թ. — 4. Աստ՝ 217։ — 5. Krets. տխ. 36։ — 6. Omont, տխ. 87։ — 7. Lacr. Moeurs. 31, նոյն՝ Mil. 72։ — 8. Dem. 99, 101, 106։ — 9. Lacr. Ful. 11։ — 10. Quiche. 150։

*ծուխեան յարևմուտս կը վկայէ Ցոհան Պլանկարպինցի 1246ին*[1], *և զոր կը տեսնենք ԺԳ դարու գաղիական գրչագրի մը*[2], *Հռովմայ Ս. Սեղբեստրոսի որմանկարի մը մէջ՝ ԺԲ–ԺԳ դարու, և բիւզանդական կայսեր երկու պաշտօնէից գլխին*[3]*։ Ցայտնի է ուրեմն աստր ծագումն ալ, և առելի ընդարձակ գործածութիւնը քան Հռվուաց վրայ։* — *Զորրորդ ձևն է փարիսեցւոյն դրածը* (*Զև* 89), *որ մեզ ծանօթ արև- ւելահայ փակեղն է*[4], *կապոյտ գունով, և որ ի Կիլիկիա ևս մտած լինելու է, դատելով փարիսեցւոյն կիլիկեան տարազէն։ Իսկ բուն արաբական գլխապատը չկար հոս. որով վերոյիշեալ տաճիկ լրտես- ներն ալ կու գային՝ «զգլխապատն քակելով»։*



*Զև* 89. *Փարիսեցի պիծակի*



*Զև* 90. *հայր՝ լուսնոտին*

3. *Ներքնակն յայտնապէս կը ցուցնէ իւր երկար ու նեղ թեզա- նիքը մեր Զևերէն երեքին մէջ. փարիսեցւոյն՝ կարմիր ու զարդա-*

1. Plan. *յօդ.* I. — 2. Louand. I. — 3. Grün. 190. — 4. Ա*ստ*՝ 202.

*րուած ոսկի կոճակներով*[1] (Ձև 89)․ *լուսնոտին հօրը՝ բաց սրճագոյն* (90)․ *Երիքովի կուրին՝ կարմիր* (91)․ *Ցովհաննու կուրին՝ կապոյտ* (92)․ *իսկ հովուին աննշմարելի է* (75)։

4․ *Պարեգօտն ալ կայ առաջնոյն վրայ, կարճ ու ժապաւէնեալ անհաւասար թեզանեօք՝* 89, 90 *և* 91 *Ձևերու մէջ, և երկայնաթեզան՝* 92 *ու* 75 *Ձևերու մէջ, որով յայտնի է՝ թէ երկուքն ալ կային, առաջինն աւելի ազնիւ ու համաձայն ազնուականութեան*[2], *ծանօթ նաև արևմտեան նկարուց մէջ*[3], *և երկրորդն՝ աւելի ռամկական։ Լուսնոտին հօրը պճղնաւոր է՝ նման ներքնակին, որ բարեկեցիկ անձանց յատուկ լինելու է*[4]․ *և հովուին՝ որ միւս նկարուց մէջ միակ ամբողջահասակն է, կարճ ու ծնկներէն վար կ'իջնէ, լինելով ռամկին աւելի ընտանի ձևը, զոր պիտի տեսնենք նաև Ժ յօդուածիս մէջ, և որ նմանութիւն էր ու կ'երևի բիւզանդական*[5] *և ուրիշ արևմտեան*[6] *նկարներու մէջ ևս։ Կիլիկեան պարեգօտը փոքրանկեալ է միշտ, հակառակ արևելահայ թաթարակերպ փորիբացին*[7], *և լանջաց վերև ճեղք մը կայ՝ հագուիլը դիւրացնելու համար, որ դարձեալ արևմտեան է*[8]։ *Երկայնաթեզան պարեգօտն ունի նաև բազկաց վերին զարդը* (Ձև 92, 75), *որ չի տեսնուիր այլոց վրայ։ Յիշեալ արևմտեայք ևս, ըսինք, կը կրեն այս երկրորդ պարեգօտը, և կամ ասոր տեղ հին կարճ մեկնոցը՝ կոճկուած աջ ուսին, որ կը տեսնուի նոյն նկարուց մէջ, և մեր քով աներևոյթ է ժողովրդեան վրայ։*

*Գոյներու զանազանութիւն մը կայ մեր Ձևերու մէջ․ փարիսեցւոյն հագածը բաց սրճագոյն է․ լուսնոտին հօրը՝ կարմիր և ատեղազարդ․ Երիքովի կուրին՝ կանաչ, երեքն ալ հակադրութեամբ ներքնակի երանգին։ Իսկ միւս երկուքին գոյները խառն են․ հովուին աջակողմեան կէսը մինչև մէջքը, և ձախակողմեանը մէջքէն վար՝ կանաչ է․ հակառակ մասունքը կարմիր, և զարդերը դեղին են․ իսկ Յովհաննու կուրին աջակողմը կարմիր ու ձախակողմը կանաչ է․ և մէջքէն վար, անտեսանելի մնացած, անոր հակառակը լինելու է։ Այս խառնուրդը, որ կը յիշեցնէ արևելեան կանացին*[9], *երիտասարդական հասակին հետ կապուած կը թուի ի Կիլիկիա։*

*Մեր Ձևերու ոչ կիսիրան պարեգօտից և ոչ լուսնոտին հօր վրայ չենք տեսներ գօտին, զոր անպակաս կը կրեն արևմտեայք։*

1․ Լմր․ Ձեռ․ ԺԴ, 20 *կ'ըսէ՝ թէ Կոստանդիանոս Փրկչին բևեռներէն մին իր ձիոյն «սանձուց կռճակս» շինելու տայ, որ է օղ։* — 2․ *Հմմտ․ աստ՝* 259։ — 3․ Quiche․ 150․ — 4․ *Աստ՝* 259։ — 5․ Schl․ Epop․ 1, 513․ III,149։ — 6․ Quiche․ 137, 150․ Grün․ 190․ Omont․ *տխ․* 87 *են*, — 7․ *Աստ՝* 222, — 8․ Lab․ II, *տխ․* 51։ — 9․ *Աստ՝* 226,

5. Վարտիքը նեղ ու պիրկ է վերոյիշեալ արևմտեան ձևերու մէջ, որոնք երբեմն զանկապաններով ալ պատուած են[1]։ Մեր հովիւը ցոյց կու տայ միայն վերջինները։

6. Կօշիկները կը ծածկեն հովուին ամբողջ թաթերը՝ նման արևմտեայց. նոյնպէս կը թուին և լուսնոտին հօր վրայ, որոնք կրնան



Ձև 91. Կոյր Ղուկասու　　　Ձև 92. Կոյր Յովհաննու

նաև աւելի ցած լինել, ինչպէս կը նկարէ Պիծակ՝ Յովսէփ Արիմաթացւոյն հագածները։

7. Մատանին ծանօթ է հոս նաև իբրև առնական զարդ, զոր Սսոյ 1345ի մաշտոցը[2] փոխանակել կու տայ պսակելոց։

1. Lab. II, տխ. 51. — 2. Ի Ս. Ղազար.

## Թ. ԿԱՆԱՅՔ

*Սարգիս Պիծակ կու տայ մեզ կիլիկեցի կնոջ հանդերձին օրինակը, Ղուկասու այն տեղւոյն քով՝ ուր կ՚ըսէ. «Արարէք ձեզ քսակս առանց հնանալոյ»։ Իշխանուհի մը չէ, այլ զարդարկոտ մեծատուն մը, զոր յառաջ կը բերեմ հոս, Ձև 93։ Թէ սա իրապէս կիլիկեան տարազն է, յայտնի է բազկազարդէն՝ որով կը համեմատի առնականին հետ[1], և ուրիշ հանգամանքներէն՝ զոր պիտի նկատենք։*

1. *Վարսերը սանդրուած՝ կը ծածկեն ականջին կէսը, և հիւսակ մը կը կազմեն ծոծրակին վրայ։ — Բացագլուխ է այս կինն ալ՝ նման իւր արևելեան քրոջ[2], որ նոյնպէս հասարակաց սովորութեան մ՚արդիւնք է։ Բայց ինչպէս միւս կողմ, հոս ալ կային անտարակոյս դաս մը, որոնք կը ծածկէին իրենց գլուխը կոզպատով[3], որ է կտաւ կամ պաստառ, ինչպէս զգալի է նաև բացատրութեանս մէջ. «կին կոզպատեալ գլխով մտցէ յեկեղեցին, և ոչ բացաւ գլխով[4]»։*

2. *Ներքնակը, թանձր կանաչ գունով ու պճղնաւոր, ցոյց կու տայ երկար թեզանիքը՝ ժապաւենով աւարտած, և քղանցին ծայրերը։ Տնէն դուրս կիլիկեցի կինը*

3. *Պարեգօտ մ՚ալ կը հագնի, քան զներքնակը կարճ, փորանկեալ, լանջաց վերև ճեղքուած՝ կիլիկեան ոճով[5]։ Մեր Ձևին մէջ կարմրագոյն է՝ ոսկի աստղերով, ու բազկաց վերին զարդով։ Տեսած եմ Գալիանոյի Ս. Վինկենտ եկեղեցւոյն խճանկար մը ԺԲ դարու, յորում կանայք ունին նոյն աստեղազարդ ու բազկազարդ պարեգօտը, բայց թեզանեաց ծայրերն յանկարծակի սաստիկ լայնցած են[6]. լանջաց վերին ճեղքը կ՚երևի արևմտեան ձևերու վրայ՝ ԺԳ դարու սկիզբը[7]։ Յայտնի է ուրեմն կիլիկեանի պաստառին ու հանգամանաց եւրոպական ծագումը։ Ասոր վրայ կը յաւելուին երբեմն նկարէն զարդեր ևս՝ ըստ Գև. Սկևռացւոյն, որ մեկնելով Եսայեայ «ոսկեճամուկ» բառը, կ՚ըսէ. «տրեզն (պրս. տերզ = կարան, կցուած) է՝ խայտիւն յուսս և ի կուրծս[8]»։*

4. *Գօտին, նեղ ու ծածկուած հանդերձին խորշին մէջ, կը գործածուի հոս, հակառակ արևելեան հայուհւոյն գօտելուծութեան։*

1. Ալտ՝ 241, 254, 258։ — 2. Ալտ՝ 226։ — 3. Յայտն. Տրէ ԻԱ։ — 4. Մարթին, ի Հյկզ։ — 5. Հմմտ. աստ՝ 266։ — 6. Jacq. Icon. տխ. 165։ — 7. Նոյն՝ 189։ — 8. Սկև. Եւ. 73։

Գօտևոր են նաև Ս. Վինկենտի յիշեալ կանայք և առ հասարակ եւրոպուհիք՝ որքան կարողացայ տեսնել նկարուց մէջ։

5. Կօշիկները կ'երևին մեր Ձևին մէջ, սրակտուց, և թաթը ծածկելով ոչ ամբողջապէս, այլ մինչև կէտ մը։

6. Օղեր կը կրէ մեր կիլիկուհին, որմէ կը կախուի խաչաձև և հաւանօրէն ականագործ զարդ մը։ Գև. Սկևռացին ալ հարսանեաց առթիւ կը յիշէ գինդը[1], որ կը մնար միշտ կնոջ ականջին, ինչպէս արևելակողմը կ'ընէին[2]։



Ձև 93. Կին մեծատուն

7. Մնգոյր ու ծարիր իրենց դերն ունին հոս ալ, որոյ դէմ կը ստիպուի պայքարիլ Շնորհալին, գրելով առ կանայս. «Մի՛ ոք ի գայթակղութեան պատճառս մեղաց անմիտ երիտասարդաց[3] այլագունեսցէ զգոյն երեսաց իւրոց օտար դեղօք»։ Ու Լամբրոնացւոյն ալ ծանօթ են կիլիկուհեաց «դէմք պաճուճեալք և գունեալ այտքն[4]»։ — Տարսոնի առաջնորդը նոյն գոյներու հետ կը յիշէ ծաղկանց գործածութիւնն ալ, ըսելով՝ թէ «գեղն... ծաղկօք և երանգօք նկարի ի կինն[5]»։ Տեսանք՝ որ արևելեան Հայք ծաղիկները կը վարսէին հերաց հիւսակներուն մէջ[6]։ Նոյնպէս էր անտարակոյս ի Կիլիկիա ևս, գլուխը լինելով միշտ իրական ծաղկանց ընդունակ մասը։

1. Սկև. Պսկ. — 2. Անդ՝ 220. — 3. Շնրհ. Ընդհ. 82. — 4. Լմբ. Ատկ. Է. — 5. Նոյն՝ ԼԱ. — 6. Անդ՝ 197.

## Ժ. ՄԱՆԿՈՒՆՔ

*Յովհաննէս արքայեղբօր ծանօթ Աւետարանը[1] կու տայ մեզ զոյգ մը մանրիկ լուսանցանկար, որոց նիւթ են Յիսուսի օրհնած մանկտին՝ երկու աւետարանչաց մէջ։ Նկարիչը Կոստանդին՝ ուզեր է այդ ձևերով ներկայացնել ժամանակի հայ մանկութեան կրկին վիճակները. մին արբունքէն յառաջ և միւսը յետոյ. ըստ այսմ անոնց*



Ձև 94. *Օրհնութիւն մանկանց ըստ Մատթէի*

*տարազներն ալ կը տարբերին իրարմէ։ Ես յառաջ կը բերեմ այդ նկարները մեծցուցած, Ձև* 94 *և* 95։

1. *Հերաց մասին Սսոյ* 1345*ի մաշտոցն (ի Ս. Ղազար) կը վկայէ՝ թէ մանկանց վրայ նախ երկար կը ձգուէին և ապա կը յա-*

1. Աւտ՝ 257։

*պաւուէին – չկրցայ ճշդել՝ ո՛ր տարիքին – յատուկ արարողութեամբ մը, որոյ կանոնին գլուխն է, «Աղաւթք ի հարթել տղային». յետ որոյ կը յաւելու. «Եւ ապա հարթէ քահանայն զտղայն խաչանիշ, աս(ելով)». և ուրիշ բան չկայ։ Կանոնս առնուած է յոյն մաշտոցէն[1], և ի նպաստ սովորութեան մը՝ որ միանգամայն հայկական էր,*



Ձև 95. *Օրհնութիւն մանկանց ըստ Մարկոսի*

*և որոյ մասին ծագած վէճը տեսանք արաբական շրջանին[2], որ հոս դադրած և հաստատուն ոճ մ'առած է։ Մեր կրկին նկարները կը համաձայնին մաշտոցի սահմանին հետ.* 94 *Ձևի մանկունք դեռ հերաւոր են, արձակ ձգուած ծոծրակին վրայ, մինչ* 95 *Ձևի պատանեակք անգէս և արդէն յապաւուած են։*

1. Goar. 306։ — 2. Աստ. 200։

2. Պարեգօտին ալ զանազանութիւն մը կայ։ Առաջնոյ վրայ տակաւին պճղնաւոր է այն մանկական ոճով։ Իսկ վերջինք կարճ բռնած են, որ է առնական ձեւ՝ զոր տեսանք մեր յօդուածին մէջ։ Նկարիչը կը զատէ անոնց գոյները, երկուքին մէջ ևս մին կանաչ և միւսը կարմիր գծելով։ Պատանեակներն ունին նաև վերին բազկազարդը, թէ այն և թէ բազպաններն ոսկեգոյն։ Այս պարեգօտին գեղեցկութիւնը կը յիշէ և Շնորհալին, յորդորելով երիտասարդներն իմաստութիւն զգենուլ, և «Մի՛ զպատմուճանըս բազմազարդ՝ — Որ ըզտըղայս առնէ զուարթ[1]»։

3. Գօտին կայ ու կ'երևի երկու նկարներու մէջ ևս։

4. Կօշիկներն ալ, երեքին վրայ կարմիր, միոյն կանաչ, և չափահասիցն աւելի տեսանելի, կը ծածկեն թաթերն ու սրունից մէկ մասը, հաւանօրէն անջատ զանկապաններով։

5. Մանեակ մը՝ կը կազմէ մեծատանց կամ ազնուական մանկանց վզի զարդը, զոր կը յիշէ Լամբրոնացին, գրելով. հարք «յանչափ զեղ մանեակ ի պարանոցսն արկանեն» որդւոց[2]։ Յայտնի է բացատրութենէս՝ որ այդ զարդը կ'իջնէր լանջաց վրայ. և անոր նիւթն էր ոսկին, ինչպէս նոյն մեկնիչը կը հաստատէ այլուր աւելի մանրամասնօրէն. «Մանեակ ոսկի արկեալ ի պարանոցն ի վերայ լանջացն, սփռի առաջի աչացն, և մանուկն ի նայելն վայելչացեալ բերկրի[3]»։

## ԺԱ. ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆՔ

Որքան ժամանակաւ մերձաւոր միզ, այնքան նկարագրութեամբ աղքատ է կիլիկեան զինուորութեան տարազը։ Իբր գրաւոր յիշատակարան՝ ունինք Սմբատայ պատմութեան յաւելուածին վկայութիւնը, թէ Լևոն Գ օգնութեան կ'երթայ Թաթարաց, բանակով մը «հեծելոց ձիաւորաց մեղեխաւոր ԴՌ (4000), հետևակաց Ռ (1000), չարխողայ ԴՃ (400), և այլոց արուեստաւորաց բազում՝ վասն բերդից առնլոյ[4]»։ Հոս երկու գլխաւոր խմբեր կան, հեծելազօրաց ու հետևակաց. և վերջիններէն են, զինուց տարբերութեամբ, նաև չարխողք կամ «չարկընկէցք[5]», որ են անուաւոր բաբան գործածողները, որոնք «չորս հարիւր» էին նաև Արաբաց քով՝ ըստ Լաստիվերտցւոյն[6]։

1. Շնրհ. Զափ. 331. — 2. Լմբ. Առկ. Ա. — 3. Անդ՝ Գ. — 4. Սմբ. ՁԾԱ. — 5. Տղ. Ողբ, տող 1464. — 6. Լաստ. 69.

Այս տեղեկութենէն զատ, որ հանդերձից բնաւ չի ակնարկեր, այլ կը խօսի բանակի կազմութեան մասին, ունինք Վարդանայ զրահաւոր կենդանագիրը՝ Կոստանդնի ծանօթ պահարանին վրայ[1], Ձև 96, որ կը ներկայացնէ կիլիկեան զինուորական տարազը. բայց ոչ սոսկական զօրաց, այլ սպայից, որոց յատուկ էր զրահը, ինչպէս կը զգացնէ Դաշանց Թուղթը, Կոստանդիանոսի երևակայական պարգևաց մէջ յիշատակն ընելով նաև «զրահից սպայից[2]», թէև չկարենանք բացարձակ իմաստով առնուլ զայս։ Վարդանայ հագածը մեծապէս կը նմանի բիւզանդականին՝



Ձև 96. Ս. Վարդան ըստ պահարանի Կոստանդնի

զոր կը տեսնենք Բարսեղ կայսեր ծանօթ վկայաբանութեան մէջ[3], Յեսուայ և անոր հետ խօսող հրեշտակին վրայ[4], նոյնպէս ս. Դեմետրիոսի և Թէոդորոսի[5] (ԺԱ–ԺԲ դար), որոնք աստիճանակից են մերս Վարդանայ։ Մեր նկարագրին մէջ պէտք է զատենք ասոնց տարազը սոսկական զօրաց հագածէն։

**Ա. Սպայք։** — 1. Հերք և Մօրուք սովորական քաղաքացւոց կրածէն չեն տարբերիր Վարդանայ վրայ, ուր բիւզանդականք անմօրուս են, հաստատելով մեր Ձևի տարազին հայկականութիւնը։

1. Աստ՝ 234։ — 2. Արրտ. 387։ — 3. Աստ՝ 199։ — 4. Menol. 3։ — 5. Schl. Epop. III, 129, 293։

2. Վերտ կամ հիւսուածակերպ գլխանոց մը կը ցուցնէ Վարդան, որ կը նշմարուի այս շրջանիս գերման ու գաղիացի սպառազինաց ոմանց վրայ ևս, սաղաւարտակրաց հետ միասին[1]։ Բայց վերջինս ալ կար մեր քով, որով Գր. Տղայ կրնար գրել. «Մ՛ուր զրահաւորք սաղաւարտին[2]». անշուշտ այս ալ նման բիւզանդականին, կնգղաձև ցած, և ետևէն վզանոց կախած, ինչպէս կ'երևի Ցեսուայ վրայ, և ուրիշ եւրոպացւոց՝ զոր յիշեցի[3]. և որ այժմ կոյրտակ[4] (լծ. յն. κορύθος) ալ կ'ըսուի Դաշանց Թղթէն։

3. Պարեգօտ մ'ունին Վարդան ու բիւզանդականք, որոյ թեզանիքն առաջնոյն վրայ կը հասնին աբմկներէն վար, և վերջնոց՝ մինչև դաստակները. իսկ ստորոտը՝ ծնգաց մօտ, զորս բաց կը թողուն, և որոյ նման լինելու է կիլիկեանն ալ։

4. Զրահը կ'անցնի պարեգօտին վրայ, տախտակաձև լանջաց դէմ, և շերտաձև մէջքէն վար ու բազկաց վրայ, ուր մինչև արմկները կը հասնի, և քղանցի ծայրը տեսանելի կը թողու։ Այսպէս է Վարդանայ և բիւզանդացւոց հագածը. ոմանց տախտականման լանջաց վրայ և ոմանցը համակ շերտաւոր, նոյնպէս և ուրիշ արևմտեայց[5]. Վկայաբանութեան հրեշտակին ու Ցեսուայ զրահք ոսկեգոյն են։

5. Գօտին կը շրջապատէ զրահը, աւելի կամ պակաս նեղ։

6. Վարտիք մը, շատ պիրկ, կը ցուցնէ իւր գոյութիւնը վերջին երկու անձանց վրայ, մին կանաչ արծաթախառն, և միւսը՝ կանաչ։

7. Փիլոնն ալ կայ մեր ու բիւզանդեան Ջեերու վրայ, կոճկուած լանջաց մէջտեղ, և կ'ամփոփուի թիկանց ետև, իջնելով ծնկներէն աւելի կամ նուազ վար։ Հրեշտակին կապոյտ և ոսկեշող է. (Ցեսու չունի փիլոն)։ Այս հանդերձը յիացորդ է հին հռովմէականին, զոր ստացան Գերմանք ու Գաղիացիք ևս[6]։

8. Կօշիկները բիւզանդականաց վրայ կը ծածկեն զանկապանով մինչև սրունից կէսը, հրեշտակին կարմիր և արծաթազարդ, ոսկի խրացով շրջապատուած. իսկ Ցեսուին արծաթագոյն։

9. Սուր մը բռնած են Վարդան և միւսերը, որ կը պահէ ժամանակիս նկարագիրը, ուղիղ երկսայրի ձևով։

Բ. Զինուորք։ — 1. Թէ ի՛նչպէս էր Կիլիկիոյ մէջ սոցա համազգեստը, ոչ մէկ յիշատակ կամ նկար ունինք դժբախտաբար։ Բայց սոր վրայ ևս կրնանք որոնել առանց խաբուելու՝ եւրոպականին

1. Hot. II, տխ. 12, 20։ — 2. Տղ. Ողբ, տող 1465։ — 3. Անդ՝ 209։ — 4. Հյկզ. կը գրէ կորդակ։ — 5. Hot. II, տխ. 6, 8, 10, 12, 20 ևն։ — 6. Անդ՝ տխ. 10, 20. սատ՝ 168, 170։

*ազդեցութիւնը. և այն ժամանակ կ'ունենանք մերձաւոր գաղափար մը։ Ժամանակիս բիւզանդացի և արևմտեան հեծելազօրքը սովորաբար չերտաւոր կը տեսնուին, առանց փիլոնի[1]։ Կիլիկեան այրուձին ևս կրնայ նոյնպէս հագած լինել. վասն զի Գրիգոր Տղայի վերոյիշեալ խօսքը՝ «Ջրահաւորք սաղաւարտին», այսինքն զրահ ու սաղաւարտ կրողներ, չի սահմանափակուիր սպայից վրայ, այլ ընդարձակ նշանակութիւն ունի։ Ասոնց զէնքն էր սուրը, և մեղեխ՝ ըստ վերոյիշեալ վկայութեան Սմբատայ, զոր գաղիացի հրատարակիչը լախտ[2] կը թարգմանէ. և որոյ հետ կը համաձայնի մեղեխին հին նշանակութիւնն ալ, կացնի կոթ[3], որուն կը նմանէր ՝լախտը. ձող մը, բռնելու կողմը նեղ, հակառակը ստուար կամ գնդաձև, և յաճախ ծածկուած երկաթի փշերով, որով կը զարնէին թշնամւոյն։*

2. *Գալով հետևակաց, ասոնց տարազը քաղաքականէն քիչ կը տարբերի բիւզանդականաց վրայ[4]. այսինքն պարեգօտն աւելի կարճ է, մինչև ծնկներէն վեր, ու գօտևոր. և պատուած են հռովմէական կրկնոցին* (toga) *մէջ. կօշիկներ զանկապանով, և անսքող գլխով։ Նաև կիլիկեան զօրացը նմանելու է մեր քաղաքականին։*

*Ասոնց զէնքերը կը բաժնուին զանազան դասակարգի։ Ոմանք Նիզակ ու բոլորշի[5] վահան կը գործածէին, ուսկից Գր. Տղայի բացատրութիւնը՝ «Նիզակակիրքն վահանին[6]», որոց առաջինն ըստումբ ալ կոչուած է Դաշանց Թղթէն։ — Ոմանք կը կրեն աղեղն ու կապարճ։ Այսպէս Շնորհալին կ'արգելու քահանայից ճանապարհորդել՝ «ըստ զինուորութեան կարգի կապարճիւք և կամ կազմեալ սուսերաւ[7]», երկուքն անբաժան իրարմէ։ Եւ երբ Լևոնի նուիրակները ձերբակալեցին զԳրիգոր Փարավէժ Հռոմկլայի մէջ, ժողովուրդը հայրապետին օգնութեան վազեց, և «երեք օր նետելով մարտեան» բերդին դէմ[8]։ — Պարսն ալ ի սովորութեան է դեռ, որով Գրիգոր Տղայ կը հարցնէ. «Ո՞ւր պարսաւորք ճահողակին[9]»։ — Դաշնակ կամ հին դաշոյնն ալ կայ տակաւին, և կարծեմ կը գործածուի անոցմէ՝ որ սուր չեն կրեր. Մանտալեան եղբարց մին Թորոսի կը նուիրէ «դաշնակ մի պատուական[10]», այսինքն ճարտարագործ։ Իսկ սուրը կը պահէ իւր ուժը, որով Հեթում Ա «սրոյ ճարակ» կու տայ ապստամբ կոստանդին Լամբրոնացւոյն զօրքը[11]. և Սմբատայ յաւելուածը բուր կը կոչէ զայն Հեթմոյ ձեռքը՝ պատերազմի մէջ[12]։*

1. Hot. անգ. Schl. Epop. III, 517. Emp. 81, 523, 605։ — 2. Recueil, 661։ — 3. Ասող՝ 161։ — 4. Schl. Epop. I, 285. III. 249։ — 5. Հմմտ. տես՝ 208, և Schl. Emp. 593, 605։ — 6. Տղ. Ողբ, տող 1460. — 7. Շնրհ Ընդհ. 66։ — 8. Սմբ. ՈԽԳ։ — 9. Տղ. Ողբ, տող 1463։ — 10. Սմբ. ՇՄԵ։ — 11. Կիր. 158. — 12. Սմբ. ՉՄԱ։

# ԳԼՈՒԽ ԺԱ

## ՊԱՐՍԿԱՑԻՆ ՇՐՋԱՆ (ժ)



### Ա. ՆԿԱՐԱԳԻՐԸ

ՌՈՒԲԻՆԵԱՆՑ *տէրութիւնը, հայկական ազատութեան այդ յետին մնացորդը՝ կը կնքէր իր գոյութիւնը* 1375*ին՝ գերութեամբ Ե Լեւոնի։ Եւ յետ քանի մը տարւոյ կը փրթէր Լենկթիմուրի փոթորիկը, որ աւերեց քանդեց զՀայաստան սրով ու վտարմամբ։ Անոր յաջորդեցին յետոյ ուրիշ աւազակներ, ջանալով իրարմէ խլել մեր ու շրջակայ երկիրները։ Այս շրջանին՝ իբր* 1381*ին՝ մեծ գերեվարութիւն մը կը կատարուի նաև դէպ ի Դաւրէժ*[1]*, և այդ գաղութը յետոյ պիտի ստուարանար* 1579*ի սովէն*[2]*, բռնաւորաց հարստահարութենէն*[3]*, և Շահաբասի տարած բազմամբոխ գերութենէն* 1605*ին*[4]*։*

*Այդ զանազան ասպատակողաց հետ իրենց տարազներն ալ փոփոխակի կ'երևին պահ մը Հայոց վրայ։ Աղոցմէ մին շատ յայտնի է. Ղզլպաշ (կարմրագլուխ) կոչուած Պարսկացը, որոնք Ա Շահ Իսմայիլի հրամանատարութեան ներքև տիրապետեցին ամէն կողմ և ի Հայս՝* 1501*ին, պարտադրելով անոնց իրենց կրօնքն ու զգեստը, ինչպէս կը վկայէ գրչագրի մը յիշատակարանը* 1513*ին. «Որ և յայտնի եղ իւր նշան — Զխոյրըն կարմիր՝ սուր և երկայն, — Եւ Թարկս ունի երկոտասան*[5]*»։ Այս նշանին ընդունելութիւնը բոլոր հպատակաց կողմանէ՝ կ'ենթադրէ թէ պարսկային տարազն ալ կը կրէին արդէն։ Ասոր ապացոյց ունիմ առ ձեռն երկու գրչագրական պատկերներ. մին՝ Պարիսու Ազգ. Մատենադարանի թ.* 17 *Աւետարանին մէջ, ուր նկարուած են անոր երկրորդ ստացողներն* 1402*ին, Թուրէն քահանայ և երկու հարազատք Փիլիպոս և Դանիէլ*[6]*։ Իրենց*

1. Զմչ. Գ, 420։ — 2. Նոյն՝ 531։ — 3. Նոյն՝ 533–4։ — 4. Դաւր. 26–38։ — 5. Rev. étud. fasc. 2, էջ 100–1։ — 6. Macl. 19։

*բնակավայրն անյիշատակ, զգալի է ակնարկութենէ մը՝ որ կայ պատկերաց միոյն ներքև. «Թուղթն Թաւրիզի է», և իրենց զգեստէն որ պարսկականն է։ Յայտնի է ուրեմն՝ որ ի Պարսկաստան բնակող Հայոց հանդերձն այդ թուականին արդէն պարսկացած էր։*

*Ուրիշ օրինակ մ'ունինք նոյն տարազին՝ Յ. Մորգանի Աւետարանին մէջ, գրուած ի Սպահան յամին* 1615, *յորում նկարուած են խաչի մը ստորոտն աղօթական՝ նոյն գրչագրին ստացողը Մարտիրոս, կնոջը Մարիամի, ու ծնողացը Ոմետի և Խումարմամի հետ միասին, և զոր հրատարակեց Փր. Մակլէր, ինչպէս նաև նախորդը*[1]*։ Այդ կրկին ձևերը կու տան մեզ բաւական գաղափար մը պարսկահայ տարազի մասին։*



Ձև 97. Ռուբէն քհ. և հարազատք

1. Macl. տխ. 19, 40։

## Բ. ՌԱՄԻԿԸ

*Պարսկաստանի գաղթականութեան մէջ ի զուր պիտի որոնէինք զանազանութիւն դասակարգի ու զգեստոյ։ Հայ ազնուականութիւնը ջնջուած է հիմայ բոլորովին, և միայն ռամիկը կը մնայ իւր հանդերձով, որ է հետևեալը։*

***Ա. Արք։*** *— Մեր 97 Ձևը, զոր ստացած եմ ուղղակի բնագրէն, և 98 Ձևը, զոր յառաջ կը բերեմ Մակլերի գործէն, ընդհանուր նմանութեան հետ կը ցուցնեն ինչ ինչ զանազանութիւններ առնական տարազին, որ արդիւնք են ժամանակի հեռաւորութենէն գոյացած փոփոխութեանց նոյն ինքն պարսիկ հանդերձին վրայ։*



Ձև 98. Մարտիրոս, կինն ու ծնողք

1. ***Մազ և Մօրուք՝*** *բոլորին ալ կարճ կտրուած են։*

2. ***Գլխապատը,*** *որ միայն 98 Ձևի մէջ կ'երևի, և հանուած է աղօթականաց գլխէն, մահմետականաց ընդհանուր փաթթոցն է, որ Ոմետի վրայ կը կարկառէ երկու ծոպեր, և որդւոյն՝ մի միայն։ Գիտենք՝ որ այդ ծոպերը զուտ պարսկային էին։ — Շահ Իսմայիլի օրով ասոր փոխան տեսանք վերև նորահնար խոյրը, «կարմիր՝ սուր և երկայն», և անոր վրայ «Թարկս (պրս. թէրք=սաղաւարտ[1]) երկոտասան», զոր յիշատակարանը շարունակելով կ'ըսէ՝ թէ բոլոր հպատակներն ամէն տեղ «Աւին զնորայն եղեալ նշան — Եւ ի յանձինս*

1. Գև. 125. զուցէ և գլխանոցի զարդ։

*իւրեանց զգեցան»։ Ժամանակիս պարսիկ նկարուց մէջ կ՚երևի այս, որ դէպ ի վեր կ՚երկարի թեթևակի կամարաձև կողերով ու կը սրանայ. և կողերը կը բաժնուին տասներկու շերտերու՝ վարէն վեր ձգուած. և խուրին շուրթը վեր շրջած է չափաւոր լայնութեամբ մը*[1]*։*

3. *Կապայ մ՚ունին բոլորը, երկայնաթեզան, պճղնաւոր և ամփոփ, Փիլիպոսին կանաչ ու Դանիելին կարմիր։ Կը յաջորդէ*

4. *Վերնազգեստը, որ յիշեալ երկու անձանց վրայ մին կարմիր և միւսը կանաչ, մինչև ազդրաց ներքև կը հասնին, և առաջակողմէն բաց կը թողուն կուրծքը մասամբ, և ստորոտը՝ որ առիշեղ կտրուած է։ Շատ նման է, կապայով հանդերձ, ԺԵ–ԺԶ դարու պարսկային մանրանկարուց*[2]*։ Մարտիրոսի հագածն է աւելի կարճ, նոյնպէս փորիբաց, ստորոտն ուղիղ, և կարճաթեզան։ Ոմետին՝ երկար, անթեզան, ու վրան ձգուած է մեկնոցի ոճով. հասակի կամ քմաց խնդիր կը թուի։*

5. *Մեր 97 Ձևի անձանց մին վեշմակ*[3] *կոչուած կօշիկը հագած է, և միւսն անկրունկը. երկուքն ալ սրակտուց ու կարմիր։*

*Բ. Կանայք։ — Յատուկ պարսկային ձև մը չունին Խումարմամն ու Մարիամ. այլ աւանդական կապայն՝ նեղ ու երկար թեզանեօք, և շատ անպաճոյճ։ Իսկ ասոր վրայ պճղնաւոր ժեկետ մը, որ վերին մասովը կը ծածկէ գլուխը, և կը պատէ ամբողջ մարմինը, բաց թողլով կրծոց դիմաց, որպէս զի բազուկներն ազատ շարժին։ Մամախաթունի կրածն է*[4]*, աւելի ընդարձակած։*

1. Հմմտ. The Min. II, տխ. 121, գծ. 1537ին։ — 2. Min. Pers. II, տխ. 116, 117, 148. I, տխ. 72, 76։ — 3. Անդ՝ 224։ — 4. Անդ՝ 221։

# ԳԼՈՒԽ ԺԲ

## ԹՐՔԱԿԱՆ ՇՐՋԱՆ (ԺԱ)



### Ա. ՆԿԱՐԱԳԻՐԸ

ՀԱՅԱՍՏԱՆԻ *վերջին, երկարագոյն ու ծանրագոյն լուծն եղաւ Թրքականը, որ յետ նուաճելու զԿոստանդնուպոլիս* 1453*ին՝ տարածուեցաւ իսկոյն դէպ ի փոքր Հայս ու Կիլիկիա*[1], *սուլտան Սելիմի առաջնորդութեամբ*[2]*։ Եւ մեր երկիրը ժամանակ մը նշաւակ դարձաւ պարսիկ ու թուրք մրցակցութեան և աւերեցաւ բոլորովին։ Արդէն պարտասած և ուժաթափ նախկին հարուածներէն, կորուսած իսպառ զինքն արծարծող ազնուականութիւնը, դարձաւ հլու գործի մը նոր տիրոջ ձեռքը, և զգեցաւ անոր տարազն ալ՝ իւր բոլոր ձևերով, որոնք իրենց կարգին ենթարկուած արաբական և ուրիշ ազդեցութեանց, կը կոտրեն հանդերձին միօրինակութիւնը նաև Հայոց վրայ։*

1. *Այս շրջանիս հագուստին նկարագրութեանը համար աղբիւր ունինք՝ քանի մը գրուածոց հետ միասին, ամենէն ճոխը զԿեսար Վիկելլիոյ, կատորոցի նկարիչ և հօրեղբօրորդի մեծանուն Տիտիանոսի, որ* 1590*ին Վենետկոյ մէջ հրատարակեց իւր պատկերազարդ կարևոր մէկ աշխատութիւնը՝ համաշխարհի տարազուց վրայ*[3]*։ Սա կու տայ մեզ իրեն ժամանակակից երեք առնացի և երկու կանացի ձևեր «Սորին Հայաստանէն», որոցմէ զոյգ մը յառաջ բերաւ և Հ. Ալիշան*[4]*։ Վստահելու համար աղոնց վաւերականութեան վրայ, նկատելու ենք՝ որ Ադրիականի ոստանը բաց էր աշխարհի՝ և աշխարհ անոր առջև. և վենետաբնակ նկարչին համար դիւրագոյն բան չկար՝ քան օտար հանդերձից ծանօթութիւնը։ Մանաւանդ հայ վաճառականութեան գլխաւոր մէկ շահաստանն էր Վենետիկ, որ կը սնու-*

1. Չմչ. Գ, 500, 510։ — 2. Նոյն՝ 511։ — 3. Vic. Hab։ — 4. Սիս. 295։

ցանէր հայ գաղթականութիւն մ'ալ, ԺԲ դարէն տալով անոր օթեւան և ապօթանոց։ Եւ Վիկեւլլիոյ անոնց հանդերձին մանր նկարագիրն ալ կը գծէ, չմոռնալով ըսել՝ թէ Հայք «բոլորն ալ թուխ են, բայց հասակագեղ[1]»։ Եւ ինչպէս ըսի, անոր տուած ձեւերը կը զանազանին աստիճանի ու վիճակի համեմատ, ինչ որ առաւելութիւն մ'է մեզ համար։

2. Եթէ այդ ձեւերը կը ներկայացնեն «Ստորին Հայաստանը», այս բացատրութեամբ իսկ կը զգացնեն՝ թէ վերինը նոյն տարազը չէր կրեր։ Կիլիկիա՝ աւելի մերձաւոր Թուրք պետութեան կեդրոնին, և աւելի կանուխ ենթարկուած անոր, խորագոյն կերպով ընդուներ է անոր ազդեցութիւնը հանդերձին վրայ, քան իր արեւելեան եղբարք։ Ասոր բախտաւոր ապացոյցը գտած եմ՝ 1586ին ի Սալաձոր Կարնոյ գրուած Աւետարանի մը մէջ (ի Ս. Ղազար), որոյ նկարիչն աւետարանական անձանց շատերուն զգեցուցեր է հայ ռամկին տարազը, որ ճշմարտապէս կը հեռանայ միւսէն, և իր անարուեստ գծագրութեանը մէջ կը յիշեցնէ գրեթէ հայկականը՝ զոր աւելի որոշ տեսանք արաբական շրջանին մէջ։ Այս պարագայն կը ստիպէ զմեզ բաժնել իրարմէ երկու ձեւերը։

## Բ. ՍՏՈՐԻՆ ՀԱՅՔ

Ասոնց զգեստին ծանօթութեան համար յառաջ կը բերեմ հոս Վիկեւլլիոյի վերոյիշեալ պատկերները, գաղիական նրբագոյն տպագրութենէն, որոնք ճարտար արուեստագէտի ձեռքէն ելած, ժամանակի հանդերձին հետ նկարչական նուրբ ճաշակ մ'ալ կու տան մեզ՝ իրենց դիրքերու և ձեւերու զանազանութեամբ։ Սոյն տարազի մասերէն ոմանք Թուրք անուններ ալ կը կրէին, զորս կը գտնենք Առաքել Դաւրիժեցւոյն քով[2], որ կը գրէր 1651ին։

Ա. Ազնուական այր։ — Այս է տիտղոսը մեր 99 Ձեւին[3], ուր իսկապէս կ'երեւի ծանր մարդու մը շուքը։ Իր հանդերձը գլխաւոր մասերով բոլորովին նման «ափրիկեցի բարբարաստանցւոյ» մը, զոր ունի նոյն հեղինակը[4], ցոյց կու տայ ներքնակին նեղ թեզանիքը և վարշամակ մը գլխին։

1. Մազերն երկար են ու կախուած մեր ազնուականի ծոծրակին

1. Vic. Hab. II, 454. — 2. Դաւր. 220. — 3. Vic. Hab. 458. — 4. Նոյն՝ 431.

վրայ. մինչ մօրուքն աւելի կարճ թողուած է։ Հրատարակիչը զանոնք այսպէս կը սահմանէ. «հերաց գիսակն երկար է, նոյնպէս և մօրուքը»։

2. Փակեղ կը կոչէ Առաքել գլխապատը, «պատուական փակեղ ի գլուխս», հաւանօրէն հին լեզուէն առած քան գործածականէն, որ նորաձայն լինելու է։ «Այս դասակարգի այրեր, կ՚ըսէ Վիկելլիոյ, կը կրեն փակեղ (dulipano) մը, որ շատ ծանր է, երկնագոյն ու շերտաւոր»։ Կը տեսնենք՝ որ հաստատուն կերպով շինուած է։

3. Կապայ կ՚ըսուի դեռ Առաքելէ պարեգօտը, որ կայ, բայց մեր ձևին մէջ անտեսանելի է, և այս պատճառաւ չէ յիշուեր նկարչէն։



Ձև 99. Ազնուական հայ

4. Բալափուշը (պրս. պալափուշ =վերնազգեստ[1], պալա=վերին և փուշ=ծածկոյթ արմատներէն), ինչպէս կ՚անուանէ Դաւրիժեցին արտաքին լայնաթեզան պճղնաւորը, «բալափուշ գիւրև առեալ», նկարչէն կը նկարագրուի՝ «կերպասեայ և ասրեղէն կամ բամբակեայ, և հասարակօրէն գունաւոր»։

5. Ջաշխուր մ՚ալ կը յիշէ Առաքել, որ է կիլիկեան չաղչերին[2] թրքացած ձևը, որ կը մեկնուի՝ «թեթև պաստառով վարտիք, նեղ քան զշալուար[3]», և անտես մնացած նկարչէն ու նկարին մէջ։

6. «Պայտաւոր կօշիկներ ունին նման Թուրքաց», կ՚ըսէ Վիկելլիոյ. և են տիրող ցեղին անկըրունկ կիսակօշիկները, ինչպէս կը տեսնենք։

7. Դենջակ մը կ՚ամբողջացնէ տարազը, այսպէս նկարագրուած հրատարակչէն. «Պարանոցին շուրջ կը կրեն կերպասեայ ամենանուրբ դենջակ մը, սպիտակ՝ կարմիր և այլ գոյներով շերտեալ, որոյ կեդրոնական մասը կը հանգչի կրծոց վրայ, և ծայրերը կը կախուին ուսոց ետև»։

Բ. Պատուաւոր հայ։ — Զայս կը ներկայացնէ մեր 100 Ձևը[4],

1. John. 209. — 2. Առ. 226. — 3. Megn. 564. — 4. Vic. Hab. 454.

որոյ մասին խօսելով նկարիչը՝ կ'ըսէ. «Հայոց զգեստը սովորաբար երկայն է, ինչպէս Յունաց և այլ արևելեան ազգացը»։ Այս տարազը դեռ կենդանի է այսօր գաւառացի Թրքաց վրայ։

1. Մազերը բոլորովին յապաւած է Թրքակերպ, մինչ մօրուքը կը մնայ սովորական չափուն մէջ։



Զև 100. Պատուաւոր հայ

2. Փակեղը, «երկնագոյն՝ ըստ նկարչին, և կարմիր ու սպիտակ գոյներով շերտուած, ըստ որում բաց ի Թուրքաց՝ միւսերը չեն կարող ճերմակ դնել», աւելի տափարակ է քան ազնուականին, և հիւսուածն ալ տարբեր։

3. Կապայն կը նկարագրուի «նուրբ» և «մինչև սրունից կէսը», «կոճակներով» բռնուած լանջաց վրայ, և պաստառը շերտաւոր, ինչպէս կը տեսնենք և մեր պատկերին վրայ։

4. *Բոլափոշը «սպիտակ ու լայնաթեզան» է՝ ըստ նկարչին, և ցոյց կու տայ կիտուածազարդ աստառը։ Եղանակին համեմատ՝ կրնային իրենց լանջքն ու թեզանիքն ազատ թողուլ, ինչպէս մեր Ջևին մէջ. և կամ «փղոսկրեայ կոճակներով կոճկուած» բռնել։*

5. *Ջաշխուրը կը սահմանէ «միակտուր վարտիք, սրունից վրայ լայն», ճիշդ թրքականը, ինչպէս կ'երևի և մեր Ջևին մէջ։*

6. *Շապիկն ալ կը յիշուի հիմայ նկարչէդ* (camicia), *«սպիտակ ու լայնաթեզան», բնականապէս աննշմարելի նկարին մէջ։ Արդէն առիթ ունեցանք յիշեցնելու՝ թէ ԺԶ դարու գիւտ են ներքին կտաւեղէնք*[1]։

7. *Կօշիկները՝ թրքուհեաց հագածին կը նմանեցնէ, որովհետև թուրք արանցը կը ծածկէ թաթը՝ նկարչին մէկ ձևին համեմատ*[2]։

*Գ. Վաճառական հայ։ — Մեր* 101 *Ջևն է*[3], *և ամենէն յամառ յաճախորդը Վենետկոյ հրապարակին, որով և ընտանեգոյն Վիկելլիոյի։ Ասոր հանդերձին հետ հաւասար է Աբգար դպրի հագածն ալ, որ* 1565*ին իւր տպագրած Սաղմոսին մէջ գծագրուած է, զայն ներկայացնելով Պիոս Դ պապին, որով ապացոյց մ'աւելի ունինք մեր նկարչին տուած տարազին ճշդութեան։*

1. *Մազերը խուզուած կ'երևին նախորդին պէս, պահելով մօրուքը։*

2. *Գդակն ամենէն որոշիչ մասն է իւր տարազին։ «Հայ քրիստոնեայ վաճառականք, կ'ըսէ հրատարակիչը, Թուրքաց հրամանաւ հարկադրուած են իրենց գլխին դնել մերոց նման գդակներ, և կամ գլխանոցներ՝ ներքուստ ծածկուած կզաքսի կամ ուրիշ մորթերով», ինչպէս է մեր օրինակինը։ Այդ արգելքը, որ հաւանօրէն Թուրք փակեղն օտար աշխարհաց մէջ չքաշքշելու համար էր, ծանօթ է և Առաքելի, որ տարբեր կերպով կը բացատրէ. «Թուին ՌԼ* (1581) *նեղացաւ սուլթան Մուրատ թագաւորն ի Հրէից համարձակութենէն, և վերացոյց զփակեղն ի գլխոց Հրէից և քրիստոնէից ամենայն, և սահմանեաց զգդակ դնել*[4]*»։ Պատմիչը կը յարէ՝ թէ տասնևութ տարի վերջ յաջողեցան տեղ տեղ կաշառով փակեղի հրաման առանալ. իսկ «ի Կոստանդնուպոլիս և յայլ բազում քաղաքս Յունացին գտակով*[5]*»։ Մեր Ջևինը կրնայ համեմատուիլ նկարչին միւս տուածներուն հետ, նորուեգեանին, գերմանականին ու հունգարականին*[6]։

3. *Կապայն երկար է և նշմարելի մեր պատկերին կշտէն վար, և լայն ու դէպ ի բերանը նեղցած թեզանիքէն։*

1. Անդ՝ 5. — 2. Vic. Hab. 370։ — 3. Նոյն՝ 455։ — 4. Դաւր. 488, 437։ — 5. Նոյն՝ 437։ — 6. Vic. Hab. 298, 332, 416։

4. Բաղափուշին վրայ կը խօսի Վիկելլիօ՝ երբ կ'ըսէ. «կը հագնին երկար պարեգօտներ (zimarre) դամասկացի կամ այլ կերպասէ, որ շերտաւոր կտաւի աստառով և ձմեռը մուշտակով ծածկուած է»։ Մեր օրինակին մէջ պարեգօտն ունի լայն ու կարճ թեզանիք, և կշտին ճեղքուած է մինչև գետին։ Նկարիչը կ'ըսէ դարձեալ վաճառականաց համար՝ թէ «սովորաբար կը շրջին սև պաստառի հանդերձով և ուրիշ գոյներով, ինչպէս կապոյտ և մանիշակագոյն, և մերթ ողորկ փայլուն կերպասէ, որմուսական[1] թաւշէ և նուրբ պաստառներէ»։

5. Զաշխուրը ցոյց կու տայ իւր սովորական լայն ստորոտը։

6. Գուրպայք «կապոյտ պաստառէ» են, կ'ըսէ հրատարակիչը։

7. Կաշեայ կօշիկներ (scarpini) կու տայ անոնց, յարելով՝ թէ «կը հագնին և թրքուհեաց նման կօշիկներ», ինչպէս մեր Ձևին մէջ։



Ձև 101. Վաճառական հայ

Դ. Տիկնայք։ — «Կին Ստորին Հայաստանի» կը կոչէ Վիկելլիօ մեր 102 Ձևը[2], որ դատելով հանդերձից ճոխութենէն, տիկին մ'է, ոչ ռամկուհի։ Գեղեցիկ է իւր տարազը, որ հեռի մնացած է թրքականէն, և հրատարակչին քով չունի իւր բոլորովին նմանն ուրիշ ժամանակակից ազգերու վրայ։

1. Գլխանոցի մասին կ'ըսէ նկարիչը՝ թէ «Ստորին Հայաստանի այս կանայք արտառոց գլխանոց մը կը գործածեն՝ գունագոյն քողերով»։ Կը տեսնենք զայդ մեք իսկ. գլխարկ մը ճակատանոցով,

1. Ormesino. — 2. Vic. Hab. 456.

և անոր վրայ քող մը, և ապա պսակ մը, որ շատ կը նմանի նոյն նկարչին տուած «ասորաբնակ հելլենուհւոյ» մը դրածին[1]։

2. Պարեգօտ մը «գեղեցկագործ՝» կը կազմէ անոր ներքին ու գլխաւոր հանդերձը, և ակներև է իր պաստառին նրբութիւնը։ Ասոր վրայ կ'անցնի

3. Պարեգօտակը (rocchetto), «բամբակեայ սպիտակ» գունով, քան զառաջինը կարճ, և կշտից վրայ վեր ամփոփուած՝ խորշերով։



Ձև 102. Հայ տիկին      Ձև 103. Հայ պարկեշտուհի

4. Վակաս պիտի կոչեմ երկրորդ կտորը, զոր նկարիչը կը սահմանէ՝ «հիւսկէն հանդերձ մը՝ նման կրօնաւորական վակասին (patientia), բայց յետակողմէն երկարագոյն քան առջևէն, զոր կը կրեն՝ տեսնելու և անտես մնալու համար»։ Կ'երևի՝ թէ փողոցին մէջ անով կը ծածկէին իրենց երեսը։

5. Կօշիկները ալ կ'երևին մասամբ, ու սրակտուց են։

1. Vic. Hab. 476։

*Ե. Պարկեշտ Հայուհի։* — Այս է Վիկելլիոյի տուած կոչումը մեր 103 Ձևին[1]. և որոյ զգեստը կը կրէին լոկ «կանայք ոմանք նոյն ատրին Հայաստանի մէջ», որով դասակարգի մը «յատուկ տարազն» էր այս, որ «ինքնին ցոյց կու տայ պարկեշտութիւնն ու ողջախոհութիւնը»։ Գուցէ տնարնակ ազատ կուսաններ էին ադոնք։

1. Գլխանոց մը կը կրեն ներքուստ, յետ կոյս բարձրացած կոնաձև, որ կը յիշեցնէ միտիլինեցի կնոջ դրածը նոյն հեղինակին քով[2]։

2. Լաչակ մը կը սքողէ նոյն գլխանոցը, այտից կէսը, կլափը և իրանին կէսը. և զոր «բամբակեայ սպիտակ» գունով կը նկարագրէ նկարիչը։

3. Երեսանոց մ'ալ կայ ճակատին վրայ, զոր փողոցի մէջ վար կ'իջեցնեն, և այսպէս «անճանաչելի կ'ընէ զանոնք»։

4. Պարեգօտ կամ որմուսական մը կը հագնին ներքուստ, «շերտաւոր ու կերպ կերպ հիւսուած մետաքսով կամ բամբակով, որ մինչև գետին կը հասնի». թէև մեր օրինակին մէջ չեն նշմարուիր այդպիսի հիւսուածներ։

5. Պարեգօտակը կը յաջորդէ ադոր, կոչուած հրատարակչէն «կերպասեայ սկլաւոնեակ (schiavonesco), և կամ ամենասպիտակ կտաւ՝ բազմաթիւ ծալքերով»։

6. Կօշիկները սրակտուց, գծեր ունին՝ ձգուած լայնութեան վրայ։

## Գ. ՎԵՐԻՆ ՀԱՅՔ

Ասոնց հանդերձին օրինակ կրնայ լինել Սալաձորոյ վերոյիշեալ Աւետարանին մէկ նկարը, որ կը ներկայացնէ Յիսուսի բարձումն ի խաչէն, Ձև 104, և ուր ունինք մեր առջև այրեր ու կիներ միանգամայն։ Հոս կը հանդիպինք հանդերձից քանի մը նոր կոչումներու, որ կարելի է թէ արևմտեան կողմն ալ կային. բայց հոն յիշուած չգտնելով, ստիպուած ենք հոս միայն գործածել զանոնք։

*Ա. Արք։* — Շատ պարզ է իրենց հագուստը։ Կարճ մազեր ու կարճ մօրուք։ Յետոյ սրճագոյն կապայ[3] մը, որ մինչև ազդերաց կէսը կը հասնի, և գործի պատճառաւ հանգրիճած է թեզանիքը, որոնք նոյն գրչագրին ուրիշ ձևերու մէջ երկար են։ Կանաչ ու գծաւոր ամփոփ վարտիք մը կը լրացնէ զգեստը, որ՝ կը կրկնեմ՝ շարունակութիւնն է հին հայկականին, և զոր կը բաւէ համեմատել մեր 65

1. Vic. Hab. 457։ — 2. Նոյն՝ 411։ — 3. Քուչ. 94։

Ձևին հետ[1] ու տեսնել նմանութիւնը։ Բոլորն ալ են մեր Ձևի անձինք, ինչ որ նաև հին ժամանակ տեսանք հայ ռամկին վրայ[2]։ Եւ բացագլուխ են, ինչպէս առ հասարակ ներկայացուած են նոյն գրչագրի միւս անձինք ևս։



Ձև 104. Բարձումն Յիսուսի ի խաչէն

Բ. Կանայք։ — Ասոնց տարազին օրինակ պիտի առնում մեր 104 և 106 Ձևերը, և նկարը Ս. Ղազարու շարականի մը՝ որ գրուած է 1578ին «ի յերկիրս Գերմանիկոյ ի գիւղաքաղաքս Իփռնաւս», և

1. Աստ՝ 201։ — 2. Աստ՝ 145։

ուր կին մ՚ընդ առաջ կ՚ելնէ Յիսուսի՝ որ յԵրուսաղէմ կը մտնէ, Զև 105։ Այդ կանացի կենդանագիրք կը հեռանան աւետարանական անձանց աւանդական ձևերէն, և կը ներկայացնեն ժամանակիս հայ-կականը։ Ունինք նաև կեղծ ճառ մը յանուն Եփրեմի, Վենետկոյ Ա Ոսկեփորկին մէջ, և «Վասն աւետեացն Սեթայ՚» հին կտակարանի անկանոնաց մէջ[1], երկուքն ալ իրենց բովանդակութեամբ ու ռամ-կախօսութեամբ այս շրջանիս յատուկ, և տաղեր։

1. Ծամերը կը պահեն միշտ իրենց խնամոտ դերը, Սեթայ հայ հեղինակին ըսել տալու համար՝ թէ Կայենի ցեղին աղջկունք «զծամն և զվարս սանձմանեցին». և Ոսկեփորկին՝ թէ նոյն տոհմէն «պիղծ աղջիկ մի» սատանային օգնութեամբ հնարեց «ծամ և վարս շինել»։ Բայց ժամանակիս հայ աղջկունք կարօտ չէին սատանայէն դաս առնելու։ Անոնց մազերը մերթ կը փնջանան վզին վրայ. «Ատ պարշմէ փնճիկդ որ եկել ի վիզտ մանիման», կ՚երգէ Քուչակ. և կամ՝ «Հա՛յ իմ մազդ ուռի մորճիկ[2]», որ է ուռի ոստի նման[3]։ Մերթ կը յօրինեն զոյգ մը հիւսակներ. «երկու ծամ դեղձան ունիս[4]»։ Երբեմն աւելի հիւսակներու բաժնուած՝ կ՚իջնեն ուսերէն վար. «Ծա-մերդ ի յուսդ ի վեր իջեալ բոլորեալ», կը տաղերգէ Մկրտիչ[5]. և Ղազար սեբաստացին՝ թէ «Դեղձան մազդ արեր քո վզիդ ոլոր[6]»։ Եւ մերթ ևս՝ թողուած են ծփուն. «Վարսերդ է յայի նման, որ քամին կ՚անէ տարուբեր[7]»։

2. Լաչակ մը, որ պարսկերէն քող կը նշանակէ[8], ստիպողա-կան է հիմայ՝ քաղաքական հասկանալի պատճառներով։ Քուչակի գեղանին փողոցի մէջ «Զլաչիկն թուլ ու մուլ կապեր, զկէս ճակտին թողեր է ի բաց[9]»։ Նոյնը կը կրեն մեր Զնոց կանայք ալ, ներքուստ կանաչ, արտաքուստ կարմիր. փոքր է և կը ծածկէ գլուխը միայն։

3. Շմարը[10], յիշատակուած Քուչակէ, կը թուի մարմնոյն անմիջական ներքին ծածկոյթը կամ շապիկը. որով երգչի գեղանին կը կրէ «շար շմար[11]». և նոյն տաղի վենետեան գրչագրի մը մէջ կ՚ըսուի՝ թէ «շմարն ալ ի վեր քաշեց՝» ցոյց տալու համար լանջքը[12], ապացոյց՝ թէ փակ էր առաջակողմէն։

4. Շապիկ մը, որ է նուրբ պարեգօտը, կը կազմէ արտաքին հանդերձը. և Քուչակի գեղանին փողոցի մէջ «է կանգներ շար շապ-կանք[13]». իսկ «իր կուրծքն է ղալէմ քաշած» կամ կիտուածազարդ,

1. Անկան. 321։ — 2. Քուչ. 101, 47։ — 3. Հմմտ. անդ՝ 62։ — 4. Անդ՝ 72։ — 5. Հայ էջեր, 20։ — 6. Փփզ. 635։ — 7. Քուչ. 61։ — 8. Աստ՝ 219։ — 9. Քուչ. 61։ — 10. Հմմտ. արբ. շեմէճ, արմատ շեմճէն=հիւսել բային։ — 11. Քուչ. 75։ — 12. Տղրն. 1648ի։ — 13. Քուչ. 61։

«ու թեզնիքն է մատնեհարած[1]» կամ ասղնագործ: «Քանի՛ ու քանի՛ կ'ասեմ, կը յարէ այլուր, մի՛ կենար խամ (հասարակ) լաթերով, — Գնա ապրշում հագիր՝ որ նախշած է ոսկի թելով[2]»: Անոր պաստառին գոյնն ալ փոփոխական է. մերթ «կապոյտ շապիկ հագնի՛» լանջաց վրայ կոճակով, և մերթ «կարմիր» կը զգենու[3]: Գուցէ ըստ եղանակին՝ կը յաջորդէ շապկին



Ձև 105. Մուտք Յի. յերուս. ըստ Շրկ. 1578ի

5. Կապայն, որ աւելի ստուար պաստառէ կը շինուի, և պէսպէս գոյներով: Բուչակի գովեալը «... զինչ հագեր՝ ամէնն է կանանչ. — Հագեր գոյնզգոյն կապայ, կոճակ շարեր, 'ւ օղակն է կանանչ[4]»: Այլուր կը ճշդէ գունոց զանազանութիւնն ալ. «կարմիր ու կանանչ հագնիս, զէզ նման հատն նմանիս[5]»: Յիշեալ կոճակները շարուած էին լանջաց

1. Քուչ. 57. — 2. Նոյն՝ 46. — 3. Նոյն՝ 51, 55. — 4. Նոյն՝ 62. — 5. Նոյն՝ 46.

*վրայ, հաւանօրէն վերէն ի վայր[1]. բայց օձիքին շուրջ ալ կը դըրուէին իբր զարդ, որոց կ'ակնարկէ քերթողը. «Կամ ապրշմէ կոճակ (լինէի) – Որ շընիցդ գիրկ ածէի[2]»։ Այս կապայն է մեր Ջեռց կանանց հագածը, կարմիր՝ ու թուխ գծերով։*

6. *Խուշախը (Թրք. քուշակ=գօտի), մետաքսեայ է և աւելի զարդ քան սեղմելու կը գործածուի. «բարակ մէջք ու թուղ գօտի[3]». և զոր ցերեկն ու տնէն դուրս միայն կը գործածեն. «Ես ապրշմէ խուշախ, – Ջօրն զքո միջաց գիրկ ածէի[4]»։*

7. *Մեկնոց մ'ալ կը կրեն մեր* 104 *Ջևի կանայք՝ կանաչ գունով, անոր մէջ ամփոփելով իրենց իրանը, և փակելով լանջքը։ Իր ձևը կը վկայէ անոր իրականութեան, և տնէն դուրս առնուելուն՝ պարկեշտութեան կողմանէ։ Ասոր փոխան*

8. *Ծիրպիկ մը, ծանօթ թաթարական շրջանէն[5], կը հագնի երբեմն Քուչակի գեղանին՝ որ մշեցի է[6]. ինչպէս ինքն ալ վերին Հայաստանէն[7]։ Երբ կ'ելնէ, կ'ըսէ, հայրենի տնէն, «Հագեր է զկանանչ ծիրպիկն ու քաշեր գլխակն ի վրէն[8]»։ Արդ ճիշդ այս վերարկուն է՝ որ կ'երևի մեր* 105 *Ջևին մէջ, գունով կարմիր, լայն ու երկար թեզանեօք. և վերարկուին վերին մասը գլխին վրայ առած իբր լաչակ։ Իսկ ստորոտը կը ծածկէ բուխ կօշկաց մէկ մասը, ցոյց տալով ծայրերը միայն։*

9. *Վերոյիշեալ Ոսկեփորիկն անհամեստ կանանց – և ոչ անշուշտ լոկ ասոնց – զարդուց մէջ կը թուէ՝ «ոսկի և արծաթ վզանոց և ձեռանոց», որոց առաջինը լանջաց վրայ կը կախուէր[9]. իսկ երկրորդը կը թուի պարանոցը պատող մանեակ։*

10. *Նոյն ճառը կը յիշէ նաև գինդը՝ դասական փոխ առեալ բառով, բայց ոչ անշուշտ և հին իմաստով կամ ձևով։*

11. *Մատանին ալ կայ նոյն ճառին մէջ. և Քուչակ անոր կազմութիւնը ցոյց կու տայ՝ ըսելով. «Դու մատնի, ես ակն ի վերայ[10]»։*

12. *Երեսաց, աչաց և յօնքերու ներկումն հաստատուն կը մնայ տակաւին։ Կայենի աղջկունք, կ'ըսէ Սեթայ շարադրողը, «հնարիւք սահմանեցին զկարմրադեղն և զսպիտակադեղն. զերեսս կարմրացուցանէին և սպիտակացուցանէին, զունքն քաշեցին և զաչսն դեղեցին և ծարուր դրին»։ Իսկ անոնց հայ սեռակիցք, որոց օրինակէն թելադրուած է գրողը, նոյնպէս «զիւրեանց պճնեն և զարդարեն, ծարիրեն և դեղեն», կ'ըսէ ծանօթ Ոսկեփորիկը։ Քուչակի գեղուհին*

1. Հմմտ. աստ՝ 226։ — 2. Քուչ. 73։ — 3. Նոյն՝ 77։ — 4. Նոյն՝ 73։ — 5. Աստ՝ 227։ — 6. Քուչ. 65։ — 7. Անդ՝ 14։ — 8. Նոյն՝ 61։ — 9. Աստ՝ 220։ — 10. Քուչ. 53։

նոյն պճնասիրաց կարգէն է. «զուներդ ես աղեղ արել», կամ «իր օնքն է ղալմով քաշած». և «Թուխ աչուին ծարուր քաշեր[1]»: Բայց այրեր կան՝ որ կը խորշին այդ բանէն. «Ա՜մ, քանի՛ ու քանի՛ ասեմ՝ թէ աչվիդ ծալուր մի՛ լնուլ», կ'ըսէ նոյն քերթողը[2]:

Թրքական ազդեցութիւնը նոր պաճուճանք մ'ալ տուաւ Հայուհւոյն, որ յառաջ անծանօթ էր. այն է խինա (արբ. հինա), զոր յիշեալ հայ բարոյախօսք դարձեալ կը բառնան կայենի դստերաց անպարտ ուսերուն: «Ջոտսն և զձեռսն խինեցին և կարմրացուցին», կ'ըսէ Սեթայ գրողը. և Ոսկեփորիկը՝ թէ «Ջոտ և ձեռն հինայեցին», որոց կը նմանին և հայ վարձակներ. յետոյ «զան ի մէջ տոհպաթի, գինի խմեն, կարմրին և կարմրանան, պարեն և կաքաւեն»:



Ձև 106. Պատանի
ըստ Աւետարանի 1586ի

Գ. Պատանիք: — Հ. Ալիշան պատկեր մ'է հրատարակած՝ իբր Գարեգին պատանի նախարարը Ցագկերտի առջև[3], հանուած Ս. Ղազարու ՀԱ. չարականէն (1578ին), որուն չեմ հաւանիր ես: Ջի նկարդ կը գտնուի Ղևոնդեանց կանոնին առջև, և կարծեցեալ Գարեգինդ դահիճ մ'է, որ մէկ էջին մէջ հրաման կ'ընդունի կոտորել ս. քահանայքը, և միւսին մէջ կը գլխատէ՝ մի և նոյն տարազով, և զուրկ է անոնց լուսապսակէն՝ զոր ինքն ալ կրելու էր՝ եթէ վկայն լինէր: Ընդ հակառակն մեր վերոյիշեալ 1586ի Աւետարանին մէջ ունինք ժամանակի հայ պատանւոյ իսկական տարազը, տարբեր նոյն դահճի հագածէն, զոր կու տամ հոս, Ձև 106, և ուր պատանիս Ղազարու գերեզմանաքարը կը վերցնէ:

Նա կը պահէ դեռ թուխ երկար մազերը, զոր պիտի կորէ յետոյ: Բուչակի տաղից մէջ գեղանին կ'ըսէ սիրողին. «Որդի, հարատի

1. Քուչ. 46, 44, 61. — 2. Նոյն՝ 67. — 3. Հյպտ. 161.

*որդի,... քո մազերն է ճիւղք խաղողի», ակնարկելով ոլորուն գանգուրներուն։ Իսկ գագաթին վրայ կ'ածելէին բոլորաձև. «Կուլակդ է օլոր օլոր», կը յարէ նոյն տաղը[1], որ այս շրջանիս ընդհանուր է, Թերևս բարեպաշտական նմանութեամբ կղերական ձևին. և Առաքել կը յիշէ 1617ին՝ թէ Պարսկաստանի Հայոց մէջ ալ կար այն, և «ածելեալ էին կուլակք մանկանցն» Ագուլիսի[2]։ — Մեր Ջևի պատանին ունի կարճ կապայ մը՝ մինչև ազդերաց կէսը, երկայն Թեզանեօք, և աղօտ դեղնագոյն։ Ասոր վրայ կապած է գօտին՝ կանաչ գունով։ Վարտիքը նոյնպէս կանաչ և ամփոփ, ծնկներէն վար կը ծածկուի զանկապանաց մէջ աղօտ դեղնորակ։ Օղերն ալ կը մնան դեռ Թաթարական շրջանէն. և որոց կ'ակնարկէ Քուչակ, ըսելով սիրականին. «Դարձար զան (սէրդ) հալխայ (Թրք.=օղակ) արիր, — 'ի իմ սրտիս ականջն անցուցիր[3]». ինչպէս իւր առնական սիրտը, ականջներն ալ կը կրէին զանոնք։*

1. Քուչ. 68։ — 2. Դաւր. 274։ — 3. Քուչ. 45։

# ԳԼՈՒԽ ԺԳ

## ՏԱՐԱԶՆ ԸՍՏ ԱՌԹԻՑ



Մինչեւ *ցարդ նկատեցինք հայ տարազին զանազանութիւնքը՝ շրջանաց ու վիճակաց համեմատ։ Անոր ընդհանուր նկարագրէն զատ կային նաև առանձին փոփոխութիւնք՝ ըստ հանգամանաց ու պատահարաց ուրախալից կամ տրտմալից, որ կը հանդիպէին անհատներու, որոնք իրենց հոգեկան վիճակը ցոյց պիտի տային նաև իրենց զգեստին վրայ։ Եւ այդ փոփոխութիւնը կը լինէր հանդերձից թուոյն, ձևին, նիւթին և գունին մէջ, ըստ պահանջման սրտին, կամ ընկերական սովորութիանց, կամ խորհրդաւորութեան պարագային, որոնք այդ զանազանութեանց կ՚ընծայէին յատուկ նշանակութիւններ։ Լրացնելու համար մեր ուսումնասիրութիւնը, պէտք է որ զանոնք համառօտիւ աչքէ անցնենք հոս, խօսեցնելով մատենագրութիւնը միայն, զի արուեստն ոչ ինչ թողած է մեզ։ Իսկ մեր նշանակելի հանդերձից կամ զարդերու մասանց առանձին հանգամանքները պէտք է որոնեն ընթերցողք մեր ցարդ տուած նկարագրութեանց մէջ, ըստ շրջանին ուր յիշատակուած են անոնք։*

### Ա. ՄԿՐՏՈՒԹԻՒՆ

*Այս առթիւ հանդերձն երեք շրջան ու ձև ունէր, խորհրդոյն մատուցուելէն յառաջ, մատուցման պահուն, և յետ մատուցման։*

1. *Առաջին կամ երախայական շրջանը Դ—Ե դարերուն կը տևէր «ամսօրեայ ժամանակօք[1]», կամ «երիս շաբաթօք կամ աւելի՝» ըստ մաշտոցի ԺԱ դարու, որ մկրտութեան ժամուն կ՚ազդարարէ «մերկանալ զերախայական սգեստն». և որ ապաշխարութեան հանդերձն իսկ էր, ըստ որում Հայք այդ միջոցին «ի պահս և յաղօթս»*

1. Ագթ. 619։

կ՚անցնէին[1]. և կը շինուէր քրձէ, զոր պիտի տեսնենք մեր Դ յօղուածին մէջ։ Այս՝ չափահաս երախայից կարգն էր, և ոչ մանկանց։

2. Մկրտութեան պահուն նախկին քրիստոնէից սովորութիւնն էր մերկ ի մօրէ մտնել աւազանը, այր թէ կին, ըստ վկայութեան Հարց ու քանդակաց[2]։ Նոյնպէս ենթադրելու ենք Հայոց մուտքն ալ Եփրատի սրբարար ջրերուն մէջ[3], ինչպէս յիշեալ հնագոյն մաշտոցն և ուրիշներ ևս կը գրեն «մերկանալ... և լինել կազմ ի լուացումն սուրբ», առանց յաւելլու նոր հանդերձի մը զգեցումը. և Գր. Տաթևացին՝ թէ «մերկացուցանեն զմանուկն[4]»։

3. Յետ մկրտութեան՝ ընդհանուր քրիստոնէից սովորոյթն էր սպիտակ զգենուլ՝ ի նշան մաքրութեան հոգւոյ[5]։ Այսպէս և Հայք երբ մկրտուեցան Լուսաւորչէն, «սպիտակ հանդերձիւք» գետէն եկեղեցի կը դառնան[6]։ Ըստ Գր. Նազիանզացւոյն՝ սպիտակ զգեցումը կը տևէր զատկէն, ուր սովորաբար կը կատարուէին մկրտութիւնք, մինչև Նոր կիւրակէ[7]. ինչպէս Լուսաւորչի մկրտեալք ևս նոյն վիճակի մէջ կը մնան «աւուրս եօթն[8]»։ Ծանօթ հին մաշտոցն այսպէս կը սահմանէ. նորակնիքն «ութ օր յեկեղեցւոջ կացցէ, սպիտակազգեստ լիցի, և զգլուխն ծածկեսցէ սպիտակ փակեղաւք... և յետ ութ աւուր վերացուցանէ քահանայն զպսակն»։ Ասոնք են հանդերձիս գոյնն ու մասունքը. ժամանակիս սովորական զգեստը, փակեղը՝ որ մաշտոցիս գրութեան շրջանի հասարակաց գլխանոցն էր[9], և ծաղկանց պսակը՝ որ մկրտութեան առթիւ կը դրուի։ Ճառ մը՝ «Խորհուրդ եկեղեցւոյ» վերնագրով[10], կը յիշէ նոյն մասունքը. «սպիտակ հանդերձն... վարշամակն ի գլուխն... պսակն շուրջ զճակատովն», տալով նաև քմահաճ մեկնութիւններ։ Եւ կը յարէ հետևեալ մասերն ալ. «առասանն կարմիր ընդ սպիտակի մանեալ», ի խորհուրդ մարդեղութեան Բանին. «խաչն ի պարանոցն», որ կ՚իջնէ լանջաց վրայ, և «գօտիք ընդ մէջ»։ Գր. Տաթևացւոյն ալ ծանօթ են՝ «նոր հանդերձ սպիտակ» և «խաչ կապեալ[11]». և քրիստոնեայ պատանիք բացօթեայ տեղւոյ մը մէջ կը մկրտեն Արշլմսեհ վկայն, անոր զգեցնելով «ի հանդերձից իւրեանց նորոց[12]»։

Ա. Ղազարու երկու մաշտոցներ, մին 1438ին՝ գրուած ի Վարագ, և միւսն 1499ին ի Բուշերիկ, նորամուտ սովորութեամբ այս հանդերձը զգեցնել կու տան պատարագի զգեստաւորութեան աղօթք-

1. Ագթ. 619. — 2. Cabr. II, 278, 395. I, 2672–75. — 3. Ագթ. 620. — 4. Քրզ. ժմր. 146. — 5. Cabr. I, 3118 են. — 6. Ագթ. 622. — 7. Ճառ Խ. — 8. Ագթ. 623. — 9. Ատ՝ 202. — 10. ԺԵ Ոսկեփ. Ս. Ղազարու. — 11. Քրզ. ժմր. 61. — 12. Վկյք. Ա, 8.

ներով. և անոր մասանց ալ տարբերութիւն մը կը նշանակեն։ Քահանային, կ'ըսեն, «այրէ զաւձիքն[1] հանդերձին հրով, և զգեցուցանէ և ասէ. Զգեցո տէր սմա հանդերձ փրկութեան» և այլն։ Յետոյ կը դնէ «զկնգուղն ի գլուխն», որ ժամանակիս գլխանոցն է[2]։ «Ապա կապէ զնարօտն ի վիզն», որ նոր է, և «զմիջոցն[3]» որ է գօտին. յետոյ «զգլխոյ նարօտն», որ նոյն է Ոսկեփորկի առասանին հետ։ Եւ հուսկ՝ «ծածկեսցէ ի վերայ ամենայնին սպիտակ հանդերձիւ», և ձեռքը կու տայ «զմոմեղէնսն կարմիր և կանաչ»։

Այսպէս փոփոխուեր ու զարգացեր է դարուց ի դարս մկրտութեան տարազը, ինչպէս պատահեր է և արտաքին հանդերձին։

## Բ. ՀԱՐՍԱՆԻՔ

Ամէն ընկերական դասակարգ այս առթիւ ցուցադրած է իւր հանդերձից բոլոր ճոխութիւնը՝ որքան կարողութիւնը կը ներէր։ Գողթան երգիչները կը նուագէին՝ թէ «Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեան Արտաշիսի, տեղայր մարգարիտ ի հարսնութեան Սաթինկան[4]», ցուցնելով այդ երկու տարերաց ճապաղումն ըստ պատմչին։ Երիցագոյն դարերէն կը պակասին մեզ վկայութիւնք՝ պսակելոց հանդերձից մասին։ Հաւանական կը կարծեմ՝ թէ սովորականէն կը տարբերէր ճոխութեամբ և ոչ ձևովը։ Տրդատ իւր հարսանեաց պահուն կը կրէ «զպատմուճանն» միայն[5]։ Հեթանոսական շրջանին սովորոյթն է այս, որ յետ քրիստոնէութեան երթալով կը բարգաւաճի. և յետոյ կը հանդիպինք նորանոր տեղեկութեանց։

1. Փեսային նկատմամբ Զաքարիա կթղ. Թ դարուն կ'աւանդէ՝ թէ «պաճուճեալ պճնի ի զարդս և ի զգեստս փեսային[6]»։ Այս անորոշ բացատրութիւնը քիչ մ'աւելի կը ճշդէ Արծրունին, յիշատակելով «զգեստու հարսանեաց... ծաղկեալ պատմուճանի գունագոյն երանգ երանգ անկուածոցն» և «մանեկաց ի պարանոցսն[7]»։ Տաթեւացին կը փորձէ իբր թէ դեռ աւելի ճշդել անոր մասունքը. «չորս՝ բոլոր անձինն է, և երեք՝ գլխոյն[8]». գուցէ հասկանալով ժամանակի հանդերձին մասերը, կապայ, ուդէ, գօտի և վարտիք մարմնոյն վրայ. իսկ գլխին՝ օղեր, գդակ[9] ու պսակը՝ զոր պիտի տեսնենք։ Զաքարիա կը պճնէ զայն նաև «զինուք», նստած «զարդափայլեալ երիվարի»

1. 1438ին՝ զաւձնիքն։ — 2. Հմմտ. սոտ՝ 264։ — 3. 1438ին՝ զմիջացն։ — 4. Խոր. Բ, ծ։ — 5. Ագթ. 150։ — 6. Զաք. ԺԶ։ — 7. Արծ. 191։ — 8. Քրզ. ամր. 202։ — 9. Հմմտ. սոտ՝ 222-4։

վրայ, զոր Գր. Սկեւռացին կը բացատրէ՝ «բուր ի մէջքն կապեալ[1]»։

2. Իսկ հարսին գլխաւոր հանդերձն է Հռիփսիմեայ ներբողին մէջ յիշուածը, «զվարդագոյն իմոյ հարսնութեան արկի զզարդ[2]», որ է պատմուճանը[3]։ Նաև ըստ Զաքարիայի՝ կոյսը «զարդարեն պայծառ և հրաշալի պատմուճանօք», ըստ որում թուով երկու էին[4], և «մաքրափայլ ագանելեօք», որ ճերմակ կօշիկները կը թուին։ Նարեկացին՝ Ապարանից եկեղեցւոյն քանդակները կը նմանեցնէ՝ «իբր զծաղկեղէն զգեստուց հանդերձանս սրբաբեհեզն պատմուճանի... հարսինն[5]». այսինքն սպիտակ բեհեզէ ու ծաղկազարդ, որով Սարգիս ալ կ'ըսէ՝ թէ «նոքա զհանդերձ հարսանեացն ոսկետակացուցին[6]». և Առաքել Սիւնեցին՝ թէ հարսին պէս «Լինիս մարմնով ծաղկազարդեալ». կամ թէ «Դու զարդարես զքեզ ծաղկազգեաց[7]»։ Բայց պատմուճանին այս նկարագիրը բացարձակ չէր, որով Խաչ. Կեչառացին կը նկարագրէ հարսը նաև «ի կարմիր ձորձ և յոսկերել զարդարեալ[8]»։

Կարեւոր մասերէն մին ալ էր քողը՝ սեպհական նաև ուրիշ տիկնանց, իսկ հարսին համար ստիպողական, և քան այլոցը մեծ. որով Փաւստոս կը յիշէ կանանց ամուսնութիւնը «քօղով հարսանեաց[9]». և որ հարսնութեան շրջանին ամբողջովին կը ծածկէր անոնց դէմքը. այնպէս որ Տիրիթ իւր Գնէլ հօրեղբօրորդւոյն գեղահրաշակ կնոջ՝ փառանձեմայ երեսը տեսնելու համար՝ «անկանէր ի գաղտագողս[10]»։ Այս զարդը կը մնայ բոլոր դարերու մէջ. Շնորհալին զԱնի կը կոչէ «վայելչական հարսն ի քօղի[11]». և Գր. Տղայ կ'ըսէ, «Զհարսնութեան քօղն բարձին[12]»։ Գեւորգ և Տաթևացին պարկեշտութեան համար դրուած կը համարին զայս. և կը պահուի միշտ՝ ցորչափ «կին նորահարսն» է[13]։

Նոյն երկու վարդապետները նաև հարսին վրայ կը հաշուեն «չորս զգեստ անձինն և երեք գլխոյն»։ Առաջին չորսը կը թուին, աւելի քան յաւելուածական մասեր, սովորական վալա, կապայ, վարտիք և քող, որ գլխէն զատ իրանին մէկ մասն ալ կը ծածկէր[14]։ Իսկ գլխին երեքը մութ կը մնան։ Նկատելի է՝ որ ի Կիլիկիա ցարդ հարսին գլխին կը կապեն թաշկինակ մը, որ կ'իջնէ կը հանգուցուի կլափին ներքև[15]. յետոյ երկրորդ թաշկինակ մը, որ կը մեկնի ճակատէն ու կը կապուի գլխին ետև. ապա կը ձգեն քողը, որ կը ծածկէ երեսը՝ մինչև լանջաց կէսը, և ամբողջ թիկունքը. ահա երեք

1. Սկև. Գոկ. — 2. Խոր. 315։ — 3. Օձն. 1։ — 4. Առ՝ 198։ — 5. Նար. 382։ — 6. Սրգ. 93։ — 7. Աշուգ. 200, 202։ — 8. Ճրկ. հարսանեաց։ — 9. Փաւս. 229։ — 10. Նոյն՝ 116։ — 11. Շնրհ. Եղեւ։ — 12. Տղ. Ողբ, տող 998։ — 13. Յ. Եզ. Մոթ. Իէ, 51։ — 14. Առ՝ 221, 226։ — 15. Հմմտ. սատ՝ 247, 252, 268։

զգեստ գլխոյն, զոր չունին ոչ հայ աղջկունք և ոչ Թուրք կանայք։

Բայց հարսն ունէր նաև «զարդարանս պէսպէս... ի զգեստուց և յոսկւոյ և ի մարգարտոյ և ի քարանց պատուականաց[1]»։ Ցհ. Իմաստասէր կը յիշէ աղոցմէ «զոսկետեսակ քղայամանեկին զգեղեցկութիւն[2]», զոր Թովմա պարզապէս մանեակ կը կոչէ[3], և Գր. Սկևռացին՝ «քառամանեակ զպարանոցաւն»։ Վերջնոյս քով կայ նաև «զինդն կարկեհան ընդ սարդիոն յեռեալ», և «ապարանջանք» ձեռներուն, որոց վրայ կը յաւելուր անտես՝ բայց զգալի զարդ մ'ալ, անուշաբոյր խնկեր ծոցին մէջ. «զտաշխին ծրարս ընդ ստեամբքն[4]»։

3. Վերջապէս կային և զարդեր՝ որ հասարակաց էին փեսային ու հարսին։ Եւ նախ «պսակ ճարտանեաց՝» ըստ Փաւստոսի[5], որ ի սկզբան դալար ծաղիկներէ կը շինուէր, ինչպէս կը զգացնէ Եղիշէ, աքսորական ազատանւոյն կանանց համար ըսելով՝ թէ «ծաղիկք զարնանայինք յիշատակեցին զպսակաւէր ամուսինս նոցա[6]»։ Ծաղկունք՝ կուսութեան խորհրդանշան էին[7]. այս պատճառաւ Շահապիվանի ժողովն ուռով կը փոխանակէ ծաղկեպսակը՝ կրկին ամուսնացելոց կամ ոչ կուսից վրայ, ինչպէս առևանգողաց, ազատ կամ շինական, որոնք եթէ կոյս մնացած են՝ պսակ պիտի ընդունին. ապա թէ ոչ՝ ուռ[8]։ Նմանապէս եթէ ամուսնացելոց մին կոյս է և միւսը ոչ, առաջնոյն պսակ պիտի դրուի, և երկրորդին ուռ[9]։ Պսակը, անշուշտ ծաղկով, կը յեղյեղուի դեռ ու կը մտնէ բարդ բառերու մէջ ևս Ը դարուն Իմաստասիրէն[10]. և Շահապիվանու սահմանը կը խառնուի բարսղեան անվաւեր կանոնաց մէջ[11], որոնք յետոյ են քան զՕձնեցին։ ԺԲ դարուն Ալաւկայ որդին կը շատանայ պատուիրելով՝ ոչ կուսանին պսակ չդնել, և ուռը չի յիշեր[12]. նշան՝ թէ դադրած էր. և Տաթևացին կը հաստատէ սոյն ոճին տևողութիւնը[13]։

Սակայն միջին դարերուն ծաղկեայ պսակին հետ կը սկսի երևիլ մետաղեայն ևս, նմանողութեամբ հին թագաւորականին, որ էր «բագ ոսկիակուռ՝ ակամբք փայլեալ, ի զարդ արքայական հարսանեաց[14]»։ Այսպէս Արծրունեաց պատմիչը ժամանակի ազնուազգի նահատակաց մասին խօսելով, կ'ակնարկէ հարսանեկան «ոսկեճուռ թագակապ զարդու պսակացն[15]», որ տակաւին նոյն դասակարգին սեպհական կը թուի։ Զաքարիայի հարսն ալ «հո(յա)կապ տեսլեամբ պսակեալ, յոսկէհուռն զարդակերպեալ» է։ Աւելի վերջ մետաղեայն

1. Նար. 532։ — 2. Օձն. 1։ — 3. Արծ. 191։ — 4. Սոփ. ԺԵ, 43։ — Փաւս. 229։ — 6. Եղիշ. 157։ — 7. Հմմտ. Խոր. 313, 314, 319։ — 8. Կան. Լ։ — 9. Կան. Գ։ — 10. Օձն. 1, 10-11, 24-25։ — 11. Կան. ՄԼԹ։ — 12. Կան. ՆԱ։ — 13. Քրզ. ամր. 197։ — 14. Խոր. 325։ — 15. Արծ. 191։

կ'ընդհանրանայ՝ իւր սեպհական անուամբ։ «Թագն, կ'ըսէ Բարսեղ Ճոն, նշան յաղթութեան է, և վասն այնորիկ ի պսակին օր դնեն ի գլուխն[1]»։ Գէորգ զփեսայն կը նկարագրէ նոյն «թագ ի գլուխն». և Տաթևացին՝ թէ «երկուցն դնի թագ պսակին[2]»։ Այս բոլոր թագերը փոխանակ հին պսակաց անուշահոտութեան՝ մետաղին իրական կամ կեղծ փայլը կ'արձակեն հիմայ, և թագաւոր կոչել կու տան զփեսայն[3], և անշուշտ թագուհի՝ հարսը։

Նարօտն ալ, կարմիր ու սպիտակ գոյներով հիւսուած, միջին դարուն կը կապուի պսակելոց գլխին, ըստ Գէորգայ և Տաթևացւոյն[4], իբր նշան փրկչական կողէն բղխած արեան ու ջրոյ, որով եկեղեցին միացաւ Յիսուսի։ Ս. Ղազարու 1507ի մաշտոցը կը նկարագրէ զայս՝ «երեքկղի մանեալ հանդերձ կարմրով»։ Եւ աւելի նմանութիւն կը թուի հին թագակապին, որով նոյն մենաստանի 1466ի մաշտոցն ու հետագայ շատեր կը գրեն հոս՝ «թագ կապէ»։ — Սոյն 1345ի մաշտոցն (ի Ս. Ղազար) եւրոպական սովորութեամբ կը կարգէ մատանւոյ տուչութիւնն ալ. «մատանի լոկ անգիր ոսկի», զոր եկեղեցւոյ դրան առջև հասնելուն՝ քահանայն կ'օրհնէր ու կը յանձնէր փեսային, և սա հարսին կը փոխանցէր քահանային ձեռքով, որ անոր չորրորդ մատը կ'անցնէր։ Վանացս ՄԹ մաշտոցը կը նշանակէ «երկու մատանի, մին ոսկի և մին երկաթ», որոց առաջինը քահանայն փեսային կը յանձնէ, և երկրորդը հարսին. իսկ անոնք կը փոխանակեն իրարու։ Բայց 1507ի օրինակը կ'ակնարկէ լոկ «ոսկւոյ կամ արծաթոյ» մատանւոյն։ — Վերջապէս կը գրէ Գէորգ՝ թէ պսակելոց «խաչի կոճ կապեն», անոր տեղն ալ ճշդելով փեսային վրայ. «խաչկոճն զոր ունի ընդ ուսովն»։ Խաչաձև զարդ մ'էր, որպէս զի «առնուն զխաչն և հետևին Քրիստոսի»։

4. Ինչպէս պսակեալք, հարսնեւորք ևս իրենց գեղեցկագոյն զգեստները կը հագնէին։ Հռիփսիմեայ ներբողին մէջ «Օրիորդք թագաւորազունք և (իշխանազն) կուսանք Հայկազնեացս՝ ոսկիակուռ շքեղաշուք երփներփն զարդուք» կը հետևին արքայական հարսին[5]։ Աստի կրնանք գուշակել միւս դասակարգերունն ալ։ Ըստ Զաքարեայ՝ «գունդ վառեալս (զինուած) պատանեկաց առաջի և զկնի ընթանան, գեղազարմանն զարդուք և հրաշափառ տեսլեամբ, և գեղապաճոյճ երիւարօք և փողփողեալ նշանակօք (դրօշներով) ի սքոյն տարևածեալք, դրօշակիրք և մկնդաւորք[6] առընթեր կալով»։

1. Ճոն, Մրկ. 69։ — 2. Քրզ. ամր. 202։ — 3. Ակե. Պսկ։ — 4. Քրզ. ամր. 203։ — 5. Խոր. 311։ — 6. Գրչ. «մի ընդաւորք»։

5. Ըստ Գեորգայ՝ հարսանեաց երրորդ օրը կը վերցնէին հարսին քօղը. այսինքն ծանրը կը փոխանակէին թեթեւով մը։ Իսկ ութերորդ օրը կ՚առնուին պսակը[1], որ փեսայէն առաջին օրն իսկ հանուած էր, անոր համար լռութեամբ կ՚անցնէին անոր մասին։ Բայց հարսը կը շարունակէր անցնել հարսնութեան շրջանն՝ «ամրածածուկ քօղածիգ ծնգասէր» վիճակի մը մէջ, ըստ յաւելուածի Մակարայեցւոց[2] և նախայիշեալ վկայութեանց։

## Գ. ՄԱՀ ԵՒ ՍՈՒԳ

Հանդերձին հանգամանքները կը տարբերէին սովորականէն և իրարմէ ևս՝ մահուան պահուն, յուղարկաւորութեան միջոցին, և ասոր յաջորդող սգոյ շրջանին մէջ։

1. Հազիւ աչքերը կը փակէր հանգուցեալը, տան այրերն իրենց հագած հանդերձը պատառելով կը հանէին, և անոր տեղ քուրձ կը զգենուին[3], որ է մազեղէն, զոր վանականաց վրայ աւելի մանր պիտի զննենք։ Ե դարու այդ պատառումը դեռ տասն դար յետոյ յիշուած է Տաթևացիէն, որ կ՚ըսէ՝ թէ օմիքը կը բաժնէին կը հանէին[4]. բայց քրձի փոխանակութիւնն այլ ևս չկայ։

Աւելի մեծ էր կանանց կրած փոփոխութիւնը։ Փառանձեմ ամուսնոյն դիակին քով կ՚ողբայ՝ «զհանդերձս պատառեալ, և մերկատիտ ի մէջ աշխարանին», ուր բազմութիւնը հաւաքուած էր կոծելու[5]։ Չեմ կարող «մերկատիտ» բառը մեկնել «մերկածիծ՝» Մխիթարեան հայկարանից[6], Բուզզէի[7] և այլոց հետ, այլ կը մերձեցնեմ նոյն առթիւ Մանդականւոյն ճառից ցուցակին գործածած «մերկատիկ» ձևին[8], լծորդ կամ ուղղելի ի մերկատիգ, որոյ տիգ արմատը տեսանք իբր վերին բազուկ[9], յիշուած նաև Ոսկեբերանէ, «մի զտիգս մերկանալ[10]», ինչպէս կ՚ընէին բիւզանդացիք, և Փաւստոսէ, «զտիգսն հատեալս՝» դարձեալ նոյն առթիւ[11]։ Մանդակունին աւելի կը ճշդէ այդ կանացի մերկութեան չափը, ըսելով՝ թէ կը ծածկուէին սփածով մը, որ է սփածանելին[12], բաց թողլով բազկներն ուսերով հանդերձ. «ոչ զուսովքն մերկանալ[13]»։ Եւ այս վիճակին կ՚ակնարկէ՝

1. Սեբ. Պտկ. և Քրզ. ամր. 203. Մշտ. 1436ի, 1499ի են։ — 2. Գ Մակ. Դ, 6։ — 3. Մանդ. 176։ — 4. Տաթ. Հրց. Ժ, դ։ — 5. Փաւս. 120։ — 6. Հյկզ. և Բազր. Զարգ. Հ. 1432։ — 7. Ուււ. Դ. Հ. 480։ — 8. Մանդ. 10։ — 9. Աստ՝ 134։ — 10. Ոսկ. Թղթ. Ա, 380։ — 11. Փաւս. 229։ — 12. Մննդ. Գ, 7 են։ — 13. Մանդ. 175։

*երբ կ՚ըսէ. «անամօթապէս խզացեալք մերկանդամք[1]»։ Միանգամայն բացագլուխ և «ճերաբաճակ[2]» էին կամ «զգեստ արձակեալ[3]», և անոնց վրայ մոխիր ցանած[4]։*

*Այս ձևն անփոփոխ կը մնայ նաև յաջորդ դարերուն։ Ալծրունի Դերենկան մահուան ժամանակ տիկնայք և աղախնայք ողբով ու «բացագլխաց» փողոցները կ՚ելնեն[5]։ Շնորհալին սգաւոր Եդեսիոյ ըսել կու տայ. «Զքօղս ի գլխոյս մերկանալով՝ — Զիմ պատառեմ զծածկոյթ զարդի[6]», որ է շքեղ պատմուճանը։ Ստ. Օրբելեան զՎաղարշապատ՝ «զմայրն լուսոյ հայկազարմին՝» կը նկարագրէ՝ «Մերկ խայտառակ ի բաղրոնին, — Զանձամբ արկեալ զքուրձ խաւարին» կամ Թուխ, և գլխին առատ մոխիր ցանած[7]։ Գր. Տաթևացին կը հաստատէ նոյնը, «մերկանամք զգեստս[8]». և Յովհ. Երզնկայցին՝ թէ նորահարսն անգամ ի լուր մահուան ամուսնոյն «պատառէ զքօղ» երեսին և դուրս կ՚ելնէ[9]։ Այսպէս և Մերտնոյ 1449ին կոտորելոց վրայ ողբացող կանայք «ոմանք ճերաբաճակ» էին[10]։*

*Յհ. Գառնեցւոյ կողմանէ՝ ԺԳ դարուն՝ կը գտնենք յիշուած «ի վերայ մեռելին» նաև «կտուրս հերաց» կանանց[11], այսինքն վարսից հատումը, կրկնուած նաև Մերտնոյ յիշեալ դիպուածին մէջ, «ոմանք ժամակտուրք»։ Եւ Նահ. Քուչակ կ՚ըսէ սիրականին. «Ես մեռանիմ ի քո վերայ, դու զծամդ կտրես[12]»։ Այս սովորութիւնը շատ անգամ յիշուած է նաև հին Հելլենաց մէջ[13]։*

2\. *Եթէ սգաւորք այդպէս կը խանգարէին իրենց հանդերձն ու կերպարանքը, ննջեցեալն ընդ հակառակն կը պճնէր վերջին անգամ իւր գեղեցկագոյն զգեստներով ու զարդերով, որոցմէ ինչ ինչ մասեր իւր հետ իսկ կը թաղէին։ «Մեծամեծար և պայծառագոյն հանդերձիւք, կ՚ըսէ Պիտոյից գիրքը, զվախճանեալսն ի մէնջ բարեքաշկապէս զարդարանօք պատեմք[14]»։ Եւ այս զարդարանքն համեմատական էր ննջեցելոյն աստիճանին ու վիճակին։*

*Թագաւորք և իշխանք իրենց պատուոյ հանդերձով կը յուղարկուէին։ Բ Արտաշիսի «պատմուճանն որ զմարմնովն՝ ոսկեթել (էր), թագ կապեալ ի գլուխն, և զէնն (սուրն) ոսկւով առաջի եդեալ[15]»։ Լևոն Ե, մեռեալ ի Պարիս 1393ին, ըստ իւր կտակին կ՚ընդունի յուղարկաւորութիւն՝ «ըստ թաղման Հայոց թագաւորաց»։ Եւ «հա-*

1\. Մանդ. 176, և 178, 181։ — 2. Նոյն՝ 176, 177։ — 3. Փաւս. 120։ — 4. Մանդ. 175, 176։ — 5. Արծ. 299։ — 6. Շնրհ. Եդես. ողբ 404-5։ — 7. Օրբ. Ողբ։ — 8. Տաթ. Հրց. Ժ, Գ։ — 9. Յ. Եզ. Մաթ. ԻԱ, 51։ — 10. Յայսմ. 576։ — 11. Գառն. Խրատ։ — 12. Քուչ. 53։ — 13. Dar. *Coma*, 1362։ — 14. Պիտ. 407։ — 15. Խոր. Բ, Կ։

գած էր արքունական ճերմակ զգեստներ, և գլխին կողմն ոսկի թագ մը». դէմքն ու ոտները բաց էին[1]։

Ագաթանգեղոս Հռիփսիմեանց պատանաց համար՝ ժամանակի սովորութեամբ թագուհւոյն ու տիկնանց բերել կու տայ «գունագոյն նարօտս պատանաց, զմետաքսառէչս և զոսկէթելս կերպասուց,... ծիրանիս և զոսկէհուռն դիպակն և զերկնագոյն սպիտակն իբրև զձիւն[2]»։ Այսպէս կը պատէին նուիրատուքդ իրենց մեռելներն ալ։ Սիւնեաց պատմիչն իւր տոհմէն Վասակ Գաբուռի մարմինն՝ Թ դարուն՝ կը նկարագրէ «զարդարեալ թագաւորական զարդուք», և Աշոտին՝ Ժ դարուն՝ նոյնպէս «արքունական ձևով[3]»։ Երբ պատմչիս յատուկ չափազանցութիւնը դուրս թողունք նկարագրէս, կը մնայ ինչ որ 1165ին կը պատմուի սասնեցի Զորտուանէլ ազատին համար՝ թէ կը պատեն «պայծառ և պատուական հանդերձիւք», և իւր կատայ քոյրը՝ նոյնպէս «պայծառ հանդերձիւք[4]»։ Ն. Մառ ևս Անւոյ իշխանական դամբաններէն հանեց մետաքսեայ պատմուճաններ, որոց վրայ կային կենդանակերպ նրբահիւս կիտուածներ[5]։ Նոյնպէս ազնուազգի աղջկան մը մարմինը, որոյ պերճանքը տեսանք կանխաւ[6]։ Եւ պղնձի ապարանջաններ ու մատանիներ՝[7] անշուշտ ռամկաց յատուկ։

Հայ ազատութեան խպառ ջնջուելէն յետոյ աղքատութիւն մը կը տիրէ, որ ագահութեան կը փոխուի և կը զրկէ մեռելներն իրենց զարդերէն։ Ողբի մը մէջ հանգուցեալը կ'ըսէ. «Այսօր ելայ մերկ յաշխարհէս պատրողական, — Միայն զպատանս ունիմ բաժին՝ զոր ինձ կու տան[8]»։ Եւ երիտասարդի մ'ըսել կու տայ Փերտվէլ[9]. «Ջօղերս յականջէս առին, — Զմատանիս զոր խիստ սիրէի. — Զկապաս ի յանձնէս հանին, — Թալնեցին որպէս հարամի[10]»։

Հայրապետաց ու եպիսկոպոսաց կը զգեցնէին սրբազան հանդերձը, իրենց հովուական նշանակօք հանդերձ։ Վարդան պատմչի եղբօր՝ Ներսէս եպիսկոպոսի մարմինը, մեռած 1284ին, գտնուեցաւ 1669ին՝ «սպիտակ պատարագի զգեստովն պատեալ, և վեղարն ի գլուխ[11]»։ Եւ Կոստանդին Ա կաթողիկոսի գերեզմանը բանալով, «գտան զշուրջառն փտած, և զպավլին[12] խայտնին չէն, և զզաւազանն և զմազն[13]»։

Ս. Ղազարու հնագոյն մաշտոցը ԺԱ դարու՝ հանգուցեալ քահանային հետևեալ տարազը կը նշանակէ. «ազուցանեն պարեգօտս

1. Բառմ. Լև. 2։ — 2. Ագթ. 571։ — 3. Օրբ. 126, 134։ — 4. Հյպտ. 394, 395։ — 5. Բիւզ. 21 օգ. 1909։ — 6. Անդ՝ 198–9։ — 7. Անդ՝ 203։ — 8. Տղր. տպ. 1513, վենետ, — 9. Անդ՝ 222։ — 10. ԻԹ Տղր. 352։ — 11. Վիրպ։ — 12. Հմմտ. անդ՝ 216։ — 13. Սմր. 229։

սպիտակս, և փիրուզ սպիտակ, և կնկուղ սպիտակ, և գօտի մաշկեղէն, և անդրավարտիս սպիտակ... և գուրպայս յոտսն», որոնք արտաքին հանդերձի մասունքն էին, և ասոնց վրայ կը յաւելու սրբազաններէն՝ «խաղոխի միածալ... և բուրվառ յաջու ձեռինն, և խաչ և աւետա-րան ի գիրկսն»։ Նոյնպէս է դեռ ԺԳ դարուն, «ագուցանելով զմար-մինն և զգլուխն և զթիկունսն փիլոնաւ, և զոտսն օղօք, և պնդեն գօտւով զմէջսն[1]»։ Բայց ԺԵ դարու սկիզբը փոփոխութիւն կը նշմարուի Տաթևացւոյն նկարագրին մէջ. «փակեղն և վարշամակն ի գլուխն» կը դնեն փոխան կնգղոյ. յետոյ քաձկոն, փիլոն և այլն[2] ըստ մաշտոցին։

Իսկ կրօնաւոր եղբարց համար նոյն մաշտոցը կը գրէ. «Զսպեն զնոյն տիպն, նովին սքեմով և այծեաւք, քաձկոնով, կնկղով, կօշ-կով», որ է իրենց սովորական հանդերձը. և որոց վրայ Տաթևացւոյն օրով կը յաւելուն «զխունկ ի ձեռս[3]»։

3. Յիշեալ վկայութեանց մէջ ուշագրաւ է սպիտակ գոյնն ար-քայական ու եկեղեցական ննջեցելոց վրայ, ինչ որ ստիպողական էր նաև արքունի յուղարկաւորաց։ Վերջին Լևոնի ազգակիցք կ'երթա-յին «դագաղին ետևէն սպիտակազգեստ». դագաղը կը տանէին «տաս-ներկու սպիտակազգեստ հասարակ աղքատներ», և ջահակիր էին «չորս սպիտակազգեստ աղքատներ[4]», ինչ որ Գաղիացւոց զարմանք կը պատճառէ։ Հայոց մէջ Ռուբինեաններէն շատ հին է այս գոյնը, որոյ ազդեցութեան ներքև Ոսկեբերանի թարգմանիչը կը վերածէ բնագիրն այսպէս. «Բազումք ի հեթանոսաց... յետ որդւոցն վախ-ճանելոյ սպիտակ (յն. գեղեցիկ) զգեցան[5]», ուր յայտնի է՝ թէ սպիտակն ալ գեղեցկութեան գաղափարակից էր, և աւելի ընդարձակ քան արքայական յուղարկութեան մէջ։ Նոյնը կը տեսնուի նաև ուրիշ ազգաց քով. կայսերութեան ժամանակ հռովմայեցի արք թուխ և տիկնայք սպիտակ կը զգենուին[6]։ Բոլոր սկիւթացիք Աթանասիա կուսանին յուղարկաւոր կ'երթան՝ «զգեցեալ սպիտակ հանդերձս[7]». Նոյնպէս և ուրիշ ազգերէ ոմանք։

Ընդ հակառակն Արտաշիսի դագաղին ետևէն կը յիշուին լա-լականք կամ «կուսանք սևազգեստք[8]»։ Եւ սպիտակը Ռուբինեանց օրով արդէն արքունեաց միայն սեպհական մնացած է, «ըստ թաղման Հայոց թագաւորաց», և անոնց հետ ալ կը վերջանայ, որով այնու-հետև անծանօթ է նաև եկեղեցականաց վրայ՝ Տաթևացւոյն վերոյի-շեալ նկարագրին մէջ։

1. Վրդ. Մաշ. — 2. Քրզ. ժմր. 249. — 3. Անդ. — 4. Բառմ. Լև. 2, 131. — 5. Ոսկ. Մտթ. Բ, 478. — 6. Dar. II, 1391. — 7. Վրք. Հրց. Բ, 53. — 8. Խոր. Բ, 4.

*4. Թաղման կը յաջորդէր սգոյ շրջանն՝ անհաւասար տեւողութեամբ. քառասուն օր[1], երեք ամիս[2], տասն ամիս[3], երեք տարի[4] և այլն։ Այդ միջոցին սգաւորք միշտ թուխ զգեստ կը կրէին, ինչպէս և Յոյնք[5], Հռովմայեցիք[6] և այլք։ Այսպէս Արծրունի Դերենկան կինը Սոփիա՝ անոր մահուան առթիւ «զգեցաւ զսեւս ի զգեստիցն», և գլխին՝ առաւ «արկանելիս թխակերպս[7]»։ Նոյնպէս սեւ կը հագնէին հանգուցեալ Աշոտ արքայի եղբայրը Սմբատ[8], 1043ին Խաչիկ իշխանի որդիքը[9], 1165ին՝ Զորտուանելեան Կատայի ընտանիքը[10], Շնորհալւոյն մխիթարած մէկ իշխանը, գլխին ալ սեւ վարշամակ մը կապելով[11] փոխան գլխարկի, և Երուսաղէմ՝ Գր. Տղայի ողբին մէջ՝ իբր այրի «զսեւս» զգեցած ու «ծածկեալ սեօք դէմք երեսին»։ Զայս կը յիշեն Տաթեւացին[12] ու Քուչակ ևս[13]։ — ԺԳ դարուն սգոյ գոյներէն է կապոյտն ալ, յիշուած Յհ. Երզնկացիէն. «սեաւ և կապոյտ զգենուլ[14]», զոր կը կրկնէ ու կը դատապարտէ Յհ. Գառնեցին ևս, «ի վերայ մեռելոյն կոծ և կապոյտ[15]», և Մով. Երզնկացին՝ թէ սգաւորք «մի՛ սեաւ կամ կապոյտ զգեցցին[16]»։ Այս «սգոյն հանդերձն» ամէն անգամ նոր կը շինուէր, բաւական դրամ ծախսելով[17]։*

*Սոյն զգեստի նիւթն է յաճախ քուրձ, ինչպէս ըսաւ Մանդակունին[18]։ Գր. Մագիստրոս ալ իր հօրեղբօր սուգը կը պահէ «հող զգլխով և քուրձ զգեցեալ[19]», Եւ ԺԵ դարուն Առաքել Բաղիշեցին դեռ կը հաստատէ զայս՝ Խլաթեցւոյն ողբին մէջ. «Քուրձ զգեցիր, եկեղեցի, — Այրի եղեր յանկարծակի[20]»։ Բայց դիւրին չլինելով միշտ քուրձ գտնել, զայն կը փոխանակէր երբեմն քայքայուած հանդերձը. այրին, կ՚ըսէ Լաստիվերտցին, «Նստի... պատառատուն հանդերձիւ[21]»։*

*5. Մահէն զատ սգոյ առիթներ էին ուրիշ նիւթական կամ բարոյական արկածներ, որոնք նոյնպէս հանդերձից վրայ փոփոխութիւն մը յառաջ կը բերէին, և կը կայանար՝ պարեգօտին օձիքը պատռելով՝ զայն տգեղցնելուն մէջ։ Վարդանանց ուրացութեան գուժկանը, և յետոյ Վասակայ նենգութեանց բօթաբերը կը հանէին՝ «զօձիս պատառեալ[22]»։ Մակարայեցւոց Թարգմանիչը սոյն բացատրութեամբ կը փոխանակէ միշտ՝ բնագրին «հանդերձի պատառման»*

1. Արծ. 323. — 2. Վհր. տող 1157. — 3. Արծ. 257. — 4. Կոնգ. Աղթ. 412. — 5. Կիպր. Մհկ. և Ոսկ. Թղթ. Ա, 380. — 6. Dar. II, 1401. — 7. Արծ. 300. — 8. Յհ. Կթ. 183–4. — 9. Ուռ. ԿԳ. — 10. Հյպտ. 395. — 11. Շնրհ. Ձափ. 311. — 12. Տաթ. Հրց. Ժ, Դ. — 13. Քուչ. 55. — 14. Յ. Եզ. Սուգ. ԻԴ. — 15. Գռն. Խրատ. — 16. Մ. Եզ. Խրատ. — 17. Յ. Եզ. Սուգ. — 18. Ասա՛ 300. — 19. Մագ. Թղթ. 41. — 20. Աշուղ. 174. — 21. Լաստ. 76. — 22. Եղիշ. 43, 60.

*յիշատակութիւնքը*[1]*։ Եւ այս սովորոյթը կը մնայ միշտ. Հեթում իր զինակից Թաթարաց պարտութեան գոյժը տարաւ ղանին՝ «զօձիւն պատառեալ*[2]*»։*

## Դ. ԱՊԱՇԽԱՐՈՒԹԻՒՆ

*Մեղաւորք որ առ Աստուած կը դառնային, և հաւատացեալք որ զիրենք պահեցողութեան կու տային, կը մտնէին ապաշխարութեան վիճակին մէջ։ Ասոնք կը զրկուէին կամաւորապէս կերակրոց ու հանդերձից փափկութենէն, և կը մտնէին ի սուգ, ինչպէս կը սահմանէ Աւետարանը զպահքը*[3]*։ Եւ Տերտուղիանոսի օրերէն ծանօթ է ապաշխարումն «քրձով ու մոխրով*[4]*»։*

*Նոյն սովորոյթն անցաւ և Հայոց, որոց աչքերն երբ Լուսաւորչի քարոզութենէն բացուեցան հեթանոսական խաւարին դէմ, Թագաւորն ու ժողովուրդը «ձեռն զօձիւք արկեալ՝ զպատմուճանս պատառէին», և գետնի վրայ կը նստին՝ «ընդ մոխիր թաւալեալ»։ Ցետոյ «զգեցեալ քուրձ, և նստեալ ի վերայ մոխրոյ», վաթսուն և վեց օր պահք կը պահեն*[5]*։ Քրիստոնէական օրէնքը, կ՚ըսէ Ցանախապատումը, պղծագործը կը զրկէ եկեղեցիէն, մինչև որ գիշեր ու ցերեկ «ի խորգ (որ է քուրձ) և ի մոխիր» ապաշխարէ պահօք։ Նոյնը կը յանձնարարէ Մանդակունին՝ այդ կարգի մեղաւորաց*[6]*, «խորգով և մոխրով ե՛լ ի տաճարն Աստուծոյ*[7]*»։ Ս. Շուշանիկ բանտուելով ուրացող ամուսնէն, կամովին ապաշխարողի զգեստ կը հագնի, որ էր «ի մերկուց քուրձ», անոր վրայ անտիոքացի պարեգօտը, և «բոկոտն եա*[8]*»։ Եւ Ս. Ղազարու մաշտոցը (ԺԱ դարու) ապաշխարողաց կանոնին մէջ զգեցնել կու տայ «փիլոն կարգ», զուցէ վերջինս ուղղելի կարճ, ուր 1216ի օրինակը միայն «փիլոն» կը նշանակէ։*

## Ե. ԳՈՒՍԱՆՈՒԹԻՒՆ

*Թէ հին ժամանակ հայ թատեր*[9]* կամ խնճոյից*[10]* մէջ հանդիսացող դերասանք յատուկ տարազ մ'ունէին, ինչպէս մերձաւոր*

1. Ա Մակ. Բ, 14. Գ, 47 են, — 2. Սմբ. յաւել. — 3. Մտթ. Թ, 15. — 4. Տերտ. Ապշ. Թ. — 5. Ագթ. 182, 545. — 6. Ցճխ. 69. — 7. Մանդ. 147. — 8. Սոփ. Թ, 43. — 9. Դաստ. 312–13. — 10. Ճաշեր, 207–11.

Անտիոքացիք[1], Յոյներ[2] և այլք, անկարելի եղաւ ինձ հաստատել։ Եւ հակամէտ իմ խորհելու՝ թէ խստօրէն զատ ձև մը չէր որոշեր զանոնք հասարակաց կրածէն։ Մանդակունին, որ բաւական չափով կը նկարագրէ անոնց դերը, կ'ըսէ վարձակաց համար, որ էին դերասանուհիք, թէ բեմի վրայ «ի բարս բոզից կերպարանեալք» էին[3]. և չի ակնարկեր՝ զոր օրինակ՝ Անտիոքացւոց կիսամերկութեան պէս համարձակ ձևերու, որոնք չպիտի վրիպէին իր խստաղատ աչքերէն՝ եթէ լինէին, ինչպէս նոյն կերպը կը ձաղէ յուղարկաւորութեան առթիւ։ Բեմբասացս այլուր[4] լաւագոյն կը ճշդէ «բոզից բարքերը», որ կը նշանակէր հանդերձից պերճանքը, անոնց ծայրայեղ և հրապուրիչ ցուցադրութիւնը, որ գայթակղութեան պատճառ կը դառնար հանդիսատես ու նմանասէր կանանց։ «Անտի են, կը բողոքէ նոյն հայրապետը, մարդելուզութիւնք և կնահանութիւնք և մանկապղծութիւնք յաղագս զարդուցն պաճուճանաց, անտի են սնափառութիւնք և պճնութիւնք[5]»։ Ասոնց մէջ կը կայանար ուրեմն թատերական տարազը։

Ուրիշ շատ վարդապետներ, որ կը կռուին զուսանութեան դէմ, չեն յիշեր հանդերձի առանձին ձև մը։ Միայն միջնադարեան գրչի մը, Աղձնեաց Սիմէոն եպիսկոպոսի քով գտած եմ վարձակաց «հերարձակ» երևիլը բազմականաց առջև, և զուսանաց հետագայ փոփոխութիւնը. «Զկերպարանն Աստուծոյ ի կերպարանս ագռաւուց ներկեալ, ի գոյն սևութեան մրով եղծանես, այլագունես ի կերպարանս սատանայի[6]»։ Դէմքին ու գլխին վրայ է ուրեմն դերասանից գլխաւոր զանազանութիւնը, միացած զգեստին ու զարդուց ճոխութեան հետ։

## Զ· ԱՅԼ ԱՌԻԹՆԵՐ

Շատ էին կենցաղական առիթները, որոնք հանդերձի փոփոխութիւններ յառաջ կը բերէին. և որոց գլխաւորները թուել բաւական է մեզ այս տեղ։

1. Զատկի տօնը քրիստոնէից հին սովորութիւն էր՝ պատուել սպիտակ զգենլով, ինչ որ նշանակ էր յարութեան Յիսուսի[7]։ Նոյնը մեր քով ալ կար, և ասոր ակնարկել կը թուի Եղիշէ, ըսելով Վարդանանց համար՝ թէ Աւարայրի մէջ ընդունելով սուրբ խորհուրդը,

1. Ոսկ. Մտթ. Ա, 93-5, 568-9։ — 2. Dar. I, 1123, ևն։ — 3. Մանդ. 134։ — 4. Նոյն՝ 44։ — 5. Նոյն՝ 134։ — 6. Աղձ։ — 7. Cabr. III, 3000։

*«լուսազգեստ եղեն՝ որպէս ի տէրունեան մեծի սուրբ զատկին[1]», և ուր «լուսազգեստի» նշանակութիւնը երկդիմի, կրնայ թէ հոգևոր[2] և թէ սպիտակ գունի իմաստը տալ։*

2. *Եկեղեցւոյ մէջ՝ քրիստոնէական բարոյականը կը պահանջէր պարկեշտութիւն և հաւասարութիւն աղօթականաց միջև, որով և հանդերձից համեստութիւնը։ Եթէ երկիւղածք կը հպատակէին այս կանոնին, փառասէր մեծատունք ընդ հակառակն իրենց պերճանաց ցուցադրավայր մ'ըրած էին աղօթատեղին՝ ըստ Մանդակունւոյն։ Հոն երթալու համար, կ'ըսէ նա, կը լուացուէին, կ'օծուէին, և արք կը հիւսէին իրենց վարսերը, կը զարդարուէին զգեստներով։ Եւ յառաջ տանելով՝ կը բացատրէ անոնց անկարգ ընթացքը պաշտամանց պահուն, որ կը համաձայնէր այդ պաճուճանաց[3]։*

3. *Զբօսանք, մանաւանդ մարզականք, հանդերձից թեթևութիւն մը կը պահանջէին՝ ազատ շարժելու համար. և այս նպատակաւ կը հանէին մեկնոցը կամ վերարկուն, ինչպէս կը հաստատէ Փարպեցին՝ առ Վահան Թղթին մէջ[4]։*

4. *Խնձոյքը կարևոր առիթներէն մին էր զարդարուելու, մանաւանդ ազնուական դասին համար։ Տիկնայք կը յարդարէին սանդրով իրենց վարսերը[5]. նոյնպէս և արք իրենցը[6], և կ'օծուէին անոյշ իւղերով[7]։ «Ազնիւ պատմուճան» մը միայն կը կրէին[8] առանց ուրիշ յաւելուածի, և կը նստէին՝ պատուական վարսակալն իրենց գլխին[9]։ Վասակ Ցազկերտի ընթրեաց կ'երթայ՝ իւր ամբողջ մարզպանական պերճութեամբ[10]։ Եւ կը պահէին նրանն ու սուսերն ալ[11]։*

5. *Ծառայական գործերու մէջ ևս փոփոխութիւն մը կը կատարուի, ոչ այնքան հանդերձին ամբողջութեան, որքան ծառայող բազկաց վրայ։ Պապ արքայ իւր ընթրեաց պահուն մահանիւթ բաժակը մատուցանելու համար Ներսիսի, կ'ելնէ զահէն, և «հոլանեալ[12]» կամ հանգրինելով թեզանիքը[13], այնպէս կու տայ թոյնը։ Նոյնը տեսանք նաև մեր 65 և 104 Ձևերու վրայ[14]։*

6. *Քնոյ մէջ սովորական էր հանել բոլոր զգեստները և մերկ ննջել, չլինելով հին ժամանակ, ինչպէս ըսինք, կտաւեղէնները[15]։ Զայս կը զգացնէ Մխիթար Գոշի մէկ առակը, ուր զմիւռնեան խեցեմորթ մը կը հրաւիրէ ճաշի և «ի մահիճս հանգուցանել»․ որուն կը պատասխանէ հրաւիրեալը՝ թէ «չէ դիւրին ինձ մերկանալ և*

1. Եղիշ. 58։ — 2. Նոյն՝ 42։ — 3. Մանդ. 44. տես՝ 126։ — 4. Անդ՝ 139։ — 5. Անդ՝ 127։ — 6. Անդ՝ 114։ — 7. Անդ՝ 134. Եղիշ. 156։ — 8. Փաւս. 207։ — 9. Անդ՝ 115։ — 10. Անդ՝ 108։ — 11. Անդ՝ 101, 118, 121, 122։ — 12. Փաւս. 216։ — 13. Ճաշեր, 188։ — 14. Անդ՝ 201, 288։ — 15. Անդ՝ 5։

*յանկողին մտանել[1]»։ Այս սովորոյթը շատ հին էր և ընդհանուր. որով Ոսկեբերան կ'ըսէ՝ թէ վանականաց արգելուած էր «մերկ ննջել», և այս պատճառաւ «ընդ քունն չմերկանան[2]»։ Եւ աշխարհականաց համար կ'ըսէ՝ թէ երբ զարթնուն, նախ կը լուացուին, և ապա «օդ և ձորձս խնդրեմք[3]», զորս ուրեմն հանած էին։ Իսկ անկողնոյ մէջ մարմնոյն ծածկոյթ ունէին «զվերարկուսն», ինչպէս կը կոչուէր վերմակը[4]։*

7. *Լոգանք և լող նոյնպէս անզգեստ կը կատարուին։ Երէցն Վարդան Մամիկոնեան կը նկարագրուի Երախանի ամրոցին մէջ կանգնած «մերկանդամ», ու սպասաւորք անոր վրայ ջուր կը լեցընէին[5]։ Եւ Տրդատ անցնելու համար Եփրատէն, կը հանէ ու թիկանց վրայ կը կապէ «զիւր առնազէնն[6]», ուր իմանալու ենք հանդերձն ալ. վասն զի Ոսկեբերան «մերկանդամ» կը նկարագրէ անտիոքացի կանայքն անգամ, երբ կը լողային հրապարակաւ[7]։*

8. *Բանտարկեալք նոյնպէս կը հեռանան հասարակաց ձևէն, որով Վասակայ կը զգեցնեն յատուկ «հանդերձ մահապարտի[8]»։ Զոր կը ճշդէ, ըսել տալով պարսիկ դահճին՝ թէ պատուաւոր անձ մ'արքունի բանտը թէ մտնէ, «սգոյ հանդերձ ագանի[9]», զոր տեսանք վերև։ Անոր գլուխն ալ կ'անշքացնէին։ Ըստ այսմ՝ Անգեղ տան իշխանը ձերբակալելով Հայաստանի քրմերէն* 438 *հոգի, կը ստիպէ քրիստոնեայ դառնալ. և երբ անոնք կը մերժեն, «գերծեալ զգէս նոցա՝» կը բանտէ[10]։ Նոյնպէս կը վարուին Պարսիկներն ալ* 554*ին՝ Ցիզտիբուզիտ վկային հետ, որ իրենց կրօնէն քրիստոնեայ դարձաւ. «կտրեալ զմօրուսն և զհերս», բանտարկեցին[11]։*

*Ասոնք են ինձ ծանօթ կենցաղական առիթներն և անոնց պատշաճ հանդերձի ձևերը, որոցմով կը կնքեմ հոս աշխարհիկ տարազուց նկարագրութիւնը և գրութեանս առաջին մասը։*

1. Գոշ՝ Առկ. ՀԳ։ — 2. Ոսկ. Թղթ. Ա, 124, 125։ — 3. Անդ՝ 124։ — 4. Եղիշ. 134։ — 5. Փաւս. 128։ — 6. Ագաթ. 158։ — 7. Ոսկ. Մտթ. Ա, 107-8։ — 8. Եղիշ. 107։ — 9. Նոյն՝ 143։ — 10. Զեն. 35։ — 11. Վկյք. Բ, 126։



# ԳԼՈՒԽ Ա

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

*ՅՈՅԺ հետաքրքրական են, և նոյնպէս ցարդ· անխնամ մնացած, հայ եկեղեցւոյ պաշտօնէից ու վանականաց զգեստաւորութեան ձևերը, որոց քննութեան կ'անցնիմ այժմ, գոհացում տալու համար հնասիրաց, և ցուցնելու՝ թէ այժմու տարազը շատ հեռի է անկից՝ զոր կը կրէին Լուսաւորիչ, Սահակ ու Շնորհալին. և արժանի չէ այն վստահութեան՝ զոր կը վայելէ շատերու մտաց ու լեզուին մէջ, և որով միամտօրէն կը զգեցնեն հրատարակիչք մեր ս. Հայրերը, որոց դէմքերն արդէն անծանօթ և հանդերձն ալ օտար, ոչ մէկ կիտով չեն խօսիր պատմասիրի սրտին։ Որովհետև հայ եկեղեցական զգեստը սերտօրէն կապուած է միւս քրիստոնեայ եկեղեցեաց տարազուց պատմութեան հետ, հարկ է որ հոս տամ նախ ընթերցողացս քանի մ'ընդհանուր ծանօթութիւն։*

1. *Եկեղ. զգեստին ծագումը։ — Եկեղեցւոյ աստուածային Հիմնադիրն արտաքին հանդերձի առանձին տարազ մը չպատուիրեց իւր աշակերտաց. այլ միայն հասարակաց կրած զգեստին պարզագոյն ձևը, որ է մէկ պարեգօտ ու հողաթափներ*[1]*։ Արևմտեան հնախօսք կը միաբանին հաստատելու՝ թէ այս դրութիւնը տևեց գէթ առաջին երեք դարերուն, յենլով Որոգինեայ և այլոց վկայութեանց վրայ*[2]*։ Մինչ աշխարհիկ տարազը հետ զհետէ կը փոփոխուէր, կղերը հաստատուն պահեց իւր վրայ նախկինը, որ եկեղեցական դարձաւ, զայն պճնելով ըստ նիւթին և գունոյ, և հրաւիրելով հոգևոր իշխանութեանց բողոքը. այս կը լինէր Դ—Ե դարերու միջև*[3]*։*

1. Մրկ. Զ, 9. Ղկ. Թ, 3. — 2. Mart. 778. Arm. 413. — 3. Mart. 779.

Անստոյգ է նաև այն կէտը՝ թէ առաջին երեք դարերուն կային սրբազան հանդերձներ թէ ոչ։ Հնախօսից մէկ մասը կը համարի՝ թէ եկեղեցականք իրենց հագած սովորական զգեստով կը մատչէին սուրբ պաշտամանց. և ուրիշներ կը կարծեն՝ թէ յատուկ զգեստ ունէին, սովորականին ձևով՝ բայց քան զայն մաքուր[1]։ Եթէ հաւաստի տեղեկութիւնք չկան՝ սրբազան հանդերձը հեռացնելու հասարակ ձևէն, սակայն ունինք գէթ մասնական տարբերութեանց յիշատակներ։ Ահարոնեան քահանայութեան կարգերը չէին կրնար ամբողջովին անտեսուիլ քրիստոնէութենէն. մանաւանդ սկիզբները, երբ օրինաց պահպանութեան նախանձը դեռ շատ զօրաւոր էր նորադարձ Հրէից սրտին մէջ[2]։ Հեգեսիպպոս, Բ դարուն, կը պատմէ Երուսաղեմի եպս. տեառնեղբայր Յակոբոսի համար՝ թէ հրեայ քահանայապետին նման կը մտնէր սրբութիւն սրբոցը, հագած «հանդերձ կտաւի[3]», որ քահանայապետին յատուկ էր նոյն առթիւ[4]։ Իսկ Եփեսոսի Պողիկրատ եպիսկոպոսը, դարձեալ Բ դարուն, կ'աւանդէ Յովհաննէս աւետարանչի մասին՝ թէ «զթիթեղն քահանայապետութեան տանէր[5]», այսինքն հրէականը[6]։

Այդ մովսիսական զարդերն յետոյ մոռցուեցան. սակայն Դ դարուն երկրորդ քառորդէն արդէն յայտնապէս յիշատակուած կը գտնենք սրբազան զգեստին գոյութիւնը Եկեղեցւոյ մէջ։ Եւսեբէոս կեսարացի նաւակատեաց տօնի մ'առթիւ ժողովեալ եպիսկոպոսաց խօսելով, այսպէս կ'ըսէր. «Ով բարեկամք և քահանայքդ Աստուծոյ, որ զգեցեալ էք ի հանդերձ սրբութեան, և զպսակ երկնաւոր փառաց և զօծումն Աստուծոյ և զքահանայական սրբոյ հոգւոյն զպճղնաւորն արկեալ զանձամբ[7]»։ Եւ Գր. Նազիանզացի իւր ձեռնադրութեան օրը կ'ըսէր ձեռնադրողին. «օծանես զիս ի քահանայապետ և պատես պատմուճանաւ և զխոյրն դնես ի գլուխ[8]»։ Հետևաբար խորհրդական զգեստը կայ արդէն և ընդհանուր է այդ ժամանակ, բնականապէս աւելի կանուխ սկսած։

2. Եկեղ. զգեստը Հայոց մէջ։ — Լուսաւորիչ, որ Աւետարանի լոյսն ու կարգն ընդունեցաւ Յունացմէ և 302ին բերաւ ի Հայս՝ անոնց լեզուով ու ծիսով հանդերձ, շատ բնական էր՝ որ առնուր անոնց տարազն ալ, արտաքինն ու սրբազանը միանգամայն, որոնք իւր օրով արդէն կազմուած էին, դատելով Եւսեբիոսի յիշեալ վկայութենէն։

1. Mart. 780. Arm. 414։ — 2. Գրծ. ԻԱ, 20 ևն։ — 3. Եւս. Եկ. 127։ — 4. Ղևտ. Զ, 10. ԺԶ, 4 ևն։ — 5. Եւս. Եկ. 396։ — 6. Ելք. ԻԸ, 36։ — 7. Եւս. Եկ. 723։ — 8. Mart. 780։

*Արտաքին հանդերձին խնդրով զբաղեցաւ ժամանակաւ Սուքիաս վ. Պարոնեան՝ երկար յօդուածով մը[1], զուրկ քննադատութենէ և հմտութենէ, յորում կը համարէր՝ թէ Ե դարէն յառաջ Հայոց կղերական ձևը չէր զանազանեբ աշխարհականէն, բայց միայն թուխ գունով. և թէ Ե դարուն սկսաւ եկեղեցականաց պարեգօտը, փիլոնն ու վեղար, վանականութենէ փոխ առնուելով։ Առանց աւելաբանութեան կը փութամ ցուցնելու՝ թէ մեր մէջ ևս՝ հայ քրիստոնէութեան սկիզբէն կար եկեղեցական յատուկ տարազ մը, առնուած Յոյներէն, և Պարոնեանի կարծածէն տարբեր։*

*Փաւստոս ինքնին կը հաստատէ առաջին կէտը, պատմելով թէ երբ զմեծն Ներսէս 353ին սարկաւագ կը ձեռնադրէին, «բերին զհանդերձս կղերիկոսաց՝ զգեցուցանէին նմա[2]»։ Պատմչիս լեզուին մէջ «կղերիկոսք» կամ «կղերք» կը նշանակէ ամէն կարգի վիճակաւորները[3], ինչպէս կ'իմանային այդ յոյն բառով յոյն և լատին գրիչներն ալ[4]. Հետևաբար բոլոր եկեղեցականաց սեպհական էր այդ հանդերձը։ Նոյնը կը հաստատէ երկրորդ անգամ՝ երբ կը խօսի Ջաւենի օրով մտած զեղծման վրայ, թէ սա «կրօնս (սովորութիւն) մի զոր եդ յիւրում ժամանակի», այն է զինուորական տարազը. որով՝ կը յարէ՝ «Թողին զկրօն առաքելական եկեղեցւոյն, սկսան գնալ ըստ իւրեանց մտաց. զի ոչ ըստ կրօնիցն ազանէին քահանայքն զպճղնաւորն, որպէս օրէն էր ի բնէ[5]»։ Այսքան հին կը համարի եկեղեցական ձևը, և կը վերագրէ «առաքելական եկեղեցեաց» կամ բոլոր քրիստոնէից, որոց ամենուն քով հաւասար էր։*

*Գալով Հայոց հագածին յունական ծագման, կը վկայէ աստ Գիւտ կաթողիկոս, որ պատասխանելով Պարսից Պերոզ արքայի մեղադրութեան՝ թէ բարեկամ էր Յունաց, կը յիշեցնէր մեր կրօնական կապերն անոնց հետ, և թէ մինչև անգամ «զկերպարան հանդերձիցս զոր ունիմքս մեք, անտի գնեմք. վասն զի և ոչ յայլ աշխարհի գտանի սա ուրեք՝ բայց անդ, հարկաւորիմք անտի գնել զայս ըստ ժամանակին պիտոյից[6]»։ Շատ որոշ է վկայութիւնս. Հայաստանի մէջ անգամ չեն շիներ, այլ պատրաստ կը գնեն Յոյներէն իրենց հանդերձը. թէ արտաքինը, որուն հաւանօրէն կ'ակնարկէր հայրապետը՝ համոզելու համար Պարսիկները, և թէ սրբազանը, որ աւելի ևս պիտի կարօտէր յոյն ճարտարաց, և որոյ հաւասարութիւնը յունականին հետ՝ աւելի որոշ պիտի տեսնենք յետոյ։ Արտաքին զգեստը*

1. Արև. 19 մայ. 1890։ — 2. Փաւս. 70։ — 3. Հմմտ. նոյն՝ 91, 94։ — 4. Cabr. III, 1902-5։ — 5. Փաւս. 263։ — 6. Փրպ. 345։

միջին դարուն կը հեռանայ յունականէն. մինչ սրբազանն այնուհետեւ երկար ժամանակ դեռ կը պահէ նմանութիւնը բնագրին հետ, որ կ'իշխէ նաեւ միւս եկեղեցեաց մէջ։ Հռովմայ Ս. Կղեմէս եկեղեցւոյն նկարուց մէջ, Թ–ԺԱ դարուց, տեսայ պապ մը կղերին հետ՝ դեռ յունական ձեւով հագուած։ Նոյնպէս են եւ ասորի եկեղեցականք՝ ձեռնադրութեան հին պատկերի մը մէջ[1]։

3. Եկեղ. զգեստոյ վիճակը։ — Սրբազան հանդերձից վրայ ներելի էր ամէն ճոխութիւն, ի պատիւ տէրունական մեծ խորհրդոյն, որոյ առջեւ կը կորնչէր եկեղեցականին անձը, եւ ի հանդէս կու գար սեղանի պաշտօնեայն միայն։ Ուխտանէս այսպէս կը նկարագրէ հայրապետանոցին զգեստները՝ Մովսէս Բ կաթողիկոսի օրով. «զզաւազանն... եւ զվակաս կաթողիկոսին մետաքսեայ՝ կազմեալ յականց եւ յոսկւոյ եւ ի մարգարտէ, եւ զայլ զգենլիսն եւ զարկանելիս քահանայից եւ սարկաւագաց՝ զբեհեզս եւ զծիրանիս... եւ զայլ ես պայծառ պատմուճանս պէսպէս զարդուց, դիպակաց եւ կերպասուց եւ ծիրանեաց՝ գունակ գունակ եւ երփն երփն եւ երանգ երանգ ծաղկազարդ գունօք գործեալ գեղեցկապէս[2]»։ Այս նկարագիրն յատուկ էր թէ պատմչիս եւ թէ նախորդ ու յաջորդ դարերուն, որքան իւրաքանչիւր եկեղեցւոյ կարողութիւնը կը ներէր։

Իսկ արտաքին հանդերձից վրայ իրենց աշխարհէ ուրացումն ու պարզութիւնը ցոյց պիտի տային եկեղեցականք։ Եղիշէ ըսել կու տայ Միհրներսեհի՝ թէ մեր առաջնորդք «սիրեն զանշքութիւն հանդերձից, եւ յարգեն զանարգս քան զպատուականս[3]»։ Ոմանք կը թողուն սովորական ձեւն անգամ, եւ յոռեգոյնը կ'առնուն։ Խաղ՝ տեղապահ Ներսեսի՝ կը մեղադրուէր հակառակորդներէն իբրեւ «պճնող առ հանդերձս». եւ նա երկիւղած մարդ, «թողեալ այնուհետեւ զպերճագոյն հանդերձսն, խարազնազգեաց եղեալ՝» այնպէս անցուց կեանքը[4]։ Մեզ ծանօթ[5] Յոհան եպիսկոպոսը կեղծաւորաբար կը թափառէր «խորգահանդերձս». եւ փոխանակ կօշկաց՝ «զամառն ճեսկով պատէր եւ զձմեռն կեմով[6]». մին բարակ հիւսուած նիւթ[7], միւսը թանձր պատուեղէն, լծորդ յն. χημὸς (սակառ, ուռկան) բառին։

Այս շեղումն հասարակաց ձեւէն կ'երեւի նաեւ ուրիշ դարերու մէջ։ Սարգիս կաթողիկոս, որ վանականութենէ բարձրացաւ հայրապետական աթոռը, կը շարունակէ ապրիլ հոն կրօնաւորական կենօք եւ նախկին «ձեւով մարմնոյ»։ Նաեւ Յակոբոս եպիսկոպոս Հարքայ,

1. Fleur. VI, տպ. 489. Cabr. III, 2590։ — 2. Ուխտ. 66։ — 3. Եղիշ. 21։ — 4. Խոր. Գ, լա։ — 5. Աստ՝ 140։ — 6. Փաւս. 266։ — 7. Հմմտ. Հյկզ. — 8. Ասող. 251։

որ յետոյ հիմնադիր եղաւ Թոնդրակեցւոց աղանդոյն, առաքինակրօն կերպարանք մ'ունէր, «քրձազգած, պահեցող, բոկագնաց». և անոր կուսակից քահանայք՝ «խոշորազգեստս և անպաճոյճս» էին, որով յաջողեցան իրենց որսալ շատերը[1]։ Ասոնք բացառութիւն չէին կազմեր անշուշտ եկեղեցական դասուն մէջ։

Ասոր հակառակ երևոյթն ալ կը տեսնենք պատմութեան մէջ։ Սահակեան կանոնք՝ Ե–Զ դարուց մէջև՝ կը զգացնեն եպիսկոպոսաց ոմանց խնամքը հանդերձից վրայ, գրելով այսպէս. «յորժամ (եպսն.) աւելի զգեստուք զինքն պճնիցէ և փերևետիցէ՝ սիգութեան և փափկութեան պարապելով[2]»։ Յովհան Իմաստասիրի համար կ'ըսուի՝ թէ «ի ներքոյ յայծեաց ցփսիս դժոխըմբերս զգեստաւորէր, իսկ զարտաքոյն ի պատուական երանգէ նիւթից զգեստաւորեալ պճնազարդէր», և մօրուաց վրայ ոսկի փոշի կը ցանէր[3]։ Իւր նպատակը քաղաքական էր ու ժամանակին պահանջը, ինչպէս կը զգացնեն պատմիչը[4] և իւր խարազը։ Յետոյ ամիրապետն ալ կը պատուէ զնա, «եօթն անգամ զնա պճնաւորեալ գեղեցիկ իմն արքունական զգեստուք[5]». բնականապէս արաբական ձևով, զոր թէ պահե՞ց իւր վրայ, յայտնի չէ։ Իսկ Պետրոս Գետադարձ կ'ընդունի կայսերէն «զամենայն պատուական զգեստս[6]»։

Բայց այլոց վրայ, մանաւանդ ի Կիլիկիա, պճնասիրութեան զգացումն իսկ կ'իշխէ յաճախ։ Մեծ Վկայասիրի համար կը կարդանք՝ թէ «ոչ էր փոյթ ինչ նմա յաղագս... զգեստուց խենեշութեան՝ որով բազումք արտաքուստ զարդարին, որպէս յայտնի է ամենեցուն». և նոյնը կը կրկնէ Շնորհալւոյն համար ևս[7]։ Լամբրոնացին կը տրտնջէ իւր աստիճանակցաց դէմ՝ թէ «եղաք եպիսկոպոսքս փափուկք և պաճուճեալ զգեստուք... որպէս զփռանգս[8]»։ Սարգիս վրդ. կը գանգատի «առաջնորդաց» մասին՝ թէ «երևելի հանդերձիւք շրջին ի մէջ մարդկան[9]»։ Այս նկարագրութեանց մէջ փափուկն ու գեղեցիկը պաստառն է, ոչ թէ հանդերձի աշխարհիկ ձևեր, ինչպէս էր Յովհաննէս արքեպ. արքայեղբօր հագածն ալ[10]. մինչ ուրիշներ կը շարունակեն կրել անշուքը, կ'ըսեն նոյն վկայութիւնք։ Նաև արևմտեան կղերին մէջ հին է պճնասիրութիւնը, որոյ դէմ պայքարած են Կարքեդոնի ժողովը, Կեղեստինոս Ա պապը[11] և ուրիշներ։

4. **Ձևափոխութիւն։** — Բայց հայ կղերն ամէն անգամ հաւա-

1. Լաստ. 95։ — 2. Սոփ. Բ, 119։ — 3. Յհ. կթ. 129. Ասող. 105. աստ՝ 194։ — 4. Յհ. կթ. 130–33։ — 5. Նոյն՝ 133։ — 6. Ուռ. ՀԴ։ — 7. Սոփ. ԺԴ, 20, 31։ — 8. Լմբ. Պտ. 323։ — 9. Սրգ. 479։ — 10. Աստ՝ 257։ — 11. Mart. 779։

*տարիմ չէ գտնուեր իւր տարազին. այլ մերթ փարեր է աշխարհիկ հրապուրիչ ձեւերու, հրաժարելով իւր սեպհականէն, եթէ արտաքնէն և եթէ սրբազանէն՝ ըստ ժամանակին։ Եւ այս փոփոխութեանց պատճառները զանազան են՝ զոր պիտի տեսնենք։*

*ա. Ցիշեցինք արտաքին զգեստին զինուորականի դառնալը Ջաւենի օրով։ Քահանայք, կ'ըսէ պատմիչը, «սկսան զխոտորկտուրսն ի վերայ ծնգացն ունել. և զարդարէին զհանդերձս իւրեանց նարօտօք, և սիգային որպէս ոչ վայել էր. և զմորթ մեռելոտիս գազանացն քահանայքն անխտիր ագանէին, որ ոչ վայել էր։ Եւ ինքն Ջաւէնն աթինեալս և զտապակեալս զժապաւինեալս նարօտօք ագանէր, զսամուրենիս և զկնգմենիս և զգայլենիս ագանէր[1]»։ Այս նկարագիրը պարզաբանեցինք արդէն այլուր[2]. և զոր կը շարունակեն կրել Շահակ և Ասպուրակ կաթողիկոսաց ժամանակ ևս, զոր չենք կասկածիր թէ խստակրօնն Սահակ պիտի ջնջէր։ Բայց դպրաց դասը յամառաբար կը պահէ կամ վերստին կը ստանայ զինուորական տարազը, զոր պիտի տեսնենք յետոյ։*

*Դարեր կ'անցնին, և այդ աշխարհականացման ակնարկութեան չենք պատահիր այլ ևս մինչև ԺԲ դար, ուր Շնորհալին կը հաստատէ դարձեալ անոր վերադարձը, նկարագրելով քահանայքը «հասարակաց զգեստուք և աղտեղեալ տրեխօք[3]»։ Եւ զոր Լամբրոնացին աւելի կը ճշդէ, իւր խօսակից Ցովհաննէս աբեղայի բերանը դնելով հետեւեալ խօսքը. «Կացուցեալ զիս և զմիւս ևս այլ (աշխարհի քահանայացս՝) եպիսկոպոսն առաջի սրբոյ սեղանոյն, ինձ զաբեղութեան ետ ձև՝ յետ օծելոյն քահանայ, և զնա եթող նովին աշխարհական պատմուճանաւն», որով եկած էր ի ձեռնադրութիւն. յետոյ կը յարէ՝ թէ աշխարհի քահանայից «զգեստուցն փոփոխումն յայսմ վայրի ոչ երբեք ընթերցայ[4]»։ Հաւանօրէն այս գեղծումն արեւելեան Հայաստանի մէջ էր. վասն զի ի Կիլիկիա պիտի տեսնենք այս շրջանիս քահանայական հանդերձը։*

*Ցետոյ կ'երթանք մինչև թաթարական տիրապետութիւնը, ուր կղերը դարձեալ թողած է իւր ձևը, ինչպէս կը վկայէ 1444ի յիշատակագիր մը. «քահանայք, կ'ըսէ, զանազան զգեստուք պճնեալ և զօտևորեալ (էին) իբր այլազգի». այն է թաթարական տարազը՝ զոր տեսանք հայ ժողովրդեան վրայ ևս։ Նաև աբեղայք, կը յարէ, հրաժարեր էին իրենց հանդերձէն[5], զոր աւելի կը զգացնէ Մխիթար*

1. Փաւս. 263։ — 2. Աստ՝ 148-9։ — 3. Շնրհ. Ընդհ. 53։ — 4. Լմբ. Պտ. 48, 50։ — 5. Հյպտ. 569-70։

*Ապարանեցին 1410ին, գրելով այսպէս նոյն վանականաց մասին. «Իւրաքանչիւր ոք որպէս և կամի՝ այնպէս զգենու. եթէ ըստ օրինի աշխարհականաց, և եթէ ըստ Պարսից, և եթէ ըստ պէսպէս կրօնաւորաց, և ոչ միաձև և միակերպ[1]»։ Սիմէոն վրդ. Ապրիվանեցին, ազդեցիկ մարդ, կ'ուղղէ այդ անկարգութիւնը որքան կրնայ[2]։ Մկրտիչ Նաղաշ՝ առաջնորդ Միջագետաց, նոյնը կը տեսնէ իւր վիճակին մէջ, «զի ոչ ոք իշխէր փիլոնով կամ վեղարով շրջել». բռնաւորաց բարեկամութիւնը կը շահի, և ազատութիւն կը ստանայ եկեղեցական տարազին, որով «յաւուրս սորա ամենայն ուրեք համարձակ զգենուին, և քահանայական կարգօք շրջէին երևելի փառօք[3]»։ Ինքն իսկ Նաղաշ Շահ Օթմանէ պատուեցաւ «թագաւորական զգեստուք... մինչ զի զոր զգեցեալն էր արքայն՝ զնոյն զգեցուցանէր[4]»։ Քաղաքականութեան պահանջն է՝ որ զինք կ'ենթարկէ այդ այլազգի ձևին։*

*Սակայն այդ նորոգութիւնը տևայուն վիճակ մը չունի։ Այնպէս որ Առաքել Դաւրիժեցին իւր օրերը դարձեալ բարձի թողի եղած կը գտնէ եկեղեցական ձևը։ Թէ աշխարհիկ և թէ վանական քահանայք, կ'ըսէ, «բնաւ ոչ գիտէին՝ թէ պարտ է կարգաւորի վեղար և փիլոն ունել զիւրեաւ... այլ որպէս աշխարհական և զմարմնաւոր իշխանս փափուկ և ազնիւ զգեստիւ պճնէին, չաշխուր և կապայ և պատուական փակեղ ի գլուխս, և բալափուշ զիւրև առեալ[5]». բառեր՝ որոց բացատրութիւնը տուի կանխաւ[6]։ Ժամերգութեան պահուն միայն վեղարն ու փիլոն կ'առնուին. և «զկնի արձակման ժամուն ի բաց եղեալ յինքեանց, և իբրև զաշխարհականս շրջէին[7]»։ Այս վիճակը կը վերագրէ «հինից թշնամեաց եկելոց ի վերայ և վրդովմանց և աւերանաց աշխարհիս Հայոց[8]»։ Մեք ըսենք՝ շարունակութիւն նախկին վիճակին։ Բարեհոգոգ Սարգիս եպս. և տէր Կիրակոս զանազան բարեկարգութեանց հետ այս մասին ալ հոգ տարին, գլոց մէջ որոնելով ու վերահաստատելով հին տարազը[9]։*

*Բ. Նոյն յեղյեղուկ բախտին վիճակուած էր, և առաւելագոյն չափով մը, սրբազան հանդերձն ալ։ Նոյն ինքն Զաւենի կղերն արտաքին զինուորական ձևով՝ զոր իւրացուց՝ «անխտիր ի բեմ ելեալ նստէին», կ'ըսէ պատմիչը[10]։ Սկիզբն էր զեղծման, որ տևեց յաջորդ երկու հայրապետաց օրով ևս։ Բայց աւելի յառաջ գնացած լինելու չէ, որով Ուխտանէս կարող էր նկարագրել հայրապետանոցի սրբա-*

1. Ապար. խի, լբ։ — 2. Հյպտ. 570։ — 3. Անդ՝ 572։ — 4. Անդ։ — 5. Դաւր. 220։ — 6. Աստ՝ 282։ — 7. Դաւր. 196։ — 8. Նոյն՝ 191։ — 9. Նոյն՝ 195։ — 10. Փաւս. 263։

*զան զգեստուց ճոխութիւնը Բ Մովսիսի օրով*[1] (574–604)։ *Նոյնը կը հաստատէ նաև Ստ. Սիւնեցի Ը դարուն, նկարագրելով եպիսկոպոսին «զգեստաւորեալ» ելքն ի պատարագ*[2]։ *Կը հասնինք ԺԲ դար, ուր շատ տեղեր բոլորովին անհետացած կը գտնենք խորհրդական հանդերձը։ Ասոր առաջին վկայն է Շնորհալին, որ* 1166*ին այսպէս կը գրէր քահանայից. «Զորրոյ պատարագին պատուական և մաքուր զգեստուց մի՛ անփոյթ առնէք, որպէս լսեմք զոմանց՝ եթէ հասարակաց զգեստուք (որ է աշխարհականն՝ ինչպէս տեսանք) և աղտեղեալ տրեխօք ելանեն ի բեմն սուրբ, և զսարսափելի խորհուրդն անխորհրդական զգեստուք կատարեն», զայն պարկեշտութեան նշան համարելով, և բամբասելով տարբեր ընթացք ունեցողները և նոյն ինքն հայրապետը, որ կը ջանայ համոզել զանոնք ուղղութեան, օրինակաւ Եկեղեցւոյ և Հայաստանեայց հին սովորութեան, ու զեղծումն համարելով արդիւնք հալածանաց և աղքատութեան ազգիս. և կը հրամայէ սրբազան զգեստն ամէն պաշտամանց մէջ*[3]։ *Իւր կամքը գործունեայ ընելու համար՝ «զգեստս մաքուրս և և վայելուչս եկեղեցականացն կազմէր, կ'ըսէ իւր կենսագիրը, և հոգևոր և մարմնաւոր սրբութեամբ ուսուցանէր սուրբ խորհրդոյն սպասաւորել*[4]*»*։

*Իւր հրամանը սակայն շատերուն կը մնայ ձայն բարբառոյ յանապատի, և անկարգութիւնն աւելի տիրապետող կը դառնայ. այնպէս որ Լամբրոնացին* 1177*ին կրնար գրել՝ թէ «զգեստուցս վայելչութիւն՝ ծնեալ ի տատանեալ ազգս՝ և ոչ բնաւ գտի ի մէջ սոցա», ոչ եպիսկոպոսաց և ոչ քահանայից, համարելով աւելի արհամարհութեան քան աղքատութեան արգասիք, և որոյ դէմ կ'ոգորի և ինք*[5]։ *Իսկ այլուր խօսքը կեդրոնացնելով վանականաց վրայ, կ'ըսէ՝ թէ կը պատարագէին «սև փիլոնով» կամ «գշտով և կրօնաւորութեան սքեմով» ու կնգղով, զոր դարուս վանականք դեռ հաստատուն կը պահեն. և թէ նոյնպէս կը վարուէին «ամենայն վանորայքդ ի վերն և ի վայրս*[6]*»*։ *Գրիգոր իմաստասէր, Մարաշոյ Ցեսուանց ուխտէն,* 1149*ին կը վկայէ նաև սարկաւագի հանդերձին զանցառութեան, ի դիմաց և ի խրատ զանցառուաց աղօթելով այսպէս. «Մեղայ՝ առանց աղաբողոնի (պատմուճան) և ուրարի և բոկոտն ի բեմբ ելանել և խունկ ծխել սեղանոյն*[7]*»*։

*Մխիթար Գօշ կը փորձէ արդարացնել այդ ընթացքն՝ լսելով.*

1. Աստ՝ 314. — 2. Ստփ. Նկարգ. — 3. Շնրհ. Ընդհ. 52-54. — 4. Ստփ. ԺԴ, 37. — 5. Լմբ. Պտ. 87-91. — 6. Լմբ. Թղթ. 218, 240. — 7. Մրշ. 362.

«Ոչ բայսւ գլխով և հանդերձիւ եկեղեցւոյ պատարագել, այդոցիկ խափանումն չէ յաղանդոյ, այլ յաւերմանէ եկեղեցեաց. և ուր կարն է՝ շուրջառօք և հանդերձիւք պատարագեն[1]»։ Բայց այս մեկնութիւնս ու վիճակ չէր գոհացներ ողջամիտները, որոցմէ Յհ. Եզնկացին յիշեցնելով Շնորհալւոյն խօսքերը, կ՚ըսէ քահանայից՝ թէ ձեր կանայքն ու դստերքը կը զարդարէք, «իսկ քահանայական զգեստ ոչ առնէք՝ որ այնքան հարկաւորն է...։ Վասն որոյ աղաչեմ՝ զի ամենայն քահանայք իւր շուրջառ և ուրար և զգեստ ունիցի[2]»։ Նոյն ԺԳ դարուն Վինկենտ Բելլովակեցի կը պատմէ՝ թէ Հայերէն «ոմանք պատարագեն առանց զարդուց և որ և է քահանայական զգեստուց. ոմանք փակեղամբ[3]»։ Եւ սուտն Յհ. Դամասկացի՝ թէ՝ «Արհամարհեն զաստուածային պատարագն և ոչ ունին հանդերձ պատարագի խորհրդականս...։ Սոքա իւրաքանչիւր իւրովք հանդերձիւքն, որով քաղաքավարի և ննջէ և գործէ, նովաւ մտանէ ի խորանն պատարագել[4]»։ Կոստանդին Ա 1247ին արևելեան եկեղեցեաց ընծայ կը յղէ «մեծագին նափորտս ի սպաս պատարագին սրբոյ[5]», անոնց ընտանեցնելու համար զայն։ Բայց Յովհ. Արճիշեցին, նոյն դարու վերջերը, կը վկայէ՝ թէ դեռ «են ոմանք որ հակառակին և աւելորդ և անօգուտ համարին» պատարագի հանդերձը, ըսելով թէ «Աստուած զսրբութիւն սրտին միայն պահանջէ». և որոց դէմ կը ճակատի հզօրապէս[6]։

Գրիգոր Անաւարզացի կաթողիկոսն ազդեցիկ միջոցի մը դիմեց, խնդրելով Հեթում արքայի գործակցութիւնը, որպէս զի «զըսգեստն... ընդունիմք[7]». և զոր յետոյ Սսոյ 1307ի ժողովն ալ վաւերացուց, սահմանելով՝ որ «քահանայական զգեստն ըստ իւրաքանչիւր աստիճանի լիցի յեկեղեցի[8]»։ Սսոյ 1342ի ժողովը պատասխանելով Լատինաց ամբաստանութեան՝ թէ ի Հայս «ոմանք պատարագեն հասարակաց զգեստուք, և ոմանք զգենուն զսրբազան հանդերձս», կ՚ըսէ՝ թէ «Մեք ի փոքր Հայաստան... յորժամ պատարագեմք՝ զգենումք զսրբազան հանդերձս», ուր վերին Հայք, կը յարէ, հակառակը կ՚ընեն, և մեք մեր կարողութեան չափով կը խրատենք զանոնք. և թէ «զարդիս առ հասարակ սրբազան զգեստուք վարին, մանաւանդ ոյք հնազանդ են մեզ, և օր ըստ օրէ ուղղեմք ըստ կարի մերում[9]»։ Այդ ըմբոստներէն էր Մխիթար Սասնեցի, նոյն դարուն, որ բաւական երկարօրէն կը խօսի այս մասին, յիշեցնելով կրկին ձկտումները, և ինք զեղծելոց կողմը

1. Գոչ՝ Թղթ. 60. — 2. Յ. Եզ. Կան. — 3. Գալ. Ա, 372. — 4. Լոյս, 1905, էջ 1114. — 5. Կիր. 174. — 6. Արճշ. 23–26. — 7. Գալ. Ա, 439. — 8. Պլճ. 276. — 9. Mansi, XXV, 1243.

*կանգնելով։ Կը յենու առաքելական վկայութեան վրայ՝ որ կը խօսի կանանց զարդասիրութեան դէմ, և բաւական կը համարի նաև քահանայից՝ «զինքեանս զարդարել սրբութեամբ և մաքրութեամբ հոգւոյ...։ Եւ թէ ոք ասիցէ, անմաքուր և զազրատեսակ զգեստիւ ոչ է արժան մատչել ի սպասաւորութիւն ահաւոր խորհրդոյն, ասեմք՝ եթէ զի՞նչ արդեօք այլ ինչ լիցէ զազրագոյն և ի պղծութիւն համարեալ քան զներկուածս մետաքսից և կերպասուց[1]»։*

*Այս հակառակութիւնը կը տևէ դեռ ԺԵ դարու սկիզբը, ընել տալով Տաթևացւոյն. «Ոմանք են՝ որ անգիտութեամբ արհամարհեն զսուրբ զգեստ պատարագին[2]», զոր կը կրկնէ և անոր ժամանակակից Մխիթ. Ապարանեցին, թէ կը պատարագեն «ոմանք՝ իւրո՛վ հանդերձիւն և առանց քահանայական կամ քահանայապետական սգեստից և զարդուց», ըսելով՝ թէ «Քրիստոս այնպէս կատարեաց խորհուրդս, և հրամայէր բանիւ[3]»։ Սակայն այս դարուս մէջ երթալով կը նուազին կամ կը հատնին հակառակողք, որով Առաքել Բաղիշեցին սրբազան հանդերձով կը նկարագրէ զքահանայն՝ իբրև սովորական դարձած բան մը[4]։*

5. **Խորհուրդ հանդերձից։** — *Սրբազան զգեստներն իրենց ծագման մէջ որ և է խորհրդաւոր նշանակութիւն չունէին, որովհետև արտաքին կեանքէ առնուած ձևեր են պարզապէս, ինչպէս պիտի տեսնենք իրենց կարգին։ Միջին դարու Հայք նկատելով անոնց արհամարհութիւնը, զգեցուցին անոնց առանձին կրօնական իմաստներ, պատկառելի ու փարելի ընելու համար։ Ամենէն յառաջ Լամբրոնացին Ներսէս եղաւ այս բանիս ձեռնարկող, նախանձայոյզ ջատագովը հանդերձին, անոր մէն մի մասին ընծայելով ուրոյն խորհուրդ մը, զգեցողաց աստիճանին համեմատ, իբր թէ «մարմնաձև կերպարանօքն ցուցանեն զիմանալի խորհրդոյն զօրութիւն[5]»։ Աւելորդ կը համարիմ մի առ մի յառաջ բերել անոր յարմարական բացատրութիւնքը[6], զոր փափաքողք կրնան տեսնել։ Իրեն հետևող մ'է նաև Յհ. Արճիշեցին, թէ պատարագի մեկնութեան և թէ հանդերձից նշանակութեանց մէջ[7], որոց կ'ակնարկէ և Խաչատուր վրդ. «Խորհուրդ խորին» շարականին մէջ, և զորս կ'ընդլայնէ ցտաղտուկ Գր. Տաթևացին[8], մեկնելով վանականաց հանդերձի նիւթին խորհուրդն ալ[9]։ Քմահաճ մեկնութիւնք բոլորն իսկ, որով և անմիաբանք իրարու։ Նոյն խորհրդապաշտութիւնը կ'երևի նաև արևմտեայց մէջ, մանաւանդ*

1. Սահմ. Ը։ — 2. Քրզ. ամր. 183։ — 3. Ապար. ԽԵ, ԻԷ։ — 4. Աշուգ. 166։ — 5. Լմբ. Պտ. 85։ — 6. Անդ՝ 85-7, 92, 140-41, 145-50։ — 7. Արճշ. 21-22։ — 8. Քրզ. ամր. 182-3։ — 9. Անդ՝ 186-87։

ԺԲ—ԺԳ դարերուն[1]. և անոր վրայ շարադրուած է պատարագի զգեստաւորութեան աղօթքն ալ, որ կը հայանայ միջին դարուն, և կը գտնուի արդէն 1284ի խորհրդատետրին մէջ (Ս. Ղազարու)։

6. *Օրհնութիւն հանդերձից*։ — Ծանօթ հնագոյն մաշտոցն[2] ունի կանոն մը՝ «զհանդերձեղէն սպաս» օրհնելու, այն է սրբազան զգեստները, անոնց նուիրական նկարագիր մը տալու համար։ Դժուարին է ճշդել՝ թէ երբ մտած է այս կանոնը մաշտոցին մէջ, հինգերո՞րդ դարէն՝ թէ յետոյ. գիտենք՝ որ արևմտեայց քով ալ կար[3]։ Ցիշեալ մաշտոցը կ'օրհնէ աղօթքով մը. մինչ Բ Կոստանդնի քեռորդի Նիկաւլայոսի գրչագիրը[4] ԺԳ դարու վերջէն, հաւաքածոյ պատարագաց ու մաշտոցի, հանդերձին իւրաքանչիւր մասանց զատ օրհնութիւն ունի։

Հին մաշտոցը նաև կրօնաւորական տարազի մասունքն օրհնել կու տայ պարզ տեառնագրութեամբ, և որ յետոյ կը ճոխանայ ի Կիլիկիա, ինչպէս կը տեսնենք Սսոյ 1345ի մաշտոցին մէջ (ի Ս. Ղազար), մինչ կղերի արտաքին զգեստին չկար օրհնութիւն։

7. *Տեղի հանդերձից*։ — Հին եկեղեցեաց աւագ խորանն ունէր երկուստեք մի մի սենեակ, որոցմէ ձախակողմեանը սարկաւագանոց[5] կը կոչուէր, և միջին դարուն սարկաւագարան[6] կամ աւանդատուն, և ուր կը պահուէին սրբազան զգեստներն ու սպասներ։ Հոս կը կատարուէր նաև զգեցումը։ Քահանայն, կ'ըսէ Լամբրոնացին, սարկաւագաց հետ «մտանէ յաւանդատուն՝ ուր զգեստն է պատարագին, և զգեցեալ պաշտօնէիցն ըստ իւրաքանչիւր աստիճանի» և այլն[7]։ Հոս կը զգեստաւորէր նաև եպիսկոպոսը[8], որպէս զի աղօթավայրն անպատշաճօրէն ծառայութեան տեղի չդառնար[9]։

Բայց սահակեան կեղծ տեսլեան մէջ, որ շարադրուած է միջին դարուն[10], կաթողիկոսի հանդերձին պահպանութեան վայրը փոխադրուած կը տեսնենք բեմին վրայ, ուր կար հայրապետական աթոռը, և «սկտեղ մի մեծ արծաթի ի վերայ աթոռոյն, և ի վերայ սկտեղն կայր նափորտ մի բեհեզեայ ծալեալ», և բոլորը միասին «ծածկեալ թանձր կտաւով[11]»։ Նոյն պատկառոտ խնամքը կ'երևի նաև ուրիշ դիպուածի մը մէջ. Կոստանդին Բ երբ կը հրաժարէր աթոռէն, «հանեալ զզգեստն՝ եդ ի վերայ արծաթի սեղանոյ». նոյնպէս իւր արտաքին սքեմն ալ հանելով, «ծալեաց և եդ ի վերայ նորա, և ծածկեաց պատուական հանդերձիւ[12]»։

1. Fleur. VII, 4, 6։ — 2. Աստ՝ 302։ — 3. Cabr. II, 683։ — 4. ի Ս. Ղազար, թ. 1411։ — 5. Եղիշ. 175. Cabr. IV, 733-4։ — 6. Լմբ. Պտ. 225։ — 7. Նոյն՝ 193. տես և 237։ — 8. Նոյն՝ 201. Cabr. IV, 734։ — 9. Եղիշ. 175. Լմբ. Պտ. 237։ — 10. Աստ՝ 187։ — 11. Սոփ. Բ, 49, 59։ — 12. Օրբ. 321։

# ԳԼՈՒԽ Բ

## ԱՐՏԱՔԻՆ ԶԳԵՍՏ ԿՂԵՐԻՆ



ՎԱՍՏԱՀԱԿԱՆ անսովոր և անկանոն հանդերձներէն զատ՝ տեսանք և հաստատեցինք կղերական դասուն արտաքին որոշ տարազի մը գոյութիւնը մեր քով Դ դարէն։ Հիմայ մօտէն զննելու ենք այդ հանդերձին հանգամանքները, և զանազանութիւնքը՝ որ կային եկեղեցական աստիճանաց տարբերութեանց համեմատ։ Ժամանակն ալ իւր դերը կատարած է անոնց վրայ, գործելով ինչ ինչ փոփոխութիւն՝ զոր նոյնպէս ցոյց պիտի տամ այս տեղ։ — Այլուր[1] ապացուցած եմ՝ թէ մինչև իբր Ժ դար՝ Հայոց մէջ կային դպրի կամ անագանոսի, սարկաւագի, քահանայի (և վարդապետի), եպիսկոպոսի ու կաթողիկոսի աստիճանները. Ժ դարուն կ'երևի կիսասարկաւագը, և ԺԴին՝ չորս փոքր աստիճանք։ Ասոնց տարազն է որ պիտի զբաղեցնէ զմեզ նախ, և յետոյ վանականաց ու կուսանաց հագածը։

### Ա. ԴՊԻՐՔ

Ասոնց դասն իրապէս ու պաշտօնով կայ ու կը յիշուի Ե–Ժ դարերուն[2], և վենետկեան մաշտոցը ԺԱ դարու՝ կը պահէ տակաւին այս կարգիս օրհնութիւնը։ Մխիթար Գոշ ԺԲ դարու վերջերը կը վկայէ հանդիսաւոր պատարագին հետ նաև դպրաց ընծայման[3], զորս Լամբրոնացին կը դառնայ կը հաստատէ երկուքն ալ իւր վիճակին մէջ[4]։ Յետոյ այս աստիճանը կ'ընկղմի նորամուտ չորս աստիճանաց մէջ, որոնք Լատիններէն կ'առնուին։

1. Հայ ծէսը, 77–83։ — 2. Ագթ. 637. Ցճխ. 94. Բ ժող. Դուինայ, կան. ԺԴ. Կոմիտաս ի Սեբ. 135. Մոկ. 287. Խոսր. Պտ. 43։ — 3. Գոշ՝ Թղթ. 60։ — 4. Հյպտ. 422։

Հին դպիրք, որոց գործն էր կարդալ ու երգել պաշտամանց մէջ, արտաքին որոշիչ հանդերձ մը կրել չեն թուիր։ Ունին արդարև եկեղեցւոյ մէջ իրենց տարազը, զոր պիտի տեսնենք յաջորդ գլխով, և զոր Դունայ Բ ժողովը կը հրամայէ կրել անվրէպ, և ոչ «զձև հանդերձի զինուորաց՝» զոր ուրեմն կը զգենուին դուրսը, ապացոյց՝ թէ եկեղեցական տարազը չունէին արտաքոյ պաշտամանց։ Երկրորդ փաստ մ'այս բանիս կրնայ նկատուիլ հերակտրութեան պակասը նոյն դպրաց վրայ, հակառակ ասորական և յոյն սովորութեան, որով Եդեսիոյ Ռաբուլաս եպիսկոպոսը, Ե դարու սկիզբը, կը յանձնարարէր իւր դպրաց զանց չընել զայն[1], և Տրուղեան յոյն ժողովը 692ին կը մեղադրէր հայ դպրաց հերաւորութիւնը[2]. մինչ մեր միւս աստիճանաւորք կ'ընդունէին սափրումը՝ սկսեալ սարկաւագէն, իբր մասն կղերական ձևին, որոյ հետ՝ եթէ ունենային՝ խուզումն ալ պիտի ընդունէին մեր դպիրները։

Կ'անցնինք ԺԲ դար, ուր Լամբրոնացին յետ խօսելու ընթերցողաց սրբազան հանդերձին վրայ, կ'ըսէ. «Արտաքոյ եկեղեցւոյ ելեալ, թէ կամին՝ սեկճակս զգենուլ մարթ է[3]». այսինքն թոյլ կու տայ պճղնաւոր պարեգօտը միայն, առանց միւս մասանց՝ զոր ունէին քահանայք։ Բայց «թէ կամին» բացատրութենէն յայտնի է՝ որ անոնց սովորական ձևն աշխարհականն էր։ Իսկ հերակտրութիւնը սեպհական կը դնէ բոլոր «ժառանգաւորաց[4]», որոց մէջ կ'իմանայ այլուր ընթերցողն ալ[5]։ Կ'երևի՝ թէ այս ժամանակիս արդէն ընդհանրացած է ի Կիլիկիա խուզումն հերաց, որով վերոյիշեալ Նիկաւլայոսի օրինակն ալ նոյն արարողութիւնը կատարել կու տայ անագանոսին վրայ։ Այսպէս և Սսոյ 1345ի մաշտոցն (ի Ս. Ղազար), որ չորս փոքր աստիճանաց տուչութեան կարգերն ալ ունի, ամենէն յառաջ հերակտրութիւնը կը նշանակէ, և ապա աստիճանի սրբազան հանդերձին զգեցումը։ Բայց դարձեալ մութ կը մնայ արտաքին զգեստը, և առաւել ժխտական, ինչպէս կասկածելի է նոյն աստիճանաց մէջ առաւել կամ պակաս երկարօրէն կենալն ալ։ Մի և նոյն պայմանաց ներքև կը գտնուի և կիսասարկաւագը, և նոյնպէս անստոյգ իւր արտաքին տարազը, որ թէ շատ՝ պարեգօտ մը պիտի լինէր։

Ընդ հակառակն առաւել ապահով է այդ փոքր աստիճանաւորաց աշխարհակերպ զգեցումը վերին Հայաստանի մէջ, որոյ ապացոյց մ'է 1248ին ի Ջանուկ[6] գրուած Ձեռնադրութեան տետրակը (ի Ս.

1. Lagr. 201։ — 2. Կան. ԼԳ։ — 3. Լմբ. Պտ. 84։ — 4. Անդ՝ 46, 142-4։ — 5. Անդ՝ 140։ — 6. Հմմտ. ընդ Ջաոնաստան Սիւնեաց (Սոկ. 486)։

Ղազար), որ ունենալով կիսասարկաւագի ձեռնադրութիւնը, հերաց խուզումը դեռ սարկաւագութեան հետ կապած է։ Նոյնպէս է մեր 109 Ջէն ալ 1427էն, գուցէ դպիր մ'երկայնահեր ու թաթարական պճղնաւորով[1]։ Այնպէս որ Օրբելեանի վկայութիւնն 1299ին՝ թէ «արտաքոյ կեղեցւոյ զգենուն մեկնակ կտաւիս և կան հոլանի[2]», աւելի յարասութիւն կը թուի Տարոնի եպիսկոպոսի ըսածին, քան իրական կամ տեղական սովորոյթ մը, զոր ինքն իսկ Օրբելեանը կասկածելի կը ցուցնէ, պահանջելով բոլոր աստիճանաւորաց անթե֊րի պահպանութիւնը։

## Բ. ՍԱՐԿԱՒԱԳԸ

Ապահով ենք՝ որ Դ—Է դարերու մէջ ոչ միայն սարկաւագու֊թեան աստիճանը, այլ սարկաւագներ ալ գոյութիւն ունէին, որոցմէ ծանօթ են Լուսաւորչի կարգածները[3], Ներսեսի ժամանակակիցք՝ Բաստոմ, Մուրիկ, Տրդատ[4] և Խադ[5], Յաճախապատում գրոց յիշած֊ները[6], Երեմիա[7], Քաջաջ, Աբրահամ[8], Մուշէ կաթողիկոսի սարկա֊ւագը[9], Կոմիտասի յիշածները[10]. և ամէն գիւղ սարկաւագ մ'ունէր երիցուն հետ[11]։ Յետոյ նուազեցան կամ իսպառ ջնջուեցան այս պաշտօնեայք, ինչպէս յայտնի է անոնց չերեւելէն պատմութեան մէջ, ակնարկութենէ Լամբրոնացւոյն[12] և ասոր կատարած մասնական նո֊րոգութենէ աստիճանիս[13]։ Մեք պիտի նկատենք նախկին ապահով շրջանի տարազը, որ ծանօթ է մեզ։

1. Քահանայական կարգին առաջին սուրբ աստիճանը լինելով սարկաւագութիւնը[14], արտաքին ձեւի անշքացումն ալ ասոր կը սկսէր հերակտրութեամբ[15], որոյ օճան կը կանգնէր առաքելական սահմանն ալ, «զի այր եթէ գիսաւոր է՝ անարգանք են նմա[16]». զոր կը հաստատէ և Ոսկեբերան ըսելով՝ թէ ոմանք «երկիւղածութիւն իմն զհերսն ժողովել համարին. և այն անտի է՝ զորս արգելեալն է և բազում ամօթով լի[17]»։ Առիթ ունեցանք տեսնելու մեծին Ներսեսի գե֊ղեցիկ զանգուրները[18], զորս՝ սարկաւագ ձեռնադրելու համար զինքը՝ «ի բաց խզել հրամայէր» Արշակ. և հոն իւր առջև «զհերսն վիրա֊

1. Աստ՝ 221. — 2. Օրբ. 81. — 3. Ագթ. 637. — 4. Փաւս. 91, 118, 272. — 5. Խոր. Գ, Ի, ԿԷ. — 6. Յճխ. 94. — 7. Խոր. Գ, ԿԷ. — 8. Եղիշ. 139. Փրպ. 222, 229. — 9. Օրբ. 55. — 10. Սեբ. 135. — 11. Փաւս. 231. — 12. Լմբ. Պտ. 438. — 13. Հյպտ. 422. — 14. Հայ ծէսը, 81. — 15. Մշտ. ԺԱ դարու, «կանոն մանուկն առ֊նել». — 16. Ա Կոր. ԺԱ, 14. — 17. Ոսկ. Մտթ. Գ, 128. — 18. Աստ՝ 113.

յին ի նմանէ», և ապա ձեռնադրեցին[1]։ Վենետկեան մաշտոցը ԺԱ դարու, և նախայիշեալ 1248ի օրինակը տակաւին սարկաւագութեան հետ կը դնեն խուզումը։ Առաջինը կ՚ըսէ. «եպիսկոպոսն տեառնագրէ զգլուխն, և սափրեն որչափ ձեռն եպիսկոպոսին հասանէ ունել». իսկ երկրորդը՝ թէ «եպիսկոպոսն կտրէ զհերսն խաչանման, և հրամայէ սարկաւագացն տանել ի ծածուկ տեղի, և սափրեն ըստ պատշաճի»։ Այս կարճացումը կ՚երևի նաև մեր 119 Ձևի լատին սարկաւագաց վրայ, Ջ դարէն, թէև ոչ մեր մաշտոցի նկարագրածին չափ։

2. Տարբեր հանգամանք ունէր մօրուքը։ Կղեմէս Աղեքսանդրացի և Եպիփան ջատագով էին անոր նոյն իսկ աշխարհականաց վրայ[2], և արևելեան կղերը կը պահէր զայն հաւատարմութեամբ։ Սակայն հռովմէական մօրուագերծութիւնը, Կոստանդիանոսի հետ անցած ի Բիւզանդիոն, հաճելի դարձաւ ժամանակ մը և անոր կղերին, որով Կարքեդոնի ժողովը 436ին կ՚արգելուր կղերին վարս և մօրուք[3]. և յիշեալ Ձևի եկեղեցականք՝ եպիսկոպոս ու սարկաւագունք՝ անմօրուս են տակաւին։ Ոչ այսպէս և ի Հայս, ուր տեսանք բոլոր աշխարհականաց մօրուանութիւնն ամէն ժամանակ, և պիտի տեսնենք քահանայից ալ. ապացոյց՝ թէ նոյնպէս էին և սարկաւագները. հաստատուած նաև Օձնեցւոյն կենսագրէն՝ թէ իւր դաստիարակն «ի կատարման... հասակին և մօրուաց՝ ի կարգ սարկաւագութեան և ի պատիւ քահանայութեան» կոչել կու տայ զայն[4]։

3. Նկատեցինք՝ որ զս. Ներսէս սարկաւագ ձեռնադրելու պահուն՝ անոր հագուցին «զհանդերձս կղերիկոսաց» կամ ընդհանուր եկեղեցականաց, որ էր «պճղնաւորն[5]». այսինքն պարեգօտը, զոր այս անուամբ կը գտնենք յիշուած յետոյ նոյն հայրապետին վրայ. և որով եկեղեցականք կը նմանէին կանանց, ու հայր մարդպետի մը «կանանցահանդերձ» կոչել կու տային զիրենք՝ համեմատութեամբ աշխարհականաց կարճ պարեգօտին[6]։ Փորանկեալ էր այդ հանդերձը, որով Ներսէս թունաւորուած, «վերացուցեալ զպարեգօտս[7] իւր՝» այնպէս կը ցուցնէր թունին նշանը սրտին վրայ[8]։

Ըսինք՝ թէ այդ հանդերձը յունական և Յոյներէն կու գայ[9]։ Զայն նախ Հռովմայեցիք կը սկսին գործածել կայսերութեան սկիզբը, առնլով արևելքէն, որ նախ գայթակղութիւն կը պատճառէ[10]. ապա ընտանեցած է արդէն ս. Աւգոստինոսի օրով ու վկայութեամբ, թէ

1. Փաւս. 70։ — 2. Cabr. II, 482։ — 3. Mart. 761։ — 4. Զարբ. Դպր. Ա, 478–9։ — 5. Ատ՝ 313։ — 6. Ատ՝ 117։ — 7. Եզակի իմաստով։ — 8. Փաւս. 217։ — 9. Ատ՝ 313։ — 10. Dar. V, 539։

«Հին Հռովմայեցւոց քով պարսաւելի էր, իսկ այժմ պարեգօտաւոր պարկեշտ արանց համար զայն չկրելն է պարսաւելի[1]»։ Որով կղերն ալ փարեցաւ անոր, և կ'երևի նաև մեր Թեսաղոնիկեան 107 Ջևին մէջ, պճղնաւոր ու նեղաթեզան։ Նոյն նեղ ու ժապաւինեալ Թեզանիքը ցոյց կու տան տակաւին մեր 1248ի ձեռնադրութեան պատկերի սարկաւագներն ալ։

Պարեգօտին վրայ նախամեծար կը համարուի սպիտակ գոյնը. գէթ այսպէս էր Անտիոքի մէջ, որոյ սարկաւագաց սապէս կը խօսէր Ոսկեբերան. Ջեր գործն է քննել ս. խորհրդոյն մերձեցողները, «և ոչ զի զսպիտակ և զփայլուն պարեգօտն զգեցեալ շրջիցիք». և զոր հայ Թարգմանիչը կը զարդարէ, անշուշտ մեր սարկաւագաց նայելով. «ոչ սպիտակ պարեգօտկունքդ, զոր կոկեալ ողորկեալ ընդ անձն արկեալ փերևերտեալ շրջիք[2]»։ Յոյներէն, մանաւանդ մեզ աւելի մերձաւոր կեդրոններէն բերուած հանդերձն անոնց գունով ալ պիտի լինէր, և անոնց պէս մի միայն պարեգօտ մ'իբրև արտաքին զգեստ, ինչպէս յայտնի է Անտիոքայ քարոզչին վկայութենէդ։ Իսկ ճերմակին ծագումն որոնելի կը կարծեմ սոյն հանդերձիս սրբազանին վրայ[3], որոյ գործածութիւնն արտաքոյ պաշտամանց՝ կ'արգելուր Կարքեդոնի ժողովը[4], և որ յետոյ ընդհանրացած, տակաւին կը խայթէր Ոսկեբերանի նման խստակրօնից աչքը։

4. Գօտին, ընդհանուր և անպակաս քաղաքական կենաց մէջ, կար նաև կղերին արտաքին հանդերձին վրայ[5], և Կեղեստինոս Ա 428ին Նարբոնայի ու Վիեննայի եպիսկոպոսաց շրջաբերականին մէջ կը յիշէ զայս. «զմէջսն գօտևորեալ[6]»։

5. Եկեղեցականք զրկուած վարսից պատսպարութենէն, որ բաւական էր աշխարհականաց[7], պէտք ունէին ծածկութի մը, որ էր բաշկինակ մը, յիշատակուած Դ դարուն վանականաց և յետոյ քահանայից գլխին, զոր պիտի տեսնենք. և որուն հանդիպեցանք և աշխարհականաց վրայ[8]։ Ջեմ տարակուսիր՝ որ սարկաւագունք ալ կը պատէին զայս։

6. Իսկ ոտից կը կրէին մոյկը, յիշուած Փաւստոսէ Յոհան եպիսկոպոսի վրայ՝ թէ կեղծաւորութեան համար «մոյգս անգամ ոչ ագանէր[9]», որոնք ուրեմն սովորական էին միւս եկեղեցականաց։

1. Աւգ. Doct. III, 12, 20։ — 2. Ոսկ. Մատթ. Գ, 110։ — 3. Աստ՝ գլ. Գ, յօդ. Ա։ — 4. Գ, կան. խա, — 5. Mart. 782։ — 6. Arm. 413։ — 7. Աստ՝ 115, 141։ — 8. Աստ՝ 195, 202։ — 9. Փաւս. 266. աստ՝ 314։

## Գ. ՔԱՀԱՆԱՅՆ

*Իւր պաշտօնով հաստատուն միշտ ամէն ժամանակ, բնականապէս աւելի փոփոխութեանց պիտի ենթարկուէր իւր հանդերձն ալ. որով կը բաժնուի երկու շրջանաց, որոց առաջինը կ'ընդգրկէ իբր Դ–Ժ դարերը, և երկրորդն՝ աղոր յաջորդները։*

*Ա Շրջան։ — Ցետ տեսնելու մեր եկեղեցական տարազին յունականութիւնը, աստր օրինակ կրնանք առնուլ Թեսաղոնիկէի Ս. Գէորգ եկեղեցւոյն (այժմ մզկիթ) խճանկարներէն, զորս ոմանք մինչև մեծն Կոստանդիանոսի օրերը կը հանեն*[1]*։ Անոնց նիւթ են չորս սուրբեր, որոց մէջ երկուքն եկեղեցական ըստ յարակից գրութեան, «Ռոմանոս քահանայ» և «Փիլիպպոս եպիսկոպոս*[2]*». իսկ միւս երկուքն են Կոզմաս և Դամիանոս։ Նս յառաջ կը բերեմ զՌոմանոս միայն, Ջև* 107*, որոյ հետ ներդաշնակօրէն կը միաբանին և մեր պատմական տեղեկութիւնք։*

1. *Հերաց խուզումն ակներև է անոր վրայ, որովհետև ընդհանուր էր՝ ըսինք՝ բոլոր վիճակաւորաց։ Նմանապէս Է. դարուն Մաւրիկ կայսեր փեսայն Փիլիպիկոս «կտրեալ զհերս գլխոյ իւրոյ՝» քահանայ կը լինի*[3]*. և Բարսեղ կայսեր ծանօթ վկայաբանութեան*[4] *բոլոր եկեղեցականք հերախուզ են, ցուցնելով՝ թէ որքան նորամուտ են արդի յոյն կղերին կանացի գէսերը։ — Մեր Ռոմանոսի վրայ կ'երեւի նաև մօրուքը, զոր սեպհական տեսանք բոլոր կղերին. և յատկապէս ալ կը յիշուի Արտաշատու Ջուիթ երիցուն վրայ*[5]*, որոյ «մուրուքն դեռ տակաւին սեաւ եւ կային*[6]*» նահատակութեան օրը, և Օձնեցւոյն այտերուն՝ ըստ վերնոյն։*

2. *Գարեգօտը, գօտին, գլխի թաշկինակը, որ կը յիշեցնէ Հրէից քահանայից «վարշամակը*[7]*», և Լատինացը՝ երբեմն ծածկոյթ գլխոյ*[8]*, հաւասար տեսանք բոլոր մեր եկեղեցականաց, որով և քահանային։*

3. *Բայց քահանայք կ'որոշուին սարկաւագներէն ուղաբողոնով մը։ Փաւստոսի Ցոհան եպիսկոպոսն իրեն հանդիպած երիտասարդը*[9] *բռնի «երէց» կը ձեռնադրէ, կը հրամայէ հանել անոր մեկնոցը «և արկանել նմա ուղաբողոն... ապա այրն ուղէբողոն արկեալ՝ գնաց ի*

1. Tex. 145. — 2. Նոյն՝ տխ. 30, 31. — 3. Սեբ. 127. — 4. Աստ՝ 199. — 5. Աստ՝ 141. — 6. Փաւս. 174. պրս. մուր = մազ և բուրխ = այտ արմատներէն. — 7. Ցղթ. Դ, 17. — 8. Cabr. I, 1598. — 9. Աստ՝ 140.

*տուն իւր[1]»։ Այդ անունն աղաւաղ ձեւն է յն. ἀναβόλαιον-ի, որ կը նշանակէ վերարկու կամ հանդերձ[2]։ Եւ է անտարակոյս մեր Ջևի վերին հանդերձը, շրջափակ և անթեզան, ըստ պիտոյից նաև ամփոփուած բազկաց վրայ, որոյ ծագումն է արևմտեան աշխարհիկ կեանքէն. և քրիստոնէութենէ շատ կանուխ է սկսած, յառաջագոյն գործածուելով տնէն դուրս իբր պատսպարան անձրևին ու ցրտին դէմ[3]։ Այս է նաև* paenula = φαινόλης *կամ* φαιλόνης = *փիլոնը, զոր ունէր Պաւղոս, և թողած էր ի Տրովադա[4], և զոր նոյն փիլոնն բառով կը հայացնէ Ոսկեբերանի թարգմանիչն ալ[5], անոր հոմանիշ տալով յն. վիռոնը* (βίῤῥος, *լտ.* birrus), *որ էր բրդեայ թանձր վերարկու՝ պատսպարան անձրևէն[6]. «վիռո՛ն է փիլոնն. զհանդերձիցն ասէ[7]». ուր բնագիրը կ'ըսէ. «փիլոն՝ աստանօր զհանդերձն ասէ»։ Հետևաբար վիռոնը թարգմանչին է, առնուած ժողովրդեան հասարակաց լեզուէն, մինչ փիլոնն թարգմանութեանց առթիւ կը գործածուի։ Սոյն հանդերձս յետոյ մտաւ հաստատուն գործածութեան մէջ՝ կղերին ու վանականաց կողմէ, մինչդեռ աշխարհականաց համար, որ կը կրեն զայն մինչև Զ դար[8], կամաւոր էր. իսկ մեր քով զուտ եկեղեցական եղաւ, անծանօթ լինելով մեր աշխարհականաց։ Փաւստոսի «արկանել» բայն ալ՝ փոխան «զգեցուցանելոյ՝» կը հաստատէ իւր ձևը։ Զայն կը տեսնենք Թեսաղոնիկեան չորս սրբոց վրայ միանգամայն և անհաւասար երկայնութեամբ. և ուր եկեղեցականը կ'որոշուի միւսէն՝ վիզը շրջապատող գրապանով, որ հաւանօրէն նմանութիւն էր ղևտականին[9]։*

*Ոսկեբերանի թարգմանիչն ալ կը գործածէ աղաբողոնը, բեմբասացին խօսքն իմաստասիրաց մասին, «յոռի մեկնոգօք (յն. մի բառ* τρίβων) *կշտամբեալք», թարգմանելով՝ «սպիտակ աղաբողոնօք կշտամբեալք[10]». ուր հաւանօրէն սլաք մը կը նետէ իւր հայ կարգակցաց, որ պատմուճանին պէս աղաբողոնն ալ սպիտակ կրել կը թուին, և որ պերճութեան ցոյց մ'է մեր պարզասէր թարգմանչին համար՝ թէ սարկաւագաց և թէ քահանայից վրայ, մանաւանդ փառասիրաց, որոցմէ իւր նմանիք անշուշտ կը զատուէին գունով ու նիւթով, ինչպէս Յունաց մէջ ալ կար նոյն զանազանութիւնն ըստ Սոկրատի[11]։ Նաև սուրբն Գրիգորիս կ'երևութանայ աղուանի մը՝ «սպիտակա-*

1. Փաւս. 267։ — 2. Alex. 89։ — 3. Cabr. III, 365-380, 1175-9։ — 4. Բ Տիմ. Դ, 13։ — 5. Ոսկ. Թղթ. Ա, 266, 455։ — 6. Dar. I, 712։ — 7. Ոսկ. Թղթ. Ա, 267։ — 8. Mart. 779։ — 9. Եւս, ԻԸ, 32։ — 10. Ոսկ. Թղթ. Ա, 330։ — 11. Mart. 778։

*զգեստ հանդերձիւ[1]», որ սակայն կրնայ ակնարկութիւն լինել և սրբազան զգեստին։*

*Աշաբողոնը մեր եկեղեցականք եւ տնէն դուրս միայն կը զգենուն։ Այս պատճառաւ երբ մեծն Ներսէս իւր տան մէջ թունին*



Զև 107. Ռոմանոս քահ. Թեսաղոնիկէի

*նշանը ցոյց պիտի տայ մարմնոյն վրայ, ուրիշ բան չունի վերցնելիք՝ բայց միայն պարեգօտը[2], վասն զի ներս մտնելու պահուն իսկ հանած էր աշաբողոնը։ Կամ թերևս այդ եղանակին բնաւ չէր կրեր զայն, հասարակաց ամրան հանդերձը լինելով միակ «պճղնաւորն»*

1. Կաղ. 55։ — 2. Ան' 325։

*կամ պարեգօտը[1]։ — Թէ մինչև ե՞րբ տևեց աղաբողոնը մեր քով, դժուարին է ճշդել, չունենալով որ և է տոհմային հին ձև կամ յիշատակութիւն. մինչ արևմտեայք դեռ ցոյց կու տան զայն Ժ դարուն[2] և յաջորդին ևս, ինչպէս Բարսղի վկայաբանութեան եկեղեցականաց ոմանց վրայ՝ որ արտաքին հանդերձով են[3]։ Իսկ Մաշկևորն «աղաբողոնը» կը գործածէ պատմուճանի իմաստով[4], մոռնալով հինը, որ հանդերձին հետ ջնջուած էր արդէն։*

*Բ Շրջան։ — Զ դարու երկրորդ կիսուն հայ եկեղեցին զատուելով յունականէն, կ'անջատուի նաև անոր ազդեցութենէն. և մեր աշխարհական կղերն այնուհետև իւր աչքերը կը դարձնէ դէպ ի վանքերը, որ իւր ուսման վառարաններն էին[5], և իւր տարազն ալ կը սկսի հետ զհետէ ձևել անոնց զգեստին վրայ, իրեն օրինակ առնլով եպիսկոպոսները, ինչպէս պիտի տեսնենք։ Տարազի այս յեղաշրջումը դժուարաւ կրնայ կատարուած լինել Ժ դարէն շատ կանուխ, երբ նկատենք Օձնեցւոյն զգեստաւորման եղանակն Ը դարուն[6], և կամ Յովհաննէս պատմագրի վկայութիւնը Ժ դարուն՝ թէ «պատուեցայ պատուասիրաբար յոստիկանէն (Յուսփայ) զգեստուք՝ ըստ օրինակի կարգիս[7]», ուր չի նշմարուիր վանական անշքութիւնը։*

*Բայց գոնէ Ժ դարուն սկսած է, ինչպէս տեսանք ոմանց վրայ[8], և յաջորդին մէջ արդէն լրացած. ապացոյց՝ Ս. Ղազարու հնագոյն մաշտոցը, որ նկարագրեց մեզ քահանայական հանդերձը[9]. և Պօղոս Տարօնեցին նոյն ԺԱ դարու վերջը, որոյ խօսքերը պիտի տեսնենք, և յետոյ ուրիշ զանազան վկայութիւնք։ Ունինք նաև Պիծակ Սարգսի կենդանագիրը՝ իւր նկարած Աւետարանին մէջ,* 1331էն, *Զև* 108, *որոյ ներքև ինք զինքը կը կոչէ «քահանայ», և ուրիշ եկեղեցական մը Լևոնի Դատաստանին մէջ՝ իւր տարազով, որ Թագաւորին կը թելադրէ ուղիղ դատել[10]։ Այս տարբերք կու տան մեզ հետևեալ նկարագիրը։*

1. *Հերակտրութիւնը կը մնայ միշտ, բայց փոխելով իւր ձևը։ «Ժառանգաւորք եկեղեցւոյ», կ'ըսէ Տարսոնի առաջնորդը, ոչ միայն «զհերսն յապաւեն՝» հասարակ ժողովրդեան պէս, «այլ և զգագաթունսն ամենևին ի հերաց մաքրեալ ջնջեն[11]»։ Կ'իմանայ պսակաձև կուլակը, որ Դ դարուն արևմտեան եպիսկոպոսաց յատուկ, Զին*

1. Աստ՝ 325-6։ — 2. Sacr. Ful. 66։ — 3. Menol. 137, 341, 344, 350, 353, 355։ — 4. Աստ՝ 318։ — 5. Դաստ. 187-211։ — 6. Աստ՝ 315։ — 7. Յհ. կթ. 249։ — 8. Աստ՝ 314-15։ — 9. Աստ՝ 302։ — 10. Աստ՝ 244։ — 11. Լմբ. Պտ. 142, 143։

*ընդհանրացած էր բոլոր կղերին*[1], *ինչպէս կ՚երևի Հռաւեննայի մեր սարկաւագաց միոյն վրայ* (*Ձև* 120), *և որ ահա ԺԲ դարուն Հայոց ալ անցած է, և կը մնայ միշտ, որով ծանօթ ճառը Խորհրդոց եկեղեցւոյ*՝[2] *քահանային «հեր գլխոյն բոլորեալ» կը նշանակէ. և կիլի-*




*Ձև* 108. *Պիծակ Սարգիս քահանայ*

*կեան եպիսկոպոսօրհնէքը կը նկարագրէ դպիրները «որպէս թագ բոլորեալ զհերս գլխոյ իւրեանց՝ ի նմանութիւն փշեղէն թագին Քրիստոսի». և Տաթևացին կը գրէ՝ թէ բոլոր կարգաւորք «Նախ մաքրեսցեն զգագաթն բոլորակ, և զհերսն չափաւորեալ*[3]*»: Նոյնը կը հաստատեն մեր* 108, 113, 116, 121, 124 *Ձևերը, մեր ձեռնա-*

1. Arm. 392. — 2. Աստ՝ 295. — 3. Քրզ. ամր. 170.

դրութեան անջատ պատկերը 1248էն, Ս. Ղազարու շարականը 1513էն, և 1641ի խորհրդատետրը՝ դպրին ու սարկաւագին (ըստ արտաքին ձևին[1]), քահանային, եպիսկոպոսին ու հայրապետին վրայ։ Եւ ԺԷ դարուն տեսանք զայն կուզակ կոչմամբ՝ մինչև իսկ աշխարհիկ մանկանց գլխին[2]։

2. ԺԱ դարու մաշտոցը հանգուցեալ քահանային զգեցուց՝ պարեգօտ, փիլոն, կնկուղ, բոլորը սպիտակ, և մաշկեղէն գօտի[3], այս ինքն վանականաց ամբողջական տարազը, որոյ սպիտակութիւնը սեպհական էր թաղման, և ոչ թէ մնացորդ հնոյն՝ որ չէր կարող միաբանիլ մենաստանի անշուք տարազին հետ։ — Ասոցմէ պարեգօտը միակ անփոփոխ մնացած մասն է, զոր Խորհուրդ եկեղեցւոյ կը սահմանէ՝ «պատմուճան առանց հերձանելոյ» կամ փորանկեալ։ Կապոյտ է Պիծակ Սարգսի (Զև 108) և Դատաստանի քահանային հագածն ալ, վերջինը կրելով նաև թեզանեաց վերին ժապաւէնը։ Նեղ ու պարեգօտին մէջ թաղուած գօտի մ'ալ կայ այդ երկու անձանց վրայ, որ կը յիշեցնէ արեւմտեայց քով ծանօթ չուանեայ գօտին[4]։

3. Կը յաջորդէր՝ ըստ հնագոյն մաշտոցին՝ «խոզխիր միածալ», զոր Խորհուրդ եկեղեցւոյ կը պարզէ՝ «փակեղն որ ի պարանոցն արկեալ, որ է կրօնաւորաց սքեմն ի վերայ լանջացն կապեալ խաչաձև»։ Նոյն «կաշեա սկեմն խաչաձև պարանոցի» գտնուեցաւ նաև Վարդան վարդապետի մարմնոյն վրայ[5]։ Եւ զոր կը յիշէ Սսոյ 1345ի մաշտոցն ալ, «փակեղն զուսովն» հանգուցեալ քահանայի, որ արտաքին հանդերձի մասն է, զատ «ուրարէն՝» զոր յետոյ կը նշանակէ ընել սրբազան հանդերձին հետ։ Այս զարդին ճիշդ նմանը կ'երևի մեր 109 Զևին մէջ, առնուած վենետկեան 1427ի Աւետարանէն[6], գրուած ի Մաղարդ, և որ՝ դատելով երկար վարսերէն՝ կրնայ դպիր մը լինել[7], քան նկարչէն յարմարուած ձև մը։

4. Նորութիւնն է փիլոնը, զոր կը հաստատէ ու կը պահանջէ Տարօնացին, բարբանջելով առ Յոյնս՝ թէ «պատառեցաւ ի ձէնջ կարգ քահանայութեանն, որ զփիլոն արկանելն ևս խափանեաց այն ժողովն Քաղկեդոնի», իբր թէ հրամայելով «շրջիլ առանց փիլոնի, զոր յառաջդ երկոտասան ազգն արկանէին զփիլոն... զոր և Ասորիք ճշմարտութեամբ ունին[8]»։ Նաև ըստ Մխ. Գոշի՝ «քահանայք Հայոց և Ասորոց փիլոնով վարին, իսկ այլ ազգ(ք ոչ)»[9]։ Եւ Խորհուրդ եկե-

1. Ատ՝ գլ. Գ, յօդ. Ա։ — 2. Ատ՝ 293։ — 3. Ատ՝ 302-3. — 4. Braun, 78։ — 5. Վիրպ։ — 6. Հրատ. և ի Սսկ. 522։ — 7. Ատ՝ 324։ — 8. Տար. 317-8։ — 9. Գոշ՝ Թղթ. 562։

դեցւոյ կ՚ակնարկէ նոյնպէս քահանայական «չորիւք անգիւնիւք փի-լոնին»։ Ցովհ. Արճիշեցին ալ կը վկայէ՝ թէ քահանայք սովոր էին փիլոնն «իբրև զհասարակաց զգեստ հանապազ ի գիշերի և ի տունջեան զանձամբ ունել, և յամենայն գործ անխտիր դովաւ վարիլ[1]»։ Նոյնը



Ձև 109. Պատկեր Աւետարանի Մաղարդայ (1427)

կը տեսնենք և Պիծակի ու Դատաստանի քահանային վրայ՝ ձգուած ուսերուն առանց հանգոյցի, ու պճղնաւոր. առաջինոյն մոխրագոյն, և երկրորդին՝ վարդագոյն ծաղկեայ, գուցէ լինելով սա արքունի դրաներէց։ Եւ երբ ԺԷ. դարուն կը վերահաստատուի եկեղեցական

1. Արճիշ. 24։

մոռցուած տարազը[1], կը սահմանեն՝ որ «եթէ երէց իցէ՝ փիլոնաւն» շրջի ըստ հնոյն[2]։

Պէտք է դիտել տամ որ բուն փիլոնն աւելի կանուխ յիշուած է քահանայից քան վանականաց վրայ։ Գրիւնայսէն կը համարի զայս ծագած աշխարհականաց մեկնոցէն. և թէ բիւզանդացիք միակ μανδύας անուամբ կը կոչէին վանականաց, եպիսկոպոսաց ու կայսերաց հագածները[3]։ Իսկ ինձ կը թուի՝ թէ մեր Նախնիք, որ յառաջագոյն չունէին զայն, Ասորիներէն առին այս շրջանիս։

5. Հին մաշտոցը կը հրամայէ զգեցնել անդրավարտիս[4], որոյ նշանակութիւնը ծանօթ է մեզ[5]. և զոր կը կրկնէ Տաթևացին ևս, «անդրավարտիս ըստ հնոյն[6]». այսինքն հրեայ քահանայից ոճով։

6. Կնկուղն (յն. κουκούλλιον[7]) ևս յիշեց հնագոյն մաշտոցը[8] հանգուցեալ «քահանայի կամ եպիսկոպոսի» գլխին. նոյնպէս և 1345ի մաշտոցը։ Անկասկած առաջնոյն գրութեան ժամանակ (ԺԱ դար) ի սովորութեան էր կնկուղը. բայց ոչ և երկրորդին, որ նիւթական օրինակութիւն լինելու է հին հրահանգին։ Վասն զի գիտենք՝ որ կնկուղն յետոյ սեպհական կը դառնայ վանականաց միայն։ Մխ. Գոշ յետ յիշելու վերև միւս ազգերու քահանայից անփիլոն շրջիլը, կը յարէ. «և ոչ վեղարով (լտ. velarium) կրօնաւորք» անոնց, ինչպէս մերայինք կը վարէին։ Նոյն զանազանութիւնը նկատելու ենք իւր հետագայ վկայութեան մէջ ևս. «Քահանայք և կրօնաւորք զինուոր են Քրիստոսի, և (քահանայք) զփիլոնն և (կրօնաւորք) զվեղարն, որ ասի քուսիթա (աս. քոսիթա[9]), որ է կուսից պսակ (ըստ իւր յարմարական մեկնութեան), որպէս զէն զանձամբ ունին[10]»։ Նոյն խտրութիւնն էր և Նաղաշի օրով. «փիլոնով կամ վեղարով շրջել[11]», որոնք մի և նոյն անձանց վրայ պիտի կապուէին ոչ թէ «կամ», այլ «և» շաղկապով։ Այսպէս նաև Պիծակն իբր «քահանայ» և Դատաստանի իւր կարգակիցն անկնկուղ նկարուած են, մինչ նոյն Պիծակն իւր վանական կենդանագրին մէջ կնկղաւոր է (Ջև 134)։

Փոխան կնկղոյն քահանայք ունէին ուրիշ գլխանոց, զոր կը յիշէ Տաթևացին հանգուցեալ քահանայի նկարագրին մէջ, «փակեղն և վարշամակն[12]», ինչ որ հաւասար էր աշխարհականաց կրածին, ինչպէս կը գրէ անոնց համար. «զգլուխն փակեղամբ և վարշամակօք ծածկեն[13]»։ Հանդերձին վերանորոգիչ Սիմէոն Այրիվանեցին նոյն-

1. Աստ՝ 317։ — 2. Պատր. 195։ — 3. Grün. 187, 188։ — 4. Աստ՝ 303։ — 5. Աստ՝ 118։ — 6. Քրզ. ձմր. 249։ — 7. Hüb. 358։ — 8. Աստ՝ 303։ — 9. Hüb. 319։ — 10. Արար. 1900, 562. 1901, 61։ — 11. Աստ՝ 317։ — 12. Աստ՝ 303։ — 13. Քրզ. ձմր. 241։

պէս կը սահմանէ՝ զի «աշխարհի երէց... կապոյտ փարքէ ի գլուխն[1]» իբր սգոյ գոյն[2]։ Եւ Մկրտիչ Նաղաշի նուէր կը յղէին «վարշամակս ոսկեթելս[3]»։ Ս. Ղազարու ԺԸ ճառընտրի մէջ (ԺԶ–ԺԷ դարու) գտայ յիշուած հայ քահանայ մը Կոգովիտ գաւառէն, որ վշտի մէկ վայրկենին «առեալ գքըցափ գլխոյն իւրոյ, զարկեալ զգետնի՝» եկեղեցին կը դիմէ աղօթելու[4]։ Այդ քըցափը պրս. քիսաֆ (եզ. քիւֆար) բառն է, որ կը նշանակէ պաստառի կտոր, գործածուած հոս իբր փակեղ, որ յայտնապէս կ'երևի մեր 118 Ձևի քահանայից գլխին ևս։

7. Ջգեստը կը լրացնէին «գուլպայք յոտսն» ըստ երիցագոյն մաշտոցին[5], զոր կը կրկնէ 1345ի օրինակն ալ. և աղոնց վրայ կը յաւելու «օղ կամ կօշիկ յոտս[6]»։ Շնորհալին յիշեց և անոնց տրեխ հագնիլը[7], որոյ նկարագիրը տեսանք կանխաւ[8]։

8. Վերջին կարևորն էր ցուպը կամ գաւազան (պրս. գաւազ[9]), զոր կը կրէին Քաղդէացիք[10] և Հրեայք[11], ուսկից Յիսուս զգուշացուց իւր աշակերտներն[12] իբր դիւրութեան միջոցէ մը։ Բայց եկեղեցականք ու վանականք պահեցին զայն, ինչպէս կը յիշէ Փաւստոս՝ խօսելով Դանիէլ քորեպիսկոպոսի մասին[13], և Մխ. Գոշ՝ կոչելով «ցուպ շրջողութեան[14]». և Խորհուրդ եկեղեցւոյ՝ գրելով «ցուպ ի ձեռինն» քահանայի։ Անոր ձևը պիտի տեսնենք յետոյ՝ ուրիշ վիճակաւորաց ձեռքը։ Հայ աշխարհականք ալ կը գործածէին զայն յաճախ[15]։

Մեր այդ նկարագրէն կը հետևի՝ որ այժմու հայկական կոչուած քահանայական տարազը շատ հեռի է հին դարերու ձևերէն. և լայնաթեզան փորիրաց վերարկուն, որ Թրքական ծագումն ունի, և գլխանոցը՝ նորահնար բաներ են անցեալ դարէն։

## Դ. ԵՊԻՍԿՈՊՈՍ ԵՒ ՎԱՐԴԱՊԵՏ

Ա. Շրջան։ — Թեսաղոնիկէի Փիլիպպոս եպիսկոպոսը[16] մի և նոյն տարազն ունի Ռոմանոս քահանային հետ. այս տարբերութեամբ՝ որ իւր աղաբողոնն աւելի կարճ է, արդիւնք արուեստաւորին կամ կրողաց ալ կամաց, որով անհաւասար բռնուած է յարա-

1. Հյպտ. 570. — 2. Աստ՝ 304. — 3. Հյպտ. 572. — 4. Էջ 565. — 5. Աստ՝ 303. — 6. Քրզ. ժմր. 249. — 7. Աստ՝ 318. — 8. Աստ՝ 202. — 9. Hüb. 126. — 10. Հեր. ՃՂԵ. — 11. Եւս. ԺԲ, 11. Դ, 20 ևն. — 12. Մատթ. Ժ, 10. Ղուկ. Թ, 3. — 13. Փաւս. 37. — 14. Դատ. Պ. — 15. Առող. 151. Գոշ՝ Առկ. ՃՁԵ. Քրզ. ամր. 705. ևն. — 16. Աստ՝ 327.

կից աշխարհական սրբոցն ալ։ Մի և նոյն համեմատութիւնը կար նաև հայ եպիսկոպոսաց ու քահանայից զգեստաւորման մէջ։ Եւ Եղիշէի խօսքը մեր «առաջնորդաց» մասին՝ թէ «սիրեն զանշքութիւն հանդերձից[1]», կը ժխտէ որ և է խորական առաւելութիւն եպիսկոպոսաց կողմանէ, որ պերճանք մը պիտի լինէր, և այս պատճառաւ կը բամբասուէր ոմանց վրայ[2]։

Միակ զանազանութիւնն էր մատանին, որով Ներսէս Աշտարակեցւոյն հետ ժողովեալ եպիսկոպոսները 555ին իրենց սահմանը կը կնքեն «մատանեօք մերովք[3]». 607ին ժողովեալք իրենց ձեռնարկը՝ «մատանեօք մերովք[4]». և 839ին Դաւիթ եպս. Սիւնեաց և Փիլիպպէ իշխան իրենց կտակը՝ «մեր մատանեօք[5]»։ Բայց ասոնք կնքոյ մատանիներ են, ոչ բուն եպիսկոպոսականը, որ Լատինաց մէջ անգամ չունի իւր վաւերական յիշատակութիւնն Է. դարէն յառաջ[6]։ Եւ Յոյներն ալ չէին կրեր զայս մատանց վրայ, որով ԺԱ դարուն Միք. Կերուլարիոս պատրիարք Կոստանդնուպոլսի կը մեղադրէր լատին եպիսկոպոսներն այդ բանին համար[7]։ Այս պատճառաւ անհաւանական է այն մեր քով այս առաջին շրջանիս։

Բ Շրջան։ — Ըսինք՝ թէ վանական հանդերձին աշխարհաքնակ կղերին փոխանցումն եղաւ եպիսկոպոսաց նախաձեռնութեամբ, որոնք սովորաբար մենաստաններէն կ'ընտրուէին, մանաւանդ միջին դարուն[8], ինչպէս կը վկայէ և Գուլ. Ռուբրուկացին՝ 1253ին, թէ «Հայոց բոլոր եպիսկոպոսները վանական են, ինչպէս և յունականաց մեծ մասը[9]». և յաճախ միասին կը տանէին իրենց ընտանի մենաստանին հանդերձն ալ[10]։ Մանաւանդ թէ վանքերու մէջ իսկ կը բնակէին ընդհանրապէս, հեռի իրենց հօտէն, որոյ դէմ կը բողոքէր Լամբրոնացին[11], ըսելով՝ թէ այս զեղծումն սկսեր էր յետ Բագրատունեաց[12]. և կը տևէ այնուհետև երկար ժամանակ, ինչպէս յայտնի է զանազան յիշատակարաններէ։ Իրաց այս վիճակին արդիւնքը պիտի լինէր անոնց կրօնաւորակերպ զգեցումն, աւելի կատարեալ ձևով քան աշխարհի քահանայից. և այս կը սկսի Թ—Ժ դարուց մինչև[13]։ Նմանապէս և վարդապետք, արդէն վանականք միշտ, մի և նոյն տարազը կը կրեն նկարուց ու նկարագրութեանց մէջ։

1. Աստ՝ 314։ — 2. Աստ՝ 315։ — 3. Գ. Թղթ. 75։ — 4. Անդ՝ 150։ — 5. Որբ. 150։ — 6. Cabr. I, 2181-83 են։ — 7. Թղթ. առ Պետ. պատր. Անտիոքու։ — 8. Լմբ. Պտ. 323։ — 9. Rubr. LI։ — 10. Աստ՝ 314։ — 11. Լմբ. Պտ. 55, 56, 57, 325-6։ — 12. Անդ՝ 526։ — 13. Հմմտ. աստ՝ 338։

Մինչ արեւելեան եպիսկոպոսունք վանական ձեւին կը զուգեն անշքութիւնն ալ, ինչպէս կը զգացնէ Պօղոս Տարօնացին՝ բամբասելով յունականաց պճնասիրութիւնը[1], կիլիկեցիք կ՚ախորժին նմանիլ արեւմտեայց, փափկացնելով իրենց հանդերձից նիւթը «մետաքսէիւք[2]», բայց ոչ փոխելով ձեւը, որոյ ակնարկութիւն չկայ բնաւ։



Ձև 110. Ղազար վրդ. և Պետրոս եպս. (1402)

Ընդ հակառակն ծանօթ 1402ի Աւետարանին[3] մէջ կը գտնուի երկրորդ նկար մ՚երկու եկեղեցականաց, զոր կու տամ հոս, Ձև 110, զորս Մակլէր վրիպակաւ կարծեց «Թերեւս Ռուբէն և եղբարց մին[4]»։ Ասոր եղբարք աշխարհական էին, ինչպէս տեսանք. իսկ այս ան-

1. Տար. 290։ — 2. Աստ՝ 315. Լմր. Պտ. 323։ — 3. Աստ՝ 276։ — 4. Macl. 19։

ձինք են ըստ իս անոնց հօրեղբարք, «Ղազար վարդապետ» և «Պե-տրոս եպիսկոպոս», որ կը յիշուին հոն։ Ու զգեցած են միաձև, ժամանակին վանական տարազը, զոր կը կազմեն սև կնկուղ, դեղին պճղնաւոր պարեգօտ, ասոր վրայ գօտի, ուրար՝ կարմիր ու դեղին կիտուածով՝ փոխան խողոխուրյն, սև փիլոն, կոճկուած լանջաց կեդրոնը և դէպ ի վար լայնաբաց, կարմիր կօշիկ և ցուպ ի ձեռին։ Սուտն Դամասկացի ըսելով՝ թէ Հայոց «եպիսկոպոսք և առաջնորդք և վարդապետք» կը պատարագեն արտաքին հանդերձով[1], կը յարէ՝ իբր ասոր մասն՝ «երիս դնելով զգդակս ի գլուխն[2]», որոց մին տե-սանելի կնկուղն է, և երկու բուն գդակները ծածկուած լինելու են անոր ներքև, ինչ որ զգալի է մեր Ձևի մէջ իսկ։

Մխիթար Ապարանեցւոյն ուշը կը գրաւէ անոնց զանազանու-թիւնն ուրիշներէ՝ սև երկար փիլոնով, զոր կը խծբծէ այսպէս. «Արարին երկայն խարբ, թէպէտ նոյն (շուրջառին) ձևոյն, այլ միայն թուխ գունով և երկայնագոյն ըստ փարիսեցւոցն, և միայն ի պատիւ եպիսկոպոսաց և առաջնորդաց և վարդապետաց. և ոչ յեկեղեցիս և ի հոգևոր գործս, այլ ի պատճառս հպարտութեան միշտ շրջել նոքօք, որպէս թէ ինքեանք ոչ են յերկրի, և կամ միակերպ և միակրօն և նման այլոց ընկերաց և կարգակցաց, այլ յայլ իմն բնու-թենէ[3]»։

Տակաւին մատանին ալ կայ, և արդէն եպիսկոպոսական կար-գին հետ կապուած, ու մատին վրայ։ Բարսեղ կաթողիկոս՝ եպիս-կոպոս ձեռնադրել ուզելով կարմիրվանեցի Ստեփանոս վարդապետը, կը հանէ իւր մատանին և անոր մատը կ'անցնէ[4]։

## Ե. ԿԱԹՈՂԻԿՈՍԸ

Ա. Տրչաև։ — Հայոց հայրապետը, որ այս շրջանիս եպիսկո-պոսական ձեռնադրութիւն միայն ունի[5], և պաշտօնական գրուածոց մէջ կը կոչուի «եպիսկոպոս Այրարատոյ[6]», արտաքին ձևով ևս չի տարբերիր միւս եպիսկոպոսներէն։ Մեծն Ներսեսի պճղնաւորը փաւա-տոս կը կոչէ անշուք պարեգօտ բառով[7], որ հասարակացն էր, և որ նոյնպէս կ'ենթադրէ անոր աղաբողոնն ալ։ Նոյն պարզ ձևը կը մնայ և յետոյ, քիչ ու պատահական բացառութեամբ զոր յիշեցի[8]։

1. Աստ՝ 319. — 2. Դմս. 1114. — 3. Ապար. խե, լբ. — 4. Հյպտ. 378. — 5. Ագթ. 604. — 6. Եղիշ. 22. — 7. Աստ՝ 325. հմմտ. 141. — 8. Աստ՝ 315.

*Պատմութեան մէջ ծանօթ է Լուսաւորչի գօտին[1], որ կը մեծարուէր[2] իւր մէկ հողաթափին հետ[3]։ Մեսրոբ չի մոռնար ս. Ներսեսի դաստառակը (պրս. դաստառ[4]), զոր Մուշեղ իւր գեղարդին կը կապէ իբր պահպանակ[5]. և որ հոմանիշ է անձեռոցին կամ թաշկինակին[6]։*

*Նոյն պատմիչը կը յիշէ նաև նոյն հայրապետի գաւազանը կամ ցուպը, զոր բռնած՝ այնպէս կ'ընթանայ Արշակայ խորանը՝ ազատելու զԳնէլ[7]։ Սովորաբար աւելի շքեղ կը կարծուի հայրապետական ցուպը, դատելով Օձնեցւոյն կրածէն, «զոսկիանկար գաւազանն՝ որ ի փայտից ոսկիազից», որով կը ներկայանայ ամիրապետին[8]։ — Կայ և կաթողիկոսական մատանին, որ այս շրջանիս կնքոյ պաշտօն միայն կը վարէ նման եպիսկոպոսականին. և իւր պատկերն է խաչը[9]։ Լուսաւորիչ Հռիփսիմեանց նշխարները «կնքէր քրիստոսանշան կնքովն[10]», զորս Է դարուն կը բանայ Կոմիտաս, կը գտնէ «կնքեալ մատանեաւ սրբոյն Գրիգորի և սրբոյն Սահակայ», որոց անուններն ալ կային որոշիչ խաչին քով, և իւր «կնիքն» ևս կը դնէ անոնց կից[11]։*



Ձև 111. *կնիք կոստանդնի կաթողիկոսի*

*Բ Շրջան։ — Հոս ալ հայրապետն եպիսկոպոսական տարազը կը կրէ, բայց իւր նորամուտ վանական ձևով, որ կը սկսի ցանցառաբար երևիլ Թ դարէն, ապա կ'ընդհանրանայ. որովհետև իրենք ալ յաճախ մենաստաններէն կ'ընտրուին։ Մաշտոց իւր հայրապետութեան միամեայ շրջանին* (898–899) *հագեր էր իւր նախկին կրօնաւորական հանդերձը, «զչուրչառն (փիլոն) և զկնկուղն խոյրակերպ և զպարեգօտ[12]»։ Յետոյ Ժ դարու վերջերը տեսանք զՍարգիս կթղ. դարձեալ մի և նոյն զգեստով[13]։ Եթէ Կիլիկիոյ հայրապետներէն ոմանք կը խորշին հանդերձի փափկութենէն[14], բայց ուրիշներ ալ*

1. Խոր. 302. — 2. Արծ. 68. — 3. Օրբ. 324. — 4. Hüb. 135. — 5. Սոփ. Զ, 73. — 6. Եղիշ. 156. — 7. Սոփ. Զ, 45. — 8. Յհ. կթ. 131. — 9. Հմմտ. սատ՝ 124. — 10. Ագթ. 571. — 11. Յհ. կթ. 96. — 12. Օրբ. 178. — 13. Ասո՝ 314. — 14. Ասո՝ 315.

*կը հետևին եպիսկոպոսաց օրինակին՝ զոր տեսանք, և որ երթալով կ'ընդհանրանայ ու կ'իշխէ, ադոնց ու հայրապետին յատուկ զգեստ մը կազմելով։ Որով Կոստանդին Բ իւր հրաժարման պահուն կը հանէ նախ սրբազան հանդերձը, և ապա «զսքեմն եպիսկոպոսութեան» զոր հագած էր անոր ներքև. և բերել տալով մազեղէն վանական ձևը, զայն կ'առնու իւր վրայ*[1]։

*Ծանօթ է «Կոստանդին կաթողիկոսի» պղնձեայ կնիքը, հրատարակուած Շլիւմբերգերէ*[2] *և Հ. Ալիշանէ*[3], *զոր յառաջ կը բերեմ,* Ձև 111, *և ուր այդ անուամբ երկու հայրապետներէն մին, որոց առաջնոյն կ'ընծայէ Շլիւմբերգէր կնիքս, հագած է պարեգօտ և փիլոն պճղնաւոր, գդակ՝ զոր պիտի տեսնենք կրօնաւորաց վրայ, և բռնած խաչագլուխ գաւազան, որ գլխաւոր որոշիչն է հայրապետական աստիճանին. և որ հաւանօրէն հովուականն իսկ է, զոր Բարսեղ կթղ. ի ձեռին կը կրէր նաև գիշերապաշտաման մը մէջ*[4], *ուստի առանց սրբազան հանդերձից. և նոյն «զհայրապետական գաւազանն» Պետրոս Գետադարձի առջևէն կը տանէին Բիւզանդիոնի մէջ*[5]։

*Տեսանք նաև մատանին Բարսղի կալցին նշան դարձած անոր մատին վրայ, զոր դրած էր նաև նոյն գիշերապաշտաման պահուն և նուիրեց Ստեփանոս վարդապետի։ Մեր կիլիկեցի կաթողիկոսունք պատիւ կը համարէին մատանի ստանալ Հռովմայ հայրապետէն. Գրիգոր Ապիրատ կը խնդրէ զայն Գ Իննովկենտէ, և Կոստանդին Ա նոյնը կ'ընդունի Թ Գրիգորէ*[6]։ *Այս և նախորդ զարդը կը յիշէ նաև Թովմա Մեծոփեցին, տրտնջելով Յովհաննէս Կոլոտկի դէմ, որ* 1443*ին հրաժարեցնելով կաթողիկոսութենէ զԿիրակոս Վիրապեցին, «զգաւազանն ի ձեռաց նորա յափշտակեր էր, և զմատանին ի մատանցն առեր իբր զդատապարտեալ*[7]*»*։

1. Օրբ 321։ — 2. Arch. I, 669-72։ — 3. Սիս. 527։ — 4. Հյպտ. 378։ — 5. Ոււ. ՀԴ։ — 6. Գալ. Ա, 355, 376։ — 7. Մեծոփ. Պատմ.

# ԳԼՈՒԽ Գ

## ՍՐԲԱԶԱՆ ԶԳԵՍՏՆԵՐԸ

---

### Ա. ՆԻՒԹ ԵՒ ԳՈՅՆԵՐ

ՀԱՍՏԱՏԵՑԻՆՔ *արդէն խորհրդական զգեստուց*[1], *սրբութեան զգեստուց*[2] *կամ հանդերձի եկեղեցւոյ*[3] *գոյութիւնը Հայոց քրիստոնէութեան սկիզբէն*[4]. *և այժմ պիտի քննենք անոնց ձևերը, որոնք դարերու ընթացքին մէջ փոփոխուեր են նման արտաքնոյն, պահելով միշտ յունական ազդեցութիւնը, և մասամբ ենթարկուելով լատինականին։ Կէտ մը կայ որ կը պատկանի անոնց բոլորին. Նիւթն ու գոյները, զորս տեսանք որակուած՝ բեհեզ, ծիրանի, դիպակ, կերպաս, երփն երփն ծաղկազարդ, մեծագին և այլ մակդիրներով՝ Զ, ԺԳ և ԺԴ դարերէն*[5]*։ Ղևոնդ կը յիշէ «զհանդերձս թագաւորացն՝» որ նուիրուած էին Դունի կաթողիկէին, «ի պատիւ սրբոյ... սեղանոյն և խորանին տեառն*[6]*»։ Նաև մեր իշխանք կ'ընծայէին եկեղեցեաց «ի հանդերձից պատուականաց», կ'ըսեն սահակեան կանոնք*[7]*։ Շնորհալին եկեղեցիները կը զարդարէ «պայծառագոյն ոսկէնկար զգեստիւք*[8]*». և Գրիգոր Տղայ Հռոմկլայի սրբավայրը՝ «յոսկեզօծ զգեստուց*[9]*»։ Նաև Լամբրոնացին կը յիշէ պատարագի «զմետաքսեայ զգեստն», զոր Զորոյգետացիք ունէին ու չէին գործածեր*[10]*։ Արևմտեայք ևս հիանալի օրինակներ ունին ասղնեգործ հանդերձից՝ սկսեալ Ժ դարէն*[11]*, քան զոր շատ հին էր սովորութիւնը։*

*Իսկ Տարօնի առաջնորդը նախամեծար կը համարի «յասրոյ՝ և ոչ ի կտաւոյ» հանդերձը, ի խորհուրդ Գառին Աստուծոյ*[12]*։ Յունական էր սաւեղէնը, մինչ Լատինք կտաւին կը գործածէին*[13] *և մե-*

1. Լմբ. Պտ. 81, 88։ — 2. Արճշ. 24։ — 3. Աստ՝ 319։ — 4. Աստ՝ 312։ — 5. Աստ՝ 314, 319, 320։ — 6. Ղևդ. 204։ — 7. Սոփ. Բ, 118։ — 8. Անդ՝ ԺԴ, 73։ — 9. Տղզր. Կիլ. ՁԻԳ։ — 10. Լմբ. Թղթ. 240։ — 11. Braun, 19–21 են։ — 12. Լմբ. Պտ. 92։ — 13. Նոյն՝ 150. Braun, 17։

տաքսեայ[1]. որով բիւզանդական գրուած մը՝ ԺԱ–ԺԳ դարու՝ «ընդդէմ Փրանկաց և այլոց Լատինաց՝» կը բամբասէ զանոնք, որ «եպիսկոպոսք և քահանայք կը գործածեն մետաքսեայ զգեստներ» պատարագի մէջ[2]։ Բայց Լամբրոնացին այլուր անխտիր կը գտնուի Հայոց նկատմամբ, գրելով. «Ում ումեք որ փոյթ առնէ, ոչ է դիւրաւ գտանել ի կտաւիս կամ ի ստևոյ ոչխարաց զայս զգեստ պատրաստել[3]»։ Գալով մանր մասանց, ինչպէս ուրար, եմիփորոն և այլն, «մի և նոյն է, կ'ըսէ, հասարակաց ամենեցուն (ազգաց). այսինքն ի զանազան որակութեանց թելոց կատարեալ, ըստ որում և զմերս է տեսանել[4]»։ Անտարբեր է և Արճիշեցին, թոյլ տալով ամէն նիւթ. «Եւ ոչ եթէ զայս ասեմ՝ թէ կերպաս կամ յայլ ինչ մեծագին նիւթոյ զգեստն լինիցի, այլ միայն զայս՝ զի յինչ և իցէ նիւթոց», միայն թէ գործածուի[5]։ Իսկ Շնորհալին կ'աւանդէ՝ թէ «Զամենայն սրբոց պատկերս... յեկեղեցիս մեր նկարեմք և ի պատարագամատուցի հանդերձս[6]». ինչ որ շատ տարածուած լինելու չէ. վասն զի գրչագրաց մէջ չենք հանդիպիր այդպիսի պատկերազարդ հանդերձից, ինչպէս ունին Լատինք օրինակներ՝ ԺԱ դարէն սկսեալ[7]։

Գոյներու մեծ ու ճոխ այլազանութիւն մը կ'երևի թէ վերոյիշեալ վկայութեանց և թէ նկարներու մէջ։ Նոյնպէս էր նաև արևմտեայց քով[8]. և հին Հայոց ոմանց սպիտակին տուած նախամեծարութիւնը սրբազան հանդերձին վրայ և ոմանց զայն կրելն իսկ[9] չի նշանակեր, կ'ըսէ Լկլերկ, անոր տիրապետութիւնը. և թէ շատ ուշ՝ իբր Թ դարէն կը սկսի հանդերձից գոյներու խորհրդաւոր մեկնութիւնը[10], և կը զարգանայ ԺԲին[11]։ Նկատեցինք սպիտակին կարևորութիւնը մեր քով՝ զանազան առթից մէջ[12], և եկեղեցական արտաքին հանդերձին վրայ[13], ուսկից յետոյ մասամբ պատարագի զգեստին ալ կ'անցնի։ Մեր 122 Ջևին մէջ Սիւնեաց երկու եպիսկոպոսներ ճերմակ հագած են. և Տաթևացին խօսելով շապկի մասին, կ'ըսէ՝ թէ «ի ժամ պատարագին պատշաճի քահանայիցն սպիտակ հանդերձ[14]»։ Հոս ալ ճերմակը բացարձակ իշխող չէ, ալ անձնական կամ տեղական հանգամանք ունի, և անոր հակառակն ալ կայ։

Յետոյ ԺԸ դարուն որոշ խտրութիւն մը կը գտնենք՝ ըստ տեղեկութեան զոր 1764ին կու տայ Ենովք Ակլայեցի[15], թէ Հայք

1. Braun, 7։ — 2. Bessar. պր. 115, էջ 165։ — 3. Լմբ. Պտ. 90։ — 4. Նոյն՝ 150։ — 5. Արճշ. 24։ — 6. Շնրհ. Ընդհ. 98։ — 7. Braun, 108-9։ — 8. Նոյն՝ 42։ — 9. Վկյբ. Ա, 237։ — 10. Cabr. III, 2999-3003։ — 11. Braun, 45-6։ — 12. Ասա՝ 295, 302-3, 306։ — 13. Ասա՝ 326, 328։ — 14. Քրզ. ամր. 182։ — 15. Գրչ. Դիւանի Ս. Ղազարու։

*պատարագի մէջ «ի զատկի աւուրն զգենուն սպիտակ. ի Նոր կիրակէին կարմիր. ի յաշխարհամատրան կիրակին կանաչ. ի հետեւեալ կիրակին դեղին», որոնք անկախ են լատինական սովորութենէն[1]։ Իսկ տարւոյն միւս օրերը «զինչ գոյն և կամիցին, կ'ըսէ, զգենուն անխտրաբար». և այդ չորս զանազանութիւնքն ալ, կը յարէ, կանոնական և ընդհանուր չէին, այլ այն եկեղեցեաց միայն՝ ուր կը գտնուէին այդ գունով զգեստներ։ Հաւանօրէն այս սովորութեան մէջ ազդեցութիւնը կայ Տաթևացւոյն նոյն չորս գունոց տուած խորհրդաւոր մեկնութեան[2]։*

*Նախորդ գլխոյն մէջ յիշեցի սրբազան հանդերձից բարձումն ու վերստին հաստատութիւնը զանազան դարերու մէջ, որ այլեայլ փոփոխումներ ալ յառաջ կը բերէր անոնց ձեւին վրայ. և սոյնք գլխաւորապէս կը սահմանէին շրջանները՝ որոց պիտի բաժնեմ սրբազան զգեստուց պատմութիւնը, թէև դիւրին չէ գծել այդ շրջանաց որոշ սահմաններ. զի աւելի աղբիւրներն են որ կը զատեն զաղոնք՝ քան ժամանակը։*

*Պէտք է նաև գիտնալ՝ որ հանդերձից զանազանութիւնը՝ զոր պիտի թուեմ ու նկարագրեմ, մինչև դարերուն շատ քիչ անգամ կը նշանակէ պատկանեալ աստիճանաւորաց ևս գոյութիւնը։ Այլ սովորաբար պակաս պաշտօնէից դերը՝ անոնց տարազով հանդերձ՝ կը ստանձնէին վերնագոյնք որ կային։ Զոր օրինակ Լամբրոնացին ակնարկելով սարկաւագին՝ կ'ըսէ. «առ մեօք այս կարգ բնաջինջ է յեկեղեցւոյ», և կը յորդորէ՝ որ քահանայ մը նոյն պաշտօնը վարէ կարգակից պատարագչին քով։ «Նոյն թէ և ոչ կէս սարկաւագ չէ, որք ի քահանայիցն, զի այս է առատ այսօր, զնորին գործ արասցէ[3]»։ Նաև Մխ. Գոշ կը հաստատէ՝ թէ առ ի չգոյէ պաշտօնէից՝ «ի քահանայից կարգեն սարկաւագ և դպիր» (կիսասարկաւագ) հանդիսաւոր պատարագի պաշտօնին[4]։ Լամբրոնացին կը յարէ՝ թէ «մոռացեալ է բնաւին ի մտաց մերոց՝ թէ այլ աստիճան կայ յեկեղեցի բայց ի քահանայից և յեպիսկոպոսաց[5]». և սոոր պատճառը, ուրովհետև «զամենայն կարգ ի մի օր... տան», կ'ըսէ Ապարանեցին տակաւին ԺԶ դարուն[6], զոր պիտի կրկնէին նախորդներն ու յաջորդներն ալ։*

1. Braun, 39 են։ — 2. Քրզ. ձմր. 170, 485։ — 3. Լմբ. Պտ. 227։ — 4. Գոշ. Թղթ. 60։ — 5. Լմբ. Պտ. 87։ — 6. Ապար. Խե, Լ։

## Բ. ԴՊԻՐՔ

Ա Շրջան։ — Եթէ արտաքոյ պաշտամանց որոշիչ հանդերձ մը չունէին ասոնք[1], սակայն եկեղեցւոյ մէջ պարտաւոր էին համաձևութեան միւս պաշտօնէից հետ։ Զայս և միանգամայն ոմանց զանցառութիւնը կը հաստատէ Դունայ Բ ժողովը հետագոյ խօսքերով. «Մի՛ զձև հանդերձի զինուորաց ունել և ի կարգի պաշտօնէից կալ, այլ ընդ զինուորս կացցեն. այլ զձև եկեղեցականաց ունել իւրոյ կարգին վայել է ըստ քանոնայական օրինին[2]»։ Այսինքն հեռի կը բռնէ իրենց պաշտօնէն ու կղերէն զանոնք՝ որ չեն ուզեր կրել կարգին զգեստը, զոր կը հաւասարեցնէ միւս «եկեղեցականաց» հագածին, որ հաւանօրէն սպիտակ պարեգօտն է, ինչպէս կը կարծէ և Ֆլէօրի[3]. վասն զի պատմուճանն այս շրջանիս սարկաւագէն խոնարհագոյն պաշտօնեայք չէին կարող կրել, ինչպէս պիտի տեսնենք։ Այս է ուրեմն դպրաց նախնագոյն ձևը հայ եկեղեցւոյ մէջ։

Բ Շրջան։ — Ցոյց տուի սրբազան հանդերձից ջնջումն ու վերըստին նորոգուիլը ԺԲ դարուն[4]։ Այս նորոգութեան աղբիւրը դարձեալ յունական ձևն է, որ կը շարունակէ մնալ միւս եկեղեցեաց մէջ ևս, ինչպէս կը հաստատէ Լամբրոնացին՝ թէ «մի և նոյն է հասարակաց ամենեցուն (Յունաց, Փրանկաց ու Հայոց)... զգեստուցս ձև և կերպարան[5]»։ Բայց Լատինաց քով ունի ինչ ինչ զանազանութիւն, որոնք հայկականին վրայ ևս կ'ազդեն։ Հոս դպրաց հանդերձն է «պատմուճանն պձղնաւոր», որ «ամենեցուն է ժառանգաւորաց եկեղեցւոյ զգեստ», և «թեզանեօք» պաշտօնէից վրայ, սկսեալ սարկաւագէն[6], որոնք հաւանօրէն նեղ էին դպրաց վրայ, ինչպէս կը տեսնուի յաջորդ շրջանին։

Տարսոնի առաջնորդն անգամ մը գօտի կապել կու տայ պատմուճանին վրայ, և անգամ մ'ալ գօտիկոյծ կը գրէ[7]. արդիւնք անորոշութեան՝ որ կը տիրէր հանդերձից վերահաստատութեան սկիզբը. և որ յետոյ Արճիշեցւոյն օրով ճշդուած է արդէն, այսինքն «պատմուճան գօտեկոյծ[8]»։ Նոյնպէս է նաև Օրբելեանի գրած ժամանակ (1299), ուր անոր ներքև ունին աղաբողոն կամ պարեգօտն ալ[9]։

1. Աստ՝ 323։ — 2. կանոն ԺԳ։ — 3. Fleur. VII, 12։ -- 4. Աստ՝ 318։ — 5. Լմբ. Պտ. 150։ — 6. Նոյն՝ 147։ — 7. Նոյն՝ 84, 140։ — 8. Արճշ. 21, 22։ — 9. Օրբ. 81։

*Գ Շրջան։ — Սիւնեաց պատմչիս և Նախորդ աղբերաց դեռ անծանօթ, քիչ յետոյ կը հնարուին փոքր աստիճանք, յիշուած Մխիթարայ ժողովքէն 1342ին, և Սսոյ մաշտոցէն 1345ին*[1]։ *Հայկական ծիսի յեղաշրջման շրջանն է այդ, ուր նոյն ԺԳ–ԺԴ դարուց միջև Նիկալայոսի ծանօթ գրչագիրը, որ դեռ չունի չորս նորամուտ աստիճանները, անագանոսի (դպրի) վրայ նոր ձև մը կը նշանակէ, ըսելով թէ եպիսկոպոսը զայն օրհնելու պահուն «զգեցուցանէ նմա զփիլոնն». և թէ կիսասարկաւագութեան բարձրանալու առթիւ «հանեն զփիլոնն» և կը զգեցնեն «հանդերձ» կամ պատմուճան, զոր ուրեմն չունէր փիլոնին հետ։*

*Այսպէս նաև եպիսկոպոսական ձեռնադրութեան կիլիկեան կարգը, իբր 1311ին*[2]*, Ս. Ղազարու 1345ի, 1365ի և երկու նոտրագիր օրինակաց համեմատ կը գրէ՝ թէ անագանոսք «զգեցցին ծիրանի փիլոն». սաղմոսասացք՝ «հանդերձ կերպարանօք և գօտիք ընդ մէջ». դռնապանք՝ «հանդերձ գօտեւորք». երդմնեցուցիչք՝ «հանդերձ դիպակ նեղթեզանիս՝» կապուտակ գունով. և ջահընկալք՝ «նոյնպիսի հանդերձ կարմիր»։*

*Փոքր աստիճանաւորաց հանդերձից զանազանութիւնս կապուած է եպիսկոպոսական ձեռնադրութեան հետ, և անշուշտ գործածուած ալ այդ առթիւ հայրապետական աթոռին մէջ։ Իսկ արտաքոյ չկային, ըսինք, ոչ զատ աստիճանք և ոչ զգեստի զանազանութիւնք։ Որով նոյն աստիճանաց օրհնութեան մէջ 1345ի մաշտոցը չէ յիշեր անգամ զգեստները, բայց միայն առաջին աստիճանաւորին՝ սաղմոսերգուին վրայ՝ թէ «զգենու հանդերձ կերպարանօք». որով յատուկ էր այս բոլորին. և զոր Տաթևացին դռնապանին վրայ կը նկարագրէ «հոլանի և անգօտի*[3]*»։ Եւ այդ միակ տարազը կը մնայ միշտ դպրաց վրայ, – վերջինքն օրհնուած կամ ոչ, – և կ'երևի դեռ մեր 118 Ձեին մէջ. այն է գլխին պսակաձև կուրակ, և նեղաթեզան պատմուճան, մեր նկարին մէջ կարմիր, կանաչ գրապանով, և գօտելոյծ, որ ժամանակի սովորութեամբ*[4] *կ'իջնէ լանջաց վրայ։*

## Գ. ԿԻՍԱՍԱՐԿԱՒԱԳԸ

*Ա Շրջան։ — 1. Ժ դարուն արդէն ծանօթ մեր քով իբր աստիճան*[5]*, քան զայդ թուական հին ձև մ'ալ չունէր զգեստին։ Եւ նախ Լամ-*

1. Հմմտ. Հայ ծէսը, 83. — 2. Անդ՝ 92. — 3. Տաթ. Հրց. 170. — 4. Հմմտ. Ձե 123. — 5. Աստ՝ 322.

*բրոնացիէն գիտենք իւր հանդերձին հանգամանքը. որ է պատմուճան Թեզանաւոր և հոլանի անգօտի[1]։ Նոյնպէս «պատմուճան գօտելոյծ» կը կոչէ զայն Արճիշեցին[2]։ Իսկ Օրբելեան կը շատանայ ըսել՝ թէ «ունին զգեստ զսարկաւագաց», և թէ «կան հոլանի գօտելոյծ[3]»։ Այս համեմատութիւնը սարկաւագաց հետ՝ հարկ չկայ բացարձակ իմաստով առնուլ. վասն զի եպիսկոպոսօրհնէքը կիսասարկաւագաց կու տայ «զգեստ ղիպակ ճեղքեզաճ», որով կը զատուէին սարկաւագներէն։ Այս զանազանութիւնը կար ի հնուց նաև արևմտեան եկեղեցւոյ մէջ[4]. և նոյնը կ'երևի ասորական նկարի մը մէջ ևս 1239էն[5], մինչ Յունաց քով բոլոր կղերը հաւասարապէս նեղաթեզանը կը կրէր, ինչպէս կը ցուցնեն անոնց նկարները։ Ժ դարու բիւզանդական նկարի մը մէջ՝ զոր տեսեր է Ֆլեօրի[6], և ուրիշի մը մէջ ԺԱ դարէն, եպիսկոպոս մը և երկուստեք սարկաւագ մ'ու կիսասարկաւագ մը, ինչպէս կը համարի հրատարակիչը Շլիւմբերգէր[7], նեղաթեզան պճղնաւորին վրայ բոլորն ալ հագած են փորանկեալ նափորտը, — անծանօթ մեր կիսասարկաւագաց վրայ, — որոյ ձևը պիտի տեսնենք Ե յօդուածիս մէջ. և առհասարակ գօտելոյծ են։ Ընդ հակառակն յիշեալ ասորական նկարի ամբողջ պաշտօնեայք, և Ժ ու ԺԱ դարու լատին կիսասարկաւագաց կենդանագիրք[8] գօտիւոր են, հաստատելով՝ թէ մերոնք յունականին կը հետևէին այս մասամբ։*

2. *Պաշտօնէից տարազը կը լրացնէր ուրարը, զոր «սոքա զահեակ բազկաւն ածեալ կապեն ի վերայ արմկանն՝ ի կախ ունելով կըրկին[9]». և զոր կը յիշեն Արճիշեցին, Օրբելեանն[10] ու եպիսկոպոսօրհնէքն ալ։ Այս զարդը՝ նոյն բազկին վրայ՝ կը կրէին նաև արևմտեան կիսասարկաւագները, կոչելով* mappula. *և որ ի սկզբան թաշկինակ մը, միջին դարուն արդէն երիզաձև կարճ ուրարիկ մ'էր դարձած, և նշանակ նոյն աստիճանին[11]։ Ասոր օրինակը կը պատկերանայ Լամբրոնացւոյն նկարագրին մէջ և մեր* 112 *Ձևին վրայ. որով մերն անտարակոյս լատինականէն առնուած էր. որովհետև Շլիւմբերգերի վերոյիշեալ յոյն կիսասարկաւագը ձախ ուսին կը կրէ մեծ ուրարը նման սարկաւագին. հաստատուած նաև Տաթևացիէն, «բազկուրար յահեակ բազուկն ուսոյն ածեալ[12]», հակառակ իրենց*

1. Լմբ. Պա. 84, 85, 140։ — 2 Արճշ. 21, 22։ — 3. Օրբ. 80, 81։ — 4. Braun, 87։ — 5. Fleur. VII, տխ. 526։ — 6. Անդ՝ էջ 136։ — 7. Schl. Epop. III, 801։ — 8. Wil. 1899, 23. Fleur. VII, տխ. 526, 530։ — 9. Լմբ. Պա. 84։ — 10. Արճշ. 21, 22. Օրբ. 80–81։ — 11. Braun, 117-21. Fleur. VII, 42 ևն։ — 12. Տաթ. Հրց, 608։

հին սովորութեան[1]. և նոյնպէս ձախ ուսին դնել կամ վզին պատել կու տան աստիճանք ևս[2]։

3. Պատարագի պահուն կան վայրկեաններ, ուր կիսասարկաւագունք իրենց պաշտօնին բերմամբ՝ այդ հաստատուն մասանց վրայ պատահական յաւելումներ ալ կ'ընեն։ Կը տեսնենք զիրենք երբեմն եպիսկոպոսին «զխաչագլուխ գաւազանն կրել[3]». Նոյնպէս և «զմոմեղէնն[4]», երբ դեռ չկային յատուկ ջահընկալք. լուացման ջուրը բերել պատարագչին[5], բռնած «զշանիտն և զքսեստիկն[6] և զդաստառակն յուսն», ինչպէս կը գրէ իւր ձեռնադրութեան կարգը՝ Նիկաւլայոսի օրինակին մէջ[7], մինչ եպիսկոպոսօրհնէքը նորամուտ ջահընկալին կու տայ մոմեղէնն ու լուացման սպասները։ Իսկ բարսեղեան Վկայաբանութեան մէջ[8] յոյն պատարագիչն իւր գօտիէն կախած է դաստառակը մեկուսի[9], ինչ որ բնաւ չի տեսնուիր հետագայ հայ նկարուց մէջ։

Բ Շրջան։ — Թէ մինչև երբ տևեց այս տարազը, չենք գիտեր։ Բայց Տուռնֆոր 1700ին մեր առջև կը դնէ հայ կիսասարկաւագի նոր հանդերձ մը[10], Զև 115։ Հին նեղաթեզան պձղնաւորն է, վզին շուրջ սովորական նեղ զրապանով. և լանջաց ձախակողմը փոքրիկ խաչ մը։ Գօտի մ'է կապած, ինչպէս զօտևոր է հոն[11] և մինչև ցարդ[12] նաև իւր յոյն աստիճանակիցը։ Զունի բազկուրար. անուրար է հոն յոյն կիսասարկաւագն ալ, որ այժմ ուրարը կը կրէ վզին շուրջ ու լանջաց վրայ խաչաձև[13]։ Ցոյնը բացագլուխ, իսկ հայը դրած է գլխարկ մը՝ բոլորշի, վրան տափարակ ու եզերազարդով։ Ուղևորս շրջեր է Տրապիզոնէն ցկարին ու Տփղիս, և այդ շրջանակին մէջ իսկ տեսեր է այս ձևը։ Դրական ապացոյց չունինք ժխտելու համար իւր վաւերականութիւնը, որ կրնայ նաև լոկ տեղական հանգամանք ունենալ։ Կիսասարկաւագը նկարչական ձևերու մասամբ դժբախտ եղած է մեր քով, անոր համար որ իբր զատ պաշտօնեայ գոյութիւն չէ ունեցեր՝ ըսինք։ Այս պատճառաւ ալ թերևս իւր տարազն աւելի դիւրաւ փոփոխուեր է։

1. Աստ՝ 349։ — 2. Denz. II, 6, 82, 229։ — 3. Լմր. Պտ. 84, 201։ — 4. Նոյն՝ 84, 201, 203։ — 5. Նոյն՝ 84, 213։ — 6. Կոնք և կուժ. հմմտ. Ճաշեր, 84, 85։ — 7. Աստ՝ 321։ — 8. Աստ՝ 199։ — 9. Իջ 74, 142, 254, 263, 409։ — 10. Tour. III, 276։ — 11. Նոյն՝ 48։ — 12. Braun, 219 ։— 13. Անդ՝ 219։

## Դ. ՍԱՐԿԱՒԱԳԸ

*Ա. Շրջան։* — 1. *Հայ սարկաւագի յունակերպ տարազին գլխաւոր մասն էր պատմուճանը, կոչում մը՝ զոր գործածուած տեսանք թէ հայ ազնուականին եւ թէ ղեւտական քահանայից հագածին վրայ*[1]*, ինչպէս նաեւ հայ եկեղեցւոյ մէջ*[2]*։ Հեռի է ձեւով արեւմտեան յոյժ լայնաթեզան «դալմատականէն»* (dalmatica), *եպիսկոպոսական սարկաւագաց ու եպիսկոպոսաց, որ կ'երեւի մեր* 120 *Ձեւին մէջ. եւ որ յոյն կղերին անծանօթ մնացած է, ինչպէս կը հաստատէ եւ Ֆլեօրի, հիմնուելով հին նկարներու վրայ, ուր յունական պճղնաւորին թեզանիքը պրկուած են թաթից մօտ*[3]*, ինչպէս տեսանք նաեւ Շլիւմպերժերի վերոյիշեալ պատկերին մէջ, եւ աւելի լաւ՝ բարսեղեան Վկայաբանութիւն սարկաւագաց վրայ*[4]*, որոց երկուքը միայն կարճաթեզան են*[5]*։ Այս էր ուրեմն հայ սարկաւագինն ալ. եւ զոր հաւասար լեզուով մը յիշելով զայն Ուխտանէս «քահանայից եւ սարկաւագաց» վրայ*[6]*, կը զգացնէ՝ թէ հաւասարապէս գեղեցիկ էր երկու պաշտօնէից հագածն ալ. եւ թէ ստորնագոյն պաշտօնեայք չունէին զայն, որով լռութիւն է անոնց մասին։ Եւ ինչպէս ըսինք՝ գօտելոյծ էր, յիշեալ հռուեններեան ու բարսեղեան նկարուց եւ մեր յաջորդ շրջանի սարկաւագաց նման։*

*Մեզ համար քննութեան արժանի խնդիր մ'է այն՝ թէ միջին դարու յոյն սարկաւագաց եւ միւս պաշտօնէից պատմուճանին վրայ նափորտ կրելը կա՞ր նաեւ այս առաջին շրջանիս. եւ եթէ կար, մեր սարկաւագունք ալ հետեւե՞ր են անոր, եւ պահե՞ր եկեղեցական բաժանումէն վերջ եւս։ Հին արուեստը, յոյն*[7] *թէ հայ, գրականութեան հետ համր է այս մասին։ Սակայն կը լուսաւորէ զմեզ Բարսղի Վկայաբանութիւնը, քան միւսները հին, որոյ ութ տախտակաց սարկաւագունք աննափորտ են եւ ուրարաւոր, եւ լոկ երկուքը նափորտաւոր անուրար*[8]*, որոնք կրնան նաեւ արտաքին հանդերձին մէջ նկատուիլ։ Անշուշտ առաջինն է հասարակաց ու հին ոճը, համաձայն նաեւ արեւմտեանին (Ձեւ* 120*)։ Որով հակամէտ եմ հետեւցնելու՝ թէ նափորտին ընդհանրացումն ուշ պատահեր է Յունաց մէջ, եւ բաժանեալ հայ եկեղեցիէն ալ հեռի մնացեր։ Այսով կը մեկնուի թերեւս*

1. Աստ՝ 166։ — 2. Աստ՝ 314։ — 3. Fleur. VII, 84. եւն. — 4. Menol. II, 4, 78, 179, 220, 346, 355։ — 5. Անդ՝ 19, 65։ — 6. Աստ՝ 314։ — 7. Cabr. III, 1193։ — 8. Menol. 78, 142։



Զ. — ՁԵՌՆԱԴՐՈՒԹԻՒՆ ՔԱՀԱՆԱՅԱԿԱՆ (1248)

*Ըստ վենետկեան Թ. 1657 գրչագրին, որոյ մասին խօսած եմ յէջ 323։*

*նաև Ուխտանեսի ուշադրութեան կեդրոնացումը «սարկաւագաց... պայծառ պատմուճանաց» վրայ*[1]։

2. *Բայց յայտնի և էական էր սարկաւագին վրայ վակասը, որ թէ սրբազան իմաստով կը գործածուի հայ լեզուի մէջ, թարգմանելով աճարոնեան քահանայապետին* ἐπωμὶς = *ուսանոցը*[2], *և թէ արտաքնով*[3]*. մինչ ուրար կամ որարը*[4], *ծագած լտ.* orarium (os = *բերան, երես արմատէն*), *յն.* ὠράριον *և աս. ուրար բառէն*[5], *դեռ նոյնին արտաքին նշանակութիւնը միայն ունի, որ էր անձեռոց՝ բերանն ու քրտունքը սրբելու, զոր կը գործածէին Հռովմայեցիք*[6]*. և որ ուրարի պէս երկայն նեղ ու խորշաւոր է հին քանդակի մ'ու նկարի մը մէջ, ձգուած ձախ ուսին վրայ*[7]*։ Նախ արեւելքի մէջ կը դառնայ սրբազան հանդերձի մասն, առաջին անգամ յիշուած Լաւոդիկեայ ժողովէն* (*Բ կէս Դ դարու*), *որ կիսասարկաւագին և միւս փոքր աստիճանաւորաց կ'արգելու անոր գործածութիւնը*[8]*։ Ցետոյ ունինք Ոսկեբերանի վերագրուած ճառի մը վկայութիւնը. «Ամենեքեան գիտէք, կ'ըսէ,... զպաշտօնեայս սատուածային քահանայագործութեանն, նմանեալ հրեշտակաց թևոցն՝ նուրբ կտաւովն* (ὀθόνη) *ի վերայ ահեակ ուսոյն ունելով», որ կը գոչէ. «Մի՛ ոք յերախայից» և այլն*[9]*։ Ցայտնի է հոս, Դ դարու վերջը, ուրարին դեռ նախնական վիճակը, որ է թեթև կտաւ մը՝ թեանման ծփուն ծայրերով։ Եւ իրաւամբ կը դիտէ Վիլպերտ՝ թէ սարկաւագն իբր սպասաւոր սեղանոյն, այդպիսի ուրարը կը գործածէր մաքրութեան*[10]*։*

*Սոյն սրամիտ խուզարկուիս հետ կ'աւադենք՝ որ չկան քրիստոնէական հնագոյն պատկերներ, որպէս զի կարենայինք հետեցնել՝ թէ այդ «կտաւը» երբ փոխուեցաւ՝ Ցունաց ու մեր մէջ՝ ողորկ ու նեղ պաստառին, որ կ'երևի արդէն վերոյիշեալ Ժ—ԺԱ դարուց բիւզանդական սարկաւագաց վրայ։ Մեր* 120 *Ջևի արևմտեան սարկաւագունք չեն ցուցներ իրենց ուրարը, զոր սովորաբար պատմուճանին ներքև կը կրէին՝ հակառակ արևելեան ոճին. և Բրագայի* 563*ի ժողովը հրամայեց իրենց սարկաւագաց՝ դրսէն առնուլ զայն, որպէս զի որոշուէին կիսասարկաւագներէն*[11]*։ Իսկ բարսեղեան սարկաւագաց ուրարը շատ նեղ է, և լանջաց հանդէպ ու ծնգէն վար խաչազարդ։*

3. *Եւ որովհետև սարկաւագը կը նկատենք հոս եկեղեցւոյ մէջ, պաշտամանց պահուն պիտի տեսնենք անոր ձեռքը մերթ Աւետարանը՝*

1. Աստ՝ 314։ — 2. Ելք, ԻԸ, 4, 7։ — 3. Կոչ. ընծ. 31. Պամ. Աղ. 159։ — 4. Եւս. Եկ. 589. և Հնդ. ամս. 1913, 348։ — 5. Հ. Վարդանեան ի Հնդ. ամս. 1913, 348. Գթրճ. Պար. 740։ — 6. Cabr. V, 674. Braun, 122. Wil. 1899, 18-19։ — 7. Wil. 6, 17։ — 8. Նոյն՝ 28։ — 9. Ոսկ. Թղթ. Բ, 690։ — 10. Wil. 21-22։ — 11. Նոյն՝ 28։

*զոր կը կարդայ՝ ըստ վկայութեան ս. Հերոնիմոսի[1]. և մերթ բու-րուառը՝ որով կը խնկարկէ, յիշուած նաև մեր ԺԱ դարու մաշտոցէն և յաջորդներէն, և որ ընդունուեր է Եկեղեցիէն իբր Դ դարուն, հին կտակարանի ազդեցութեան ներքև[2]: Այդ երկուքն ալ կ'երևին նաև մեր հռաւեննեան* 120 *Ջևին մէջ:*

4. *Աւետարանը կը բռնէին վարշամակով[3] մը, ինչպէս կ'երևի Մլքէի աւետարանի նկարուց մէջ՝* 902*էն (ի Ս. Ղազար), երկու աւետարանչայ ձեռքը, որոնք գունաւոր զարդարուն պաստառներ են: Հռովմայեցւոց և Յունաց քով մեծարանաց նշան էր՝ ծածկած պա-հել ձեռները վերարկուին ներքև. և նոյն ձևով կ'ընդունէին պալա-տականք կայսերական պարգևներն ալ: Այս սովորութիւնը մտաւ նաև եկեղեցւոյ մէջ, և Լաւոդիկեայ ժողովը նոյնը պատուիրեց պաշտօ-նէից՝ սուրբ անօթոց դպչելու պահուն, ինչ որ կը տեսնուի միշտ յոյն և լատին հին նկարներու մէջ, մինչև որ Թ դարուն սկսաւ վարշամակն ալ գործածուիլ, առաւելապէս Յունաց քով[4], շարունա-կելով նախկին ոճն ալ, ինչպէս կ'երևի նաև մեր* 119, 125, 126, 127, 128 *Ջևերու վրայ, և նոյն իսկ* 84*ին[5]:*

5. *Սարկաւագի բռնած սպասուց մին ալ էր քշոցը, որոյ ծա-գումն հեթանոսական, և ծանօթ Եգիպտացւոց, Ասորեստանեայց և այլ հին ազգերու, յետոյ եկեղեցւոյ ևս անցաւ: Եւ իւր նիւթը, գոր-ծածողք ու նպատակը քաջայայտ են Առաք. Սահմանադրութեանց (Դ դարու) հետագայ վկայութեան մէջ. «Իսկ երկուք ի սարկաւագացն աստի և անտի սեղանոյն կալցին քշոց ի պղնձի թիթղանց կամ ի փետրոց սիրամարգի կամ ի քողոյ, և հանդարտիկ քշեսցեն զմանր մանր անասնիկսն որ թռչիցին, զի մի՛ ի բաժակսն անկանիցին[6]»: Ուխտանէս կը յիշէ հայրապետանոցին «զքշոցս» Է դարէն[7]. և որ յետ Ըին արդէն միօրինակ մետաղեայ է, և ձայնահան կամ զան-գակաւոր, ուսկից Օձնեցւոյն ընծայուած ճառի մը բացատրութիւնս, «քշոցացն հարուածն[8]», որ նուագարանաց յատուկ է. և արդէն ծած-կուած սերովբէական կերպարանօք, որուն կ'ակնարկէ ՅՀ. կաթողի-կոս՝ ըսելով. «վեցթևեան երագաշարժ գործեօք իմն զօրհնաբանա-կանսն ըստ պիտոյս բաժանեսջիք[9]». և ըստ ԺԱ դարու մաշտոցին՝ նորակերտ եկեղեցւոյ օծանող եպիսկոպոսին քով կեցած են «սար-կաւագունքն՝ քշոցիւք և բուրուառօք»:*

1. Arm. 311. — 2. Cabr. V, 6-7. — 3. Նար. 380. — 4. Fleur. VIII, 19-21, 22. — 5. Աստ՝ 253. — 6. Գ.Թրճ. Պտր. 33. հմմտ. «լու մի կամ ճանճ... քշել հանել». Ագթ. 385. — 7. Ուխտ. Բ, 66. — 8. Օձն. 141. — 9. ՅՀ. կթղ. 455.

1. Բ Շրջան։ — Ճոխ է սա նկարագրութեամբ ու պատկերներով։ Լամբրոնացին պաշտօնէից կը զգեցնէ նախ պատմուճան բեհզանեայ և գօտեւորէ[1], զոր Մխիթար Գոշ կը սահմանէ պճղնաւոր հոլանի առանց գօտւոյ[2]. Արճիշեցին՝ պատմուճան առանց գօտւոյ[3]. և Սիւնեաց պատմիչը՝ «հալաւ ագանիլ, հոլանի կալ[4]»։ Նիկալայոսեան գրչագիրը[5] հանդերձ կը կոչէ՝ զգեստուց օրհնութեան մէջ, ինչպէս



Ձև 112. Ս. Ստեփանոս ըստ պահարանի կոստանդնի (1293)

Սսոյ 1345ի մաշտոցն ալ «հանդերձ հոլանի». և Գր. Մարաշեցին՝ ադաբողոն[6]։ իսկ եպիսկոպոսօրհնէքը «զգեստս տեղհար» (լտ. talaris = պճղնաւոր). մինչ կաթողիկոսօրհնէքը, ԺԲ դարու, կը ճշդէ անոր գոյնն ալ. «հոլանի գօտելոյծ սպիտակ հանդերձիւ». իսկ 1248ի Ջեռ. տետրակը՝ լոկ «հոլանի և գօտելոյծ». ինչպէս յոյն սարկաւագացն ալ «պատմուճան հոլանի և առանց գօտւոյ» կը կոչէ Տաթևացին[7]։

Մեր նկարուց մէջ պատմուճանս ունի ինչ ինչ զանազանութիւն։ 112 Ձևը, զոր հանած իմ Կոստանդնի պահարանէն[8], կը գծէ նեղթեզան, որ թերևս շրջանիս մէջ նախնականն է՝ մնացած հնէն.

1. Լմբ. Պտ. 84, 85, 140, 149։ — 2. Դատ. Մխ։ — 3. Արճշ. 21, 22։ — 4. Օրբ. 80։ — 5. Աստ՝ 321։ — 6. Աստ՝ 318։ — 7. Տաթ. Հրց. 608. — 8. Աստ՝ 234։

և հաւանօրէն այս հանգամանքին կ'ակնարկէ Լամբրոնացին ևս՝ երբ կ'ըսէ սարկաւագաց համար. «Թեզանեօք պատրաստ առ ի գործ ունին զձեռս[1]», որ սոյն մասանց ամփոփմամբ կը լինի։ Բայց ԺԳ դարուն չափաւոր լայնաթեզանն ալ կը սկսի երևիլ արևելակողմը՝ մեր 1248ի եռագունին մէջ[2], որ երթալով իշխող կը դառնայ, ինչպէս կը վկայեն մեր 113 Ձեռ՝ վենետկեան 1356ի ճաշոցէն, և 121 Ձեռ 1263ին՝ ՑՀ. արքայեղբօր աւետարանէն[3]։ Սպիտակ է անոր գոյնն այս երկու պատկերաց մէջ, հաստատուած նաև Նիկաւլայոսեանէն, «զսպիտակ կտաւեայ հանդերձս քոց սպասաւորաց սուրբ քո աջովդ սրբեա... վայելչանալ սովաւ քահանայից և սարկաւագաց»։ Բայց մեր եռագունին մէջ երեք զատ գոյներով է այն՝ սարկաւագաց վրայ. ապացոյց՝ թէ սպիտակը բացարձակ չէր։

Այս և 113 Ձեռ ցոյց կու տան նաև գրապանը, բոլորովին նմանութիւն ահարոնեանին[4], և որ միայն այս շրջանիս յատուկ չի թուիր[5]։ Նեղ է և անհաւասար ձևով, և գունով անջատ պատմուճանէն. մին դեղին, և միւսն ոսկի՝ քարերով. գրապանին նման են ստորոտներն ալ։ Իսկ 112 և 121 Ձեռերու մէջ բնաւ չկայ գրապան։ — 121 Ձեռի չորս սարկաւագներէն երկու երիցագոյնք ունին նաև ոսկեկիտուած բազկազարդը, զգալի մեր 112 Ձեռին մէջ և ասորի պաշտօնէից պատմուճանաց վրայ ևս[6] (առանց գրապանի), ինչպէս էր և ժամանակիս աշխարհականացը[7]։

2. Ուրարը կայ միշտ ու ծանօթ է հիմայ այս անուամբ[8] կամ որար[9], զոր ուրիշ ալ կը կոչէ Լամբրոնացին. «զվակասն՝ որ այժմ կոչի առ մեզ ուսանոց», կամ «զվակասն ուսանոց[10]»։ Անսովոր է կոչումն Ոսկեբերանի ու Բարսղի պատարագաց՝ Նիկաւլայոսեան գըրչագրին մէջ. սարկաւագը, կ'ըսէ, «վերացուցանէ զլայնափորան և ասէ. Կացցուք բարիոք» և այլն, զոր Մոնակոյի օրինակը 1427էն՝ զլայնափորանն կը գրէ[11], մինչ Սիւնեաց պատմիչը փակեղն կ'ըսէ[12]։ Եւ բոլորն ալ զայն կը դնեն «զահեակ ուսովն» ըստ հնոյն, համաձայն ձեռնադրութեան կարգաց 1248ի[13] և այլոց, ու մեր Ձեռերուն և ասորական ծիսարանաց[14], որոցմէ կը զարտուղի 112 Ձեռ։ Շատ նեղ է տակաւին եռագունին և 121 Ձեռի մէջ, բարսեղեան սարկա-

1. Լմբ. Պտ. 141։ — 2. Աստ՝ 323։ — 3. Աստ՝ 257։ — 4. «Ջօձիսն գրապանաւ արարեալ՝ բոլորակ ձևեցես շուրջանակի՝ գործ անկուածոյ». Ելք, ԻԸ, 32. ԼԹ, 21։ — 5. Հմմտ. սոտ՝ 328։ — 6. Fleur. VII, տխ. 526։ — 7. Աստ՝ 267. ես։ — 8. Լմբ. Պտ. 84, 86. Մրշ. սոտ՝ 318. Արճշ. 21։ — 9. Գատ. Մխե։ — 10. Լմբ. Պտ. 147, 149։ — 11. Գծրճ. Պտր. 197, 371։ — 12. Օրբ. 80։ — 13. Աստ՝ 323։ — 14. Denz. II, 6, 86, 233, 265։

ւագաց կրածին նման. իսկ նոյն ԺԳ դարուն սկսած է արդէն լայնանալ, ըստ 112 և 113 Ձեռրու։ Լամբրոնացին զայն ընդհանուր կերպով կը սահմանէ՝ «ի զանազան նիւթոց նկարակերպեալ[1]», որուն կը վկայեն մեր Ձեռքն ալ. ասղնագործ (112), կարմիր՝ ոսկի զարդերով (121), այլազան գոյներով (եռագոյնն ու 113), և ծոպաւոր (121, 113)։ Հին սովորոյթ, որով Տոլետոյի ժողովը 633ին կ'արգելուր սարկաւագաց կրել զայն «երանգօք ինչ կամ ոսկւով զարդարեալ[2]»։

3. Մեր 112 Ձեռն աջ ուսէն կը կախէ ուրարը, որովհետև նորամուտ սովորութեամբ մը ձախ բազկին ալ կ'անցնէ բազկուրարը, արդիւնք լատինական ազդեցութեան, և Կիլիկիայէն կը սկսի։ Բայց ուրարին տեղափոխութիւնս կամ ժամանակի ու տեղւոյ մ'է յատուկ, և կամ քանդակողին սխալը. վասն զի 114 տարի վերջ Տաթևացին ևս դեռ կը յիշէ զայն սարկաւագին վրայ և հին կողմէն. «ուրարն և բազպանն ի մին կողմն ձախոյ[3]». ուր բազպանը զատ է բազկուրարէն, և այժմեան նշանակածն է, ինչպէս պիտի տեսնենք քահանայից վրայ ևս. և յիշուած նաև եպիսկոպոսօրհնէից մէջ՝ թէ նախասարկաւագն «ունիցի բազպան ի ձեռին». որով ուրեմն ԺԳ դարէն սկսեր է։

4. Սրբազան հանդերձից հետ կօշկի փոփոխութիւնն ալ զգացուց Մաշկեւորը[4]։ Մեր պատկերաց մէջ կը ծածկէ ամբողջ թաթը (եռագոյնը և Ձև 113). և երկրորդինը կարմիր ու զարդարուն է, վերին երեսի կեդրոնն ու ներբանին շուրջ ոսկի կետերով ծածկուած։

5. Մեր Ձեռրու մէջ բացագլուխ է պաշտօնեայս, ինչպէս կը վկայեն նաև Լամբրոնացին[5] և Արճիշեցին[6] բոլոր եկեղեցականաց համար, Օրբելեանը՝ յատկապէս սարկաւագաց[7], և Տաթևացին՝ թէ սարկաւագը պարտի բանալ գլուխը՝ «յորժամ քարոզէ կամ խնկարկէ կամ ընթեռնու[8]»։ Նոյնպէս է պաշտօնեայս նաև յոյն, ասորի և լատին նկարուց մէջ առ հասարակ։

6. Սարկաւագին սեպհական սպասուց վրայ աւելի ընդարձակ տեղեկութիւն ունինք հիմայ մեր քով։ Նա կը շարունակէ անընդհատ իւր հին պաշտօնը, որ է, «աւետարան կարդալ» և «խունկ ածել» կամ «խունկ ծխել[9]»։ Եւ երբ եպիսկոպոսը զգեստաւորած եկեղեցի կը մտնէր պատարագի, «սարկաւագքն ունեցին (իւրաքանչիւրը) զաւետարանն և զբուրվառն», կ'ըսէ Լամբրոնացին[10]. և եպիսկո

1. Լմբ. Պտ. 147։ — 2. Կանոն խ։ — 3. Քրզ. ամր. 171։ — 4. Աստ՝ 318։ — 5. Լմբ. Պտ. 142, 145։ — 6. Արճշ. 26։ — 7. Օրբ. 80։ — 8. Տաթ. Հրց. 635։ — 9. Լմբ. Պտ. 84. Գատ. Միխ։ — 10. Լմբ. Պտ. 201։

*պօօրհնէքը՝ «ի գիրկս գաւազանանն սուրբ և զբուրվառն խնկօք». այսինքն երկուքը միանգամայն կրելով, մին իբր զարդ՝ բռնած ձախ ձեռքով, և միւսը գործածելու աջով, ինչպէս կ՚ըսէ 1248ի օրինակը. «խունկ յաջոյ ձեռին և բուրվառ», և կը վկայեն բոլոր նկարները։*



Զև 113. Ս. Ստեփ. (1356)

*Բուրվառին ազգային պատկերներ ալ ունինք հիմայ, պատուանդանաւոր անխուփ սկահի նմանութեամբ* (Զև 112, 113), *յունականաց պէս*[1]։ *Ինչպէս հին ժամանակ* (Զև 120), *նաև այժմ զայն կը վերցնեն երեք ամբառնալիք*[2] *կամ երեք ասեղունք*[3] *կամ չուանք բառնալեաց*[4] *կամ երեք չուանք*[5], *զորս իրարու կը միացնէր շուշանն*[6] *կամ վերին ագոյցն*[7], *որոյ վերև կար «ըմբռնելիքն ի վերին ծայրքն*[8]*». և ասոր համեմատութեամբ՝ հրոյ ընդունարանը կը կոչուէր ներքին կառոյց*[9]։ *Իսկ լարերը զարդարուած էին մանր զանգակներով, զոր կը բամբասէին Վրացիք, ու Մխիթար Գոշ կ՚արդարացնէր*[10]*. և միշտ հաստատուն կը մնան*[11], *լինելով առաքելոց թուով*[12]։ *Զանգակաւոր բուրվառ մը տեսած եմ նաև Վենետկոյ Ս. Մարկոսի մէջ քանդակի մը վրայ՝ ԺԵ դարէն, և ուրիշներ՝ Յունաց և Ասորւոց արդի սովորութեան մէջ, և եթովպական մը՝ զոր կը պահէ Հռովմայ Կիրքերեան թանգարանը. այնքան ընդհանրացած էր ոճս։ Ն. Մառ Անւոյ մէջ գտաւ արուրեայ քանդակազարդ բուրվառներ*[13]*. և Գար. վ. Յովսեփեան հրատարակեց «դամբարի» զոյգ մը ձևեր*[14], *որոց ճիշդ նմանները յառաջ կը բերէ Լկլերկ իբրև բիւզանդական բուրվառներ*[15]։

1. Cabr. V, 30։ — 2. Օձն. 141։ — 3. Խրհ. Եկ։ — 4. Վրդ. Սաղ. Ճխ։ — 5. Տաթ. Հրց. 645։ — 6. Խրհ. Եկ։ — 7. Վրդ. Սաղ. Ճխ. Տաթ. Հրց. 645։ — 8. Տաթ. անդ։ — 9. Վրդ. և Տաթ. անդ։ — 10. Գոշ՝ Թղթ. 61։ — 11. Տաթ. Հրց. 645։ — 12. Հմմտ. Տաթ. արր. 431, և Հրց. 645։ — 13. Արար. 1911, 661-2։ — 14. Տրգ. 1909, 8։ — 15. Cabr. V, 30։

7. Աւետարանին հետ կապուած կը մնայ միշտ նախկին վարշամակը, դաստառակը[1] կամ լայքը[2], բայց փոփոխութեամբ մը։ Մեր 113 Ձեռին մէջ կարմրագոյն կիտազարդ մեծ պաստառ մ'է, ձգուած ձախ ուսին ու բազկին վրայ, որ նոյն ձեւով Լատինաց քով ալ կը յիշուի ու կը տեսնուի[3]. և որով մեր սարկաւագը բռնած է խնկարկելու պահուն՝ զմրեթաւոր Թանկագին տուփ մը մեծ, որ հասարակ խնկանոցէ վեր բան մը կը թուի. Թերևս սրբոց նշխարատուփ[4]։ Իրական հայ կեանքէ է Ձեռ, և դաստառակը յիշատակուած նաև Ստեփ. Սիւնեցւոյն վերագրուած ճառի մը մէջ, որ յետ ընթերցման աւետարանին դնելով անոր «սաւառնումն անշշունչ» կամ վերամբարձումը, կը յարէ. «Այս է բան մարդացելոյն, որպէս ի ձեռն զգեստու ի վերայ ուսոյն շուշփայականի[5] հանդերձիւքն բերելով յինքեան խոսող՝ ըստ աստուածընկալն Պաւղոսի, զոր պարտ էր երկնից ընդունել[6]»։ Մեր Ձեռին աղբիւր ճաշոցն ունի ուրիշ Ստեփանոս մ'ալ, շատ աւելի փոքր վարշամակով մը՝ ձգուած ձախ ձեռքին վրայ, որով հաւանօրէն խնկանոց մ'է բռնած, բաժականման, ու կոնաձև խփով[7]։ Այսպէս ամէն սրբութեանց հետ կը գործածուէր այս լաթը։

8. Քշոցը մի և նոյն է մնացեր։ Ս. Ղազարու աւետարանի մը մէջ՝ 1200էն՝ բոլորակ է, և երեսը ծածկուած ճառագայթներով։ Բայց չի ցուցներ հոս, գուցէ գծագրին անկատարութենէն, զանգակիկները՝ զորս կը շարունակէ պահել, յայտնապէս յիշատակուած ու պաշտպանուած Մխ. Գոշէ[8]. որոյ համար և Շնորհալին զայն կը կոչէ «ճենչող քշոցանին[9]»։ 1279ին Յովհաննավանից եկեղեցւոյն կը նուիրեն «քշոցս արծաթիս պատեալ ոսկւով[10]». և 1352էն կանուխ գրուած գրչագրի մը մէջ կը յիշուի «քշոցն և ակունքն» որ կը պճնէին զայն[11]։ Վենետկեան 1444ի ճաշոցին մէջ ևս[12] գծուած է այն, շրջանակուած գնդաձև խիտ զանգակիկներով, և անպատկեր ափսէին երեսին գրուած «սբ — սբ սբ տր — զաւրութ»։ Բայց ասոր հետ կայ սերովբէակերպն ալ ըստ Տաթևացւոյն, «քշոց ի սերովբէից տիպն՝ վեց վեց թեօք հովանացեալ» երկու երեսաց վրայ. իր ներքև է ըմբռնելիքն՝ մետաղեայ խողովակաձև, և «ի խոնարհ՝ ունելիքն ի փայտէ[13]» կամ բունը։

9. Փոքր աստիճանաւորաց չգոյութենէն՝ մեր եռագունին և 121

1. Ցշտկր. 1335ի ճաշոցին Ս. Ղազարու։ — 2. Ցշտկր. 1439ի՝ ի Տաշ. Ցուց. 50։ — 3. Fleur. VIII, 21, 23. Braun, 206։ — 4. Հմմտ. Ձե 114։ — 5. Ասոր. շուշփայականք = քող, ծածկոյթ գլխոյ. Hüb. 314։ — 6. Արար. 1915, 637։ — 7. Էջ 455։ — 8. Գոշ՝ Թղթ. 61։ — 9. Շնրհ. Եղեւ. — 10. Ալիշ. 170։ — 11. Գ.Քրճ. Պատ. 746։ — 12. Էջ 473։ — 13. Քրզ. ձմր. 564։

*Ջևի մէջ կը տեսնենք սարկաւագները մոմակիր դարձած՝ ձեռնադրութեան պահուն, ինչ որ նոյնպէս կ'ենթադրէ նաև ուրիշ պաշտամանց մէջ։*

*Գ Շրջան։ — Մեր չորս Ջևերով,* 123, 114, 115, 116, *ԺԷ–ԺԹ դարերու մէջ ենք հոս, ուր հայ ազգը վայրավատին օտար երկիրներ, իւր սրբազան հանդերձն ալ յեղաշրջման և անհաւասարութեան տագնապ մը կ'անցնէ բոլոր պաշտօնէից վրայ։*

1. *Սարկաւագը նախորդ շրջաններուն բացագլուխ,* 123 *Ջևին մէջ իւր գագաթին վրայ, զոր թրքակերպ գերծած է հիմայ, ցոյց կու տայ ուրիշ նորութիւն մ'ալ. շագանակագոյն կիսագնդաձև գդակ մը։* 1641*ին գրուած այս գրչագրիս վայրը յայտնի չէ. սակայն գդակս կը յիշեցնէ լատինական դդմիկը* (zucchetto), *որ արևմտեայց քով կը սկսի ԺԳ դարուն*[1]*. և որ հեռի չէ նաև արևելեան սովորութենէն։ Իսկ Տուռնֆոր՝* 1700*ին՝ կիսասարկաւագին նման և քան անորը ճոխ խոյր մը կը դնէ սարկաւագի գլխին, յատուկ կարնոյ կողմերուն* (*Ջև* 115), *որոյ համար և անմիաբան միւսին հետ, ինչպէս և* 116 *Ջևին՝* 1730*էն, գծուած ի Կեօզլով, որոյ սարկաւագը կը շարունակէ գլխաբաց մնալ, ինչպէս կը ներկայացնէ նոյն ուղևորը նաև յոյն սարկաւագը*[2]*. մինչ անոր գծած յոյն քահանային գլխարկը*[3] *շատ կը նմանի մեր սարկաւագի դրածին. այս տարբերութեամբ՝ որ մերին կողերն ուղիղ են, և միւսին՝ դէպ ի վեր լայնացած։ Դէպ ի կէս ԺԸ դարու յիշեալ խոյրը կը փոխանակէ և կ'ընդհանրանայ քահանայականը, զոր կը տեսնեմ նաև ս. Ստեփանոսի գլխին՝* 1761*ին ի Կոստանդնուպոլիս գրուած գրապանակի մը մէջ, և յետոյ Կիլիկիոյ Միքայէլ կաթողիկոսի* 1837*ի կոնդակին* (*երկուքն ալ ի Ս. Ղազար*) *և այլոց մէջ. կոնդակի հետաքրքրական պատկերը յառաջ կը բերեմ հոս, Ջև* 114։

2. *Պատմուճանը նեղաթեզան է* 123 *և* 115 *Ջևերու մէջ, և չափաւոր լայն՝* 116*ին, որ քան միւսերը կարճ ալ է, և թեզանեաց ծայրն ու քղանցը զարդարուն։* 123*ի գրապանը լայնացած՝ կը ծածկէ ուսերը և կ'իջնէ լանջաց վրայ, ինչպէս և վենետկեան* 1704*ի մաշտոցին մէկ նկարին մէջ. իսկ* 115*ին և* 116*ին շատ նեղ մնացած են.* 115*ին կը կրէ մեծ խաչ մ'ալ թիկունքին։* 123*ին գօտելոյծ է տակաւին, իսկ միւս երկուքը գօտևոր, մինչ հոլանի է յոյն սարկաւագն ալ*[4]*, ինչպէս յետոյ և մեր* 114*ինը։*

1. Braun, 164։ — 2. Tour. I, 149։ — 3. Անդ։ — 4. Նոյն՝ 140։

3. *Տուռնֆոր ալ ուսին անցուցած է հայ և յոյն սարկաւագաց ուրարը. առաջնոյն՝ վրան խաչիկով մը։ Իրական էր տեղափոխութիւնդ թէ սխալման արդիւնք, դիւրին չէ ճշդել։ Իսկ* 123 *և* 116 *Ձևերը բնաւ ուրար չունին, նոյնպէս և մեր* 118 *Ձևի աղբիւր Մաշտոցին* (1704*ի*) *մէկ նկարին սարկաւագները, զորս դժուարաւ կարելի է մոռացութեան վերագրել երեք զանազան նկարչաց կողմանէ, քան թէ սովորութենէ առժամանակեայ դադարման մը. և որ դեռ*




Ձև 114. *Ս. Ստեփանոս ըստ կոնդակին Միքայելի* (1837)

*անտես վերոյիշեալ* 1761*ի գրապանակին մէջ, դարձեալ հաստատուած կը գտնենք Միքայէլ կաթողիկոսի յիշեալ կոնդակին վրայ և ձախ ուսին, ու շատ լայն։*

4. *Մեր ներկայ ծիսական խառնակութեան մէջ զարմանալի չէ՝*

որ այդ կոնդակին Ստեփանոսի վրայ տեսնենք ուրիշ նորութիւն մը. ուսանոց մը, որ կը ծածկէ ուսերը. յետակողմէն լայն, կ'իջնէ թի-կանց կէսը. իսկ առաջակողմէն երկար ու նեղ, որով նախասարկա-ւագը բռնած է նշխարատուփ մը. և ունի խաչեր ուսոց և առաջա-կողման վրայ, և ծոպեր։ Կը յիշեցնէ մեր 102 Ձևի տիկնոջ կրածը, զոր հրատարակիչը համեմատեց արևմտեան «կրօնաւորական վա-կասին» հետ[1], որ բնականապէս մերին ալ աղբիւրն է եղեր, հարկաւ աւելի կանոնիկ քան մեր նկարը, և Կիլիկիոյ կողմերուն յատուկ։

5. Փոխան հին կօշկին՝ հողաթափ կը կրեն յիշեալ մաշտոցին անտիպ պատկերի սարկաւագները, որ կը ծածկէ թաթից առաջա-կողմը, և բաց կը թողու յետակողմը։

6. Բուրվառը փոփոխութիւն մ'է կրած հիմայ, և մեր 123, 118, 116 և 114 Ձևերու մէջ, և տուռնֆորեան յոյն սարկաւա-գին ձեռքը՝ յաւելուած ունի խուփ մ'ալ, որ կը գնդաձևէ զայն։ Նաև զանգակիկները շատ զգալի են հոս։ Եւ խնկարկուն՝ բուրվառի հետ վառած մոմ մ'է բռնած (Ձև 123) փոխանակ հին աւետարա-նին կամ սրբութեան մը, թէև այս ալ կ'երևի տակաւին (Ձև 114)։

7. Վերջապէս քշոցը 1704ի մաշտոցին յիշեալ պատկերին մէջ առած է վերջնական ձև մը, վեցթևեան սերովբէից կերպարանօք և սովորական զանգակիկներով, ինչպէս կ'երևի և մեր 115 Ձևին մէջ։

## Ե. ՔԱՀԱՆԱՅՆ

Ա. Շրջան։ — Շատ երկար է շրջանս, աւետարանի քարոզու-թենէն մինչև ԺԲ դար. և քահանայական զգեստն[2] կամ պատարագի զգեստք[3] կամ ծածկոյթ պատարագամատուցի[4] որոշ և հաստատուն նկարագիր մ'ունի հոս, որոյ ազգային գլխաւոր աղբիւրն է Լամ-բրոնացւոյն պատարագամեկնիչը, շարադրուած 1177ին։ Իւր խոր-հրդատետրին սկիզբը կայ զգեստաւորման ծանօթ աղօթքը[5], որոյ բովանդակութիւնն անմիաբան է մեկնչին գործին ու շրջանիս սովո-րութեան հետ, և յետսամուտ. ապացոյց՝ որ վարդապետը զայն չէ մեկներ, և երկրորդ՝ հոն յիշուած եպիսկոպոսական խոյրը (1203ին հայացած) ու գօտին դեռ չկային մեկնութեան ժամանակ, ինչպէս պիտի տեսնենք։ Բայց անտարակոյս ԺԳ դարուն է, երբ դեռ սափ-

1. Աստ՝ 286։ — 2. Շնրհ. Ընդհ. 53. Լմբ. Պտ. 89, 98։ — 3. Շնրհ. Ընդհ. 52։ — 4. Նոյն՝ 54։ — 5. Աստ՝ 321։

պուած էր գրել, «զխոյրն դնէ եպիսկոպոսն», զի քահանայականը դէպ ի նոյն դարու վերջը միայն կ'երևի, ինչպէս պիտի ցուցնեմ։

1. Յունական և արևմտեան բոլոր հին նկարները պատարագչի տարազով՝ բացագլուխ են, ի յարգանս առաքելական յայտնի պատուիրանին[1], ինչպէս կ'երևի նաև մեր հաւեննեան 120 Ձեին մէջ։ Ասոնք կը համոզեն զմեզ՝ թէ նոյնպէս վարուեր է յունազգեստ հայ կղերն ալ. և ամբողջ շրջանիս համար կը զօրէ Տարսոնի առաջնորդին վկայութիւնը՝ թէ «բացագլուխ զխորհրդական պաշտօնն կատարեն ժառանգաւորք եկեղեցւոյ[2]», ինչպէս արդէն տեսանք շրջանիս սարկաւագաց վրայ եւս[3]։ Եւ եթէ դէպ ի շրջանիս վերջերը կը սկսի վանական քահանայից կնկղով պատարագելու գեղծումը, այն հետևանքն էր ամբողջ վանական տարազով մատչելուն ի սեղան, ինչպէս նկատեցինք[4]։

2. Գեղեցիկ ու նեղաթեզան պատմուճանը սեպհական էր և քահանայից՝ Ուխտանեսի վկայութեան մէջ[5]. և նոյնը՝ պճղնաւոր պատմուճան կամ երախ կոչմամբ վերագրուած է քահանայից նաև Լամբրոնացիէն[6], զոր կաթողիկոսօրհնէքն ագանելիք կ'ըսէ։ Եւ կարևոր պարագայ մը, «առանց թեզանեաց» կը նկարագրէ զայն Տարսոնի առաջնորդը[7],—հակառակ սովորակարգեալ պաշտօնէից թեզանաւորին,— ինչ որ անծանօթ է յարևմուտս և անոնց հնախօսից, ու կասկածելի մեր քով անգամ. վասն զի բարսեղեան Վկայաբանութեան մէջ ալ քահանայից պատմուճանք թեզանաւոր են միշտ, և թեզանիքը սովորաբար չափաւոր լայն ու կարճ, կը հասնին մինչև նախաբազկին կէսը[8]։ Թերևս այս իմաստով կը հասկնայ Լամբրոնացին անթեզանը[9], զոր աւելի մանրամասն պիտի տեսնենք եպիսկոպոսին վրայ։

3. Արևմտեայց քով՝ սկսեալ Է դարէն՝ կան վկայութիւնք պատարագի գօտւոյ մասին[10]։ Նոյնը կար և Յունաց մէջ, ու կ'երևի յիշեալ Վկայաբանութեան քահանայից վրայ[11]։ Բայց Լամբրոնացին յայտնապէս գօտեկոյծ կը դնէ քահանայական պատմուճանը[12], համեմատելով եկեղեցին «ի պաղատ թագաւորի», ուր նա գօտելոյծ կը բազմի, և պաշտօնեայք գօտեւոր կը մտնեն անոր քով. այսպէս և բարձրաստիճան կարգաւորք անգօտի են, կ'ըսէ, «իբրև իշխանք ի վերայ ժողովրդեանն[13]»։ Իսկ այս ոճն ու գաղափարը Բիւզանդիոնէն կու

1. Ա Կորնթ. ԺԱ, 4։ — 2. Լմբ. Պտ. 145։ — 3. Անդ՝ 353։ — 4. Անդ՝ 318։ — 5. Անդ՝ 348։ — 6. Լմբ. Պտ. 147. անդ՝ 246։ — 7. Լմբ. Պտ. 140. 141։ — 8. Menol. 38, 121, 142, 186, 204, 306։ — 9. Հմմտ. անդ՝ յօդ. Է, 2։ — 10. Fleur. VII, 29–30. Cabr. II, 2793։ — 11. Menol. 142, 186, 204, 353 ևն։ — 12. Լմբ. Պտ. 85, 140։ — 13. Նոյն՝ 85։

*գար[1], որով ուրեմն եկեղեցականաց գօտեւորութիւնն ալ անկից էր, և հնարուած յետ Վկայաբանութեան։*

4. *Վակաւր կամ ուրարը, որոյ կոչմանց մասին խօսեցանք[2], և զոր Մխ. Գոշ փակեղն կ'անուանէ քահանայից վրայ[3] հակադրութեամբ սարկաւագի ուրարին[4], տարբեր դիրք մ'ունի քահանային վրայ. կը ձգուի «զերկոսին ուսովքն[5]» կամ «ի վերայ երկոցունց ուսոցն[6]», անմիջապէս պատմուճանին վրայ[7], և երկու ծայրերը կը կախէ լանջքէն վար, ինչպէս կ'երևի բոլոր հին նկարներու մէջ. և այս պատճառաւ յարմարաբար կոչուած նաև վակաս յանչաց կամ վակաս յանչանաց[8]։ Ցիշեալ Վկայաբանութեան քահանայից կրածը նեղ է, պճղնաւոր. սովորաբար անջատ[9], և մերթ միաձոյլ[10], թերևս իրարու խառնուած. ծայրերը ծոպաւոր, անոր մօտ խաչ մը, և այլ պէսպէս զարդեր։ Իւր ծագումը՝ սարկաւագի կրածին ծագման[11] հետ հաւասարեցնողներ կան։ Բայց դժուար է համոզուիլ՝ որ սարկաւագի երբեմն ծառայական անձեռոցը՝ նաև ծառայութիւն ընդունող բարձրագոյն կարգաւորաց անցած լինի, որ անտեղի է ըստ ինքեան։ Այլ աւելի հաւանական կը կարծեմ՝ թէ անոր երիզաձև կանոնաւոր յօրինուածն առնուած լինի արտաքին ձևէ, որ կ'երևի հեթանոսական քանդակաց վրայ՝ զոհագործի մը վզէն կախուած, կամ կնոջ մը լանջաց վրայ՝ խաչաձևուած[12], կամ կալիստեան գետնադամբանաց մէջ քրիստոնեայ կնոջ մ'ուսերէն վար ձգուած արձակ[13]։ Եւ զոր առին քահանայք և եպիսկոպոսունք ալ, և յետոյ սարկաւագներն իրենց անձեռոցն անոր նմանեցուցած լինելու են։*

*Բրագայի ժողովը* 563*ին կը պատուիրէր քահանայից՝ ուսանոցը կրել պատարագի ժամանակ, այնպէս որ ծածկէր երկու ուսերը և խաչաձևէր լանջաց վրայ[14]։ Նոյնը կը յիշէ* 633*ին Տոլետոյի ժողովն ալ՝ սարկաւագաց, քահանայից ու եպիսկոպոսաց վրայ[15]։ Հեռի չէր կրնար լինել այն արևելեայց սովորութէն ևս, զոր այդ ժողովներէն կանուխ, Ե դարու սկիզբը, կը զգացնէ արդէն Սեբերիանոս Եմեսացին, Ելից բացատրութիւնս՝ «զվակաս զուսովք և զլանջօք» Ահարոնի[16], ընդլայնելով ժամանակին սովորութեամբ՝ «զվակասն զուսովքն պատեալ և զլանջօքն բաժանեալ[17]», հակառակ արևմտեան խաչաձևման։ Այս յունակերպ գործածուած զարդը մերն ալ էր ու-*

1. Հմմտ. սատ՝ 242։ — 2. Աստ՝ 349։ — 3. Դատ. Միխ։ — 4. Աստ՝ 352։ — 5. Լմբ. Պտ. 83, 86։ — 6. Դատ. Միխ։ — 7. Լմբ. Պտ. 85։ — 8. Լմբ. Պտ. 149։ — 9. Menol. 19, 38, 142, 152, 202։ — 10. Անդ՝ 34, 306։ — 11. Աստ՝ 349։ — 12. Fleur. VII, 49-50։ — 13. Անդ՝ 50, տխ. 529։ — 14. Անդ՝ 51։ — 15. Cabr. V, 675։ — 16. Ելք, ԻԸ, 4։ — 17. Սբր. 47։

*րեմն, որոյ գրաւական է նաև տոհմային վակաս կոչումը։ Եւ վերոյիշեալ հայ մեկնչաց հետ Շնորհալին ալ կը յիշէ «Զոսկենըկար*



Ձև 115. հայ քահանայ, սարկաւագ և կիսասարկաւագ (1700)

*տիպն ուրարին, — Այն որ զուսովքըն պատէին[1]», ակնարկելով իւր օրերուն իսկ. և որ կը լինէր նաև «ի զանազան նիւթոց նկարակերպեալ[2]», նմանութեամբ ահարոնեան վակասին ճոխութեան։*

1. Շնրհ. Եղեռ. — 2. Անդ՝ 353.

5. Քահանայական վերին հանդերձն է նափորտը, (հմմտ. յն. ἀ-ναφορτ-ίζομαι = բառնալ յուսս, φόρτος = բեռն արմատէն. իսկ Հ. Գաթրճեան ἀναφορεῖονէն կը հանէ[1]), որ ոսկեղարուն կը նշանակէր ամէն տեսակ վերին հանդերձ՝ կախուած ուսերէն, արանց ու կանանց. և որով կը կոչեն Եղիշէի մաշկեակը՝ Եփրեմ[2] ու Եւս. Եմեսացին[3], (վերջինս գրելով նամփորտ), և Ոսկեբերանի Թարգմանիչը՝ բիւզանդացի կանանց ու կուսանաց փորիբաց կրկնոցը[4]։ Հաւանական է՝ որ նոյն դարէն է եկեղեցական փորանկեալ շուրջառին մի և նոյն կոչումն ալ, թէև յիշուելու առիթն ուշ է պատահեր, նախ Ը դարուն՝ Ստ. Սիւնեցիէն եպիսկոպոսին վրայ, «նափորտն սրբութեան[5]», ապա Սահակայ տեսլեան մէջ[6], Յհ. կաթողիկոսէն[7], ԺԱ դարու և յաջորդ մաշտոցներէն, Շնորհալիէն՝ «Զպատուական նափորտանին[8]», և Լամբրոնացիէն[9]. և որոյ հետ ռամկական շուրջառն ալ կայ արդէն ԺԲ դարուն, գործածուած Գոշէն[10]։

Տարսոնի առաջնորդն է նախ անոր ճշգրիտ նկարագիրը տուող, ըսելով քահանայից համար՝ թէ «զգեստ է նոցա նափորտն միայն՝ առանց եմիփորոնի», կամ «Նափորտն զօտէլոյծ[11]», զոր կը զգենուն պճղնաւոր պատմուճանին վրայ[12], ինչպէս ցոյց կու տայ մեր 125 Ձևը, և յետոյ 121ի քահանայն։ Անոր ծագումը նոյն է քահանայական փորանկեալ աղաբողոնին հետ[13]. այսինքն յունահռոմէական մի և նոյն արտաքին զգեստէն, որ ի գործածութեան էր քրիստոնէական առաջին դարերուն[14]։ Ս. Գերմանոս պարիսեցին, վախճանեալ 576ին, Տոլեդոյի 633ի ժողովը[15], և Ե—Է դարուց արևմտեան խճանկարներ[16] կը հաստատեն անոր գոյութիւնը քահանայից վրայ՝ իբր սրբազան հանդերձից մասն, ինչպէս և մեր հռաւեննեան 120 Ձևը։ Նաև յունական աշխարհը կը գործածէ զայն, զգալի Զ դարու փղոսկրեայ քանդակի մ'երկու արքեպիսկոպոսաց վրայ, ինչպէս կը դիտէ և Լկլերկ[17], ու բարսեղեան Վկայաբանութեան բոլոր քահանայից վրայ, ձևով պճղնաւոր[18]. և բազկաց գործածութեան պահուն շրջած բազկաց կամ ուսերուն վրայ[19]։

Մինչև այս շրջանիս վերջը փորանկեալ նափորտը միակ ձևը կը մնայ թէ պատարագին և թէ միւս պաշտամանց մէջ, ինչպէս կը

1. Գթրճ. Պոր. 740։ — 2. Ի Հյկզ։ — 3. Եմես. 228։ — 4. Ոսկ. Թղթ. Ա, 67, 168։ — 5. Արար. 1915, 638։ — 6. Աստ՝ 321։ — 7. Յհ. կթ. 188։ — 8. Շնրհ. Եղեն։ — 9. Լմբ. Պտ. 82-83 են։ — 10. Աստ՝ 319։ — 11. Լմբ. Պտ. 83, 85։ — 12. Նոյն՝ 147։ — 13. Աստ՝ 327-9։ — 14. Cabr. III, 1181-83։ — 15. Նոյն՝ 1183։ — 16. Նոյն՝ 1187-92. Braun, 97։ — 17. Cabr. IV, 1413։ — 18. Menol. 19, 31, 34 են։ — 19. Անդ՝ 38, 65 են։

*հաստատէ Շնորհալին, արգելլով քահանայից՝ «առանց սուրբ ծածկութի պատարագամատուցին զգենլոյ մատուցանել զսուրբ պատարագն, կամ աւետարան կարդալ, կամ խաչ առնուլ ի ձեռս, կամ յայլ ինչ ի սրբութիւնս մերձենալ[1]»։ Բոլորը ջանացեր են միշտ զարդարել այս հանդերձը. և գործածութեան առիթն ու վայրը և որակը (ոչ ձևը) հայ լեզուին զատել կու տան անոր կոչումն արտաքին աղաբողոնէն՝ նափորտ բառով։*

6. *Շրջանիս վերջը կ'երևի բաձկոնն ալ, տեսակ մը վանական փիլոն, զոր պիտի տեսնենք իւր կարգին. և զոր քահանայք կը գործածէին երբեմն փոխանակ նափորտի, ըստ վկայութեան Մխ. Գոշի, թէ «Նոքա և բաձկոնաւ իշխեն կալ ի վերայ բեմին[2]». և զոր յետոյ բառ առ բառ կ'առնու և կը կրկնէ Օրբէլեանն ալ[3]։ Բեմ ելնելը պատարագել չէ, այլ մասնակցիլ պաշտամանց։ Իսկ բաճկոնաւոր անտարակոյս հետևանքն է սրբազան զգեստուց զանցառութեան[4]։*

7. *Կօշկի փոփոխութիւնը նաև քահանային վրայ՝ կը զգացնէ Շնորհալին, յանդիմանելով զոմանս՝ որ «աղտեղեալ տրեխօք» բեմ կ'ելնէին[5], փոխանակ պատշաճ կօշիկներ հագնելու՝ նման սարկաւագաց[6]։*

*Բ Շրջան։ — Կը սահմանափակուի ԺԳ–ԺԶ դարերու մէջ։ Արևմտեան ազդեցութիւնը՝ որ կը յեղաշրջէ շրջանիս սկիզբը հայկական ծէսը, բաւական նորութիւններ կը ներմուծէ նաև քահանայական ձևին մէջ։*

1. *Մեր* 1263*ի և* 1402*ի նկարները (Զև* 121, 97) *բացագլուխ ցոյց կու տան զքահանայն, վկայելով թէ որ և է գլխանոց չունի տակաւին սրբազան հանդերձից հետ, մինչ առաջնոյն մէջ եպիսկոպոսը խոյր կը կրէ։ Եւ սակայն կը յիշուին հիմայ գլխանոցի քահանայական զանազան անուններ, որոնք մեկնութեան կը կարօտին։ Պատարագի «Խորհուրդ խորին» շարականը, յօրինուած ԺԲ դարու սկիզբը Խաչատուր Տարօնացիէն, ունի հետագայ վկայութիւնն իբր մասն քահանայական հանդերձին. «Իւսամամբ բոպ ի գլուխ՝ պատեցեա զմիտս և զզայարանս»։ Հ. Գ. Աւետիքեան, մեկնիչ շարականաց, զայն իմացաւ ծանօթ սաղաւարտը[7], առաջնորդուելով բացին դասական նշանակութենէն։ Բայց միջին դարը հին բառերու ճշգրիտ սահմանը չէր գիտեր և կամ չէր ուզեր պահել. և Խաչատրոյ բացն*

1. Շնրհ. Ընդհ. 54։ — 2. Դատ՝ Մխ։ — 3. Օրբ. 80։ — 4. Աստ՝ 318։ — 5. Աստ՝ 317։ — 6. Աստ՝ 353։ — 7. Բաց. շրկ. 586։

*ուրիշ բան է հոս. իր մը՝ որ պատէ՝ կը սքողէ «զմիտս և զզայարանս», այսինքն մտաց ու զգայարանաց կեդրոն գլուխը։ Եւ որ ստիպուած կը յիշեցնէ ինձ լատինական* amictus *կոչուած քառակուսի պաստառը, որ ի սկզբան կը գործածուէր ժողովրդէն իբրև պատսպարան ցրտէն, ու կը ծածկէր գլուխն ուսերով հանդերձ։ Իսկ Ը դարու վերջերը կը յիշուի նախ սրբազան հանդերձից մէջ, և Թէոդ Ամալարիոսէ իբր «առաջին զգեստ», մերթ չատ հարուստ*[1]*, որով պատարագիչը զգեստաւորման պահուն կը ծածկէր գլուխը, և նափորտը դնելէն կամ սեղանին առջև հասնելէն վերջ կ'իջեցնէր ուսոց վրայ*[2]*, ինչ որ կը մեղադրէ իմ կանխաւ յիշած բիւզանդական գրութիւնը*[3]*։ Այս էր ուրեմն և սատի առնուած հայ շարականին գլխապատ թագն ալ, որ ըստ կարգի անոր տներուն՝ կը դրուի նափորտէն յառաջ, — որուն արգելք պիտի լինէր՝ եթէ ինք բարձր խոյր մը լինէր, — և կ'իջեցուի յետոյ, բաց թողլով մեր երկու Ջեհրու քահանայից գլուխը. որով Արճիշեցին կրնար գրել՝ թէ «պարտ է բանալ զգլուխն՝ որ պատարագիչն է, թէ քահանայ, թէ եպիսկոպոս և թէ այլ ոք*[4]*»։*

*Իրեն հոմանիշ ունի, կամ մանաւանդ աւելի սովորական անուն, խոյրը, յիշուած նախ* 1284*ի վենետկեան խորհրդատետրին մէջ, «դնէ զխոյրն», մինչ* 1332*ի օրինակը, Մշոյ Առաքելոց վանաց և ջահկեցի Ներսեսէ, կ'ըսէ. «դնէ զգլխարկն ի գլուխն»։ Նոյնպէս և հանդերձից կիլիկեան օրհնութիւնը, ըստ Նիկաւլայոսեան գրչագրին և Սսոյ* 1345*ի մաշտոցին, ունի նաև «Օրհնութիւն գլխարկի», որ աղօթից մէջ կը փոխուի նախորդին. «ի խոյրս այս քահանայական զշնորհս քո ցօղեա»։ ՔահանայականՆ է, որով միւս պաշտօնեայք չեն գործածեր։* 1345*ի մաշտոցը հանգուցեալ քահանային ալ կը զգեցնէ «պատարագու հանդերձ, գլխարկ» և այլն։ — Գլխարկ բառը սովորական է հոս ծածկութի կամ քողի իմաստով, յիշուած Տաթևացիէն՝ «գլխարկն քահանայից» Հրէից*[5]*, ուր ս. Գիրքը խոյր կ'ըսէ Ահարոնի և որդւոց վրայ*[6]*, թարգմանելով յն. κίδαρις և μίτρα բառերը, զոր Յուղթայ թարգմանիչը կ'իմանայ ու կը հայացնէ նաև վարշամակ բառով նոյն քահանայից վրայ*[7]*։ Ասկից է ուրեմն խոյրին յատկացումը մեր քահանայական նորամուտ ծածկութին։ Ջահկեցւոց մաշտոցը ԺԴ դարու*[8]* *անգամ մը նոյն գլխարկ բառով կը կոչէ կուսանաց քողն ալ, ցոյց տալով մերձաւորութիւնը քահանայականին հետ։*

1. Fleur. VII, 5։ — 2. Cabr. I, 50. Braun, 65-6։ — 3. Աստ՝ 342։ — 4. Արճէշ. 24։ — 5. Քրզ. ամր. 442։ — 6. Ելք, ԻԸ, 4, 38, 40. ԻԹ, 6. Ղևտ. Ը, 9, 13. ևն. — 7. Յղթ. Դ, 17։ — 8. Ի Ս. Պատար. Բ. 86։

ԺԳ–ԺԴ դարուց մինչև դեռ անծանօթ է զարդս ՑՀ. Եզնկացւոյն[1], որով և արևելեան Հայոց։ Բայց յետոյ հոն ալ կ'անցնի։ Տաթևացին իւր քարոզներու մէջ ունի նաև «յայլմէ» կամ օտարներէ առածներ, որոցմէ «պիտանին և բարին ընտրեալ, և աւելորդն խոտեալ» է[2]։ Աճոնց մին կը խօսի քահանայական զգեստուց մասին, և աւելի որոշ կու տայ մեր նիւթին նկարագիրը։ «Առաջին զգեստն է, կ'ըսէ, խոյրն», որ արդարև զգեստ՝ «ծածկէ զթիկունսն» յետակողմէն. նոյնպէս և «զգլուխն... զի անդ է հինգ զգայութիւնն», թաչ. Տարօնացւոյն ըսածին պէս. և կը կախուի նաև առաջակողմէն, «ծածկելով զկուրծս ի վերայ սրտին[3]»։ Նոյն ինքն այլուր կը գրէ՝ թէ քահանային «պարտ է զգլուխս բանալ՝ յորժամ աղօթէ կամ պատարագէ[4]»։ Եւ այդ վիճակին մէջ ցոյց կու տայ մեզ «պսակ ի գլուխս իւր. այսինքն զի մաքրեն զգլուխն և կազմեն զհերս իբրև զթագ բոլոր[5]». և ուրիշ իրական գլխանոց չունի սեղանին առջև կանգնած պահուն, զի խոյրը պատարագի սկիզբէն իսկ իջուցած էր գլխէն։ Յիշեալ պատառը կը յիշէ և Ապարանեցին գլխարկ բառով՝ Հայոց քահանայական զարդուց մէջ[6]։ Եւ նոյնը խոյր անուամբ կը մնայ հետագայ խորհրդատետրերու մէջ. ինչպէս են 1427ին գրուածը Մեծոփայ վանուց մէջ, որ կ'ըսէ. «և դնէ յառաջ զխոյրն ի գլուխն[7]», զոր կը կրկնեն 1474ին օրինակը՝ Սպերի Տզանց անապատէն[8], 1512ին՝ Մոկաց Ս. Գէորգ վանքէն[9], 1516ին՝ Սանահնէ, 1637ին՝ Կաֆայէ, 1675ին՝ Վենետիկէն, 1681ին՝ Էջմիածնէ, 1730ին՝ Կեօզլովէ[10], և ուրիշներ։ Նաև Առաք. Բաղիշեցին ԺԵ դարուն կ'ըսէ քահանային. «Առդ խոյր եդեալ գլխոյդ արժան[11]»։ Բոլոր խորհրդատետրերը՝ հանդերձի միւս մասերէն յառաջ դնել կու տան խոյրը, որ եթէ արդի իմաստով լինէր, պիտի դժուարացնէր միւս մասանց զգեցումը, այս պատճառաւ լամբրոնեան օրինակին մէջ եպիսկոպոսի իսկական խոյրն ամենէն վերջ դասուած է[12]։ Եւ այդ ամէն վկայութեանց մէջ քահանայական խոյր ծածկոյթը միայնակ է, և բուն գլխարկը կամ սաղաւարտը կը լռէ մինչև ԺԷ դար, հաստատելով իւր չգոյութիւնը մինչ այն ժամանակ։

2. Պատմուճանը[13], որ հիմայ յաճախ հանդերձ ալ կ'ըսուի[14] կամ զգեստ[15], և ԺԵ դարուն Տաթևացիէն[16] ու Բաղիշեցիէն[17] շապիկ, կը պահէ

1. Յ. Եզ. Կան. — 2. Քրզ. ամր. 721։ — 3. Անդ՝ 182։ — 4. Տաթ. Հրց. 635։ — 5. Քրզ. ամր. 183։ — 6. Հյպտ. 553։ — 7. Գթրճ. Պտր. 583, 619։ — 8. Նոյն՝ 567, 569։ — 9. Նոյն՝ 584, 619։ — 10. Հինգն ալ ի Ս. Ղազար։ — 11. Աշուղ. 166։ — 12. Լմր. Պտ. 194։ — 13. Արճշ. 21։ — 14. Խորհրդ. ի Լմր. Պտ. 194, և 1284ին, և տես՝ 351։ — 15. Յ. Եզ. տես՝ 319։ — 16. Քրզ. ամր. 182։ — 17. Աշուղ. 166։

իւր նախկին գեղեցկութիւնը մեր 121 Ձևի քահանային վրայ, պճըղնաւոր, ոսկի ու կիտուածազարդ վերջաւորով, և թեզանիքը ծայրազարդ։ Սպիտակ է գունով՝ սոյն երանգիս նախամեծարութեան պատճառաւ[1], զոր կը վայելէ նաև արևմտեայց և Յունաց մէջ[2]. մինչ մեր 97 Ձևի քահանային կանաչ է։

3. Արևմտեան ազդեցութեան ներքև գօտին ալ ունինք հիմայ, որուն կ'ակնարկէ «Խորհուրդ խորին» շարականը երբ կ'ըսէ. «պատեա զմէջս մեր ճշմարտութեամբ», որուն խորհրդանշան կը նկատէ զգօտին։ Զգեստաւորման աղօթքին մէջ ալ, ըստ օրինակաց Պատարագամեկնչին[3], 1284ին և բոլոր վերոյիշելոց՝ կայ և «գօտւոյն» աղօթքը, իսկոյն յետ պատմուճանին՝ որոյ վրայ կը կապուէր։ Նաև Նիկաւլայոսեան գրչագիրն ունի «օրհնութիւն գօտւոյ՝» դարձեալ յետ հանդերձին և նախ քան ուրարը, ինչպէս կը դասաւորէ և Տաթևացին[4]։ Իւր ձևը, որ արևմտեայց մէջ լարի կամ նեղ երիզի կը նմանէր[5], նոյնպէս նեղ կը թուի նախ նաև մեր քահանայից վրայ[6], և յետոյ կը լայնանայ (Ձև 119)։

4. Ուրարը, ինչպէս հասարակօրէն կը կոչուի այժմ ու կը հաստատուի իւր անպակաս պահպանութիւնը վերոյիշեալ խորհրդատետրերէն, Յհ. Եզնկացիէն[7], Ապարանեցիէն՝ ռամկական ուրարք հնչմամբ[8], և Օրբելեանէն «ուրար, այսինքն փակեղն», կը շարունակէ Միալ «զերկու ուսովն[9]». և մեր 121 Ձևի քահանային վրայ անուշադրութեամբ զանց եղած է. մինչ 97ի մէջ Ուսբէն կը կրէ զայն, բայց միապաղաղ ձև մ'առած, որ ԺԴ դարէն կը սկսի նախ երևիլ մեր մէջ (հմմտ. 121 Ձևի եպիսկոպոսը), գուցէ նմանութեամբ մեր թագաւորական վակասին[10]. նոյնպէս քիչ անգամ և յունական նկարներու վրայ, եթէ սակայն արդիւնք չէ նկարչաց մոռացութեան, որով կրնան անտեսած լինել ծայրերը բաժնող գիծը։ Յամենայն դէպս՝ այս ոճս տակաւին տիրապետած չի թուիր հայ քահանայից վրայ, դատելով անջատին ընդ երկար շարունակութենէն մեր եպիսկոպոսաց վրայ։ Եւ «Խորհուրդ խորին» շարականը զայն կը կոչէ «խաչանիշ ուրար», ինչպէս նոյն նշանով է այս շրջանիս նաև արևմտեայց քով[11] և նախորդին յոյն սարկաւագաց վրայ[12]։

5. ԺԴ դարը՝ կիսասարկաւագին[13] և պահ մը սարկաւագին

1. Աստ՝ 342, 352։ — 2. Fleur. VII, 11-24, 84։ — 3. Լմր. Պա. 194։ — 4. Քրզ. ամր. 182։ — 5. Braun, 78-9։ — 6. Հմմտ. աստ՝ 257, 331։ — 7. Աստ՝ 319. Աշուղ. 166։ — 8. Հյպտ. 553։ — 9. Արճշ. 21. Օրբ. 80։ — 10. Հմմտ. աստ՝ 241։ — 11. Fleur. VII, 62 են։ — 12. Աստ՝ 349։ — 13. Աստ՝ 346։

ալ[1] տուած արևմտեան բազկուրարը կ'աւանդէ նաև հայ պատարագչին, ըստ որում բոլորին սեփհական էր այն Լատինաց մէջ[2]։ «Խորհուրդ խորին» շարականն արդէն կ'ակնարկէ անոր, ըսելով. «Հաստատեա զբազուկս մեր կարողութեամբ»։ Իսկ 1284ի խորհրդատետրը յայտնապէս կը յիշէ զայն զգեստաւորման կարգին, և նոյն իսկ լատին բառով, «Ածէ մանիբիլ» (manipulus), ճշդելով անոր էու-



Ձև 116 Հայ քահանայք և սարկաւագ (1730) Ձև 117

թիւնն ու ծագումը, և նոյն բառը կը գործածէ Հռովմէական պատարագին Թարգմանիչն ալ ԺԲ – ԺԳ դարուն[3]։ Նիկալայոսեանը զայն բազկուրար կամ ձեռնուրար կ'անուանէ, ձայնով ու թուով եզակի, և կ'օրհնէ միւս քահանայական հանդերձից հետ։ Յոհան Եզնկացւոյն օրով այս զարդն ալ տակաւին չէր անցեր արևելակողմը, որով նա «շուրջառ և ուրար և զգեստ» միայն կու տայ քահանայից[4]։ Բայց դար մը վերջ Տաթևացին արդէն գիտէ ձեռնուրարը, սակայն փո-

1. Աստ՝ 353։ — 2. Braun, 117-18։ — 3. Մանիբուլին, սեռ. Գիրք. Պար. 451։ — 4. Յ. Եզ. կան։

խուած ձևով մը. «Նման է, կ'ըսէ, փոքրիկ վարշամակի որով մաքրեն». և թէ իւր օրով զոյգ էր, «բազկուրարն որ յերկու ձեռն[1]», մինչ քան զինք եօթանասուն տարի կանուխ մեր սինեցի 122 Ջեռն մէջ ալ կ'երևի և մի միայն է տակաւին, նոյնպէս վարշամականման ու կախուած ձախէն, և զարդարուած խաչով մը. և զոր նկարիչը նափորտէն դուրս է թողեր՝ ցուցնելու համար անշուշտ։ Վարշամակի ձևս յետադարձ շարժում մ'է, հաւանօրէն կատարուած այլամերժ Սիւնեաց կողմէն, դէպ ի նախնականը, և աւելի յունականը, ոչ դիրքով՝ այլ ձևով միայն[2], որ այս շրջանիս մէջ անծանօթ է աւրևմտեան հնախօսից ու կղերին վրայ։

6. 1284ի խորհրդատետրը մանիբիլէն զատ ուրիշ բան չի նշանակեր քահանայի բազկին վրայ, մինչ յետոյ Նիկաւլայոսեանը՝ բազկուրարին հետ ունի նորամուտ միակ «բազպանի» մ'օրհնութիւնն ալ, որ նոյնպէս անծանօթ Եզնկացւոյն, յետոյ կը վկայուի Տաթևացիէն. «ձեռնուրարն և բազպանն. և այս (վերջինը) ցուցանէ զկապանն՝ որով կապեցին Հրէայքն զձեռն Քրիստոսի». և թէ «եղեալ է ի ձախոյ ձեռն[3]», ինչ որ սարկաւագին ևս ընծայեց[4]։ Բազպանիս «կապելու» կամ պրկելու պաշտօնէն յայտնի է՝ թէ Լամբրոնացւոյն նոյն անուամբ ու նպատակով եպիսկոպոսաց վերագրածն է, և նախ անոնց սեպհական, որ յետոյ մասամբ անցեր է միւս պաշտօնէից ևս։ Իւր գոյութիւնը զգալի է մեր 121 Ջեռ քահանային ալ բազկին վրայ, արդի ձևով ու կարմրագոյն։ Բայց աջակողմը կրնայ նկարչին սխալը լինել՝ ուրարին զանցառութեան պէս։

7. Նափորտը[5] կամ Ռամփորտը[6], այժմեան սովորական կոչմամբ շուրջառ[7], անփոփոխ կը պահէ իւր նախկին փորանկեալ ոճը, թեալով միշտ «վերին զգեստ՝ և ծածկէ զամենայն[8]», ինչպէս կ'երևի 121 և 97 Ջեռրու մէջ. և զոր Արճիշեցին կը հաւասարեցնէ եպիսկոպոսականին հետ. քահանայն «Նափորտ զգեցցի որպէս և եպիսկոպոսն[9]»։ Այս շրջանէս ուրիշ նկարներ չունիմ ճշդելու համար՝ թէ մինչև երբ տևեց այս ոճը քահանայից վրայ, բաց ի 119 Ջեռէն՝ որ 1476 թուականը կու տայ մեզ իբր ծանօթ վերջին սահման։ Սակայն եպիսկոպոսական կենդանագրաց վրայ անոր շարունակութիւնն երաշխիք մ'է՝ թէ քահանայք ալ պահեցին զայն երկար ժամանակ։

1. Քրզ. ամր. 182։ — 2. Աստ՝ 346–47։ — 3. Քրզ. ամր. 182։ — 4. Աստ՝ 353։ — 5. Խորհրդ. ի Լմբ. Պտ. 194. Կիր. տառ՝ 319. Արճշ. 20–21. Քրզ. ամր. 182–3. — 6. Գրչ. Նիկաւլայոսի՝ երկիցս։ — 7. Կիր. 132. Խորհրդ. 1284ի. Օրբ. 80. Ց. Եզ. տառ՝ 319. Ապար. ի Հյպտ. 553, ևն։ — 8. Քրզ. ամր. 188։ — 9. Արճշ. 21։

կապոյտ է 121 Զևի նափորտին գոյնը, և կարմիր՝ 97ինը։ Տեսանք նաև Ա Կոստանդնի արևելեան եկեղեցեաց նուիրած «մեծագին նափորտս[1]». և Մկրտիչ Նաղաշ «յաւելեաց յեկեղեցիս բազում շուրջառ մեծագին[2]»։ Իսկ Ապարանեցին կ՚աւանդէ Հայոց գործածելը «շուրջառ և խաչն ի մէջ[3]», այն է Թիկանց կեդրոնը։ Արևմտեայց քով ԺԵ–ԺԶ դարերու միջև անոր երկու կողմերն երթալով կը կարճանան ու կը հաւասարին ուսերուն[4], մինչ արևելք հաստատուն կը պահէ հին ձևը, ինչպէս կը տեսնենք յաջորդաբար յոյն և հայ նկարներու մէջ։

8. Հիմայ ի սովորութեան է նաև փորիքաց շուրջառը, զոր նախորդ շրջանին դեռ անծանօթ տեսանք։ Երբեմն արտաքին զգեստ յարևմուտս, նախ Թ դարուն կը դառնայ հոն եկեղեցական հանդերձ՝ ըստ Լկլերկի[5], մինչ Փլեօրի Ա դարէն կ՚ենթադրէր[6]։ Գրիւնայսէն նոյնպէս ռամկի կրկնոցէն կամ արքայից և ազնուականաց քղամդէն կը հանէ զայն[7]։ Սակայն մեր քով իւր չգոյութիւնը հայ ռամկի մեկնոցին և Ռուբինեանց ու մեր կղերի փիլոնին ժամանակ[8], և երևումը շատ ուշ՝ լատին ծիսի ազդեցութեան շրջանին, կը ստիպէ զմեզ այս վերջինէն դնել իւր ծագումը, երբ մանաւանդ Յոյներն ալ չունէին զայն։ Արդարև առաջին անգամ կը պատահինք ասոր յիշատակութեան՝ եպիսկոպոսօրհնէից մէջ, ԺԴ դարուն[9], ուր հայրապետը «զգեցեալ... փորիքաց շուրջառ», կը քննէ ընծայեալը։

Այնուհետև հին նափորտը սեպհական կը մնայ պատարագին, կամ ասոր հետ կատարուած արարողութեանց, ինչպէս էին ձեռնադրութիւնք. իսկ միւս պաշտամանց մէջ կը գործածուի փորիքացը, նոյնպէս լատինական ոճով։ Զայս կը տեղեկացնէ Ապարանեցին 1410ին, գրելով այսպէս. «Զկերպասեայ կապն (լտ. cappa), որ է փորիքաց նափորտն, զոր (իւր կարծեօք) Լուսաւորիչն կարգեաց ի յեկեղեցիս Հայաստանեաց, ըստ կաթոլիկէ ուղղափառ եկեղեցւոյ, (յայտնագոյն փաստ մ՚ալ շուրջառիս լատինականութեան), վասն զգենլոյ յաղագս հանդիսութեան տօնից յեկեղեցիս Հայոց, և կամ յորժամ ելանիցեն ի թափօր»։ Եւ ամէնքը չէին կրեր զայն, կ՚ըսէ. «այլ առաջնորդքն և կամ շաբաթաւորքն (որոնք մէկ մէկ շաբաթ եկեղեցւոյ մէջ կ՚անցնէին), և այլ մեծամեծքն՝ որպէս տեսաք աչօք»։ Սակայն կային տակաւին՝ որ խոժոռ կը նայէին այդ օտար հանդեր-

1. Աստ՝ 319։ — 2. Հայսմ. 527։ — 3. Անդ՝ 553։ — 4. Braun, 101։ — 5. Cabr. III, 368–9, 378։ — 6. Fleur. VIII, 1 են։ — 7. Grün. 190-91։ — 8. Աստ՝ 142, 242, 332։ — 9. Աստ՝ 345։

ձին. «այլ յետ կեղծաւորք, կը յարէ, թողին զայն սովորութիւնն[1]». այսինքն բնաւ չընդունեցան։

9. Ձեռաց խաչը, ի հնուց ծանօթ եպիսկոպոսին ձեռքը, ինչպէս պիտի տեսնենք, այս շրջանիս և աւելի կանուխ ալ՝ ըստ վկայութեան Շնորհալւոյն[2], կ'երևի նաև քահանայից կողմանէ գործածուած՝ սրբազան հանդերձից ու պաշտամանց հետ։ Ս. Ղազարու աւետարանացոյց մը 1284ին՝ (թ. 677) զատկին Դանիելի ընթերցման պահուն կը նշանակէ տալ «խաչս երկու և մոմեղէնս երկու ի ձեռս քահանայից»։ Նոյն գրչագիրը Թաբորի առթիւ կը հրահանգէ զգենուլ, և «զնշան տէրունական խաչին տան ի ձեռս քահանայի միոյ կամ երկուց». և շատ տօներու մէջ պարզապէս կը նշանակէ Թաբորը խաչի կամ խաչիւք։ Իսկ մեծ «Խորանք ժամատեղաց», ԺԵ–ԺԶ դարուց (թ. 947), կը պատուիրէ պատարագին սկիզբը տալ «խաչ ի ձեռս ժամարարին», ինչ որ շատ հին չի թուիր, ըստ որում պատարագի հանդերձով երիցագոյն կենդանագրաց մէջ չենք տեսներ խաչը։

Գ Շրջան։ — Կը կազմուի ԺԷ–ԺԸ դարերէն, որոց մէջ քահանայական հանդերձը կարևոր փոփոխութեանց կ'ենթարկուի, ոչ միայն Հայոց, այլ և ուրիշ արևելեայց քով, և այդ համախումբ գործակցութեան պատճառները կամ ազդեցութեանց գլխաւոր աղբիւրն անծանօթ կը մնայ ժամանակիս ծիսապատմական մթութեանց մէջ։

1. Ամենէն յառաջ կը տեսնենք հոս սաղաւարտին երևումը, — որ իւր անունը կ'առնու զգեստաւորութեան աղօթքէն, «Դիր, տէր, սաղաւարտ փրկութեան», — յիշատակուած նախ Վիեննայի Մխիթարեանց 1618ի խորհրդատետրին մէջ, գրուած ի Քօթահեա, թէ «Տէր Աստուած զօրութեանց» աղօթքէն յառաջ «քահանայն զսաղաւարտն ի վայր դիցէ[3]»։ Յետոյ երկու խորհրդատետրեր, մին 1628ի՝ գրուած «ի գաւառն Խորձենի ի Կեղալեառն», և միւսն 1664ին՝ ի Մուշ, զգեստաւորման առթիւ հրահանգ կու տան. «Յառաջ դնեն զխոյրն ի գլուխն՝ որ է սաղաւարտ[4]»։ Հոս ուրեմն կայ արդէն սաղաւարտը, սխալմամբ շփոթուած նախկին խոյրին հետ։ Իսկ իւր պատկերին առաջին անգամ հանդիպած իմ Տուռնֆորի գծածին մէջ 1700ին[5] (Ձև 115), և յետոյ 1730ի նկարուց մէջ (Ձև 116, 117) և այլն։ Որոնելու ենք աղոր ծագումը։

Շատերու մտաց մէջ վրիպակաւ յոյն եպիսկոպոսականէն կը

1. Ապար. ԽԷ, լբ։ — 2. Աստ՝ 363։ — 3. Գթրճ. Պատ. 577։ — 4. Անդ՝ 619։ — 5. Tour. III, 275։



Է· — ՔԱՀԱՆԱՅԱԿԱՆ ՍԱՂԱՒԱՐՏ (1738)

*Հիմնուած է աւելի պարսկային խուրին վրայ, որ կը մնայ մինչև ցարդ։ Իւր նկարագիրը տես մատենիս* 372 *էջը։ Ստորև կը գտնուի ոսկեգիր յիշատակարանս. Յշտ է տէր Առաքելի որդի Եսայիին. եւ իւր որդի մահսի Բահրբեոսի. և ամ զարմիցն. ՌՃՁԷ։*

*Նուէր է հնութիւնս Պր. Պօղոս Սպենեանի՝ Ս. Ղազարու վանաց, ի յիշատակ իւր հանգուցեալ ծնողին, Պր. Գէորգի։*

համարուի սաղաւարտը[1]։ Ցունաց նկարները կը շարունակեն բացագլուխ ներկայացնել անոնց ամէն կարգի եկեղեցականները մինչև ԺԵ դար, ուր առաջին անգամ Թեսաղոնիկէի Սիմէոն արքեպիսկո-



Ձև 118. Հայ յուղարկաւորութիւն մը (1704)

պոսէն կ'իմանանք՝ թէ միայն Աղեքսանդրիոյ պատրիարքը կը ծածկէր գլուխը. և այս՝ աւանդութենէ մը, որ կը սկսէր Ժ դարուն, ուր բիւզանդական կայսր մը նոյն հայրապետին կը շնորհէ իւր պսակն իսկ[2]։ Բայց այդ պսակը շատ տարբեր մեր սաղաւարտի ձևէն[3], և

1. Բզմ. 1906, 211. — 2. Fleur. VIII, 133, 115. — 3. Հմմտ. սստ՝ 186.

*վերապահեալ Աղեքսանդրիոյ աթոռին, չէր կարող աղբիւր լինել հայկականին, որ մեծապէս կը հեռանայ նաև այս շրջանիս լատին խաչզղակէն*[1]*։ Կը մնայ իբր հաւանականագոյն և աշխարհագրականօրէն աւելի մերձաւոր աղբիւր՝ ժամանակիս յոյն քահանայից գլխանոցը*[2]*, որ նոյնպէս նորամուտ է, իբր ԺԶ դարու. և որոյ հետ հաւասար է մեր* 115 *Ձևի քահանայականը, նոյն բարձրութեամբ և առիշեղ կողերով, քան զայն աւելի ունենալով խաչ մը և եզերազարդը։*

*Այս ոճին վրայ են, կողերը նուազ կորացած, Ս. Ղազարու Թանգարանին երկու սաղաւարտները, նման և հաւանօրէն ժամանակակից իրարու. մին անագապղնձէ և անթուական, և միւսը կարմիր մետաքսեայ ու ճոխաբար ասղնեգործ ոսկիով և արծաթով,* 1738 *ամէն, զոր յառաջ կը բերեմ*[3]*։ Անոնք շուրջանակի ծածկուած են փրկչական և առաքելոց դէմքերով, ցոյց տալով հայ ճարտարարուեստին յատուկ խնամքն իրենց վրայ։*

*Խնդիրը կը փոխուի* 116 *և* 117 *Ձևերու վրայ, գծուած ի Կեօզլով (Եւպատորիա Խրիմու), որոց սաղաւարտը, զուրկ ամենայն սրբազան նշաններէ, գնդաձև է, ստորոտն աւելի կամ պակաս կարկառուն պսակ մը, և ծայրը մի կամ երկու գնդակիկ փոխան խաչի. հետևաբար բոլորովին տարբեր նախորդէն ձևով ու ծագմամբ միանգամայն։ Շատ հեռի նաև ժամանակիս յոյն եպիսկոպոսականէն, որ նման է քահանայականին, բայց աւելի բարձր*[4]*։ Մերն ուղղակի փոխառութիւն է ի Խրիմ տիրող Թաթարաց սովորական խուրէն, որ կ՚երևի պարսիկ հին մանրանկարուց մէջ, սկսեալ ԺԴ դարէն, խաներու և ազնուականաց վրայ, և նոյն մասերով ու թարկերով անգամ*[5]*։ Եւ երթալով մինչև ԺԶ դար, բոլորովին կը նմանի հայկականին*[6]*, անոր աղբիւր դառնալու համար։ Իսկ մերն աւելի ուշ՝ ԺԸ դարուն՝ կը զարգանայ ու կ՚առնու այժմեան կերպարանքը՝ խաչով հանդերձ, ինչպէս ծանօթ գրապանակին*[7] *և մեր* 114 *Ձևին մէջ։*

*Պատարագիչը գլխին կրելով սաղաւարտը, կը հանէր «Տէր Աստուած զօրութեանց» աղօթքին սկիզբը, որ պատարագին ալ սկիզբը կը նկատուէր։ Այսպէս կը նշանակէ* 1618*ի խորհրդատետրը՝ ինչպէս վերև, և վենետկեան* 1730*ի օրինակը՝ «Ոչ ոք արժանի է» աղօթքին քով դեռ սաղաւարտով կը նկարէ զքահանայն (Ձև* 116*),*

1. Braun, 163։ — 2. Tour. I, 140։ — 3. Ատ՝ 370։ — 4. Tour. I, 130։ — 5. Ատ՝ 276. *հմմտ. և մեր* 70 *Ձևը*։ — 6. Min. Pers. I, *տխ.* 46, 52, 55, 58, 64, 73, 86. II, 126, *Յաւել.* 92. The Min. II, 121, 124, 140։ — 7. Ատ՝ 356։

և «Տէր Աստուած զօրութեանց» աղօթքին՝ գլխաբաց։ Ընդ հակառակն 1650ին ի Կոստանդնուպոլիս գրուած անձնական տօնացուցի մը մէջ կարդացած եմ՝ թէ «ժամարարն ասէ զՈչ ոք արժանն բացագլուխ»։ Այս՝ պատարագի ժամանակ. իսկ արտաքոյ եկեղեցւոյ կատարուած պաշտամանց մէջ, ինչպէս յուղարկաւորութիւն և այլն, քահանայք իրենց արտաքին գլխանոցը կը գործածէին, ինչպէս ցոյց կու տայ մեր 118 Ձևը։

2. Գալով խոյրին, կը շարունակէ պահել միշտ իր անունը խորհրդատետրերու մէջ, զոր գրչագրողք կը շփոթեն երբեմն՝ ինչպէս տեսանք՝ սաղաւարտին հետ, որ զգեստաւորման աղօթից մէջ երբեք չէ ունեցեր իր բաժինը։ Խոյրին ձևն ալ փոխուած է հիմայ. իր վերին մասն երիզաձև կարծրացած, կը կազմէ տեսակ մ'անջատ օձիք պարանոցին շուրջ, յետակողմէն ցոյց տալով խաչիկ մը։ Ընդ հակառակն ի Կոստանդնուպոլիս Ասորւոց քով տեսայ վայն մնացած միապաղաղ քառակուսի գունաւոր պաստառ մը, որ ծայրը շուրջառէն դուրս կը կարկառէ հայկականին չափով։

3. Պճղնաւոր շապկին վրայ կը մնայ միշտ գօտին, ուրարին ներքև, ինչպէս մեր 115 Ձևի քահանային վրայ՝ չուանակերպ, որով ազատ կ'երևի ուրարը նաև 1730ի խորհրդատետրի նկարուց մէջ (Ձև 116, 117), թէև գօտին աննշմարելի է. իսկ աւելի որոշ՝ Մաշ կենաց կոչուած մատենկան մէջ[1], դարձեալ չուանաձև։ Տուռնֆորի քով յոյն քահանայն նեղ գօտին կը կրէ ուրարին վրայ[2], որով օրինակ պիտի հանդիսանայ յետոյ նաև հայ, ասորի, ղպտի ու քաղդէացի քահանայից, ինչպէս կը տեսնենք զանոնք մինչև ցայսօր։

4. Ուրարին վրայ միակ իշխողն է հիմայ միապաղաղ ոճը, ինչպէս մեր 115–117 Ձևերու և յունականաց[3] մէջ։ Բայց Տուռնըֆորի տուածին վրայ (Ձև 115) եզականութիւն մը կայ. անոր մէկ մասը կը կախուի թիկունքէն, գրեթէ լանջաց հաւասար երկայնութեամբ. այս պատճառաւ ուղևորը զայն կրկին անգամ գծագրեր է։ Դժուարին է երևակայութեան արդիւնք համարիլ բան մը՝ որ այնքան գրաւեր է ճանապարհորդին ուշը. և աւելի տեղական սովորոյթ մը կը թուի։ Իսկ երկուստեք ունի մի մի խաչ։

Բազկուրարը բոլորովին անհետացած է հիմայ. և բազպանն ալ չի տեսնուիր մեր յառաջ բերած Ձևերու և 1730ի պատարագամատուցին միւս տասներեք նկարուց մէջ։ Ինչպէս յոյն[4], նոյնպէս

1. Տպ. Վենետիկոյ, 1750, էջ 94։ — 2. Tour. I, 140։ — 3. Անդ։ — 4. Fleur. VII, 47.

հայ քահանայք շատ վերջերս ընդունած լինելու են զանոնք հաստատապէս ու միայուն կերպով։

5. Փորանկեալ շուրջառն ալ կը չքանայ հիմայ քահանայից վրայ, և անոր տեղը կը գրաւէ նաև պատարագի մէջ փորիբացը (Զև 115, 116, 117)։ Նոյնը պատահեր է նաև Ասորւոց, Ղպտաց ու Քաղդէացւոց, ինչպէս կը տեսնենք ցայսօր. և կ'երևի նոյն իսկ Տուռնֆորի տուած յոյն եպիսկոպոսին վրայ[1]։ Զենք գիտեր՝ ի՞նչ բան յառաջ բերեր է այդ ընդարձակ յեղաշրջութիւնը. և կամ ո՞ր եկեղեցին նախաձեռնարկ և օրինակ եղեր է այլոց։ Մեր չորս Զևերու մէջ (115–118) յայտնի է իւր պճղնաւորութիւնը, կիտուածով կամ ծաղկով զարդարուած պաստառը։ Եւ մինչդեռ պատարագի մէջ ամբողջ է սրբազան զգեստը, յուղարկաւորութեան համար բաւական կը համարուի շուրջառը՝ մաշտոցով, և ձեռաց խաչով ու բուրուառով մը, որոց վերջինն ալ քահանայ մը կը կրէ՝ երբ չկայ սարկաւագ (Զև 118)։

6. Մեր 116 Զևը ցոյց կու տայ նաև կօշկին առաջքը՝ թուխ գունով, մինչ նոյն գրչագրի ուրիշ նկարներ տարբեր գոյներ ալ ունին։

## Զ. ՎԱՐԴԱՊԵՏԸ

Ոչ կարգով և ոչ հանդերձով կրնար զանազանիլ քահանայէն՝ պատարագի հանդերձից մէջ. և սրբազան զգեստը նկարագրողք երբեք խօսած չեն վարդապետաց ուրոյն տարազի մը վրայ, ապացոյց՝ թէ չկար։ Բախտ ունեցայ գտնելու անոր մէկ նկարը ս. Մեսրոպայ անուամբ, վենետկեան շարականի մը մէջ, գրուած 1476ին ի Վայոց ձոր, զոր կու տամ հոս, Զև 119։ Պատարագչի ոչ դիրքն և ոչ ամբողջ հանդերձն ունի նա. այլ կը գտնուի քարոզչի վիճակին մէջ, և անոր չափով ալ զգեցած է։ Զկան բաւական տարրեր՝ շրջաններու բաժնելու համար իւր տարազը. և պիտի նկատենք ինչ որ ունինք առ ձեռն։

1. Ժամանակի վանականաց սուր ու սև կնկուղը կը կրէ գլխին, որոյ գործածութիւնը պիտի տեսնենք նաև աւելի բարձր կարգաւորներէն՝ պաշտամանց մէջ, բաց ի պատարագէն։ Ադոր հետ հագած է կանաչ պարեգօտ. անոր վրայ պատմուճանը, քիչ մ'աւելի կարճ,

1. Tour. I, 121.

աղօտ կարմիր գունով, զոր կը պնդէ աղօտ դեղին ու կիտուածազարդ լայն գօտին. և հուսկ փորանկեալ ճախարտը, կանաչ և թեթևակի ծաղկազարդ. իսկ կօշիկները կարմիր են ու կը ծածկեն ամբողջ թաթը։ Եւ իբր բեմբասացութեան ձև, ձախովը բռնած է Աւետարանը, և աջը կը շարժէ, յար և նման նկարագրին զոր կու տայ վենետկեան ԺԱ դարու մաշտոցը, ոտնալուային արթիւ ըսելով՝ թէ քահանայն «առեալ զսուրբ Աւետարանն ի գիրկն, և կարկառեալ զձեռս (աջն) իւր», կ'արտասանէ պատուիրանին քարոզը։



Ձև 119. Ս. Մեսրոպ (1476)

2. Պատմութիւնը կը յիշէ վարդապետական գաւազան մ'ալ։ ԺԲ դարուն սկիզբներն ապրող ծանօթ[1] Ստեփանոս վարդապետի համար կը կարդանք՝ թէ մանկական հասակին պատճառաւ «հրաման ունի առանց գաւազանի աղօթել ի տեղի աղօթից[2]»։ Ուրեմն վարդապետք սովորաբար գաւազանով կ'աղօթէին, և թէ այդ դարուն արդէն ունէին զայն։ Շնորհալին նոյն սովորութեան կ'ակնարկէ երբ կ'ըսէ. «Գաւազանիս խորհուրդ կրկին ունի ցուցանել զճշմարտութիւնն. նախ հովուական և ապա վարդապետական[3]»։ Սարգիս վրդ. ակնարկելով իւր վիճակակցաց՝ կ'ըսէ. «Նախ քան զուսանելն զգաւազանն խնդրեմք[4]»։ Վարդան պատմչի գերեզմանին մէջ գտնուեցաւ «գաւազանն ևս մօտ ինքեան[5]»։ Գէորգ Սկեռացւոյ մասին կ'ըսուի՝ թէ «գլոլովս... գաւազանաւ ջահաւորէր[6]». և Յովհաննէս Թռնեցի վարդապետական գաւազան ընդուներ է Եսայի Նչեցւոյ ձեռքէն[7]։

Գրիգոր Տաթևացին յետոյ անոր նկարագիրն ալ կու տայ մեզ. «գլուխն խաչաձև» է, կ'ըսէ. բունը ստուար, երկար, և ստորին ծայրը խթանաձև սուր[8]։ Խաչաձևը յատուկ էր երբեմն եպիսկոպո-

1. Աստ՝ 338։ — 2. Հյպտ. 377։ — 3. Մեկն. Բարձրացուցեքի։ — 4. Սրգ. 150։ — 5. Վիրապ։ — 6. Հյպտ. 505։ — 7. Գալ. Ա, 518։ — 8. Քրզ. ձմր. 168։

*սականին[1], որ այդ դարուն արդէն փոխուած, խաչագլուխը մնացեր էր վարդապետականին վրայ։ Տաթևացին այլուր կը յիշէ ուրիշ պարագայ մ'ալ, գլխով «խաչաձև և կարմիր կապեայ[2]». երիզ մ'անշուշտ։ Իւր գործածութիւնն ալ ընդարձակուած է հիմայ, և վարդապետք կը տեսնուին «հանապազ առ ինքն կրել» զայն[3]։*

*Վարդապետականս յետոյ բախտակից եղաւ միւս գաւազանաց փոփոխութեանց։ Ունիմ երուսաղեմացի Յովհաննէս անուն վարդապետի մը կնքոյն նմանութիւնը,* 1655*էն, որոյ գլուխը կազմուած է զոյգ բազկներէ՝ գալարած դէպ ի վեր և աւարտած ծաղկով, որ կը յիշեցնէ մեր* 130 *Ձևինը։ Եւ ուրիշ կնիք մ'Ովանէս վարդապետի,* 1719*էն, որոյ գլուխն ուղիղ է նման ցպի կամ* 131 *Ձևին, և երկու ծայրերը թեթևակի գնդացած։*

## Է. ԵՊԻՍԿՈՊՈՍԸ

*Ա. Շրջառ։ — Զոյգ կ'ընթանայ քահանայականին հետ, և կը վերջանայ ԺԲ դարով։ Իւր հանդերձը գլխաւոր մասանց մէջ նոյն էր քահանայականին հետ, և անոր վրայ կը յաւելուր աստիճանին նշանակները։ Մեր խուզարկութեան կը նպաստէ՝ բաց յայլոց՝* 120 *Ձևը, որ մասն է Հռաւեննայի յուստինիանեան խճանկարին զոր տուի[4], և կը ներկայացնէ Մաքսիմիանոս եպիսկոպոսը՝ սարկաւագաց հետ։ Կարևոր յիշատակարան մ'է նաև նորակերտ եկեղեցւոյ օրհնութեան կարգը, զոր վենետկեան հնագոյն մաշտոցն ու յաջորդք կ'ընծայեն «Յոհաննու Մանդակունոյ Հայոց կաթողիկոսի»։ Ասոր մէջ յետին ձեռք մտած լինի կամ ոչ, միշտ հնագոյն է քան ԺԱ դարու ընդօրինակութիւնը։ Արդ՝ այս կարգը հետևեալ նկարագիրը կու տայ օրհնիչ եպիսկոպոսի զգեստին. «Սքողեն իւր սպիտակագարդ սքողիւքն, եւթնապարզ կարգաւք և[5] կրկնապարզ նափորտամբն և քառակ հրաշակերտիւն, միանգամայն պատուանդան ոտիցն»։ Իսկ վենետկեան միւս օրինակը* 1216*էն՝ կը գրէ այսպէս. «Սքողացուցանեն իւր զարդ սքողիւք, եւթնապարզ կարգաւք, և կրկնամած նափորտիւն, և լայնատարած երկնագունիւն, և քառակ[6] հրաշակերտիւն. հա(մա)նգամայն պատուանդան ոտիցն»։ Ուրիշ մը* 1400*էն և Հ. Գաթրճեանէ*

1. Աստ՝ 347. և յօդ. Է։ — 2. Քրզ. ձմր. 166։ — 3. Անդ՝ 169։ — 4. Աստ՝ 170։ — 5. Գթրճ. Պտր. 738 *շեղչած է նախորդ երեք բառերը*։ — 6. *Նոյնը վրիպակաւ կը կարդայ «երկնագունեան քառակ» են։*

*վրիպակաւ Ս. Ղազարու ընծայուած, կը գրէ. «Սքողեցուցանէն իւր սպիտակազարդ սքողիւքն, եւթնպատիկ կարգօքն, և կրկնամած նափորտիւն, և քառեակ հրաշակերտիւն, և լայնատարած հրաշակերտիւն, միանգամայն պատուանդանի(ւ) ոտից[1]»։ Հնագոյն և լաւագոյն ընթերցուածն է առաջնոյնը, որոյ և երկրորդին թերի յառաջբերու-*




Զև 120 ·Մաքսիմիանոս եպս. և սրկք. (Զ դար)

*թեան պատճառաւ՝ Հ. Գաթրճեանին ուղղագոյն կը թուէր երրորդը, թէև այս ևս ունի իւր օգտակարութիւնը։*

1. *Ըսի և հաստատեցի արդէն՝ թէ եպիսկոպոսն ալ քահանային պէս բացագլուխ էր եկեղեցւոյ մէջ[2], թէ հայք և թէ միւսերը։ Բրաուն կը թուէ զանազան և անմիաբան կարծիքները՝ որ կան եպիսկոպոսական գլխանոցի մասին, տալով անոր պէսպէս ձևեր, և ոմանք մինչև առաքելոց օրերը հանելով։ Ինք ուժգնակի կը հերքէ այդ*

1. Նոյն՝ 739։ — 2. Անդ՝ 359։

*բոլորը, հաստատելով՝ թէ եպիսկոպոսական խոյրը նախ Ժ դարու կիսուն կ'երևի Հռովմայ մէջ, զոր քահանայապետք կը պարգևեն նաև ուրիշ եպիսկոպոսաց ոմանց, և որ դէպ ի ԺԲ դարու կէսն արդէն ընդհանրացած է արևմտեայց մէջ*[1]*։ Հնագոյն կարծուած վկայութիւնք, զորս կը կոչէ Ֆլեօրի, տկար և անստոյգ են այլոց և իր իսկ կարծեօք*[2]*։ Իրականն այս է՝ որ նախայիշեալ Մաքսիմիանոսը բացագլուխ է Զ դարուն։ Նոյնպէս են իմ կանխաւ յիշած քանդակւոր փղոսկրին*[3] *յոյն արքեպիսկոպոսունք, և Բարսղի Վկայաբանութեան եպիսկոպոսներն առ հասարակ, որոնք տարակոյս չեն թողուր նաև մեր բարձր կարգաւորաց գլխաբացութեան մասին։ Լամբրոնացին անոնց հանդերձի նկարագրութեան մէջ որ և է գլխանոց չէ յիշեր*[4]*, և կը շեշտէ բոլոր ժառանգաւորաց անսքող պատարագելը*[5]*։ Այսպէս կը սկսի ու կ'աւարտի առաջին շրջանը՝ բարեկարգ կղերին համար։*

*Սակայն արտաքոյ պատարագին կատարուած պաշտամանց մէջ՝ սրբազան հանդերձից հետ կը յիշուի եպիսկոպոսի սքող մը, զոր տեսանք վերև եկեղեցւոյ օծման կարգին մէջ, «սքողեն իւր սպիտակազարդ սքողիւքն», և զոր Հ. Գաթրճեան հաւասարեցուց մեր եռագոյն նկարի եպիսկոպոսին ճերմակ կնկղոյն հետ*[6]*։ Բայց գոյնի զուգադիպութիւնը բաւական չի թուիր ինձ համոզուելու՝ թէ այդ սքողը հաւասար էր հնագոյն մաշտոցէն երկու դար յետոյ գծուած վեղարին։ Նոյն մաշտոցը գիտէր կնկուղ բառը*[7]*, ուսկից կը զատէ սքողը, որ ոսկեդարեան բարբառին մէջ լծորդ է քողին. և իրենց բայն սքողել՝ կը նշանակէ քողով ծածկուիլ, ինչպէս կանանցը*[8]*։ Եթէ մաշտոցին այդ ոսկեդարեան կոչումը Մանդակունւոյն է, և կամ նոյն իսկ այդ մատեանը խմբագրող Մաշտոց կաթողիկոսին (Թ դար), միշտ կանուխ է քան կնկղոյն մուտքն եկեղեցւոյ մէջ. և կը յիշեցնէ ինծ գլխոյ վարշամակը՝ զոր տեսանք կղերին վրայ արտաքոյ եկեղեցւոյ և աշխարհականաց ևս*[9]*։*

*Նոյնը կը համարի լինել և Մարտինի արևմտեան եպիսկոպոսաց վրայ ի սկզբան, տալով անոր անթուական գլխապատկեր մ'ալ*[10]*, ուր վարշամակը գլխին կը բռնէ շրջապատող երիզ մը։ Նաև փոքր Լարուս բառգիրքը յառաջ կը բերէ նոյնպիսի գլուխ մը Գրիգոր Նազիանզացւոյն, որոյ հետ կը միաբանի նոյն հօր ծանօթ վկայութիւնն ալ, յորում աճարոնեան* κίδαρις = *վարշամակ բառով*[11] *կը*

1. Braun, 148-9։ — 2. Fleur. VIII, 113-15։ — 3. Ա*տ*՝ 362։ — 4. Լ*մբ*. Պ*տ*. 83, 86։ — 5. Ա*տ*՝ 359։ — 6. Գ*թրճ*. Պ*տր*. 739։ — 7. Ա*տ*՝ 303։ — 8. Դ*ան*. ԺԳ, 32. Ա Կ*որնթ*. ԺԱ, 6։ — 9. Ա*տ*՝ 326, 295։ — 10. Mart. 306։ — 11. Ա*տ*՝ 364։

կոչէ իւր դրածն ևս. և զոր հարկ չկայ այլաբանական իմաստով առնուլ, ինչպէս ըրաւ Ֆլեօրի[1]։ Ըստ հին տեղեկութեան մը՝ Աղեքսանդրիոյ հայրապետք սովորութիւն ունէին նոյնպիսի սքողով մը պատարագելու. որոյ համար բարսեղեան Վկայաբանութիւնն անով կը ծածկէ՝ նոյնպէս սպիտակ գունով՝ ս. Աթանասի և Կիւրղի գլուխները[2], յար և նման անոր՝ զոր պիտի տեսնենք մեր 126 Ձևի մէջ։

2. Եպիսկոպոսին պատմուճանը չի զանազանիր քահանայականէն Լամբրոնացւոյն նկարագրին մէջ, և անոր պէս կը կոչուի «առանց թեզանեաց[3]», մինչ այլուր կը հաստատէ անոր հակառակ՝ թէ «թեզանիք պատմուճանին» կային իսկապէս, զոր կը տեսնենք քիչ յետոյ։ Ինչպէս մեկնել այս հակասութիւնը. մանաւանդ որ յիշեալ Վկայաբանութեան բոլոր եպիսկոպոսունք ևս թեզանաւոր են, ոմանցն երկար ու նեղ[4], և ոմանցը չափաւոր լայն ու մինչև նախաբազկին կէսը[5]։ Երկու լուծում կայ այս խնդրոյն. կամ Տարսոնի առաջնորդն անթեզանով կ՚իմանայ կարճաթեզանը, և կամ փորձած է նոր ծրագիր մը տալ լքուած ու մոռցուած հանդերձին։—Միանգամայն զօտելոյծ կը կոչէ զայն[6]։ Վկայաբանութեան եպիսկոպոսաց վրայ անհաւասար է գօտւոյն գործածութիւնը. ոմանք ունին և ոմանք ոչ[7]։ Անցման շրջանն է այս՝ որ Լամբրոնացւոյն օրով արդէն մէկ ոճի վերածուած էր։

3. Պատմուճանին վրայէն կը կախուէր վակաս, վակաս յանչաց, ուրար[8] կամ ուսանոցը[9], որոյ հնութիւնը տեսանք քահանայից ու եպիսկոպոսաց վրայ[10]. և որ ակներև է յիշեալ Վկայաբանութեան մէջ ևս, սովորաբար ցատոլոտ, նեղ և անջատ[11], և մերթ միապաղաղ և աւելի լայն[12], թերևս իրարու խառնուած[13], և ծայրերը զարդարուն ու ծոպաւոր։ Մաշտոցաց վերոյիշեալ նկարագրին մէջ այս իսկ է քառակ հրաշակերտն, նաև ըստ իմացման Հ. Գաթրճեանի[14], և զոր կը պահանջէ յիշատակութեան կարգն ու հրաշակերտ մակդիրն ալ, որ կը համաձայնի այս զարդիս ճոխութեան՝ զոր տեսանք[15], և շքեղագոյնը պիտի նկատենք հայրապետականին վրայ. իսկ քառակը՝ կարգ կարգ կիտուածներն են, ինչպէս կը մեկնէ և Հ. Գաթրճեան, և որ կ՚երևին՝ անհաւասար թուով՝ նաև Վկայաբանութեան եպիսկոպոսաց կրածներուն վրայ։ Մեր 120 Ձևի եպիսկոպոսը չի ցուցներ ուրարը,

1. Fleur. VIII, 113։ — 2. Menol. I, 89. II, 329։ — 3. Լմբ. Պտ. 140, 141։ — 4. Menol. 6, 46, 65, 74, 131 ևն, — 5. Անդ՝ 160, 226, 231, 254, 276 ևն։ — 6. Լմբ. Պտ. 85, 140։ — 7. Menol. 160, 246, 306 ունին. 84, 116, 194 ևն չունին։ — 8. Լմբ. Պտ. 147, 149, 86։ — 9. Կաթողիկոսօրհնէք։ — 10. Աստ՝ 360։ — 11. Menol. 7, 47, 54, 116, 160։ — 12. Անդ՝ 40, 74, 177, 254, 409, 410։ — 13. Աստ՝ 366։ — 14. Գթրճ. Պար. 740։ — 15. Աստ՝ 353։

*որովհետև անոր գործածութեան սկզբնաւորութիւնն արևմտեայց վրայ անորոշ է*[1], *և երբեմն ալ կը դնէին դաղմատական պատմուճանին ներքև, ինչպէս կ'երևի Զ դարուն՝ նոյն Հռաւեննայի Եկղեսիոս եպիսկոպոսին*[2], *և* 1240*ի և* 1257*ի ուրիշ երկու նկարուց վրայ*[3]*։*

4. *Նափորտը նոյն էր քահանայականին հետ, ս. Գրոց լեզուով ըսուած Լամբրոնացիէն նաև «զվտառակն պճղնաւոր զոր այժմ կոչեմք նափորտ», կամ «նափորտն վտառակ*[4]*»։ Եկեղեցօրհնէքը զայն կոչեց կրկնապարզ կամ կրկնամած նափորտ, զգացնելով անոր արտաքին երեսն ու ներքին աստառը, բնականապէս տարբեր գոյներով։ Արձակ թողուելու պարագային պճղնաւոր է այն նաև Վկայաբանութեան եպիսկոպոսաց վրայ*[5] *և հաւասար քահանայականին*[6], *ինչպէս կը տեսնուի նաև մեր* 120 *Ձևի արևմտեան եպիսկոպոսին վրայ։*

5. *Եկեղեցօրհնէքը կը յարէ, «միանգամայն պատուանդան ոտից», որոյ եզական կոչումը կը հեռացնէ մեր միտքը սովորական կօշկէն։ Բարսեղեան Վկայաբանութիւնը եպիսկոպոսաց կու տայ կիսակօշիկներ, որ բաց կը թողուն թաթերու վերին մասը*[7]*։ Դեռ աւելի ցած է մեր* 120 *Ձևի բիւզանդականը, և աւելի մերձաւոր մեր պատուանդանին, որ հողաթափի գաղափարը կու տայ, և որոյ վրայ կը կենայ ոտքն իբր պատուանդանի, ոչ եթէ անոր մէջ կը մտնէ։*

6. *Շրջանիս եպիսկոպոսաց յատուկ են անջատ բազպանք (զնդ. բազուպանս*[8]*) Թեզանեաց ծայրը, յիշատակեալ Տարսոնի առաջնորդէն հետևեալ տողերով. «Իսկ եպիմիստիկոսն զոր կոչեմք բազպանս, որ է և այս քահանայապետական պատուոյն. վասն պատրաստ առնելոյ զձեռս ի քահանայագործելն սահմանեցաւ, զի մի՛ թեզանիք պատմուճանին սայթաքեցուսցէ զնա ի պաշտօն պատարագին*[9]*»։ Նաև կաթողիկոսօրհնէքը կը գրէ՝ թէ եպիսկոպոսք «բազպան արկցեն», և քահանայք «բազպան ոչ ածցեն»։ Յոյն և հայ կոչմանց յիշատակութիւնը Լամբրոնացիէն՝ փաստ մ'է առանց հաւասարութեան երկու եկեղեցեաց մէջ։ Զայն կը տեսնենք Բարսղի Վկայաբանութեան եպիսկոպոսաց բազկաց վրայ*[10], *գրեթէ այժմեան ձևով ու չափով։ Կ'երևի հոն նաև քահանայից վրայ, բայց քիչ անգամ*[11]*. և գուցէ թեզանեաց զարդն է, և ոչ անջատ։ Ֆլեօրի նոյնը կը հաստատէ, բազպաններն երբեմն սեպհական ըսելով յոյն եպիսկոպոսաց, և այժմ*

1. Cabr. V, 675. Braun, 123։ — 2. Wil. 1899, 32։ — 3. Dem. 283, 274։ — 4. Լմր. Պտ. 147, 149։ — 5. Menol. 10, 50 են։ — 6. Անդ՝ 19, 31 են։ — 7. Անդ՝ 98, 150։ — 8. Hüb. 114։ — 9. Լմր. Պտ. 148։ — 10. Menol. 6, 9, 46, 47, 54, 98, 101, 160 են։ — 11. Անդ՝ 38, 142, 195, 306։

*քահանայից եւ[1]։ Ինձ կը թուի՝ թէ անոնք կը ծագին ազնուազգի Բիւզանդացւոց պատմուճանին բազկազարդէն, և յետոյ կ'անջատուին թեզանիքէն, որպէս զի պատմուճանը քահանայք ալ գործածէին։*



Զև 121. *Յովհաննէս արքայեղբայր ձեռնադրւի* (1263)

*7. Եպիսկոպոսական նշանակներէն մին էր եկեղեցւոյ օրհնութեան մէջ՝ «երեսապարզ կարգը», կամ աւելի յստակ՝ «երեսպատիկ կարգը», զոր իրաւամբ եմիփորոնը կ'իմանայ Հ. Գաթրճեան։ Նոյնը կը պա-*

1. Fleur. VII, 47.

հանջէ հոն հանդերձից դասակարգութիւնն ալ, և ըստ բառին կը նշանակէ՝ եօթն անգամ զարդարուած խաչով։ Այս մեկնութեան կը նպաստէ Օձնեցւոյն կարծուած մէկ ճառին բացատրութիւնս ահարոնեան վակասին համար. «վակաս չորեքկարգեան ակամբքն[1]»։ Եկեղեցօրհնէից սահմանն աւելի ճարտասանական կը թուի՝ քան բնիկ կոչում մը, որուն կը հանդիպինք նախ ԺԲ դարուն՝ յունական եմիփորոն (ὠμοφόριον = ուսակիր) բառով, ինչպէս «Զեմիփորոն սուրբ խորհրդին[2]». կամ եպիսկոպոսք ուրարին հետ ունին «և զպատուական եմիփորոնն[3]». և զոր Մխիթար Գոշ իւր ձեռագրին մէջ ուրիշ երեք ձևով կը գրէ. անգամ մը եմփորտ, կամ եմեփոր, և երեք անգամ եմափոր[4]։ Լամբրոնացին ու Գոշ խօսելով եկեղեցական նուիրապետութեան մասին՝ յունական գաղափարով, բարձր աստիճանաւորաց վրայ կը զանազանեն եմիփորոնին տեսակները, եպիսկոպոսականը կոչելով «կրկին միայն[5]» կամ «եմափոր կրկին[6]», զոր յետոյ կը կրկնէ Օրբելեանն ալ[7]. այսինքն զոյգ խաչով, ինչպէս կը բացատրէ առաջինը պատրիարքաց վրայ՝ «հինգ կրկին խաչիւք զարդարեալ[8]»։ Բայց երբ նոյն մեկնիչը կը խօսի հայ եպիսկոպոսաց մասին առանձնաբար, հոն այդ խտրութիւնը չի ճանաչեր. և անոնցն ալ կը կոչէ հաւասարապէս «խաչիւք շուրջանակի պաճուճեալ[9]». և աւելի որոշակի կը թուէ «հինգ խաչն յեմիփորոնն[10]»։ Նախկին եօթն այդ ժամանակ հնգի վերածուած էր արդէն։

Այս զարդիս ծագումը կ'որոնեն ոմանք հռովմէական կայսերաց, ծերակուտականաց ու բդեշխից կրածին վրայ, որ ձևով ու պատելու ոճով կը նմանի եմիփորոնին[11], բայց շատ լայն քան զայն։ Վիլպերտ աւելի մերձաւոր կը գտնէ անոր երիզաձև յօրինուածն ուրիշի մը՝ որ կ'երևի Իսիսի քրմուհեաց քանդակներու վրայ Բ դարէն, ձգուած ուսընդանութ ձախէն յաջ, և ծայրերը կախած ձախ կողմէն, մին առջևէն և միւսն ետևէն։ Եւ է չափաւորապէս լայն. միոյն վրայ կարճ՝ մինչև մէջքը, այլոցը՝ ցկէս սրունից[12]։ Ուրիշ կնոջ մը վրայ նոյնպէս մինչև սրունից կէսն է, բայց կը պատէ՝ մեր 120 Ջևի եպիսկոպոսին ոճով[13]։ Դ դարուն կ'երևի նոյնը նաև Ս. Պետրոնիլլայի որմանկարին վրայ, ձգուած խիրիսեան քրմուհւոյ կերպով[14]։ Աստի առնուած է եմիփորոնը կամ լտ. pallium ըստ

1. Օձն. 136։ — 2. Շնչ. Եղեռ։ — 3. Լմբ. Պտ. 86։ — 4. Գտա. Մխե։ — 5. Լմբ. Պտ. 83։ — 6. Գտա. Մխե։ — 7. Օրբ. 79։ — 8. Լմբ. Պտ. 82։ — 9. Նոյն՝ 86, 147։ — 10. Նոյն՝ 87։ — 11. Fleur. VIII, 46, տխ. 630. հմմտ. մեր 60 Ջևը։ — 12. Wil. 1898, 101, և ձևք՝ յէջ 107, 109, 110։ — 13. Անդ՝ 111։ – 14. Անդ՝ 115։

*Վիլպերտի, մինչ Բրաուն կը կարծէ զայն Յոյներէն սկսած և անցած արևմտեայց*[1]*։ Կը տեսնուի բիւզանդական ծանօթ փղոսկրին արքեպիսկոպոսաց վրայ*[2]*։ Եւրոպայի մէջ Հռովմայ հայրապետին միայն սեպհական էր այն, և ուրիշ եպիսկոպոսունք անորմէ նուէր ընդունելով՝ կրնային կրել, մինչ Յոյներն անխտիր կը գործածէին*[3]*, նոյնպէս և Հայք։ Մեր* 120 *Ձեռ եմփորոնը կարճ է. Նոյնպէս էր հաւանօրէն արևելեանն ալ, մինչ յետոյ գրեթէ պատմուճանին չափ երկայն է Նիկողայոս պապին վրայ՝ Հռովմայ Ս. Կղեմեսի որմանկարին մէջ*[4] *(ԺԱ դար), նոյնպէս ուրիշ արևմտեայց վրայ՝ ԺԲ–ԺԳ դարերուն*[5]*, և Բարսղի Վկայաբանութեան բոլոր եպիսկոպոսաց, որոց նկարիչք ցոյց կու տան խաչերն ալ առջևէն ու ետևէն, երկուքը զետեղելով միշտ լանջաց հանդէպ երկուստեք*[6]*։ Ս. Իսիդոր պելուսացին (մեռեալ* 440*ին) զայն «բրդեայ» կը նկարագրէ*[7]*։ Եւ սովորաբար սպիտակ են մեր* 120 *Ձեռ ու Վկայաբանութեան մէջ։*

8. *Ուրիշ զարդ մ'է եպիսկոպոսական պատուոյն՝ կոնքեռը, որ հնութիւն չունի եկեղեցւոյ մէջ, և աներևոյթ է բարսեղեան Վկայաբանութեան եպիսկոպոսաց վրայ*[8] *ու մեր եկեղեցօրհնէից նկարագրին մէջ։ Կը հնարուի յետ Բարսղի գրչագրին, և Յոյներէն իսկ, ինչպէս կ'երևի այն Փլեօրեայ տուած պատկերաց մէջ*[9]*, Վենետկոյ կաթողիկէին մկրտարանի գմբեթին յոյն հայրապետաց վրայ* (1342-54 *թուին), և անոցմէ Հայոց ալ կ'անցնի։ Ընդունելի չէ Հայկազեանի բացատրութիւնը, «որպէս հովուական մախաղ, կամ ի նշան դենջակին Յիսուսի, կամ բոցեղէն սրոյ սրովբէին, ևն»։ Մեր հարք անոր աղբիւր ցոյց կու տան Ահարոնի լանջաց «զտախտակն դատաստանաց՝ գործ նկարակերպ... չորեքկուսի, թզաւ յերկայնութիւն և թզաւ ի լայնութիւն», ու զարդարուած տասներկու գոհարներով*[10]*։ Շնորհալին կը յիշէ անոր ծագումը, ճոխութիւնը և կախուած տեղը. «Զականակապ քառակուսին, — Որ էր նըման սուրբ վակասին*[11]*, — Զբազմագունեան գործ հրաշալին, — Այն որ ի քղանցքս ձոնիցերձին*[12]*»։ Եւ Լամբրոնացին ահարոնեանին անուամբ ալ կը կոչէ զայն. «Զտախտակն դատաստանի ունին միայն քահանայապետք՝ յաջակողմ կախեալ ի վերայ բարձիցն», և «որ է ծայրագոյն պատիւն*[13]*». և անոր վրայ ասղնեգործած էին «զանուն փրկչին մե-*

1. Braun, 134։ — 2. *Անդ*՝ 362։ — 3. *Անդ*, *և* Wil. 1899, 2 *ևն*։ — 4. Wil. 1898, 116։ — 5. *Ձեռ՛ի* Dem. 289, 280, 286, 274։ — 6. Menol. 9, 56, 101, 129, 130, 160, 203, 227։ — 7. Wil. 1898, 114։ — 8. *Հմմտ.* Menol. 46, 134, 157, 163, 226 *ևն*։ -- 9. Fleur. VII, 143. VIII, 633։ — 10. *Ելք.* ԻԸ, 15–20։ — 11. *Ահարոնի*։ — 12. *Շնրհ.* *Եղեռ*։ — 13. *Լմբ.* *Պտ.* 147, 148։

րոյ Քրիստոսի[1]»։ Իւր կոչումն այս աղբերաց մէջ՝ նկարագրական է, ոչ իրականը, որ էր կոնքեռ (թերեւս յն. κογχάριον = խեցեակէն՝ նմանութեամբ տրուած), զոր կը յիշէ կաթողիկոսօրհնէքը. «կոնքեռ զահեակ բարձօքն՝ որպէս կաթողիկոսն»։ Նկատելով՝ որ Վկայաբանութեան եպիսկոպոսունք զօտիէն կախած են դաստառակը[2], կարելի է նաեւ անոր այլափոխուած ձեւը համարիլ կոնքեռը։

9. Կարեւոր մասն է եպիսկոպոսական ձեւին՝ գաւազանն ալ, որոյ ծագումը կը նոյնանայ արտաքին ցպին հետ[3]։ Անոր գոյութիւնն իբր եկեղեցական սպաս՝ հաւանական կը թուի Լկլերկի գէթ Ե դարէն, յիշատակուած յետոյ 633ին Տոլետոյի ժողովէն եւ ուրիշ գրիչներէ[4]։ Կեղեստինոս պապը Ե դարուն՝ ցոյց կու տայ «ի գաւազանին զառաջնորդութիւն հովուական[5]»։ Անոր արեւմտեան ձեւը կորագլուխն էր[6]։ Բայց խաչագլուխն ալ կ'երեւի. զոր օրինակ՝ խեցեղէն հրագի մը վրայ, իբր Զ դարու, Յիսուս նոյնպիսի երկայնարուն գաւազան մ'է բռնած[7]. նոյնպէս է մեծն Գրիգոր պապին կարծուածն ալ Զ դարու[8], եւ որուն աւելի յաճախ կը պատահինք միջին դարուն[9]։

Յունական գաւազանի մասին հին յիշատակութիւնք կը պակսին, կ'ըսէ Լկլերկ[10]։ Բայց անոնց թերին կը լրացնէ հայ մատենագրութիւնը։ Ստ. Սիւնեցին Ը դարուն կը նկարագրէ եպիսկոպոսը պատարագին սկիզբը, նոյն խաչագլուխ գաւազանով՝ ըստ վենետկեան օրինակին. «Յերրորդ ժամու զգեստաւորեալ քահանայապետին, եւ ամփիոն որ ի ձեռին» ունի. եւ զայն կը սահմանէ «զաստուածեան նշանն յաղթութեան», զոր Էջմիածնի սխալագիր օրինակը կը պարզէ՝ «ամփիոն զխաչն[11]»։ Վենետկեանը կը յարէ՝ թէ «կոչի ըստ մերում լեզուի կնիք, եւ ըստ եբրայեցւոյն ամփիոն». եւ կը զատէ հասարակ խաչէն՝ ըսելով. «մաքրութեան ցուպն ի ձեռինն՝ ամփիոն, յիշատակ չարչարանաց[12]»։ Կ'երեւի թէ այդ օտարամուտ անունը ծանօթ էր ժամանակիս Հայոց, բայց ոչ միակը. զի եկեղեցօրհնէքը գաւազան կ'ըսէ։ Նոյնպէս եւ Վահան եպս. Սիւնեաց՝ Ժ դարուն՝ ունի իւր գաւազանը, կորուսած նախորդին ապստամբութեան պատճառաւ, զոր իրեն դարձնել կամ ոչ՝ հայրապետին կամաց կը թողու[13]։ Պետրոս կթղ. 1031ին ի Բջնի կ'արձանագրէ եպիսկոպոսական վիճակի հաստատութիւնը նոյն տեղւոյն մէջ, ըսելով. «տվաք գաւազան եւ

1. Լմր. Պտ. 149։ — 2. Անդ՝ 347։ — 3. Անդ՝ 335։ — 4. Cabr. III, 3145–46 են։ — 5. Fleur. VIII, 78։ — 6. Cabr. 3146։ — 7. Mart. 735։ — 8. Cah. 168։ — 9. Fleur. VIII, 85, 86, տխ. 546։ — 10. Cabr. 3147։ — 11. Արար. 1915, 639։ — 12. Սոփ. Նիրզ։ — 13. Արար. 1897, 14։

սուրբ նշան եւ աթոռ[1]»։ Եւ Գր. Վկայասէր փոքր՝ «հովութեան ցուպ պարգեւէր» եպիսկոպոսաց[2]։ Լամբրոնացին ալ վկայեց հին խաչագլուխ գաւազանաց գոյութեան ու շարունակութեան դեռ իւր օրով[3]։

Եպիսկոպոսը զայն քիչ կը բռնէ. զոր օրինակ՝ ըստ Սիւնեցւոյն՝ պատարագին սկիզբը, «յորժամ մտանիցէ ի սրբութիւն սրբութեանց պատարագել զՔրիստոս»։ Եկեղեցօրհնէից մէջ կայ պաշտօնեայ մը՝ «որ զգաւազանն ունի»։ Լամբրոնացւոյն օրով գաւազանները բազմացած են, և զանոնք պատարագի ժամանակ կը կրեն կիսասարկաւագունք[4], որոց կը վերագրէ յետոյ Սիւնեաց պատմիչն ալ՝ «կրել մոմեղէնս և զխաչագլուխ վարոցս[5]»։ Սոյն մաշտոցին համեմատ (1345ին) երբ եպիսկոպոսը կ'ելնէր ձեռնադրութեան, «գաւազանն ի ձեռին» կը բռնէր, ապա թողլու համար։ Արևմտեան եպիսկոպոսունք ալ իրենց գաւազանն առջևէն տանել կու տային՝ երբ հանդիսապէս երևէին տեղ մը[6]։ Արևելեայց զայն քիչ անգամ բռնելուն համար՝ գաւազանակիր եպիսկոպոսներ բնաւ չենք տեսներ մեր առաջին շրջանի նկարներուն մէջ։ Կ'երևի թէ զայն ձեռք կ'առնուին պաշտամանց երթալու և մեկնելու պահուն միայն։

10. Հին սովորութիւն և աւելի եպիսկոպոսաց սեպհական էր ձեռաց խաչը։ Ագաթանգեղոսէ կը տեղեկանանք՝ թէ Լուսաւորիչը Յաշտիշատի մեհեանները քանդելու համար՝ «առնոյր զնշան տէրունական խաչին», և կը հրամայէ անոնց կործանումը. իսկոյն սաստիկ հողմ մը կ'ելնէ «ի խաչանիշ փայտէն՝ զոր ունէր ի ձեռին իւրում սուրբ եպիսկոպոսն», և կը տապալէ մեհեանները[7]։ Նոյն խաչը կը տեսնենք նաև մեր 120 Ձևի եպիսկոպոսին ձեռքը. ապացոյց՝ թէ ընդհանուր էր եկեղեցւոյ մէջ։ Եւ Պետրոսի արձանագրութեան մէջ կար եպիսկոպոսական «սուրբ նշանն» ալ։ Նոյնպէս ԺԱ դարու մաշտոցին քահանայաթաղը, գրուած «քահանայի կամ եպիսկոպոսի» համար, հանգուցելոյն լանջաց վրայ դնել կու տայ ըստ իս անոր բռնած խաչն իսկ[8]։

Բ Շրջան։ — Կը սկսի ԺԳ դարէն ու կը տևէ մինչև ԺԸ, տալով մեզ քանի մը նորոյթներ եպիսկոպոսական տարազին վրայ։ Եւ որոց գլխաւոր աղբիւր ունինք մեր եռագոյնը՝ 1248 թուին[9]. 121 Ձևը՝ 1263ին, ԹՀ. արքայեղբօր գրչագրէն[10]. 122 Ձևը՝ 1337ին,

1. Ագգ. Հնդ. ԻԴ, 146։ — 2. Լմբ. Շնրհ։ — 3. Աստ՝ 347։ — 4. Լմբ. Պտ. 84, 201։ — 5. Օրբ. 81։ — 6. Mor. *Bacolo*։ — 7. Ագթ. 609։ — 8. Աստ՝ 303։ — 9. Աստ՝ 348։ — 10. Աստ՝ 257։

*զոր կ՚առնում Հ. Ալիշանի հրատարակութենէն*[1]. *և* 123 *ու* 124 *Ձևերը՝ վենետկեան* 1641*ի ժամագրքէն, գրութեան վայրն անյայտ։*

1. *Նախկին սքողին կը յաջորդէ հիմայ՝ իբր մասն սրբազան հանդերձից՝ կնկուղը, որ կը գործածուի պաշտամանց պահուն, այլ ոչ պատարագին։ Կը տեսնենք զայն եռագունին մէջ՝ ձեռնադրութեան առթիւ, սպիտակ գունով ու ճակատին ոսկի խաչ։ Նոյն խաչազարդը կայ նաև ասորի երկու նկարներու մէջ, հինգ սրբազգեստ եպիսկոպոսաց գլխին, հանուած Պարիսի գրատան գրչագրերէն. մին* 1239 *թուէն*[2], *և միւսն անթուական*[3]. *այսինքն ժամանակակից մեր եռագունին, որոյ նման է գունով՝ բայց ոչ խաչով՝ մեր* 122 *Ձևինն ալ՝ Ներսէս եպիսկոպոսի գլխին։ Տեսանք կնկուղն իբր մասն արտաքին հանդերձին*[4]. *բայց սրբազանին հետ զուգման նախաձեռնութիւնն ասորական է թէ հայկական, չենք գիտեր։ Յայտնի է՝ որ մեր կրկին օրինակներն ալ Ասորւոց աւելի մերձաւոր Սիւնեաց կողմէն են, և նպաստաւոր ասորականութեան։ Եկեղեցօրհնէից հին սպիտակազարդ սքողն արևելեան Հայոց համար հիմայ կը նշանակէ ճերմակ կնկուղն իսկ. և համոզուած եմ՝ թէ այս էր «խոյր ոսկեթել՝ մարգարտայեռ յօրինուածով», զոր Սիւնեաց պատմիչը* 1286*ին՝ իւր ձեռնադրութեան առթիւ կ՚ընդունի՝ միթրէն զատ՝ Բ Լևոնէ*[5]. *զի վարշամակ խոյրը քահանայից սեպհական տեսանք*[6]։

2. *Շրջանիս երկրորդ գլխանոցն է միթրը, որոյ ծագման մասին խօսեցայ*[7], *և զոր տակաւին չհայացած՝ Լամբրոնացին «խոյր» կը կոչէ Լատինաց վրայ*[8]. *ինչպէս յետոյ իւր խորհրդատետրին մէջ մտած զգեստաւորման աղօթքն ալ*[9]։ *Ասոր մասին երկու անգամ գրուած է Բազմավիպի մէջ*[10] *համառօտաբար և անգոհացուցիչ արդիւնքով. իսկ կատարեալ ծանօթութիւնը պիտի ջանամ տալ հոս։*

*Զայն նախ մեր կաթողիկոսը կ՚ընդունի Հռովմայ հայրապետէն, ինչպէս պիտի տեսնենք։ Լամբրոնացւոյն բացատրութենէս՝ թէ Փրանկք «նաև խոյր ի գլուխս դնեն և յաղօթելոյ ժամն վերացուցանեն*[11]», *վստահ ենք՝ որ* 1177*ին տակաւին անծանօթ էր Հայոց խոյրը, որով կ՚իմանայ նա միթրը՝ նաև կաթողիկոսին վրայ*[12]. *և տեսանք՝ թէ քահանայական համանուն ծածկոյթը տակաւին չէր ընդունուած իւր ժամանակ*[13]։ *Յետոյ Իննովկենտ Գ* 1202*ին միթրը նուէր կը յղէ*

1. Սսկ. 20։ — 2. Fleur. VII, 526։ — 3. Նոյն՝ VI, էջ 489. Cabr. III, 2590։ — 4. Աստ՝ 338։ — 5. Օրբ. 314։ — 6. Աստ՝ 364։ — 7. Աստ՝ 378։ — 8. Լմբ. Պտ. 150։ — 9. Նոյն՝ 194։ — 10. Բզմ. 1897, 182. 1906, 210. Վերծանողէ և Հ. Մ. Պոտուրեանէ։ — 11. Լմբ. Պտ. 150։ — 12. Աստ՝ յօդ. Ը։ — 13. Աստ՝ 359։

*Կիլիկիոյ տասնուչորս հայ եպիսկոպոսաց՝ ըստ պատմելոյ Սիկարդի, և ընծայաբեր Նուիրակը կը բաշխէ՝ Թագաւորին ու կաթողիկոսին առջև*[1]*։ Սկիզբն է այս միթրի հայացման, որով ապա Գր. Անաւարզեցին կրնար գրել առ Հեթում՝ թէ «մեք ի Հռովմայ սուրբ եկեղեցւոյն ունիմք զմիթրն*[2]*», որ լատինական* (mitra) *կոչումն ալ միասին կը բերէ։ Բայց կ'երևի՝ թէ ժամանակ մը սեպհական կը մնայ առաջին պարգևատուաց։ Ստեփանոս Օրբելեանի ձեռնադրութեան պահուն «դնեն թագ պատուական ի գլուխ նորա» կաթողիկոսին ձեռամբ։ Նոյնպէս Լևոն Բ իւր կողմանէ կը դնէ երկ-*



*Ձև* 122. *Սարգիս և Ներսէս եպս. Սիւնեաց* (1337)

1. Սիս. 494։ — 2. Գալ. Ա, 449։

բորդ «թագ պատուական ի համակ ոսկւոյ ի գլուխն, որ և զանուն թագին ինքեանք միթր կոչէին[1]»։ Անուանդ հետ ուրեմն գլխանոցն ալ անսովոր էր իրեն համար, և ընտանի ինքեանց (կիլիկեցւոց) միայն. իսկ իրեն՝ բացառիկ պատիւ մ'էր ընդունիլ զայն։ Այս պատճառաւ և Արճիշեցին նոյն դարու վերջերը տակաւին կաթողիկոսին սովորական կը նշանակէ «խոյր ի գլուխն», և եպիսկոպոսին ոչ[2]։

Սակայն սկսած է արդէն տարածուիլ, որով 1293ի ի Հաւա (Հաւածւ Խարբերդի) գրուած վենետկեան մաշտոցին յիշատակարանը՝ քահանայաթաղը գրուած կը դնէ «և թագագլուխ հայրապետաց» համար։ Սիւնեաց պատմչին յաջորդները կը կրեն զայն անպակաս՝ առանց հրաժարելու կնկղէն (Զև 122)։ Իսկ Տաթևացւոյն օրերն ընդհանրացած է արդէն, որով 1407ին կրնար նկարագրել զայն այսպէս. «Նոյնպէս և միթրք քահանայապետին ի գլուխն, այն որ երկճղի զառ ի վեր», զոր կը պճնեն «ոսկի և քարինք պատուականք», և «երկոքին վարշամակքն նուրբ ի վայր խոնարհեալ[3]» յետի կողմէն։ Իւր ընդհանրացման ապացոյց մ'է հետևեալ դէպքն ալ։ 1439ին Թէոդոսիոյ Հայոց պատուիրակներն Եւգինէոս Դ պապին կը գանգատէին՝ որ տեղւոյն լատին եպիսկոպոսը կ'արգելուր իրենց եպիսկոպոսին՝ կրել միթրը հանդիսաւոր պաշտամանց մէջ. և քահանայապետը նամակով մը հրամայեց՝ ազատ թողուլ Հայոց առաջնորդը[4]։ Զաքարիա պատմիչ 1698ին թագ կ'անուանէ նոյնը Փիլիպպոս եպսի. գլխին[5]։

Բրաուն ի տես կը դնէ անոր աստիճանական զարգացման պատկերն արևմտեայց քով։ Կը սկսի կոնաձև սրածայր՝ ԺԱ դարուն, կը դառնայ գմբեթաձև, յետոյ կը փռնայ գագաթին վրայ, ապա կը գոգանայ՝ ճակատին կողմն ուղղած աղեղնաձև փոսը, զոր յետոյ կը շրջէ և ցոյց կու տայ սրածայր երեսը[6]։ Այս վերջին վիճակիս մէջ իսկ, — յորում խճանկարուած են ԺԲ դարուն ս. Սեղբեստրոս ու Վլաս՝ վենետկոյ Ս. Մարկոսի գաւթին մէջ, ինչպէս տեսած եմ, — կը հայանայ ու կը մնայ մեր քով ժամանակ մը, ինչպէս 121, 122 և 128 Զևերու մէջ. առաջնոյն սպիտակ, ականայեռ ոսկի ժապաւենով եզերուած ու կիսուած ճակատէն. երկրորդին՝ կարմիր և ականազարդ, սպիտակ ժապաւենով. երրորդին նոյնպէս։ Եւ բոլորն ալ խաչածայր են, ինչ որ չկայ Բրաունի ու Ֆլեօրեայ[7] տուած բազմաթիւ պատկերաց վրայ։ Յետոյ լատինականին հետ և անոր ազդեցութեան ներքև կը սկսի տակաւ մեծնալ ու մօտենալ այժմու

1. Օրբ. 314։ — 2. Արճշ. 20։ — 3. Քրզ. ամր. 442։ — 4. Զմչ. Գ, 482։ — 5. Զաք. Պամ. Բ, ժը։ — 6. Braun, 150։ — 7. Fleur. VIII, 653-65։

չափին, ինչպէս կ'երևի ատրիճանաբար մեր 130, 131 և 123 Ձեռքերու մէջ, վերջինը վարդագոյն յատակով, ոսկի եզր ու կեդրոնական ժապաւէն, և երկուստեք մի մի խաչ։

Արևելեան Հայոց համար՝ իր գործածութեան գլխաւոր առիթն է պատարագը (Ձե 123)։ Բայց ԺԶ. արքայեղբայրը զայն կը կրէ նաև ձեռնադրութեան պահուն (Ձե 121), որ խառն կը կատարուէր ս. Խորհրդին հետ։ Սոյ 1345ի մաշտոցը հանգուցեալ եպիսկոպոսն ալ կը դիազարդէ «միթր ի գլուխն»։ Վերջապէս հող կիլիկեցիք կը զգացնեն իրենց անսիրելութիւնը կնկղոյն դէմ, որ շատերու ձեռք զեղծման նիւթ մ'էր դարձած[1]։ Եւ որ դէպ ի ԺԵ դար իսպառ տեղի կու տայ միթրին, ինչպէս պիտի տեսնենք յաջորդ յօդուածիս մէջ։

3. Պատմուճանը՝[2], կանխաւ Մխիթար Գոշէ կոչուած «սքեմ հոլանի և անգօտի[3]», եկեղեցորհնէից 1216ի օրինակէն կը սահմանուի «լայնատարած երկնագոյն», և 1400էն՝ «լայնատարած հրաշակերտ[4]»։ Զայս կ'արդարացնէ մեր եռագոյնը, տալով անոր բազմախորշ լայնութիւն մը և կապոյտ գոյնը, զոր Հ. Գաթրճեան իրաւամբ կը համեմատէ հրէականին հետ, «վտաւակս պճղնաւորս համակ կապուտակ[5]»։ Աղօտ երկնագոյն է նաև 121 Ձեի եպիսկոպոսին հագածը. նոյնպէս 122ի մէջ Սարգսինը. մինչ անոր քով Ներսեսին աղօտ դեղին մ'է, և 123 ու 124 Ձեռքունը գորշագոյն։ Անոր ստորոտը սովորաբար պարզ, 121ի մէջ հաւանօրէն արքայազնի ճոխութեամբ մը զարդարուած է ականազարդ ոսկի ժապաւէնով։

4. Սակայն Սիւնեցիք կը պահեն տակաւին կամ կը նորոգեն հին բազկոցարքը, երբեմն Թաշկինակի նմանութեամբ կախուած կիսասարկաւագաց բազկէն[6], յոյն եպիսկոպոսաց գօտիէն[7], և մեր 122 Ձեին մէջ ձախ բազկէն՝ նոյն նախկին ոճով, և ճերմակ ու խաչազարդ, զոր տեսանք հաստատուած նաև Տաթևացւոյն վկայութեամբ[8]։ Միանգամայն աշխարհական էր այս Թաշկինակը, յիշուած մեր Բագրատունի Թագաւորաց վրայ, և ակներև կախուած Լևոն գահաժառանգի գօտիէն[9]։

5. Իսկ բուն ուրարը կը պահէ եպիսկոպոսաց վրայ իր առաջին անջատ ոճը՝ մեր եռագունին, և 122, 123 ու 124 Ձեռքու մէջ, որ է մինչև ԺԼ դար. մինչ 121ին միաձոյլ է բացառաբար[10], ինչպէս են անոր ժամանակակից ծանօթ ասորականք ևս[11], և Տուռնը-

1. Հմմտ. աստ՝ 318-20։ — 2. Արճշ. 21։ — 3. Գատ. Մխ։ — 4. Անդ՝ 376, 377։ — 5. Եւք, ԻԸ, 31։ — 6. Անդ՝ 316։ — 7. Անդ՝ 347։ — 8. Անդ՝ 367-8։ — 9. Անդ՝ 182, 233։ — 10. Հմմտ. աստ՝ 366։ — 11. Անդ՝ 386։

*փորի տուած յունականը*[1]. *և որ մեր քով ալ սովորական դարձեր է յետոյ վենետկեան* 1704*ի մաշտոցին ու* 1730*ի խորհրդատետրին եպիսկոպոսաց վրայ՝ նման քահանայականին։ Եւ բոլորն ալ աւելի կամ նուազ հարուստ են՝ ըստ կարողութեան շինողաց։ Եռագունին ու* 124 *Ձևի ուրարները մի մի խաչ ունին ծայրերուն մօտ. իսկ* 1730*ին՝ խաչերու խիտ կարգ մը։*

6. *Եպիսկոպոսական նափորտը*[2] *փորանկեալ կը հնայ մինչև շրջանիս վերջը, ինչպէս կ'երևի եռագունին,* 121–124 *Ձևերու,* 1704*ի մաշտոցին*[3] *և* 1730*ի խորհրդատետրին մէջ, ուր վերջնոյս քահանայականն արդէն փոխիբաց է* (*Ձև* 116)։ *Անոր լանջի ճեղքն ու զայն բռնող կոճակը շատ զգալի են* 124 *Ձևին մէջ։ Անոր գոյնը եռագունին վրայ կարմիր, ամղնեգործ լայն գրապանով մը ծածկուած է ուսերուն հաւասար. համակ ծիրանի է* 121*ինը,* 122*ին սպիտակ,* 123*ին կապոյտ,* 124*ին աղօտ դեղին. և Օրբելեանն իւր ձեռնադրութեան առթիւ կ'ընդունի «զհայրապետական (եպսկն) զգեստն ոսկեթել հիւսուածով*[4]»։ *Արճիշեցին եպիսկոպոսականը կը սահմանէ՝ «նափորտ առանց խաչի*[5]». *և Սիւնեաց պատմիչը՝ «նափորտ անխաչ*[6]»։ *Այսպէս է տակաւին ԺԳ դարու վերջը. և ԺԲէն կաթողիկոսօրհնէքը կ'ըսէ՝ թէ եպիսկոպոսունք «և ոչ բազմախաչեան զգենուն», որ կաթողիկոսին յատուկ էր։ Սակայն շուտով կը սկսին շեղումներ, և Լամբրոնացին կը կրէ արդէն բազմախաչը, որուն կը վկայէ իւր թաչատուր աշակերտը. «Ցիշեմ զիմ տէրն ի բազմախաչին*[7]». *գուցէ անոր համար որ արքեպիսկոպոս էր պատուով, և այս իսկ կու տար իրեն նոյն շուրջառին իրաւունքը*[8]։ *Մինչ Սիւնեաց պատմչին ստացած նափորտը* 1286*ին չունի դեռ այդ նորութիւնը, իւր յաջորդները* 1337*ին բազմախաչով պճնած են արդէն* (*Ձև* 122). *և հետագայ դարուն բոլորովին ընդհանրացեր է, որով Մկրտիչ Նաղաշ* 1447*ին Թէոդոսիոյ եկեղեցւոյն կ'ընծայէ «շուրջառս մեծագինս բազմախաչեան*[9]»։

7. *Մեր եռագունին եպիսկոպոսը կարմիր կօշկօք կը ծածկէ թաթերը։ Նոյն գունով ու ձևով են նաև* 122 *պատկերի եպիսկոպոսաց կրածները։ Իսկ* 1704*ի մաշտոցին եպիսկոպոսը կը կրէ թուխ կիսակօշիկներ՝ ժամանակի սովորութեամբ։*

8. *Բազպանք, կիլիկիայէն սկսած՝ ինչպէս տեսանք, կան մեր*

1. Tour. I, 130։ — 2. Արճշ. 21. Օրբ. 79։ — 3. Հիմնարկ. եկեղ. և Ձեռնադր.։ — 4. Օրբ. 574։ — 5. Արճշ. 21։ — 6. Օրբ. 79։ — 7. Հյպտ. 434։ — 8. Լմբ. Պտ. 83. Արճշ. 20, 21։ — 9. Հյպտ. 574։

*121 Զևի մէջ, ոսկեգոյն ու կիտուածազարդ։ Բայց Սիւնեցիք զայն չեն ընդունած ԺԴ դարուն, և 122 Զևին մէջ ցոյց կու տան թեզանիքը պատմուճանին պաստառով։ Իսկ 123 և 124 Զևերու վրայ զգալի է արդէն բազպանաց տիրապետութիւնը։*

9. *Եմիփորոնը, որ առաջին շրջանին աւելի կամ պակաս թոյլ ձգուած էր (հմմտ. Զև 125), հիմայ պրկուած է ուսերուն ու լանջաց*



Զև 123 *Ժամարար Եպիսկոպոսներ* (1641) Զև 124

*վրայ։ 121 Զևին մէջ սպիտակ է, Սիւնեաց վրայ կանաչ ու դեղին, և 123ին կարմիր։ Սիւնեցիք կը պահեն անոր խաչերուն հնագոյն եօթ թիւն ալ, հինգ առաջակողմէն տեսանելի, և երկուքն անշուշտ ետևէն։ Սսոյ մաշտոցը (1345ին) կատարելապէս կը հելլենայնէ անոր կոչումը, գրելով. «Աւրհնութիւն սր. ումաւփաւրոնին (ոմոֆորոնին) քահանայապետականի»։*

10. *Անպակաս է կոնքեռն ալ, եռագունին և 121 Զևին մէջ անշուշտ ծածկուած։ Սիւնեցւոյն ու 124 Զևին ոսկեգոյն է, և 123ին ծաղկանկար. և կը կախուին լարով մը մէկ անկիւնէն՝ յունական ոճով, և միշտ աջակողմէն։*

11. *Փոփոխութիւն մը կը կրէ հիմայ գաւազանը, տեղի տալով լատինականին, երբ Իննովկենտ պապը միթրին հետ[1] գաւազաններ ալ կը յղէ կիլիկեցի տասնուչորս եպիսկոպոսաց՝ ըստ Սիկարդի։ Անոնք ժամանակ մը դուրս չեն ելներ Կիլիկիայէն, որով 1299ին Օրբելեանը կը ճանաչէ տակաւին հին խաչագլուխը[2]։ Բայց 1407ին Տաթեւացին լատինականին տարածումը կը հաստատէ, ընդհանուր գաւազանը նկարագրելով «կեռ և միակուսի[3]», ինչպէս էր այն արդարև այդ ժամանակ, և ոչ դեռ գալարուն։ Եւ այս գաւազանը հիմայ ճոկան կ'անուանէ Սմբատայ յաւելուածը, զատելով միւսէն. Հռովմայ հայ-րապետին առջևէն, կ'ըսէ, «ի գաւազանի տեղ ձոկան (տանին), զի հովուի օրինակ է[4]». ինչպէս կը կոչէ և կը մեկնէ Ջահկեցւոց մաշտոցն ալ[5]. «միակողմանի ձոկան[6]»։ Մեր Ջեռրու եպիսկո-պոսունք բնաւ չեն կրեր զայն իրենց ձեռքը՝ ծանօթ պատճառաւ[7], թէև եպիսկոպոսօրհնէքը յետ օծման՝ հայրապետին անոր յանձնել կու տայ «զգաւազանն՝» բանաձևով մը, կրելի արարողութեանց առթիւ իսկ։*

12. *Եպիսկոպոսական մատանին արդէն շրջանէս կանուխ ալ ընդունուած տեսանք մեր առաջնորդներէն[8]. և կը գործածուէր նաև պատարագի ժամանակ։ Եպիսկոպոսօրհնէքը կը գրէ՝ թէ գաւազանին հետ ձեռնադրիչը «դնէ զմատանին» նուիրելոյն մատը՝ նոյնպէս յատուկ բանաձևով։ Տաթեւացին յայտնագոյնս կը վկայէ՝ թէ եպիսկոպոսը պատարագի մէջ կը կրէ մատանին, զոր կը հանէ ողոշեալ պահուն։*

13. *Հին է այդ սովորութիւնը՝ հանդերձը պարզելու ս. խոր-հըրդեան ժամուն, և ամփոփուելու քահանայական ձևին մէջ։ Լամ-բրոնացին է նախ յիշողը զայս, թէ յետ աւետարանի ընթերցման՝ եպիսկոպոսը կ'իջնէ աթոռէն, «ի բաց հանէ զեմիփորոնն», և կ'անցնի սեղանին առջև աղօթելու[9]։ Մեկնիչս ուրիշ հանելի մասեր չի յիշեր. բայց Տաթեւացին կը լրացնէ զայն, գրելով թէ «եպիսկոպոսն զմիթրն (որ չկար տակաւին Լամբր. օրով), և զեմիփորոնն և զմատանին՝ զոր զգեցեալն էր ի ձեռնադրութեանն, հանէ յորժամ պատարագէ[10]»։ Նոյնը կ'երևի նաև մեր 124 Ջևին մէջ, ուր եպիսկոպոսը ցոյց կու տայ իւր սատիճանի նշանակներէն կոնքեռը միայն. և այս՝ «Տէր Աստուած զօրութեանց» աղօթքին առջև, ուր լինելու է թեթևա-ցումն ալ։*

1. Աստ՝ 386։ — 2. Աստ՝ 385։ — 3. Քրզ. ժմր. 168։ — 4. Սմր. 133։ — 5. Աստ՝ 364։ — 6. Էջ 175։ — 7. Աստ՝ 385։ — 8. Աստ՝ 338։ — 9. Լմր. Պտ. 324։ — 10. Տաթ. Հրց. 635-6։

## Ը. ԿԱԹՈՂԻԿՈՍԸ

*Ա. Շրջան։ — Կ'աւարտի ԺԲ դարու վերջերը։ Հայոց հայրապետը շրջանիս նախկին դարերուն սրբազան հանդերձից մէջ մեծ տարբերութիւն մը չունէր եպիսկոպոսէն, ինչպէս և ոչ արտաքին տարազով։ Իւր գլխաւոր զանազանութիւնը զգեստուց ճոխութեան մէջ կը կայանար։ Մեր մատենագրական տեղեկութիւնք այս մասին շատ հարուստ չեն՝ նկատմամբ առաջին դարերուն։ Կարեւոր յիշատակարան մ'է կաթողիկոսի օրհնութեան կարգը, որ Ժ դարու կիսուն պարզապէս կրկնութիւն մ'էր եպիսկոպոսականին, փոփոխութեամբ ձեռնադրութեան բանաձեւին միայն, ինչպէս կ'աւանդէ Անանիա Մոկացին*[1]*։ Ապա նորը շարադրուած լինելու է ԺԲ դարուն, և գուցէ Լամբրոնացւոյն կողմանէ իսկ, որով կաթողիկոսական մաշտոցին վենետկեան օրինակին (Թ.* 1141*) ծայրը Կոստանդին Դ կը յիշատակագրէ գտած իւր բնագիրը՝ «գրեալ ձեռամբ սր. հօրն մերոյ Ներսիսի արքեպ. Տարսոնի»։ Իսկ իբր պատկեր՝ ունինք Լուսաւորչի կենդանագիրը՝ քանդակեալ Աղթամարայ Ս. Խաչի պատին վրայ, կառուցուած Գագիկ Արծրունիէն* (914-943)*, և զոր կու տամ հոս իւր մէկ լուսատիպէն, Ձև* 125։

*Մեր ծանօթութիւնք կը հաստատեն՝ որ կաթողիկոսական նկարագիրը կը սկսի աւելի ինքնուրոյն դրոշմ մ'առնուլ դէպ ի միջին դար։ Եւ ինչ որ պիտի ըսեմ հոս, բաւական կը հեռանայ այն տեսութենէն՝ որ պարզուած է ժամանակաւ Բազմավէպի մէջ՝ հայրապետական հանդերձին ինչ ինչ մասանց նկատմամբ*[2]։

1. *Սկսելով գլխէն, պատարագի պահուն բաց է այն մինչև շրջանիս վերջը, ինչպէս մեր Ձևին մէջ, և ըստ նկարագրի Լամբրոնացւոյն, որ բնաւ գլխարկի յիշատակը չի ընէր կաթողիկոսին վրայ*[3]*, այլ մանաւանդ կը շեշտէ բացագլխութիւնն ընդհանուր «ժառանգաւորաց եկեղեցւոյ*[4]*»։ Սակայն միջին դարուն յաճախ կը յիշուի մեր մատենագրութեան մէջ կաթողիկոսական քողը, որ անոր իշխանութեան գերագոյն խորհրդանշանը կը կազմէ։ Զանազան գրչաց քով կը գտնենք զայն։ Երիցագոյն և իւր հնութեամբ նշանաւոր վկայութիւնն է Սեբէոսին Է դարէն, որ Քրիստափոր կաթողիկոսի աթոռընկեցութիւնը պատմելով, կ'ըսէ՝ թէ «առին ի նմանէ զփակեղն պա-*

1. Մոկ. 276, 278։ — 2. Բզմ. 1908, 410-12, Հ. Մ. Պոտուրեանէ։ — 3. Աստ՝ 359։ — 4. Լմր. Պտ. 83։

*տուող քահանայապետութեան» և վտարեցին[1]։ Փակեղն է ուրեմն զարդիս առաջին կոչումը, որոյ սահմանն ալ ծանօթ է մեզ այս շրջանէս. այն է գլխոյ արտաքին վարշամակը[2], և մեր պարագային՝ եպիսկոպոսական սքողն[3] իսկ, որ հայրապետին վրայ անոր «պատուոյն» համեմատ պերճութեամբ մը ճոխացած է. և այս պատճառաւ անոր հրաժարեցուցման առթիւ կ'առնուն զայն իրմէ։ Ասոր կ'ակնարկէ նաև Շնորհալին, երբ մեծ Գր. Վկայասէրը կը կոչէ՝ «Նոր Ահարոն խոյրիւ պճնեալ[4]», գործածելով աստուածաշնչական հոմանիշը[5]։*

*Բայց այդ ժամանակ զարդիս սովորական կոչում դարձած է սքողին համառօտեալ քող ձևը։ Ուռհայեցին կը գրէ՝ թէ նոյն Վկայասէրը գժտելով իրեն յաջորդ Գէորգայ հետ, կը ձգէ զայն աթոռէն, «առեալ զքօղն ի գլխոյ նորա[6]»։ Երկրորդ անգամ հրաժարելով հայրապետութենէն, «յուղարկեաց զքօղն» տէր Սարգսի, որ կը ժառանգէ իր գահը[7]։ Նաև Բարսեղ կթղ. կը հրաժարեցնէ զԹէոդորոս, և «առ ի նմանէ զքօղն[8]». և յետոյ «տայր զքողն» Գրիգոր փոքր վկայասիրին[9]։ Նոյնպէս և Վարդան պատմիչ՝ Սահակայ, Խաչկայ ու Գրիգոր Տղայի կաթողիկոսացումը կը յիշէ՝ «առնու զքողն» բացատրութեամբ[10]։ Իսկ Լամբրոնացին կ'աւանդէ՝ թէ Հռովմայ հայրապետը յիշեալ փոքր Վկայասիրին պարգև կը յղէ «քօղ» մը[11], համաձայն մեր սովորութեան, զոր յետին անծանօթ ժամանակագիր մ'ըստ քիմս պսակի կը վերածէ[12], թելադրուելով իր ժամանակի սովորութենէն։ Եւ նոյն կաթողիկոսն իր իշխանութիւնը փոխանցելով Ներսէս հարազատին, «կրկնամածեալ քօղ արկանէր» անոր[13]։*

*Ուշագրաւ է այդ կրկնամածեալ մակդիրը, որ կաթողիկոսօրհնէից մէջ կը բացատրուի «քող երկտակ»։ Եւ երկուքն ալ կը նշանակեն կրկին կարգ քող, երեսն ու աստառ իրարու մածեալ։ Տէր Իսրայելի Ցայսմաւուրքը, շարադրուած ԺԳ դարու կիսուն մօտ, Լուսաւորչին կը վերագրէ «քօղ ոսկեբեհ ծայրիւք[14]», որ բնականաբար իրեն ժամանակակից ու ծանօթ ձևն իսկ է։ Ես ուրախ եմ՝ որ կրնամ այդ զարդը ցոյց տալ ընթերցողացս՝ Կոստանդնի պահարանին Լուսաւորչի վրայ, Զև 126։ Հոս քողը պարզապէս ձգուած է անոր գլխին՝ առանց որ և է ուրիշ գլխանոցի, փակելով ճակատին մէկ մասը, և իջնելով մինչև ծոծրակէն վար։*

1. Սեբ. 154։ — 2. Աստ՝ 202։ — 3. Աստ՝ 378։ — 4. Շնրհ. Զափ. 545։ — 5. Աստ՝ 364։ — 6. Ուռ. ՃԵ։ — 7. Նոյն՝ ՃԷ։ — 8. Նոյն՝ ՄԺԳ։ — 9. Վրդ. Պտ. 107։ — 10. Նոյն՝ 70, 99, 129։ — 11. Լմբ. Շնրհ։ — 12. Բզմ. 1906, 212։ — 13. Լմբ. Շնրհ։ — 14. Գրչ. Ս. Ղազարու, թ. 631, ժը Նոյեմբերի։

Թէ երբ կը գործածուէր քողը, յայտնի է յիշեալ վկայութիւններէն, թէ նախ կը դնէին հայրապետական պատիւն ընդունելու պահուն։ Նոյնը կը հաստատէ կաթողիկոսօրհնէքն ալ։ Եւ որովհետև այս կարգը խառն էր պատարագին հետ, կը յարէ՝ թէ «յորժամ սկիզբն առնէ հայրապետն պատարագին և ասիցէ՝ Տէր Աստուած զօ-



Ս. Գրիգոր Լուսաւորիչ

Ձև 125. Աղթամարայ (Ժ դար)    Ձև 126. կոստ. պճրճիճ. (1293)

րութեանց, վերացուցանէ զքողն և բացաւ գլխաւ աւարտէ զխորհուրդն»։ Նոյնը կը գործածուէր, եպիսկոպոսական սքողին նման, նաև արտաքոյ պատարագին, կամ լաւ ևս բացօթեայ կատարուած պաշտամանց առթիւ։ Այսպէս կը կարդանք՝ թէ մինչդեռ Պետրոս Գետադարձի հակառակաթոռ Դիոսկորոս՝ Յայտնութեան Ջրօրհնէքը կը կատարէր, Անեցիք յարձակելով «պատառեցին զքօղն երեսաց նորա... քանզի քօղով վարէին յայնմ ժամանակի կաթուղիկոսք[1]»։

2. Լամբրոնացին՝ զօտեկոյծ, պճղնաւոր և առանց թեզանեաց կը նկարագրէ հայրապետական պատմուճանը[2]։ Անթեզանութիւնը սակայն

1. Կիր. 51։ — 2. Լմբ. Պտ. 85, 140, 141։

*կասկածելի է[1], և անծանօթ Մխ. Գոշի, որ կը շատանայ սահմանել զայն՝ «սքեմ հոլանի և անգօտի[2]» միայն։ Պերճ է անոր նկարագիրը կաթողիկոսօրհնէից մէջ. «զգեստս սպիտակ բոլորատորոտ ի ներքոյ. և յաջ և յահեակ կողման ագանելեացն ծիրանի կամ սեաւ ուռք կցած կարանաւ»։ Այդ ուռք կամ գնդակները, զորս տեսանք նաև պարթևական ու սասանեան շրջանաց հայ ազնուականաց վրայ[3], բաւական հին լինելու են կաթողիկոսին վրայ ևս, և ոչ անկախ ահարոնեան պատմուճանին երկու կողմնական ոսկի փառաճակներէն[4] կամ վտաւակը շրջապատող գունագոյն ճռճռաններէն[5]։*

*3. Լամբրոնացւոյն լեզուին մէջ ընդհանուր կերպով բացատրուած ու տարակուսական է գօտեւորութիւնն ալ։ Ինք չի նշանակեր՝ թէ եպիսկոպոսաց վրայ ինչպէս կը հաստատուէր կոնքեր[6]. բայց կաթողիկոսօրհնէքը զայն կը կախէ զգօտովն հայրապետին[7]. ուրեմն գէթ սա գօտևոր էր։ Եւ Սմբատ յայտնապէս կը յիշէ «զկամարն տէր Գրիգորի (Տղային), զոր (ինքն իսկ) շինեալ էր ոսկւով և մարգարտով և ակամբք». արքայավայել ճոխութիւն. և զոր իւր յաջորդը Յովհաննէս կը քանդէ ուրիշ հարստութեանց հետ և տարբեր նպատակի կը գործածէ[8]։*

*4. Ճոխութեամբ նշանաւոր եղած է միշտ հայրապետական ուրարն ալ։ Ժ դարէն հայրապետանոցին սպասուց մէջ յիշուեցաւ Ուխտանիսէ «վակաս կաթողիկոսին մետաքսեայ, կազմեալ յականց և յոսկւոյ և ի մարգարտէ[9]»։ Եւ կաթողիկոսօրհնէքը նորընտիր հայրապետին վրայ կը դնէ «ուսանոց ոսկեթել զպարանոցաւն, փրկչական և Աստուածածնի և սրբոց հայրապետացն կերպագրութեամբ քանդուածեալ»։ Այս է Գոշին յիշատակածն ալ, «փակեղն զերկոսին ուսաւքն[10]»։ Անանիա Մոկացին կ'աւանդէ պատմուած Ոսկեբերանէ՝ թէ Տրդատ կը պատուէ Լուսաւորիչը «խորաշքեղ զարդիւք, համգունակ Ահարոնի քահանայապետի վակասակիր երկակի վեց (= 12) ակամբ շարառութեամբ, բերել զօրինակ ապագայիցն զքահանայապետին Քրիստոսի[11]». և որ իրականէն առնուած գաղափար մ'է անշուշտ։ Եւ այս ու նախորդ նկարագրութեանց մէջ ուրարին վրայ ակներև է ահարոնեան պերճ վակասին նմանելու ձկտումը։*

*5. Կաթողիկոսի ճափորտն ի սկզբան զանազանուելու չէ եպիսկոպոսականէն, ոչ մեր և ոչ Յունաց քով. ինչպէս իրօք ալ կը*

1. Հմմտ. տաս՝ 378։ — 2. Դատ. Միխ։ — 3. Աստ՝ 82, 139։ — 4. Հմմտ. տաս՝ 149։ — 5. Ելք, ԻԸ, 13–14, 33. ԼԹ, 22։ — 6. Աստ՝ 383. — 7. Աստ՝ 398։ — 8. Սմբ. 115։ — 9. Աստ՝ 314։ — 10. Դատ. Միխ։ — 11. Մոկ. Ապս. 136։

տեսնուի տակաւին բարսեղեան վկայաբանութեան բոլոր հայրապետաց վրայ։ Սեանայ հայրը Մաշտոց անոր փորանկեալ ձեւը ցոյց կու տար և ոչ զարդերը, երբ կը գրէր Գէորգ կաթողիկոսի մասին, թէ «Նափորտն սրբութեան փակէ զնա շուրջանակի[1]»։ Այսպէս է արդարև մեր 125 Ձևի նափորտն ալ։ Իսկ իր նիւթը «բեհեզեայ» է սահակեան Տեսլեան մէջ[2]. այս ինքն ազնուագոյն պաստառէ։ Յետոյ կը հնարեն Յոյները բազմախաչ (πολιςτάυρος) կոչուածը, սեպհականելով պատրիարքաց և արքեպիսկոպոսաց[3], ինչպէս կը տեսնենք զանազան նկարներու մէջ, Ֆլեօրեայ քով[4], Ս. Մարկոսի մկրտարանին չորս հայրապետաց վրայ[5], և այլն։ Արքեպիսկոպոսաց աստիճանակից նկատուելով Հայոց կաթողիկոսը[6], ինքն ալ կ'իւրացնէ շուտով նոյն նափորտը։ Լամբրոնացին կ'աւանդէ՝ թէ Գր. Վկայասէր իւր հարազատը Շնորհալին կաթողիկոսացընելու պահուն «Բազմախաչեանն զգեցուցանէր[7]»։ Սմբատ այսպէս կը նկարագրէ հայրապետիս զգեցածին նիւթը. «զօքսինտի զվլաս նափորտն տէր Ներսեսի՝ որ շար ոսկւով կարած էր, որ զէտ ձուլածոյն կանգնէր[8]»։ Օքսինտի[9] համեմատելի է յն. ὀξυντὴρ (սրիչ) բառին հետ, որ այժմ կը նշանակէ հերիւն ասղնեգործաց. և վրան՝ միջնադարեան βλάτιονին (ծիրանեգոյն). որով կ'ունենանք շուրջառ մ'ասղնեգործ ու ծիրանի,



Ձև 127. Լուսաւորիչ (1356)

1. Յհ. կթ. 188. — 2. Աստ՝ 321. — 3. Լմբ. Պտ. 82, 83. — 4. Fleur. VII, 543. — 5. Աստ՝ 383. — 6. Լմբ. Պտ. 83. — 7. Լմբ. Շնրհ. — 8. Սմբ. 130. — 9. Վենետ. օր. Աբրահամ երիցու կը կարդայ «զօքսին տօիզ»։

առատօրէն ոսկեհիւս։ Կաթողիկոսօրհնէքն ալ կը սահմանէ զայն՝ «Նափորտ բազմախաչ՝ նկարուք և անկիւնիւք զարդարած»։ Անկիւնք կոչուածը չորս չորս անկիւնաւոր գծիկներ են, որոցմէ իւրաքանչիւր խաչ ունի իր ղատարկ կողմերուն դէմ, տեսակ մ'ընդհատուած քառակուսի շրջանակի պէս. ինչ որ կը տեսնուի յունական նկարուց[1] և հայկականաց մէջ ալ, ինչպէս Մոնակոյի Լուսաւորչին 1427էն[2], Տէր Իսրայելի Ցայսմաւուրաց վենետկեան 1428ի օրինակի ս. Բարսղին և մեր 128 Զևին։ Եւ կարծեմ այս անկիւնք հայրապետականին սեպհական կը մնան միշտ՝ բազմախաչին ընդհանրանալէն վերջ ևս, որով և անտես այլոց վրայ (հմմտ. Զև 122)։

6. Լամբրոնացին մեր կաթողիկոսին աստիճանակից արքեպիսկոպոսաց կը վերագրէ «եմիփորոն չորեքկին[3]», կամ չորս խաչով։ Սակայն իրականին մէջ տարբեր էր այդ թիւը, ինչպէս տեսանք[4] և աւելի մանր ալ պիտի տեսնենք յետոյ։ Կաթողիկոսօրհնէքը չէ յիշեր զայս մոռացութեամբ, մինչդեռ մեր 125 Զևի Լուսաւորչին վրայ կայ, և տակաւին թոյլ ձգուած է հին ոճով (հմմտ. Զև 120)։ Եւ առաջակողմէն միայն ցոյց կու տայ արդէն չորս խաչեր, որոցմէ յայտնի է թէ թիկանց կողմն ալ կար։ Անոր գործածութիւնը կը պատմուի նաև Շնորհալւոյն կողմանէ, որուն Գր. Վկայասէր «եմիփորոն գլանջօքն ածէր[5]»։

7. Բազպանք՝ եպիսկոպոսաց պէս[6] հայրապետին ալ սեպհական էին, ինչպէս յետոյ աւելի յայտնի կը հանդիպինք անոր։

8. Նոյնպէս էր և կոնքեռը, որոյ մասին կաթողիկոսօրհնէքը կ'ըսէ. «կոնքեռն զգօտոյն ի ձախու կողմանն, նոյնպէս ոսկեթել նկարիւք և պատկերօք քանդակած»։ Ձախակողմը, նոյն աղբիւրէն կրկնուած նաև եպիսկոպոսաց վրայ[7], հակառակ է սովորականին[8] և նոյն ինքն կաթողիկոսականին՝ զոր կը տեսնենք հետագայ պատկերաց մէջ, և հաւանօրէն արդիւնք սովորութեանց անհաւասարութեան մը։

9. Կաթողիկոսօրհնէքը կը յարէ «և այլ կոնքեռ կտաւեայ զմատեանցն[9] միջոյ», հաւանօրէն իւր շարադրութեան ժամանակի սովորութեամբ, որ կը յիշեցնէ մեր 122 Զևի վրայ տեսածնիս, որ նոյնպէս ձեռաց մէջ բռնուած է. ինչպէս արևմտեան հին նկարներու մէջ ալ կայ այդ ոճը, երիզաձև ձեռնուրարը մատներէն կախել[10]։

1. Fleur. VII, 543։ — 2. Գթրճ. Պտր. 343։ — 3. Լմբ. Պտ. 82։ — 4. Աստ՝ 382։ — 5. Լմբ. Շնրհ։ — 6. Աստ՝ 380։ — 7. Աստ՝ 384։ — 8. Աստ՝ 383, և Բ չրք. 14։ — 9. Այսպէս ըստ վենետկեան օր. 1345ի և 1365ի, մինչ Թ. 1141 նոտրագիրն ունի «զմատանցն»։ — 10. Fleur. VII, տխ. 704–707։

10. *Սովորական կօշիկն ալ կը փոխուի սրբազան հանդերձին հետ, և կաթողիկոսօրհնէքը կը զգեցնէ արարողական «կօշիկ յոտսն»։*

11. *Նկատեցինք և խաչը՝ Լուսաւորչի ձեռաց մէջ[1], զոր ըստ պարագային անտարակոյս կրեցին անոր յաջորդներն ալ՝ հաւասար եպիսկոպոսաց։ Պետրոս Գետադարձի համար կը պատմուի՝ թէ Ջրօրհնեաց պահուն բռնած էր զայն, և «հարկանէր երեք անգամ զսուրբ խաչն ի գետն[2]»։ Շնորհալին եպիսկոպոս մը կը ձեռնադրէ ըստ իւր վկայութեան՝ «կենսակիր խաչիւ և աստուածախօս աւետարանաւ[3]», թէև ուրիշներ չեն յիշեր խաչն այս պարագային[4]։ Անանիա Մոկացին Աղուանից կաթողիկոս ձեռնադրելով զԴաւիթ, անոր տուինք, կ'ըսէ, «նշան ոսկեղէն յոյժ ծանրագին, ընդելուզեալ մարգարտովք և զարդարեալ ակամբք պատուականօք[5]»։ Եւ Սմբատ կը յիշէ «զձոյլ ոսկի սուրբ նշանն տէր Գրիգորիսի» Տղային, որոյ վրայ յեռած էին «ակունս և մարգարիտս շատ[6]»։ Ասոցմէ ոմանք գուցէ գաւազանին կ'ակնարկեն։ Անոր գործածութիւնը սովորական չի թուիր պատարագի պահուն, և չկայ հետագայ նկարներու մէջ ևս. ու շատ ուշ յիշուած տեսանք ժամարար քահանային ձեռքն ալ[7]։*

12. *Կաթողիկոսը նոյնպէս ունէր գաւազանը, որով աւանդութիւնը Կորիւթի մէջ թողուած կը համարի Լուսաւորչէն «զգաւազանն իւր[8]». կամ ըստ Թովմայի՝ ի Ջորոյ վանս «զգաւազան հովուական[9]»։ Ուխտանէս կը յիշէ «զգաւազանն» Մովսէս Եղիվարդեցւոյ[10]։ Բարսեղ՝ գահընկէց Թէոդորոսէ կ'առնու ուրիշ զարդուց հետ՝ «զգաւազանն» ալ[11]։ Իսկ Գրիգորիս «գաւազան ի ձեռսն դնէր» Շնորհալւոյն[12]։ Նոյնպէս եպիսկոպոսաց ժողովը կը ձեռնադրէ զԳրիգոր Տղայ, «Զնոյն գաւազան պատուոյ տուեալ[13]»։ Ձեռքն առնուլ՝ ձեռնադրութեան պահուն կը լինէր, թէև անյիշատակ կաթողիկոսօրհնէից մէջ. և Բարսեղ կթղ. զայն բռնած է գիշերապաշտաման մը պահուն ևս Կարմիր վանուց մէջ[14]։ Իսկ ուրիշ ժամանակ հայրապետին առջևէն կը տարուէր՝ եպիսկոպոսականին պէս[15], ինչպէս տեսանք Պետրոս Գետադարձինը Կոստանդնուպոլսոյ մէջ[16]. հաստատուած նաև Վ. Սիւնեցւոյ ձեռնարկէն առ Անանիա Մոկացի՝ թէ «դուք սուրբ նշանով ի մեզ խոնարհեցայք և եկիք[17]»։*

1. Աստ՝ 385. — 2. Յշկ. Ա, 109. — 3. Շնրհ. Ընդհ. 219. — 4. Ագթ. 604. Լմր. Պտ. 205. — 5. Մոկ. Ապս. 144. — 6. Սմբ. 115. — 7. Աստ՝ 370. — 8. Խոր. 302. — 9. Արծ. 68. — 10. Աստ՝ 314. — 11. Ուռ. ՃԼԴ. — 12. Լմր. Շնրհ. — 13. Անդ. — 14. Հյպտ. 378. — 15. Աստ՝ 385. — 16. Աստ՝ 340. — 17. Մոկ. Ապս. 143.

*վերջնոյս կ'երկրպագէ կայսրը[1]. ապացոյց՝ թէ խաչագլուխ էր նման եպիսկոպոսականին, որով նաև Բարսեղ կթղ. յիշեալ առթիւ իւր գաւազանը կընար շնորհել Ստեփանոսի՝ զոր եպիսկոպոս կը ձեռնադրէ. և խաչագլխութեան վկայ է Կոստանդնի կրածն ալ (Ձև* 111)։ *Միախաչ է այս վերջինը, և խաչակրկին գաւազանք անծանօթ են եւրոպական հնախօսութեան մէջ անգամ, թէպէտ այս ձևով խաչեր կը գտնուին մնացած հնէն[2]։ Այսպէս Ֆլեօրի կու տայ պապի մը պատկերը* 1389 *թուականէն[3], որ ձախովը բռնած է միախաչ գաւազան մը, խաչին թևերը թեթևակի կռնաձև, մեր* 111 *Ձևին պէս։ — Իսկ կաթողիկոսականին ճոխութեան նկատմամբ դիտելի է Բարսեղին՝ «զարդարեալ յոսկւոյ և յարծաթոյ[4]»։ Եւ Սիւնեաց պատմիչը՝ Մուշէինը կ'երևակայէ «զոսկիափայլ նշանն աստուածընկալ արեգակնակերպ նշողիւք», զոր անոր «զառաջեաւ» կը տանէին[5]։*

*Լամբրոնացին կը պատմէ՝ թէ փոքր Վկայասէր քօղին հետ Հռովմէն գաւազան ալ կ'ընդունի. «Նա (պապը) գաւազան և քող յղեալ[6]»։ Այդ գաւազանը լատինական կորագլո՞ւխն էր արդեօք, որ հոս առաջին անգամ կը մտնէր ի Հայս, և զոր յետոյ եպիսկոպոսունք ալ ստացան՝ ըսինք[7], թէ տարբեր ձև մը, խնդրոյ նիւթ է՝ որուն կը դառնանք յետոյ։*

*Բ Շրջան։ — Հարուստ ենք հոս պատկերներով, որոնք մեր գլխաւոր աղբիւրը կը կազմեն, և բոլորին նիւթն է Լուսաւորիչը, նկարուած իւրաքանչիւր ժամանակի հայրապետական տարազով։ Ադոնք են. Ձև* 126, *հանուած Կոստանդնի ծանօթ պահարանէն[8]. Ձև* 127, *վենետկեան Նախայիշեալ* 1356*ի ճաշոցէն[9], գրուած ի Սուրղաթ. Ձև* 128, *Էջմիածնի դրօշէն, որոյ շինութիւնը* 1462 *թուականէն վեր հանած եմ այլուր[10]. Ձև* 129, *ԺԷ դարու, յաւելուած ԲՀ. արքայեղբօր ծանօթ աւետարանին մէջ[11]. Ձև* 130 *և* 131, *վենետկեան* 1652*ի շարականէն՝ օրինակուած ի Կոստանդնուպոլիս. և ուրիշներ՝ զորս պիտի յիշեմ առանց յառաջ բերելու։*

1. *Կաթողիկոսական քողը կը մնայ տակաւին, բայց իւր գործածութիւնը սահմանափակուած է հիմայ հայրապետի ձեռնադրութեան հանդիսին մէջ, ինչպէս կը ցուցնեն նոյն կարգի վենետկեան* 1345*ի,* 1365*ի և Նոտրագիր օրինակները, և մեր* 126 *Ձևը։ Իսկ ուրիշ պաշ-*

1. Որ. ՀԳ. — 2. Schl. Emp. 277, 421 են. — 3. Fleur. VIII, 142. տխ. 669. — 4. Հյպտ. 378. — 5. Օրբ. 53. — 6. Անդ՝ 594. — 7. Անդ՝ 392. — 8. Անդ՝ 234. — 9. Անդ՝ 352. — 10. Դրօշ. 97. — 11. Անդ՝ 257.



Ձև 128. Դրօշ Էջմիածնի (1441էն նին)

տամանց մէջ այլ ևս չի տեսնուիր, որով Գանձակեցի պատմիչը 1241ին խօսելով ԺԱ դարու մասին, կրնար ըսել՝ թէ «քողով վարէին յայնժամ կաթողիկոսք[1]», և այժմ ոչ ևս։ Ու «ծալեալ վուշ դաստառակաւ և եղեալ ի պահապան կտաւեայ», ինչպէս տէր

1. Ատ՝ 395։

*Իսրայելի Ցայսմաւուրքը[1] կ'երևակայէ Լուսաւորչինը, կը սպասէր հայրապետանոցին մէջ, որպէս զի օր մը ծածկէր յաջորդ նորընտիր կաթողիկոսին գլուխը։*

2. *Այդ ժամանակամիջոցին մէջ* (1037–1241) *քողին յաջորդեր էր խաչանիշ կնկուղը, ինչպէս եպիսկոպոսական սքողին ալ[2], և կ'երևի* 127 *Ձևին մէջ՝ սև գունով, և խաչը ճերմակ։ Այս է՝ որ կը գործածուի հիմայ Ջրօրհնեաց և ուրիշ արարողութեանց առթիւ, զորս կը նկատէ Կիրակոս, ինչպէս և քարոզութեան պահուն՝ զոր կը ներկայացնէ յիշեալ Ձևը[3]. և որ կ'երևի դեռ (անխաչ) վենետկեան* 1629*ի սաղմոսարանին մէջ, գրուած ի Կոստանդնուպոլիս, «Հաւատով խոստովանիմին» առջև, բազմախաչ նափորտով հայրապետի մը գլխին, որ անշուշտ Շնորհալին է, քան զինք երէց սպիտակախառն հարազատին հետ միասին։*

3. *Կնկղոյն ժամանակակից ու պաշտօնակից կ'ելնէ լատինական միթրը, զոր նախ Ղուկիոս Գ պապը* 1185*ին նուէր կը ղրկէ Գրիգոր Տղային, ինչպէս կ'աւանդէ Լամբրոնացին. և «ընկալեալ կաթողիկոսին... զխոյրն ի լրումն պատուոյ իւրոյ, գոհացաւ զԱստուծոյ[4]»։ Նոյն ինքն նուիրատուն նամակին մէջ կը կոչէ զայն՝ «խոյր զիմոյ գլխոյս[5]». ոչ նմանը, այլ իր գործածածներէն իսկ, Վարդանէն և Այրիվանեցիէն բացատրուած «զպսակն» բառով[6]։ Պատմիչս սովորութենէ առնլով, — զի պապին նամակին մէջ չկայ, — կը նշանակէ՝ իբր նուիրատուին բերանէն՝ խուրին նպատակն ալ. «զի պատարագեսցէ» անով[7]։ Այսպէս նաև Գրիգոր Թ պապը* 1234*ին Ա Կոստանդնի պարգև կը յղէ «զխոյր»* (mitram), *ինչպէս կը կարդանք Գալանոսի քով[8]։ Յետոյ* 1289*ին կը տեսնենք զԿոստանդին Բ հագած պատարագի հանդերձը, «և զբագն պատուական եդեալ ի գլուխն[9]»։ Եպիսկոպոսօրհնէից մէջ հայրապետն ընծայելոյն հարցփորձը կ'ընէ «միթր ի գլուխն». այնքան ընդարձակուած էր իր գործածութիւնը։ Եւ Արճիշեցին կը զգեստաւորէ կաթողիկոսը՝ «խոյր ի գլուխն[10]»։*

*Միթրը՝ հաւանօրէն ԺԵ դարէն սկսեալ՝ կը վտարէ կնկուղը սըրբազան հանդերձից դասէն, թէ հայրապետին և թէ եպիսկոպոսաց վրայ, և ինք կը բռնէ անոր տեղը բոլոր պաշտամանց մէջ։ Այսպէս Լուսաւորիչը* 128 *Ձևի դրօշին վրայ (Տրդատայ ու Հռիփսիմէի հետ), և* 130 *ու* 131 *Ձևերու մէջ՝ պատարագչի վիճակէն դուրս է, և*

1. Աստ՝ 394։ — 2. Աստ՝ 386։ — 3. Հմմտ. և մեր 119 Ձևը։ — 4. Հյպտ. 431։ — 5. Ձմչ. Գ, 144։ — 6. Վրդ. Պտ. 134 Այրվ. 64։ — 7. Վրդ. 134։ — 8. Գալ. Ա, 376։ — 9. Օրբ. 320։ — 10. Արճշ. 20, 22։




Ը· — ԹԱԳԱԶԱՐԴ ՀԱՅՐԱՊԵՏՆԵՐ

1. Ս. Ներսէս Պարթև (1476)։ — 2. Հայրապետ մը (1578)։ — 3. Գրիգոր վկայասէր փո՛քր (1629)։ — 4. Ս. Լուսաւորիչ (1652)։ — 5. Նոյն Ս. Գրիգոր (1677)։

Աղբիւրներն ու տեղեկութիւնք կը գտնուին յէջ 403–404։ Թիւ 2 պատկերի թագին կողերը բնագրին մէջ գրեթէ ուղիղ են գծով, մինչ հոս փորագրչէն գոգացած։ Դժուարին է ճշդել՝ թէ հայրապետական թագին այս զանազանութիւնք իրականէ՞ն առնուած են, թէ նկարչաց ազատութիւնն ալ բաժին մ'ունի անոնց մէջ։

միթրը կը կրէ։ Փիլիպպոս եպս. իբր 1630ին[1] անդաստան կ'օրհնէ՝ զգեստաւորած և «ի գլուխն զթագն[2]»։ Կը զարտուղի յիշեալ 1629ի սաղմոսին կնկղաւոր Շնորհալին, որ հաւանօրէն հետևողութիւն է հին նկարներու կամ հին ծանօթութեան։

Ինչպէս եպիսկոպոսաց, նաև հայրապետին վրայ իւր տակաւ յեղաշրջութիւնը կ'ունենայ միթրը, լատինականին ոճով և ազդեցութեամբ, ինչպէս կը տեսնենք մեր 128, 130 և 131 Ձևերու մէջ հետ զհետէ բարձրացած։ Ոսկեգոյն է 130ը, և մանիշակ՝ 131ը. և կեդրոնի գիծն ու վերին եզերքը մարգարտազարդ։

4. Սկսեալ ԺԵ դարէն, մեր նկարներու մէջ կը հանդիպինք նաև հայրապետական ճշգրիտ թագի մը, որ կը նմանի արքայականին, պսակաձև, դէպ ի վեր աւելի լայն, իբր խարիսխ ունենալով մեր 129 Ձևինը՝ ԺԷ դարու, յաւելուած ԹՀ. արքայեղբօր աւետարանին մէջ[3], (հոգեգալստեան պատկերին ներքև), որ ոսկեգոյն է, ծածկուած կարմիր ու կապոյտ քարերով, և ստորոտը շրջանակուած մարգարտով։ Ժամանակագրական կարգով հնագոյն է վենետկեան 1476ի շարականը, գրուած ի Վայոց Ձոր, ուր ս. Ներսէս նկարուած է նոյնպիսի թագով մը, (դժբախտաբար կիսէն աւելի մկնակեր), շինուած կարմիր մարգարտազարդ պաստառէ, որ թագի ձևով ամփոփուած է գլխին վրայ, և կ'իջնէ կը ծածկէ ականջներն ու ծոծրակը. իսկ վերև կեդրոնը գորշ խաչ մ'ունի։ Խառնուրդ մ'է հայրապետական քողին ու խաչածայր խուրի մը։ Այս նկարին հետ կը զուգընթանայ յիշատակարան մը, ժամանակակից Սսոյ Կարապետ կաթողիկոսին, որոյ համար կ'ըսէ՝ թէ «զթագն արքայական սուրբ արփիաւորչին մերոյ ի գլուխ եդեալ և հրաշալի պատուով պսակեալ և յաջորդ սուրբ Լուսաւորչին յաթոռ հաստատեալ[4]» 1447ին[5]։ Հայրապետական աթոռոյ բաժանման (1441ին) մօտերն է, ուր երկու աթոռակալաց մէջ մրցութիւն մը կը մտնէ զիրար գերազանցելու. և այդ հոգին անոցմէ միոյն կը թելադրէ «արքայական թագի» մը գաղափարն ալ, զոր ապա հակառակորդը կը կրկնէ։ Եւ այսպէս կ'ունենանք հետ զհետէ կաթողիկոսական դէմքեր նոյն թագով, որ դարէ դար փոփոխութիւններ ալ կը կրէ, զարգացնելով իւր նիւթն ու ձևը։

Վենետկեան 1578ի շարականին մէջ կայ հայրապետ մը, հոգեգալստեան պատկերին ներքև, որ մեր 129 Ձևի թագն ունի համակ ոսկի։ Դարձեալ վանացս 1629ի սաղմոսին կաթողիկոսներէն

1. Հմմ. Դաւր. 242. — 2. Ջաք. Պամ. Բ, ժը. — 3. Աստ՝ 257. — 4. Հյա. 575. — 5. Սիս. 218.

մին (փոքր Վկայասէրը) կը կրէ զայն նոյնպէս ոսկի, և առաջակողմէն՝ անկիւնաւոր տերևի նման ճառագայթով մը։ Նոյնպէս 1652ի շարականին մէկ Լուսաւորիչը, նոյն ոսկի և անճառագայթ թագով, վրան մարգարիտներ։ Այս բոլորը (բաց ի միոյն) մէկ ընդհանուր ձև կը ներկայացնեն, ժամանակի սովորականն իսկ։ Քիչ յետոյ սակայն Ս. Ղազարու գրչագրաց մէջ աղոնց կը յաջորդեն երեք գրապանակներ, որոց վրայ թագին ոճը կը փոխուի։ 1677ին ունի զԼուսաւորիչ թագով մը՝ զարդարուած երեք կոնաձև ճառագայթներով։ 1710ին՝ նոյնը հինգ նոյնպիսի ճառագայթով։ 1742ին՝ դարձեալ առաջնոյն ձևով։ Կարծեմ թէ այս նոր ձևը հնարողը (նմանութիւն ուրիշ արքայական նկարուց) գծագրողաց երևակայութիւնն էր, չունենալով իրական ձևը, որ դադրած կը թուի։ Այս տեղ կու տամ անոր հինգ ձևեր։

Թագին գործածութեան առիթն է հայրապետական ձեռնադրութիւնը՝ վերոյիշեալ յիշատակարանին համեմատ, յետ որոյ քողը կը զատուի թագէն ու կը կորսուի ժամանակ մը՝ ցորչափ կը մնայ թագը։ Բայց միակ առիթը լինելու չէ ձեռնադրութիւնը, դատելով թագին ստէպ գործածութենէն նկարներու վրայ։

5. Պատմուճանը[1] անփոփոխ չի պահեր կաթողիկոսօրհնէից նկարագիրը։ Մեր 127 Ձևին մէջ (1356) սպիտակ է դեռ, և կապոյտ վերջաւորով. իսկ 130ին և 131ին (1652) կանաչ և կապոյտ. մինչ վերջին գրչագրիս ուրիշ երկու Լուսաւորչացը վարդագոյն և թանձր կապոյտ են։ Ուսերը չեն տեսնուիր բնաւ. կամ ջնջուած են և կամ վերապահուած հայրապետական ձեռնադրութեան։

6. Գօտին կը շարունակէ մնալ միշտ. և անտես մեր Ձևերու մէջ, Էջմիածնի Յակոբ կաթողիկոսի կոնդակին մէջ՝ 1761էն, պահուած ի Ս. Ղազար, Լուսաւորչին վրայ ցոյց կու տայ իւր կամարակերպ լայնութիւնը։ Նոյնպէս է և ասղնեգործ նաև Շնորհալւոյն վրայ, 1788ին ի Պետերբուրգ տպուած Ընդհ. Թղթոց սկիզբը, հին ոճով դեռ կապուած ուրարին ներքև։

7. Բազպանք՝ անջատ, տարբեր պաստառով ու ճոխ, կ'երևին մեր 127 Ձևին, 1629ի սաղմոսին զոյգ հայրապետաց և 1652ի գրչագրին շատ հայրապետաց վրայ։ Իսկ ձեռնուրարը կամ «կոնքեռ կտաւեայ» բնաւ գոյութիւն չունի մեր ծանօթ Ձևերու մէջ։

8. Իւր հին ճոխութիւնը կը պահէ ուրարը. ոսկեգոյն՝ 127, 130 և 131 Ձևերու մէջ. 127ը և 1652ի գրչագրին նկարներէն երկուքը քարերով զարդարուած, և 130 ու 131 խաչերով։ 122 և

1. Արճ. 20։

*128, և 1629ի հայրապետացն անջատ են դեռ. իսկ 130, 131 և ասոնց ընկերները միացեալ են արդէն։*

*9. Շրջանիս սկիզբները տակաւին բազմախաչ է նափորտը[1], կոչուած Օրբելեանէ «պճղնաւոր փիլոն՝ որ է բազմախաչն[2]»։ Կոստանդին Բ իւր հրաժարման առթիւ կը զգենու նոյնպէս «զզգեստն հայրապետական զբազմախաչն[3]»։ Նոյնը կը հաստատեն նկարներն ալ.*



*Ձև 129. Թագապսակ կաթողիկոս (ԺԷ դար)*

*ինչպէս մեր 127 և 128 Ձևերը, մոնաքոնեան Լուսաւորիչը՝ գծուած ի Մեծոփ 1432ին[4], և 1629ի սաղմոսին հայրապետները։ Անոնց գոյնը զանազան է. սրճագոյն՝ ճերմակ յատակով (Ձև 127). Թուխ՝ սպիտակով (ուրիշ նկար մը՝ նոյն Ձևի գրչագրին մէջ). կապոյտ՝ սպիտակով (Ձև 122). դեղին՝ կարմրով, կամ մանիշակ՝ վարդագունով (Նկար 1629ի սաղմ.)։ Անկիւնները դեռ կան 128 Ձևին ու մոնաքոնեանին մէջ, բայց 127էն արդէն կը սկսին աւելորդ նկատուիլ, և չքացած են 1629ի պատկերին վրայ։ Իսկ 1652ի Լուսաւորչաց վրայ (Ձև 130, 131 ևն) խաչերն ալ ջնջուած են բոլորովին, մնալով միագոյն, կապոյտ՝ սպիտակ քառակուսի կէտերով, վարդագոյն ու կարմիր։ Եւ մինչև հոս փորանկեալ են բոլորը։*

*10. Փորիբաց շուրջառն ալ կ'երևի հիմայ հայրապետին վրայ։*

1. Արճշ. 20։ — 2. Օրբ. 79։ — 3. Նոյն՝ 320։ — 4. Գ.Թրճ. Պատ. 743։

Եպիսկոպոսօրհնէքը լատինական ազդեցութեամբ՝ կաթողիկոսին քննել կու տայ նուիրեալը՝ հագած «փորիքաց շուրջառ[1]»։ Հայ նկարչութեան անծանօթ, կայ 1761ին Յակոբ կաթող. կոնդակին Լուսաւորչի վրայ, որ իւր պատմական տեսիլքը կը տեսնէ, և կոնդակագրին, որ գլխարապետ վրդ. եպիսկոպոս կը ձեռնադրէ կարմիր վանաց։ Նկատելով որ եպիսկոպոսական շուրջառը դեռ 1730ին փորանկեալն էր[2], կրնանք ասկից մինչև յիշեալ կոնդակի միջոցին իշխող դարձած ըսել փորիքացը, նաև պատարագի մէջ։

11. Կօշիկները կարմիր են 127 ու 130 Ձևերուն, և 1629ի սաղմոսին հայրապետաց ոտքին, և Թուխ՝ 1652ի շարականին երկու Լուսաւորչաց վրայ։ Եւ 1629ի ճարտար գծագրչին վրձնին ներքև բաւական նուրբ ու սրակտուց են։ Վարդան կօշիկ ալ դրկուած կը կարծէ Ղուկիոսէ առ Գր. Տղայ, զգացնելով մեզ անոր կարևորութիւնը հայրապետական զգեստուց կարգին։

12. Ուեղի ամփոփ է եմիփորոնը 127 Ձևին մէջ, բայց տակաւին ծայրերը մեկուսի կը կախէ։ Իսկ յետոյ՝ սկսեալ 128 Ձևէն՝ կախուած ծայրը լանջաց կեդրոնը կ՚անցնի. նոյնպէս անշուշտ յետակողմէն ևս։ Նիւթը դեռ սպիտակ ու պարզ է 127ին վրայ. յետոյ կը մեծնայ յարգը, և 131ին ոսկի և մարգարտաշար կը դառնայ, թէև պարզն ալ կայ աղոր հետ՝ պէսպէս գոյներով, ինչպէս 130ը և ուրիշներ։ Ըստ Արճիշեցւոյն՝ «հինգ խաչիւք զարդարեալ» էր[3]. և Կոստանդին Բ իւր վրայ կ՚առնու «զեմիփորոնն հինգկրկին՝ որ պատրիարգացն է[4]». երկուքը տեսանելի նաև 126 Ձևին, և չորսը՝ 127ին, 128ին, 1629ի հայրապետաց, և հինգ՝ 131ի Լուսաւորչին առաջակողմէն։ Իսկ Օրբելեանն արքեպիսկոպոսաց կամ կաթողիկոսաց «եմիփորոն չորեքկին» բացատրութեամբ[5] լամբրոնեան յոյն սահմանը[6] կը կրկնէ։ Իսկ խաչերու գոյներն են. Թուխ՝ սպիտակ յատակով (Ձև 127). մանիշակագոյն՝ սպիտակով (այլ նկար նոյն գրչագրին). սև՝ ոսկւով (Ձև 131), կապուտով (130), կարմրով կամ աղօտ ճերմակով (այլ նկարք նոյն գրչագրին). Թանձր կապոյտ՝ անօսր կապուտով (1629ին)։

13. Կիլիկեցւոց Հռովմայ գահուն հետ կցորդութիւնք կը շահեցնեն մեր հայրապետաց լատինական պալիումն (pallium) ալ, որ արևելեան եմիփորոնին համազօրն էր, ինչպէս տեսանք[7], և կու գայ փոխանակել զայն ժամանակ մը Հայոց կաթողիկոսին վրայ։ Արև-

1. Աստ՝ 369։ — 2. Աստ՝ 390։ — 3. Արճ. 20, 21։ — 4. Օրբ. 320։ — 5. Նոյն՝ 79։ — 6. Լմբ. Պտ. 83։ — 7. Աստ՝ 382-3։

մտեան աշխարհի մէջ մեծ պատիւ էր զայն պապէն ընդունիլը, և նոյն գաղափարը մեր հայրապետաց ալ ընտանեցաւ։ Նախ Ղուկիոս Գ կը յղէ զայն խուրին հետ Գրիգոր Տղայի, գրելով այսպէս. «Ողջունեմ քեզ, եղբայր կաթողիկոս, պալլիումն՝ որ է առաջին ամենայն պատուոյ», և այլն[1]։ Լամբրոնացին կը յարէ. «Եւ ընկալեալ կաթողիկոսին սրբոյ զպատուական պալլիումն՝... գոհացաւ զԱստուծոյ[2]»։ Իսկ Վարդան պապին բերանէն կը կոչէ «զիմ վականն[3]», և Մխ. Այրիվանեցին՝ «զվակասն[4]»։ Յետոյ Գրիգոր Ապիրատ ինքն իսկ կը խնդրէ թղթով նոյն հայրապետէն, «զի արժանի համարեսջիք յղել մեզ՝ ի յիշատակ սիրոյ առաքելական աթոռոյն սրբոյ՝ զմատանի, զխոյր և զպալլիումն». և պապն 1202ին երկու կարդինալաց՝ Սոփրեդի ու Պետրոսի ձեռքով, որ Պաղեստին կ'երթային, ղրկեց վերջինը, գրելով այսպէս. «Առաքեմք զպալլիումն, այսինքն զնշանակ լրութեան քահանայապետական պաշտաման», որպէս զի «հանդիսապէս աւանդեսցի քեզ[5]» ըստ սովորութեան, որ կ'երևի միշտ։


Զև 130. Շողակաթը (1652)

Ապիրատի յաջորդն Յովհաննէս 1205ին ինքն ալ կ'ընդունի՝ Պետրոս կարդ. Նուիրակի ձեռամբ, ինչպէս կը զգացնէ առ նոյն քահանայապետ թղթին մէջ. «Մեծաշուք հանդիսիւ ընկալաք զպալլիումն առաքեալ ի ձերմէ երանութենէն[6]»։ Կոստանդին Ա 1220ին յաջորդելով Յովհաննու, գործածեց նախորդաց ստացածները, մինչև որ մաշեցան. և յետոյ 1234ին նոր մը խնդրեց ու ստացաւ Թ Գրիգորէ,

1. Զմչ. Գ, 144, պալլիումը վրիպակաւ կը մեկնէ «վերարկու կամ շուրջառ» հնագոյն կամ արտաքին իմաստով (տես՝ 246)։ — 2. Հյպտ. 431։ — 3. Վրդ. Պտ. 134։ — 4. Այրվ. 66։ — 5. Գաւ. Ա, 355, 386։ — 6. Անդ՝ 368։

*Ինչպէս կ'իմացնէ սա իւր Թղթին մէջ. «Լուեալ խնդրուածոյ քո՝ որ ի դիմաց քոց մատուցաւ մեզ ի ձեռն հրեշտակացդ, առաքեմք զխնդրեալդ պալիումն, զի քոյն որ յառաջ ժամանակաւ յԱռաքելական աթոռոյն շնորհեցաւ նախորդացն քոց, գրեա թէ մաշեալ է արդէն առ կարի հնութեանն, որպէս պատգամաւորքդ իսկ փութացան ծանուցանել*[1]*»։ Կոստանդին վախճանելով, իւր այդ զարդն ալ միասին կը թաղուի. և երբ* 1327*ին բացին գերեզմանը, գտան «զպալլիւն խայտնին չէն», կ'ըսէ Սմբատայ յաւելուածը*[2]*։ Խայտնին մակդիրը կը նշանակէ գունաւոր ժապաւէն՝*[3] *որ կը պատէր եզերքը։ Այս չորս պալլիումներէն զատ ուրիշ ընդունուած չէ Հռովմէն. և Բենեդիկտոս ԺԴ ևս իւր* 1742*ի բանախօսութեան մէջ վերջին երեքը միայն կը թուէ*[4]*, Տղայինն անծանօթ լինելով իրեն։*

*Այդ ժամանակամիջոցին պալլիումը կը կազմուէր լայն ու փակ շրջանակէ մ'ուսերուն շուրջ, շինուածը պարզ, սպիտակ բրդէ, և քան եմիփորոնը նեղ, որոյ կեդրոնէն կը կախուէր եմիփորոնին չափ երկար ծայրերը, աւարտած ծոպով, և ամբողջին վրայ սև կամ կարմիր խաչեր, թուով հինգ կամ պակաս՝ առաջակողմէն տեսանելիքը միայն*[5]*։ Համոզուած եմ՝ որ պալլիուն կրող կաթողիկոսունք զայն չէին կրկներ արևելեան եմիփորոնով. այս պատճառաւ Կոստանդնի փոսին մէջ գտուեցաւ պալլիումը միայն՝ առանց միւսին։*

14. *Շատ հարուստ է հայրապետական կոնքեռն ալ, շինուածով ու կախելու ոճով նոյն մնացած միշտ։* 127 *Զևինը համակ ոսկեզօծ ու զարդարած է գոհարներով։* 131*ին նոյնպէս, եզերուած մարգարտով, ու կեդրոնը սև խաչ մը, մեր տպագրին մէջ անտեսանելի։* 130*ին՝ վարդագոյն ականազարդ։* 1629*ի սաղմոսին՝ աղօտ դեղին ու մարգարտայեռ։ Այս վերջինք ստորին ծայրէն ծոպ մ'ալ կը կախեն։ Եւ շրջանիս մեր բոլոր Զևերու մէջ աջակողմը կը գտնուի կոնքեռը։*

15. *Կարևոր է հիմայ մատանին ևս, որոյ յաճախ յիշատակութեանց կը հանդիպինք։ Ժ դարուն Զորոյ վանուց մէջ կը պահէին Լուսաւորչին ընծայուած «զմատանին պատկերեալ» կամ քանդակաւոր*[6]*։ Տեսանք նաև Բարսեղ կաթողիկոսի մատանին*[7]*, զոր կը կրէ ժամերգութեան պահուն, և զոր կը դնէ բուն «ի մատն» Ստեփանոսի*[8]*։ Սակայն ոչ մէկ ապացոյց չունինք հաստատելու համար՝*

1. Գալ. Ա, 375-6։ — 2. Սմբ. 130։ — 3. Աստ՝ 268. Սիս. 232։ — 4. Սիւնհ. 1911, 629-30։ — 5. Fleur. VII, 588. VIII, 648 են. Braun, 131-2։ — 6. Արծ. 68։ — 7. Աստ՝ 340։ — 8. Հյպտ. 378։

*Թէ այդ ժամանակ մատանին կը գործածուէր նաև սրբազան հանդերձին հետ ու պատարագի մէջ։ Յոյները չունէին և կը դատապարտէին՝ ըսինք՝ այդ սովորոյթը Լատինաց վրայ*[1]*։ Հայք անոնց հետևող էին անտարակոյս մինչև արևմտեան ազդեցութիւնը, որ կը սկսի դէպ ի վերջերը ԺԲ դարու։ Վարդան՝ Ղուկիոսի առ Տղայն պարգևաց մէջ կը յիշէ և գայս, որպէս զի «պատարագեսցէ մատանեաւ հանդերձ*[2]*». բայց կը թուի սովորութենէն ազդուած. զի պարգևատուին նամակը չէ յիշած մատանին։*

*Այնուհետև ծանօթ են ուրիշ նոր մատանիներ ևս։ Կոստանդին Բ երբ 1290ին կը հրաժարէր աթոռէն, զգեցաւ հայրապետական հանդերձը, անոր հետ «զվաւերականն մեծագին ածեալ ի մատն», և յետոյ զգեստին հետ «եհան ի մատնէն և զծանրագին մատանին», թողլով զայն յաջորդին*[3]*։ Կանչոյ իշխանն Օշին նուէր կը յղէ նոյնպիսի մատանի մը Գր. Անաւարզեցւոյն, բացատրելով անոր իմաստն ու նկարագիրը. «Մատանիս այս շնորհաւոր քեզ հըրաւէր հասցէ ի Տէր, — Ի գուշակ այս պետութեան լինել Հայոց հովիւ և տէր. — Ոսկին որ ման առեալ՝*[4]* ըզժողովուրդ քո ցուցանէր, — Եւ ակնըդ պատուական ըզմաքրութիւնդ արտայայտէր*[5]*»։ Յիշեցի Հռովմայ գահէն մատանւոյ ստացումն ալ, և Կիրակոս Վիրապեցւոյն կրածը*[6]*։ Հուսկ՝ եպիսկոպոսըն-*



*Ձև* 131. *Տեսիլ խոր վիրապին* (1652)

1. Աստ՝ 336։ — 2. Վրդ. Պտ. 134։ — 3. Օրբ. 321։ — 4. Որ է օղակը։ — 5. Զմչ. Գ, 289։ — 6. Աստ՝ 340։

*նէքն ուրիշ զգեստուց հետ հայրապետին դնել կու տայ «և մատանի ի ձեռին»։*

16. *Այս շրջանիս՝ գաւազանն աւելի սերտ կը տեսնուի կաթողիկոսին ձեռքը, և սերտիւ կապուած է սրբազան հանդերձին, մնալով առջևէն տանելու սովորոյթն ալ։ Ա կոստանդնի հետ թաղած էին «զգաւազանն՝» միւս հայրապետական հանդերձից հետ[1]։ Բ կոստանդին հրաժարման պահուն բռնած էր «զգաւազանն[2]»։ Տէր Իսրայելի Ցայսմաւուրքը՝[3] հանգուցեալ Լուսաւորչի մարմինը կը նկարագրէ՝ «նստեալ որպէս կենդանի... և գաւազան ի ձախու ձեռին՝ հաստատելով ի վերայ ծնկացն», և աջը կարկառած։ Եպիսկոպոսօրհնէքը կաթողիկոսին հարցափորձել կու տայ նուիրեալը՝ «գաւազան ի ձեռինն» բռնած։ Եւ Յովհաննէս Կօլօտիկ յափշտակեր էր գաւազանն ուղղակի «ի ձեռաց» Վիրապեցւոյն[4]։ Նոյնը կը հաստատեն մեր 130 և 131 պատկերներն ալ։*

*Ի՞նչ ձև ունէր Հայոց կաթողիկոսին Հռոմէն ստացած գաւազանը[5]։ Եթէ կորագլուխ ճոկանն էր, շուտով ջնջուեր է, ինչպէս կը հաստատէ Սմբատայ յաւելուածը, երբ ըսելով՝ թէ Հռովմայ հայրապետին առջևէն «ի գաւազանի տեղ ձոկան» կը տանին[6], կը յարէ՝ թէ Հայոց կաթողիկոսին «տանին խաչ ձողով և գաւազան, (որ գուշակէ) թէ է եպիսկոպոսապետ (խաչով) և վարդապետ[7]» գաւազանով։ Ուրեմն վերջինս տարբեր ճոկանէն, հաւասար էր տակաւին վարդապետական խաչագլխին[8]. և ճոկանն անգործածելի դարձած, և կամ լոկ իբր յիշատակ ընդունուած ու պահուած էր։ Սմբատայ յաւելուածը կը յիշէ ուրիշ պարագայ մ՚ալ, թէ Երուսաղեմի հայրապետին գաւազանէն՝ «դաստառակի տեղ կախի ի գլուխն՝ եպիսկոպոսի կոնքեռն, որ գուշակէ՝ թէ առաջին եպիսկոպոսութիւնն յԵրուսաղէմ եղաւ[9]»։ Կը հետևի՝ որ դաստառակը Հայոց հայրապետի գաւազանին յատուկ էր, ինչ որ տեսանք նաև վարդապետականին վրայ[10]. և որ դարձեալ արևմտեան գիտ է և կ՚երևի հոն ԺԳ–ԺԴ դարերուն մէջ[11], որոյ հետ ժամանակակից է մերն ալ, առանց սակայն հաստատուն վիճակ մ՚ունենալու. որով և բացակայ է մեր 130 և 131 Ձևերէն, ինչպէս Յոյներն ալ չեն գործածեր զայն մինչև ցայսօր։*

*Տաթևացւոյն գրչին ներքև աւելի որոշ նկարագրուած կը գտնենք հայրապետական գաւազանին ձևը. այն է «բոլոր, որ նշանակէ զիշ-*

1. Սմբ. 130։ — 2. Օրբ. 321։ — 3. Աստ՝ 394։ — 4. Աստ՝ 340։ — 5. Աստ՝ 400։ — 6. Աստ՝ 392։ — 7. Սմբ. 135։ — 8. Աստ՝ 375։ — 9. Սմբ. 134։ — 10. Աստ՝ 374։ — 11. Fleur. VIII, 631. Dem. 305։

խանութիւնն ի բոլոր յազգս իւր, և ոչ որպէս եպիսկոպոսի կեռ և միակուսի[1]»։ Հոս ալ յայտնի է՝ թէ ճոկանը կաթողիկոսին չէր պատկաներ։ Ուսկի՞ց էր գնդագլուխը։ Գիտենք՝ թէ Հռովմայ հայրապետաց ընտանի էր այս ձևը։ Մեծն Գրիգորի (Զ դար) կարծուած կենդանագիր մը, և ուրիշ մը Գ կղեմայ (ԺԲ դար), ունին խաչագլուխ գաւազաններ, որոց խաչը նստած է փոքրիկ գնդի մը վրայ[2]։ Այդ գունդն աւելի մեծ և անխաչ է Բ Գեղասիոսի (1118) գաւազանին ծայրը[3], ինչպէս էր Հայոցն ալ, դատելով Տաթևացւոյն չյիշելէ խաչը։ Նոյնը կ՚երևի նաև Ֆլեօրեայ նկարներէն միոյն մէջ, բարձր եկեղեցականի մը ձեռքը[4]։ Ասոր վրայ ակներև է արևմտեան թագաւորաց համանման մականին ազդեցութիւնը, որուն ռուբինեանն ալ կ՚ենթարկուի[5]։ Եւ մեզ համար կը դառնայ անլուծանելի հարց մը, արդեօք մեր կաթողիկոսականը Հռովմէ՞ն եկաւ առ Վկայասէրը, թէ յետոյ նմանեցաւ հռովմէականին, կամ թէ Հայոց արքունիքէն ելաւ. թէև աղբիւրը միշտ նոյն է, եւրոպականը։

Արևմտեայց մէջ ԺԱ դարէն տարածուեր են սոյն T երկթև գլխով գաւազաններն ալ, որոց մասին կը խօսի, և օրինակներ ևս կու տայ Ֆլեօրի[6]։ Նոյնը ԺԵ դարուն կ՚երևի և մեր քով, ինչպէս տեսանք վարդապետաց ձեռքը[7], և զոր հայրապետն ալ կը կրէ մեր 131 Զևին մէջ։ Թէև գլուխը նման է ցպին (հմմտ. Զև 110, 134), բայց ոմանք զայն խաչին մէկ տեսակը կարծեցին՝ առանց պատմական ու համոզիչ ապացուցի[8]։

Մեր 130 Զևին մէջ ունինք դարձեալ ուրիշ գաւազան մը, որ կ՚աւարտի երկու գալարուն շուշանձևերով։ Շուշան կ՚ըսեմ՝ հաստատելով երուսաղեմացի Յովհաննէս վարդապետի մը կնքոյն յատակ պատկերին վրայ՝ 1655էն՝ զոր ունիմ, և դար մը վերջ Էջմիածնի Յակոբ կաթողիկոսի կոնդակին վրայ՝ 1761էն, ուր նոյնպէս որոշ է բացուած ծաղիկը կաթողիկոսի գաւազանին ծայրը՝ մի և նոյն ձևով։ Այս նորութեան մէջ թերևս Ահարոնի ծաղկեալ գաւազանի թելադրութիւնը կայ, զոր չգտայ արևմտեան պատկերաց մէջ։ Բայց իւր ընդհանուր ձևն յունականն է, որ յետոյ անոնց ու մեր քով ալ, ինչպէս և Ղպտաց ու Մելքիտաց, շուշանն օձերու կը փոխէ, միջին դարէն ծանօթ արևմտեայց, և զանազան ձևերով զետեղուած անոնց ճոկանին ծայրը[9]։ Այդ փոփոխութիւնն արդէն կատարուած էր ու

1. Քրզ. ժմր. 168։ — 2. Cah. IV, 168, 169։ — 3. Նոյն՝ 168։ — 4. Fleur. VIII, 651։ — 5. Աստ՝ 244։ — 6. Fleur. VIII, էջ 91–95 եւ. տխ. 644, 646, 652։ — 7. Աստ՝ 376։ — 8. Cabr. III, 3061։ — 9. Fleur. VIII, 84, 88, 104 եւ. Cah. IV, 186, 191–4, 198–214։

կը մտնէր Շնորհալւոյն Թղթոց պետերբուրգեան տպագրութեան պատկերաց մէջ՝ 1788ին. մին նոյն հայրապետին ձեռքը, այս Т ձեւով և օձի գլուխներով, առանց դաստառակին, որոյ նմաններն ալ կան յարեւմուտս՝ Ժ–ԺԱ դարերէն[1]. և միւսը՝ ս. Մեսրոպայ, օձագլուխ գաւազանն՝ շուշանագլխին պէս, և կեդրոնը խաչիկ մը. և դաստառակով հանդերձ, որ երբեմն զանց եղած էր։

17. Ձեռաց խաչն ալ կը շարունակէ իւր դերն ինչ ինչ առիթներու մէջ։ Յակոբ կթղ. իւր կոնդակին մէջ զայն աջովը բռնած է՝ ձեռնադրելու պահուն, և ձախովը գաւազանը։

---

## ԱՌԱՋԱՐԿ ՄԸ

Քաղաքակիրթ ժողովուրդներն անցեալ մ'ունին՝ պատմութեան յանձնուած, զոր կը սիրեն, որովհետև անով կը գրաւեն իրենց պատուոյ տեղն ազգերու կարգին մէջ։ Այդ անցեալը կը կազմեն իրենց նախնեաց գործերն ու աւանդութիւնք, զորս կը զննեն, կը մեծարեն, և անոնց հետ ապրիլ կ'ուզեն. որովհետև իրենց ազգային գոյութեան անհրաժեշտ տարերքն են անոնք։

Այդ աւանդութեանց մասն է նաև հանդերձը, և աւելի սրտի մօտ՝ սրբազանը, զոր տեսանք՝ յետ երկար կենդանութեան մը՝ ժամանակի խարտոցէն այլափոխուած ու խաթարուած։ Արեւմտեան եկեղեցին այսօր իւր սրբազան հնախօսութիւնը խառնած է ուսմանց ծրագրին մէջ, զայն ընտանեցնելու համար նոր սերնդին. և քահանայական հանդերձն ինչ ինչ վայրերու և ընկերութեանց մէջ դարձուցին վերջին տարիներս իւր սկզբնական կերպարանաց։

Այդ օրինակէն ու ներկայ աշխատութենէս մեզ ալ կը մնայ գործնական դաս մը հանել։ Տեսանք արեւմտեան փոքրիկ շուրջառը շատ ուշ գրուած հին փորանկեալին տեղը պատարագին մէջ, զոր Լատինք անգամ չեն գործածեր այդ առթիւ։ Տեսանք սաղաւարտին թաթարականութիւնը, հակառակ առաքելական ազնուական գլխաբացութեան։ Ունինք քմհ. ուրարին թեւոց անտեղի կցումն իրարու. սարկաւագաց պատմուճանին գրապանաց տարապայման ընդլայնումը. ուրարին կախելու կերպը՝ այժմեան աշխարհիկ ուսընդանութ ոճով կամ եմիփորոնին պէս պատելով. եպիսկոպոսական եկամուտ լան-

1. Cah. IV, 175, 177.

ջախաչ մը, անծանօթ հնութեան մէջ. և ուրիշ շատ նորոյթներ, որոնք իրաւունք չունէին ջնջելու իրենց բազմադարեան հնութեամբ և ս. Հարց գործածութեամբ նուիրական դարձած ձևերը։

Եւ կը խորհիմ. ինչո՞ւ այժմ ևս չմերձենանք աստուածային պաշտամանց՝ Լուսաւորչի, Սահակայ, Շնորհալւոյն և անոնց պաշտօնէից տարազներով։ Ինչո՞ւ չկարենանք վկայել՝ թէ անոնց բարեպաշտութեան հետ ժառանգորդներ ենք նաև անոնց աստուածպաշտական արտայայտութեանց։ Եթէ ցարդ պարզմտօրէն կը կարծէինք ունենալ անոնց հանդերձը, հիմայ այդ պատրանքը կը ցրուի, և կը հնչէ ժամը՝ դարձնելու մեր աչքերն ազնուական հնութեան։

Երկու կերպ կարելի է վերադարձն անոր։ Մին՝ ամփոփուելով հնագոյն ձևին մէջ, և մոռնալով ամէն յետսամուտ նորութիւն։ Եւ միւսը՝ պահելով նախնեաց ձեռքով ընդունուած հետագայ փոփոխումներն ալ, և կապելով զանոնք այլ և այլ պաշտամանց հետ, որով կենդանի մնայ մեր եկեղեցական զգեստուց ամբողջ պատմութիւնը։

Այս ծրագիրս կը թողում ազգայնոցս հայրենասէր ու խոհական ընտրողութեան։



# ԳԼՈՒԽ Դ

## ՄԻԱՆՁՆԱԿԱՆ ՍՔԵՄԸ

### Ա. ՆԿԱՐԱԳԻՐԸ

ՏԵՂԻՈՑՍ չի պատկանիր՝ Հայոց հին վանականութեան նկարագիրը հիւսել. առանձին աշխատութեան մը նիւթ է այդ։ Բայց կարևոր ու բաւական է գիտնալ՝ թէ միանձնական կեանքն երեք վիճակ ունէր մեր մէջ. անապատական կամ առանձնական բնակութիւն, միաբանական կենցաղ, և վերջնոյս մէկ ճիւղը՝ զոր կը կազմէին կուսանք կամ հաւատաւորք։ Այդ զանազանութեանց համեմատ կը տարբերէին անոնց հանդերձներն ալ, որոնք կէս եկեղեցական ձև մը կը համարուին, և խստամբեր կղերականք երբեմն յօժարութեամբ կը փոխանակեն իրենցն անով. ինչպէս Խադ և Ցոհան եպիսկոպոսունք և ուրիշներ[1]։

1. Անապատական կեանքը՝ լերան մը, այրի մը, ձորի կամ դաշտի մ՚ամայութեան մէջ, հնագոյն ձևն է վանականութեան՝ ինչպէս օտարաց՝ նաև մեր քով, և կը սկսի մեր քրիստոնէութեան հետ։ Անոր նախանկար տիպն եղաւ Լուսաւորիչն[2] իւր հովուութեան վերջին տարիներուն, որուն հետևեցան յետոյ շատեր յաջորդաբար ու կ՚երևին մինչև ԺԳ դար և անդրագոյն ևս, և զորս աւելորդ կը համարիմ յիշել հոս մի առ մի օրինակներով։

Ինչպէս քրիստոնէութիւնը, միանձնական կենցաղին գաղափարն ու ձևն ալ դրացի գաւառներէն եկան, և նոյն ինքն այն բազմաթիւ «եղբարց» ձեռքով, զորս ս. Գրիգոր իւր հետ բերաւ Կեսարիայէն՝ կերտելու համար քրիստոնեայ Հայաստանը[3]։ Թերևս աղոցմէ և «աշակերտ» էր մեր առաքելոյն Դանիէլ ասորին ալ, որ առաջին կազ-

1. Աստ՝ 314-15. — 2. Ագթ. 631-2. — 3. Նոյն՝ 605.

մակերպողն և ընդհանուր առաջնորդն եղաւ Հայաստանի ճգնաւորաց ու վանականաց[1], և ինքն իսկ անապատականի կեանք կը վարէր[2]։ Իւր աշակերտաց կարգին մէջ կային ուրիշ օտարազգիներ ալ, օրինակ լինելու համար նորադարձ Հայոց. որոցմէ կը յիշուին Շաղիտա ասորին, և յոյներն Եպիփան և Առոստոմ[3]։ Այս բոլորը կը պահանջեն՝ որ Հայոց կրօնաւորական զգեստին աղբիւրն որոնենք միւս քրիստոնէից քով, ինչպէս ըրինք եկեղեցականին ալ։ Եւ այս ձեռնարկիս օժանդակ են մեր ներքին պատմական ծանօթութիւնք ևս, զոր պիտի տեսնենք։

2. Դարձեալ Դ դարէն – և եթէ հաւատայինք Ագաթանգեղոսի՝ նոյն ինքն Լուսաւորչի օրերէն[4] – կը սկսի վանական կամ միաբանական կենցաղն ալ, որոյ մէջ իւր բաժինն ունի նոյն Դանիէլ ասորին, «վերակացու վաներայից՝» նախ քան իւր յաջորդը Գինդ[5]. և որ աւելի ընդարձակ ու երկարակեաց կը լինի քան անապատականութիւնը։ Վանականաց կենակցութիւնը կը ստիպէր նաև հաւասարութիւնն ամէն բանի և հանդերձին մէջ անգամ։ Եւ այս ալ կայ՝ ինչպէս օտարաց՝ մեր քով ևս, որուն կը վկայէ Եղիշէ՝ յազկերտեան հրամանին հետևեալ խօսքերով. «Հաւատացեալքն ի Քրիստոս արք և կանայք, որ բնակեալ են յիւրաքանչիւր մենանոցս, փոխեսցեն զհանդերձս իւրեանց ըստ աշխարհական կարգաց[6]», ուսկից կ'որոշուէին իրենց յատուկ ձևով։ Եւ ինչպէս արտաքին ու եկեղեցական տարազները, սա ևս կրեր է իւր յեղաշրջութիւնը՝ ժամանակի, տեղեաց և մենաստանաց հիմնադրաց կարգադրութեան համեմատ, իրեն նախագաղափար ունենալով յաճախ եգիպտականը, որ վանական վիճակին հետ օրինակ հանդիսացաւ միւս աշխարհաց ևս։

3. Հայ կուսաստանաց մասին ընդարձակօրէն խօսած եմ այլուր[7], հաստատելով անոնց գոյութիւնը Դ և Ե դարերուն, յետոյ ջնջումը մինչև ԺԲ, ապա մինչև ԺԵ վերստին արծարծումը, և ապա նուազումը։ Ցազկերտի հրովարտակը յիշեց կուսանաց տարազն ալ, զոր կը կրկնէ Վարդանանց պատմիչը, գրելով թէ պարսիկ փշտիպանաց կանայք կը յանդգնին «պատառել զհանդերձս հաւատաւոր կանանցն[8]»։ Նաև այս հանդերձն աղերս ունի միւս ազգաց իրենց սեռակցաց հագածին հետ, ինչպէս պիտի տեսնենք իւր կարգին։

1. Հմմտ. Փաւս. 36, 271 են, — 2. Նոյն՝ 37-8. — 3. Նոյն՝ 218, 265. — 4. Ագթ. 629, 631. — 5. Փաւս. 271. — 6. Եղիշ. 40. — 7. Բզմ. 1923, 12, 43, 72. — 8. Եղիշ. 49.

## Բ. ԱՆԱՊԱՏԱԿԱՆՔ

*Լկլերկ հին աղբիւրներէ քաղելով՝ կը ներկայացնէ եգիպտական վանականութեան հիմնադիր Պախոմէոսի և այլոց սահմանը հանդերձի մասին։ Տաբեննացիք ի սկզբան կը հագնէին կտաւէ պարեգօտ մ'անթեզան, որ կը հասնէր ծնկներէն քիչ վար։ Անոր վրայ կտաւեայ կամ կաշեայ գօտի մը։ Ուսերէն կը կախուէր տեսակ մը մեկնոց մինչև ծնկները, շինուած այծենի կաշիէ կամ ոչխարենիէ։ Կնգուղ մը խաչանիշ. և հողաթափներ, ցրտին կամ տապին դէմ պատսպարան ծերոց, մինչ այլք բոկոտն էին։ Եւ ցուպ մը ճանապարհին*[1]։

*Նոյն նկարագիրը կու տայ մեզ նաև Եւագրի մէկ ճառը «վասն հանդերձից սրբոց հարցն*[2]*» եգիպտացւոց, հայացած միջին դարուն. և կը թուէ հետևեալ մասունքը.* 1, *«քուսիրայն... զայն որ ի վերայ գլխոյն ունին».* 2, *«մերկ զբազուկսն ունել» անթեզան պարեգօտով.* 3, *«բեզանեացն ամբառնայիքն զուսովքն է, որ յօրինակ խաչին ի վերայ ուսոց նոցա պատի». այն է խողոխին*[3]. 4, *գօտին.* 5, *մաշկեակն.* 6, *«ցուպն՝ որ միշտ ի ձեռին կրեն»։*

*Եւ Եղիշէ՝ Փիլոնի Հեսսեանց ճառին ազդեցութեան ներքև կը նկարագրէ «ի կողմանս հարաւոյ» կամ Եգիպտոս բնակող միանձունքը նոյն տարազով. «Առնեն և նոքա հանդերձս անպաճոյճս և յոյժ գձուձս, կողոբս (յն.* κολόβιον *= կրճատ, կարճ) ամարանի, և բեզանաւորս ձմերանի». ասոր հետ «արկաննեն, կ'ըսէ, և աղաբողոնս մեկնաւորս*[4]*», ոչ փորանկեալը*[5]*, այլ բաց մեկնոցը՝ մեկնակ կամ առանց սատարի, Փիլոնի Թարգմանչէն կոչուած բիկնանոց*[6]։

*Հայ անապատականին տարազը շատ նման էր այդ եգիպտականին, և իւր նկարագիրը գրեթէ անփոփոխ կը պահէ միշտ, որով չունինք հոս շրջանաց բաժանումներ։*

1. *Հայ ճգնաւորը բոլորովին անխնամ, չափաւոր ու խառնակ կը ձգէ իւր մազերը։ Գր. Մագիստրոս այդպիսի «կրօնաւորի» մը գրելով, զայն կը կոչէ «Թաղկվարս (և «Թաղկեալ վարսիւք») խռուացելոյդ հերով*[7]*»։ Հին է այս ոճը, և Զգօն մատեանը միջասահման վիճակ մը կը նշանակէ մազերուն. «և ոչ զհերս վարսից իւրոց արժան է նմա (միանձին) ժողովել և գերծել*[8]*»։*

1. Cabr. II, 3114-15. տես և Mart. 469։ — 2. Եւագր. 23-25։ — 3. Անդ՝ 332։ — 4. Եղիշ. 159։ — 5. Անդ՝ 327-8։ — 6. Փիլ. ճառք, 16։ — 7. Մագ. Թղթ. 147, 148։ — 8. Զգօն, 120։

*2. Կնկուղն անծանօթ է տակաւին մեր քով Դ–Ե դարերուն, և աղօր տեղը կը բռնէ Թաշկինակ մը, որ էր մեր յաճախ տեսած վարշամակին փոքրը։ Վերոյիշեալն Շաղիտա անապատի մէջ կը հանդիպի վիրաւոր առիւծի մը. և «թաշկինակաւն զոր ընդ գլուխն իւր էր ածեալ», կը հանէ ու կը պատէ գազանին թաթը[1]։ Այդ է անոր գլխանոցը, նոյնպէս «դենչեակ մի փոքրիկ» նաև Թերայեցւոց վրայ[2], որ հաւանօրէն առնուած էր խուզուած եկեղեցականներէն, որոց աւելի հարկաւոր էր քան ժամանակիս հերաւոր ճգնաւորաց։*

*3. Ձեմ տարակուսիր՝ որ հայացած կողոբն իւր բնիկ իմաստով կ'երևէր նաև հայ ճգնաւորին վրայ, և այս միայն էր ծածկոյթ մերկութեան, որով Փաւստոս «միահանդերձ» կը կոչէ զԳինիէլ և զուրիշներ[3], համեմատութեամբ աշխարհականաց կրկնակին[4]։ Անոր նիւթը փոփոխական էր և միշտ խիստ։ Ոմանք կը գործածէին մաշկ (աս. մեշքա[5]), որ է կաշի, և կը կոչուէին մաշկահանդերձ, ինչպէս Առոստոմ[6]. և որ մաշելով՝ կը դառնար լեշկամաշկ նոյն ճգնաւորաց վրայ[7]։ Ոմանք խարազնազգեստ կամ խարազնազգեաց են՝ նման Արիստակիսի, Մեսրոպայ և Խաղայ[8], բարդուած խարազն արմատէն՝ որ կը նշանակէր հիւսուած այծի մազէ, ինչպէս Փիլաքսիանոսի վկայութեանս մէջ. «Առնոյր զմազեղէն զգեստ նորա զաղտեղեալ, և զգենոյր զայն ի մերկուց ի ծածուկ... ոչ ումեք յայտ արարեալ զխարազնազգեստն[9]»։ Մի և նոյն նիւթէն էր պաղեստինեան ու հռովմէական վանականաց հագածն ալ[10], որ Ոսկերբերանի նկարագրած կրօնաւորաց վրայ կը կոչուի նաև խորգ[11] (աս. խուրզա = պարկ[12], նոյն նիւթէն), – ուսկից խորգահանդերձ ածականը[13], – որ կը թարգմանէ յն.* σάκκους*ը[14], նշանակելով այծի մազէ գործուած, և ասկից շինուած հանդերձ կամ պարկ, որոց վերջինը յատկապէս քուրձ (աս. քուրզբա[15]) կ'ըսուի ու կը թարգմանէ նոյն յունարէնը[16], գործածուելով նաև իբր զգեստ՝ հանդէպ նոյն յունականին[17]. և կամ քրձեայք[18], զոր յոյն ու հայ կը կոչեն նաև «հանդերձ մազեղէն», և հայը քիչ յետոյ «հանդերձ քրձեղէն[19]», ուր յոյնը դեռ մազեղէն կը գրէ։ Յովհաննէս կթղ. ասոր հետ կը հաւասարեցնէ ցփսին ալ[20], որ Ե դարուն կը թարգմանէր յն.* ὠμόλινον *(հում կտաւ[21]), որ է կարծր կտաւեղէն.*

1. Փաւս. 220։ — 2. Վրք. Հրց. Ա, 232։ — 3. Փաւս. 37, 271։ — 4. Աստ՝ 116, 142։ — 5. Hüb. 311։ — 6. Փաւս. 265, — 7. Նոյն՝ 271, — 8. Ագթ. 640. Կոր. 7. Աստ՝ 314։ — 9. Հյկզ։ — 10. Cabr. II, 3114։ — 11. Ոսկ. Թղթ. Ա, 123։ — 12. Hüb. 161։ — 13. Աստ՝ 314։ — 14. Ա Մակ. Գ, 47. Մտթ. ԺԱ, 21. են։ — 15. Hüb. 258, — 16. Ծննդ. ԽԲ, 25։ — 17. Գ Թագ. Ի, 31. Ցղթ. Ժ, 3. են։ — 18. Ոսկ. Թղթ. Ա, 813։ — 19. Նոյն՝ 815։ — 20. Աստ՝ 315։ — 21. Սիրաք. Խ, 4։

*և զոր խստակրօն Ցակոբոս տեառնեղբօր պէս[1] հաւանօրէն ուրիշ կրօնաւորներ ևս կը գործածէին։*

*Սակայն խորգին հետ կաշեղէնն ալ կը շարունակէ ու և է ձևով, այն է լերկ կամ բրդոտ. և Ը դարու վերջերը Վահան Կամսարական սինակեացը կը նկարագրուի Գր. Արշարունիէն՝ «ի հանդերձս սգոյ սևութեան», որոյ ճշգրիտ սահմանն է. «Թէպէտ ոչ լերկ մաշկօք, սակայն մորթեօք այծենեօք[2] ընդ Եղիայի՝ այր Թաւըրծի՝ ի Կարմեղոս լերինդ (Վահանայ ճգնարանն) անապատացեալ ուղտենեաւ գշտիւ». այսինքն կը հագնի ոչ կաշի, այլ Եղիայի այծենւոյն համազօր ուղտենւոյ գիշտ կամ պարեգօտ մը[3], Հայկազեան բառգրքէն վրիպակաւ «գլխարկ» մեկնուած հոս. և որ կրնայ հին քշտել[4] (յապաւել) բային արմատակից լինել, և նշանակել բուն իսկ կարճ պարեգօտը։ Ցովհաննէս կթղ. Ժ դարուն՝ Լուսաւորչի և Մանէի այրերուն մօտ կը տեսնէ ճգնաւորներ խարազնազգեացս[5]։ Եւ Գուլ. Բիւբրիւկացին 1253ին կը հանդիպի Սարգիս անուն հայ կեղծ կրօնաւորի մը, իբր Երուսաղեմէն եկած, որ ժամանակի սովորութեամբ հագած էր «խարազի ձևով պարեգօտ մը, շատ կոշտ ու մինչև սրունից կէսը[6]». երկայնութեամբ դեռ հաւասար հնոյն, որ էր ընդ մէջ աշխարհականին ու եկեղեցականին[7], բայց թերևս ոչ անթեզան մնացած միշտ ջերմ եղանակին։*

*4. Գօտին անյիշատակ հնոց քով, բայց անպակաս միշտ, Սարգսի վրայ «երկաթեայ» էր՝ առաւելագոյն խստութեան գաղափարով։ Իսկ սովորականն էր «մաշկեղէն գօտի[8]», ի նմանութիւն Եղիայի և Մկրտչին համանիւթ գօտւոյն[9], որ կը կոչուի նաև «փոկ գօտի[10]»։*

*5. Ճգնարանէն դուրս անապատականն աշխարհիկ մեկնոցին[11] համապատասխանող թիկնանոց մը կ'առնուր կաշիէ կամ մորթէ՝ նման եգիպտացւոց, զոր Փաւստոս բազմիմաստ նափորտ[12] բառով կը կոչէ բարդութեան մը մէջ, զԴանիէլ նկարագրելով մաշկենափորտն[13], Արշարունին զՎահան՝ մաշկեղէն վերարկուաւ[14], և Մագիստրոս յիշելով իւր կրօնաւորին մաշկեակը[15]. ուր եգիպտական բնագիրն ու հայ ընդօրինակութիւնը նմանութիւն են Եղիայի մաշկկին, զոր Եփրեմի թարգմանիչն ալ այդպէս և կամ նափորտ կը կոչէ[16]։ Իսկ ուրիշ-*

1. Իւս. Եկ. 127։ — 2. Ակնարկութիւն առաք. բացատրութեանս. «շրջեցան լաշկամաշկօք և մորթովք այծենեօք». Երբ. ԺԱ, 27։ — 3. Արշ. ԼԴ։ — 4. Դան. Դ, 11. Եզեկ. ԺԷ, 22։ — 5. Ցհ. կթ. 359, — 6. Rubr. XXXII։ — 7. Հմմտ. տաղ՝ 141, 325։ — 8. Վրք. Հրց. Ա, 130, — 9. Դ Թագ. Ա, 8. Մաթ. Գ, 4։ — 10. Զգօն, 127։ — 11. Աստ՝ 142։ — 12. Աստ՝ Բառագիտարան։ — 13. Փաւս. 37։ — 14. Մագ. Թղթ. 148։ — 15. Գ Թագ. ԺԹ, 13, 19 ևն, — 16. Եփր. Ա, 448, 440։

ներ կը ծածկուէին աւելի պարզ և անաշխատ մորթօք այծենեօք[1], ինչպէս Բիւրիւկացւոյն Սարգիսն ալ առած էր «վերարկու մը՝ ծածկուած թուխ ու ճերմակ մորթով»։

6. Դ դարու հայ ճգնաւորները թոկազգեացք կը շրջին սովորաբար[2], ինչպէս էին տակաւին Յովհաննէս պատմագրի տեսածներն ալ. մինչ Դանիէլ՝ հասակին և աստիճանին պատճառաւ սանդալաւոր էր[3], յն. σάνδαλον բառէն, զոր Ոսկեբերանի թարգմանիչը Պետրոսի վրայ կը հայացնէ հողաթափ ու սանդալ հոմանիշերով[4]. և կը նշանակէր կօշիկ՝ կազմուած լոկ ներբանով զանազան նիւթերէ, և հաստատուած ոտներուն՝ խրացներով կամ փոկով մը[5]. և որոյ գործածութիւնը դեռ կը տեսնէր Շնորհալին, որ կ'ըսէ. «զոր արտաքոյ ոմանք ագանին՝ զարշապարաց կօշկացն, թէ գոյր և յայն (Յիսուսի) ժամանակի սովորութիւն[6]»։

7. Անապատական ձևին վերջին մասն էր ցուպը, ուսկից Դանիէլի հրաժարումը կը յիշէ Փաւստոս՝ ծուծկալութեան համար, ըսելով՝ թէ «և գաւազան անգամ ընդ ինքեան ոչ ունէր[7]». և այսու կը հաստատէ այլոց զայն կրելը։

## Գ. ՎԱՆԱԿԱՆՔ

Ա Շրջան։ — Կը սահմանափակուի Դ և Զ դարերու մէջ։

1. Ի սկզբան, երբ վանական կենցաղը դեռ նորատունկ և եռանդն արծարծուն էր հայ կրօնաւորաց մէջ, իւր հետևողաց տարազը շատ տարբերութիւն չունէր անապատականին խստութենէն։ Հայաստան պախոմեան դրութեան հետ բնականապէս պիտի ընդունէր անոր սահմանած հանդերձին խստամբերութիւնն ալ։ «Մաշկանափորտն» Դանիէլի վարած «վաներայք»[8], կամ այն «վանքն» որոցմով ճգնաւորն Եպիփան «լնոյր զերկիրն Յոփաց[9]», չէին կարող տարբեր զգեստներ կրել քան իրենց առաջնորդաց հագածը։ Նոյնը պէտք է խորհինք նաև Դ դարու վերջերը «խարազնազգեստ» Մեսրոպայ կազմած եղբայրութեան մասին[10]։ Եւ ս. Սահակայ վաթսուն կրօնաւոր աշակերտները յայտնապէս ալ նկարագրուած են խարազնազգեստք, երկաթապատք, այսինքն երկաթեայ շղթաներով պատած արտաքուստ,

1. Փաւս. 271։ — 2. Անդ։ — 3. Նոյն՝ 37։ — 4. Ոսկ. Թղթ. Ա, 758, 759։ — 5. Dar. IV, 1387-90։ — 6. Շնրհ. Մութ. 60։ — 7. Փաւս. 37։ — 8. Նոյն՝ 271։ — 9. Նոյն՝ 221։ — 10. Կոր. 7։

*և զոր խստակրօն Ցակոբոս տեառնեղբօր պէս[1] հաւանօրէն ուրիշ կրօնաւորներ ևս կը գործածէին։*

*Սակայն խորգին հետ կաշեղէնն ալ կը շարունակէ որ և է ձևով, այն է լերկ կամ բրդոտ. և Է դարու վերջերը Վահան Կամսարական սինակեացը կը նկարագրուի Գր. Արշարունիէն՝ «ի հանդերձս սգոյ սևութեան», որոյ ճշգրիտ սահմանն է. «Թէպէտ ոչ լերկ մաշկօք, սակայն մորթեօք այծենեօք[2] ընդ Եղիայի՝ այր Թաւըրծի՝ ի կարմեղոս լերինդ (Վահանայ ճգնարանն) անապատացեալ ուղևնաւ գշտի». այսինքն կը հագնի ոչ կաշի, այլ Եղիայի այծենիւոյն համազօր ուղևոյ գիշտ կամ պարեգօտ մը[3], Հայկազեան բառգրքէն վրիպակաւ «գլխարկ» մեկնուած հոս. և որ կրնայ հին քշտեղ[4] (յապաւել) բային արմատակից լինել, և նշանակել բուն իսկ կարճ պարեգօտը։ Ցովհաննէս կթղ. Ժ դարուն՝ Լուսաւորչի և Մանէի այրերուն մօտ կը տեսնէ ճգնաւորներ խարազնազգեացս[5]։ Եւ Գուլ. Րուբրուկացին 1253ին կը հանդիպի Սարգիս անուն հայ կեղծ կրօնաւորի մը, երբ Երուսաղեմէն եկած, որ ժամանակի սովորութեամբ հագած էր «խարազի ձևով պարեգօտ մը, շատ կոշտ ու մինչև սրունից կէսը[6]». երկայնութեամբ դեռ հաւասար հնոյն, որ էր ընդ մէջ աշխարհականին ու եկեղեցականին[7], բայց թերևս ոչ անթեզան մնացած միշտ ջերմ եղանակին։*

*4. Գօտին անյիշատակ հնոց քով, բայց անպակաս միշտ, Սարգս վրայ «երկաթեայ» էր՝ առաւելագոյն խստութեան գաղափարով։ Իւ սովորականն էր «մաշկեղէն գօտի[8]», ի նմանութիւն Եղիայի Մկրտչին համանիւթ գօտւոյն[9], որ կը կոչուի նաև «փոկ գօտի[10]»*

*5. Ճգնարանէն դուրս անապատականն աշխարհիկ մեկնողին համապատասխանող թիկնանոց մը կ'առնուր կաշիէ կամ մորթ նման եգիպտացւոց, զոր Փաւստոս բազմիմաստ նափորտ[12] բառով կոչէ բարդութեան մը մէջ, զԳանիէլ նկարագրելով մաշկանափորտ Արշարունին զՎահան՝ մաշկեղէն վերարկուաւ[14], և Մագիստրոս յիշէ իւր կրօնաւորին մաշկեակը[15]. ուր եգիպտական բնագիրն ու ընդօրինակութիւնը նմանութիւն են Եղիայի մաշկեկին, զոր Եփ թարգմանիչն ալ այդպէս և կամ նափորտ կը կոչէ[16]։ Իսկ ու*

1. Եւս. Եկ. 127, — 2. Ակնարկութիւն առաք. բացատրութեանս. «շրջեցան մաշկօք և մորթովք այծենեօք». Եբր. ԺԱ, 27, — 3. Արշ. ԼԴ, — 4. Դան. Եզեկ. ԺԷ, 22, — 5. Ցհ. կթ. 359, — 6. Rubr. XXXII, — 7. Հմմտ. 325, — 8. Վրք. Հրց. Ա, 130, — 9. Դ Թագ. Ա, 8. Մատթ. Գ, 4, — 10. Զգօն, 11. Աստ՝ 142, — 12. Աստ՝ Բառագիտարան, — 13. Փաւս. 37, — 14. Մագ. 148, — 15. Գ Թագ. ԺԹ, 13, 19 են, — 16. Եփր. Ա, 448, 440,

ներ կը ծածկուէին աւելի պարզ և անաշխատ մորթէ պճնեալք[1], ինչպէս Բիւզրիւկացւոյն Սարգիսն ալ առած էր «վերարկու մը՝ ծածկուած թուխ ու ճերմակ մորթով»։

6. Դ դարու հայ ճգնաւորները խոհակերք կը հըջին սովորաբար[2], ինչպէս էին տակաւին Յովհաննէս պատմագրի տեսածներն ալ. մինչ Դանիէլ՝ հասակին և աստիճանին պատճառաւ սանդալաւոր էր[3], յն. σάνδαλον բառէն, զոր Ոսկեբերանի Թարգմանիչը Գետրոսի վրայ կը հայացնէ ոտքարախ ու սանդալ նամանչերով[4]. և կը նշանակէր կօշիկ՝ կազմուած լոկ ներբանով զանազան նիւթերէ, և հաստատուած ոտներուն՝ խրացներով կամ փոկով մը[5]. և որոյ գործածութիւնը դեռ կը տեսնէր Շնորհալին, որ կ'ըսէ. «զոր արտաքոյ ոմանք ագանին՝ գարշապարաց կօշկացն, թէ գոյր և յայն (Յիսուսի) ժամանակի սովորութիւն[6]»։

7. Անապատական ձևին վերջին մասն էր ցուպը, ուսկից Դանիէլի հրաժարումը կը յիշէ Փաւստոս՝ ժուժկալութեան համար, ըսելով՝ թէ «և գաւազան անգամ ընդ ինքեան ոչ ունէր[7]». և այսու ... հաստատէ այլոց զայն կրելը։

Գ. ՎԱՆԱԿԱՆՔ

**Ա. Շրջան։** — Կը սահմանափակուի Դ և Զ դարերու մէջ։

1. Ի սկզբան, երբ վանական կենցաղը դեռ նորատունկ և ...չն արծարծուն էր հայ կրօնաւորաց մէջ, իր հետևողաց տարազը ...տարբերութիւն չունէր անապատականին խստութենէն։ Հայաս...յախումբեան դրութեան հետ բնականապէս պիտի ընդունէր անոր ...նած հանդերձին խստամբերութիւնն ալ։ «Մաշկանափորտն» ...ի վարած «վաներայք»[8], կամ այն «վանքն» որոցմով ճգնա... Եպիփան «լնոյր զերկիրն Ծոփաց[9]», չէին կրող տարբեր ...ր կրել քան իրենց առաջնորդաց հագածը։ Նոյնը պէտք է ... նաև Դ դարու վերջերը «խարազնազգեստ» Մեսրոպայ կազ...բայրութեան մասին[10]։ Եւ ս. Սահակայ վաթսուն կրօնաւոր...ները յայտնապէս ալ նկարագրուած են խարազնազգեստք, ...ատք, այսինքն երկաթեայ շղթաներով պատած արտաքուստ,

...ս. 271. — 2. Անդ. — 3. Նոյն՝ 37. — 4. Ոսկ. Թղթ. Ա, 758, 759. —
..., 1387-90. — 6. Շնրհ. Մտթ. 60. — 7. Փաւս. 37. — 8. Նոյն՝ 271. —
...1. — 10. Կո...

*որոյ ճիշդ կոչումն ու սովորոյթ արեւմուտք ալ կար[1], և թռկացճացք[2]: Վերջին կետիս նկատմամբ կարեւոր է Ոսկեբերանի զանազանութիւնը՝ թէ «մարթի և բոկ իսկ շրջել, և կարեւոր պէտք օղոյ ձմերայնի են[3]»: Վանական ձևին այս անշքութիւնն է՝ որ զայն կոչել կու տայ հանդերձիկ[4]:*

2. *Բայց որովհետև մարդկային բնութիւնը հակամէտ է դէպ ի թոյլն ու դիւրինը, մեր վանականութիւնը շուտով փոխեց ու բարւոքեց իւր հանդերձը, օրինակ առնելով կղերականը՝ թէ ձևով և թէ գունով: Անոր ճշգրիտ սահմանը կը գտնենք Փարպեցւոյն այս խօսքերուն մէջ. «պարեգօտաւորք ազատեալ են ի Քրիստոս». և թէ Աղան «զատոյց զիս պարեգօտիւք ի ծառայութենէ աշխարհիս[5]». և կամ «առաջի ոմանց պարեգօտաւորաց», կամ «տեսեալ պարեգօտաւորաց[6]»: Այս պարեգօտն որոշ անուն մ'է, որ ձևով կը զատուի աշխարհականէն՝ ըստ պատմչիս, և անապատականէն ևս. որով ուրիշ բան չէ՝ բայց եկեղեցականաց համանուն պճղնաւորը[7], որ վանականին միակ արտաքին հանդերձն է հոս՝ նման սարկաւագին: Այս փոփոխութիւնը կը հաստատէ և Եղիշէ, բողոքելով նոր զգեստին փափկութեան դէմ. «Հանդերձք մեր աղաղակեն զգործոց մերոց՝ եթէ մերկ եմք յերկնաւոր զգեստուցն[8]»: Ձևէն ու նիւթէն զատ՝ եկեղեցականին ճերմակ գոյնն[9] ալ առած է այն, ըստ վկայութեան Աղուանից պատմչին (*665 *թուին), թէ ս. Գրիգորիս տեսլեան մէջ կ'երևի Յովէլ սարկաւագին՝ «սպիտակ հանդերձիւ՝ յաբեղայի կերպարանս», և Խոճկորիկի կ'երևութանան եօթն աբեղայք՝ «սպիտակ և պճղնաւոր պարեգօտիւք[10]»: Աղուանից այս ճերմակ պճղնաւորը կը զուգուի իրենց դրացի ու զօրագոյն ազգի հագածին՝ հայկականին հետ:*

3. *Վանականաց գլխանոցն ալ տակաւին նոյն է անապատականաց վարշամակին հետ, ըստ ակնարկութեան Փարպեցւոյն, որ ժամանակի չարանախանձ աբեղայից համար կ'ըսէ՝ թէ երբ մէկն ատենախօսէր, անոնք կը նստէին «գլխարկեալք՝ պատատեալք երեսօք», այսինքն վարշամակին ծայրն երեսին քաշած՝ «որպէս առ հոտեալ դիական[11]»:*

4. *Իսկ անշուք սանդալին կը յաջորդէ հոս կօշիկը. և վանքերու մէջ յատուկ հայթհայթիչ կար անոր, ինչպէս կը վկայէ Յածախապատումը. «որոց օղն հաւատացաւ՝ զիւրաքանչիւր պէտսն*

1. Cabr. II, 2621-23: — 2. Խոր. Գ, ԽԸ: — 3. Ոսկ. Թղթ. Ա, 455: — 4. Ոսկ. Մտթ. Ա, 359: — 5. Փրպ. 521-22: — 6. Նոյն՝ 600, 610: — 7. Աստ՝ 325: — 8. Եղիշ. 163: — 9. Աստ՝ 326: — 10. Կաղ. 52, 56: — 11. Փրպ. 603:

կօշկաց կատարեսցեն... և որ այլ ինչ պէտք են օդոյն[1]»։ Եղիշէ կը զգացնէ նոյն իսկ անոնց տրուած անպատեհ խնամքը, գրելով. «կօշիկք ոտից մերոց յանդիմանեն զմեզ՝ եթէ ոչ են սուրբ ճանապարհք մեր[2]»։

Գօտին և ցուպն ալ կային բնականապէս անոնց վրայ, ինչպէս



Ձև 132. Մարկոս և Ղուկաս աւետարանիչք (966)

կղերին։ — Եւ այս նկարագիրը շատ հեռի է Պարոնեանի կարծածէն, զոր կղերին ալ փոխանցուած համարեցաւ Ե դարուն[3]։

Բ Շրջան։ — Կը սկսի իբր Զ դարէն և կը տևէ մինչև ԺԱ։ Եղիշէի նման ճգնաւորն ու խստապահանջ միանձանց ձայնն ապարդիւն չի մնար. և կը սկսի վերադարձ մը, գէթ ինչ ինչ մենաստանաց մէջ, դէպ ի նախկին խստամբերութիւնը, ինչպէս կը տեսնենք Գլակայ մէջ Է դարուն՝ Թադէոսի ձեռամբ[4], և Մաքենոցաց՝ նոյն

1. Յճխ. 214, — 2. Եղիշ. 163, — 3. Աստ՝ 313, — 4. Մամ. 9,

*դարուն[1]։ Այդ հոգին կը շարունակէ ու կ'իշխէ յետոյ ուրիշ վանքերու մէջ ևս, որոնք կը կառուցուին անոր ազդեցութեամբ իսկ, ինչպէս Սեանին Թ դարուն[2], Կամրջաձորին ու Խլաձորին Ժ դարուն և ուրիշներ[3], որոց մէջ նշանաւոր է Սանահին, որոյ ծանր ճգնութիւնը կը նկարագրէ Գր. Մագիստրոս անոնց հանդերձին հետ[4]։*

*Այս շրջանիս և մաշտոցին խմբագրիչ ու Սեանայ ուխտին հիմնադիր Մաշտոցի ձեռքը կը նշմարեմ Վենետկոյ յաճախ յիշատակուած հնագոյն պատուական օրինակին սքեմարկէից կանոնին մէջ, շարադրուած Եգիպտացւոց հին կենցաղին ու տարազին վրայ, ինչպէս ստորև կը վկայէ ինքն իսկ։ Այսպիսի ձեռնարկ մ'արդարև ծիսարանին ու մենաստանի մը հեղինակը միայն կրնար երևակայել ու համարձակիլ, ինչպէս Սեանայ հայրն էր։ Եւ իւր այդ գործը, – շարադրուած յոյն մաշտոցին ազդեցութեամբ և միանգամայն ազատ խմբագրութեամբ, ինչպէս Գոյարի հրատարակածին հետ համեմատութիւն մը ցոյց տուաւ ինձ, – թանկագին յիշատակարան մ'է մեր նիւթին համար։ Սակայն գիտելի է՝ որ ասոր մէջ նկարագրուած տարազը Մաշտոցի գիտը չէր, այլ ինչպէս ըսի՝ շրջանիս սկիզբէն եկած. «որպէս սուրբ հարքն (եգիպտացիք) աւանդեցին և մեր հարքս ընկալաք», կ'ըսէ նոյն սքեմարկէքը։*

*Ունինք նաև նկարները «Թարգմանչաց» կոչուած ծանօթ Աւետարանին, գրուած «ՆԺԵ (415) Թուականութեան տեառն մերոյ», կամ «ՆԺԵ Թուականիս Թագաւորելոյ ի վերայ մեր տեառն մերոյ Ցի. Քի.», զոր այլուր անվիճելի փաստերով հայկական ցուցած և հաւասարեցուցած եմ 966 քրիստոնէականին[5]։ Անոր մէջ նկարուած են չորս աւետարանիչք, ժամանակի վանական տարազով, դժբախտաբար անարուեստ ձեռքէ մը, որոց մէկ խմբին պատկերը կու տամ հոս, Ձև 132։*

*Տակաւին մանրամասնութեանց չիջած՝ մեր ուշադրութիւնը կանգ կ'առնու հոս երկու կէտերու վրայ։ Առաջին՝ նախկին հասարակ ճաճղերձ կոչման[6] կը յաջորդէ հիմայ վանականաց յատուկ յունաձայն սքեմը (σχῆμα = ձև), զոր յիշեալ մաշտոցը յունականին պէս կը գործածէ՝ թէ լուսանցից և թէ բնագրին մէջ, նոյն իմաստով կրկնուած Արծրունեաց պատմչէն ևս[7]։ Նոյն մաշտոցը կ'ըսէ նաև ձև, – ինչպէս և Ասողիկ[8], – կամ զոյգ հոմանշով՝ «զկերպարանս ձևոյ սրբութեան», և կամ ճաճղերձք։*

1. Ցհ. կթ. 141։ — 2. Ասող. 146։ — 3. Նոյն՝ 160-62, 167։ — 4. Մագ. Թղթ. 136-38։ — 5. Երևակ (Կ. պոլսոյ), 1922, թ. 1։ — 6. Ատ՝ 415, 416։ — 7. Արծ. 76։ — 8. Ատ՝ 314, և 6։

Երկրորդ՝ նոյն մաշտոցը կրկին վիճակ ու կրկին ձև կը սահմանէ վանականաց. առաջինն աւելի մեղմ, ամփոփուած ի «Կանոն մոնազոնն (յն. μονάζων = մենաւոր, միանձն) առնել՝ ըստ հերակտրութեան Եգիպտացոցն և սուրբ լերինն Պաղեստին՝ արանց և կանաց, որք զկուսութիւն յանձն առնուն ի Քրիստոս»։ Իսկ միւսն աւելի խիստ, որոյ վերնագիրն է. «Ձեռնադրութիւն կրօնաւորութեան արժանացելոցն ի չափ հասակի կատարման տիոցն և նմանակցութեան ի Քրիստոս միացելոցն». և ասոր միայն կապուած է սքեմ կոչումը նոյն մաշտոցին մէջ։ Այս բաժանումն համաձայն է և յոյն մաշտոցին հետ, որ ունի «Կանոն փոքր սքեմի» և «Կանոն մեծի և հրեշտակային սքեմին[1]», վերնագրացս գրչագրական զանազանութեամբք հանդերձ[2]։ Այս զոյգ տարազները կը գտնուէին մի և նոյն մենաստանին մէջ, և երկրորդին համար կը պահանջուէր Յիսուսի երեսնամեայ հասակը, որպէս զի կարենային ժուժկալել։ Վերջնոյն կը պատկանի մեր 132 Ձևը։ Եւ կրկնակ տարազներդ են հետևեալք։

ՄՈՆՈԶՈՆԻՆ։ — 1. Ասոր առաջին փոփոխութիւնը ճերակտրութիւնն էր ըստ վերնագրին. և բնագրին մէջ՝ օրհնիչը «սկսանի նախ ի ճակատն կտրել, ապա ի գլուխն խաչաձև ի հինգ տեղի». և կտրուած մազերը բռնողն՝ ընծայեալը «տանի ի ծածուկ տեղի և սափրեսն» ամբողջովին[3]։ Այս սովորոյթը փոխառութիւն կը կարծեմ քան զինք հնագոյն եկեղեցականէն[4]։ Եգիպտացւոց վերագրեց զայն մեր մաշտոցը, զոր չունի յունականը. և որոց քով ի սկզբան անյիշատակ[5], արդէն հնարուած և ընդհանրացած է դէպ ի կէս Դ դարուն, որով Յուլիանոս ուրացողը՝ դաստիարակութեան շրջանին (դէպ ի կէս Դ դարու) ինք զինքը վանական կեղծելով, խուզել կու տայ գլուխը, կ՚ըսէ Սոկրատ[6]։ Եւ Յովհաննէս կամաւոր աղքատին, որ կ՚ապրէր Ե դարու սկիզբը, կրօնաւորական սքեմ տուողը նաև «փոքրեաց զվարս գլխոյ նորա[7]»։ Նոյնն արևմուտք ալ կար, ինչպէս կը վկայէ ս. Պաւղինոս Նոլացին[8] (մեռեալ իբր 431ին)։ Իսկ մեր քով հաւանօրէն կը սկսի սքեմի նորոգութեան հետ, հնարուած «ըստ հերակտրութեան Եգիպտացոցն» և ոչ Հայոց։

2. Մաշտոցը կը յարէ. «Զերծուն զհանդերձսն զոր ունի, և ագեցուցանեն պարեգօտս», համաձայն յունականին ἱμάτιονին (հանդերձ)[9]. ինչպէս ճգնաւոր մ՚ալ հայ իշխանի մը, որ կրօնաւորիլ

1. Goar, 382, 403։ — 2. Նոյն՝ 389, 390։ — 3. Նոյն՝ 386, կը գրէ լոկ՝ «խուզէ զնա խաչաձև»։ — 4. Անդ՝ 324։ — 5. Անդ՝ 416։ — 6. Գիրք Դ, գլ. Ա։ — 7. Վրք. Հրց. Ա, 130։ — 8. Թուղթ Դ։ — 9. Goar, 386։

կ'ուզէր, կը զգեցնէ «պարեգօտ և ասէ. Գնա ի Մաքենոցն[1]», ուր յայտնի է թէ ի գործածութեան էր այն։ Իւր նիւթը բրդեղէն կը կարծեմ, ինչպէս էր և յետոյ, և որով կը զատուէր «կրօնաւորութեան» խստագոյն հանդերձէն՝ զոր պիտի տեսնենք։

3. Յետոյ «ածեն զօտի», կ'ըսեն հայ և յոյն մաշտոցները, անշուշտ նոյնպէս բրդեայ, և «ագուցանեն կօշիկ» ըստ մեր մաշտոցին, որոյ փոխան յոյնն աւելի հասարակ սանդալը (σάνδαλον) կը հագցնէ։

4. Եւ աւելի նոր և ուշագրաւ, «արկանեն, կ'ըսէ հայը, թաղկոճ չորեքկուսի», յոյն սոսկական πάλλιον համանշին դէմ. և որ անուամբ ու պաշտօնով ռամկական հին մեկնոցն է[2], տձևութեան նպատակով քառակուսի շինուած, և ըստ իս՝ դարձեալ ասուեղէն։

Այսքան է հայ մաշտոցին թուած մասունքը, մինչ յոյնը գլխանոց (περικεφάλαιος) մ'ալ կու տայ անոր, զոր հրատարակիչը կը մեկնէ՝ գլուխն ականջներովը ծածկող գդակ[3]։ Գդակի մը պիտի հանդիպինք այժմ սքեմարկէից մեր երկրորդ կարգին մէջ, ինչ որ հաւանօրէն մոնոզոնն ալ կը կրէր, ինչպէս կը տեսնենք յաջորդ շրջանին ևս։

ԿՐՕՆԱՒՈՐԻՆ։ — 1. Արարողութեան սկիզբը, կ'ըսէ մաշտոցը, նուիրեալոյն աշխարհական զգեստը կը հանեն. «և եթէ հերովք լինի, արտաքոյ նոյնպէս կտրեն խաչանման ի վերայ գլխոյն», նաև ըստ յունականին[4], «և ապա գդակաւորեցուցանեն՝ յառաջագոյն առնուլ զկերպարանս նմանութեան», և զոր այլ ևս գլխէն հանել չի տար. իսկ յոյնը չունի հոս գդակը։

2. Ապա քահանայք կ'օրհնեն հանդերձին մասունքը, և կը սկսին զգեցնել զատ զատ բանաձևերով, ինչպէս է և յունականին մէջ։ Եւ նախ զպայծառն կամ ըստ բանաձևին՝ «զպայծառ հաւատոյ[5] պատմուճան արդարութեան», որ է այծի մազէ կամ քրձեղէն պարեգօտը, ծանօթ շրջանիս սկիզբներէն։ 554ին՝ Յիզտիբուզիտ (Աստուածատուր) պարսիկ վկայն Դունի մէջ քրիստոնեայ դառնալով, կը զգենու այծեայս կամ զպարեգօտս վանականի[6]։ Է դարուն՝ նոյնպէս տարօնացի «կրօնաւորքն սևազգեստք էին մազեղինօք[7]»։ Յաջորդ դարուն դարձեալ Սահակ կաթողիկոսի աշակերտները կը նկարագրուին «արք սուրբք և խարազնազգեստք և ճգնաւորք յոյժ[8]»։ Եւ Գևորգ Սիւնեցին (Թ դարուն) վանք մը կը մտնէ ու զգեստը կը փոխէ «ի մաշկեղէնս և յայծեայս». իսկ ազգականները կ'երթան կը

1. Վրք. Հրց. Բ, 487. — 2. Աստ՝ 143. — 3. Goar, 398. — 4. Նոյն՝ 411. — 5. Յն. չունի առաջինը և ունի յաջորդը. — 6. Վկյր. Բ, 127, 128. — 7. Մամ. 50. — 8. Ճպհ. 27.

*պատուէն «զգծուծ հանդերձն այծեայ և զխոշոր ցփսին[1]»։ Մաշտոցն յետոյ աւելի մանր կը նկարագրէ զայս. «պարտ է ագանել այծեա կամ այլ ինչ խարազնազգեստ նեղաստորոտ, զի մի (ի) պէտս ինչ շօշափեսցի և մեծաքայլեսցէ. և թէ կարասցէ ժուժկալել խոշորու-*



Զև 133. Գիծակ Սարգիս արեղայ (1331)

*թեան վարուցն, բեզանեաւ լիցի»։ Նոյնը կը յիշէ և Թաղման առ-թիւ[2]։ Այսպիսի են արդարև* 132 *Զևի պարեգօտներն ալ, խոշոր կոպիտ հիւսուածով, և անթեզան։*

*Նկարիդ հետ լաւագոյն կը համեմատի սանահնեցւոց նկարագիրը, որոցմէ ոմանք, կը գրէ Մագիստրոս, «ի մորթոյ փայտից*

1. Օրբ. 177։ — 2. Աստ՝ 303։

զգեստաւորեալ» էին, այսինքն ծառոց կեղևներէն հանդերձ մը հիւսած. և ոմանք «մաշկեօք միայն և առանց պարեգօտի և զգեստու» կ'անցը-նէին ամառն ու ձմեռ։ Ուրիշներ՝ «զառասանս կամ զպարանս ստուարս քաջոլորս՝» ձիու և արջառոց ձարերէն կամ նման իրերէ «քուրձ կազմեալ» էին, զոր թոռուց կը կոչէ (պրս. թուրա, Թրք. թորպա = քուրձ, պարկ). ինչպէս մաշտոցն Եգիպտացւոց համար կ'ըսէ՝ թէ «աղճապռուռ պարեգօտիւք անցուցին»։ Եւ ասոր հետ՝ «ոտնակապս եր-կաթիս և շղթայս և ձեռնակապանս և կանդրիս (անուր) ի միջոց (մէջքին վրայ) ունելով և մանեակս ի պարանոցի, և այլ կազմեալ աղխաշ-նման ի ձև խաչին»։ Կային եւ՝ որ կրելով «պատառատուն պարեգօտ», անոր ներքև ծածկարար ունէին «առասանս՝ (պրս. ռասան = լար[1]) ի խստագոյն ձարաձև այծից» շինուած, և անոցմով ցվէրս պրկելով մէջքը, կողերն ու պարանոցը[2]։ Այս էր ուրեմն պարեգօտին համա-զօր հանդերձը՝ իւր տանջող յաւելուածներով։ Սեաւ լերան միան-ձունք կը շատանային «միով այծեիւ», կ'ըսէ Լաստիվերցին[3], զգացնելով՝ թէ նուազ խստակրօնք երկուք ալ կը հագնէին։

3. Մաշտոցն աղոր վրայ կը կապէ զգօտին, կամ «գօտի մաշ-կեղէն ընդ մէջ», որով կ'որոշուի մոնոզոնի ասուեղենէն։

4. Յետոյ կը դնեն զկնկուղն՝ վերոյիշեալ գդակին վրայ, յիշա-տակուած և Թաղման առթիւ[4], ու նախ Յիզտիբուզտի վրայ՝ թէ մոգ-պետը կը հրամայէ «հանել զկնկուղն» պատանւոյն[5]։ Նոյնպէս վերոյիշեալ տարօնացի կրօնաւորները կը գտնենք կնկղաւորք կոչուած[6]։ Կնկուղ եգիպտական սովորութենէն[7] ընդունուած էր, և յետոյ անցած յոյն մաշտոցին մէջ ալ[8]։ Իսկ եգիպտացի վանականք զայն առած էին աշխարհիկ տարազէն, որոյ մասն եղած է այն ի հնուց[9], և կը մնայ միշտ[10]։ Մեր մաշտոցը կ'ուզէ՝ որ գործածուի «կնկուղ առանց խա-չոյ», ինչպէս յիշուած է և Հարանց վարուց մէջ[11]։ Բարսղի Վկայա-բանութիւնն ունի ս. Եփրեմի մահը[12], և անոր մօտ արեւելեան (ա-սորի) կրօնաւոր մը, դրած ցած փոքրիկ կնկուղ մը, որ կը մօ-տենայ յոնքերուն, և կը ծածկէ ականջներն ու ծոծրակը. Թխագոյն է, և եզերուած սպիտակ երիզով, որ է խաչը, արգելուած մեր մաշտոցէն։

5. Սքեմարկէից մէջ կը յաջորդէր անալաւը (յն. ἀνάλαβος), նաև ըստ յոյն մաշտոցին, և հայկականին մէջ բացատրուած այս-

1. Hüb. 107։ — 2. Մագ. Թղթ. 137-8։ — 3. Լաստ. 23։ — 4. Աստ՝ 303։ — 5. Վկյք. Բ, 128։ — 6. Մաշ. 50։ — 7. Աստ՝ 416։ — 8. Goar, 411։ — 9. Cabr· II, 2127-34։ — 10. Աստ՝ 264։ — 11. Հյկզ. խաչ։ — 12. Menol. 354։

պէս. «Առնու եղբայրս մեր զանաղափ ձեռյս», կամ «զանաղափս՝ ի նմանութիւն խաչին զարդարել». իսկ յոյնն՝ «առեալ զխաչ իւր ի վերայ ուսոց»։ Արեւմտեան հնախօսք երկդիմի ու մթին կը գտնեն բառիս իմաստը, մեկնելով ուսանոց կամ ուսերէն կախուած մեկնոց մը[1]։ Հայկազեանը կը շփոթէ աղաբողոնին հետ։ Իսկ ինձ աւելի բնական կը թուի Եւագրի յիշած «թեզանեացն ամբառնալեաց[2]» (յն. խաչաձեւ անաղափին) մերձեցնել։ Եւ որ կը նշմարուի մեր 132 Ձեռին մէջ ևս, ուսերէն երիզաձեւ իջած կրծոց վրայ. և յետ ժամանակաց աւելի կը շեշտուի և կը խաչաձեւուի լանջաց վրայ[3]։

6. Մաշտոցը կը յարէ բանաձեւս. «Շուրջ զիւրեաւ արկանէ եղբայրս մեր զնափորտ ձեւոյս», զոր յետոյ հոմանշով կը մեկնէ՝ «բաճկոն չորեքկուսի, խրացիք պնդեալ զլանջսն». — յիշուած և թաղման կարգին մէջ[4]. — ուր յոյնը տարբեր շարադրութեամբ կը գործածէ παλίονը։ Հարանց վարուց մէջ նոյնը կը թարգմանուի աղաբողոն, նափորտ, կրկնոց կամ ուսանոցակ[5]։ Ունինք ասոր պատկերը մեր Ձեռին մէջ, քառակուսի, ծածկելով թիկունքը միայն մինչև վար, և երկուստեք ցոյց տալով իւր խորշաւոր եզերքը. իսկ երիզաձեւ նեղ խրաց մը, ձգուած լանջաց վերև, հաստատուն կը բռնէ զայն։ ԺԱ դարու կիսուն Արիստակէս կը յիշէ բաճկոնին դեռ գործածուիլը Սեաւ լերան վանականաց կողմէն[6]։ Վերոյիշեալ բարսեղեան ասորի վանականը, ինչպէս նոյն մատենի յոյներն ալ, պճղնաւոր պարեգօտին վրայ ունին բաճկոնին համազօր լայն փիլոն մը, որ կ՚իջնէ մինչև ծնկներէն վար, որով տարբեր հայկականէն։

7. Հուսկ յետոյ մաշտոցը կը յիշէ զհողաբափն կամ «զհողաբափ ձեւոյս» (յոյնը սանդալ). իսկ խրատին մէջ կը յորդորէ բոկոտն շրջիլ. «ապա թէ ոչ՝ ագեցցի հողաբափս և կօշիկս». մին անշուշտ ամառը, և միւսը ձմրան, և թաղման պահուն[7]։ Մեր Ձեռին մէջ կօշիկներն են, որոց բերանը կոճէն վեր կը հասնի։ Սակայն Ցիզտիբուզիտ հողաբափս կը հագնի[8]. և Ժ դարուն՝ Սահակ ու Սմբատուհի Արծրունիք ուխտի երթալով Աշոտայ վանքը, բոլոր կրօնաւորաց նուէր կը տանին «զգեստս և հողաբափս[9]»։ Իսկ բարսեղեան կրօնաւորացը կիսակօշիկ է։

8. Միջին դարուն արեւմտեան վանահարք երբեմն իրաւունք կը ստանային Հռովմայ հայրապետէն՝ եպիսկոպոսական մատանի կրելու,

1. Goar, 418. Mart. 469. — 2. Անդ՝ 416. — 3. Անդ՝ 332. — 4. Անդ՝ 303. — 5. Վրք. Հրց. Ա, 205, 130, 299. — 6. Լաստ. 23. — 7. Անդ՝ 303. — 8. Վկյք. Բ, 127. — 9. Շպհ. 38.

ինչ որ յետոյ կ'ընդհանրանայ[1]։ Նման դէպք մը մեր մէջ ալ կը յիշուի ԺԱ դարուն, ուր Գր. Մագիստրոսի խնդրանօք՝ Մոնոմախ կայսրը Մարմաշէնի առաջնորդին՝ «հայր Սոսթենեսի», որ եպիսկոպոս չէր[2], նուէր կը յղէ «պերճ և պաճոյճ... ոսկի մատանի» մը[3]։

Սքեմարկէքը կ'արգելու ստանալ «փափուկ ինչ հանդերձ բարակս և ողորկս, և այծենիս կրկնավերտս», որ է շղթայակերպ կարգ կարգ հիւսուածով[4]. այլ «խոշորահանդերձ, գձուձ, անարգ, խոնարհ», եգիպտական սուրբ հարց աւանդութեան համեմատ։ Միայն սքեմը ստանալու պահուն կ'ուզէ՝ որ լինի «մաքուր յաղտոյ, լուացեալ սրբիկ»։ «Իսկ վարտիս, կ'ըսէ, ամենևին ոչ, զի մի՛ շօշափեսցի ընդ անդամս մարմնոյն»։

Գ Շրջան։ — Կը տևէ ԺԲ դարէն մինչև ԺԵ, ուր վանական տարազը մատնուած տեսանք յեղաշրջութեանց, գլխաւորապէս քաղաքական պատահարաց երեսէն[5]։ Մեք բնականապէս պիտի նկատենք հոս հանդերձին սովորական վիճակը, որոյ քննութեան կը նպաստեն մեզ, գրական տեղեկութեանց հետ, մեր 133 Ջնը, որ է Պիծակ «Սարգիս աբեղայի» կենդանագիրը՝ իւր ծանօթ աւետարանէն[6], աբեղայական սքեմով հանդերձ, և 134 Ջնը՝ սուրղաթեան ճաշոցէն[7], որոց մին կը ներկայացնէ հասարակ կրօնաւորը, և միւսը՝ ս. Անտոնի կենդանագրով՝ վանահայրը։

Վանական վիճակի ու հանդերձի կրկնակ տարբերութիւնը կը պահուի դեռ, կապուած՝ ոչ եթէ ազատ ընտրութեան և հասակի հետ, ինչպէս երբեմն, այլ պարզ վանականութեան ու վանական քահանայութեան հետ, որ այս շրջանիս աւելի բազմացած է մենաստանաց մէջ։ Շնորհալին կ'ակնարկէ կրօնաւորաց «ասուոյ և այծեաց[8]», որոնք երկու սքեմներու նիւթերն են։ Իւ Լամբրոնացւոյն գրչին ներքև զգալի է սքեմին կամ ձևին[9] կրկին՝ ի «մեծ և փոքր զգեստուց որոշումն», որոց առաջինը կը կազմեն «կնկուղ և սքեմ», քահանայ կրօնաւորաց սեպհական. և որուն կը հակառակի Տարսոնի առաջնորդը, հաւասարութիւն պահանջելով, ինչպէս ինքնին տեսեր էր Փռանգաց, Հոռոմոց և Ասորւոց վանքերու մէջ[10]։ Բայց զանազանութիւնը կայ ու կը մնայ դեռ Տաթևացւոյն օրով ալ, ուր մոնազոնն ու կրօնաւորք մասամբ մը կը զատուին հանդերձով[11]։ Սիմէոն

1. Cabr. I, 2286-7. — 2. Հմմտ. Շիր. 148, 152. — 3. Մագ. Թղթ. 103-4. — 4. Վերոյք տես ստ.՝ 154. — 5. Անդ՝ 316-17. — 6. Անդ՝ 225. — 7. Անդ՝ 400. — 8. Անդ՝ 256. — 9. Լմբ. Պտ. 43, 48, 49, 51, 53. — 10. Նոյն՝ 48-51, 53. — 11. Քրզ. ամր. 175.

Այրիվանեցին, վախճանեալ 1428ին, զոր նորոգիչ տեսանք վանական խանգարուած տարազին[1], կը սահմանէ «բրդեղէն, մաշկեղէն կամ մազեղէն ըստ առաջնոյն[2]»։ Բաժնենք այդ երկու ձեւերը։

Ա. — 1. Հերակտրութիւնը հաւասար է բոլորին։ «Զգեստ... հատեր», կ՚ըսէ Լամբրոնացին վանականին. և թէ սքեմարկէից պահուն առաջնորդն իսկ «յապաւէ զհերսն» Նուիրելոյն[3]. և Մխ. Գոշ՝ թէ «կրօնաւորք հերս ոչ ունին», և այս պատճառաւ պատարագի մէջ գլուխնին չեն բանար[4]։ — Այս սափրումը սակայն երկար չի տևեր, և դէպ ի ԺԴ դար կղերին նմանութեամբ կուլակի կը փոխուի, ինչպէս կ՚երևի Պիծակի վրայ[5], և կը հաստատուի Տաթևացիէն՝ թէ «մաքրեն զգագաթն բոլորապէս[6]», այսինքն բոլորակ ձևով։ — Բնական վիճակի մէջ կը թողուէր միանձանց մօրուքն ալ, որ ըստ խառնուածին աւելի կամ նուազ ծաւալուն կը լինէր։ Վանական վրդ. կը նկարագրուի «փառաւոր մօրուօք, ծաղկեալ ալեօք[7]», կամ «լայնամօրուս և փառահեղ[8]»։ Նոյնպէս շքեղ է մեր 134 Ձևինը, և չափաւոր Պիծակին։



Ձև 134. Ս. Անտոն (1356)

Զ. Շնորհալւոյն, Գոշի ու Եւագրի քուսիրային[9] (=կնկուղ) հիմայ նոր նշանակութիւն կամ մեկնութիւն մը կու տայ և Մոնոզոնին կը վերագրէ Տաթևացին. «քուսիրայն ի գլուխն, որ է ծփուղն», և ձևով «բոլոր», որ կը նշանակէ կոնաձև ու բոլորակ ստորոտով գլխանոց մը, մեր 111 Ձևի դրածին նման, զոր ինքն իսկ համեմատելով կը զատէ

1. Աստ՝ 317։ — 2. Հյպտ. 570։ — 3. Լմբ. Պտ. 89, 44։ — 4. Գոշ՝ Թղթ. 60։ — 5. Աստ՝ 331։ — 6. Քրզ. ամբ. 175։ — 7. Կիր. 131։ — 8. Հյպտ. 463։ — 9. Աստ՝ 256, 334, 416։

«կրօնաւորի կնկղէն[1]»։ — 3. Կայ անոր «հանդերձն նեղ ստորոտիւք[2]», որ է և կը կոչուի Օրբելեանէ պարեգօտ[3], որոյ նիւթն էր վերոյիշեալ վկայութեանց ասուին կամ բրդեղէնը։ — 4. Ունի գօտին և հողաթափն ալ[4], առաջինը նեղ ու թաղուած Պիծակի պարեգօտին մէջ (Ձև 133)։ — 5. Եւ հիմայ իրեն սեպհական դարձած է նախկին շրջանի կրօնաւորաց քառակուսի թիկնոցն[5], այն է խաճկոնը, որոյ բնիկ հին իմաստը Տաթևացին կորուսած, պարեգօտի տեղ կը գործածէ վերջին բառը[6]։

Բ. — Գալով Կրօնաւորին, սա ունի. 1, Կնկուղը, որ ըսի թէ կը կոչուէր նաև քուխրայ[7] կամ վեղար[8], և Հաղբատայ կողմերը վրական բառով ու չափով՝ «երկու թիզ կնկուղ վրացի սաքուլայ[9]» (պրս. սարքուլահ = գլխախոյր[10])։ Տաթևացւոյն նկարագրին մէջ ի տես կը դրուի անոր «ծայրն վերին», և «ներքինն լայնացեալ ի վայր խոնարհեալ և պատեալ առ թիկամբն», ու գոյնը «թուխ[11]». և է միշտ «առանց խաւոյ, որ է սպիտակ ծիրն[12]»։ Իսկ ստորոտը ծածկուած փիլոնին կամ նափորտին ներքև, ինչպէս մեր 110, 119, 127, 133 և 135 Ձևերու մէջ։ — 2. Կնկղոյն ներքև նախկին գդակն ալ կայ տակաւին Լամբրոնացւոյն օրով, որ կը պահանջէր՝ թէ պատարագի հանդերձը հագնելէ յառաջ «զկնկուղն ի բաց պարտ է ձգել և զգդակն[13]»։ Իսկ մանրակրկիտ Տաթևացւոյն լռութիւնը կասկածել կու տայ ինձ՝ թէ յետոյ հեռացեր է գդակը կնկղէն։

3. Պարեգօտը ոքիմ կը կոչէ Լամբրոնացին՝ բառին սեղմ իմաստով[14]. և նիւթն է դեռ այծեքը՝ վերոյիշեալ վկայութեանց համեմատ, հաստատուած նաև Սարգիս մեկնչէն. «ի զգեստս խարազն և խոշոր և մեկին». և թէ կրօնաւորը կը զատուի հասարակ մարդոցմէ «խարազն զգեստիւ[15]», զոր Տաթևացին մազեղէն կը կոչէ[16]։ Իսկ իւր գոյնը միշտ սգաւորական, թխատիպ կամ սրչնաթոյր[17] կը մնայ. որով Գոշը «միշտ սևազգեստք» կը կոչէ կրօնաւորները[18]. և Պիծակի հագածն ալ է աղօտ թուխ։ — Խստակրօնք ամառն ու ձմեռ մէկ պարեգօտ կը զգենուին. այս է Սարգսի մեկինը։ Մաղաքիա, հայր Ապրակունեաց ուխտին՝ ԺԴ դարուն, բոլոր կենացը մէջ «երկու քուրձ» միայն կը հագնի. մին անգործածելի դառնալով՝ կը հանէ ու կ'այրէ, և միւսով զերեզման կ'երթայ. իսկ ներքուստ չորս մատ լայն երկաթ մ'ունէր,

1. Քրզ. ամր. 175։ — 2. Անդ։ — 3. Աստ՝ 339։ — 4. Քրզ. ամր. 175։ — 5. Անդ՝ 186։ — 6. Անդ՝ 176։ — 7. Աստ՝ 256, 334. Վրք. Հրց. Ա. 250 ևն։ — 8. Աստ՝ 334. Քրզ. ամր. 442։ — 9. Լմր. Թղթ. 218։ — 10. Hüb. 276, 377։ — 11. Քրզ. ամր. 442-3։ — 12. Անդ՝ 175։ — 13. Լմր. Պտ. 228։ — 14. Նոյն՝ 53։ — 15. Սրգ. 85, 86։ — 16. Քրզ. ձմր 243։ — 17. Լմր. Պտ. 45, 541։ — 18. Գոշ՝ Առկ. ՃԼԴ։

*և «քքով աւազակաց» պատեր էր մարմինը մինչև ծնկները[1]: 1184ին յիշատակագիր մը՝ Կեչառուաց հօր՝ Պետրոսի մասին կը պատմէ՝ թէ ձմեռը բոլոր միանձանց կը զգեցնէր «կրկին պատմուճան» (պարեգօտ), և ինք «միով ասուեաւ դաժան և դառն սառամանեաց տևէր[2]»: Հաւանօրէն ցրտին պահանջմամբ մազեղէնն ասուեղէնի կը փոխուի հոդ, ինչ որ սակայն աւելի ուշ սովորական կը դառնայ, ըստ վկայութեան Տաթևացւոյն՝ թէ «այժմ դասք աբեղայից և կրօնաւորաց ասուիս զգենուն... և ոչ կտաւիս[3]». ուրեմն և ոչ մազեղէնը, զոր նոյն վարդապետը յիշեց՝ մաշտոցին հետևելու համար. կամ թէ թերևս գէթ ոմանք կը գործածէին դեռ զայն:*

*Կային ևս, մանաւանդ շրջանիս առաջին մասին մէջ, որ աղոնց փոխան ուրիշ նիւթեր կը հագնէին: Այսպէս Հարանց վարքը վանականի մը հանդերձից մէջ եբիձաղ կը կոչէ պարեգօտին համազօրը[4]. բառի տարբերութիւն թէ և նիւթի, չեմ գիտեր: Բայց շատ որոշ է ԺԲ դարուն Սանահնի խստակրօնութեան արտաքին ցուցորդ մ'անոր մերձաւոր Հաղբատայ մէջ, որոյ առաջնորդը գիշտ կը «հագնէր» և գշտով կը պատարագէր[5]. և զոր հին իմաստով առնելու ենք[6]: Վարդան վ. Թաթարաց ղանին կը ներկայանայ՝ «ոչխարենի զգեցեալ». և երբ մերժեց անոր առաջարկած ոսկեղէն զգեստը, ղանը փոխելով իր պարգևին որակը, շինել տուաւ և ընծայեց «քրեփ խիստ գէշ[7]», որ է քթանի հանդերձ, համաձայն պարգևատուին ճաշակին ու սովորութեան, զոր կը հաստատէ և Սմբատ, ըսելով վանականաց համար՝ թէ մենաստանին մէջ ուրիշ բան չունին «քան զիրենց քրքեն մէն[8]»: Եւ Տաթևացւոյն ժամանակ կը թուի թէ դեռ գործածողներ կային «զայծենի մաշկն[9]»: Սա կը զգացնէ նաև թեզանատին ջնջումը, զայն ցոյց տալով «եգիպտացի հարց» վրայ[10]:*

4. *Անաղարտն ալ կայ հիմայ, Տաթևացիէն բացատրուած՝ «զսքեմն[11] ի վերայ ուսոյն խաչանման[12]». և որուն ակնարկել կը թուի Փիլոնի բառից լուծողը (1307ին) վակասին տուած մեկնութեամբս. «զուսովքն որպէս ուսափակեղն[13]»: —* 5. *Գօտին, յիշուած Լամբրոնացիէն, նոյն վանական մաշկեղէնն է, որով Սարգիս՝ զատուեցանք, կ'ըսէ, աշխարհականներէն զօտևաւ[14]: —* 6. *Նոյն վարդապետին օրով սովոր էին «բոկոտն կոխել ի վերայ սուրբ երկրի».*

1. Մեծոփ. Պամ: — 2. Հյպտ. 399: — 3. Քրզ. ամր. 186: — 4. Վրք. Հրց. Ա, 250: — 5. Լմր. Թղթ. 218, 240: — 6. Աստ՝ 418: — 7. Վրդ. Պտ. 158: — 8. Սմբ. Օր. ԼԴ: — 9. Քրզ. ամր. 175: — 10. Անդ՝ 176: — 11. Աստ՝ 332: — 12. Քրզ. ամր. 175: — 13. Փակեղն արմատը հմմտ. աստ՝ 332: — 14. Սրգ. 91:

և թէ կրօնաւորը «թոկոտն շրջի[1]»։ Բայց այդ ըստ կամս էր, և ուրիշներ ոտնաման[2] ունէին, որ էր հողաթափը։ Սամնեցին Ներսէս վ. 1332ի վեննտկեան Աստուածաշունչին մէջ կը գրէ՝ թէ «ծախեցի զփիլոն և զհողաթափն վասն խարճի» նոյն մատենին[3]։

7. Սքեմին գլխաւոր մասն է փիլոնը, որ շրջանիս սկիզբը կրօնաւորին վրայ կը յաջորդէ նախկին բաճկոնին, որ կը յանձնուի մոնոզոնին։ Եւ ինչպէս ըսի[4], քահանայականէն առնուեցաւ, ճիշդ հակառակը Պարոնեանի վարկածին[5]։ Լամբրոնացին կը յիշէ զայն կրօնաւորաց վրայ[6], և թէ Հաղբատայ առաջնորդը կը պատարագէր «սև փիլոնով[7]»։ Վարդանայ մէկ առակին մէջ «կատուն փիլոն էած ի վերայն և հղև կարգաւոր» Անտոնի պէս, այսինքն կրօնաւոր։ Օրբելեանը Մաշտոց կաթողիկոսի վանական սքեմին մէջ կը յիշէ «գլուղջաւն», որով կ'իմանայ փիլոնը[8]։ Եւ Տաթևացին հին կոչումներով կ'ուզէ բացատրել նոյնը. «աղաբողոն նափորտն վերարկեալ ծածկոյթ մինչ ի սորոտն[9]»։ Իր ձևն յայտնի է մեր 110, 111, 133 և 134 պատկերաց վրայ. պճղնաւոր, կոճկուած լանջաց վերև, ու թխագոյն։

8. Նախկին ցուցն ալ կայ միշտ։ Վարդան կը պատմէ՝ թէ երազի մը մէջ «զգաւազանն կապ ձգէր» գետի մ'առջև[10]։ Եւ Օրբելեանը կը յիշէ զգաւազանն Տիրոտ անուն ճգնաւէր վանականին՝ որ հրաշքներ կը գործէր[11]։ — 9. Ոչ իբրև սքեմի մասն, այլ հարկաւոր պիտոյից համար նոյն Տիրոտը վրան կը կրէ դանակ մ'ալ. և օր մը «հանեալ ի պատիոցն[12] զփոքրիկ դանակիկն իւր», կը սպաննայ իշակերպ դիւին՝ որոյ վրայ հեծած էր[13]. ինչ որ անշուշտ ուրիշ վտանգաւոր անասնոց ալ կ'ընէր ի հարկին։

Գ. — Վանահարք շրջանիս սկիզբներն աւելի ճգնաւոր քան իրենց հպատակները, ինչպէս տեսանք վերև, ԺԴ դարու մօտերը բացառիկ վիճակ մը կու տան իրենց հանդերձին, զոր նկատեցինք Ապարանեցւոյն մեղադրութեան մէջ[14]։ Քան զայն աւելի բան մը կը ցուցնէ մեր սուրգաթեան 134 Ձեր, ուր ս. Անտոնը ներկայացնող հայ առաջնորդը (թերևս խրիմեցի և այն կողմերու տարազով), սև կնկղոյն վրայ խաչ մ'ալ ունի՝ նման եպիսկոպոսին և կամ հին պախոմեանց[15]։ — Իր պարեգօտը կապոյտ է։ — Վակաս մ'է կախած,

1. Սրգ. 95, 86։ — 2. Մարթին, ԺԴ դար, ի Հյկզ։ — 3. Հյպտ. 547։ — 4. Աստ՝ 334։ — 5. Աստ՝ 313։ — 6. Լմր. Պտ. 53։ — 7. Լմր. Թղթ. 218։ — 8. Աստ՝ 339։ — 9. Քրզ. ամր. 175։ — 10. Խրատք, գրչ. թ. 1533 Ս. Ղազարու։ — 11. Օրբ. 30։ — 12. Արմատ պափել (հանել) բային. պատեանն ուսկից կը հանեն սուրը։ — 13. Օրբ. 31։ — 14. Աստ՝ 338։ — 15. Աստ՝ 386, 416։

միապաղաղ՝ արղի ուրարին ձևով, ոսկեգոյն ու կարմիր երիզով, որոյ նմանը կայ մեր 110 Ձեի սքեմաւոր եպիսկոպոսին ու վարդապետին վրայ եւ՝ ծոպով հանդերձ։ Այս մասն առնուած է Յոյներէն, որոց վանականք բարսեղեան վ.կայաբանութեան մէջ[1] ցոյց կու տան նոյնպիսի վակաս (pazienza) մը, նոյնչափ լայն և մինչև պորտը կ'իջնէ. Թխագոյն է, երիզներով ու մերթ խաչով մը զարդարուած։ Աղոր զարգացած ձևն է մերը, և յատուկ բարձրաստիճան վանականաց, որով Պիծակ չունի զայն։ — Մեր Ձեին փիլոնը մանիշակագոյն է, և ոսկի շիգզով մը ճարմանդուած։ — Իսկ ձեռաց ցուպը ճերմակ է, Թերևս ոչ առանց խորութեան։

Դ. — Յովհաննէս Քռնեցի, աշակերտ նշանաւոր Եսայի Նչեցւոյ, 1330ի Թղթին մէջ կը պատմէ՝ Թէ իւր օրերուն հայ վանքերու կեանքը սաստիկ խանգարուած էր։ Ի Հռովմ երթալով՝ կը տեսնէ արևմտեայց բարեկարգութիւնը. և բարի նախանձով վառուած, կը դառնայ՝ ընկերներ կը հաւաքէ, և կը կազմեն Նախճաւան գաւառի մէջ նոր միաբանութիւն մը՝ Դոմինիկեանց կանոնով[2]։ Ասոր հետ անոնց տարազն ալ զգեցան, անոնց սպիտակ ուրալը (վակաս) սևի փոխելով, որ յատուկ էր Դոմինիկեան աշխատաւոր եղբարց[3]։ Այսպէս այդ արևմտեան ձևն ալ երևցաւ հայ հողին վրայ և մնաց մինչև ԺԸ դար[4]։ Եւ էր սպիտակ պարեգօտ պճղնաւոր. վակասը՝ բաւական լայն, ու քիչ կարճ քան զայն, և սև փիլոն պճղնաւոր։ Անոր ձևը Հ. Ալիշան յառաջ բերած է[5]։

Դ Շրջան։ — ԺԵ դարուն կը յաջորդէ հայ ժողովրդեան համար՝ շրջան մը «վրդովմանց և աւերանաց աշխարհիս Հայոց», կը գրէ Առաքել[6], յորում վանական կարգերն ալ հիմն ի վեր կը տապալին, և սքեմը բնաջինջ կը լինի։ Մեր կանխաւ յիշած երկու անապատասէր անձինք Սարգիս ու Կիրակոս[7] իբր 1613ին[8] կը հիմնեն Հարանց անապատը Սիւնեաց մէջ, նորոգելով հոն վանական նախկին բարեկարգութիւնն ու կրօնաւորական զգեստը, որ «ամենևին անհետ լեալ էր», և իրենք հին մատեաններէն հանեցին։ Եւ էր այսպէս։

Ա. — Միայնակեցին (նախկին մոնոզոնին՝) տուին «քուսիթայն՝ որ է գլխոյ բոփին», ինչպէս կը կոչուի ցարդ վեղարի ներքին գդակը. և «զքստակոսին», որ է բաճկոնը։ Իսկ արեղային յատկա-

1. Menol. 66, 73, 77 են. — 2. Գալ. Ա, 520–22. — 3. Հնդ. Ամս. ԻԴ, 322. — 4. Սոկ. 386–8 են. — 5. Անդ՝ 382. — 6. Դաւր. 191. — 7. Աստ՝ 317. — 8. Հմմտ. Սոկ. 249.

նիշ թողուցին փիլոն և վեղար։ Գարձեալ երկուքին համար սահմանեցին «զգպուխն, որ է մազեղէնն, ի ներքոյ զգեստուցն՝ ի վերայ մերկ մարմնոյն». աոր վրայ «զասուեղէն շապիկն (պարեգօտ) երկայն պճղնաւոր մինչև ի յոտն, և գօտի մաշկեղէն». և թէ ամենուն զգեստն «ասուեղէն լիցի և ոչ բամբակեղէն»։ Պատմիչը կը յարէ՝ թէ վեղարն ու փիլոն յառաջ ալ կային, բայց ժամերգութեան պահուն միայն կը գործածուէին[1]։ Եւ արդարև Սարգիս հիմնադիրը դեռ չհաստատուած իր մենաստանը, Արագած լերան վրայ կը գտնէ մեռած ճգնաւոր մը՝ «ունելով ի գլուխն վեղար և զիւրև փիլոն[2]»։ Նոյնպէս կը հագուէին և Աղուանք, որոց Գանձասար ուխտին մէջ սարկաւագ կը ձեռնադրեն մէկը, «և ետուն փիլոն և վեղար[3]»։

Բ. — Սարգսի գործակիցներէն Ներսէս մոկացի, որ յետոյ Լիմ անապատը հիմնեց[4], քերթուած մ'ունի թողած, յորում ինք զինքն աբբայ կը կոչէ, և մեկնողաբար կը թուէ իր սքեմին մասունքը, որ են՝ ստորոտով հանդերձ, այսինքն պճղնաւոր պարեգօտը. յետոյ կնկուղ ծայրասուր. ուրար՝ որ է նախկին վանահարց վակասը, և փիլոն. իսկ հանդերձից գոյնը՝ սեաւ համակ[5]։

Դ. ՀԱՒԱՏԱՒՈՐՔ

Ա Շրջան։ — կը տևէ Դ և Ե դարերը, և ամենէն բարգաւաճ միջոցն է հայ կուսաստանաց, ու տարազի պատմութեան համար կարևորագոյնը։ Հաստատեցի կուսական ուրոյն սքեմի մը գոյութիւնն այդ շրջանին[6], որուն կը վկայէ և Ցհ. Մանդակունին, ըսելով. «Ոմանք ի կուսանաց՝ որք Քրիստոսի կամեցան հաճոյ լինել հանդերձիւք և կերպարանօք[7]»։ Եւ ս. Վարդանայ դուստրը Շուշանիկ զատուելով ուրացող ամուսնէն, «կրօնաւորական զգեստիւ կարգաւորութեամբ հանդիսանայր», կ'ըսէ իր վկայագիրը[8]։ Հայ հաւատաւորաց հանդերձին ձևը յունականին հետ սերտիւ կապուած կը ցուցնէ Ոսկեբերանի Թարգմանիչը, շեղումներով ակնարկելով Հայոց, ինչպէս հետ զհետէ պիտի տեսնենք հոս։

Ա. — Անոնց մէջ կային՝ որ անպատական արանց հաւասար խստամբեր կենցաղ ու հանդերձ ունէին։ Հարանց վարուց մէջ կին մը կը խնդրէ «աբեղայի խորգեղէն պարեգօտ և մազեղէնս», և կը

1. Գաւր. 195–6։ — 2. Նոյն՝ 190։ — 3. Ջաք. Պատմ. Ա, ԻԲ։ — 4. Գաւր. 192։ — 5. Սոկ. 248։ — 6. Աստ՝ 415։ — 7. Մանդ. 161։ — 8. Սոփ. Թ, 31։

***զգենու «իբրև այր զխորգն և զմազեղէնն[1]»։ Նաև Ոսկեբերան կը խօսի այդպիսի խստակրօնից մասին, զորս չէ տեսեր, այլ ի համբաւոյ միայն գիտէ։ «Ցայնպիսի վշտամբերութիւն ետուն զանձինս, կ'ըսէ, մինչ զի և որ կարի ինչ խիստ հանդերձք մազեղէնք էին, ի***



Ձև 135. Ս. Մարանա (Ժ դար)

***վերայ մերկ անդամոյն զգենուլին, և բոկացեալ զփափկասուն գարշապարսն սովորեցուցանէին[2]»։ Հայ հաւատաւորաց համար ալ անսովոր չէր այդ ձևը, զոր կը շեշտէ թարգմանիչը յաւելուածովս. «և այնպէս ընդ վայր իմն քրձեղէն հանդերձիւք միայն զամօթ մարմնոյն ծածկէին», (ուր յոյնը վարսից վրայ կը խօսի)։ Ուրեմն կանոնաւոր պարեգօտի մը ձևն անգամ չունէր այդ հանդերձը, և ճգնուհիք, հայեր թէ օտարներ, փոյթ կը տանէին նիւթին խստութեան քան ձևին։ Իսկ բուն շրջիլը սովորական տեսանք ժամանակիս այրակորոյս***

1. Վրք. Հրց. Ա, 336, 337։ — 2. Ոսկ. Թղթ. Ա, 815։

*հայ տիկնանց եւ[1], որոց կեանքը չէր զանազաներ վանականէն՝ Եղիշէի նկարագրութեան մէջ. և երբեմն կը վարուէին «ըստ կարգի միայնակեցաց՝ որ յանապատս բնակեալ են[2]»։ Շուշանկան կրօնաւորական տարազն ալ էր զգեստ կամ պարեգօտ մը, և անոր վրայ ռւենդերձիկ մը կամ կրկնոցը՝ առած «զանձամբն և զգլխովն[3]»։*

*Բ. — Սակայն Կոստանդնուպոլսի հայրապետին և անոր հայ թարգմանչին ժամանակ կուսական կենաց ձևն ու հանդերձն ամոքուած մեղմացած են արդէն, և վերջինը համազգեստի մը փոխուած, հեռանալով մաշկեղենէն ու խարազէն։ Անոնց տարազին մասունքը հաւասար են բիւզանդացի աշխարհիկ կանանց հագածին հետ, որ էր այսպէս. «նափորտունքն (յն. ἀναβολή) արձակեալք, պարեգօտքն լայնեալք, գօտիքն սեթևեթեալք, կօշիկքն պճնեալք[4]»։ Այդ բոլորը կային և կուսանաց վրայ, բայց սովորաբար անշուք վիճակի մէջ. այսինքն «հանդերձս լեշկս» (յն. մաշած) և «կօշիկս յոռիս», և «գլխոյ հանդերձ (յն. քող) անպիտան[5]»։ Սակայն բիւզանդացի և հայ հաւատաւորաց շատերը գիտէին՝ այդ վիճակին մէջ իսկ զանոնք հաճելի ընծայելու արուեստը. «քանզի մաշկք (յն. մաշած) հանդերձքն քաջիկ իմն մածնուն ի մարմինն և բարւոք յագչին» կամ կը փակչին, կ'ըսէ նոյն բեմբասացը, զոր թարգմանիչը կը լրացնէ մեկնութեամբս. «մանաւանդ թէ թափչաց եւ ողորկեալ փայլիցեն[6]»։*

*Գրիչը, և քան զայն՝ թարգմանիչն ադոնց մանրամասնութեանց ալ կ'իջնեն, որոնք արդարև շատ ուշագրաւ են։*

1. *«Գօտեաւն[7] հանգուցն իմն խորշաքաղ զպարեգօտսն ի կուրծսն ժողովելով... և առ գոգովքն այլ ազգ իմն խորշս քաղիցէ». այս ինքն գօտին կ'ամփոփէր պարեգօտն ու ծալքեր կը կազմէր կրծոց ու գոգին վրայ։ Իսկ թեզանիքը շատ նեղ էին. «հանգոյն արուեստականացն (յն. ողբերգակ) զթեզանիսն ընդ ձեռսն կարեալ պնդիցէ»։*

2. *Գօտին առաջակողմէն կը կախէ զծոփս կամ ծփուն ծայրերը, բաւական երկար, որոնք շարժելու ժամանակ մերթ կրծոց վրայ կը բարձրանային և մերթ գաւակին կը հասնէին[8], կ'ըսէ թարգմանիչը, ազատօրէն ընդլայնելով բնագիրը։*

3. *Ադոնց վրայ կու գար թուխ նափորտը կամ մեկնոցը. «յորժամ զնափորտն կարի սևացուցանիցէ[9]». որոյ նմանութիւնը կը տեսնենք մեր 135 ձևին մէջ, զոր առած եմ Բարսղի Վկայաբանութե-*

1. Ատ՝ 145։ — 2. Եղիշ. 155–8։ — 3. Սոփ. Թ, 35։ — 4. Ոսկ. Թղթ. Ա, 67։ — 5. Անդ՝ 69։ — 6. Անդ։ — 7. Լաւագոյն քան միւս օր. գօտեւածն։ — 8. Ոսկ. 68։ — 9. Անդ. յն. յորժամ կարի կապոյտ իցէ պարեգօտն։

նէն[1]. և յորում ս. Մարանա կը ներկայացնէ յոյն հաւատաւորաց աւանդական սքեմը։ Իւր կարճ փիլոնը հին նափորտն է, որ յառաջ ալ փորիբաց էր. և որով կուսանը շրջելու պահուն կրնար «բացխփիկ նափորտամբն խաղալ», այսինքն բանալ ու փակել, որպէս զի «զծոփս գօտւոյն[2] մերթ բանայցէ և մերթ ծածկիցէ», և աղով «զհաւաստիս գօտւոյն կարիցէ բազմաց ցուցանել[3]»։


Ձև 136. Ս. Հռիփսիմէ (1356)

4. Թարգմանիչը յիշեց գլխոյ հանդերձը, որուն նոյն ինքն սուդար (sudarium, σουδάριον = թաշկինակ) հոմանիշն ալ կու տայ, և գոյնը ճերմակ. որով «ևս աւելի քան զերեսացն սպիտակութիւնն ի գլուխն կապիցէ,[4] և ի վերայ սպիտակ սուդարին (յն. κάλυμμα = ծածկոյթ) զթուխ նափորան[5] յօրինեսցէ, առ ի բարւոք իմն վայելել և գեղեցիկ երևել»։ Այդ սուդարը, հայացած ու գործածուած նաև այլուր[6], կայ նոյնպէս մեր Ջևին մէջ, ստորոտը ծածկուած նափորտին ներքև, և գոյնը փոխած ի թուխ։ Այսպէս և Հռիփսիմեանք «զերեսս իւրեանց պատեալ (նոյն քողով՝) դնէին յերկիր», որպէս զի չտեսանուէին հեթանոս Հայերէն[7]։

5. Ոսկեբերանի թարգմանիչը կը ճոխանայ նաև կուսանաց կօշկաց վրայ, նկարագրելով զանոնք «սրակտուցս, նեղագարշապարս, և ի կրկունս սևացեալս զսպիտակ առաջսն խառնիցէ. յորժամ առ

1. Menol. 429։ — 2. Յն. զգօտին։ — 3. Ոսկ. Թղթ. Ա, 68։ — 4. Անգ. յն. «... և ի վերայ արկցէ զնափորան, զի սպիտակն ընդ թխոյն պատշաճեսցի»։ — 5. Յն. լոկ զքողն։ — 6. Կիւր. Ընծ. 176. յն. նոյնպէս։ — 7. Ագթ. 131։

*թաթիւքն խորշք քաղիցին և գարշապարք ի գետին չհասանիցեն[1]»։ Այս բառերու բացատրութիւնը տուի կանխաւ[2]։*

*Բ Շրջան։ — Ստոյգ է՝ թէ Զ–ԺԲ դարերուն կանոնաւոր կուսանոցներ չեն տեսնուիր Հայաստանի մէջ, բաց ի Թրինէն՝ կառուցուած Ժ դարուն[3]։ Սակայն ցուցած եմ բարեպաշտներ՝ որոնք հաւասարապէս ստանձներ են նոյն կեանքը՝ կրօնաւորական տարազով հանդերձ[4]։ Նկատելով այս պարագայն, հին օրէնսդիրները չին մոռնար բաժին մ'ալ անոնց հանել։ Եւ անոնց ևս երկու դասակարգ կը զատէ նման արանց։ Նախ՝ միանձնութեան կանոնը կը վերագրէ «արանց և կանանց», ինչպէս տեսանք[5]. և արարողութեան մէջ աւելի բան չի ըսեր, որով կը հաստատէ հանդերձի հաւասարութիւնը երկու սեռից մէջ։*

*Նոյն վերնագիրը կը զօրէ նաև յաջորդ կրօնաւորական կանոնին համար, որոյ մէջ յայտնապէս ալ կ'ըսէ. «իսկ կանանց պարտ է ոքեմ տալ և զնոյն կատարել կարգս»։ Ուրեմն դժուարագոյն կեանքն ընտրողներ ալ կային։ Եւ ասոնք ևս կը մերկանային աշխարհիկ ձևէն՝ իրենց սեռակցաց օգնութեամբ՝ ըստ նոյն կանոնի, «հոլանի սարկաւագուհիքն արասցեն», ու կը զգենուին արանց յատուկ խիստը, փոխան անոնց կնկղոյն՝ դնելով քօղը. «և փակեալք ծածկեսցեն զճակատն մինչև յոնսն», ուր միակ որոշիչն է արանց ձևէն։ Եթէ շրջանիս մէջ յիշատակեալ հաւատաւորաց ճգնութիւնը կը գովուի, Ժ դարու սկիզբը Սմբատ Բագրատունւոյ կինը յայտնապէս ալ կը կոչուի՝ «փառազնազգեաց կրօնաւորեալ տիկինն Հայոց[6]»։ Աշոտայ մենաստանին հայրը Գրիգոր՝ իւր քոյրաղուստրը կը բնակեցնէ իւր վանքին մէջ, «հագուցեալ նմա զգեստ հաւատաւորի[7]», որ երկու ձևերէդ մին է անտարակոյս։ Գրիգոր Մագիստրոսի հանը Շուշան էր նոյնպէս փառազնազգեստ[8]։ Եւ 1182ին՝ Հաթերք գղեկի տիկինը Մամա՝ ամուսնոյն Հասանայ և մէկ որդւոյն հետ կը կրօնաւորին Խութայ մենաստանին մէջ, սեպհական արանց, և «զգեցաք զձև միանձանց», կ'արձանագրէ նոյն տիկինը[9]. որով ինքն ալ արանց տարազը կը հագնի, բնականապէս տարբերութեամբ փակեղին։*

*Մաշտոցին նշանակած հերակատարութիւնը կանանց վրայ ևս կը գործադրուէր, ինչպէս կ'ընէին Եգիպտոս և Ասորիք՝ ըստ ս. Հերո-*

1. Ոսկ. Թղթ. Ա, 69. յն. «աւարտեալք ի ոտս, և նմանիցին պաճուճանաց նկարուց, այնպէս զի և մի՛ ծայրն բարձրասցի յոյժ»։ — 2. Աստ՝ 131։ — 3. Բզմ. 1922, 44։ — 4. Անդ՝ 43–46։ — 5. Աստ՝ 423։ — 6. Յհ. կթ. 225։ — 7. Շպհ. 39։ — 8. Մագ. Թղթ. 43։ — 9. Արցախ, 204։

*նիմոսի, և Միլան ըստ ս. Ամբրոսիոսի[1]. և որոյ գոյութիւնը մեր առաջին շրջանին մէջ անհաւանական է՝ ինչպէս վանականաց վրայ[2]. զի Ոսկեբերանի յիշած կուսանք ալ կը պահէին զանոնք, թէև անխնամ[3]: Ի հաստատութիւն ցուցած տարազիս՝ այս շրջանի վերջը կը յիշուին կուսական ձևին քանի մը մասերը: Արծրունեաց պատմըչին շարունակողը, որ կը գրէր 1121 Թուականին մօտերը, կ'ըսէ թէ Աղթամարայ մէջ կը պահէին «գհողաբափս» ս. Հռիփսիմեայ, և «զփողպատն ներկեալ սուրբ արեամբն» կուսին[4], յիշուած նաև Վարդանէ[5], զորս Օրբելեան յետոյ Հռոմկլայի մէջ կը դնէ[6]. և երկուքն ալ փողպատը կը կոչեն պերեզոտ (յն. περιζώστρα = գօտի), մինչ փողպատը մեր ակնարկը կը տանի պարանոցին շուրջ ոռնելու զինքը, — վաւերական Հռիփսիմէի կամ ոչ, բայց միշտ յատուկ կուսական սքեմին, — և նոյն իսկ մեր 135 Ձևին վրայ, ուր զգալի է կրօնաւորական վակասը, որ վերին ծայրովը կը շրջապատէ պարանոցը և կ'իջնէ վար: Սիւնեաց պատմիչը Հռոմկլայի մէջ կը դնէ նաև «շղարշն՝ որ է դաստառակ» Հռիփսիմեայ, որով իմանալու ենք գլխի փակեղը:*

Գ Շրջան: — *ԺԲ դարէն կը սկսին վերստին երևիլ կուսաստանք, և կը տևեն մինչև ԺԵ[7]: Շրջանիս տարազի մասին գրաւոր աղբիւրները ցամաք են: Սոյն մաշտոցը (1345ին) կ'ըսէ միայն՝ թէ նուիրեալը «բերեն առաջի եպիսկոպոսին զզեստն որ կարգին է, զոր միշտ զգենու ի նոյն կարգն». արևմտեան բացատրութիւն և անոնց յատուկ: Ընդ հակառակն սուրգաթեան ծանօթ ճաշոցը (1356ին) մեզ կու տայ ս. Հռիփսիմէի կենդանագիրը, զոր յառաջ կը բերեմ, Ձև 136. և որ ճշդագոյն կը յիշեցնէ ժամանակիս հայ հաւատաւորաց տարազը, որ զգալի զանազանութիւն չունի նոյն ճաշոցին նկարած ոչ կրօնաւոր կանանց հագածէն, ինչպէս են ս. Աննա և Սոփիա: Յունականին աւանդական կապն անգամ մը խզուած, նոյնպէս ալ կը մնայ նորահաստատ կուսական վիճակին հետ. և հայ հաւատաւորն աշխարհիկ սեռակցին պարկեշտագոյն զգեստին կը փարի հիմայ:*

Ա. — *Մեր Ձևին Հռիփսիմէի հանդերձն երեք մասերէ կազմուած է: Պարեգօտը, որ իրականին մէջ բնականապէս պճղնաւոր էր, ինչպէս յիշեալ նկարներու վրայ, և օձիքը նեղ է. գունով ճերմակ, և գծագրութիւնը կապոյտ: — Նոյն գունով գօտի մ'ալ կը կապէ՝*

1. Cabr. II, 3115, 3188. — 2. Աստ՝ 416. — 3. Ոսկ. Թղթ. Ա, 815. — 4. Արծ. 349. — 5. Վրդ. Պտ. 116. — 6. Օրբ. 324. — 7. Բզմ. 1922, 72-5.

*չափաւոր լայնութեամբ։ — Յետոյ ունի կրկնոցը, լայն ու երկար, որ միւս երկու սրբուհեաց վրայ պարեգօտէն կարճ կը մնայ. գոյնն է ճերմակ, մանիշակագոյն գծագրութեամբ. և վերև կարկառուն մաս մը կայ, որ կը ծածկէ գլուխը՝ փոխան զատ փակեղի, որ կ'երևի թէ Ջահկեցւոց կողմերը դեռ կայ, և անոնց մաշտոցին մէջ կը կոչուի գլխարկ[1] կամ գլխադիր։*

*Բ. — Հին եկեղեցւոյ Սարկաւագուհիք, ակնարկուած սքեմարկէից մէջ[2], իսկ մեր երիցագոյն պատմութեննէն անյիշատակ մնացած, ԺԲ դարու վերջերը կը սկսին երևիլ, կամ մանաւանդ յիշուիլ առանց երևելու, բռնազբօսիկ ու կեղակարծ գոյութեամբ մը, Մխ. Գոշէ, Սմբատէ և Օրբելեանէ. և Սմբատ կը հաստատէ իսկ՝ թէ «ի Հայոց կանանց վաղ է ջնջած այս կարգս[3]»։ Յատուկ ձեռնադրութիւն ևս ունին* 1216, 1314 *և* 1321 *տարիներու մաշտոցաց մէջ, ինչպէս երկարօրէն ցուցած եմ այլուր[4]։ Բայց մաշտոցացդ այդ կարգը պէտք մը կ'ենթադրէ, և հաւանական ցոյց կու տայ սարկաւագուհեաց արդէն հաստատութիւնն ուրեք ուրեք. մանաւանդ ուր աղօնք գրուած են. երկուքն ի Կիլիկիա և վերջինն ի Տաթև։*

*Յիշեալ երկու օրինագիրք ու պատմիչն անոնց հանդերձն ալ կը նշանակեն, Գոշը յունականէն և միւսները Գոշէն թելադրուելով։ Առաջինը* 1184*ի իր սկզբնագիր և* 1238*ի վենետկեան օրինակաց համեմատ՝ կ'ըսէ. «Սքեմ է նոցա ամենայն ինչ հաւատաւորաց. բայց ի ճակատն խաչ լինի, և քուշկեն[5] ի յաջմէ կողմանէ ի կախ ունելով[6]», զոր Բաստամեանցին* 1295*ի օրինակը կը վերածէ այսպէս. «Կարգ է սարկաւագուհեացն ամենայն ինչ հաւատաւորաց. բայց ի վարս պինդն խաչ ունի նա ի վերայ ճակատին, և կիսաբիկնեց յաջմէ կողմանէ ուսոցն[7]»։ Այսինքն կը զատէ երկու հանդերձ. մին դիւրին կեանք վարողաց (մոնոզոն), և միւսը խստակրօնից (կրօնաւոր). բայց Մխիթարայ բնագիրը չունի այդ զանազանութիւնը, ոչ ալ Սմբատ, որ — առանց լաւ հասկանալու Գոշի բառերը՝ — կ'ըսէ. «Սքեմ է նոցա հաւատովորացն... և խաչ ունենան ի ճակատն, և քուշ կեճայ ի յաջ թևն[8]»։ Անխտիր է և Օրբելեանը, որ նոյն սքեմը կը կապէ աստուածային պաշտաման հետ[9]։*

*Երեքն ալ ունին ճակատի խաչանիշը, որ պախոմեան կարգի նշանն էր[10], և քուշկենը կամ կիսաբիկնեցը, զոր Սիւնեաց պատմիչը կը*

1. Աստ՝ 364։ — 2. Աստ՝ 438։ — 3. Սմբ. Օր. Կ։ — 4. Բզմ. 1922, 72-3։ — 5. *Հմմտ. ընդ քուշաք (աստ՝ 291), իբր զօտւոյ նման երիզաձև զարդ։* — 6. Դատ. ՄԻԽ։ — 7. Էջ 257։ — 8. Սմբ. Օր. Կ։ — 9. Օրբ. 80։ — 10. Աստ՝ 416։

պարզէ՝ ճշդելով տեղն ալ. «փոքրիկ ուրար յաջմէ՝ ի ներքոյ բազկին զհանդերձէն կամ զգօտւոյն ի կախ ունելով»։ Եւ վերջինս ադոնց վրայ կը յաւելու նաև փիլոն մը, որ դարձեալ կը յիշեցնէ մեր 135 Ձևի յունականը։



Ձև 137. Հայ հաւատաւոր (ԺԶ դար)

Դ Շրջան։ — ԺԵ դարէն Հայաստանի վրայ պայթող հեթանոսական փոթորիկը, որ կ'եղծանէ վանական կարգերն ու սքեմը, կը ջնջէ նաև կուսաստանները, որոնք յետոյ վերջին անգամ մ'ալ կը ծլին ԺԷ դարուն՝ թուով շատ ցանցառ։ Ասոցմէ է նոյն դարու սկիզբները Նոր Ջուղայի մէջ կառուցուած հայ կուսանոցը, ուր կը

մոնէ Գեօզալ անուն կին մը, հագնելով «զգեստ միայնակեցի», որոյ գոյնը «սեաւ» էր[1]։ 1673ի յիշատակարան մը կը խօսի Սիւնեաց Շնհերի մենաստանի մասին, որ բնակարան էր «բազմահոյլ և խարազնազգեստ կուսանաց[2]»։ Հանդերձի հին նիւթը՝ պարուս վանականաց պէս նորոգած էին հաւատաւորք ևս։ Ուրիշ յիշատակարան մը 1655ին՝ կ'ակնարկէ «Հռիփսիմեայ հաւատաւոր սարկաւագուհւոյն[3]», որ կը բնակէր նոյն կուսաստանի մէջ։

Հ. Ալիշան ունի երկու ձևեր այդ դարու հայ կուսանաց, աղբիւրը լռած, որոց միոյն հանդիպած եմ Բելլինզոնեայ աշխատութեան մը մէջ[4], զոր յառաջ կը բերեմ հոս, Ձև 137, հրատարակչէն կոչուած «հայ հաւատաւոր» ԺԶ դարու։ Ես աւելի հայ կը գտնեմ զայս (նաև կերպարանօք) քան զմիւսը, որոյ սքեմը բոլորովին եւրոպական է։ Մերը, արևելեան և արևմտեան խառնուրդ մը, հագած է աննշմարելի կարճ ներքնակ մը, որոյ թեզանեաց կապոյտ ծայրերը միայն կ'երևին։ — Անոր վրայ թուխ ու կարճ պարեգօտը՝ կիսովին փորիբաց տաճկական ոճով[5], և քան զներքնակին լայն թեզանեօք։ — Ստորև կը ցուցնէ կապոյտ լայն վարտիքը, նոյնպէս թրքական[6]։ — Իսկ բոլորին վրայ առած է պճղնաւոր թուխ փիլոնը՝ եւրոպացի կուսանաց պէս, կոճկուած լանջաց վերև։ — Գլխին կը կրէ կապոյտ փակեղ մը, որ կը ծածկէ ճակատն ականջներով, ու կը հանգուցուի կզակին քով։ — Եւ ոտներուն ունի կօշիկներ, որ չափով մը բաց կը թողուն թաթից վերին մասը։

Եւ հին Հայաստանի այդ «Անձինք նուիրեալք սիրոյն Քրիստոսի», հալածուած միշտ մեր հայրենեաց չարաբաստիկ ճակատագրէն, դէպ ի ԺԸ դար վերստին կը չքանան, միասին տանելով իրենց սքեմն ալ, և անոր յիշատակը միայն աւանդելով Հայ տարազի պատմութեանս։

1. Զաք. Պատմ. Ա, ի։ — 2. Սակ. 259։ — 3. Բզմ. 1922, 75։ — 4. Bellinzoni, *Usi e Costumi*, III, 300։ — 5. Հմմտ. առա՝ 283։ — 6. Անդ։



# ՈՒՂՂԵԼԻՔ ԵՒ ՅԱՒԵԼՈՒԱԾՔ

Էջ 6 տող 34. Վրք. Հրց։ ուղ. Մաշտոց ԺԱ դարու։
» 8 » 22. Ճարտարայ։ յաւ. Հետևաբար կային ոստայնանկը (Ա Թագ. ԺԷ, 7 եւն. Վեցօր. 12), ստառը (Ես. ԼԸ, 12) կամ կտաւագործը (Ես. ԺԹ, 9), որոյ բաժինն էր անկանել (Սբր. 46. Վեցօր. 4, 12. Եւք. ԼԹ, 3 եւն), նիւթել (Սբր. 46. Եւք. ԼԵ, 6 եւն), ճեճոյլ (Եփր. Դ, 16) կամ ոստայնանկել (Ոսկ. Մտթ. Բ, 705) պաստառը կամ կտաւը. և նարօտանկերկին (Սբր. 155. Վեցօր. 102, 152) կամ նկարակերտին (Եւք. ԼԵ, 35) ներկել կամ ներկանել (Վեցօր. 152. Սբր. 155) զանոնք։
» 10 տող 25. վիրաւ, յաւ. կամ վիրայել (Եփր. Ա, 404),
» 13 » 36. Ցոյն ուղ. Նոյն
» 33 » 14. Աստ 9 ուղ. Աստ 16
» 62 » 21. 1. Bab. եւն ուղ. 1. Egg. X, 1522։–2. Bab. եւն
» 119 տող 3. գործածելով։ յաւ. Մեր նախարարք կ'աղօթէին. «Ազգ մեզ կոչիկս պատգամաւորեան» աւետարանին (Փրպ. 180)։
» 134 տող 3. Քօղէք յաւ. Քօղեայք (Ոսկ. Եփ. 35) կամ քօղէք
» 134 » 8. արկանեն. յաւ. կամ ըստ ընթերցման Գե. սկեւռացւոյ, «որ ի վերայ արմկացն զոսկի ապարանջանքն ի տիգսն արկանեն» (Մեկ. Ես. գրչ. Ս. Ղազարու)։
» 136 տող 26. շղաշատեռ յաւ. կամ շղարշատեռ (Ոսկ. Եփ. 35)
» 138 » 6. ճեղանակը, յաւ. կամ աւելի որոշ՝ «ոսկեղէն թել ճեղանակ» (Պտմ. Աղ. 99),
» 144 տող 31. չէր հասներ ուղ. կը հասնէր
» 147 » 13. զնորօք ուղ. զնոքօք
» 159 » 24. Աղեղան, յաւ. որ կորովք ալ կ'ըսուի (Ագթ. 23. Գիտ կԹղ. ի Կաղ. 18),
» 159 տող 33. Փիլ. ի Հյկզ. յաւ. Հմմտ. և վիմատատել (Եղիշ. 196).
» 172 » 35. կապանք ուղ. զանկապանք
» 179 » 19. Kreks. ուղ. Krets.
» 180 » 37. 339 ուղ. 239

Էջ 188 տող 38. 161 ուղ. 261
» 195 » 24. Թուխ յաւ. (պրս. վաշամա կամ բաշամա = քող գլխոյ. Hüb. 245)
» 201 տող 9. յաւ. Հին կրկնոցն ալ կայ դեռ, որով ԺԱ դարու մաշտոցին սքեմարկէքը կրնար գրել. «պճնումն... կրկնոցաց՝ քաղաքացեաց» է։
» 226 տող 12. զվարշամակ գլխոյն յաւ. որ պրս. բառով փանդամ ալ կ'ըսուի (Նոր Վկ. 193. Եղիշ. 40)
» 226 տող 23. օձիքը յաւ. կամ փողպատր (Նոր Վկ. 195)
» 232 » 2. իրեն ուղ. իրենց
» 267 » 4. կօշիկները յաւ. որ սօլեր (գղ. soulier) ալ կ'ըսուին (Ամր. Օր. ԼԴ),
» 301 տող 36. Ցայտ. ուղ. Հյպտ.
» 308 » 17. կը ճշդէ յաւ. Եղիշէ
» 314 » 35. մարմնոյ ուղ. մարմնոյ[8]
» 325 » 7. 119 ուղ. 120
» 332 » 21. խաչաձև»։ յաւ. Գրիգոր Վ. մեկնիչ Եւագրի ԺԲ դարուն, կը յիշէ նոյնը. «Եւ այժմ այս սքեմացս որ առ մեզս են, զոր վանական և աշխարհական քահանայքս ածեմք զվզովքս» (գրչ. Թ. 1552 Ս. Ղազարու)։
» 336 տող 6. յաւ. Նոյն աղաբողոնն է անշուշտ՝ որ դեռ մասամբ կը մնայ Թ դարուն ըստ սքեմարկէից (աստ՝ 422), թէ «պճնումն... աղաբողոնաց՝ վարդապետաց» է։
» 348 տող 6. ղաղմատականէն, յաւ. կամ բակաղտկեն ըստ մաշտոցի Ջահկեցւոց,
» 351 տող 13. Տաթևացին. յաւ. ուր Ասորիք զօտեոր են 1239ի նկարի մը մէջ (Fleur. VII, 526).
» 362 տող 34. 168 ուղ. 68
» 416 » 28. մազարը ուղ. մազերը
» 427 » 9. յաւ. Ջայս աւելի մանր կը նկարագրէ Եւագրի մեկնիչը ԺԲ դարուն. «Իսկ վանականացս (սքեմն) ունի և զնոցայն (եգիպտ. հարց) խաչ նկարեալ յենքեան ի մէջ խնձորոցն որ ի վերայ լանջացն»։ Եւ անոր մէջ կը տեսնէ Երրորդութեան խորհուրդը՝ «երեք կղիւքն (քուղ) որ զվզովն, և երիսք խնձորիսքն և խաչիւն և զեռահիւսակ միաւորութեամբն ի վերայ սրտին»։ Այսինքն երիզանման սքեմն ունէր իւր վրայ երեք քուղեր, առաջակողմէն՝ երեք խնձորանման զարդեր, և ատոնց միոյն մէջ խաչ մը, որոնք կը միանային սրտին վրայ։

# ՍՂԱԳՐՈՒԹԻՒՆՔ

Ագթ. — Ագաթանգեղեայ, Դ-Ե դար, Պատմութիւն. Վենետիկ, 1862։
Ազգ. Հնդ. — Ազգագրական Հանդէս Տփղիսի։
Աղձ. — Սիմէոնի եպս. Աղձնեաց, Վասն գինի խմողաց. գրչ. թ. 633 Ս. Ղազարու։
Ամմ. — Ammianus Marcellinus, *Rerum gestarum libri* XXXI.
Այրիվ. — Մխ. Այրիվանեցւոյ, ԺԳ դար, Պատմութիւն Հայոց. Մոսկուա, 1860։
Անկան. — Անկանոն գիրք հին կտակարանաց. Վենետիկ, 1896։
Անհտ. — Անահիտ հանդէս Պարիսի։
Աշուղ. — Գ. Լեոնեանի՝ Հայ աշուղներ, Աղեքսանդրապոլ, 1892։
Ապար. — Մխ. Ապարանեցւոյ, 1410ին. գրչ. թ. 334 Ս. Ղազարու։
Ապպ. — Ապպիանոսի՝ Յաղագս Միհրդատեան մարտին (ձե.)։
Ասող. — Ստ. Ասողկան, Ժ դար, Պատմութիւն. Պարիս, 1859։
Ասպր. — Ասպարէզ լրագիր Ֆրեզնոյի։
Արար. — Արարատ ամսագիր Էջմիածնի։
Արև. — Արեւելք լրագիր Կոստանդնուպոլսի։
Արծ. — Թովմայի Արծրունւոյ, Թ դար, Պատմ. տանն Արծրունեաց. Կ. Պոլիս, 1852։
Արձգ. — Արձագանգ լրագիր Տփղիսի։
Արճշ. — Յովհ. Արճիշեցւոյ, ԺԳ դար, Մեկնութիւն պատարագի. Էջմիածին, 1860։
Արշ. — Գրիգորի Արշարունեաց, Ը դար, Մեկն. ընթերցուածոց. գրչ. Վենետկոյ։
Արրտ. — Հ. Ղ. Ալիշանի՝ Այրարատ. Վենետիկ, 1890։
Արցախ. — Գործ Մակար Եպսի. Բարխուտարեանց. Բագու, 1895։
Ա-ք. Doct. — Ս Աւգոստինոսի De doctrina Arist.
Բագր. Զարգ. — Հ. Արս. Բագրատունւոյ՝ Հայ. քերակ. ի պէտս զարգացելոց. Վենետիկ, 1852։
Բասմ. — Կ. Բասմաջեանի՝ Խնկական Պատմ. Հայոց. Կ. Պոլիս, 1914։
Բասմ. Լւ. — Նորին՝ Լեւոն Ե Լուսինեան. Պարիս, 1908։
Բաց. շրկ. — Հ. Գ. Աւետիքեանի՝ Բացատրութիւն շարականաց. Վենետիկ, 1814։
Բզմ. — Բազմավէպ հանդիսարան Վենետկոյ։
Բիւզ. — Բիւզանդիոն լրագիր Կոստանդնուպոլսոյ։
Բառ. Փիլ. — Բառք Փիլոնի. գրչ. 1307ի, թ. 1244, ի Ս. Ղազար։
Գալ. — Կղ. Գալանոսի, ԺԷ դար, Միաբանութիւն Հայոց սբ. Եկեղ. ընդ մեծի սբ. Եկեղ. Հռովմայ. Հռոմ, 1650։
Գ. Եզ. Պտկ. — Գն. Եզնկացւոյ, ԺԳ դար, Խրատ վս. պատկի. գրչ. թ. 1372 Ս. Ղազարու։
Գեւ. — Գէորգ Դպրի Տէր Յովհաննէսեան, Բառարան պարսկերէն. Կ. Պոլիս, 1826։
Գեղ. — Գեղունի հանդէս Վենետկոյ։
Գեղար. — Գեղարուեստ հանդէս Տփղիսի։
Գ. Թղթ. — Գիրք Թղթոց. Տփղիս, 1901։

Գբրճ. Պտր. — Հ. Ց. Գաթրճեանի՝ Սրբ. Պատարագամատոյցք Հայոց. Վիեննա, 1897։

Գիւտ. — Գիւտերբոքի՝ Հռովմէական Հայաստան եւ հռովմէական սատրապութիւնները Դ–Զ դարերուն. Թրգ. Վիեննա, 1914։

Գոշ՝ Առկ. — Մխիթարայ Գոշի, ԺԲ դար, Առակք. Վենետիկ, 1842։

Գոշ՝ Թղթ. — Նորին՝ Թուղթ ի Վիրս. յԱրար. 1900, 497, 562. 1901, 55, 121։

Գռն. Խրտ. — Յովհ. Գառնեցւոյ, ԺԳ դար, Խրատ ոգեշահ. գրչ. թ. 96 Ս. Ղազարու։

Դատդ. — Հ. Վ. Հացունեայ՝ Դատաւարակութիւնը հին Հայոց քով. Վենետիկ, 1923։

Դատ. — Մխիթարայ Գոշի՝ Դատաստանագիրք, 1184ին, բնագիրն ի Ս. Ղազար. տպ. Վղրշպտ. 1880։

Դարդ. — Յովհ. Դարդելի, ԺԳ դար, Ժամանակագրութիւն Հայոց. Պետերբ. 1891։

Դաւր. Առաքելի Դաւրիժեցւոյ, ԺԷ դար, Պատմութիւն. Վղրշպտ. 1884։

Դմս. — Սուսան Յհ. Դամասկացի, ի Լոյս հանդէսի, 1905։

Դրօշ. — Հ. Վ. Հացունեայ՝ Հայ դրօշները պատմութեան մէջ. Վենետիկ, 1919։

Եղիշ. — Եղիշէի, Ե դար, Մատենագրութիւնք. Վենետիկ, 1859։

Եմես. — Եւս. Եմեսացւոյ Մեկն. ի գիրսն Մովսիսի են. Թրգ. Ե դարու, գրչ. թ. 873 Վենետիկոյ (յանուն Կիւրղի)։

Եւագր. — Ս. Հօրն Եւագրի պոնտացւոյ վարք եւ մատենագր. Վենետիկ, 1907։

Եւս. Եկ. — Եւսեբ. Կեսարացւոյ՝ Պատմ. եկեղեցւոյ. Թրգ. Ե դարու. Վենետիկ, 1877։

Եփր. — Ս. Եփրեմի Մատենագրութիւնք. Թրգ. Ե դարու. Վենետիկ, 1836։

Զարբ. Դպր. — Հ. Գ. Զարբհանալեանի՝ Պատմ. Հայկ. հին դպրութեան. Վենետիկ, 1897։

Զաք. Պտմ. — Զաքարիայ սարկաւագի՝ Պատմագիրք, 1698ին. գրչ. թ. 720 Ս. Ղազարու։

Զգօն. — Յակոբայ Մծբնացւոյ՝ Զգօն. Թրգ. Ե դարու. Կ. Պոլիս, 1824։

Զեն. — Զենոբայ Գլակայ, Է դար, Պատմութիւն Տարօնոյ. Վենետիկ, 1832։

Զքր. Կթղ. — Զաքարիա կաթող. Թ դար, Ճառք. գրչ. թ. 939 Ս. Ղազարու։

Թիր. — Ց. Թիրեաքեանի՝ Արիական Բառարան. Վիեննա, 1914։

Ինճ. — Հ. Ղ. Ինճիճեանի՝ Հնախօսութիւն Հայաստանեայց. Վենետիկ, 1822։

Լալ. Վայ. — Եր. Լալայեանի՝ Վայոց ձոր, լուսանկարք։

Լաստ. — Արիս. Լաստիվերտցւոյ, ԺԱ դար, Պատմութիւն. Վենետիկ, 1844։

Լծ. Նար. — Լուծումն Նարեկացւոյն. գրչ. թ. 1278 Ս. Ղազարու։

Լմբ. Առկ. — Ներս. Լամբրոնացւոյ, ԺԲ դար, Մեկն. Առակաց Սողոմոնի. գրչք. Ս. Ղազարու։

Լմբ. Զքր. — Նորին՝ Մեկնութիւն Զաքարիայ. գրչք. Ս. Ղազարու։

Լմբ. Թղթ. — Նորին՝ Թուղթ առ Լեւոն. Վենետիկ, 1865։

Լմբ. Շնրհ. — Նորին՝ Գովեստ ի Ներս. Շնորհալին. գրչք. Ս. Ղազարու։

Լմբ. Պտ. — Նորին՝ Մեկնութիւն պատարագի, 1177ին. Վենետիկ, 1847։

Լոյս. — Լոյս հանդէս Կոստանդնուպոլսոյ։

Խոսր. Պտ. — Խոսրովու Անձեւացւոյ, Ժ դար, Մեկն. պատարագի. Վենետիկ, 1869։

Խոր. — Մովսէսի Խորենացւոյ՝ Պատմութիւն Հայոց։

Խոր. Մտ. — Նորին՝ Մատենագրութիւնք. Վենետիկ, 1865։

Խորհրդ. — Խորհրդատետր, ի գրչագիրս Ս. Ղազարու։

Խրհ. Եկ. — Խորհուրդ եկեղեցւոյ, ճառ ի թ. 1916 գրչ. Ս. Ղազարու։

Կաղ. — Մովս. Կաղանկատուացւոյ, Պատմութիւն Աղուանից, իբր 665ին. Մոսկուա, 1860։

Կիպր. Մհկ. — Կիպրիանոսի՝ Յաղագս մահկանացութեան, (լտ.)։

Կիր. — Կիրակոսի Գանձակեցւոյ, ԺԳ դար, Պատմութիւն. Վենետիկ, 1865։

Կիւր. Ընծ. — Կիւրղի Երուսաղեմացւոյ Կոչումն ընծայութեան. Թրգ. Ե դարու. Վիեննա, 1832։

Կողբ. — Եզնկայ Կողբացւոյ, Ե դար, Եղծ աղանդոց. Վենետիկ, 1826։

Կոնդ. Աղթ. — Կոնդակ Աղթամարայ՝ գրչ. թ. 130 Ս. Ղազարու. և ի Բզմ. 1897։
Կոր. — Կորեան, Ե դար, Պատմութիւն Ս. Մեսրոպայ. Վենետիկ, 1833։
Հայ Եկեղ. — Հրատ. Արշակ Չօպանեանի, Պարիս, 1912։
Հայ ծէսը. — Հ. Վ. Հացունեաց՝ Հայ ծէսը 1911ի Ազգ. Մատենագրաց գործոց մէջ. Վենետ. 1919։
Հեր. կամ Erod. — Հերոդոտոսի, Դ դար Ն. Ք. Պատմութիւն (յն.)։
Հյկզ. — Նոր Բառգիրք Հայկազեան լեզուի. Վենետիկ, 1836։
Հյպտ. — Հ. Ղ. Ալիշանի՝ Հայապատում. Վենետիկ, 1901։
Հնդ. ամս. — Հանդէս ամսօրեայ Վիեննայի։
Հոմ. Իլ. — Հոմերոսի Իլիական (յն.)։
Ղետ. — Ղևոնդի, Ը դար, Արշաւանք Արաբաց ի Հայս. Պետրբ. 1887։
Ճաշկր. — Հ. Վ. Հացունեաց՝ Ճաշկեր եւ խնճոյք հին Հայաստանի մէջ. Վենետիկ, 1912։
Ճառընտ. — Ճառընտիրք, գրչագիրք Ս. Ղազարու։
Ճռ՝ Մրկ. կամ Մխէ. Մրկ. — Ճռն Բարսղի՝ Մեկն. Մարկոսի. գրչ. թ. 355 Ս. Ղազարու։
Մաք. Թղթ. — Գր. Մագիստրոսի, ԺԱ դար, Թուղթք. Աղեքսանդրապոլ, 1910։
Մաք. Քեր. — Նորին՝ Մեկնութիւն քերականի. գրչ. թ. 875 Ս. Ղազարու։
Մամ. — Յովհաննու Մամիկոնեանի, Է դար, Պատմութիւն Տարօնոյ. Վենետիկ, 1832։
Մանդ. — Յովհաննու Մանդակունւոյ, Ե դար, Ճառք. Վենետիկ. 1860։
Մառ՝ Շարք. — Նիկ. Մառի՝ Անւոյ շարք. ցուցակ Անւոյ հնագարանին. Պետրբ։
Մառ՝ Բն. և Վերք. — Նորին՝ Բնագիրք եւ Վերք հայավրացի լեզուագիտութեան (ռուս). Պետրբ. 1907։
Մ. Եզ. Խրտ. — Մովսէսի Երզնկացւոյ, ԺԴ դար, Խրատք. գրչ. թ. 986 Ս. Ղազարու։
Մեծոփ. Պտմ. — Թով. Մեծոփեցւոյ, ԺԵ դար, Պատմ. հմռտ. վս. արեւելեան թագաւորացն. գրչք. Ս. Ղազարու։
Մեսր. — Մեսրոպայ երեցու, Ժ դար, Պատմութիւն Ս. Ներսեսի. ի Սոփ. Զ։
Մշտ. — Մաշտոցք, գրչագիրք Ս. Ղազարու։
Մոկ. — Անան. Մոկացւոյ, Ժ դար, Պատճառ յղգ. գլխոյրով ճգովելոյն. Արար. 1897, 275։
Մոկ. Ազո. — Նորին՝ Յաղագս ապստամբութեան տանն Աղուանից. Արար. 1897, 129։
Մրշ. — Գրիգորի Մարաշեցւոյ, ԺԲ դար, Վայք ողբոց մեղուցեալ անձին. գրչ. թ. 654 Ս. Ղազարու։
Յայսմ. — Յայսմաւուրք, գրչագիրք Ս. Ղազարու։
Յ. Եզ. Կան. — Յովհ. Երզնկացւոյ, ԺԳ–ԺԴ դար, Կանոնք. գրչ. թ. 1447 Ս. Ղազարու։
Յ. Եզ. Մտթ. — Նորին՝ Մեկնութիւն Մատթէի. շար. Ն. Շնորհալւոյն։
Յ. Եզ. Սոփ. — Նորին՝ Վասն ոչ առնելոյ սուգ մեռելոց. գրչ. թ. 1447 Ս. Ղազարու։
Յ. Եզ. Քեր. — Նորին՝ Մեկնութիւն Քերականին. գրչք. Ս. Ղազարու։
ՅՀ. Կթ. — Յովհաննու Կաթողիկոսի, Ժ դար, Պատմութիւն. Երուս. 1867։
Յմխ. — Յաճախապատում ճառք. Ե դար. Վենետիկ, 1838։
Յշկ. կամ Յուշ. — Հ. Ղ. Ալիշանի՝ Յուշիկք հայրենեաց Հայոց. Վենետիկ, 1869։
Յշր. — Յուշարար հանդէս Տփղիսի։
Նար. — Գրիգորի Նարեկացւոյ, Ժ դար, Մատենագրութիւնք. Վենետիկ, 1840։
Նոր Վ. — Հայոց նոր վկաները՝ Մանանդեանի և Աճառեանի. Վղրշպտ. 1903։
Նչ. Եզկ. — Եսայեայ Նչեցւոյ, ԺԳ–ԺԴ դար, Մեկնութիւն Եզեկիելի. գրչ. թ. 772 Ս. Ղազարու։
Շիր. — Հ. Ղ. Ալիշանի՝ Շիրակ. Վենետիկ, 1881։
Շնրհ. Եդես. — Ներս. Շնորհալւոյ, ԺԲ դար, Ողբ Եդեսիոյ. գրչք. Ս. Ղազարու։
Շնրհ. Ընդհ. — Նորին՝ Ընդհանրական թուղթք. Երուսաղէմ, 1871։
Շնրհ. Մտթ. — Նորին՝ Մեկնութիւն Մատթէի. Կ. Պոլիս, 1825։

